# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1782 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 12 ՅՈՒՆՈՒԱՐ 2017 ՀԱՏԸ ՉԵՐՔԷ 75 Ե. Դիկ.

عدد رقم ١٧٨٢ الخميس ١٢ يناير ٢٠١٧


## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՄԵՆԱԴԱԺԱՆ ՎԻՐՈՒՍԸ ԾԱՒԱԼՒՈՒՄ Է

ՍԻՐԱՆՈՅՇ ՊԱՊԵԱՆ, Հարցազրուցավար

Մեր զրուցակիցն է ազգագրագէտ Հրանուշ Խառատեանը

**Հարցում – Տիկին Խառատեան, պաշտպանութեան նախկին նախարար Սէյրան Օհանեանը հանդէս էր եկել յայտարարութեամբ, որ մտնում է ակտիւ քաղաքական պայքարի մէջ: Օրերս էլ ֆէյսբուքի իր էջում Լեռնային Ղարաբաղի խնդրի կարգաւորման իր տեսլականն էր ներկայացրել: Առհասարակ ինչպէ՞ս էք գնահատում նրա մուտքը մեծ քաղաքականութիւն: Եւ արդեօք կարո՞ղ է նա յաջողուել:**

Պատասխան – Ձեմ յիշում, թէ Սէյրան Օհանեանը «մեծ քաղաքականութիւնում» եղել է, որքան ես յիշում եմ՝ նա միշտ քաղաքական գործառոյթ չունեցող պաշտօնների պաշտօնեայ է եղել: Գուցէ սխալւո՞ւմ եմ: Բոլոր դէպքերում, հանրութիւնը տեւական ժամանակ հաւատում էր Սէյրան Օհանեան պաշտօնեայի ազնուութեանն ու հայրենիքին նուիրուածութեանը: Նրա «բախտը բերեց» 2008-ի Մարտի մէկի դէպքերի ժամանակ, երբ ակնյայտ էր, որ բանակն օգտագործուեց ներքին քաղաքական խնդիրներ լուծելիս՝ ըմբոստացած ժողովրդի դէմ: Այդ օրերին Սէյրան Օհանեանը դեռեւս պաշտպանութեան նախարար չէր, Հայաստանի զինուած ուժերի գլխաւոր շտաբի պետ, պաշտպանութեան նախարարի առաջին տեղակալ էր: Ես չգիտեմ՝ ինչպէս կը վարուէր բանակն այդ օրերին, եթէ Սէյրան Օհանեանը նախարար լինէր եւ չգիտեմ՝ նա իսկապէ՞ս որեւէ ազդեցիկ մասնակցութիւն չի ունեցել այդ գործում: Նա նախարար նշանակուեց միայն Ապրիլ ամսին, եւ երբ Մարտի մէկի աղթիւ փաստահաւաք խումբն աշխատում էր, նա նախարար էր: Ենթադրում եմ՝ Պաշտպանութեան նախարար Սէյրան Օհանեանը չպիտի օժանդակէր փաստահաւաք խմբին: Երկրի բարձրագոյն ղեկավարութիւնը՝ ի դէմս նախագահի եւ Հայաստանի Հանրապետական Կուսակցութեան շահագրգիռ չէր Մարտի մէկի դէպքերի բացայայտմամբ, եւ պաշտպանութեան նախարարը, ով էլ նա լինէր, չէր կարող եւ չպիտի նպաստէր դրանց բացայայտմանը, առաւել եւս՝ բանակի մասնակցութեան բացայայտմանը: Դրան հակառակ դիրքորոշում ունենալու պարագայում նա ուղղակի կը հրաժարուէր այդ պաշտօնից:

Յետագայում, կարծում եմ, տրամաբանութիւնը նոյնն է՝ Պաշտպանութեան նախարարը, անկախ իր համոզմունքներից, պիտի գործէր իշխանութեան կամքի շրջանակներում: Բայց անկախ այն բանից, թէ սեփական կամ իշխանական կամքի շրջանակներում է գործել, իշխանութեան մաս կազմող ցանկացած պաշտօնեայ լաւ կամ բարձրաձայն համաձայն է եղել այդ կամքին եւ պատասխանատու է իր պաշտօնավարման շրջանի համաձայնութիւնների համար: Վերջիվերջոյ, լաւ կամ վատ իշխանութիւնները մարդկանցից են բաղկացած, եւ մարդիկ լռելով կամ ակտիւ նպաստում են իշխանութեան լաւ կամ վատ լինելուն: Նախարարը քաղաքական պաշտօն է, եւ քանի որ Ղարաբաղի հարցում իր ողջ նախարարութեան շրջանում Հայաստանի իշխանութիւնների կողմից որեւէ էական ծրագիր չի փոխուել, ապա Սէյրան Օհանեանը իշխանութիւնների ծրագրերից քաղաքական տարբեր դիրքորոշում ունենալու դէպքում պէտք է հրաժարական ներկայացնէր: Այդպիսի բան, ինչպէս յայտնի է, չի եղել: Հիմա, երբ այլեւս նախարար չէ, խօսում է Ղարաբաղի հարցի կարգաւորման փոխզիջումների դէմ, բայց իր ողջ նախարարութեան շրջանում պաշտօնական ծրագրերը միշտ փոխզիջումների շուրջն էին, եթէ ոչ միակողմանի զիջումների:



Հրանուշ Խառատեան

**Հ. – Ոչ միայն Սէյրան Օհանեանը, այլ նաեւ Գագիկ Ծառուկեանը հնարաւոր է վերադառնայ քաղաքականութիւն: Այս անգամ իշխանութիւնը չի շտապում կոշտ գնահատականներ հնչեցնել նրա հասցէին: Ինչո՞ւ:**

Պ. – Դէ Գագիկ Ծառուկեանի՝ որպէս անձի, քաղաքական դիրքորոշումներն առհասարակ անյայտ են: Բարգաւաճ Հայաստան Կուսակցութեան մէջ քիչ չեն կոռուպցիոն անձիք, բայց պարոն Ծառուկեանը արցունք է թափում կոռուպցիայի ձեռքին տառապող ժողովրդի համար: Սա, ճիշտն ասած, ներկայում բոլոր քաղաքական համարուող եւ կուսակցութիւն համարուող խմբերին է բնորոշ՝ բոլորը կոռուպցիայի դէմ են խօսում, բայց ապրում են կոռուպցիոն սխեմաներով: Բոլորը, այդ թւում ՀՀԿ-ի կարկառունները, խօսում են իշխանութեան նկատմամբ անվստահութեան մասին, բոլորը համաձայն են, որ կոռուպցիան Հայաստանի ամենածանր, ամենադաժան վիրուսն է, բայց ուժ չունեն այդ վիրուսի աճող թափը նուազեցնելու: Պարոն Ծառուկեանը բարեգործութեան շղարշով «նրբանկատօրէն» շրջանցում է այդ թեման:

Անյայտ է նաեւ Ղարաբաղի խնդրի կարգաւորմանը նրա դիրքորոշումը: Նրա գլխաւորած կուսակցութիւնը գործնականում միշտ քուէարկել է ՀՀԿ-ի ծրագրերի օգտին, այդ թւում, եթէ յիշում էք, յայտնի գազային պայմանագրի օգտին: Հիմա, երբ առաջիկայ ընտրութիւններին կարծէք թէ Ռոբերտ Քոչարեանի ճնշող ներկայութիւնը չի սպասւում, աւելին, Քոչարեանը դէմ է արտայայտուել երրորդ Սահմանադրութեանը եւ քաղաքականութեան՝ փաստացի միակուսակցականացմանը, ՀՀԿ-ին կարծէք թէ միանգամայն ձեռնտու են Ծառուկեանի՝ հասարակութեանն անյայտ դիրքորոշումները եւ նրան սպասուող ընտրաձայները:

↳ 4

## 2016-Ի ԴԱՍԵՐԸ

ՀԱՅԿ ԿՈՆՋՈՐԵԱՆ

Պատմութիւնը ժամանակների վկայութիւնն է, ճշմարտութեան լոյսը,
յիշողութեան կեանքը, կեանքի ուսուցիչը, անցեալի սուրհանդակը:
Historia vero testis temporum,
luxveritatis, vita memoriae, magistra vitae, nuntiavetustatis.

Կիկերոն

«Պատմութեան գլխաւոր դասն այն է, որ նրանից ոչ ոք դաս չի քաղում», սիրում էր կրկնել յայտնի ասոյթը համալսարանի դասախօսներիցս մէկը: Եթէ սա մէկտեղենք Կիկերոնի խօսքերի հետ, կը ստացուի՝ պատմութիւնը լաւ ուսուցիչ է, մենք ենք ծոյլ աշակերտներ: Բայց ինչպէս ցանկացած գիտելիք, այնպէս էլ պատմութեան դասը տարբեր մարդիկ կարող են կիրառել տարակերպ, կամ նոյն ճշմարտութիւնից կատարել տարբերուող հետեւութիւններ: Երբ Ադոլֆ Հիտլերն ասում էր՝ ով է այժմ յիշում հայերի ջարդերը, սա նշանակում էր, որ նա չի՞ սովորել պատմութեան այն դասը, որն ասում է՝ չի կարելի բնաջնջել մէկ այլ ժողովրդի, թէ՞ ընդհակառակը՝ սովորել էր միւս դասը, որ կարելի է բնաջնջել եւ մնալ անպատիժ: Ուրեմն՝ պատմութեան դասը պարտադիր չէ, որ լինի բարոյախրատական եւ ոչ էլ օգտակար՝ յանուն հասարակական բարեկեցութեան: Հակառակը, կարող է բերել նոր արհաւիրքների, եթէ, օրինակ, իշխանութիւնն ու հանրութիւնը նոյն դասից կատարեն տարբեր հետեւութիւններ՝ ամէնքինը միտուած սեփական շահերի սպասարկմանը: Մեծագոյն դժբախտութիւն է, երբ իշխանութեան եւ հանրութեան շահերը տարբեր են, իսկ երբեմն՝ հակադիր: 2016 թուականը Հայաստանում նշանաւորուեց վստահութեան ճգնաժամի պիկով, որի երկու գագաթներն էին ապրիլեան պատերազմը եւ Յուլիսին ՊՊԾ գնդի գրաւումը: Այս իրադարձութիւնները հասարակական գիտակցութեան մէջ ակտիւացրին համատարած անարդարութեան, անարդիւնաւէտ կառավարման, սոցիալական բեւեռուածութեան, իշխանութեան եւ ժողովրդի ծայրայեղ օտարուածութեան գաղափարները: Կային իշխանութեան կողմից խնամքով կառուցուած «ճշմարտութիւններ», որոնք փլուզուեցին:

Մեծագոյն յուսալքութիւնը կապուած էր բանակի հետ: Յայտնի է, որ բանակը Հայաստանի ամենակայացած ինստիտուտներից մէկն է, որը վայելում է հասարակական վստահութիւն եւ հոգածութիւն: Ինչ-որ իմաստով, բանակը սակրալ կառոյց է, որին չի կարելի դիպչել, քննադատել: Այս իռացիոնալ վերաբերմունքը մեծապէս պայմանաւորուած է մեր հասարակութեան վախերով: Մենք վախենում ենք վտանգից, բայց վախը բերում է նոր վտանգների: Վախի այս չափաբաժինն էլ հեշտացնում է հասարակական գիտակցութեան մանիպուլացիան, որը Հայաստանի իշխանութիւնները տասնամեակներ շարունակ կատարել են՝ կամայ, թէ ակամայ: Մարդկանց շարունակ մատուցուել էր այն միտքը, որ գուցէ մենք ունենք թոյլ սոցիալական ծառայութիւններ, կաղում ենք առողջապահութեան ոլորտում, չունենք արդար դատարաններ եւ ունենք բարձր գործազրկութեան մակարդակ, բայց կառուցել ենք տարածաշրջանի ամենամարտունակ եւ հզօր բանակը: Մենք ձեզ քիչ ենք փող տալիս, որ զէնք գնենք: Ասել է թէ՝ մեր իշխանութեան ներքոյ դուք բարեկեցիկ չէք, բայց անվտանգ էք:

Այս միտքը ցեղասպանութիւն վերապրած եւ վերջին 20-ամեակում պատերազմ տեսած ժողովրդի համար կարող է երկաթեայ ճշմարտութիւն թուալ: Նոյնիսկ այս գաղափարի ներքոյ Հայաստանը բռնակցուեց ԵՏՄ-ին: Յանուն անվտանգութեան մենք զոհեցինք մեր բարեկեցութիւնը: Կարծես նախապէս սահմանուած հիմնարար ճշմարտութիւն կայ, որ այդ երկուսը չեն կարող լինել միաժամանակ, եւ մէկին պէտք է հասնել՝ պարտադիր միւսը զոհաբերելով: Ազատութիւնն ու բարեկեցութիւնը հակադրելով անվտանգութեանը՝ իշխանութիւնները մշտապէս վերահսկում են հասարակութեան ձգտումներն ու ցանկութիւնները՝ նրան դարձնելով առաւել կառավարելի: Ազատ ու բարեկեցիկ մարդը փամփուշտ է՝ կրակուած ավտորիտար ռեժիմի ճակատին:

Բայց ապրիլեան պատերազմը կոտրեց կարծրատիպը եւ քօղազերծեց բանակում առկայ այն խնդիրները, որոնք խնամքով թաքցուել էին տարիներ շարունակ: Հայկական բանակի նկատմամբ հակառակորդի տեխնոլոգիական գերազանցութիւնը, 80-ականների զէնքերով կռուելու մասին Սերժ Սարգսեանի յայտարարութիւնը, հայկական հետախուզութեան թոյլ տուած բացթողումները, բազմաթիւ զոհերն ու վերջապէս 800 հեկտար հողերի կորուստը հանրութեան մօտ փոխեցին բանակի նկատմամբ եղած նախկին անվերապահ վստահութիւնը եւ խորացրին վստահութեան ճգնաժամը իշխանութիւնների նկատմամբ: «Դուք աղքատ էք, բայց անվտանգ» առասպելը փլուզուեց: Չնայած որ բանակը

↳ 4

# ՀԱՅԿԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԱԾՔՆԵՐ՝ ԱՐԱԲԵՐԷՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՄԲ

15 տարի առաջ՝ 2002-ին, եգիպտական Մերիթ Հրատարակչութիւնը լոյս կ'ընծայէ *Հայկական պատմուածքներ* (Քեսաս արմաննէյա) հատորը (113 էջ), ուր արաբերէն թարգմանութեամբ կը ներկայացուին հայ գրողներու ութ պատմուածքներ: Թարգմանիչն է՝ Նանսի Սամիր:

Թարգմանութիւնները կատարուած են անգլերէն բնագիրներէ՝ որոնք բոլորն ալ տպագրուած են *Արարատ* հանդէսի (Ararat magazine) Աշուն 1998, թիւ 4 համարին մէջ:

Անոնցմէ չորսը Յակոբ Օշականի պատմուածքներն են.

1. *Քեսսաթ քոպլա* (Համբոյրի մը պատմութիւնը), անգլերէն թարգմանութիւն՝ Արիս Սեւակ
2. *Ալ-աթլալ* (Մնացորդաց. հատուած), անգլերէն թարգմանութիւն՝ Ճ. Մ. Կոչկարեան
3. *Ալ-անեսա Իւա* (Մատմազէլ Եւա), անգլերէն թարգմանութիւն՝ Թալին Ոսկերիչեան
4. *Ալ-մար'ա ալլաթի սաքաթաթ մըն ալ-սամա'* (Երկինքէն ինկած կինը), թարգմանութիւն՝ Արիս Սեւակ

Միւս չորսը Ուիլիամ Միքայէլեանի, Մայքըլ Մինասեանի, Էսթէր Հեպոյեան-Տըվրիէսի եւ Վ. Տէրտէր-եանի անգլերէն պատմուածքներն են:

Ստորեւ՝ Նանսի Սամիրի «Նախաբան»-ը ամբողջութեամբ: Նախաբանը կը բովանդակէ հետաքրքրական միտքեր եւ կարծիքներ: Ան հիմնուած է տարբերութեան գաղափարին վրայ, տարբերութիւն՝ ըստ հայ գրողներու հին եւ նոր սերունդներուն, տարբերութիւն՝ ըստ աշխարհասփիւռ գրողներու ապրած բնակավայրերուն եւ հասարակական միջավայրին: Թարգմանիչը, անշուշտ, կը սխալի Ֆրանց Վերֆէլ ներկայացնելով իբրեւ հայ գրող:

## ՆԱԽԱԲԱՆ

### ՆԱՆՍԻ ՍԱՄԻՐ

Ցրուած ըլլալով ողջ աշխարհի մէջ, հայ գրողներուն համար դժուար է ներկայացնել գրականութիւն մը՝ որ ամբողջ տարողութեամբ եւ անկեղծութեամբ արտացոլէ իրենց կեանքը: Բացի այդ, այս ցրուածութեան պատճառով, ուրիշ հասարակութիւններու մէջ հայերուն խաղացած դերը եւ ունեցած ազդեցութիւնը կը մնայ չփոթեցուցիչ հարց մը:

Հետեւաբար, հայերուն դէմքը խեղաթիւրուած է թէ՛ Միացեալ Նահանգներու մէջ եւ թէ աշխարհի բոլոր ծագերը: Ցեղասպանութեան պատճառով հայերը գաղթեցին Թուրքիայէն, իսկ մենք այս գաղթականները դիտեցինք իբրեւ գգեստավաճառներ, ճարպիկ վաճառականներ եւ անհետացած ցեղի մը մնացորդներ՝ որոնք իրենց հալածանքներուն հատուցում ստանալու համար կը պահանջեն վայրագ վրէժխնդրութիւն իսկ գոյատեւելու համար կ'ընտրեն խորամանկ ուղիներ:

Հայերուն այս կացութիւնը շարունակուեցաւ. անոնք ապրեցան իրենց ցեղային ճգնաժամը, համախմբուեցան կրօնական համայնքի շուրջ եւ մնացին քաղաքականապէս խստաբարոյ: Միաժամանակ անոնք հպարտ մնացին իրենց փառաւոր անցեալով, ուրիշ հարց թէ այս անցեալը նշանակալի ազդեցութիւն չէ թողած իրենց ընդհանուր վարքագիծին վրայ:

Այս բոլորը կը վերաբերի հայերու հին սերունդին: Իսկ նոր սերունդը ընտրեց նոր նշանագիծ մը, որուն շնորհիւ աւելցաւ հայ արուեստագէտներուն, փաստաբաններուն, բժիշկներուն, քիմիագէտներուն, հոգեբաններուն, գիտնականներուն եւ այլ մասնագէտներու քանակը: Իրենց հայրերը, սակայն, տակաւին յուսալքուած կերպով կը շարունակեն դիտել անցեալը: Պատճառը հաւանաբար հին սերունդի հայերուն խորտակուած տրամադրութիւնն է, որ արդիւնքն է ցեղասպանական յիշողութեան եւ ցեղասպանութեան թողած ազդեցութեան: Այս յիշողութիւնը յստակօրէն երեւան եկաւ իրենց գրականութեան մէջ, թէեւ առանց յատուկ կերպով կեդրոնանալու անոր վրայ: Բայց ան նշանաւորուեցաւ իբրեւ երկու հազար տարի երկարող պատմական դէպքերու, ուրիշ բազմաթիւ ազգեր կանխած մշակութային սկզբունքներու, ինչպէս նաեւ արեւմտեան մշակոյթի արժէքներու դիմադրութեան բաղադրիչը:

Եթէ գրողներու նոր սերունդը այնքան չէ ազդուած ցեղասպանութենէն ու գաղթականութենէն, ան դէմ յանդիման կանգնած է աւելի մեծ մարտահրաւէրի մը առջեւ՝ կապուած ընդունուած եւ միացեալ հայերէն գրական լեզուի բացակայութեան հետ, որուն պատճառներն են.

1. Գրողներու իւրաքանչիւր խումբ կ'ապրի տարբեր հասարակութեան մը մէջ՝ ազդուելով անոր բարքերէն ու սովորութիւններէն եւ խօսելով անոր լեզուն: Հետեւաբար, գրականութեան բովանդակութիւնները պիտի տարբերին իրարմէ: Օրինակ, Սպանիա ապրող հայերու գրականութիւնը տարբեր է Գերմանիա, Յունաստան, Միացեալ Նահանգներ, Լատինական Ամերիկա կամ արաբական երկիրներ բնակող հայերէն, հակառակ որ բոլորն ալ ծագումով հայ են:

2. Հայաստանի մէջ ապրող գրողներուն մարտահրաւէրը: Նկատի ունենալով գրականութիւնը կանխորոշող աշխարհագրական եւ մշակութային սահմանները, անոնց գրութիւնները կը գտնուին որոշ շրջածիրի մը մէջ: Ինչպէս նաեւ այս գրականութիւնը միջազգային առումով լայն տարածում չունի:

Թէեւ մօտէն ծանօթ չենք Հայաստանի բնակիչներու գրական հետաքրքրութիւններուն, բայց կրնանք ըսել՝ որ վերջերս հայ գրականութիւնը դարձաւ բազմաթիւ օտար ժողովուրդներու ուշադրութեան կեդրոնը, յատկապէս անոր մարդկային փորձառութիւն արտայայտող հատուածը: Ընդունելի է՝ եթէ այս փորձառութեան մէկ մասը ազդուած ըլլայ հայոց դիմագրաւած անցեալէն: Սակայն յատկապէս ծագումով ոչ հայ ընթերցողները անընդունելի պիտի գտնեն՝ եթէ այս անցեալը կազմէ ամբողջ պատմուածքին բովանդակութիւնը:

Ամէնուր աշխարհի մէջ հայերը աշխոյժ եւ գործունեայ դեր կը խաղան իրենց ապրած հասարակութիւններուն մէջ, նոյնիսկ եթէ տուեալ հասարակութիւնը զանոնք կը դիտէ իբրեւ պատմուածքի մէջ գտնուող տիպարներ: Այս պատճառով հայերը կը փորձեն գծել ինքզինքնուն ճշգրիտ պատկերը, այնպէս ինչպէս կը տեսնենք իրականութեան մէջ կամ այնպէս ինչպէս պէտք է տեսնենք՝ անկախ մեր ունեցած դիրքէն իրենց նկատմամբ: Եւ ասիկա է որ կը ստեղծէ ընտիր գրականութիւն:

Այս պատմուածքները ցոյց կու տան հայերուն մշակութային եւ հասարակական զարգացումը, ինչպէս նաեւ կը բացայայտեն երկու տարբեր սերունդներու գրականութեան միջեւ եղած տարբերութիւնը՝ իւրաքանչիւրը իր միտքերով եւ մտահոգութիւններով, չմոռնալով նաեւ զանազան հասարակային բարքերէ եւ սովորութիւններէ կրած ազդեցութիւնները, ինչպէս վերը նշեցինք:

Արագ ակնարկ մը հայ գրողներուն վրայ ցոյց կու տայ՝ որ մեծ գրող Ուիլիամ Սարոյեան առաջինն էր որ օտարներուն ուշադրութիւնը հրաւիրեց հայ գրականութեան վրայ, քանի որ առաջինն էր որ հետամուտ եղաւ իր գործերուն տարածումը ոչ-հայերէն լեզուով ընթերցողներու շրջանակներու մէջ, որոնք իրենց կարգին գործերը փոխադրեցին արտաքին աշխարհ, հակառակ որ Սարոյեան կարելի չէ ամենատաղանդաւոր գրողը համարել:

Սակայն Սարոյեանի կարեւորութիւնը կը կայանայ այն իրողութեան մէջ՝ որ ան իր գործերուն մէջ փոխանցեց ամէն բան՝ որ կապուած է տարիներ շարունակ հայերուն դիմագրաւած ցեղասպանութեան հետ:

Սարոյեանէն ետք կու գայ Ի. դարու ամենակարեւոր հայ գրողներէն մէկը՝ Ֆրանց Վերֆէլ, հեղինակը *Մուսայ լեռան քառասուն օրերը* վէպին: Այս վէպը հանդիսացաւ վերջին վաթսուն տարիներու ամենաշատ վաճառուած հայկական գիրքը:

Ոճական ազդեցիկ նկարագիրով գրող մըն է Մայքըլ Արլէն, որմէ սնուեցան յետագայ սերունդները, հակառակ որ իր մասին հետաքրքրութիւնը յառաջացաւ ընդամէնը իր կեանքի վերջաւորութեան:

Թէեւ այս երեք գրողներէն ոչ մէկը ընդգրկած ենք մեր գիրքին մէջ, քանի որ բոլորն ալ վիպագիրներ են, բայց անոնց գրականութիւնը այս կամ այն կողմով կարելի է առնչել հայկական կարճ պատմուածքի գլխաւոր ներկայացուցիչ Յակոբ Օշականի հետ, հակառակ որ Օշական ոչ միայն անոնցմէ կը տարբերի իր ոճով, այլեւ կը խուսափի կեդրոնանալ ցեղասպանութեան վրայ, նախընտրելով ռոմանթիքականութիւնն ու կեանքի հետ կապուած խնդիրները: Այս առումով Օշական իր նմանը չունի հայ գրականութեան մէջ: Հետեւաբար, այս ժողովածուին համար Օշականէն ընտրեցինք չորս պատմուածք, որոնք կ'արտացոլեն իր ապրած երկիրներուն՝ Պուլկարիոյ, Եգիպտոսի, Կիպրոսի եւ Երուսաղէմի հայկական կեանքը մինչեւ իր մահը 1948-ին:

Իսկ մնացած չորս պատմուածքները կը պատկանին 1970-ականներու սերունդին: Անոնք եւս գրուած են տարբեր երկիրներու մէջ՝ իւրաքանչիւրը իր հեղինակային դրոշմով: Բոլորն ալ գրուած են անգլերէն լեզուով, ի տարբերութիւն Օշականի պատմուածքներէն՝ որոնք թարգմանուած են հայերէնէ անգլերէն: Օշականի ժամանակաշրջանի հայ գրողներուն մեծամասնութիւնը կը գրէր իր սեփական լեզուով, ուր որ ալ ըլլար բնակավայրը, միշտ նպատակ ունենալով պահպանել ակունքային միասնականութիւնը, գաղափար մը՝ որ անյայտացաւ իրենց լեզուի տկարացումին աղբիւր:

Արաբերէնէ թարգմանեց՝ Հ. Ա.

---

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ԵԹԷ ՄՆԱՆՔ ԵԻՐԱՍԻԱԿԱՆ ՇՐՋԱՆԱԿՈՒՄ, ԻՇԽԱՆԱՓՈԽՈՒԹԻՒՆ ՉԻ ԼԻՆԻ.

### ԱԶԱՏ ԱՐՇԱԿԵԱՆ

Առաջին լրատուական, 26 Դեկտեմբեր - Խորհրդարան մտնելու, քաղաքական գործընթացներին մասնակցելու մեծ ձգտում չկայ: Ծրագիրը քաղաքական է, բայց մենք այդպիսի ամբիցիա չունէինք: Համահայկականութեան գաղափարը, թւում է, օրակարգային է: Համահայկական ծրագրեր կան, եւ այդ ծրագրերի կառավարիչները ընտրւում են՝ ինչպէս պատահի, մենք առաջարկում ենք, որ նրանք ընտրուեն ժողովրդավարական ձեւով՝ ըստ համամասնութիւնների: Առաջարկում ենք ստեղծել Վերին Պալատ, որը կը զբաղուի միայն համահայկական խնդիրներով: *Առաջին լրատուականի* հետ զրոյցում այս մասին ասաց Միացեալ Հայաստան շարժման խորհրդի անդամ Ազատ Արշակեանը:

Նրա կարծիքով՝ եթէ Հայաստան-Արցախ-Սփիւռք համախմբումը տեղի ունենայ, նուիրատուութեան գումարները կը մեծանան, որի կառավարմամբ կը զբաղուի նորաստեղծ պալատը: Արշակեանի խօսքով՝ մինչ այժմ էլ այդ գործընթացն իրականացւում է, բայց դա ինքնագործունէութեան մակարդակի վրայ է - անհրաժեշտութիւն կայ պրոֆեսիոնալ կերպով իրականացնել:

Ա. Արշակեանի խօսքով՝ եթէ Հայաստանը մնայ եւրասիական շրջանակում, իշխանափոխութիւն չի լինի: Նա նաեւ նշեց, որ ինքնամաքրման հանգամանքը չի բացառում, եւ անդրադառնալով Ս. Օհանեանի հետ համագործակցութեանը եւ դիտարկմանը, որ նա հնարաւոր է լինի դաշինքի ղեկավար, սակայն երբեւէ կոշտ գնահատական չի հնչեցրել՝ կապուած Եւրասիական Տնտեսական Միութեան կամ Հաւաքական Անվտանգութեան Պայմանագրի Կազմակերպութեան անդամ լինելու հանգամանքի կամ Ռուսաստանի վարած քաղաքականութեան հետ, Արշակեանը նշեց, որ առաջին դէմքը պէտք է հարմոնիկ լինի, պահպանի հաւասարակշռութիւնը:

---

## ԵԼՔ. ՓԱՇԻՆԵԱՆԻ, ՄԱՐՈՒՔԵԱՆԻ ՈՒ ԱՐԱՄ ՍԱՐԳՍԵԱՆԻ ԴԱՇԻՆՔԻ ԱՆՈՒՆԸ ՅԱՅՏՆԻ Է

Սիվիլնէթ, 23 Դեկտեմբեր - Քաղաքացիական Պայմանագիր, Լուսաւոր Հայաստան եւ Հանրապետութիւն կուսակցութիւններից ձեւաւորուած դաշինքը 2017-ի ապրիլեան ընտրութիւններում հանդէս է գալու Ելք դաշինք անունով: Այդ մասին հաղորդագրութիւն են տարածել Լուսաւոր Հայաստան եւ Քաղաքացիական Պայմանագիր կուսակցութիւնները:

Դեռ Դեկտեմբերի 2-ին այս կուսակցութիւնները յայտարարել էին համագործակցութեան մասին: 10 օր անց նրանք ստորագրեցին համագործակցութեան յուշագիր՝ չբացառելով այլ քաղաքական ուժերի հետ համագործակցութիւնը: Նրանք դաշինքով մասնակցելու են նաեւ Երեւանի աւագանու ընտրութիւններին:

Երեք կուսակցութիւնների դաշինքի անուան մասին գրառում է արել նաեւ Քաղաքացիական Կուսակցութեան առաջնորդ Նիկոլ Փաշինեանը:

# ԵԳԻՊՏԱՀԱՅ ԼՈՒՐԵՐ

– Արդէն երկրորդ տարին է, որ եգիպտահայութիւնը նոր տարուան գիշերը պաշտօնապէս տօնեց Fairmont Heliopolis հինգ-աստղանի պանդոկին մէջ (ակումբի փոխարինումը բարձրաճոխ պանդոկով կը ցուցանշէ համայնքային մտածողութեան չիջումը ի նպաստ սպառողական ու սպառողապաշտ տիրոյթին):

– Դեկտեմբեր 31-ին Գահիրէի Օփերայի մեծ սրահին մէջ եւ Յունուար 1-ին Աղեքսանդրիոյ Սայէտ Տարուիշ սրահին մէջ տեղի ունեցան նոր տարուայ նուագահանդէսներ, մասնակցութեամբ Գահիրէի Սիմֆոնիք Նուագախումբին, ղեկավարութեամբ Ֆելիքս Քարրասքոյի: Մեներգչուհին էր Երեւան ծնած եւ Վիեննա հաստատուած երիտասարդ քոլորաթուրա սոփրանօ Թեհմինէ Զարեան: Յայտագիրը բաղկացած էր Շթրաուս ընտանիքի, Լեհարի, Քալմանի եւ այլոց ստեղծագործութիւններէն:

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՄԵՆՔ ԱՆԲՈՒԺԵԼԻ ՀԻՒԱՆԴՈՒԹԻՒՆ ՈՒՆԵՆՔ. ԱՊՐԻԼԵԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ ԲՈԼՈՐԻ ՄՏԱԾՈՂՈՒԹԵԱՆ ՄԷՋ ՄԵԾ ՅԵՂԱՇՐՋՈՒՄ ՄՏՑՐԵՑ

«2016-ին շատ արագ միմեանց յաջորդեցին տագնապալի դէպքեր, առանձնապէս ուրախալի ցնցումներ չունեցանք», – *Առաջին լրատուականի* հետ զրոյցում, ամփոփելով նախորդ տարին, ասաց դերասանուհի, ռեժիսոր Թամար Յովհաննիսեանը:

Նրա խօսքով՝ 2016-ին տեղի ունեցած ապրիլեան պատերազմը բոլորի մտածողութեան, հոգեբանութեան մէջ մեծ յեղաշրջում մտցրեց: «Դա ցնցում էր, եւ ինչ-որ բան կարծես կոտրուեց մեր մէջ, շրջադարձ եղաւ: Դրանից յետոյ ես չկարողացայ շատ ու շատ հարցերում, մասնաւորապէս ներքին քաղաքականութեան հետ կապուած հարցերում լռել»:

Ինչ վերաբերում է կառավարութեան փոփոխութիւններին, Թ. Յովհաննիսեանը նշեց, որ դա փոփոխութիւններ չի համարում. «Ինձ համար միեւնոյն է, թէ ով է այնտեղ նստած, քանի որ հիմնականում ոչինչ չի փոխւում: Քաղաքական այդ անցուդարձը ձեւականութիւն է»:

Թ. Յովհաննիսեանի խօսքով՝ ապրիլեան եւ յուլիսեան դէպքերը ահռելի ցնցում էին մեր փոքրիկ երկրի, մեր դեպրեսիւ ժողովրդի համար: Նրա խօսքով՝ հայերս անբուժելի խրոնիկ հիւանդութիւն ունենք, դա դեպրեսիան է: Եւ մարդիկ, նրա դիտարկմամբ, այդ դեպրեսիայի հետեւանքով կորցրել են հաւատը, դարձել են անտարբեր, իներտ:

Դերասանուհու խօսքով՝ 2017-ին ամէն ինչ հարթ ու խաղաղ չի անցնի: Նրա ցանկութիւնն է՝ երանի քաղբանտարկեալ տղաները, Սասնայ Ծռերը տուն դառնային:



**ԽՈՀԵՐ**

# ՀԱՅԱՊԱՀՊԱՆՈՒՄ՝ ԱՌԱՆՑ ԱՐԵՒՄՏԱՀԱՅԵՐԷՆԻ՞

### ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

7. Սփիւռքի միութիւններէն մէկը իր հրատարակած քանի մը գիրքերու ցուցահանդէսը կազմակերպած էր: Հրատարակութիւնները կազմուած էին արեւմտահայերէն գիրքերէ եւ հայ մշակոյթը «օտար»-ներուն ներկայացնելու համար «օտար» լեզուով գրուած ծանուցողական բնոյթով, մակերեսային բովանդակութեամբ, գրողի մը հայերէն լեզուի անգիտութեան պատճառով տարօրինակ սխալներով լեցուն գիրքեր: Ներկայ էր ամերիկեան եւ հայաստանեան լրատուամիջոցներուն մէջ ամէն օր իր միութեան հայապահպան անվերջանալի գործունէութիւնները ինքնագովերգող առաջնորդ մը, որ ուժեղ (գրեթէ միապետական) ձայն ունի դպրոցներ բանալ-գոցելու վճռական որոշումներուն մէջ: Իր այցելութեան պահուն ներկայ էի ցուցահանդէսին: Ականատես եղայ, թէ ինչպէս նոյնիսկ ձեւական ակնարկ մը անգամ չնետեց հայերէն հրատարակութիւններուն վրայ: Ընդհակառակը, իր սովորական մեծախօսութիւններով այնքան փառաբանեց իր *չկարդացած* «օտար» գիրքերուն արժէքը, որ միայն կարելի է զարմանալ «օտար»-ներուն հանդէպ տածած իր գուրգուրանքին եւ վստահութեան: Այս կեցուածքը բացառութիւն մը կարելի չէ համարել: Այսինքն, հայապահպանութիւնը մեծ պատուոյ դարձնել, բայց «օտար»-ին հմայքը աւելի վճռորոշ ընկալել:

8. Կը գտնուին արեւմտահայ արուեստագէտներ ու գրողներ՝ որոնք տիրապետելով հանդերձ արեւմտահայերէնին, կը նախընտրեն արտայայտուիլ օտար լեզուով մը, այդ լեզուի միջոցով իրենց արժանանալիք «միջազգային» մտացածին յաջողութեան համար: Այսինքն, կը փնտռեն ինքնատարածում: Նաեւ, անոնք հաստատելով արեւմտահայերէնի «ոչ-միջազգայնութիւնը», ընդունած կ'ըլլան այդ լեզուին ենթակայ-ենթարկուած վիճակը: Արեւմտահայերէնի ինքնասպանութիւն մը, անկասկած:

9. Հայապահպանումի, դպրոցներու, մշակութային միութիւններու ղեկավարներուն մէկ կարեւոր մասը գործարար մեծահարուստներ են, որոնք իրենց անձնական ձեռնարկութիւններով ամբողջութեամբ մխրճուած են դրամատիրական համակարգին մէջ: Դրամատիրական համակարգը կը թելադրէ չուկայ, շուկան կը թելադրէ ծանուցողական գործընթացի միջոցով ստեղծել ինքնապատկեր մը: Դպրոց մը՝ իր արժէքը կը ստանայ ծանուցողական գործընթացէն, այս գործընթացի ամենալայն իմաստով՝ լրատուամիջոցներ, գովազդներ, ղեկավարներու հետ հարցազրոյցներ, ղեկավարներու յայտարարութիւններ, ղեկավարներու հայասէր դիմագիծի ճոխացում ու ստուարում (չեն պակսիր անոնց ծառայող «մտաւորական»-ներու հոյլերը) եւ այլն: Դպրոցներ կրնան գոյատեւել՝ եթէ ղեկավարները դրամատիրական ծանուցողական համակարգի ընդմէջէն ուզեն ստեղծել դպրոցներուն հայապահպան դերակատարութեան բացառիկ պատկերը, դպրոցներ կրնան փակուիլ՝ եթէ ղեկավարները աւելորդ գտնեն հայապահպան պատկերը ստեղծել: Երկու օրինակներն ալ կան բացայայտ դրսեւորումներով: Ամբողջ հարցը խտացած է պատկերաստեղծութեան մէջ:

10. Կը գտնուին հայապահպանութիւնը կռուախնձոր դարձուցած որոշ դպրոցներ՝ ուր աշակերտելու համար ամսավճարը կը հասնի հազար ամերիկեան տոլարի: Դասակարգային վտանգաւոր միտում մը կը մտնէ արեւմտահայերէնի գործածութեան մէջ, դասակարգ մը՝ որուն կենսամտածողութեան համար կարեւոր դեր կը խաղան եսը, անձնապաշտութիւնը, շուկան, անձնական արտաքին տեսքը:

11. Ունինք ընտրական զեղծարարութեամբ, ընդդիմադիր (*իրապէս* ընդդիմադիր եւ ոչ թէ ընդդիմադիր ձեւացնող ու իշխանութիւնը ամրապնդող) կուսակցութիւնները ճնշելու ճանապարհով, Մարտ 1-ի ողբերգական դէպքերու գործադրութեամբ իշխանութեան հասած երկիրի ղեկավարութիւն մը: Ունինք այս համակարգին մաս կազմող եւ այս համակարգը հաստատող սփիւռքի նախարարուհի մը՝ իր անընդհատ հայրենասիրութիւն արտածորող շրջապատով: Եւ ահաւասիկ, այս ոչ-ժողովրդավարական, հակա-ժողովրդավարական միջոցներով գլուխ հասած նախարարուհի մը պիտի որոշէր եւ պարգեւատրէր սփիւռքահայ հայապահպանողներուն ամենէն արժանաւորները: Հակա-ժողովրդավարութեան արժէքը պիտի հաւասարէր հայապահպանութեան արժէքին հետ: Հայապահպան ընտրեալները, իրենց կարգին, ամրապնդած պիտի ըլլան հակա-ժողովրդավարութիւնը եւ քաջալերած զայն: Աւելին: Հակա-ժողովրդավարական, ուրեմն՝ պարտադրողական միջավայրի մէջ ծնունդ առած այս գնահատականներն ու թուղթէ վկայականները, մեզի՝ ընկալողներուս համար, պիտի դառնան պարտադրաբար ընկալելի եւ անառարկելիօրէն ընդունելի, նոյնիսկ եթէ մեր դատողութիւնը, լռողութիւնը, համոզումը, ակնյայտօրէն տեսածը, բացայայտօրէն ունկնդրածը ուրիշ բան կը թելադրէ մեզի:

12. Հայապահպանումը գլխաւորաբար կը նեկայացուի իբրեւ հայ ուսուցիչի պարտաւորութիւն. անընդհատ կը լսենք՝ ուսուցիչ, հայ ուսուցիչ, ուսուցիչի պատրաստութիւն (ո՞վ պիտի պատրաստէ պատրաստողը), ուսուցիչի վերապատրաստութիւն (ո՞վ պիտի վերապատրաստէ վերապատրաստողը), վերահսկողութիւն ուսուցիչին վրայ (ո՞վ պիտի վերահսկէ վերահսկողը): Քիչ ուշադրութիւն կը յատկացուի մշակոյթին՝ իբրեւ հայապահպանութիւն: Մշակոյթ՝ իր ամենալայն իմաստով, հեռու երգ-պար-տարազ եւ քանի մը հայրենասիրական բանաստեղծութիւն ու հերոսական պատմութիւն – փառաւոր անցեալ պատումէն, իբրեւ մարդկային մտածողութիւնը եւ ապրելակերպը ձեւաւորող ու անոր ներկայ ու կենդանի փորձառութիւնը հիմնաւորող գիտելիք:

13. Արեւմտահայերէնը կարելի է կենդանի պահել նուազագոյն դասագիրքով, նուազագոյն ուսուցիչով, նուազագոյն հայապահպանումով, նուազագոյն դրամով: Կը բաւէ որ շրջապատը՝ ընտանիքը, դպրոցը եւ ակումբը, ըլլայ արեւմտահայերէն խօսող: Այսինքն, անձը համերաշխ ըլլայ իր ներքին բնութեան հետ: Բայց ասիկա ինչպէ՞ս կարելի է գործադրել, եթէ որոշ գաղութներու մէջ միութիւններու ղեկավարներ եւ դպրոցի տնօրէններ շատ վատ ու խառնակ հայերէն կը խօսին, երբ որոշ ձեռնարկներու բեմերէն կը հնչէ անմակարդակ հայերէն, իսկ երբեմն, երբ կը հնչէ «մաքուր» արեւմտահայերէն, ան աւելի գինուորագրելու յատկութիւն ունի քան միտք ու յոյզ շարժելու:

14. Ստեղծուելով հայապահպանող/ հայապահպանուող երկուութիւն մը, գործընթացէն ամբողջապէս դուրս կը մնան հայապահպանուողներուն կարծիքը: Հայապահպանող ընտրելախաւը ամէն բանէ տեղեակ է, գիտէ թէ ինչ պէտք է հայապահպանուողին համար, գիտէ թէ ինչ կը փափաքի ունենալ հայապահպանուողը: Հայապահպանուողները կը վերածուին զանգուածային ամբոխի մը՝ որ իր հայութեան համար ցմահ պէտք ունի հայապահպանողին, առանց իրաւունք ունենալու արտայայտելու իր տեսակէտները:

Վերջապէս, ինչպէս նշեցի, այս հարցերը միանշանակ չեն եւ միահամուռ կերպով չեն գործեր սփիւռքի իւրաքանչիւր համայնքի մէջ: Կը գտնուին նաեւ արեւմտահայերէնը իրենց մտածելակերպի հիմքը դարձուցած բազմաթիւ անձեր եւ քանի մը կարեւոր հիմնարկներ, ինչպէս՝ Պէյրութի Հայկազեան Համալսարանը: Բայց, արեւմտահայերէնի վտանգի իրողութիւնը աչքի առջեւ ունենալով, հարցի բացասական կողմի ազդեցութիւնը եղած է աւելի որոշիչ: Իսկ յստակ է, որ արեւմտահայերէնի անկումը պէտք է փնտռել այս եւ նման հանգամանքներու մէջ, հանգամանքներ՝ որոնք նոյնքան իրական են որքան դիւրութեամբ սրբագրելի, եթէ գործէ գիտակցական կամքը:

Արեւմտահայերէնը վտանգուած է: Ինչպէ՞ս կրնայ հայապահպանութիւնը յաջողած ըլլալ...:

(Վերջ 4)

ՁԱՅՆԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՄԵՆԱԴԱԺԱՆ ՎԻՐՈՒՍԸ ԾԱՒԱԼՒՈՒՄ Է

**Հ. – Ըստ Ձեզ՝ ինչո՞վ է պայմանաւորուած նախընտրական դաշինքների մրցավազքը: Նախորդ ընտրութիւններին նման բան չի եղել: Նոր ուժեր են մտնում խաղի մէջ: Հնարաւո՞ր է արդեօք սա ուղղորդուած լինի:**

Պ. – Կարծում եմ քաղաքական կուսակցութիւնները հասկանում են, որ հէնց որ նոր Սահմանադրութիւնը սկսի աշխատել, Հայաստանի բազմաքանակ քաղաքական կուսակցութիւնների գոյութիւնն արդէն միանգամայն անիմաստ է դառնալու: Նրանց մի մասը ջանում է արագ ինքնահաստատուել, մի մասն էլ չտապում է դաշինքների ձեւով դառնալ «միւս բեւեռ»: Այս ընտրութիւնները դրա համար գլխաւոր հնարաւորութիւնն են: Յետոյ չատ աւելի դժուար կը լինի:

**Հ. – Հնարաւո՞ր է այս դաշինքները իրական այլընտրանքը չէզոքացնելու նպատակ ունեն:**

Պ. – Ձեմ կարծում: Կրկնում եմ՝ մի մասը «միւս բեւեռի» յաւակնութիւն ունի, եւ դրանով ինքնին այլընտրանքի տարբերակի նպատակ ունեն:

**Հ. – Ամփոփուեց կառավարութեան 100 օրը: Ինչպէ՞ս էք գնահատում, դրական որեւէ փոփոխութիւն արձանագրե՞լ էք:**

Պ. – Կառավարութեան նոր վարչապետը հարիւր օր առաջ ընդհանուր «դրական փոփոխութիւնների» խոստումից աւելին չի տուել: Այսպիսի խոստում տուել են բոլոր վարչապետները: Ոմանք, ինչպէս Տիգրան Սարգսեանն էր, նոյնիսկ ծրագրերից էր խօսում՝ հայկական էթնոսֆերայի կապիտալ, կառավարման նոր սկզբունքներ... Յետոյ բոլոր ձախողումները դրուեցին ֆինանսական ճգնաժամի վրայ: Արտաքին աշխարհի հետ նուազագոյն տնտեսական կապերով Հայաստանի ծանրագոյն տնտեսական ցուցանիշները ներկայացուեցին որպէս այդ ճգնաժամի հետեւանք: Նոր վարչապետը ոչ առհասարակ, ոչ կոնկրէտ 2017-ի բիւջէով ծրագրային ռէալ փոփոխութիւն չի առաջարկել: Կադրային փոփոխութիւնների ազդեցութիւնը դեռեւս տեսանելի չէ: Ինչպէ՞ս կարող էին դրական փոփոխութիւններ արձանագրուել: Մի քանի «հին գայլերի» պաշտօնանկութիւններով հարց չի կարող լուծուել: Եթէ նրանց փոխարինողները նոյնիսկ «նոր գայլեր» չեն, միեւնոյնն է՝ «փոքր մարդկանց» համար հնարաւորութիւններ չեն կարող առաջանալ առանց ծրագրային փոփոխութիւնների: Բայց գլխաւորը՝ առանց օրէնքի կիրառման: Քանի՞ օբիեկտիւ դատական որոշման մասին էք լսել պաշտօնեաներից եւ նրանց հովանաւորեալներից իրաւազրկուած քաղաքացիների օգտին:

**Հ. – 2016-ն ենք ամփոփում: Այս տարուայ կարեւորագոյն առանձնայատկութիւնը, ըստ Ձեզ, ո՞րն էր:**

Պ. – Երկրի մակարդակով՝ ա/պատերազմը վերսկսուեց եւ վերահաստատուեց հայրենիքն ամէն գնով պահելու Հայաստանի քաղաքացիների կամքը: Բ/տեղի ունեցաւ քաղաքացիների զինուած ըմբոստութիւն, որն իշխանութիւններն առայժմ անուանում են ահաբեկչութիւն, բայց այն իրականում Ղարաբաղի խնդրի կարգաւորման ընթացիկ ծրագրերի դէմ եւ իրաւազրկուած քաղաքացիների պաշտպանութեան փորձ էր եւ յետագայում այդպէս էլ կ'արձանագրուի մեր պատմագրութեան էջերում: Սա նաեւ քաղաքական կուսակցութիւնների անզօրութեան հաստատումն էր:

(http://www.lragir.am/index/arm/0/interview/view/145486)



## ՎԱՐԴԱՆ ԱՅԳԵԿՑԻԻ ԱՌԱԿՆԵՐԷՆ

### ԾՆԱՒ ԷՇՈՒՆ ԹՈՌՆԻԿԸ

Էշուն աւետիս տուին, թէ.

– Ցնծա՛ եւ ուրախացիր եւ մեծ ընծայ պարգեւէ, որովհետեւ թոռնիկդ ծնաւ:

Եւ էշը ըսաւ.

– Վա՜յ ինծի, բարեկամներ, եթէ հարիւր թոռնիկ ալ ծնի, չեն թեթեւցներ ծանրութիւնը իմ մէջքի բեռան:



## 2016-Ի ԴԱՍԵՐԸ

նախկինի պէս չարունակում է վայելել քաղաքացիների հոգածութիւնը, բանակի կառավարման օղակների հանդէպ անվստահութիւնն այսօր գտնւում է չափազանց բարձր մակարդակի վրայ:

2016 թուականի Յուլիսի 17-ին Սասնայ Ծռեր խումբը գրաւեց Երեւանի ՊՊԾ գունդը եւ յայտարարեց զինուած ապստամբութիւն սկսելու մասին: Խմբի հիմնական պահանջներից էին Սերժ Սարգսեանի հրաժարականը եւ Արցախի ամբողջականութեան պահպանումը՝ բացառելով հողերի յանձնման որեւէ հնարաւորութիւն: «Եկել է ազատութեան, արժանապատուութեան, արդարութեան եւ իրաւունքի ժամանակը», ասւում էր խմբի տարածած յայտարարութեան մէջ: ՊՊԾ գունդը գրաւուած մնաց 14 օր, զոհուեց երկու ոստիկան, կողմերը տուեցին վիրաւորներ, Սարի Թաղում եւ Խորենացի փողոցում ընթացող ցոյցերի ժամանակ ոստիկանութիւնը կիրառեց աննախադէպ բռնութիւններ, որոնց արդիւնքում վիրաւորուեցին բազմաթիւ քաղաքացիներ, լրագրողներ:

Յուլիսեան դէպքերը սոսկ օրուայ բռնկուած պոռթկումներ չէին եւ պայմանաւորուած չէին միայն մէկ հանգամանքով: Դրանք տարիներ չարունակ կուտակուած անվստահութեան, սոցիալական անարդարութեան եւ բեւեռուածութեան դրսեւորումներն էին: Բազմաթիւ սովորած կամ չսովորած դասերի արդիւնքներն էին, որոնք իրենց հերթին տուեցին նորանոր դասեր:

**Վերադառնալով սկզբին**

Պատմութեան դասերը պարտադիր չէ, որ բերեն առաջընթացի եւ զարգացման: Ընդհակառակը՝ կարող են խորացնել ճգնաժամն ու յանգեցնել լճացման: Եկէք պատկերացնենք երկու տարբեր իրականութիւններ. առաջինում իշխանութիւնները 2016-ի դասերից կատարել են սխալ հետեւանքներ, երկրորդում՝ ճիշտ հետեւանքներ: Նոյն դասը՝ տարբեր արդիւնքներով:

**Իրականութիւն թիւ 1**

Դաս Ա – Ապրիլեան դէպքերն ի ցոյց դրեցին բանակի բազմաթիւ խնդիրներ, որոնք հետեւանքն էին մեր (իշխանութեան) գործողութիւնների՝ կոռուպցիա, անարդիւնաւէտ կառավարում, պետական միջոցների մսխում եւ այլն: Զնայած այս հանգամանքին, պատերազմի օրերին հասարակութիւնը աննախադէպ կերպով համախմբուեց բանակի չուրջը՝ սեփական ուժերով եւ միջոցներով աջակցելով բանակին, յաճախ կատարելով այն, ինչ պէտք է անէինք մենք: Հասարակութիւնն աւելի կազմակերպուած էր, քան պետութիւնը: դա լաւ է: Ուստի, հարկաւոր է չարունակել նոյն կերպ, սակայն մշակել առաւել հմուտ եւ խորամանկ ռազմավարութիւն, որպէսզի հասարակութիւնը չյայտնաբերի մեր բացթողումները եւ չարունակի նոյն հոգածութիւնը ցուցաբերել բանակին՝ փոխհատուցելով մեր բացթողումները:

**Իրականութիւն թիւ 2**

Դաս Ա – Ապրիլեան դէպքերը ի ցոյց դրեցին բանակի բազմաթիւ խնդիրներ, որոնք հետեւանքն էին մեր (իշխանութեան) գործողութիւնների՝ կոռուպցիա, անարդիւնաւէտ կառավարում, պետական միջոցների մսխում եւ այլն: Զնայած այս հանգամանքին, պատերազմի օրերին հասարակութիւնը աննախադէպ կերպով համախմբուեց բանակի չուրջը՝ սեփական ուժերով եւ միջոցներով աջակցելով բանակին, յաճախ կատարելով այն, ինչ պէտք է անէինք մենք: Հասարակութիւնն աւելի կազմակերպուած էր, քան պետութիւնը. դա վատ է: Ուստի, հարկաւոր է վերջ տալ այս քաղաքականութեանը, մշակել առաւել հեռահար եւ պետականամէտ ռազմավարութիւն, որպէսզի հասարակութիւնը վերջնականապէս չհիասթափուի բանակից եւ չարունակի նոյն հոգածութիւնը ցուցաբերել վերջինիս նկատմամբ՝ լրացնելով մեր ջանքերը:

**Իրականութիւն թիւ 1**

Դաս Բ – Յուլիսին ՊՊԾ գնդի գրաւումը լրջագոյն մարտահրաւէր էր մեր իշխանութեան համար: Մենք պէտք է գիտակցենք, որ եթէ կեղծում ենք ընտրութիւնները, խորացնում ենք աղքատութիւնը, մեծացնում ենք անարդարութիւնը, ուրեմն հարկաւոր է միաժամանակ ամրապնդել հասարակութեանը վերահսկելու մեխանիզմները, որպէսզի կանխարգելենք նման հետեւանքները: Հարկաւոր է սահմանափակել մամուլի եւ խօսքի ազատութիւնը, որպէսզի մեր իշխանութեան համար վտանգաւոր գաղափարները դադարեն չրջանառուել: Հարկաւոր է կատարել իմիտացիոն բարեփոխումներ, մի քանի պաշտօնեաների ժամանակաւորապէս հեռացնել աշխատանքից, ստեղծել փոփոխութիւնների պատրանք՝ հասարակութեան մօտ առաջացնելով դրական սպասումներ ընտրութիւններին ընդառաջ: Ընտրակեղծիքները պէտք է դարձնել առաւելս խորամանկ՝ բացառելու համար քաղաքացիների իրական կամարտայայտութիւնը: Մեր իշխանութիւնը թանկ է ամէն ինչից:

**Իրականութիւն թիւ 2**

Դաս Բ – Յուլիսին ՊՊԾ գնդի գրաւումը լրջագոյն մարտահրաւէր էր մեր պետութեան համար: Մենք պիտի գիտակցենք, որ եթէ կեղծում ենք ընտրութիւնները, խորացնում ենք աղքատութիւնը, մեծացնում ենք անարդարութիւնը, հնարաւոր չէ երկար ժամանակ վերահսկել կուտակուող հասարակական դժգոհութիւնները, որոնք ի վերջոյ յանգեցնում են նման հետեւանքների: Հարկաւոր է ապահովել մամուլի եւ խօսքի ազատութիւնը, որպէսզի մեր պետութեան համար օգտակար գաղափարները ակտիւօրէն չրջանառուեն եւ զարգանան: Հարկաւոր է վերջ տալ իմիտացիոն բարեփոխումներին, մեղաւոր պաշտօնեաներին հեռացնել աշխատանքից եւ ենթարկել պատասխանատուութեան, կատարել իրական փոփոխութիւններ՝ հասարակութեան մօտ առաջացնելով դրական սպասումներ ընտրութիւնների հանդէպ: Ընտրութիւնները պէտք է դարձնել առաւելս արդար՝ ապահովելու համար քաղաքացիների իրական կամարտայայտութիւնը: Մեր պետութիւնը թանկ է ամէն ինչից:

**Իրականութիւն թիւ 1**

Դաս Գ ...

*Անալիտիկոն*, http://theanalyticon.com/?p= 8608

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1783 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 9 ՓԵՏՐՈՒԱՐ 2017 ՀԱՏԸ ՉԵՐՔԷ 75 Ե. ԴԻԿ.

عدد رقم ١٧٨٣ الخميس ٩ فبراير ٢٠١٧


## ՍՓԻՒՌՔԻ ԻՐԱՒՈՒՆՔՆ Է ՄԱՍՆԱԿՑԵԼ ԱԶԳԱՅԻՆ ԵՒ ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆ ԻՐԱԴԱՐՁՈՒԹԻՒՆՆԵՐԻՆ. ԱՐՍԻՆԷ ԽԱՆՃԵԱՆ

**ԼԻԱՆԱ ԱՌԱՔԵԼԵԱՆ**

Կանադահայ դերասանուհի Արսինէ Խանճեանը *Tert.am*-ի հետ զրոյցում անդրադարձել է «Քաղաքացիական դիտորդ» նախաձեռնութեանն իր մասնակցութեանը, Հայաստանում Ապրիլին անցկացուող ընտրութիւնների վերահսկողութեան խնդիրներին:

**– Ի՞նչ նոր հանրայայտ անուններ կարող են ներգրաւուել Սփիւռքից վերահսկողութեան այս նախաձեռնութեանը:**



*Արսինէ Խանճեան*

– Չգիտեմ՝ ում նկատի ունէք ճանաչուած ասելով, բայց այդ անունները չատ լաւ գիտենք. Սերժ Թանկեան, Վահէ Պէրպէրեան, Ատոմ Էգոյեան: Մենք սկսել ենք ձեւաւորել այս գաղափարը, որ սփիւռքը մեծ մասնակցութիւն ունենայ այս գործընթացին:

**– Կարծում էք՝ Հայաստանը այդքան ներուժ չունի՞ վերահսկելու ընտրական գործընթացը եւ անհրաժեշտութիւն էք տեսնում, որ սփի՞ւռքը ներգրաւուի:**

– Հայաստանում այնքան իրաւունքների խախտումներ են գործադրւում, եւ քաղաքացիական միջավայրի մէջ չատ անուններ կան, ովքեր կը ցանկանան դիտորդ լինել, սպառնալիքներ են ստանում իշխանութեան կամ ուրիչ խմբաւորումներից, որից կարող են տուժել իրենք կամ իրենց ընտանիքը: Իսկ սփիւռքն իր մասնակցութեամբ չատ աւելի հանգիստ է, կաչկանդուած չէ: Հայաստանի քաղաքացու իմանալու կամ չիմանալու հարց չէ, Սփիւռքի իրաւունքն է մասնակցելը ազգային եւ քաղաքացիական իրադարձութիւններին: Ամենակարեւորը, նախեւառաջ, թիկունք լինելն է Հայաստանի այդ քաղաքացիական հասարակութեանը, եւ օրէնքի սահմաններում մեր իրաւունքն է մասնակցութիւն ունենալը:

**– Ձեր ամուսին Ատոմ Էգոյեանը ի՞նչ նկատի ունէր՝ ասելով, որ անհրաժեշտութեան դէպքում պատրաստ էք նաեւ փողոց դուրս գալ, արդեօք սա վերաբերում է Ձեզ բոլորի՞դ:**

– Ատոմը ասել է, որ պէտք է մասնակից դառնալ ընտրութիւնների գործընթացին եւ եթէ պէտք է դուրս գալ, նաեւ այդ ձեւով մասնակցութիւն կ'ունենանք: Ուշադիր պէտք է լինել այդ բառերին, քանի որ սխալ տրամադրուածութիւն կարող է առաջանալ: Եթէ քաղաքացիները դուրս եկան յստակ պատճառներով եւ օրէնքի սահմաններում իրենց բողոքը արտայայտեցին, ապա մենք թիկունք կը լինենք եւ կը լինենք քաղաքացու կողքին:

**– Ի՞նչ կարծիք ունէք ընտրութիւնները Ապրիլի 2-ին անցկացնելու վերաբերեալ, առաւել եւս որ վերջերս յայտնի դարձաւ, որ այդ օրը հնարաւոր է փոխուի:**

– Ես զարմացայ, որ հիմա, երբ ընտրութիւններին գրեթէ երկու ամիս է մնացել, յանկարծ յիշուեց, որ Ապրիլի երկուսը կարեւոր ամսաթիւ է մեզ համար: Ի սկզբանէ այդ օրը նկատի ունենալով այլ օր պէտք է նշանակուէր ընտրութիւնները: Պարզապէս ցանկանում եմ ասել, որ ընտրութիւնների օրը փոխելը, այլ փոփոխութիւններ կ'առաջացնի: Սփիւռքում շատերը կը մտածեն, որ օրուայ փոփոխութիւնը սփիւռքին չուաբեցնելն է, որովհետեւ այդ մարդիկ, որոնք պէտք է մասնակցեն եւ դիտորդ լինեն, արդէն իրենց արձակուրդը, Հայաստան գալը կազմակերպել են, եւ վերջին պահին այսպիսի փոփոխութիւնը պէտք է խանգարի իրենց մասնակցութեանը: Պէտք է չատ բաներ խախտուեն այս որոշման ուշացման պատճառով եւ այս որոշման ուշացումը ցոյց կը տայ, որ իշխանութիւնը պրոֆեսիոնալ ձեւով իր պարտականութիւնները չի կատարում, քանի որ հիմա չէր, որ պէտք է յիշէին, որ Ապրիլի երկուսը կարեւոր օր է:

**– Եւ վերջում՝ ֆիլմում Ձեր մերկ նկարահանման վերաբերեալ տարբեր քննարկումներ եղան, ի՞նչ կ'ասէք այդ քննադատութիւնների վերաբերեալ:**

– Դա ես ծիծաղելի եւ ցաւալի եմ համարում: Ես չատ հպարտ եմ իմ գործունէութեամբ եւ այդ ֆիլմը համաշխարհային լաւ ընդունուած կինոռեժիսորի գործ է, տեղի է ունեցել 25 տարի առաջ, ես չատ հպարտ եմ այդ մասնակցութեամբ: Երեւի չեն հասկանում ինչ է արուեստի ազատ մասնակցութիւնը, ինչպէս նաեւ չեն հասկանում, որ ընտրութիւններին քաղաքացու ազատ մասնակցութիւնն իր իրաւունքն է: Ըստ երեւոյթին, նոյն հարթութեան մէջ է, որը ես ծիծաղելի եմ համարում:

***ԹԵՐԹ**.am*, 6 Փետրուար 2017

## ՀԱՐՑԵՐ ՈՒՂՂՈՒԱԾ ՍՓԻՒՌՔԻ ՀԱՆՐԱԾԱՆՕԹ ՄԵՐ ՀԱՅՐԵՆԱԿԻՑՆԵՐԻՆ, ՈՎՔԵՐ ՈՂՋՈՒՆԵԼԻ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԻՒՆ ԵՆ ՑՈՒՑԱԲԵՐՈՒՄ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԻՆՔՆԻՇԽԱՆ ՇԱՀԵՐԸ ՊԱՀՊԱՆԵԼՈՒ ԵՒ ԶԱՐԳԱՑՆԵԼՈՒ ՀԱՄԱՐ ԵՒ ՑԱՆԿԱՆՈՒՄ ԵՆ ԴԻՏՈՐԴԱԿԱՆ ԱՌԱՔԵԼՈՒԹԻՒՆ ԻՐԱԿԱՆԱՑՆԵԼ ԱՊՐԻԼԻ 2-Ի ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԻՆ

Ծանօթ չլինելով Հայաստանում ընտրութիւնները կեղծելու բոլոր մեխանիզմներին՝ դուք ձեր սահմանափակ դիտորդական միջոցներով հնարաւորութիւն չունէք դիտարկելու բոլոր ընտրախախտումները: Հիմնական կեղծիքների մեծ մասը ռեժիմը բնականաբար կ'իրականացնի ձեր աչքից հեռու: Եթէ դուք արտաքուստ լուրջ խախտումներ չտեսնէք, ի՞նչ գնահատական էք տալու ընտրութիւններին՝ որ ամէն ինչ օրինակա՞ն է անցել, եւ այդպիսով ռեժիմին նուիրէք լեգիտիմութիւն:

Շատերի համար, ովքեր դեռ ապրում են Հայաստանում, դուք կարելի է ասել այն վերջին յոյսն էք, ով ուշացած հասնում է օգնութեան: Գիտակցո՞ւմ էք արդեօք այն հսկայական պատասխանատուութիւնը, որ ձախողման դէպքում դուք նոյնպէս մեղադրանքի ձեր բաժինը կ'ունենաք մարդկանց անիրականալի խոստումներով յուսախաբ անելու համար:

Չէ՞ք գտնում արդեօք, որ մի երկրում, որտեղ երեք տասնեակից աւելի քաղբանտարկեալ կայ, «ժողովրդավարական արդար ընտրութիւններ» հասկացութիւնը ծաղրանք է ժողովրդավարութեանը: Արդեօ՞ք դուք պատրաստ էք ընդունել այն փաստը, որ քաղբանտարկեալներով լեցուն երկրում ազատ եւ թափանցիկ ընտրութիւններ չեն կարող տեղի ունենալ:

Աշխարհահռչակ տնտեսագէտ Տարօն Աճէմօղլուն նոյնպէս զգուշացրել է, որ Սփիւռքը անուղղակիօրէն լեգիտիմութիւն է հաղորդում ռեժիմի անօրինականութիւններին, երբ ունենալով հանդերձ բարի եւ առաքինի նպատակներ, ակամայ ներգրաւուում է ռեժիմի աշխատանքներին: Դուք արդեօք ճի՞շտ էք համարում մասնակցել չընտրուած նախագահի կեղծ հանրաքուէով ընդունուած սահմանադրութեամբ նախատեսուած ընտրութիւններին, եւ դրանով լեգիտիմութիւն պարգեւել անօրինական ռեժիմին:

Սիրելի աշխարհասփիւռ հայրենակիցներ:

Հայկական Վերածնունդ համասփիւռքեան կազմակերպութիւնը մեծ համակրանք է տածում ձեր բոլորի նուիրական եւ հայրենանուէր աշխատանքի նկատմամբ: Մենք ողջունում ենք մեր Հայրենիքի ներքին խնդիրների լուծմանը ուղղուած մեր հանրածանօթ հայրենակիցների նախաձեռնութեանը: Մենք խրախուսում ենք բոլոր սփիւռքահայերին, որ իրենց ներկայութեամբ սատար կագնեն ՀՀ շարքային քաղաքացու հոգսերին եւ իրենց մաշկի վրայ զգան մարդու իրաւունքների ոտնահարումների գոնէ մի չնչին մասը, որոնց տակ կռած պայքարում է մեր ժողովուրդը: Սակայն միաժամանակ կոչ ենք անում բոլորին՝ սովորել ոչ թէ սեփական սխալներից, այլ ունկնդիր լինել ժողովրդի ձայնին, ով վերջին 20 տարիների ընթացքում արտագաղթի ճանապարհը բռնելու փոխարէն մաքառել է իր սահմանադրական իրաւունքների եւ իր ընտանիքի տարրական ապահովութիւնը պահպանելու համար:

Իւրաքանչիւր հայորդի, ով լծուել է Հայաստանի Հանրապետութեան կայացման եւ զարգացման աշխատանքներին, պարտաւոր է գիտակցել, որ իր իւրաքանչիւր գործունէութիւն պէտք է ուղղուած լինի պետականութեան եւ ինքնիշխանութեան կայացմանը եւ չգիտակցելով լեգիտիմութիւն չի հաղորդում Հայաստանի անօրինական ռեժիմին եւ դրանով նպաստում նրա ամրապնդմանը: Հետեւաբար՝ հիմք ունենալով վերոյիշեալը, մենք մեր հայրենակիցներին կոչ ենք անում մտորել այս կարեւոր հարցադրումների շուրջ եւ իրենց դիրքորոշումը պարզել հանրութեան համար:

Հայաստանի նախագահական ընտրութիւնները եւ սահմանադրական հանրաքուէն եղել են կեղծուած եւ անօրինական: Ժողովրդի բառերով արտայայտուած՝ չընտրուած նախագահի չընդունուած սահմանդրութեանը մասնակցելը անօրինական է: Այս պայմաններում սփիւռքահայ անհատների կողմից խանդավառ մասնակցութիւնը միայն կը նպաստի ռեժիմի անօրինական քայլերի օրինականացմանը, հիասթափութեան նոր ալիք եւ արտագաղթի նոր թափ հաղորդելով երկրին: Արդեօ՞ք դուք պատրաստ էք կրել այսպիսի ծանր պատասխանատուութիւն:

Վստահ ենք, ձեր նպատակները վեհ են եւ ամենեւին միտուած չեն օժանդակել անօրինական ռեժիմին: Սակայն եկէք լաւ հասկանանք, որ ապօրինի սահմանադրութեամբ չի կարելի օրինական ընտրութիւններ կազմակերպել: Նմանապէս, քաղբանտարկեալներով լեցուն երկրում հնարաւոր չէ ժողովրդավարական ընտրակարգ հաստատել:

Նկատի ունենալով ստեղծուած իրավիճակը, մեր սփիւռքի հայրենակիցներին կոչ ենք անում՝ յստակեցրէք եւ վերանայէք ձեր դիրքորոշումը: Իսկ եթէ, այնուամենայնիւ, կ'որոշէք մասնակցել Ապրիլի 2-ի ընտրութիւններին, ապա կը խնդրէինք յիշել, որ դա այն օրն է, երբ մէկ տարի առաջ մեր խիզախ հերոսները իրենց արեան գնով կանխեցին Արցախի բռնազաւթումը:

Դրա փոխարէն կոչ ենք անում. ձեր ներկայութեամբ արթնացրէք եւ ոգեշնչէք ամբողջ Սփիւռքը եւ Հայաստանի մեր հայրենակիցներին, որպէսզի բոլորս միաւորուած ոտքի կանգնենք եւ հասնենք ռեժիմի հեռացմանը, փրկենք մեր Հայրենիքի անկախութիւնը, եւ օգնենք մեր ժողովրդին տէր կանգնել իր ոտնահարուած իրաւունքներին: Որպէս առաջին քայլ կոչ ենք անում՝ ռեժիմից պահանջէք ազատ արձակել բոլոր քաղաքական բանտարկեալներին: Այս հարցում պատրաստ ենք ձեզ հետ քննարկել, լսել ձեր առաջարկութիւնները եւ աջակցել ձեզ:

**ՀԱՅԿԱԿԱՆ ՎԵՐԱԾՆՈՒՆԴ ՀԱՄԱՍՓԻՒՌՔԵԱՆ ՇԱՐԺՈՒՄ**

*26 Յունուար 2017*

# ՍՓԻՒՌՔԸ ՊԷՏՔ Է ՀԱՍԿԱՆԱՅ ԻՐ ԴԵՐԸ, ԵՐԲ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՌԵԺԻՄԻՆ ԼԵԳԻՏԻՄՈՒԹԻՒՆ Է ՀԱՂՈՐԴՈՒՄ. ՏԱՐՕՆ ԱՃԷՄՕՂԼՈՒ

ՊԱՏՐԱՍՏԵՑ ԿԱՐԷՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ

Սեպտեմբերի 9-ին Տորոնտոյում գործող Հայկական Վերածնունդ (Armenian Renaissance) կազմակերպութիւնը հրաւիրել էր համաժողով՝ նուիրուած Սփիւռքի դերին Հայաստանում: *Հայաստանը եւ Սփիւռքը Սամնայ Ծռերից յետոյ* խորագիրը կրող համաժողովին սկայպով միացաւ նաեւ Մասաչուսէթսի տեխնոլոգիական համալսարանի պրոֆեսոր Տարօն Աճէմօղլուն:

Տարօն Աճէմօղլուն աշխարհի տասը ամենաչատ վկայակոչուող տնտեսագէտներից է: Նրա եւ Հարվարդի պրոֆեսոր Ջէյմս Ռոբինսոնի հեղինակած *Ինչու են պետութիւնները ձախողում* (Why Nations Fail) գիրքը աշխարհում ամենաչատ վաճառուող տնտեսագիտական աշխատութիւններից է: Աճէմօղլուն խօսեց պետութիւնների յաջողութիւնների եւ ձախողումների պատճառների մասին, անդրադարձաւ Հայաստանի խնդիրներին, հնարաւորութիւններին եւ Սփիւռքի դերին: Աճէմօղլուի ելոյթից հատուածներ թարգմանաբար ներկայացուած են ստորեւ.

**1. Սամնայ Ծռերը խորքային խնդրի ընդամէնը ախտանիշն է**

Սամնայ Ծռերը խորքային խնդրի ընդամէնը ախտանիշն է: Չլինելով Հայաստանի ամէնօրեայ խնդիրների մասնագէտ, ընդհանրական հայեացքով կարող եմ խօսել:

Ես համառօտ կը սկսեմ այն բանից, ինչը հիմնուած է տնտեսագիտութեան եւ քաղաքագիտութեան մէջ վերջին տասնամեակների բազմաթիւ հետազօտութիւնների վրայ: Դրանք նաեւ որոշակիօրէն ցոյց են տալիս, թէ ինչու են պետութիւնները ձախողում:

Եթէ ուզում ես կառուցել առողջ տնտեսական համակարգ, աւելին՝ առողջ սոցիալական համակարգ, դա իսկապէս պէտք է հիմնուած լինի մի շարք քաղաքական ինստիտուտների վրայ: *Ինչու են պետութիւնները ձախողում* գրքում մենք դա կոչում ենք ներառող քաղաքական ինստիտուտներ: Ինչ նկատի ունենք դրանով՝ ընտրական ինստիտուտների համախումբ:

Ժողովրդավարութեան մինիմալ սահմանումը, ըստ Ջոզէֆ Շումպետէրի, ազատ եւ անկախ ընտրութիւններն են: Սակայն ազատ եւ անկախ ընտրութիւններից բացի, շատ կարեւոր է, որ իշխանութեան ղեկին գտնուողները հաշուետու լինեն նաեւ ընտրութիւններից դուրս, վերահսկուեն դատական ինստիտուտների, պառլամենտական ինստիտուտների կողմից:

Եւ երրորդ բանը, թերեւս աւելի կարեւոր, որ իշխանութիւնները ակտիւ վերահսկուեն հասարակական այլ մարմինների կողմից եւ նրանց հետ կիսեն իշխանութիւնը: Քաղաքացիական հասարակութիւնը, մեդիան պէտք է շատ հզօր եւ զգօն լինեն, որպէսզի թոյլ չտան, որ քաղաքական իշխանութիւնը մենաշնորհուի նեղ խմբի կողմից՝ լինի դա տնտեսական խումբ, թէ քաղաքական խմբեր, որոնք կօալիցիաներ են կազմում քաղաքական այլ խմբերի կամ միմեանց միջեւ:

Սրան հեշտ չէ հասնել: Այսպիսի քաղաքական եւ տնտեսական ինստիտուտներ զարգացնելը շատ դժուար է: Սակայն միայն այդ պարագայում կը լինեն ազատ հնարաւորութիւններ: Իսկ ազատ հնարաւորութիւնները յատկապէս կարեւոր են, որովհետեւ միակ երաշխիքն են, որ.

ա) տնտեսական օգուտները յարաբերականօրէն հաւասար կը բաշխուեն,

բ) հասարակութիւնը ռեսուրսները կ'օգտագործի առաւել արդիւնաւէտ ձեւով:

Եթէ չկան այդ հաւասար հնարաւորութիւնները, մարդիկ, ովքեր չունեն լաւագոյն գաղափարները, լաւագոյն ընկերութիւնները, լաւագոյն տեխնոլոգիաները, մենաշնորհելու են եղածը: Եւ սա այն է, ինչ տեսնում ենք հիմա Հայաստանում՝ իր օլիգարխիկ համակարգով:

Հաւասար հնարաւորութիւնների բացակայութեան պարագայում բնակչութեան զգալի հատուածը մատչում չունի աշխատատեղերին, ինչը մարդկանց թոյլ կը տայ ունենալ ապրուստ, այն յանգեցնում է անհաւասարութեան մեծացման, տնտեսական եւ տեխնոլոգիական մտքի սակաւութեան՝ չնայած այն հանգամանքին, որ Հայաստանը Սփիւռքի միջոցով մատչում ունի աշխարհի մի շարք լաւագոյն տեխնոլոգիաների:

**25 տարում յաջողած եւ ձախողած երկրները**

Հայաստանի պարագան շատ բարդ է: Ինչպէս անցումային այլ տնտեսութիւններ, այն սկսել է քաղաքական եւ տնտեսական մի համակարգից, որը մեծապէս ձեւաւորուել էր կոմունիզմի, տնտեսութեան պետական կարգաւորման օրօք: Եւ Հայաստանը ստիպուած էր կազմակերպելու անցումը:

Սակայն, երբ նայում ենք տուեալներին, հասարակութիւնները, որոնք անցումային այս փուլն սկսել են 1990-ականներին, բաժանուել են երկու խմբի: Կան երկրներ, որոնք իսկապէս կարողացել են յաջող անցում կազմակերպել, ինչպէս օրինակ՝ Լեհաստանը, Չեխիան, Սլովակիան, բալթեան երկրները, եւ երկրներ, օրինակ՝ Ուզբեկստանը, Թուրքմենստանը, Ադրբէջանը, Ուկրաինան եւ լայն առումով՝ նաեւ Ռուսաստանը, որոնք չեն կարողացել այդ անցումը յաջող կազմակերպել: Եւ մենք տեսնում ենք այս ամէնի տնտեսական հետեւանքները: Այս երկրներից որոշները, օրինակ՝ Թուրքմենստանը, Ղազախստանը, Ռուսաստանը, իհարկէ, օգուտներ են ստանում իրենց հսկայական նաւթային եկամուտներից, ինչը սքօղում է ինստիտուցիոնալ խնդիրները ու թերեւս աւելի բարդացնում ինստիտուցիոնալ տրանսֆորմացիան:

Սակայն մեծ պատկերն այն է, որ կայ հասարակութիւնների մի խումբ, որը տնտեսապէս յաջողակ է, եւ խումբ, որը յաջողակ չէ: Եթէ հարցնեք, որն է դրա պատճառը, ես կ'ասեմ, որ առաջին խումբն իսկապէս անցել է արմատական, ինստիտուցիոնալ փոխակերպման միջով ոչ միայն տնտեսութեան, այլեւ քաղաքական համակարգի առումով:

Երկրորդ խումբն առանձնանում է Կոմունիստական կուսակցութեան նախկին անդամներով, որոնք դիմակաւորուել են որպէս ազգայնականներ եւ անցումն իրականացնողներ:

**Ուկրաինա vs Լեհաստան**

Ուկրաինա vs Լեհաստան. կարծում եմ՝ սա հրաշալի օրինակ է: 1990թ. նրանք ունէին նոյն եկամուտը մէկ շնչի հաշուով: Այսօր Ուկրաինայի եկամուտը Լեհաստանի եկամտի 1/3-ն է կազմում: Լեհաստանը բաւական դժուար ժամանակների միջով է անցել, եւ ներկայում էլ տարօրինակ կառավարութիւն ունի, սակայն նրա ընդհանուր յաջողութիւնը վերջին 25 տարիներին անհերքելի է: Ինչպէ՞ս են նրանք հասել դրան. նախաձեռնելով քաղաքական եւ տնտեսական բարեփոխումներ: Որոշ տնտեսագէտներ ընդգծում են տնտեսական բարեփոխումները, սակայն ինձ համար առաջնային են քաղաքական բարեփոխումները, որոնք իհարկէ խթանուել են ԵՄ-ին անդամակցելու գործընթացի արդիւնքում եւ մեծապէս նպաստել են տնտեսական բարեփոխումներին:

Իսկ ի՞նչ արդիւնքներ է ունեցել Ուկրաինան: Մի խումբ մարդիկ, ուկրաինական պոլիտբիւրոյի նախկին անդամներ, իրենց հռչակեցին ազգայնականներ, ինչը տեսնում ենք նաեւ Կենտրոնական Ասիայի երկրներում, յետոյ հասարակութիւնը բաժանուեց օլիգարխների երկու խմբի, այդ երկու խմբերը սկսեցին կռուել իրար դէմ: Չեղան տնտեսական հնարաւորութիւններ, չեղաւ կայունութիւն, որ կարող էին երաշխաւորել քաղաքական ինստիտուտները: Տնտեսական ինստիտուտները, որոնք հետեւում էին քաղաքական ինստիտուտներին, անպիտան էին, եւ արդիւնքում մենաշնորհները ոչ թէ թուլացան, այլ էլ աւելի զօրացան:

Եթէ այս տեսանկիւնից նայենք, թերեւս ոչինչ չկայ զարմանալու, որ Լեհաստանը մէկ շնչին ընկնող եկամտի ցուցանիշով երեք անգամ առաջ է անցել Ուկրաինայից:

Ցաւօք խնդիրն այն է, որ Հայաստանը շատ աւելի մօտ է Ուկրաինային եւ Ադրբէջանին, քան Լեհաստանին: Հայաստանում թէեւ սկզբում կային որոշ դրական փոփոխութիւններ եւ նոր աւիւն, սակայն ճանապարհը, որ անցաւ Հայաստանը, շատ բաներով նման էր Ուկրաինային՝ տնտեսութեան օլիգարխիկ կառուցուածք, երբեմն՝ կարող էին լինել ընտրութիւններ, սակայն ոչ հաւասար դաշտ քաղաքական համակարգում, ինչն իհարկէ հասարակութիւնում բազմաթիւ խեղումներ է առաջացնում:



Տարօն Աճէմօղլու

Սրա միւս ախտանիշերն են, երբ դժգոհութիւնը եռում է մինչեւ այն աստիճան, որ թափւում է արդէն: Լինում են ճնշումներ կամ այլ ձեւեր դրա դէմն առնելու, սակայն շատ քիչ արձագանք քաղաքական համակարգի կողմից՝ ինքն իրեն բարեփոխելու առումով, որպէսզի մարդկանց հնարաւորութիւն տայ աւելի շատ ընտրութիւն ունենալու դաշտում, եւ իրական քայլեր անելու հաւասար հնարաւորութիւններ ապահովելու համար:

Հայաստանի հիմնական տուեալները հաշուի առնելով՝ իհարկէ յոյս կար, որ նա շատ աւելի նման կարող էր լինել Լեհաստանին, քան Ուկրաինային կամ Ադրբէջանին: Սակայն մենք այնտեղ ենք, որտեղ ե՛նք:

**Ճանապարհը ներքեւից վերեւ է**

Հարցը, որ ինձ տրւում է՝ ի՞նչ անել: Այդ հարցին պատասխանելու համար մէկ քայլ յետ գնամ: Ինչպէ՞ս է պատահում, որ ոչ նորմալ գործող միւս համակարգերը (dysfunctional systems) բարեփոխւում են կամ չեն բարեփոխւում իրենց: Եթէ դուք ունէք գործող ժողովրդավարութիւն՝ դրան նպաստող իմ նշած ինստիտուտներից որոշների առկայութեամբ, որոնք ներառող քաղաքական ինստիտուտների համախումբ են, իհարկէ դա այդքան էլ բարդ խնդիր չէ: Դուք գնում էք քուէատուփի մօտ, քաղաքական կուսակցութիւններն առաջարկում են թեկնածուների ճիշտ ցուցակ. դրա համար լինում են որոշակի պահանջներ... եւ մարդիկ գործնականում կարող են քուէարկել եւ դուրս նետել նրանց, ովքեր չեն ծառայում իրենց, ճնշում են իրենց, խախտում են իրենց իրաւունքները, տնտեսական հնարաւորութիւններ չեն տալիս: Ահա այսպէս:

Սակայն ինչպէս կիսագործող ընտրական համակարգերում, ինչպիսին Հայաստանում է, այնպէս էլ բռնապետութիւններում, ճանապարհը, որով գալիս է ինստիտուտների բարեփոխումը կամ փոփոխութիւնը, պահանջում է աւելի շատ ներքեւից վերեւ գործողութիւն, երբ դժգոհութեան եւ բողոքի արտայայտութիւնը ինչ-որ ձեւով հաղորդւում է վերեւներին: Սա շատ բարդ խնդիր է: Ես հէնց այս դիտանկիւնից եմ նայում Հայաստանի վերջին իրադարձութիւններին:

Երբ կան բողոքի բռնի ցոյցեր, եւ որոնք սպառնալիք են եւ գործող իշխանութեան համար կեանքի ու մահուան հարց են, ապա բռնութիւնները գործող ռեժիմին աւելի շատ հնարաւորութիւն են տալիս ճնշելու բողոքի այդ ցոյցերը: Դրադապատճառն այն է, որ ռեժիմին իսկապէս մեծ սպառնալիք է նետուած, իսկ առիթն այն է, որ իշխանութիւններն իրենց գործողութիւններն արդարացնեն ցուցարարների անզիջում դիրքորոշմամբ եւ բռնութիւններով: Մենք դա տեսել ենք շատ երկրներում՝ Ուկրաինայում՝ Եանուկովիչի ռեժիմի դէպքում, տեսել ենք Լիբիայում, Սիրիայում, Իրաքում: Այս երկրներից եւ ոչ մէկում իրադարձութիւնները լաւ բանի չեն յանգեցրել:

Աւելին, այս ճանապարհի հեռանկարը շատ աւելի վատը կարող է լինել, քան սկզբում կարող է երեւալ: Պատճառն այն է, որ ենթադրենք, գործող ռեժիմը շատ կոնֆրոնտացիոն մօտեցում է ցուցաբերում բողոքի որեւէ դրսեւորման նկատմամբ, որը կարող է ուժեղացնել քաղաքացիական հասարակութիւնը, ժողովրդավարական եւ քաղաքացիական իրաւունքները, տնտեսական հնարաւորութիւնները: Քաղաքացիական հասարակութեան ուժերի եւ գործող ռեժիմի միջեւ իսկապէս բռնի կամ կիսաբռնի բախում է տեղի ունենում: Կա՛մ գործող ռեժիմը յաղթում է, կա՛մ էլ, նոյնիսկ երբ այն պարտւում է, այս բռնի փոխանցութեան գործընթացը փոխակերպում է քաղաքացիական հասարակութիւնն այնպէս, որ յաջորդ քայլը շատ հեռուն է գնում: Քաղաքացիական հասարակութեան առաջնորդները բռնի պայքարում գալիս են ամենատարբեր մարդկանց խմբերից, քան ժողովրդավարական, խաղաղ պայքարի դէպքում է: Եւ այդ առաջնորդները

➪ 4

ԳԱՀԻՐԷ

## ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԱԾ ԵՐԿՐՈՐԴ ՄԻՏՔԻ ՄՏԵՐԻՄ ՀԱՒԱՔՈՅԹԸ

Յունուար 13-ին, երեկոյեան ժամը 8-ին, Հելիոպոլսոյ Հայկական Ընթերցասրահին մէջ կայացաւ երկրորդ միտքի մտերիմ հաւաքոյթը, նիւթ ունենալով՝ *Ռոք եւ փոփ օփերան Հայաստանի մէջ (սկիզբէն մինչեւ այսօր)*:

Հակիրճ բացատրութիւններ տրուեցաւ Արթուր Մեսչեանի (*Խենթանոց* եւ *Ռեքուիէմ*), Արամ Սաթեանի (*Լիլիթ*), Արամ Սուքիասեանի (*Գրիգոր Լուսաւորիչ* եւ *Թափառում*) եւ Արթուր Միտինեանի (*Ես եւ նա*) օփերաներուն մասին: Տեղի ունեցաւ չորս օփերաներէ հատուածներու ունկնդրութիւնն ու ցուցադրութիւնը, որմէ ետք ծաւալուեցաւ զրոյց եւ վիճաբանութիւն:

## *ՋԱՀԱԿԻՐԻ* ՀԻՆԳԵՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾԸ՝ *PAPASIAN & CO. ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆԸ*

Լոյս տեսաւ *Ջահակիրի* հինգերորդ յաւելուածը՝ *Papasian & Co. երաժշտական ընկերութիւնը (ըստ ազդագիրներու եւ յայտագիրներու)* (317 էջ):


PAPASIAN & CO.
ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆԸ
(ըստ ազդագիրներու եւ յայտագիրներու)

Հաւաքեց՝ Հ. Աւագեան

ՋԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՅԱՒԵԼՈՒԱԾ Ե.

ԳԱՀԻՐԷ
2017

Տասնամեակներ շարունակ Եգիպտոսի դասական երաժշտութեան խաղադաշտին մէջ աչքառու դեր խաղացած է Բաբազեան Ընկերութիւնը: Եղած է դաշնակի վաճառական, հանդիսացած է եւրոպական դաշնակի տուներու գործակալը, Եգիպտոսի գրեթէ բոլոր երաժշտասրահներուն տրամադրած է իր դաշնակները, զբաղուած է սկաւառակի, ֆոնոկրաֆի, ռատիոյի եւ երաժշտական հրատարակութիւններու վաճառքով: Խանութներ ունեցած է Գահիրէ, Աղեքսանդրիա եւ Փոր-Սայիտ:

Հրատարակութիւնը կը պարփակէ Papasian & Co.-ին վերաբերող 119 ազդագիր եւ յայտագիր:

Ասիկա կը հանդիսանայ *Ջահակիրի* յաւելուածներու ծիրին մէջ նախատեսուած եգիպտահայ երաժշտական կեանքին հետ առնչուող վաւերագրութիւններու շարքին առաջին հատորը:

## ԺՈՐԺ ԳԱԶԱԶԵԱՆ՝ ԳԱՀԻՐԷԻ ՕՓԵՐԱՅԻՆ ՄԷՋ

Յունուար 20-ին, երեկոյեան ժամը 8-ին, Գահիրէի Օփերայի փոքր սրահին մէջ տեղի ունեցաւ եգիպտահայ ուտահար եւ երաժշտահան Ժորժ Գազազեանի եւ իր խումբին հերթական նուագահանդէսը:



Ծնած Գահիրէ, 1953-ին, Գազազեան հեղինակն է հինգ եգիպտական գեղարուեստական ֆիլմերու երաժշտութեան՝ *Սովը* (Ալ-Կու', 1986), *Ժամանակը նուաճողը* (Քահէր ալ-զաման, 1987), *Կարեւոր մարդու մը կինը* (Զաուկա ռակոլ մոհէմմ, 1988), *Գահիրէի տիկինը* (Սայետաթ ալ-Քահերա, 1990) եւ *Գործարանի աղջիկը* (Ֆաթաթ ալ-մասնա', 2015): Գրած է նաեւ վաւերագրական ֆիլմերու երաժշտութիւններ: Ունի բազմաթիւ ձայնագրութիւններ՝ *Sabil* (1991), *Sajaya* (1997), *Sagate* (1997), *Nil Sangit* (1999), *Suite "al Ganub"* (1999), *Monaga* (2001), *Festival des musiques du Sud 1998*, *Dayra Jazz* (2002), *Azraq* (2002), *Neel Dhun* (2008), *Zafir* (2008), *A Meeting by the Nile*:

Իր երաժշտութիւնը իւրայատուկ հնչերանգ ունի: Ան սահմաններ չի ճանչնար՝ արաբականը, հնդկականը, հայկականը, ինչպէս նաեւ գիւղականն ու քաղաքայինը, էմփրովիզասիոնն ու կանխագրուածը հանդէս կու գան միատեղ խմորումներով:

## ԼԷՊԼԷՊԱՅԻ ՆՈՐ ՖԻԼՄԸ՝ *ՎԵՐՋԻՆ ԱՔԱՂԱՂԸ ԵԳԻՊՏՈՍԻ ՄԷՋ*

Յունուար 27-ին կայացաւ եգիպտական *Ախըր տիք ֆի Մասր* (Վերջին աքաղաղը Եգիպտոսի մէջ) կատակերգական ֆիլմին առաջին ցուցադրութիւնը, ուր կարեւոր դեր ստանձնած էր հանրայայտ դերասանուհի Լէյլէկա (բուն անունով՝ Նինոչքա Գիւբէլեան): Ֆիլմին հեղինակն է՝ Ախման Պահկաթ Քամար, բեմադրիչը՝ Ամր Արաֆա, դերասանները՝ Մոհամմէտ Ռամատան, Մայ Ամր, Հալա Սէտքի, Էնժի Ուակտան, Լայլա Էզզ Ալ-Արապ: Ասիկա կը հանդիսանայ Լէյլէկայի 95-րդ խաղարկային ֆիլմը:



Իր առաջին ֆիլմը՝ *Հայէպլթի Սուսու* (Սուսու սիրուհիս), արտադրուած էր 1951-ին, երբ տակաւին վեց տարեկան երեխայ էր:

Ցուցադրութեան երրորդ օրը ֆիլմը արձանագրեց 2 միլիոն եգիպտական ոսկիի մօտեցող եկամուտ, իսկ 12-րդ օրը՝ 5 միլիոն 500 հազար:

Յիշենք նաեւ, որ երեք ամիս առաջ՝ 2016 Նոյեմբեր 17-ին, Քազապլանքայի (Մարոք) Ֆիլմի Միջազգային Փառատօնը յատուկ պարգեւատրած էր Լէյլէկան՝ իբր գնահատանք իր անցած ստեղծագործական բեղմնաւոր ճանապարհին:

ԽՈՀԵՐ

# ՆՕՍՐԱՑԱԾ ԵՒ ԲԱՐԳԱՒԱՃԱԾ ԳԱՂՈՒԹ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

«[Եգիպտահայ] [գ]աղութը հակասական պատկեր մը կը ներկայացնէ:

«Մէկ կողմէ կ'ողբանք թէ գաղութը նօսրացած է, ոչնչացած՝ բան չէ մնացած մեզմէ եւ այլն: Եւ որովհետեւ հաշտուած ենք այդ իրողութեան հետ, բնական է որ ոչ արուեստ, ոչ ալ որեւէ բան կարելի է սպասել մեզմէ:

«Միւս կողմը սակայն այլ պատկեր է:

«Կը խօսինք հպարտութեամբ մեր դպրոցներուն, ակումբներուն, թեմականին եւ այլ կառոյցներուն մասին, եւ ունինք մեծ յաւակնութիւններ, որոնք կրնան միայն երգիծանքի նիւթ հայթայթել գրողին:»

Ասիկա «Խոհեր»-ուն խօսքերը չեն, այլ եգիպտահայ ինքնա-աքսորական (self-exiled) (բառեզրին մտաւոր (դրական) եւ ոչ ֆիզիքական առումով) մտաւորական Վարուժան Գազանճեանին, արտասանուած Գահիրէի այժմ գոյութիւն չունեցող Թէքէեան սրահին մէջ, 1987 Մայիս 3-ին, հրապարակային ասուլիսի մը ընթացքին: (Արաքսի Տէօվլէթեան, «Սփիւռքի մէջ հայկական արուեստ կարելի՞ է մշակել», *Արեւ*, օրաթերթ, Գահիրէ, 72-րդ տարի, թիւ 20628, 9 Յունիս 1987, էջ 2:)

Հազուագիւտ հնչող գաղափար մը՝ արտասանուած սփիւռքի մէջէն, սփիւռքի համար:

Ողբ/հպարտութիւն, կամ նօսրացում/յաւակնութիւն՝ գործածած ըլլալու համար Գազանճեանի բառերը, կը ներկայացնեն իմաստներ, որոնք պէտք չէ հանդիպին իրարու: Իսկ եթէ հանդիպին, քանի որ անոնք միեւնոյն ենթակայի արտայայտութիւններն են, գոնէ բառա-կառուցողապաշտական առումով պիտի յառաջացնեն ողբով հպարտացող կամ հպարտութեամբ ողբացող, եւ նօսրացումով յաւակնող կամ յաւակնութեամբ նօսրացող գաղութի մը տարօրինակօրէն իրական գաղափարը: Եւ ճիշդ այդ գաղափարը չբացայայտելու համար երկու պատումները պէտք է մնան միաժամանակ հնչող ու գերազանցապէս հնչեղ բայց իրարմէ օտարացած գիտելիքներ, որոնց միջեւ տխալեքթիքը պէտք է գտնուի մտածողութենէ անդին աստիճանի մը վրայ:

«Գաղութը նօսրացած է», կը պնդենք անընդհատ, «հոծ բազմութիւն մը լեցուցած էր սրահը», կը գրենք անընդհատ: Նօսրացած գաղութը յանկարծ կը վերածուի հոծ բազմութեան: Ըստ ստանալիք նպաստէն, երբեմն կը նօսրանանք, երբեմն կը դառնանք հոծ:

«Նօսրացում» բառը, ձեւականօրէն, կը գործածուի, քանակային իմաստով: Եթէ գաղութը 1930-40-ականներուն կը պարփակէր երեք տասնեակի մօտեցող անդամներ, այսօր անոր թիւը նուազած է երկու հազարի (ոչ ոք գիտէ իրական քանակը, ոչ ոք երբեւէ գիտցած է եգիպտահայութեան քանակը որեւէ ժամանակ): Ուրեմն, նօսրացած ենք: Բայց նօսրացած ենք 1930-ականներու *համեմատութեամբ*: Իսկ ո՞րն է նօսրացումին չափանիշը: Չէ՞ որ պէտք է ոչ-նօսրացումի չափանիշ մը գտնանք, որուն վրայ չափենք նօսրացումը: Այսօր, եգիպտահայութիւնը նօսր է ֆրանսահայութեան համեմատութեամբ, ֆրանսահայութիւնը՝ ամերիկահայութեան, ամերիկահայութիւնը՝ հայաստանաբնակներուն: Իսկ Հայաստանի ներկայ բնակչութիւնը նօսրացած է նախկին քսան տարուայ բնակչութեան համեմատութեամբ: Քսան տարի առաջուայ եգիպտահայութիւնը որքա՜ն նօսր պիտի ըլլայ քսան տարի առաջուայ Հայաստանի համեմատութեամբ: Ամբողջութեամբ վերցուած, աշխարհի բոլոր հայերը նօսր են ֆրանսացիներուն նկատմամբ իսկ քանակային աննշանութիւն մը կը ներկայացնեն արաբներուն համեմատութեամբ: Կրնանք հասնիլ ծայր աստիճան անհեթեթութեան:

Ներկայիս, դրամական առումով մեր գաղութը կ'ապրի իր արդի պատմութեան ամենահարուստ ժամանակաշրջանը: Քանի մը տարի առաջ, օգտուելով մուպարաքեան վերջին շրջանի նէօլիպէրալ կատաղի քաղաքականութեան ընձեռած հակաբանուորական ու հակագիւղացիական չահութաբեր հսկայ առաւելութիւններէն, Գահիրէի Առաջնորդարանը կը ծախէ իր գիւղական հողային կալուածներէն կարեւոր մաս մը, աննախադէպօրէն աւելցնելով իր պանքային ուղղահայեաց դրամագլուխը եւ անկէ եկող տոկոսային եկամուտները: Ո՞ւր կ'երթան այդ դրամները: Նախ եւ առաջ, գաղութը կ'ապահովէ իր անդամներուն առողջապահական ծախսերը՝ մանաւանդ հիւանդանոցային մեծ գումարները: Ասիկա շատ լաւ է եւ անխուսափելիօրէն անհրաժեշտ: Գաղութիս մէջ կարելի է հանգիստ սիրտով... հիւանդանալ:

Իսկ ի՞նչ կը պատահի գաղութի «առողջ» զանգուածին: Առաջնորդարանի եկամուտներուն մէկ մասը ամսականներն են, քանի մը մատնանշելի պարագաներու՝ խիստ բարձր: Շատ կարեւոր բաժին մըն ալ կը յատկացուի միութենական կազմակերպութիւններուն եւ մամուլին: Զհաշուելով՝ որ որոշ միութիւններ բարձր վարձքերով իրենց ակումբներն ու սրահները միօրեայ կամ ժամկէտային դրութեամբ կը տրամադրեն եգիպտական ձեռնարկներու: Գաղութի կառոյցները երբեք այնքան դրամ չեն ունեցած որքան այսօր: Այս առատութեան շնորհիւ գրեթէ վերացած են նուիրատուութիւնները, որոնց շնորհիւ միայն կանգուն կը մնային միութիւնները:

Գաղութը նօսրացած է, բայց դրամը բարգաւաճած: Դրամի բազմապատկումին համար, արդարեւ, ճիգ մը գործադրուած է: Գոնէ հողերու վաճառքի գործողութիւն մը տարուած է: Ինչո՞ւ այդ ճիգը, եթէ գաղութը նօսրացած է: Նօսրացած գաղութը ի՞նչ պիտի ընէ յաւելեալ դրամով: Աննախադէպ նօսրացում՝ ընդդէմ աննախադէպ դրամի, գործածած ըլլալու համար գաղութիս պաշտելի բառերէն մէկը՝ «աննախադէպ»-ը:

Նօսրացումը կրնայ ունենալ որոշ «առաւելութիւններ».

Եթէ ցած մակարդակով ձեռնարկներ տեղի ունենան, չքննադատենք, որովհետեւ պէտք է պահպանենք նօսրացած գաղութի միասնականութիւնը...

Եթէ գրադարաններ, դպրոցներ ու ակումբներ փակուին՝ առանց ոչ մէկ հանրային քննարկումի, չքննադատենք, որովհետեւ պէտք է պահպանենք նօսրացած գաղութի միասնականութիւնը...

Եթէ կազմակերպութիւններու արչիւներ նետուին, չքննադատենք, որովհետեւ պէտք է պահպանենք նօսրացած գաղութի միասնականութիւնը...

Եթէ հիմնարկային կարեւոր գումարներ ծախսուին՝ մէկ ատենապետի մը որոշումով, նոյն ատենապետի անձնական հմայքին համար, չքննադատենք, որովհետեւ պէտք է պահպանենք նօսրացած գաղութի միասնականութիւնը...

Եթէ սխալներով լեցուն, անմակարդակ, մակերեսային հրատարակութիւններ կատարուին հայ մշակոյթը «օտար»-ներուն ներկայացնելու համար՝ հիմնարկային ահռելի գումարներու դիմաց, չքննադատենք, որովհետեւ պէտք է պահպանենք նօսրացած գաղութի միասնականութիւնը...

Եթէ ցեղասպանութեան մասին, ցած, *շատ* ցած մակարդակով ֆիլմեր արտադրուին ու հովանաւորուին, ցեղասպանութեան մասին խիստ մակերեսային գիրքեր տպագրուին՝ փոխան հսկայական կորսուած գումարներու, չքննադատենք, որովհետեւ պէտք է պահպանենք նօսրացած գաղութի միասնականութիւնը...

Եթէ ճաշարանային երգողներ ու նուագողներ հրաւիրուին՝ իբրեւ ձեռնարկներու գլխաւոր մասնակցողներ, ամբողջապէս հիմնարկային դրամներով, չքննադատենք, որովհետեւ պէտք է պահպանենք նօսրացած գաղութի միասնականութիւնը...

Եթէ «հայապահպան» ձեռնարկներու յայտագիրներ տպագրուին՝ լեցուն ուղղագրական եւ ոճական զարմանալի սխալներով, չքննադատենք, որովհետեւ պէտք է պահպանենք նօսրացած գաղութի միասնականութիւնը...

Եթէ Թուրք իշխանական ներկայացուցիչներուն եգիպտահայ նշանաւոր նկարիչներու գործեր ծախուին, չքննադատենք, որովհետեւ պէտք է պահպանենք նօսրացած գաղութի միասնականութիւնը...

Նօսրացումը, այսպէս, օգտակար կրնայ ըլլալ «միասնակութիւն»-ը պահպանելու համար:

Այս բոլորը նկատի ունենալով, գաղութը ոչ թէ նօսրացած կ'ըլլայ, այլ՝ նօսրացուած (նօսր դարձուած):

Ի վերուստ տեղադրուած հասկացողութիւն մըն է նօսրացումը: Հարիւր հոգինոց գաղութով կարելի է արտադրել լաւագոյն մշակոյթ: Նայած թէ

↪ 4

ՔԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ՀԱՅ ԹԵՐԹԸ ԸՆԿԵՐՆ Է ՀԱՅ ՏԱՆ

## 1 ՍՓԻՒՌՔԸ ՊԷՏՔ Է ՀԱՍԿԱՆԱՅ ԻՐ ԴԵՐԸ, ԵՐԲ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՌԵԺԻՄԻՆ ԼԵԳԻՏԻՄՈՒԹԻՒՆ Է ՀԱՂՈՐԴՈՒՄ. ՏԱՐՕՆ ԱՃԷՄՕՂԼՈՒ

Հակուած են իրենց ձեռքը վերցնել ոչ նորմալ աշխատող ինստիտուտները, քան թէ ստեղծել լայն կոալիցիա, որը կը յանգեցնի ներառող քաղաքական ինստիտուտների ձեւաւորմանը: Օրինակներից է բոլշեւիկեան յեղափոխութիւնը, օրինակներ կարելի է բերել Արաբական գարնան դէպքերից եւ այլ տեղերից:

Ի՞նչ է դա նշանակում: Դա նշանակում է, որ քաղաքացիական հասարակութեան եւ ընդհանուր բնակչութեան համար իսկապէս իրերի չատ բարդ դասաւորութիւն է. երբ դու լուռ ես, համակարգը չարունակում է նոյն կերպ, երբ քո դժգոհութիւնը վերածւում է չափազանց մեծ կոնֆրոնտացիայի, այն կարող է ուղղուել քո դէմ եւ ռեժիմին առիթ տալ ճզմելու քեզ: Իսկապէս չատ նեղ արահետ է մնում, որով կարելի է քայլել: Արահետ, երբ բողոքը եւ ճնչումը զգացնել ես տալիս ռեժիմին, բայց երբեք առիթ չես տալիս, որ բռնութիւն լինի, քաղաքացիական հասարակութեան կառոյցները ամբողջութեամբ ոչնչացուեն:

**Սփիւռքը Հայաստանում երկու դեր ունի՝ դրական եւ բացասական**

Հայաստանն ունի մի չարք ժառանգութիւններ, որ կարող են նրան օգնել: Ունի յարաբերականօրէն ուսեալ բնակչութիւն, ունի մատչում աշխարհին, այն ժողովրդավարութիւն է եղել եւ ունի ժողովրդավարական պատմութիւն, այնտեղ աւելի ակտիւ քաղաքացիական հասարակութիւն է ձեւաւորուել, քան ասենք՝ Ադրբէջանում կամ այլ երկրներում:

Երբ ես ասում եմ Հայաստանը բաց է աշխարհի համար, դա իհարկէ անմիջականօրէն վերաբերում է Սփիւռքին: Եւ այստեղ մենք՝ որպէս այդ Սփիւռքի մաս, խօսում ենք Հայաստանի խնդիրների մասին: Մենք ունենք պարտաւորութիւն: Կարող է հակասական թուալ, բայց ես նաեւ կ'ասէի, որ Սփիւռքի գործօնը Հայաստանում երկակի է՝ դրական եւ բացասական: Միգուցէ եւ սխալւում եմ:

Անհերքելի է, որ Սփիւռքը մեծ դեր է ունեցել Հայաստանի համար՝ լինելով նոր տեխնոլոգիաների, ձեռներեցութեան ու մարդկային կապիտալի խողովակ: Այն օգտակար դեր է խաղացել որպէս Հայաստանի իրաւունքների պաշտպան միջազգային ասպարէզում:

Սակայն, ես կարծում եմ, որ այն խաղում է նաեւ երկու պոտենցիալ բացասական դեր: Առաջինը, ինչի մասին ակնարկեցի Ռուսաստանի դէպքում, երբ դու հասարակութիւն ես, որի գոյութիւնը կախուած է նաւթի եկամուտներից, ինստիտուցիոնալ տրանսֆորմացիան բարդ է: Լաւագոյն օրինակները Նիգերիան եւ Վենեզուէլան են: Սրանք հասարակութիւններ են, որոնք անգամ նաւթային բումի ժամանակներում չատ վատ են եղել, որովհետեւ նաւթային եկամուտները մեծ աղբիւր էին քաղաքական գործիչների, օլիգարխների, գեներալների համար, եւ դրանք դանդաղեցնում ու անգամ կանխում էին ներառող քաղաքական ինստիտուտների ձեւաւորումը:

Այնպէս որ, ես կարծում եմ, որ Սփիւռքի դերը, որպէս ռեսուրս տրամադրող, կարող է բացասական լինել: Իհարկէ, ես չեմ ասում, որ այդ ռեսուրսները պէտք չէ տրամադրել: Սակայն պէտք է մտածել, թէ ինչպէս այդ ռեսուրսները տրամադրել, ուր ուղղել դրանք, ինչպէս դրանք գնան բիզնէս համայնքին, կառավարական եւ ոչ կառավարական կազմակերպութիւններին:

Միւս բացասական դերը, որ Սփիւռքը խաղում է, կարծում եմ՝ աւելի նրբին է: Որպէս Սփիւռք՝ մենք ցանկանում ենք, որ Հայաստանը յաջողի եւ միջազգային ասպարէզում պատշաճ կերպար ունենայ: Եւ մեզնից չատերը բնականօրէն հակուած են Հայաստանը նոյնացնելու նրա իչխանութեան հետ: Երբ Հայաստանի Նախագահը գալիս է այստեղ, մենք բոլորս պէտք է գնանք նրան հանդիպելու: Մենք պէտք է նրա հետ չփուենք, որովհետեւ նա Հայաստանի ներկայացուցիչն է: Սակայն, երբ Հայաստանի քաղաքական ռեժիմի խնդրի մասն է, դա չատ բարդ իրավիճակ է ստեղծում՝ լեգիտիմացնելով ռեժիմն այն աստիճանի, երբ այդ լեգիտիմութիւնը տարւում է Հայաստան եւ աւելի բարդացնում այն ճանապարհի կերտումը, որը բողոքը տանում է փոփոխութեան, քանի որ իչխանութեան լեգիտիմութիւնը կորսուած է:

Կարծում եմ՝ չատ կարեւոր է, որ Սփիւռքը հասկանայ այն դերը, որ խաղում է Հայաստանի ռեժիմին լեգիտիմութիւն հաղորդելով՝ անկախ նրանից, թէ ով է այդ ռեժիմը: Ես չեմ խօսում միայն այսօրուայ ռեժիմի մասին, բայց իհարկէ դա վերաբերում է նաեւ այսօրուայ ռեժիմին: Սակայն ով էլ որ լինի այդ ռեժիմը, Սփիւռքը պէտք է նրբին դեր խաղայ աջակցելու ինչ-որ չափով, բայց նաեւ քննադատական մօտեցում ցուցաբերելու, որպէսզի ռեժիմի լեգիտիմութիւնը չկառուցուի ի հեճուկս այն բանի, որ ճնչւում են քաղաքացիների իրաւունքները եւ երկրի համար ստեղծւում տնտեսական եւ քաղաքական սխալ հետագծեր:

http://www.civilnet.am/news/2016/09/11/

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

ՎԻՃԱԿԱԳՐԱԿԱՆ ՏՈՒԵԱԼՆԵՐ
ԳԱՀԻՐԷ ՀԱՄԱՅՆՔԻՆ
2016 ՏԱՐՈՒԱՅ

| | |
|---|---|
| ՄԿՐՏՈՒԹԻՒՆ | 14 |
| ՊՍԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ | 4 |
| ԹԱՂՈՒՄ | 20 |

ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

## 3 ՆՕՍՐԱՑԱԾ ԵՒ ԲԱՐԳԱՒԱՃԱԾ ԳԱՂՈՒԹ

ի՞նչ մշակոյթի մասին է խօսքը: Արդիապաշտական կեղծ ըմբռնումն մըն է *չատն* ու *մեծը* անպայմանօրէն կապել *լաւի* հետ:

Նախ, պէտք է փնտռել՝ թէ ի՞նչ բաղադրիչ ունի գաղութը եւ ի՞նչ տարրեր կը գտնուին այնտեղ եւ որմէ ետք միայն կազմակերպել գործունէութիւնը, եւ ոչ թէ, ինչպէս տեղի կ'ունենայ, անընդհատ վերարտադրել «աւանդապէս» ժառանգուած քանի մը խիստ սակաւաթիւ ընագաւառներ:

Եթէ գտնուի ռոք, փոփ կամ ճազ երաժշտութեան տիրապետող երաժիշտ մը, կարելի է լաւագոյն կերպով կազմակերպել անոր մնայուն «կեցութիւնը» գաղութին մէջ: Ո՞վ կրնայ հերքել ռոքիստ Արթուր Մեսչեանի եւ ճազիստ Տիգրան Համասեանի երաժշտութիւններուն հայկականութիւնը: Նկատի առնենք նաեւ որ փոփ ու ռոք երաժշտութեան ձեռնարկներ՝ հրաւիրեալ երաժիշտներով, ինչպէս նաեւ հինգ աստղանի պանդոկներու պարահանդէսներ՝ երաժշտական պանտերու մասնակցութեամբ, անընդհատ տեղի կ'ունենան գաղութի ծախսերով, որոնց կազմակերպիչներն ու յաճախողները այն նոյն պատասխանատուներն են՝ որոնք կը մերժեն տեղական ուժերով ռոք (կամ նման) կարող երաժիշտներ պահել կամ արտադրել:

Եթէ գտնուի քանդակագործ մը՝ որ գիտէ քանդակազարդել հայկական կառոյցները, ինչո՞ւ զայն չընդգրկել գաղութային չրջանակներէ ներս: Ինչո՞ւ քանդակագործութիւնը ոչ-հայապահպան ընագաւառ մը նկատել:

Եթէ գտնուի երաժիշտ մը՝ որուն ստեղծագործական թռիչքը կը գտնուի ազգային երգ-պարի մշակումէն անդին, բայց միշտ առնչուած է հայութեան հետ, անյապաղ պէտք է օգտուիլ իր ստեղծագործական փորձառութենէն եւ դարձնել գաղութային երաժշտական կեանքի հիմնական կրողներէն մէկը:

Եթէ գտնուի գրականագէտ մը կամ գրաքննադատ մը՝ որ եգիպտական համալսարանի դասախօս է (հոգ չէ թէ կը հաւատայ Պետրոս Դուրեանի «անաստուածութեան»), պէտք է օգտուիլ իր մտաւոր փորձառութենէն եւ զայն ներգրաւել դպրոցներուն, ակումբներուն եւ մամուլին մէջ:

Եթէ գտնուի պարուհի մը՝ որ ազգագրական պարեր չի սիրեր բայց իր ամբողջ մտածողութեամբ հայ է, կարելի է ստեղծել պարային պատշաճ մթնոլորտ մը եւ ամրապնդել իր արուեստը:

Եթէ գտնուին անձեր՝ որոնք Րաֆֆի կարդալէ չեն ախորժիր, բայց կը պաշտեն Ակաթա Քրիսթի, փափաքելի է ստեղծել Ակաթա Քրիսթիի (կամ որեւէ նման գրողի) գործերուն հայերէն ընթերցուածքներ (նման գեղեցիկ թարգմանութիւնները բազմաթիւ են), փոխանակ վանելու, անտեսելու եւ անպէտք համարելու ընթերցողներու այս չերտը եւ յետոյ երիտասարդութիւնը հայութեան ծոցը «վերադարձնելու» նշանաբաններ առաջ քաչելու:

Եթէ տարուի կազմակերպչական աշխատանք՝ ըստ եղած տարրերուն, եւ ոչ թէ ըստ եղած կանխորոշումներուն եւ կանխամտածումներուն, ինքնաբերաբար կը վերանայ «նօսրացում»-ի հասկացողութիւնը իր բոլոր դրսեւորումներով: Եթէ գաղութիս մէջ իւրաքանչիւր անձ մասնագէտ մըն է իր ընագաւառին մէջ, բայց իր մասնագիտութիւնը կը կիրառէ գաղութէն դուրս իսկ գաղութէն ներս կը դառնայ սիրող մը՝ իրմէ օտար, բայց պարտադիր, ընագաւառի մը մէջ, ուրեմն, մշակութային նօսրացումը կը դառնայ իրականութիւն: Օրինակ, «օտար» լրագիրի մը մէջ գրող հայ մը՝ մասնագէտի պիտակաւորումով, կրնայ գաղութին մէջ ըլլալ երգչախումբի անդամ մը՝ սիրողի պիտակաւորումով, առանց որեւէ ձեւով առիթ ունենալու իր տիրապետած մարզը կիրարկել գաղութին մէջ: Կամ, «օտար» ընկերութեան հայ ղեկավար մը՝ մասնագէտի պիտակաւորումով, կրնայ գաղութին մէջ ըլլալ պարուսոյց մը՝ սիրողի պիտակաւորումով, առանց որեւէ ձեւով առիթ ունենալու իր տեսչական փորձը կիրարկեալ գաղութի տնտեսվարական հարցերուն համար: Կամ, «օտար» չրջանակի մենակատար դաչնակահար մը՝ մասնագէտի պիտակաւորումով, կրնայ գաղութին մէջ ըլլալ նուագակցող մը՝ սիրողական պիտակաւորումով, առանց առիթ ունենալու իր կատարողական-ստեղծագործական գաղափարները կիրարկել գաղութին համար: Գաղութը կը նօսրանայ՝ մշակութային ամենախոր իմաստով:

Կան նաեւ հայ դրամատէր ու մեծահարուստ գործիչները՝ որոնց ձեռքն է մշակոյթի հիմնաքարային որոչումները: Անոնք կրնան հաւանութիւն տալ տպագրելու ահռելիօրէն ծախսալի (ներառեալ գրողի ստացած բազմահարիւրհազարանոց չէքը) ցածորակ գիրքեր եւ խափանելու բարձրորակ գիրքերու տպագրութիւնը, առանց կարդացած ըլլալու ո՛չ իր արտօնածները եւ ո՛չ ալ մերժածները: Անոնք մշակութային որոչումներ կայացնող դրամատէրեր են՝ որոնց համար մշակոյթը կը գտնուի իրենց հասողութենէն անդին, եւ որոնց համար արտօնութիւն-մերժումը կը հիմնուի արտամշակութային եւ անձնապաշտական չահամոլութիւններու վրայ: Մշակութային նօսրացում: Օտարացում, ինքնօտարացում, առարկայապաշտութիւն եւ մշակոյթի ապրանքայնացում. ասոնք են որ կազմեն արդի նօսրացումին հիմքը:

Այս ցածին եւ բարձրին միջեւ, անչուչտ, կը հրատարակուին արժէքաւոր եւ չատ կարեւոր գիրքեր, բայց անոնց քանակը՝ անորակներուն եւ մերժուածներուն միջեւ, կը կազմէ ոչ նախանձելի տոկոս մը:

Վերջապէս, նօսրն ու բարգաւաճը տեղ մը պէտք է միանան իրարու, որուն համար կը գտնուի ձեռնարկներու առիթով անընդհատ կրկնուող ամենէն հետաքրքրական նախադասութիւնը. «Թէեւ մեր գաղութը նօսրացած է, բայց ահաւասիկ կարողացանք բարձր մակարդակով ձեռնարկ կազմակերպել:» Մէկ կողմէ, եթէ ընդունինք որ ձեռնարկը իրապէս բարձր մակարդակով գործադրուած է, ուրեմն նօսրացում չկայ, այլ գտնուած է տարրերու եւ կարողութիւններու պատշաճագոյն հաւասարակչռութիւնը: Միւս կողմէ, սակայն, քանի որ «նօսրացում» բառը պարտադրաբար գործածուած է, կը նշանակէ՝ թէ նօսրացումի պատումը խիստ կարեւոր է բարձրացնելու եւ գերամբացնելու ձեռնարկը գործադրող ընտրելախաւին հայրենասիրութիւնը, հայրենապաշտութիւնը, ազգասիրութիւնը, ազգապաշտութիւնը, նուիրուածութիւնը, զոհողութիւնը, անձնազոհութիւնը, անձնուիրութիւնը (անչուչտ, քօղարկելով նաեւ դրամապէս օգտուողներուն ցուցակը): Առանց նօսրացումի՝ այս կարողութիւնները *քիչ մը* պակաս պիտի փայլէին:

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع
TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1784 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 23 ՓԵՏՐՈՒԱՐ 2017 ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 75 Ե. ՂՒԿ. ٢٠١٧ عدد رقم ١٧٨٤ الخميس ٢٣ فبراير

# JAMnews.ԱՆՀՐԱԺԵՇՏ ՊԱՀԻՆ ԵՒ ՃԻՇՏ ՏԵՂՈՒՄ

**ՄԱՐԳԱՐԻՏԱ ԱԽՎԼԵԴԻԱՆԻ**

**JAMnews-ի գլխաւոր խմբագիր**

JAMnews-ը 2016 Թուականի Մայիսին երեւան եկած առցանց հրատարակութիւն է, որը բացառիկ երեւոյթ է դարձել Հարաւային Կովկասի մեդիաչուկայում: Հարաւային Կովկասի պատմութեան մէջ առաջին անգամ փորձ է արուել ստեղծել ոչ թէ մի երկրի, այլ ողջ տարածաշրջանի լսարանին հասցէագրուած լրագրողական ռեսուրս:

Սա չափազանց յաւակնոտ եւ բարդ խնդիր է թէկուզեւ այն պատճառով, որ JAMnews-ի նիւթերը հրապարակւում են հինգ լեզուներով՝ հայերէն, ադրբէջաներէն, վրացերէն, ռուսերէն եւ անգլերէն: Համանման փորձի միակ օրինակը Եւրոպայում (թերեւս, նաեւ ողջ աշխարհում) Euronews-ն է: Բազմալեզուութիւնը JAMnews-ի հիմնադիրների հանդիպած միակ կամ գլխաւոր դժուարութիւնը չէր: Շատ աւելի դժուար էր որեւէ ընդհանուր բան գտնելը ողջ Հարաւային Կովկասի՝ մի տարածաշրջանի համար, որը միւսներից աւելի ցաւագնօրէն է տարել Խորհրդային Միութեան փլուզումը եւ որտեղ վերջին երեք տասնամեակների ընթացքում ողբերգականօրէն սրուել են դարերով կուտակուած խնդիրները:

Սակայն անցած տարուայ ընթացքում լսարանի ընդլայնման տեմպի ցուցանիշները վկայում են, որ այդ ֆանտաստիկ թուացող խնդիրը լուծելի է: JAMnews-ն իր սպառողին գտել է Հարաւային Կովկասի բոլոր երկրներում:

Ո՞րն է յաջողութեան գրաւականը:

Ըստ երեւոյթին, ամենակարեւոր գործօնն այն էր, որ JAMnews-ը կռահել էր տարածաշրջանում աստիճանաբար տիրապետող միտումը: Թէեւ դա այնքան էլ տեսանելի կամ ակնառու չէ:

Վերջին գրեթէ երեսուն տարիները տարածաշրջանում ապրող բոլոր հանրութիւնների համար եղել են իրենց իսկ կայացման-կառուցման ժամանակներ: Իր հերթին դա եղել է մի կողմից՝ սեփական հանրութեան եւ ողջ տարածաշրջանի համար ընդհանուր խնդիրների եւ նպատակների ձեւակերպման փորձ, իսկ միւս կողմից էլ՝ այն վերաճել է լուրջ տարանջատուութեան ինչպէս տարածաշրջանում, այնպէս էլ բուն հանրութեան ներսում: Սրա պատճառները շատ էին՝ պատմական եւ այսրոպէական:

Սակայն 25-30 տարին հէնց այն ժամկէտն է, որի ընթացքում մի սերունդը փոխարինում է միւսին: Հարաւային Կովկասի բոլոր հատուածները հէնց այս եզրին են մերձեցել: Հասունացել եւ կեանք է մտնում մի սերունդ, որը նախ՝ զերծ է խորհրդային անմիջական փորձառութիւնից, յետոյ էլ՝ «մեծ» աշխարհի արժէքները մատչելի են նրա համար: Այդ արժէքների թւում ամենեւին էլ վերջին տեղում չեն հարեւանների նկատմամբ, այլոց կրօնի ու պատմութեան հանդէպ հանդուրժողականութիւնը, միմեանց լսելու եւ պայմանաւորուելու ունակութիւնը, ուժեղի իրաւունքի բացառումը:

Ես հաւատում եմ, որ այս աբստրակտ արժէքները միանգամայն գործնական չափումներ էլ ունեն: Տարբեր տեմպերով եւ յաղթահարելով սեփական ուրոյն խնդիրները՝ տարածաշրջանը շարժւում է եւ ակտիւօրէն քննարկում եւրոպական վեկտորը:

Ու տարեցտարի աւելի պարզ է դառնում, որ այդ գործընթացը՝ եւրոպական քաղաքակրթութեան հետ ինտեգրումը, չի կարող յաջողակ լինել մեկուսի փորձերով: Քանի դեռ Հարաւային Կովկասի հանրութիւններն իրենց տարանջատող խնդիրները յաղթահարելու նպատակ չեն դնում՝ նրանք կը շարունակեն մնալ իւրաքանչիւրն իր սեփական փակուղում: Եւ այդ երկրներում ապրող մարդիկ ու յատկապէս երիտասարդները հետեւողական կը լինեն փակուղուց դուրս գալու ելքերի որոնման հարցում:

JAMnews-ը հէնց այդ հանրային պահանջմունքին պատասխանելու մի փորձ է: Պարզ ասած՝ սոյն ռեսուրսը յայտնուել է անհրաժեշտ տեղում եւ ճիշտ ժամանակին:

☞ 2

**ԱՐՑԱԽ**

# ԱՐՑԱԽԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԵԱՆ ԲԱՐԵՓՈԽՈՒՄՆԵՐՈՒՆ ՆԱԽԱԳԻԾԸ ԿԸ ՀԱՄԱՐՈՒԻ ԸՆԴՈՒՆՈՒԱԾ

Փետրուար 20-ին, Արցախի Հանրապետութեան մէջ տեղի ունեցաւ սահմանադրութեան փոփոխութեան հանրաքուէ:

Յաջորդ օրը, Ստեփանակերտի մէջ կայացած ասուլիսի ընթացքին, Ղարաբաղի Կեդրոնական Ընտրական Յանձնաժողովի (ԿԸՅ) նախագահ Սրբուհի Արզումանեան յանձնաժողովին կողմէ ընդունուած կը յայտարարէ սահմանադրութեան փոփոխութիւններուն նախագիծը:

Ան կը յայտարարէ, որ սահմանադրական բարեփոխումներու հանրաքուէին կողմ քուէարկեց 69 հազար 540 քաղաքացի՝ ընտրողներուն 87.6 տոկոսը, դէմ՝ 7 հազար 686: Անվաւեր քուէաթերթիկներուն թիւը կազմեց 2 հազար 202 կամ 2.8 տոկոս: «Սահմանադրութեան նախագիծը համարւում է ընդունուած», - ըսաւ Արզումանեան:

Հանրաքուէին քուէարկելու իրաւունք ունեցող 103 հազար 766 քաղաքացիներէն քուէարկութեան մասնակցած է 79 հազար 428 քաղաքացի կամ ընտրողներու ընդհանուր թիւին 76.5 տոկոսը:

# ՈՆՑ ԿԱՐՈՂ Է ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ՄԷՋ ԿԱՐԵՒՈՐ ԴԵՐԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ ՈՒՆԵՑՈՂ ԱՆՁՆԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ ՄԻ ՕՐ ՅԵՏՈՅ ԸՆԴԴԻՄՈՒԹԻՒՆ ԴԱՌՆԱԼ. Տ. ՍԱՐԳՍԵԱՆ. *ԱՌԱՒՕՏ*

*Առաւօտ* օրաթերթը գրում է. «Հայաստանի կոմունիստական կուսակցութեան նախագահ Տաճատ Սարգսեանը զարմանում է ստեղծուած քաղաքական դաշտի վրայ. «Մարդիկ դաշինք են կազմում առանց գաղափարախօսութեան: Միայն եւ միայն յայտնուեն ազգային ժողովում, մօտենան կերակրատաշտին, ուրիշ բան չկայ, եւ ժողովրդին գցում են թիւրիմացութեան մէջ: Ոնց կարող է երէկուայ իշխանութեան մէջ կարեւոր դերակատարութիւն ունեցող անձնաւորութիւնը մի օր յետոյ դառնայ ընդդիմութիւն: Այդպիսի բան չի կարող լինել: Ո՞նց կարող է միանան երկու կուսակցութիւն, որոնց գաղափարախօսութիւնը լրիւ տարբեր է: Կամ ընդհանուր առմամբ գաղափարախօսութեան մասին կարծիք լինել չի կարող: Մենք դէմ ենք եւ նման ընդդիմութեանը, եւ նման մարդկանց, նման կուսակցութիւններին, որոնք պէտք է մասնակցեն ընտրութիւններին», - ասել է Կոմկուսի նախագահը»:

# ՄԵՐ ԵՐԿԻՐԸ ՇԻՆՈՒՄ ԵՆ ՄԻ ՔԱՆԻ ՕԼԻԳԱՐԽ. ՀՐԱՆՏ ԲԱԳՐԱՏԵԱՆ. *ԱՌԱՒՕՏ*

Ազատ Դեմոկրատներ կուսակցութեան վարչապետի թեկնածուին՝ Հրանտ Բագրատեանին, *Առաւօտը* հարցրել է՝ Դուք խօսում էք ներդրումային միջավայրը բարելաւելու մասին, բիզնէսը զարգացնելու հնարաւորութեան մասին, բայց այդ ամէնը նաեւ գործող վարչապետ Կարէն Կարապետեանն է խոստանում, որ աշխատացնելու են, ի՞նչն է, որ նա չի կարող անել, իսկ դուք կարող էք անել, նա պատասխանել է.



*Հրանտ Բագրատեան*

«Կարէն Կարապետեանը պէտք է Սեպտեմբերին կանգնեցնէր Հարկային օրէնսգիրքը, որտեղ ներդրումների առումով փոքրն աւելի շատ է հարկւում, քան խոշորը: Չեն կանգնեցրել: Գործող վարչապետը, ՀՀԿ-ն ներդրումները պատկերացնում են այսպէս՝ կը կանչեն մի ռուսահայ բանի, ներդրում կ'անի կապիտալով: Ներդրումները ներքին խնայողութեան արդիւնք են, պէտք է այսպէս անեն, որ նոյնիսկ 100 դոլար ունեցող մարդը ներդրումներին մասնակցի... Մեր երկիրը շինելու վրայ ժողովուրդը չի աշխատում, մեր երկիրը շինում են մի քանի օլիգարխ, իրենց շինածն էլ տեսնում ենք, օրը մէկ մի հատ մոլ է բացւում: Ամէն մոլը բացւում է, փակւում է 2000 հատ խանութ»:

**ՀԱՅԱՍՏԱՆ**

# ՀԱՅԱՍՏԱՆԻՑ ԱՄԷՆ ՏԱՐԻ 2000 ԵՐԵԽԱՅ Է ԱՐՏԱԳԱՂԹՈՒՄ ԲԱՆԱԿԻՑ ԱԶԱՏՈՒԵԼՈՒ ՀԱՄԱՐ. ՊԱՏԳԱՄԱՒՈՐ

Ամէն տարի մինչեւ զօրակոչային տարիքը Հայաստանից արտագաղթում է մօտաւորապէս 2000 երեխայ՝ դպրոցականներ: Այս մասին Փետրուարի 21-ին լրագրողների հետ հանդիպման ժամանակ ասել է Ազգային Ժողովի Հայ Ազգային Կոնգրէսի (ՀԱԿ) խմբակցութեան պատգամաւոր Արամ Մանուկեանը: Նրա խօսքով՝ տղայ երեխա- ☞ 4

# ԳԱԼՈՒՍՏ ՍԱՀԱԿԵԱՆԻ ՈՐԴԻՆ ՊԵՏԲԻՒՋԷԻ ՀԱՇՈՒԻՆ ՀԱՐՍՏԱՑՆՈՒՄ Է ԱՐԱՄ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆԻՆ. *ԺՈՂՈՎՈՒՐԴ*

*Ժողովուրդ* օրաթերթը գրում է. «Ազգային Ժողովի նախագահ Գալուստ Սահակեանի որդի Արման Սահակեանը՝ Կառավարութեան Աշխատակազմի (ԿԱ) պետական գոյքի կառավարման վարչութեան պետը, իր կուսակից ընկերներից բնապահպանութեան նախկին նախարար Արամ Յարութիւնեանին շարունակում է պետբիւջէի հաշուին հարստացնել: Բանն այն է, որ այս վարչութիւնը տեղակայուած է Տիգրան Մեծի 4 հասցէում՝ Հանարդնախագիծ ԲԲԸ-ին պատկանող շէնքում, որին ինչպէս պարզել է *Ժողովուրդ* օրաթերթը, տարեկան 10 միլիոն 608 հազար դրամ վարձավճար է մուծում: Արման Սահակեանի ղեկավարած կառոյցը նաեւ որոշել է ետ չմնալ ճոխ գնումներից. որոշուել է գնել համակարգիչ՝ 750 հազար դրամ արժողութեամբ, եւս 14 համակարգիչ էլ նախատեսուած է ձեռք բերել արդէն չուկայական գներով՝ 260 հազար դրամով: Ի դէպ, վերջերս վարչապետը նրան յորդորել էր անբարեխիղճ կառավարիչների «ողնաշարները կոտրել», բայց ոնց հասկանում ենք՝ հազիւ թէ նա սկսի իր ողնաշարը կոտրելուց»:

# ԱՂԲԱՍՏԱՆ՝ ՎԷՊ ՀԱՐՑԱԿԱՆՆԵՐՈՎ

ՏԻԳՐԱՆ ԵԳԱՒԵԱՆ

**Թարգմանութիւնը ֆրանսերէնից՝ ՌՈՒԶԱՆ ՎԱՐԴԱՆԵԱՆ**

Ակտուալ Արուեստում 2016-ին լոյս տեսան սփիւռքահայ յայտնի գրող Դընի Դոնիկեանի երկու գրքերը. *Աղբաստան. վէպ հարցական-ներով* (երկլեզու՝ հայերէն-ֆրանսերէն) եւ *L'Arménie à cœur et à cri* (ֆրանսերէն)։

Սփիւռքահայ գրականութեան համայնապատկերում Դընի Դոնիկեանը յատկապէս առանձին տեղ է զբաղեցնում։

Գրող, բանաստեղծ, գեղանկարիչ, թարգմանիչ՝ կիրառած իր բոլոր ժանրերում հեղինակը մշտապէս առաջնորդուել է հայ ժողովրդի ժամանակակից պատմութեան մէջ իր ներգրաւուածութեամբ։

Նախկին մեծ ճանապարհորդ՝ ծագումով այս վիեննացին, Հայաստանով զբաղւում է դեռ 1960-ականների վերջից։ Եթէ նրա մաշկի բոլոր ծակոտիներն այսերկրով են շնչում, իր ձեռագիրը նա թելադրել է Մոլիէրի՝ կրէոլախառն գեղեցիկ լեզուով։

Գրուած իրեն բնորոշ ոչ աւանդական ու քայքայիչ գրչով՝ *Vidures*-ը՝ նորաբանութիւն ստեղծուած ordures-ի հանգաւորմամբ, հեղինակի առաջին վէպն է, որը լոյս է տեսել ֆրանսիական Ակտ Սիւդ հրատարակչութիւնում 2011 թուականին։ Այս չնչազուսպ ընկղմումը հայ համայնքի ծանծաղուտների տիեզերք առաջին անգամ խօսքը անդունդի եզրին գտնուող երկրի «անատամներին» էր տուել։ Ինչն էլ հէնց սարսափ առաջացրեց համայնքում։

Հայկական չոկահար բազմաթիւ կառոյցների կողմից բոյկոտի ենթարկուելով եւ հրապարակայնօրէն քննադատուելով՝ վէպը, ընդհակառակն, իր գրական վարպետութեան համար ողջունուեց ֆրանսիացի քննադատների կողմից եւ 2013 թ. Ծամբրէի փառատօնի ժամանակ ընտրուեց նախորդ տարուայ ֆրանսիական առաջին վէպերի լաւագոյն 15-ի շարքում։ Իրավիճակը բարդանում է, երբ Ակտուալ Արուեստ մշակութային միութիւնում լոյս է տեսնում գրքի հայերէն թարգմանութիւնը՝ *Աղբաստան* ակնարկիչ վերնագրով։ Մերժուելով Երեւանի աւանդարդիստ փոքրամասնութեան կողմից՝ գիրքը Հայաստանում գրեթէ աննկատ է մնում։

Այն, բայցեւայնպէս, արժէքաւոր փաստաթուղթ է նաեւ ապագայի պատմաբանների համար, ովքեր մատենագրելու են յետանկախութեան նզովեալ տարիները։ Իր ընթերցողների հետ երկխօսութեան վերհաստատման միտումով է, որ գրողը ցանկացել է հանդէս գալ պարզաբանմամբ՝ հարցուպատասխանի խաղին տրուելով։ Դրա համար իրեն շրջապատել է տարբեր մտահորիզոնի եւ տարբեր երկրների ընկերների խմբով։ Հեռու նարցիսական մարտահրաւէր լինելուց՝ այս աշխոյժ եւ ներշնչող երկխօսութիւնը մեզ հրաւիրում է առաւել բացայայտել սոցիալական, բայց եւ մշակութային մարտահրաւէրները, որոնց բախւում է այժմեան Հայաստանը։




Տպագրուած Հայաստանում՝ Ակտուալ Արուեստ մշակութային միութիւնում գերազանց հրատարակութեամբ սոյն գործը տեքստերի ժողովածու է, որը լոյս է տեսել առցանց Դընի Դոնիկեանի *Écrittératures* բլոգում։ Դասակարգուած ըստ թեմաների ակտուալութեան (հիմնականում հայկական)՝ այս խրոնիկաները սուր հայեացք են մեր իրականութեան հանդէպ եւ արտացոլում են նոյն անխախտ վրդովմունքը։ Ցաւօք այլեւս չգործող Եւրոպացի կայքի տեքստերի պէս այս կարճ մտորումների յաճախ յանդուգն տոնը երերում է խայթող հումորի եւ դառն յուսահատութեան միջեւ։ Այս գրերը՝ որպէս առ Հայաստանի ցաւի վշտակրութեան արտացոլանք, լինենք համակարծիք, թէ ոչ, մտածել են տալիս մարդկային տկարամտութեան եւ դրա աղէտալի հետեւանքների մասին։ Իրօք, հեղինակը չունի բաւական կոպիտ բառեր՝ իր վրդովմունքը հայ ղեկավարների ապշեցնող արհամարհանքի, համընդհանուր չահի եւ սփիւռքի դաւաղիր լռութեան դէմ բարձրաձայնելու համար։ Ներգրաւուած դիտորդի խրոնիկա, ով կռիւ տալով բառերի հետ, երբեք չի հրաժարուել մանրազնին ուսումնասիրել մարդկութիւնը, եւ կրողն է անհնազանդ արտայայտութիւնների։

*Ակտուալ ա*, 10 Հոկտեմբեր 2016

# ԵԳԻՊՏԱՀԱՅ ՆԿԱՐՉՈՒՀԻ ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆԻ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍԸ ՆԻՄԻ (ՖՐԱՆՍԱ) ՄԷՋ

14 Հոկտեմբեր 2016 – 19 Փետրուար 2017-ին, Ֆրանսայի Նիմ քաղաքի ժամանակակից արուեստի թանգարանին (Carré d'Art) մէջ տեղի ունեցաւ եգիպտահայ նկարչուհի-արուեստագիտուհի Աննա Պօղիկեանի ցուցահանդէսը, խորագիր ունենալով՝ *Promenade dans l'inconscient* (Զբօսանք ենթագիտակցութեան ընդմէջէն)։ Ասիկա իր առաջին անհատական ցուցահանդէսն էր եւրոպական հիմնարկի մը մէջ։

Թանգարանի տարածած ֆրանսերէն եւ անգլերէն մամուլի հաղորդագրութեան մէջ, ի միջի այլոց, կը կարդանք.




«Carré Art-ի մէջ ան պիտի զարգացնէ բարդ, բանաստեղծական պատում մը՝ հիմնուած քաղաքի պատմութեան եւ այսօրուայ իրականութեան վրայ։ Ցուցադրութիւնը պիտի միաձուլէ թուղթէ տիպարներ՝ ներկայացուած Հարաւ-Արեւելեան Ասիայի մէջ հանդիպող պուպրիկներու կերպարանքով, եւ ընդարձակ առագաստներ՝ վերցուած Նեղոսի վրայ նաւարկող փալուքաներէն, այս բոլորը առնչելով նկարներու հաւաքածոյի մը հետ։ Միջերկրականեան բոյսերով կազմուած ընդարձակ պարտէզ մը ձեւով մը պիտի նշանագծէ ճանապարհորդութեան աւարտը։ Բնութիւնը ուշագրաւօրէն ներկայ պիտի ըլլայ թէ՛ բոյսերու կերպարանքով եւ թէ՛ մեղուներու ոգեկոչումի եւ անոնց անհետացումի պարագային յառաջանալիք բնապահպանական հնարաւոր աղէտի ընդմէջէն։


Փեքակներ, 2014

«Խորագիրին վկայակոչած ենթագիտակցութիւնը աւելի կը վերաբերի Եունկի հաւաքական ենթագիտակցութեան հասկացողութեան քան Ֆրէօտին։ Այսինքն, այն գաղափարը՝ ըստ որուն գոյութիւն ունին նախատիպարային կառուցուածքներ, որոնք ժառանգուած, տիեզերական եւ անանձնական են։ *Զբօսանքը ենթագիտակցութեան ընդմէջէն*, հետեւաբար, պիտի ըլլայ ուղեւորութիւն մը դէպի այն՝ ինչ կրնայ մեզի կապել իրարու հետ եւ, ինչպէս յարուցուած է Պօղիկեանի վերջին ծրագիրներէն մէկուն խորագիրին մէջ, ենթագիտակցութենէն անցնիլ դէպի գիտակցութիւն՝ կառուցելու համար ուրիշ հնարաւոր իրականութիւններ։»

Կը ծագի հետեւեալ հարցը։ Ինչո՞ւ նման գաղափարներ՝ արտայայտուած հայերէն լեզուով, չեն արծարծուիր սփիւռքի աւանդական կառոյցներուն մէջ։ Ինչո՞ւ պիտի գովել սփիւռքահայը՝ որ «օտար»-ներուն մէջ կ'ունենայ յաջողութիւններ, առանց ցանկութիւն ունենալու այդ նոյն յաջողութիւնը վերարտադրել յիշեալ կառոյցներէն ներս։ Ինչո՞ւ աւանդականներուն ցուցահանդէսները միշտ պէտք է ըլլան նկարներու ուղղահայեաց, թանգարանային ցուցադրութիւններ՝ առանց շարժուն միտքի, առանց համայնական մտածողութեան, առանց վերագրութիւններու, առանց գաղափարային առնչութիւններու, առանց փիլիսոփայութեան, առանց ընդունելու ուրիշ իրականութիւններու հնարաւոր կամ իրական գոյութիւնները։

Հ. Ա.

1 ↳

## JAMnews. ԱՆՀՐԱԺԵՇՏ ՊԱՀԻՆ ԵՒ ՃԻՇՏ ՏԵՂՈՒՄ

Ցանկացած ինտեգրում սկսւում է ոչ թէ ընդհանուր տնտեսական շահերից, այլ այդ գործընթացի կապակցութեամբ գործընկերներին լսելու ունակութիւնից։ Ցաւօք, Հարաւային Կովկասի ընթերցող հանրութիւնը շատ աւելի լաւ գիտի, թէ ինչ է կատարւում Լոնդոնում կամ Նիւ Եորքում, քան Երեւանում, Բաքւում կամ Թբիլիսիում։ JAMnews-ը փորձում է ուժերի ներածի չափով լցնել այդ վակուումը։

Ընդհանուր տարածաշրջանային շահերի գիտակցում՝ ահա նրա յաջողութեան գլխաւոր դրայվերը։ JAMnews-ի ռազմավարական նպատակը մի այնպիսի զգացումն է, որպիսին է տարածաշրջանային հայրենասիրութիւնը։

Սոյն խնդիրը ֆանտաստի՞կ է թւում Հարաւային Կովկասի առնչութեամբ։ Ոչ պակաս ֆանտաստիկ էր երկրորդ աշխարհամարտից ընդամէնը ինը տարի յետոյ Եւրոպայում Ածխի եւ Պողպատի Միութեան ի յայտ գալը, որն էլ սկիզբ դրեց Եւրոպական Միութեանը։

Կասկածամիտները կարող են ասել, որ այդ կազմաւորումը մեր աչքերի առաջ ճգնաժամ է ապրում հիմա։ Ու ճիշտ էլ կ'անեն։ Սակայն ճգնաժամերը բնականոն երեւոյթ են աճող օրգանիզմի համար։ Դրանց բացակայութիւնը շատ աւելի վտանգաւոր է, քան ներկայութիւնը։

Ինտեգրումն ու գլոբալացումը դանդաղօրէն, դժուարութեամբ, նահանջներով, բայց շարունակուելու են։ Որոշ լրատուամիջոցներ նպաստելու են այդ գործընթացին, որոշներն էլ խոչընդոտելու են։ JAMnews-ն ուզում է լինել առաջինների՝ նպաստողների շարքում։

*Անալիտիկոնի* թանկագին ընթերցողներ։

JAMnews-ը երախտապարտ է հանդէսի խմբագրութեանը՝ անմիջականօրէն ձեզ հետ խօսելու այս բացառիկ հնարաւորութեան համար։ Մենք ունենք մի ընդհանուր տարածաշրջան, ուստի կա՛յ քննարկելու բան։

Բոլորին քաջառողջութիւն եմ մաղթում նոր տարում։ Ու նաեւ՝ աւելի շատ դրական լուրեր։

*Անալիտիկոն*, Յունուար 2017

## ՀԱՅԱՍՏԱՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԻՑ ԱՄԷՆ ՏԱՐԻ 2000 ԵՐԵԽԱՅ Է ԱՐՏԱԳԱՂԹՈՒՄ ԲԱՆԱԿԻՑ ԱԶԱՏՈՒԵԼՈՒ ՀԱՄԱՐ. ՊԱՏԳԱՄԱՒՈՐ

Ամէն տարի մինչեւ զօրակոչային տարիքը Հայաստանից արտագաղթում է մօտաւորապէս 2000 երեխայ՝ դպրոցականներ։ Այս մասին Փետրուարի 21-ին լրագրողների հետ հանդիպման ժամանակ ասել է Ազգային Ժողովի Հայ Ազգային Կոնգրէսի (ՀԱԿ) խմբակցութեան պատգամաւոր Արամ Մանուկեանը։ Նրա խօսքով՝ տղայ երեխաներին երկրից հանելու ամենամեծ պատճառը բանակից ազատելու ցանկութիւնն է։

«Եւ սա հիմնաւորում է նաեւ այն, որ այս երկարաշունչ 25 տարուայ կիսապատերազմ վիճակը թողնում է տնտեսութեան, մարդկանց հոգեբանութեան, մարդկանց կենսակերպի վրայ լուրջ ազդեցութիւն։ Դրան գումարուել է նաեւ վերջին տարիներին ահագնացող սպանութիւնների թիւը բանակում։ Ես վերցրել եմ Արթուր Սաքունցի ուսումնասիրութիւնները, որոնք ակնյայտ ցոյց են տալիս, որ վերջին տարիների վիճակագրութիւնը գնալով արագընթաց վատանում է։ Եթէ պատերազմից յետոյ միջինը մեր բանակում զոհւում էին 40-50 երեխայ, ապա 2015 թուականին այն հասել է 80-ի, 2016 թուականին 160-ի,

↳ 4

## *ՃԱՀԱԿԻՐ*Ի ՎԵՑԵՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾԸ՝ *ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ՀԱՅԿԱԿԱՆ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԿԵԱՆՔԻ ՈՒՐՈՒԱԳԻԾ*

Լոյս տեսաւ *Ճահակիր*ի վեցերորդ յաւելուածը՝ *Աղեքսանդրիոյ Հայկական երաժշտական կեանքի ուրուագիծ (1931-1977) (ըստ ազդագիրներու եւ յայտագիրներու)* (202 էջ), որ կը պարունակէ 48 վաւերաթուղթ:


ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ՀԱՅԿԱԿԱՆ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԿԵԱՆՔԻ ՈՒՐՈՒԱԳԻԾ (1931-1977)
(ըստ ազդագիրներու եւ յայտագիրներու)
Հաւաքեց՝ Հ. Աւագեան
ՃԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ ՅԱՒԵԼՈՒԱԾ Զ.
ԳԱՀԻՐԷ
2017

Ասիկա կը հանդիսանայ *Ճահակիր*ի յաւելուածներու ծիրին մէջ նախատեսուած եգիպտահայ երաժշտական կեանքին հետ առնչուող վաւերագրութիւններու շարքին երկրորդ հատորը:

## *ՃԱՀԱԿԻՐ*Ի ՅԱՒԵԼՈՒԱԾՆԵՐԸ ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԴԱՐԱՆԻ ԿԱՅՔԷՋԻՆ ՄԷՋ

Կը փափաքինք մեր յարգելի ընթերցողներուն տեղեկացնել, որ *Ճահակիր*ի բոլոր յաւելուածները (2016-2017) արդէն կարելի է ներբեռնել այցելելով Հայաստանի Ազգային Գրադարանի մամուլի կայքէջը՝ http://tert.nla.am/mamul/Jahakir1948/2016.html եւ http://tert.nla.am/mamul/Jahakir1948/2017.html:

Կրկին յիշեցնենք, որ *Ճահակիր*ի երեք տարիներ (2013-2015) եւս կարելի է ներբեռնել Գրադարանի կայքէջէն՝ http://tert.nla.am/mamul/Jahakir1948/NLA.html, ինչպէս նաեւ *Ճահակիր*ի երաժշտական յաւելուած *Ծիծեռնակ*ի (2001-2008) ամբողջ համարները՝ http://tert.nla.am/mamul/Cicernak2001/Table.html:



ԽՈՀԵՐ

## ՀԱՆԴԷՍԷ ՀԱՆԴԷՍ ՅԻՇՈՒՈՂ ՆՇԱՆԱԲԱՆՆԵՐ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

Դարձեալ, անցեալ սիւնակի նման, բնաբան պիտի ընդունիմ Վարուժան Գազանճեանի նոյն առիթով (Թէքէեան սրահ, 3 Մայիս 1987) արտասանած խօսքերէն մէկը.

«Սփիւռքահայերս ժամանակ առ ժամանակ նշանաբաններ կը նետենք հրապարակ, ըսենք օրինակ՝ «Վերադառնալ մեր գրաւուած հողերը» եւ ինքզինքնիս կը հանգստացնենք կարծելով թէ մեր պարտականութիւնը կատարած կ'ըլլանք երբ զանոնք յիշենք հանդէսէ հանդէս: Սակայն, երբ մենք նշանաբան մը մէջտեղ կը նետենք, մեր ամբողջ առօրեան պէտք է նուիրենք այդ նշանաբանին: Մենք այդպէս չէ որ կ'ընենք»: (Արաքսի Տէօվլէթեան, «Սփիւռքի մէջ հայկական արուեստ կարելի՞ է մշակել», *Արեւ*, օրաթերթ, Գահիրէ, 72-րդ տարի, թիւ 20628, 9 Յունիս 1987, էջ 2:) Ասիկա է, զոր Ի. դարու երկրորդ կէսի մարքսիսթները իրաւացի յամառութեամբ կը կոչեն օտարացում: «Օտարացում» բառը վերցուած է Մարքսէն, բայց անոր չեշտադրութիւնը կատարուած շատ աւելի ուշ:

Լոկ փոքր յաւելում մը: Այս նշանաբանները «ժամանակ առ ժամանակ» չէ որ առաջ կը նետուին, քանզի սփիւռքը այնքան ալ ճկուն չէ նոր նշանաբաններ ստեղծելու եւ զանոնք չգործադրելու պարագային անվնաս դուրս գալու գործարքին մէջ (օրինակ, Պարաք Օպամա ութ տարի առաջ կ'արձակէր Կուանթանամոյի բանտը փակելու նշանաբանը, որուն գործադրութեան ձախողութիւնը երբեք չվնասեց իր դէմքի փայլունութեան): Սփիւռքի նշանաբանները հարիւր տարի առաջ ձեւակերպուած նշանաբաններ են՝ որոնք կը յիշուին «հանդէսէ հանդէս» եւ տակաւին պիտի գործադրուին:

Նշանաբաններու եւ գործադրութեան միջեւ գոյութիւն ունեցող բացը՝ օտարացումը, մեծապէս նպաստաւոր է նշանաբանները առաջ նետողներուն համար, որոնք կանգնած են նուիրապետական հասարակարգին գագաթը եւ անընդհատ կը սնուին անոնցմէ:

Կայ Գազանճեանի յիշած նշանաբանը՝ «վերադառնալ մեր գրաւուած հողերը», որ կը մտնէ աւելի ընդարձակ նշանաբանին մէջ՝ Արեւմտահայաստանի ազատագրումը: Բացի դատական ու խորհրդարանական գործունէութիւններէն, կա՞յ արդեօք այս ուղղութեամբ որեւէ գործնական ծրագիր, ծրագիր մը՝ ուր նախագծուած ըլլայ գալիք 25 տարիներու մանրամասն ուղեգիծ մը:

«Միջազգային» դատարաններէն որոշումներ ստանալով եւ դրամատիրական տիրակալ երկիրներու խորհրդարաններէն հաւանութիւններ կորզելով հողեր չեն վերադառնար: ՄԱԿ-ը պաշտօնական բանաձեւեր ընդունած է՝ ուր կը պարտադրէ Հայաստանին եւ քաշուիլ ամբողջ Լեռնային Ղարաբաղի եւ շրջակայ տարածութիւններէն (ասոր մասին շատ քիչ կը խօսինք): Յետո՞յ ինչ: Յարութ Սասունեան քանիցս (ներառեալ Հայաստանի հեռատեսիլի կայաններէն) յայտարարած է՝ որ ԱՄՆ-ը արդէն ընդունած է հայոց ցեղասպանութիւնը: Եթէ մեր սիրելի ԱՄՆ-ը՝ որ կը տիրէ ՄԱԿ-ին, միջազգային կոչուող դատարաններուն եւ այլնի վրայ, ընդունած է ցեղասպանութիւնը, ուրեմն՝ տրամաբանօրէն հաստատուած է հողերու բռնագաւթումը, ի՞նչն է որ կը խանգարէ այդ նոյն կառոյցներուն որոշումներ ընդունիլ եւ հողերը ազատագրել:

Բայց կայ աւելի կարեւորը: Եթէ ազատագրումը հնարաւոր իրականութիւն մը կը նկատուի, ուրեմն պարտադրաբար պէտք է շատոնց մշակուած ըլլար կառավարումի մանրամասն ծրագիր մը՝ որ գործադրելի ըլլայ ենթադրուած ազատագրումէն ետք: Նման ծրագիր չկայ, ոչ ալ ցանկութիւն կայ զայն կազմելու: Իսկ այս ցանկութեան պակասը արդեօք կասկածներ չի՞ յառաջացներ ներկայ ամբողջ գործընթացին վրայ:

Կը բաւէ այն նուազագոյն հարցը՝ թէ ինչպէ՞ս ժողովրդավարութեան նշանաբանը իրենց առաջնահերթութիւնը ըրած աւանդականները պիտի ղեկավարեն ոչ-հայկական մեծամասնութիւնը: Անձնաւորութիւն մը Հայաստանի հեռատեսիլէն կ'ըսէր՝ թէ մենք հողերը ստանալէ ետք կրնանք ինքնավարութիւն տալ քիւրտերուն եւ ստեղծել ինքնավար Քիւրտիստան: Հողերը ետ ստանանք, որպէսզի յետոյ ինքնավարութեան պիտակին տակ ձերբազատուինք քիւրտերէն եւ ըլլանք մեծամասնական, եթէ երբեւէ կարելի է մեծամասնական ըլլալ: Իսկ մարդկային տեղաշարժե՞րը: Կարելի՞ է տարածութեան մը վրայ մեծամասնութիւն կազմել առանց ներքին զանգուածային տեղաշարժերու: Եւայլն, եւայլն:

Գալով ազատագրուած հողերը վերադարձողներուն (եթէ գտնուին նման մարդիկ), անոնք վստահաբար «վերադառնալ մեր գրաւուած հողերը» նշանաբանը արձակողները պիտի չըլլան, քանի որ անոնք լաւ ու հանգիստ նստած են իրենց տաքուկ բնակարանները եւ նպատակ չունին ձերբազատուիլ իրենց եկամտաբեր առեւտուր-գործարքներէն: Ճիշդ այնպէս, ինչպէս 1940-ականներու եւ 1960-ականներու յայտնի ներգաղթներուն ժամանակ, ներգաղթը սփիւռքի մամուլէն ու բեմերէն գովաբանողներուն մեծամասնութիւնը մնաց իր տեղը, այլեւ շարունակեց փառաբանել ներգաղթածներուն հրաշալի կեանքը հայրենիքէն ներս: Եւ իր ցնորական հայրենասիրութեան համար «արժանացաւ» խորհրդահայ իշխանութիւններու եւ խորհրդային դեսպանատուներու բարձր պաշտօնեաններու գնահատանքներուն:

Սփիւռքի մէջ կան նաեւ ուրիշ քանի մը նշանաբաններ: Կայ հայապահպանումի նշանաբանը: Հայապահպանում, կը նշանակէ գլխաւորապէս «պահպանել» արեւմտահայ լեզուն: Բայց ահա ԻՒՆԵՍՔՕ-ն քանի մը տարի առաջ արեւմտահայերէն լեզուն կը դասակարգէ վտանգուած լեզուներու շարքը (կարծէք մենք հայերս անտեղեակ էինք այս վտանգէն): Պարզագոյն տրամաբանութեամբ մը, եթէ հայապահպանումի գլխաւոր գործօններէն մէկը՝ լեզուն, վտանգուած է, ուրեմն հայասպանումը ձախողած է: Հայապահպանումի նշանաբանը եղած է աւելի ուժեղ քան անոր գործադրութիւնը: Գոնէ ԻՒՆԵՍՔՕ-ի յայտարարութենէն ետք, սփիւռքը եւ հայապահպանումի գործընթացը ենթադրուած էր ապրիլ խոր ցնցում, ենթադրուած էր վերանայիլ նշանաբանին (չ)գործադրութեան հանգամանքները եւ հիմնել ամբողջապէս նոր համակարգ մը, ուր նոր ենթականեր գրաւէին հիներուն տեղը: Բայց այդպէս չեղաւ: Նոյն հին գործիքները շարունակուեցան կիրառուիլ (եգիպտահայութեան պարագային՝ ահռելի ամսականներով անվերջանալիօրէն վերահսկիչներ դնել-ճամբելու, ուսուցիչներ հրաւիրել-վտարելու (ոչ-)քաղաքականութիւնը, առանց հող ստեղծելու անոնց իրական գործունէութեան եւ առանց որոշելու անոնց ընդունումի եւ վտարումի «հայապահպան» չափանիշները) միեւնոյն անձերուն ձեռքով՝ որոնք առաջ նետած էին հայապահպանումի նշանաբանը: Արեւմտահայերէնը վտանգուած է բայց հայապահպանումի նշանաբանը՝ աւելի քան երբեք կանգուն մնացած:

Կայ մշակոյթի նշանաբանը: Սփիւռքի մէջ մշակոյթ բառը կը հոլովուի ամէնուրեք եւ կը կիրառուի մանաւանդ «հանդէսէ հանդէս», սփիւռքահայ հանդէսներուն սովորապաշտութիւն դարձած երգ-պար-տարազ-արտասանութիւն ամրացումներու ընդմէջէն, որոնց ձեռնարկողները կը հանդիսանան նոյն վերը յիշուած հայապահպանները:

Արդարեւ, մշակոյթը ունի իր բաղկացուցիչները, որոնցմէ մէկն է գրքային հրատարակչութիւնը: Ներկայիս սփիւռքի մէջ կա՞յ արդեօք արեւմտահայերէն գիրքի հրատարակչական *կազմակերպուած* գործունէութիւն: Բացի մէկ-երկու ազգայնական քօղով պարուրուած ծայրայեղ աջակողմեան «կազմակերպուած» գրքային հրատարակչութիւններէ, արեւմտահայերէն արտադրող սփիւռքահայ մտաւորականին հրատարակչական (եւ ընդհանրապէս մտաւոր) ճակատագիրը նետուած է բախտի գիրկը: Ինչո՞ւ Ֆրանսահայ Գրիգոր Պըլտեանի նման

↪ 4

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

3

## ՀԱՆԴԷՍԷ ՀԱՆԴԷՍ ՅԻՇՈՒՈՂ ՆՇԱՆԱԲԱՆՆԵՐ

բազմազեղ ու լայնահորիզոն գրող մը՝ գաղափարախօսութիւններու չենթարկուող, իր հատորները պիտի կարողանար հրատարակել միայն Հայաստանի մէջ, հակառակ ֆրանսահայ գաղութին արձակած անընդհատ ինքնափառաբանական մշակութային նշանաբաններուն: Ինչո՞ւ նոյնպէս ֆրանսահայ Տրնի Տոնիկեանի նման խորահայեաց գրողի մը ֆրանսերէն յօդուածներուն հայերէն թարգմանութիւնը պիտի կատարուէր ու տպագրուէր ոչ-սփիւռքի (Հայաստանի) մէջ: Օրինակները անթիւ են: Խօսքը, բնականաբար, իշխանութիւններուն ծառայող եւ մեծահարուստներուն ցանկութիւնները ընդօրինակող ու հրապարակող եւ անոնցմէ սնուող համատարած «մտաւորականներ»-ուն մասին չէ:

Յարգելով սակաւաթիւ կարեւոր բացառութիւնները, սփիւռքահայ կառոյցներէն ներս մշակութային հրատարակութիւնները դրուած են գաղութի մեծահարուստ յաճախ ցմահ ղեկավարներուն տնօրինութեան տակ, որոնց համար մշակոյթն ու ընթերցանութիւնը կը գտնուին իրենց ըմբռնումէն ու հասողութենէն անդին: Այս մեծահարուստ-պատասխանատուները՝ որոնք անընդհատ մեզի կը ներկայանան մշակութասէր դիմակով մը, մշակութային հրատարակութիւններուն պիտի յատկացնեն այն նուազագոյնը՝ որ պիտի ապահովէ մշակոյթի նշանաբանին արծարծումը: Միութիւնները խնդիր չունին իրենց դրամները ծախսել սպառողական նպատակներով՝ պիլիարտոյի սեղաններ, թանկարժէք սերամիքով ծածկուած պատեր, չքեղ ժողովասրահներ, չքեղագոյն մարզադաշտեր, ճոխ ճաշկերոյթներ, ուր դրամի մսխումը ընդունուած երեւոյթ մը կը նկատուի: Երբ կարգը կու գայ արեւմտահայ ու արեւմտահայերէն մշակոյթին՝ լուրջ, կարեւոր ու ինքնատիպ մշակոյթին, հեռու կրկնապատճէններէ եւ սովորամոլութիւններէ, այստեղ ծախսուելիք իւրաքանչիւր լուման կը հաշուարկուի ամենախիստ չափանիշներով: Դրամատիրական սպառողականութեան համար դրամ կայ բայց արեւմտահայերէն մշակոյթի սպառումին համար միշտ դրամը կը պակսի: Եւ այս պակաս կողմն է՝ մշակոյթը, որ կը ստանայ նշանաբանի առիւծի բաժինը, մինչդեռ սպառողականութիւնը՝ որ բուն ու իրապէս գործադրուող նշանաբանը պէտք է ըլլար, կը մնայ առանց նշանաբանի, քանի որ անիկա դարձած է կեանքի ու ապրելու ոճ ու եղանակ, մինչդեռ նշանաբանները, ինչպէս մշակութայինը, կը տրուին կեանքի ոճ ու եղանակ չդարձած երեւոյթներուն, երեւոյթներ՝ որոնք այդպէս ալ պէտք է մնան՝ հեռու կեանքի ոճ ու եղանակ դառնալէ:

Վերջապէս, կայ երիտասարդութեան նշանաբանը: Այս նշանաբանը սփիւռքի հնարածը չէ, ան գոյութիւն ունի ամբողջ արդի աշխարհին մէջ՝ երիտասարդներու դաստիարակութիւն, երիտասարդ տարրերու պատրաստութիւն, երիտասարդական հաւաքոյթներ, երիտասարդական թերթեր, եւ այլն, բոլորն ալ ձեռնարկուած, կազմակերպուած ու վերահսկուած մեծահասակներու կողմէ, իբրեւ միջոց կազմելու համակարգին հնազանդ ու ծառայող սերունդներ: Սփիւռքը պէտք չէ անմաս մնար այս նշանաբանէն, այն տարբերութեամբ, որ այստեղ սփիւռքի կառոյցներէն դուրս եւլել - ներս մտնելու խնդիր մը առաջ նետուած է: Երիտասարդները աւանդական կառոյցներէն դուրս են, որովհետեւ անոնք անտեղեակ են, անգիտակից են, անհոգ են եւ անփոյթ են, հետեւաբար միութիւններուն մեծահասակները՝ որոնք տեղեակ են, գիտակից են, հոգատար են եւ փութաջան են, առաւելագոյն ջանք կը գործադրեն երիտասարդները վերադարձնել կառոյցներէն ներս: Տակաւին պէտք է պարզաբանել՝ թէ երիտասարդները կառոյցներէն կը հեռանան իրե՞նց պատճառով, թէ զանոնք դէպի կառոյցները հրաւիրողներուն:

Կացութիւնը՝ հանդէսէ հանդէս յիշուող նշանաբաններով, արդարեւ, խիստ յարմարաւէտ է ընտրելախաւին համար:



## ՀԱՅԱՍՏԱՆԻՑ ԱՄԷՆ ՏԱՐԻ 2000 ԵՐԵԽԱՅ Է ԱՐՏԱԳԱՂԹՈՒՄ ԲԱՆԱԿԻՑ ԱԶԱՏՈՒԵԼՈՒ ՀԱՄԱՐ. ՊԱՏԳԱՄԱՒՈՐ

1

ներին երկրից հանելու ամենամեծ պատճառը բանակից ազատելու ցանկութիւնն է:

«Եւ սա հիմնաւորում է նաեւ այն, որ այս երկարաչունչ 25 տարուայ կիսապատերազմ վիճակը թողնում է տնտեսութեան, մարդկանց հոգեբանութեան, մարդկանց կենսակերպի վրայ լուրջ ազդեցութիւն: Դրան գումարուել է նաեւ վերջին տարիներին ահագնացող սպանութիւնների թիւը բանակում: Ես վերցրել եմ Արթուր Սաքունցի ուսումնասիրութիւնները, որոնք ակնյայտ ցոյց են տալիս, որ վերջին տարիների վիճակագրութիւնը գնալով արագընթաց վատանում է: Եթէ պատերազմից յետոյ միջինը մեր բանակում զոհւում էին 40-50 երեխայ, ապա 2015 թուականին այն հասել է 80-ի, 2016 թուականին 160-ի, իսկ այս տարուայ կարճ ժամանակում ունենք արդէն 11 զոհ», - ասել է պատգամաւորը:

Արամ Մանուկեանի խօսքով՝ ամենամեծ խնդիրն այն է, որ ոչինչ չի արւում մահաբեր գործընթացը կանգնացընելու համար:

«Պատերազմական վիճակում էս զոհերը, կը ներէք բառիս համար, ինչ որ կերպ արդարացւում են: Քանի որ, երբ դու պատերազմում ես, դա քո երկրի ճակատագրի համար է, բայց պատերազմից յետոյ, 23 տարի այդ հալումաշ անող կարգավիճակը շարունակւում է ու դրա դեմ ոչինչ չի արւում», - նշել է Մանուկեանը:

ՀԱՅԱՍՏԱՆԻՑ ԱՄԷՆ ՏԱՐԻ 2000 ԵՐԵԽԱՅ Է ԱՐՏԱԳԱՂԹՈՒՄ ԲԱՆԱԿԻՑ ԱԶԱՏՈՒԵԼՈՒ ՀԱՄԱՐ...

1

իսկ այս տարուայ կարճ ժամանակում ունենք արդէն 11 զոհ», - ասել է պատգամաւորը:

Արամ Մանուկեանի խօսքով՝ ամենամեծ խնդիրն այն է, որ ոչինչ չի արւում մահաբեր գործընթացը կանգնեցընելու համար:

«Պատերազմական վիճակում էս զոհերը, կը ներէք բառիս համար, ինչ որ կերպ արդարացւում են: Քանի որ, երբ դու պատերազմում ես, դա քո երկրի ճակատագրի համար է, բայց պատերազմից յետոյ, 23 տարի այդ հալումաշ անող կարգավիճակը շարունակւում է ու դրա դէմ ոչինչ չի արւում», - նշել է Մանուկեանը:

## ԳԱՀԻՐԷ




## ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Այսու կը տեղեկացնենք մեր յարգոյ հասարակութեան թէ Եգիպտոսի Հայոց Թեմի Կազմական Կանոնագրի 23-րդ յօդուածի տրամադրութեան հիման վրայ, Աղեքսանդրիոյ Պատկառելի Թեմական Ժողովի ամբողջական ընտրութիւնները տեղի պիտի ունենան Ուրբաթ, 5 Մայիս 2017-ին:

Սոյն ամբողջական ընտրութիւններուն մասնակցելու իրաւունք ունեցող ազգայիններու ցանկը կախուած է Ս. Պօղոս-Պետրոս եկեղեցւոյ մուտքին եւ Ազգային Առաջնորդարանին մէջ:

Կը տեղեկացնենք նաեւ, թէ ըստ Կազմական Կանոնագրի 13 եւ 14 յօդուածներուն, ընտրութեան ցանկերը *«փակցնելու եւ հրատարակելու գործողութեան թուականի յաջորդող 7 օրերու ընթացքին, 21 տարեկանը լրացած եգիպտահպատակ եւ երկու տարի Աղեքսանդրիոյ եւ անոր շրջակայքին մէջ բնակող իւրաքանչիւր անձ (այր թէ կին), որուն անուան արձանագրութիւնը մոռցուած է, կրնայ պահանջել որ իր անունը արձանագրուի: Նոյնպէս ամէն ընտրող, որուն անունը արձանագրուած է, կրնայ պահանջել, որ առանց իրաւունք ունենալու արձանագրուած անձին անունը ջնջուի»*:

ԴԻՒԱՆ
ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

**Ի ԳԻՏՈՒԹԻՒՆ ՄԵՐ ԲԱՐԵՊԱՇՏ ԺՈՂՈՎՈՒՐԴԻՆ**

**ԱՅՍ ՏԱՐԻ ՄԵԾ ՊԱՀՔԸ ԿԸ ՍԿՍԻ ՓԵՏՐՈՒԱՐ 27-ԷՆ**

**Մեծ Պահոց շրջանին առաջին ԽԱՂԱՂԱԿԱՆ ԵՒ ՀԱՆԳՍՏԵԱՆ ժամերգութիւնները.**

**1. Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԱՌԱՋՆՈՐԴԱՆԻՍՏ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՄԷՋ Ուրբաթ, 3 ՄԱՐՏ-ին, երեկոյեան ժամը 5-ին:**

**2. ՄԵՐՃԱՆԵԱՆ ՄԱՏՈՒՌԻՆ ՄԷՋ Հինգշաբթի, 9 ՄԱՐՏ-ին, երեկոյեան ժամը 5-ին:**

*Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ*

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

**Մ**եծ Պահոց շրջանին, **Ուրբաթ, 3 ՄԱՐՏ**-էն սկսեալ, եւ յաջորդող ամէն Ուրբաթ երեկոյեան, Հելիոպոլսէն դէպի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցի հաւատացեալներուն փոխադրութիւնը դիւրացնելու համար, Եկեղեցւոյ Հոգաբարձութիւնը կարգադրած է հանրաշարժի մասնաւոր սպասարկութիւն «Եկեսցէ»ի արարողութեան համար: Հանրաշարժի կանգառներն են.

Սալահ Էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 4:00-ին

Իսկ Կիրակի առաւօտները

Սալահ Էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 8:45-ին

*Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ*

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly


P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com


Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1785 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 9 ՄԱՐՏ 2017 ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 75 Ե. ԴԻԿ. ٢٠١٧ عدد رقم ١٧٨٥ الخميس ٩ مارس


## 2008 Թ. ՄԱՐՏԻ 1-ԻՆ ՀՀ ՔԱՂԱՔԱՑԻՆԵՐԻ ԴԷՄ ՊԵՏԱԿԱՆ ԱՀԱԲԵԿՉՈՒԹԻՒՆԻՑ ԱՆՑԵԼ Է 9 ՏԱՐԻ

2008 թ. Մարտի մէկից արդէն 9 տարի է անցել: Մինչ օրս իրաւական գնահատական չի տրուել այդ եւ յաջորդող 20 օրերի ընթացքում Ռոբերտ Քոչարեանի գլխաւորութեամբ եւ հրամանով ՀՀ անզէն քաղաքացիների նկատմամբ իրականացուած պետական ահաբեկչութեանը, բացայայտուած չեն առնուազն տասը զոհերի մահուան հանգամանքները, եւ ոչ ոք քրէական պատասխանատուութեան չի ենթարկուել:

Արձագանքելով ՀՀ Յատուկ քննչական ծառայութեան յայտարարութիւններին, որոնցով վերջինս հասարակութեան աջակցութիւնն է ակնկալել՝ զոհերի մահուան հանգամանքները բացայայտելու գործում՝ Հելսինկեան Քաղաքացիական Ասամբլեայի Վանաձորի գրասենեակը բազմիցս հանդէս է եկել դրան ուղղուած առաջարկութիւններով, յարուցուած քրէական գործի ընթացքի վերաբերեալ տեղեկատուական հարցումներով:

Բոլոր դէպքերում պատասխանը նոյնն է եղել՝ «քրէական գործով ձեռնարկուել ու ձեռնարկւում են ՀՀ քրէական դատավարութեան օրէնսգրքով նախատեսուած բոլոր միջոցառումները՝ գործի հանգամանքների բազմակողմանի, լրիւ եւ օբիեկտիւ հետազօտման, զանգուածային անկարգութիւնների ընթացքում կատարուած բոլոր յանցագործութիւնների դէպքերը, այդ թւում՝ տասն անձանց մահուան հանգամանքները բացայայտելու ուղղութեամբ»:

Կազմակերպութիւնը ամիսներ առաջ առաջարկել էր նաեւ հարցաքննել ՀՀ ներկայիս ոստիկանապետ, 2008 թ. ՀՀ Պաշտպանութեան Նախարարութեան ռազմական ոստիկանութեան պետ Վլ. Գասպարեանին՝ հիմք ընդունելով լրատուամիջոցներից մէկին տարբեր ժամանակահատուածներում վերջինիս տուած իրարամերժ բովանդակութեամբ հարցազրոյցները: Դրանցում Վլ. Գասպարեանը մէկ պնդում էր, որ հակասահմանադրական որեւէ գործողութիւն ինքն ի պաշտօնէ չի իրականացրել եւ տրամաբանական համարում բանակի ներգրաւումը, ապա ժխտում ինքն իրեն՝ բացառելով բանակի մասնակցութիւնը մարտիմէկեան իրադարձութիւններին: Իսկ աւելի ուշ՝ առաջարկում սրբագրել իր որոշ պատասխաններ:

Սրան ի պատասխան ՀՀ Յատուկ քննչական ծառայութիւնը բաւարարուել էր «նամակը քրէական գործին կցելով» միայն՝ «անհրաժեշտութեան դէպքում» քննչական գործողութիւններ կատարելու խոստումով՝ բացարձակ ոչ շահագրգիռ կեցուածք ընդունելով մարտիմէկեան յանցագործութիւնները կատարածներին բացայայտելու եւ պատասխանատուութեան ենթարկելու գործում:

Ինը տարի շարունակ քրէական գործի քննութիւնը դոփում է տեղում, եւ առաւել քան ակնյայտ է, որ իրաւասու մարմինները գործին ընթացք տալու եւ նոյնիսկ սպանութիւնը կատարողներին բացայայտելու եւ պատասխանատուութեան ենթարկելու «անհրաժեշտութիւն» չեն տեսնում:

Անպատժելիութիւնը մնում է չյաղթահարուած...

**ՀԵԼՍԻՆԿԵԱՆ ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆ ԱՍԱՄԲԼԵԱՅԻ ՎԱՆԱՁՈՐԻ ԳՐԱՍԵՆԵԱԿ**

## ՄԱՐՏԻ 1-Ի ԶՈՀԵՐԸ

2008 թուականի Մարտի 1-2-ին Երեւանի կենտրոնում սպանուել է 10 մարդ՝ 2 ոստիկաններ եւ 8 քաղաքացիական անձինք: Մինչ օրս սպանութիւնների համար ոչ մէկին մեղադրանք չի առաջադրուել, ոչ ոք չի դատապարտուել:

Մարտի 1-ի զոհերն են.

**Գոռ Քլոյեանը** մահացել է Մարտի 1-ին բեկորային վնասուածքներից: Նրա մարմնից հանել են մետաղի կտորներ: Պաշտօնական վարկածի համաձայն, մահուան պատճառը Չերեոմուխա պայթուցիկի հասցուած վնասուածքներն են:

**Դաւիթ Պետրոսեանը** մահացել է կրծքավանդակի թիկունքից հասցուած հրազէնային վնասուածքից:

**Տիգրան Աբգարեանը** ծառայել է ոստիկանական յատուկ զօրքերում: Վիրաւորուել է 2008 թուականի Մարտի 1-ին, 41 օր կոմայի մէջ է եղել եւ մահացել է Ապրիլի 10-ին:

3

## ՊՈԼՍՈՅ ՀԱՅՈՑ ՊԱՏՐԻԱՐՔԻ ԸՆՏՐՈՒԹԵԱՆ ՀԵՏ ԿԱՊՈՒԱԾ՝ ԿԻՐՔԵՐԸ ԲՈՐԲՈՔՈՒԱԾ ԵՆ ՈՒ ՈՍՏԻԿԱՆՆԵՐ ԿԱՆՉՈՒԱԾ

Պոլսոյ հայոց պատրիարքարանի հոգեւոր խորհուրդի առաջնորդ եպիսկոպոս Սահակ Մաշալեանի հրաժարականէն ետք ստեղծուած ճգնաժամը լուծելու համար, հայ համայնքի ներկայացուցիչներն ու հոգեւորականները երկու տարբեր հանդիպումներ ունեցած են:

Ինչպէս կը տեղեկացնէ Պոլսոյ հայկական *Ակօսը*, հայկական հիմնադրամներու առաջնորդներ, ազդեցիկ հայեր, որոնց մէջ եղած է նաեւ հայ կին պատգամաւոր Սելինա Տողան, հաւաքուած են Սուրբ Աստուածածին եկեղեցւոյ սրահներէն մէկուն մէջ: Միեւնոյն ժամանակ գաղտնի հանդիպում ունեցած են Սուրբ Փրկիչ հիւանդանոցի հոգաբարձուներու խորհուրդի նախագահ Պետրոս Շիրինօղլու, Մելքոն Քարաքոսէ, Վազգէն Բարըն, փոխպատրիարք Արք. Արամ Աթէշեան եւ եպիսկոպոս Սահակ Մաշալեան:

Այս երկրորդ խումբը հանդիպումի աւարտին արձանագրութիւն մը կը ստորագրէ, ուր կը նշուի, որ եպիսկոպոս Մաշալեան ու արքեպիսկոպոս Աթէշեան համաձայնութեան եկած են ու պատրիարքի ընտրութիւնները տեղի պիտի ունենան 28 Մայիսին, իսկ մինչ այդ Արք. Արամ Աթէշեան պիտի շարունակէ կատարել փոխպատրիարքի պաշտօնը:

Այս հանդիպումն ու հանդիպումի արձանագրութիւնը խիստ վրդովմունք պատճառած են դուրսը հաւաքուած հայ համայնքի ներկայացուցիչներուն: Կիրքերը այնքան բորբոքած են, որ տեղի ունեցած է հոմշտոց ու վիրաւորանքներ, որուն պատճառով ոստիկաններ դէպքի վայր կանչուած են:

Հայ համայնքի աչխոյժ ներկայացուցիչներէն Թորոս Ալճան յայտարարած է, թէ չի ճանչնար ընդունուած արձանագրութիւնը, քանի որ ան հրէշաւոր քայլ է, իրաւական առումով՝ անթոյլատրելի:

Պատգամաւոր Սելինա Տողան եւս բողոքած է ընդունուած արձանագրութեան դէմ՝ յայտնելով, թէ ան թէեւ երկու կողմի միջեւ հաշտութեան պայմանագիր է բայց խնդիրի հիմնարար լուծում չէ եւ այդպիսով Աթէշեան պիտի շարունակէ ղեկավարել պատրիարքարանը:

Պոլսահայ հիմնադրամներու համերաշխութեան միութեան փոխնախագահ Յարութիւն Շանլը նոյնպէս չեշտած է, որ եթէ չունին պատրիարք, ուրեմն չի կրնար փոխպատրիարք ըլլալ եւ Աթէշեանը պարտաւոր է անմիջապէս հրաժարական տալ: Ան արձանագրութիւնը անուանած է Արք. Աթէշեանը փրկելու գործողութիւն:

Յիշեցնենք, որ օրեր առաջ եպիսկոպոս Մաշալեան հրաժարական ներկայացնելու մասին գրաւոր յայտարարութիւն տարածած էր՝ չեշտելով, որ այդ քայլին դիմած է Պոլսոյ հայոց պատրիարքական տեղապահ Արք. Արամ Աթէշեանի պահուածքի պատճառով, քանի որ վերջինս ամէն կերպ կը խոչընդոտէ պատրիարքի ընտրութիւններ իրականացնելը:

Վերջին օրերուն կը տեղեկացնեն նաեւ, որ Արամ Արք. Աթէշեան եւ Սահակ Եպիսկոպոս Մաշալեան կանչուած են Էջմիածին, քննարկելու համար ստեղծուած կացութիւնը:

## ԵՍ ՀԱՄՈԶՈՒԱԾ ԵՄ, ՈՐ ՄԱՐՏԻ 1-ԻՆ ԱՄԷՆ ԻՆՉ ՆԿԱՐԱՀԱՆՈՒԵԼ Է, ԲԱՅՑ ԱՅԴՊԷՍ ԷԼ ՄԵՆՔ ԴԱ ՉՏԵՍԱՆՔ. ՓԱՇԻՆԵԱՆ

NEWS.am, 1 Մարտ - Մարտի 1-ի սպանութիւնները բացայայտուած չեն, գլխաւոր մեղաւորները երկուսն են, 2008-ի Մարտի 1-ին նախագահի պաշտօնը զբաղեցնող Ռոբերտ Քոչարեանը եւ վարչապետի պաշտօնը զբաղեցնող Սերժ Սարգսեանը: Այս մասին Մարտի 1-ին, Միասնիկեան արձանի մօտ, երթից յետոյ լրագրողների հետ զրոյցում նշել է Ելք դաշինքի ցուցակի 3-րդ հորիզոնականը զբաղեցնող, ԱԺ պատգամաւոր Նիկոլ Փաշինեանը:

Նրա խօսքով, կոնկրէտ սպանութիւններն իրականացնողները չեն բացայայտուել, որովհետեւ նրանց բացայայտումը չղթայաբար դէ իւրէ պրոցէսը կը հասցնի իր նշած անձանց:

«Ամենավատ մղձաւանջում անգամ դժուար էր հաւատալ, որ իշխանութիւնը մայրաքաղաքի կենտրոնում կ'օգտագործի մարտական փամփուշտներ եւ մարտական զէնք: Դա, ցաւօք, տեղի է ունեցել: Այնուամենայնիւ, ինչքան էլ վատ մտածես, այդպիսի քայլ անելու համար լրիւ ուրիշ վիճակ է հարկաւոր: Պէտք էր ուղղակի մարտական զէնքի կիրառումը բացառել սեփական ժողովրդի նկատմամբ», - ասաց Փաշինեանը:

Նա նշեց, որ յետագայ քննութիւնը ցոյց տուեց, որ Ազատութեան հրապարակում եւ ցուցարարների մօտ ոչ մի զէնք չի եղել, ոչ մի հիմնաւորում չտրուեց. «Զնայած, Ռոբերտ Քոչարեանը յայտարարում էր, որ ամէն ինչ նկարահանուած է, ցոյց կը տանք: Ես համոզուած եմ, որ ամէն ինչ նկարահանուած է, բայց այդպէս էլ մենք դա չտեսանք»:

Յիշեցնենք, որ ուղիղ 9 տարի առաջ Երեւանի կենտրոնում ողբերգական իրադարձութիւններ տեղի ունեցան, որի հետեւանքով զոհուեց 10 քաղաքացի: 2008թ. Փետրուարի 18-ի նախագահական ընտրութիւններից յետոյ ՀՀ առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանի կողմնակիցները հաւաքուել էին

2

## «ՆՈՐ ԸՆՏՐԱԿԱՆ ՕՐԷՆՔՈՎ ԱՐԴԻՒՆՔՆԵՐԸ ԿԱՆԽՈՐՈՇՈՒԱԾ ԵՆ». ՍՏԵՓԱՆ ԳՐԻԳՈՐԵԱՆ

Նոր ընտրական օրէնսգիրքը յստակ կը կանխորոշէ, թէ ով պիտի յաղթէ ընտրութիւններուն: Այս մասին, լրագրողներու հետ հանդիպման ժամանակ նշած է համաշխարհայնացման եւ տարածաշրջանային համագործակցութեան վերլուծական կեդրոնի նախագահ Ստեփան Գրիգորեան՝ աւելցնելով, որ փողի, ֆինանսական եւ վարչական ռեսուրսներու գործօնը այս ընտրութիւններուն անչափ մեծ պիտի ըլլայ:

Ան ըսած է, որ հաստատ գիտէ, որ ՀՀԿ-ն 60 տոկոս ձայն պիտի հաւաքէ, ԲՀԿ-ն 15 տոկոս, եթէ, իհարկէ, շրջադարձային փոփոխութիւններ չգրանցուին:

«ՀՀԿ-ն 60 տոկոս, ԲՀԿ-ն 15, Հայկական Վերածնունդը եւ ՀՅԴ-ն՝ 5-ական: Այս բոլորը միասին կը հաւաքեն ձայների 85 տոկոսը: Մնացած 15 տոկոսից մօտ 7 տոկոս ձայնի շանս ունի ընդդի-

2

# ԳԱԳԻԿ ԾԱՌՈՒԿԵԱՆ ԿԱՄ ԻՆՉՊԷ՞Ս ՍՏԵՂԾԵԼ ՏԻՊԱՐ ՅԱՅՐԵՆԱՍԷՐԻ ՊԱՏԿԵՐԸ

Յ. ԱՒԱԳԵԱՆ

2015-ին Հեռացուեցաւ «քաղաքականութենէն»՝ Սերժ Սարգսեանի ուղիղ Հրամանով, 2016-2017-ին յաջողեցաւ վերադառնալ «քաղաքականութիւն»՝ որպէսզի ինչ որ կրնայ խլէ Ապրիլին կազմուելիք խորՀրդարանէն: Այսօր, ամէնուրեք Գագիկ Ծառուկեանի անունն է:

Ծառուկեան քաղաքականութիւն վերադառնալու եւ այնտեղ մնալու Համար, իր սեփականութիւնը Հանդիսացող Կենտրոն Հեռատեսիլի կայանին միջոցով փորձեց, եւ մեծ մասամբ յաջողեցաւ, ստեղծել տիպար Հայու մը ինքնապատկերը:

Նախքան այս պատկերին մասին բացատրութիւն մը տալը, անՀրաժեշտ է, որքան կարելի է մանրամասն, ցոյց տալ պատկերին միւս կողմը, այն կողմը՝ որ կը Հանդիսանայ գործարար-օլիկարքի մը գործունէութեան ողնասիւնն ու կորիզը: Այս միւս կողմը մարդու չաՀագործումն է, փոքր ներդրողներու արտաքսումը, շուկայի մենատիրութեան տիրացումը՝ ներառեալ խաղատուները, ինչպէս նաեւ չաՀագործումի դէմ մարդոց ձեռնարկած պայքարի ջախջախումը: Միայն այս միւս կողմի ընդմէջէն կարելի է պարզաբանել տիպար Հայրենասէր մարդու պատկերի ինքնաստեղծումի ամբողջ գործընթացքին նշանակութիւնը:

## ԳԱԳԻԿ ԾԱՌՈՒԿԵԱՆԻ ՄԻՒՍ ԴԷՄՔԸ

## ԾԱՌՈՒԿԵԱՆԻ ՀԱՐՍՏՈՒԹԻՒՆԸ

Հետաքննող լրագրող Գրիշա Բալասանեան կը տեղեկացնէ Ծառուկեանի 2008-2009 Թուականներու Հարստութեան մասին.

«2008 Թ. Ծառուկեանն ունեցել է 7 միլիարդ 705 միլիոն 645 Հազար դրամ եւ 933 Հազար 668 ԱՄՆ դոլար եկամուտ: Նա ձեռք է բերել եւ միեւնոյն ժամանակ օտարել է մէկ շէնք եւ շինութիւն: Գնել է Նիսան Պատրոլ, վաճառել՝ Դայմլէր-Կրայսլէր աւտոմեքենա: Գործարար պատգամաւորի 2009 Թ. գոյքի եւ եկամուտների յայտարարագրից երեւում է, որ այդ տարի գնել է Ռոլս-Ռոյս կուպէ ֆոնտոմ աւտոմեքենա եւ վաճառել Մերսեդէս Բենց S500-ը: Գնուած աւտոմեքենաները պատգամաւորն օգտագործել է անձնական կարիքների Համար:

«Ճգնաժամային տարում Ծառուկեանը կարողացել է զգալիօրէն բարելաւել իր ֆինանսական կարողութիւնները: Նա 2009 Թ. յայտարարագրել է 9 միլիարդ 670 միլիոն 820 Հազար դրամ, 126 միլիոն եւրօ եւ 439 Հազար ԱՄՆ դոլար:

«ԻՀարկէ, քչերը կը Հաւատան, որ Ծառուկեանը մէկ առ մէկ նշել է իր եկամուտներն ու ոչինչ չի Թաքցրել՝ Հաշուի առնելով, որ յայտարարագրերի օրինականութեան Հարցով ոչ ոք չի զբաղւում: Թէեւ Հարկային մարմիններն են ընդունում գոյքի եւ եկամուտների յայտարարագրերը, այնուամենայնիւ, Կառավարութիւնը «խնայել» է Պետական Եկամուտների Կոմիտէի (ՊԵԿ) աշխատակիցների ներուժը եւ նրանց չի օժտել օրինականութեան ստուգման լիազօրութեամբ:»(1)

2011-ի Հարստութեան մասին կը կարդանք.

«*Հայկական ժամանակ* Թերթը գրում է, որ ԲՀԿ առաջնորդ Գագիկ Ծառուկեանը վերջին 1 տարում ունեցել է 21 միլիարդ 433 միլիոն դրամի, 60 միլիոն 81 Հազար դոլարի եւ 40 միլիոն եւրոյի եկամուտ: Տուեալները նշուած են նրա՝ Կենտրոնական Ընտրական Յանձնաժողով (ԿԸՅ) ներկայացրած գոյքի եւ եկամուտների մասին յայտարարագրում:

«Ծառուկեանը յայտարարագրել է ադամանդէ քարով երեք մատանի՝ 3 միլիոն, 1 միլիոն եւ 700 Հազար դոլար արժէքներով, երեք ձեռքի ժամացոյց՝ մէկը 300 Հազար, երկուսը՝ 500 Հազարական դոլար արժէքով: 2012 մարտի 1-ի դրութեամբ՝ բանկային Հաշուեհամարներում ունեցել է 1 միլիարդ 161 միլիոն դրամ, 30 միլիոն 730 Հազար դոլար եւ 20 միլիոն 483 Հազար եւրօ: Նա յայտարարագրել է նաեւ Թանկարժէք կաՀոյք՝ 8-ը ննջարանի, 2-ը ճաշասենեակի, որոնց ընդՀանուր արժէքը կազմում է աւելի քան 800 Հազար եւրօ: Ամենաթանգ ը՝ 127 Հազար 820 եւրօ արժողութեամբ, ճաշասենեակի կաՀոյքն է: Գագիկ Ծառուկեանը բաժնետոմսեր ունի 32 տարբեր ընկերութիւններում: Նրան պատկանող շինութիւնների ընդՀանուր մակերեսը մօտ 9 Հազար քառակուսի մետր է, իսկ Հողամասերինը՝ մօտ 32 Հեկտար, ունի նաեւ եօթ Հատ աւտոմեքենա, որից ամենավերջինը՝ Ռոլս-Ռոյս կուպէ ֆանտոմը ձեռք է բերել 2008-ին:»(2)

*Slaq.am* կը ներկայացնէ Տէր եւ Տիկին Ծառուկեաններուն Հարստութիւնը 2012-ին.

«Ներկայացնում ենք Բարգաւաճ Հայաստան կուսակցութեան առաջնորդ Գագիկ Ծառուկեանի եւ նրա կնոջ յայտարարագրած ունեցուածքը: Յայտարարագիրը՝ ըստ 2012 Թուականի տուեալների է:

«Գագիկ Ծառուկեանը յայտարարագրել է 7 աւտոմեքենա. BMW X-5, Տոյոտա Պրադօ V-6, Ջիպ Վրանգլէր P-6-4, 0, Ռոլլս Ռոյս B-12-6,7, Նիսսան Պատրոլ, Ռոլլս Ռոյս կուպէ ֆանտոմ, Ռենջ Ռովէր սպորտ 4.4:

«Նրա դրամական միջոցները կազմել են 201 միլիոն 750 Հազար դրամ, 31 միլիոն 268 Հազար ԱՄՆ դոլար, 20 միլիոն 40 Հազար 500 եւրօ: Ծառուկեանի եկամուտը կազմել է 6 միլիարդ 274 միլիոն 772 Հազար 443 դրամ:

«Իսկ Գագիկ Ծառուկեանի տիկինը՝ ՋաւաՀիր Ծառուկեանն ունի 19 միլիարդ 516 միլիոն 684 Հազար դրամի արժեԹղԹեր եւ այլ ներդրումներ: ՋաւաՀիր Ծառուկեանի դրամական միջոցները կազմում են 21 միլիոն 700 Հազար դրամ: Նրա տարեկան եկամուտը՝ 11 միլիարդ 850 միլիոն 562 Հազար 800 դրամ է:»(3)

Տէր եւ Տիկին Ծառուկեաններու 2013 Թուականի տուեալները կը ներկայացնէ *Ժողովուրդը*.

«Գագիկ Ծառուկեանը 2013 Թուականին 4,8 միլիարդ դրամ արժողութեամբ Հասարակական շինութեան առք եւ վաճառք է կատարել: Նա նաեւ վաճառել է իր ունեցած Հողամասերից մէկը՝ 100,2 միլիոն դրամ արժողութեամբ: ԲՀԿ առաջնորդը 2 Հատ Toyota Land Cruiser 2.0 մակնիշի աւտոմեքենա է գնել՝ իւրաքանչիւրի Համար վճարելով 18,2 միլիոն դրամ:

«ԲՀԿ առաջնորդի դրամական ունեցուածքը 2013 Թուականին կազմել է 25,8 միլիարդ դրամ, 41,3 միլիոն դոլար եւ 23,3 միլիոն եւրօ: Պատգամաւորը Հարկային տարում ունեցել է 1,8 միլիարդ դրամի, 25 միլիոն դոլարի եւ 150 Հազար եւրոյի եկամուտ կանխիկ փողով, ինչպէս նաեւ՝ 4,9 միլիարդ դրամի չափով եկամուտ՝ բնամԹերքով: 2013Թ. նրա յանձնուած կամ վերադարձուած փոխառութիւնները կազմել են 24,7 միլիարդ դրամ, 17,6 միլիոն եւրօ եւ 7 միլիոն ԱՄՆ դոլար:

«ԲՀԿ առաջնորդի կինը՝ ՋաւաՀիր Ծառուկեանը, յայտարարագրել է 25 միլիոն դրամ եւ 31 Հազար եւրօ ունեցուածք: 2013-ին նա 8 միլիոն 534 Հազար դրամ արժողութեամբ Թանկարժէք սպասք է գնել: Իսկ պատգամաւորի դուստրը՝ ԱնաՀիտը, 32 Հազար դոլարի եւ 72 Հազար եւրոյի եկամուտ է յայտարարագրել:»(4)

2013-ի եկամուտներուն մասին կը մանրամասնէ նաեւ *Ասպարէզ*.

«*Ասպարէզ*ն այս անգամ իր ընԹերցողների ուշադրութեանն է ներկայացնում Բարգաւաճ Հայաստան կուսակցութեան առաջնորդ, Հայաստանի Ազգային Օլիմպիական Կոմիտէի (ՀԱՕԿ) նախագաՀ Գագիկ Ծառուկեանի եւ նրա կնոջ գոյքի ու եկամուտների յայտարարագրերի տուեալները:

«Գ. Ծառուկեանի կնոջ՝ ՋաւաՀիր Ծառուկեանի 2013 Թուականի գոյքի եւ եկամտի յայտարարագրում առկայ տեղեկութիւնների Համաձայն, Ջ. Ծառուկեանի արժեԹղԹերը եւ այլ ներդրումները 2013-ի վերջում կազմել են 29.718.568.500.00 դրամ: Նոյն տարուայ վերջում Ջ. Ծառուկեանի ունեցած փոխառութեան գումարը կազմել է 160.000.00 եւրօ: 2013-ին՝ Ջ. Ծառուկեանի ձեռք բերած Թանկարժէք գոյքը գումարով կազմել է 8.534.425.00 դրամ: Ջ. Ծառուկեանի դրամական միջոցները 2013-ի վերջում կազմել են 25.357.000.00 դրամ: Նոյն տարուայ վերջին դրամական միջոցները դոլարով կազմել են 31.000.00 ԱՄՆ դոլար: 2013-ին Ջ. Ծառուկեանի եկամուտներն արտարժոյԹով կազմել են 700.000.00 ԱՄՆ դոլար, դրամով՝ 10.201.925.000.00:

«Գ. Ծառուկեանի դստեր՝ ԱնաՀիտ Ծառուկեանի՝ 2013-ին յայտարարագրած եկամուտների չափը կազմել է 32,506.00 դրամ, արտարժոյԹով՝ 72.000.00 ԱՄՆ դոլար:

«Գ. Ծառուկեանի՝ 2013 Թուականի գոյքի եւ եկամուտների յայտարարագրի Համաձայն, վերջինս յայտարարագրել է 4.865.336.608.00 դրամի անշարժ գոյք, որն օտարուել է նոյն տարում: Գ. Ծառուկեանը յայտարարագրել է նաեւ Հողամաս, որն օտարել է 100.295.917.00 դրամով, երկու՝ TOYOTA LAND CRUISER 200 4.0 մակնիշի մարդատար աւտոմոբիլային տրանսպորտային միջոց, որոնցից իւրաքանչիւրը ձեռք է բերուել 18.270.000.00 դրամով: Գ. Ծառուկեանի 2013-ի վերջում ձեռքբերուած արժեԹղԹերի գինը կազմել է 29.718.568.500.00 դրամ գումար:

«Գ. Ծառուկեանի՝ 2013-ի սկզբին դրամով յայտարարագրած փոխառութեան գումարները կազմել են 20.352.013.335.00, 35.930.010.00, 7.713.879.00, 1.046.841.712.00, 366.937.163.00, 998.251.159.00, 32.591.808.00, 45.256.000.00, 12.000.000.00, 41.828.000.00 եւ 13.820.000.00 դրամ գումար: Փոխառութիւնները ԱՄՆ դոլարով 2013-ի սկզբին կազմել են 5.280.695.00 եւ 100.000.00 դոլար: Եւրոյով՝ 120.000.00, 656.813.00, 2.135.260.00, 1.420.00, 1.826.057.00 եւ 14.086.587.00: Գ. Ծառուկեանի յայտարարագրած փոխառութեան գումարները 2013-ի վերջին դրամով կազմել են 21.472.013.335.00, 30.904.005.00, 155.810.126.00, 1.264.379.042.00, 383.637.163.00, 958.052.287.00, 157.658.312.00, 130.402.500.00, 144.567.280.00 եւ 21.290.000.00 դրամ: ԱՄՆ դոլարով՝ 5.251.871.00, 100.200.00, 650.000.00, 447.000.00 եւ 570.941.00 դոլար: Եւրոյով՝ 270.000.00, 781.193.00, 35.260.00, 62.920.00, 448.950.00, 16.013.517.00 եւ 32.200.00: Դրամական միջոցները 2013-ի սկզբին ՀՀ դրամով կազմել են 307.600.000.00, 2013-ի վերջին՝ 25.873.900.000.00 դրամ գումար: Դոլարով՝ 31.300.000.00, 2013-ի վերջին՝ 41.360.000.00 դոլար գումար: Եւրոյով՝ 22.0700.000.00, 2013-ի վերջին՝ 23.366.000.00 եւրօ գումար: 2013-ին Գ. Ծառուկեանի Հարկային եկամուտները կազմել են 1.885.510.865.00, բնամԹերքով՝ 4.982.231.405.00 դրամ:

«Ըստ Համացանցում առկայ տեղեկութիւնների, Գ. Ծառուկեանը տիրապետում է բաւական Թանկարժէք ադամանդեղէնի եւ կաՀոյքի, Մուլտի Գրուպ ընկերութեան նախագաՀն է: Այն իր մէջ ներառում է Աբովեանի չափիչ սարքերի գործարանները, Մեկ կաՀոյքի խանութների ցանցը, Երեւանի քիմիադեղագործական ֆիրման, Մուլտի Գազ գազալցակայանների ցանցը, Արարատ կոնեակի, գինու, օղու կոմբինատը, Արարատ ցեմենտի գործարանը, Աւիասերվիս բաժնետիրական, Նիւ ընկերութիւնները, Տեխնոալյումին ձեռնարկութիւնը եւ այլն: Նրան է պատկանում Կոտայք գարեջրի գործարանը եւ այլն:

«Վերը նշուած եւ Համացանցում առկայ այլ տուեալներից երեւում է, որ գոյքի եւ եկամուտների յայտարարագրերի Հանդէպ իրական վերաՀսկողութեան բացակայութեան արդիւնքում Հայաստանում բնակուող օլիգարխները մեծամասամբ չեն յայտարարագրում

4

## «ՆՈՐ ԸՆՏՐԱԿԱՆ ՕՐԷՆՔՈՎ ԱՐԴԻՒՆՔՆԵՐԸ

1

մադիր չորս ուժերից եւ դաշինքերից միայն մէկը: Մնացած չորս կուսակցութիւններից նրանք կը յայտնուեն պառլամէնտում, որոնք ոչ Թէ մեզ խելացի ծրագրերով կը Համոզեն, այլ լուրջ քաղաքական պայքարով: ԵԹէ Սէյրան ՕՀանեանը եւ Օսկանեանը պլակատները ձեռքին կանգնեն կառավարութեան առջեւ ու բողոքի ակցիա անցկացնեն, ապա ես նրանց կը Հաւատամ: Ինձ Համար չափորոշիչը քաղաքական պայքարն է, ոչ Թէ խելօք ծրագրերը», - ըսած է ան:

Քաղաքագէտի խօսքով՝ նոր ընտրակարգը ժողովուրդին խճճելու միտում կը պարունակէ եւ կրնայ լուրջ խնդիր դառնալ ընտրողի Համար. «Բարդ Համակարգ է: Ես 25 տարի զբաղւում եմ ընտրական օրէնսգրքով, սակայն մինչեւ Հիմա ամբողջովին չեմ Հասկացել նոր ընտրութեան կարգը: Մարդկանց շփոԹեցնելու մեծ միտում եմ տեսնում: Բացի դրանից մէկ շաբաԹ է անՀրաժեշտ արդիւնքները Հաշուելու Համար ու դա առանց դիտորդների»:

Քաղաքագէտը ստեղծուած դաշինքներու որակէն գոՀ է, անոր խօսքով՝ ցուցակներու առաջին Հորիզոնականներուն վրայ Հիմնական խելացի եւ յադԹանակի արժանի մարդիկ են: Սակայն, եԹէ անոնք փորձեն Համակերպուիլ կամ յարմարուիլ իշխանութեան առաջարկած պայմաններուն, ապա ապագայ չեն ունենար:

## ԵՍ ՅԱՄՈԶՈՒԱԾ ԵՄ, ՈՐ ՄԱՐՏԻ 1-ԻՆ ԱՄԷՆ...

1

Ազատութեան Հրապարակում եւ պաՀանջում էին ընտրութիւնների արդիւնքների վերանայում: Նրանք 10 օր շարունակ շուրջօրեայ ՀանրաՀաւաքներ էին անցկացնում Ազատութեան Հրապարակում:

Մարտի 1-ի առաւօտեան ոստիկանութիւնը ուժով ցրեց Ազատութեան Հրապարակում Հաւաքուածներին: Մարդիկ սկսեցին Հաւաքուել Միասնիկեանի արձանի մօտ: Նոյն օրը երեկոյեան երկրի նախագաՀ Ռոբերտ Քոչարեանն արտակարգ դրութիւն յայտարարեց, ապա ուժային կառոյցները Հրազէն կիրառեցին անզէն ցուցարարների դէմ, որի Հետեւանքով զոՀուեց 10 քաղաքացի, այդ Թւում երկու ոստիկան, եւս 200 մարդ տարբեր աստիճանի վնասուածքներ ստացան:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԵԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ ԿՈՉԸ ՍՓԻՒՌՔԻՆ

Մենք՝ Հայաստանի քաղաքացիական հասարակութեան եւ իրաւապաշտպան մի խումբ կազմակերպութիւններս, սոյն բաց նամակով դիմում ենք սփիւռքի մեր հայրենակիցներին՝ անհատների, կազմակերպութիւնների եւ ոչ ֆորմալ խմբերի՝ աքթիւ դիրքորոշում ստանձնելու Հայաստանի քաղաքական կեանքում:

Միշտ զգացել ենք մեր երկրի հանդէպ սփիւռքի մեծ սէրը եւ իրապէս երախտապարտ ենք արտերկրի մեր հայրենակիցների կողմից բազում տարիներ Հայաստանի ժողովրդին ցուցաբերած հսկայական ու երկարատեւ աջակցութեան համար: Այդուհանդերձ, 1991թ. Հայաստանի անկախութիւնից ի վեր ապրում ենք անմխիթար պայմաններում, ինչի ականատեսն էք նաեւ դուք. աղքատութիւն, բնակչութեան քանակի նուազում եւ ազգային ինքնիշխանութեան աստիճանական նահանջ: Շարունակաբար կեղծուող ընտրութիւններն ու քաղաքական կոռուպցիան (կաշառակերութիւնը) գրեթէ ողջ սոցիալ-տնտեսական իշխանութիւնը կեդրոնացրել են ոչ ներկայացուցչական օլիկարխիկ վերնախաւի ձեռքում: Բնական ռեսուրսները սպառւում են՝ ծառայելով կարճատեւ եւ փոքր խմբային շահերին, աղքատութիւնն ու սոցիալական անարդարութիւնը ահագնացող չափերի են հասնում՝ մի խումբ որոշում կայացնողների բարեկեցութեան աճին զուգահեռ: Քաղաքացիների քաղաքական ու քաղաքացիական իրաւունքները պարբերաբար ոտնահարւում են, անարդարութեան դէմ խաղաղ հաւաքները դաժանօրէն ճնշւում են, կախման մէջ գտնուող դատական իշխանութիւնն արդար դատավճիռներ չի կայացնում՝ աւելացնելով քաղաքական բանտարկեալների թիւը: Աւելին, 2016 թ. ապրիլեան քառօրեայ պատերազմը բացայայտեց, թէ ինչպէս է անվերահսկելի ու անպատժելի կոռուպցիան մսխում հայոց բանակի ռեսուրսներն ու սպառնում Հայաստանի անվտանգութեանը:

Անկախութիւնից 25 տարի անց նման պայմաններն այլեւս անընդունելի են: Առաջին հայեացքից թերեւս ոչ այդքան ակնյայտ, սակայն հէնց ժողովրդավարութեան պակասով են պայմանաւորուած միւս գրեթէ բոլոր ազգային խնդիրները: Ցիրաւի 21-րդ դարում ժողովրդավարութիւնն է ընկած պետութեան կառուցման հիմքում:

Մենք՝ ներքոստորագրեալներս, աշխատել ու անխոնջ պայքարել ենք յանուն Հայաստանում օրէնքի գերակայութեան եւ ժողովրդավարութեան: Զարգացրել ենք ենթակառուցուածք ու աքթիւացրել մեր քաղաքացիների ջանքերը ընտրութիւնների դիտորդութեան ուղղութեամբ, ինչը ժողովրդավարութեան միակ ամենահիմնարար գործընթացն է Հայաստանում: Բայց մեր ռեսուրսները սահմանափակ են:

Ցղելով այս կոչը, ցանկանում ենք յայտնել, որ մեծապէս զգում ենք ձեր կարիքը ոչ թէ ձեր նուիրատուութիւններով ու արտերկրից ուղարկուող փոխանցումներով, այլ՝ ձեր ոգու ու ֆիզիքական ներկայութեամբ Հայաստանում՝ ընտրական տեղամասերում ներգրաւուելով դիտորդական առաքելութիւնում եւ ստանձնելով ձեր դերը Հայաստանի ժողովրդավարութեան այս պատմական փնտռտուքում:

Առաջիկայ խորհրդարանական ընտրութիւնները երկրի համար յոյժ կարեւոր են: 2015թ. սահմանադրական հանրաքուէի արդիւնքում, որն ինքնին ուղեկցուել է լայնածաւալ կոռուպցիայով, Հայաստանն սկսում է անցում կատարել դէպի խորհրդարանական հանրապետութիւն: Սա նշանակում է, որ առաջիկայում նախագահական ընտրութիւններ չեն լինի եւ խորհրդարանական ընտրութիւններն են կանխորոշելու Հայաստանի ապագան:

Մենք կոչ ենք անում սփիւռքի բոլոր կազմակերպութիւններին, հաստատութիւններին ու աքթիւ անհատներին միանալ մեզ մեր ջանքերում եւ աջակցել՝ յանուն արդարութեան, մարդու իրաւունքների պաշտպանութեան, ազատ ու արդար ընտրութիւնների, հաշուետու կառավարման, քաղաքացիական իրաւունքների ու արժանապատուութեան: Կապ հաստատէք մեզ հետ, եկէ՛ք մեզ մօտ՝ միասին անցնելու այս խրթին ճանապարհը:

Հայաստանի ապագան ժողովրդավարական է, եւ այդ ապագան սկսւում է այսօր ձեր մասնակցութեամբ եւ համախմբմամբ:

Միացէ՛ք մեզ:

Մեր ընտրական դիտորդական առաքելութեանը կարող էք միանալ՝ այցելելով http://citizenobserver.am կայք կամ գրելով info@citizenobserver.am հասցէին:

Կոչ ենք անում սփիւռքի մեր բոլոր հայրենակիցներին, անկախ տարիքից, քաղաքացիութիւնից, քաղաքական պատկանելիութիւնից կամ հայերէնի իմացութիւնից, միանալ մեզ մեր ջանքերում:

Ստորագրել են.

-Թրանսփարէնսի Ինթերնէշնլ հակակոռուպցիոն կեդրոն
-Ժուռնալիսթների Ասպարէզ ակումբ
-Իրաւունքի Եւրոպա միաւորում
-Հելսինկեան Քաղաքացիական Ասամբլեայի Վանաձորի Գրասենեակ
-Գորիսի լրագրողների ակումբ
-Համայնքների Համախմբման եւ Աջակցութեան Կեդրոն
-Սօսէ ՀԿ
-Հայաստանի Երիտասարդ Կանանց Քրիստոնէական Ազգային Ասոցիացիա
-Եւրասիա Համագործակցութեան Հիմնադրամի հիւսիսային մասնաճիւղ
-Խաղաղութեան Երկխօսութիւն ՀԿ
-Կանանց Ռեսուրսային Կեդրոն
-Հանրային Տեղեկատուութիւն եւ Գիտելիքի Կարիք ՀԿ
-Ընդդէմ Իրաւական Կամայականութեան
-Երաշխիք քաղաքացիական հասարակութեան կեդրոն
-Լոռեցիների Միաւորում ՀԿ
-Լոգոս ՀԿ

## ՄԱՐՏԻ 1-Ի ԶՈՀԵՐԸ

**Տիգրան Խաչատրեան** մահացել է Մարտի 1-ին, գանգուղեղային բաց-կոյր վնասուածքից: Գանգի խոռոչից հանուել է օտար մարմին՝ մետաղի կտոր: Մահուան պատճառ է դարձել Չերեմուխա տեսակի յատուկ միջոցը:

**Արմէն Ֆարմանեանը** մահացել է գանգուղեղային բաց-կոյր վնասուածքից, գանգից հանուել է օտար մարմին: Պաշտօնական վարկածով՝ մահուան պատճառն է Չերեմուխա տեսակի պայթուցիկը:

**Յովհաննէս Յովհաննիսեանը** մահացել է հրազէնային վնասուածքից Մաշտոցի պողոտայի եւ Գրիգոր Լուսաւորիչ փողոցի խաչմերուկի կամրջի վերին մասում:

**Համլէտ Թադեւոսեան**՝ ոստիկանութեան զօրքերի կապիտան: Հրազէնային բազմաբեկորային վնասուածքների՝ նռնակի պայթիւնի հետեւանքով վիրաւորուել է: Դէպքը տեղի է ունեցել Մարտի 1-ի երեկոյեան՝ 21:18-ին, կլինիկական մահ է տարել Մարտի 2-ին՝ 3:30: Յետմահու ստացել է մայորի կոչում:

**Գրիգոր Գէորգեանը** մահացել է ժամը 21.30-ին Լէօ-Պարոնեան խաչմերուկի վրայ՝ դիպուկահարի կրակոցից:

**Սամուէլ Յարութիւնեանը** մահացու վիրաւորուել է Մաշտոցի գետնանցումի վրայ՝ ԱԿՍ տեսակի աւտոմատի կրակոցից:

**Զաքար Յովհաննիսեանը** զոհուել է ժամը 01.30-ին Մարտի 2-ին Մաշտոցի շուկայի դիմաց՝ Մակարով տեսակի ատրճանակի կրակոցից:

ԽՈՀԵՐ

## (Չ)ԿԱՐԴԱՑՈՂՆԵՐ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Կան անթիւ մարդիկ որոնք կը կարդան: Լաւ է: Ուրիշ հարց՝ թէ ի՛նչ կը կա՛րդան. կարելի է կարդալ լրագիրի արկածներու սիւնակէն մինչեւ Յակոբ Օշական եւ Ալէն Պատիու:

Կան անթիւ մարդիկ որոնք չեն կարդար եւ յաւակնութիւն չունին կարդացող ըլլալու: Լաւ է՝ անոնք մարդոց չեն խաբեր: Անոնք անկեղծ են:

Բայց կայ նաեւ կարդացող-չկարդացողներու երկու շերտ, որոնց (չ)ընթերցանութիւնը հաճելի բան մը չէ բնաւ.

1. Առաջին շերտը այն է՝ որ գիտէ հայերէն կարդալ, բայց կը նախընտրէ կարդալ հայերուն մասին հրապարակուած ոչ-հայերէն յօդուածները՝ որոնք գրուած են կա՛մ «օտար»-ներուն կողմէ, եւ կամ հայերուն կողմէ՝ հայ մշակոյթը «օտար»-ներուն ներկայացնելու միտումով: Կարեւորը՝ գոյութիւն ունենայ «օտար»-ին հմայքը:

Օրինակ, առանց բառ մը կարդացած ըլլալու Աւետիք Իսահակեանէ, ոչ ալ անոր մասին գրուած հայերէն ուսումնասիրութիւններէն, յափշտակութեամբ կը կարդայ անոր մասին գրուած «օտար» յօդուած մը, կը բաւէ որ այդ կարեւոր հայ գրողին անունը տպագրուած տեսնէ արաբերէն, անգլերէն կամ ֆրանսերէն լեզուով մը:

Ասիկա կարդացողներու այն շերտն է՝ որ արժէքները կ'ընդունի դուրսէն: *Իր* արժէքը՝ հայկական արժէքը, արժէք մը՝ որուն բնածին կրողն ու կերտողը պէտք է եղած ըլլայ, փոխանակ փնտռելու *իր* ներսը, կը նախընտրէ պճնազարդուած փաթեթով մը ստանալ դուրսէն ու արտաքին գրգիռներէ, ուր «օտար»-ի գաղափարախօսութիւնը վառ է ու կիզիչ:

Վերջապէս, «օտար»-ի պատումը շատ ուժեղ է հայերուս մօտ: Սփիւռքի մէջ, հայկական մշակոյթը օտարին ներկայացնող հայը աւելի գնահատուած ու վարձատրուած է քան հայերուն համար արեւմտահայերէն արտայայտուող իրական, լայնահորիզոն ու ինքնուրոյն մտածող մտաւորականն ու արուեստագէտը (նկատի չունիմ վերնախաւին ցանկութիւններն ու նախասիրութիւնները վերարտադրող ու կրկնապատկող «մտաւորական»-ը): Կը վախնամ, որ օր մը հայերուն համար արեւմտահայերէն գրողները այնքան պակսին՝ որ այս ասպարէզին մէջ օտարներուն ներկայացնելու բան չմնայ:

2. Երկրորդ շերտի նշանաբանն է՝ «Ես Ա. լրագիրը չեմ կարդար»: Յաճախակի կրկնուող նախադասութիւն մըն է սփիւռքի մէջ: Հասկնալի է: Մարդ չի կրնար աշխարհի բոլոր լրագիրները կարդալ: Կը կարդայ ըստ տեղական առումով իրեն հասանելի լրագիրները, անոնցմէ ընտրելով իր նախասիրութիւններուն եւ ճաշակին համապատասխանողները: Ասիկա լիովին բնական է:

Բայց դիտաւորեալ շեշտադրութեամբ արտասանուող նախադասութիւնը՝ «Ես Ա. լրագիրը չեմ կարդար», ուրիշ միտում ունի: Տուեալ անձը չի կարդար, ոչ թէ որովհետեւ նախապէս զայն կարդացած է եւ չէ հաւնած, այլ պարզապէս որովհետեւ լրագիրը կը գտնուի հայկական ճամբարին միւս կողմը: Իսկ այդ միւս ճամբարը գտնուածները մեքենայաբար պէտք չէ կարդալ: Սփիւռքահայ ճամբարներն ալ, փառք Աստուծոյ, քիչ քանակութիւն չեն կազմեր:

Միաժամանակ, պարտադրաբար չկարդացողներու շերտին մէջ կը գտնուի անյայտ անձ մը, որ կը կարդայ: Կը կարդայ՝ ոչ թէ որովհետեւ կարդալ կը սիրէ, այլ որովհետեւ իր ինքնակոչ պարտականութիւնն է հետեւիլ միւս ճամբարներու գրութիւններուն: Ան հաճոյքով կ'անտեսէ միւս ճամբարի արեւմտահայերէնի ոճական, ուղղագրական, լեզուական խեղաթիւրումներն ու սխալները, քանի որ նոյն սխալները ինք եւս կ'արտադրէ, կարեւորը՝ հայապահպանութեան նշանաբանն է. կ'անտեսէ միւս ճամբարին հասարակութեան հասցէին ուղղած քննադատութիւնները, ինչպէս՝ «հասարակութիւնը կարդալ չի սիրեր», «հասարակութիւնը մշակոյթէ չի հասկնար»,· «հասարակութիւնը գնահատել չի գիտեր», քանի որ ինք եւս նոյն քննադատութիւնները կ'ընէ, քննադատութիւններ՝ որոնք ուղղուած ըլլալով անանուն զանգուածներուն, բերկրալի ու «անվնաս» գործողութիւն մը ըլլալէ անդին կ'ամրացնեն ընտրելախաւին հոգատարութեան, նախանձախնդրութեան եւ գիտակցութեան հանրային պատկերը. կ'անտեսէ միւս ճամբարին կազմակերպած բոլորին հաստատումով անմակարդակ ձեռնարկ մը եւ զայն չոնդալիցօրէն ինքնափառաբանած «քննախօսական»-ը, քանի որ նոյն բանը ինք եւս կը գործադրէ՝ միշտ նպատակ ունենալով պահպանել հաստատուած դրութիւնը (status quo). բայց չ'անտեսեր նոյնիսկ մէկ նախադասութիւն մը՝ որ կը համարձակի քննադատել վերնախաւային որեւէ գործողութիւն մը, նոյնիսկ եթէ այնտեղ անուններ կամ ուղղակի մատնանշումներ չկան: Այս ինքնակոչ կարդացողը նախադասութիւնը հանելով իր բնաբանէն եւ անոր իմաստը օտարացնելով իր բովանդակութենէն, զայն անմիջապէս կը տարածէ իր շրջապատին մէջ: Եւ ահաւասիկ կայծակի արագութեամբ կը յայտնուին տասը, քսան, յիսուն անձեր՝ որոնք առանց կարդացած ըլլալու գրութիւնը, կը սկսին ամէնուրեք բողոքել, աղաղակել եւ չարախօսել իրենց չկարդացած յօդուածին մասին: Կը կազմուի չկարդացող-կարդացողներու խումբ մը:

Կը ծագի կարեւոր հարցում մը. եթէ Ա. լրագիրը անպիտանութիւն մըն է եւ զայն կարդալը ժամավաճառութիւն մը, ինչո՞ւ այսքան ընդվզում եւ իրարանցում: Ինքնահաստատումի կորսուած ի՞ղձ մը՝ որ կը ցայտի կրքոտ բռնկումի միջոցով: Փխրուն ինքնապատկերի կործանումի վա՞խ մը: Թէ՞ աւանդականօրէն սերմանուած ատելութեան գործադրութիւն մը, արտաթորումը բծախնդրօրէն մշակուած ատելութեան արդիւնաբերութեան (hate industry)՝ զոր դրամատիրութեան կառոյցներն ու հիմնարկները մշակեցին իրենց գոյութեան աւելի քան երկու դարերուն ընթացքին:

Ընթերցողներու այս երկու շերտերուն քանակը, կարծէք, օրէ օր կ'աւելնայ եւ կը պարտադրէ ինքզինք:

ՁԱՅՆԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Ի գիտութիւն Աղեքսանդրահայ մեր բարեպաշտ ժողովրդեան,
կը ծանուցանենք, թէ
ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ
**ԳԵՐԱՇՆՈՐՀ ՏԷՐ ԱՇՈՏ ԵՊՍ. ՄՆԱՑԱԿԱՆԵԱՆԻ**
ԱՌԱՋՆՈՐԴ ԵԳԻՊՏՈՍԻ ՀԱՅՈՑ
ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՄԲ
**ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ**
ԵՐԱԽՏԱՇԱՏ ԵՐԳԱՀԱՆ
**ԽԱՉԱՏՈՒՐ ԱՒԵՏԻՍԵԱՆԻ**
**ԾՆՆԴԵԱՆ 90-ԱՄԵԱԿԻ ԱՌԹԻՒ**
ՈՒՐԲԱԹ 24 ՄԱՐՏ 2017
ՅՈԲԵԼԵՆԱԿԱՆ ՀԱՄԵՐԳ
ԵԼՈՅԹ Կ'ՈՒՆԵՆԱՅ
ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ
ԱՐԱՔՍ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ
ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐ ԵՒ ԽՄԲԱՎԱՐ
**ՄԻՀՐԱՆ ՂԱԶԵԼԵԱՆ**
ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԱՐՈՒԵՍՏԻ ԿԵԴՐՈՆԻՆ ՄԷՋ
Երեկոյեան ժամը 6. 00-ին:
Օթոպիւսը «Տիգրան Երկաթ» Սրահէն պիտի շարժի
Երեկոյեան ժամը 5. 30-ին:
ՏԵՂԵԿԱՏՈՒ ԴԻՒԱՆ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ
ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Այսու կը տեղեկացնենք մեր յարգոյ հասարակութեան թէ եգիպտոսի Հայոց Թեմի Կազմական Կանոնագրի 23-րդ յօդուածի տրամադրութեան հիման վրայ, Աղեքսանդրիոյ Պատկառելի Թեմական Ժողովի ամբողջական ընտրութիւնները տեղի պիտի ունենան Ուրբաթ, 5 Մայիս 2017-ին:

Սոյն ամբողջական ընտրութիւններուն մասնակցելու իրաւունք ունեցող ազգայիններու ցանկը կախուած է Ս. Պօղոս-Պետրոս եկեղեցւոյ մուտքին եւ Ազգային Առաջնորդարանին մէջ:

Կը տեղեկացնենք նաեւ, թէ ըստ Կազմական Կանոնագրի 13 եւ 14 յօդուածներուն, ընտրութեան ցանկերը «*փակցնելու եւ հրատարակելու գործողութեան թուականի յաջորդող 7 օրերու ընթացքին, 21 տարեկանը լրացած եգիպտահպատակ եւ երկու տարի Աղեքսանդրիոյ եւ անոր շրջակայքին մէջ բնակող իւրաքանչիւր անձ (այր թէ կին), որուն անուան արձանագրութիւնը մոռցուած է, կրնայ պահանջել որ իր անունը արձանագրուի: Նոյնպէս ամէն ընտրող, որուն անունը արձանագրուած է, կրնայ պահանջել, որ առանց իրաւունք ունենալու արձանագրուած անձին անունը ջնջուի*»:

ԴԻՒԱՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

## ԳԱՀԻՐԷ

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

**Մեծ Պահոց** շրջանին, **Ուրբաթ, 3 ՄԱՐՏ**-էն սկսեալ, եւ յաջորդող ամէն Ուրբաթ երեկոյեան, Հելիոպոլսէն դէպի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցի հաւատացեալներուն փոխադրութիւնը դիւրացնելու համար, եկեղեցւոյ հոգաբարձութիւնը կարգադրած է հանրաշարժի մասնաւոր սպասարկութիւն «եկեսցէ»ի արարողութեան համար: Հանրաշարժի կանգառներն են.
Սալահ էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն)
ժամը 4:00-ին

Իսկ Կիրակի առաւօտները
Սալահ էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն)
ժամը 8:45-ին

*Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ*



2

## ԳԱԳԻԿ ԾԱՌՈՒԿԵԱՆ ԿԱՄ ԻՆՉՊԷ՞Ս ՍՏԵՂԾԵԼ ՏԻՊԱՐ ՀԱՅՐԵՆԱՍԷՐԻ ՊԱՏԿԵՐԸ

իրենց իրական ունեցուածքի տուեալները:»(5)

Հասանք 2014 Թուականի ունեցուածքին: *Slaq.am* կը տեղեկացնէ.

«Գագիկ Ծառուկեանը, ըստ 2015Թ փետրուարի 2-ին ներկայացրած յայտարարագրի, 2014Թ ձեռք է բերել 52 միլիոն դրամ արժողութեամբ հողամաս, որն օտարել է 85 միլիոն 788 հազար դրամով:

«Նա ձեռք է բերել 37 հազար ԱՄՆ դոլար արժողութեամբ Toyota Tundra մակնիշի աւտոմեքենա:

«Գագիկ Ծառուկեանի դրամական միջոցները կազմում են 33 միլիարդ 976 միլիոն 900 հազար դրամ, 30 միլիոն 373 հազար ԱՄՆ դոլար, 26 միլիոն 352 հազար եւրօ:

Նրա տարեկան եկամուտը կազմում է 3 միլիարդ 131 միլիոն 464 հազար դրամ:»(6)

2015 Թուականի հարկային տարուան մասին հետեւեալը կը պատմէ *Շաբաթ.am*.

«*Shabat.am*-ը շարունակում է ուսումնասիրել բարձրաստիճան պաշտօնատար անձանց էթիկայի յանձնաժողովին ներկայացրած յայտարարագրերը: Քաղաքականութիւնից հեռացած, սակայն պատգամաւորական մանդատը վայր չդրած պատգամաւոր Գագիկ Ծառուկեանը հարկային տարուայ ընթացքում ձեռք է բերել հողամաս, որն արժեցել է՝ 1.925.000 դրամ: Ծառուկեանը հարկային տարուայ ընթացքում ձեռք է բերել արժեթղթեր, հետեւեալ արժողութեամբ՝ բաժնետոմսեր՝ 305.025.000 դրամ, 30.651.500.000 դրամ, 70.290.000 դրամ, 591.325.000 դրամ, 25.000 դրամ, 10.000 դրամ, 25.000 դրամ: Հարկային տարում յանձնած կամ վերադարձրած փոխառութիւնները կազմել են՝ 31.528.861.835 դրամ, 5.597.325 ԱՄՆ դոլար, 318.990 եւրօ, 17,002,604 դրամ, 1,442,151,673 դրամ, 277.499.777 դրամ, 417.300 եւրօ, 852,273,431 դրամ, 5.544.273.431 ԱՄՆ դոլար, 2.052.703 եւրօ, 393.787.163.00 դրամ, 1,001,596,447 դրամ, 147,038,614 դրամ, 876,146 եւրօ, 442,560,130 դրամ, 21,025,862 եւրօ, 3,296,890 ԱՄՆ դոլար, 221,285,319 ՀՀ դրամ, 60,487 ԱՄՆ դոլար, 496,126,000 դրամ, 55,484,000 դրամ, 238,611 ԱՄՆ դոլար, 964,921 ԱՄՆ դոլար, 250,000,000 ՀՀ դրամ, 240,157 ԱՄՆ դոլար, 522,230,991 դրամ, 22,843,890 դրամ, 1,247,041 ԱՄՆ դոլար, 508,545 եւրօ:

«Դրամական միջոցները տարուայ սկզբում կազմել են՝ 33.976.900.000 դրամ, 30.373.000 ԱՄՆ դոլար, 26.352.000 եւրօ, իսկ հարկային տարուայ վերջում դրանք նուազել են, հասնելով՝ 157.810.000 դրամի, 19.717.000 ԱՄՆ դոլարի, 13.108.000 եւրոյի: Եկամուտը կազմել է՝ շահաբաժին. 473,387,708 դրամ, 1,431,372,800 դրամ, 7,000.000 դրամ, 34.000.000 դրամ, 2,494. 458 եւրօ (արտարժոյթով): Աշխատանքի վարձատրութիւնը կազմել է՝ 5,219,790 դրամ, գոյքը օտարելուց ստացուած գումարը կազմել է՝ 1,499,937 ԱՄՆ դոլար, այլ եկամուտները՝ 2.880.133 դրամ, 280.678 եւրօ, տրուած փոխառութիւնները՝ 1.857972,732 դրամ, 237,923.957 դրամ, 5000 եւրօ, վարձակալութեան դիմաց ստացուած վճարը՝ 30.000.000 դրամ, 20.000.000 դրամ:

«Ընդհանուր եկամտի չափը կազմել է՝ 4.099.757.120 միլիարդ դրամ:

«Հարկային տարուայ ընթացքում ձեռք է բերել նաեւ ականջօղ, որն արժեցել է 12.493.000 դրամ, դրամական միջոցները կազմել են՝ 20.150.0000020 դրամ, 31.000 ԱՄՆ դոլար, 27.600 եւրօ: Շահաբաժինը կազմել է՝ 280.678 եւրօ, վարձակալութիւնից ստացուած գումարը՝ 16.848.000 դրամ, այլ եկամուտները՝ 230.000 ԱՄՆ դոլար: Գագիկ Ծառուկեանի դստեր՝ Անահիտ Ծառուկեանի եկամուտը կազմել է՝ 55.000 ԱՄՆ դոլար:»(7)

Վերջապէս՝ 2016 Թուականը, Գրիշա Բալասանեանի գնահատումով.

«Աժ պատգամաւոր Գագիկ Ծառուկեանը վերջին տարիներին Ազգային Ժողովի ամենահարուստ պատգամաւորն է:

«Մասնաւորապէս՝ բարձրաստիճան պաշտօնատար անձանց էթիկայի յանձնաժողով ներկայացրած 2016Թ. գոյքի ու եկամուտների յայտարարագրի համաձայն, Գագիկ Ծառուկեանը երկու Թանկարժէք իր է յայտարարագրել: Մէկը 118 հազար 485 եւրոյով գնած կահոյքն է, միւսը՝ վարագոյրը, որի արժէքը 251 հազար 799 եւրօ է:

«Պատգամաւորը սիրում է նաեւ Թանկարժէք աւտոմեքենաներ: 2016Թ. գնել է նմանատիպ երկու աւտոմեքենա՝ Mercedes-Benz G 63 AMG, որի արժէքը կազմել է մօտ 88 միլիոն 156 հազար դրամ եւ Bentley Bentyaga՝ 186 հազար եւրօ:

«2016Թ-ի համեմատութեամբ զգալի նուազել են Գագիկ Ծառուկեանի եկամուտները: Եթէ 2015Թ. դրանք կազմում էին մօտ 4 միլիարդ 100 միլիոն դրամ, ապա 2016-ին՝ 2 միլիարդ 525 միլիոն:

«Միայն Գագիկ Ծառուկեանի փոխառութիւնները մի ամբողջ կարողութիւն արժեն: Նա 2016 Թուականին Թւով 46 անգամ փոխառութիւններ է յանձնել եւ ստացել: Իսկ տարուայ վերջին Ծառուկեանի փոխառութիւնների չափը կազմում է մօտ 41 միլիարդ 21 միլիոն դրամ, 27 միլիոն 208 հազար եւրօ, 26 միլիոն 313 հազար դոլար եւ 595 ֆունտ ստերլինգ:

«Գագիկ Ծառուկեանի կինը՝ Ջաւահիր Ծառուկեանը եւս Թանկարժէք նուէրների սիրահար է: Նա 2016Թ. 30,000 դոլարով գնել է ականջօղեր:

«Ծառուկեանի կնոջ եկամուտները կազմել են մօտ 19 միլիոն դրամ, 121,580 դոլար եւ 300,000 եւրօ: Եւրոյի եկամուտը գոյացել է շահաբաժնից, դրամը՝ վարձակալութեան դիմաց ստացուած վճարից, իսկ դոլարը՝ այլ եկամուտներից:

«Ինչ վերաբերում է դրամական միջոցներին, Ջաւահիր Ծառուկեանն ունեցել է 17 միլիոն դրամ, 28 հազար դոլար եւ 26 հազար եւրօ:

«Իսկ դուստրը՝ Անահիտ Ծառուկեանը, նախորդ տարի որպէս եկամուտ յայտարարագրել է «այլ եկամուտ»՝ 11,557 դոլար:»(8)

Բնականաբար, ոչ ոք կրնայ հաւատալ պաշտօնապէս յայտարարուած այս գումարներուն: Հայաստանի փտածութեան (corruption) պայմաններուն, դժուար է վստահիլ ստուգումներու օրինականութեան եւ քննիչ մարմիններու իրական կամեցողութեան: Բաց աստի, անկարելի է հաւատալ նաեւ որ Ծառուկեանի ընկերութիւնները չունին արտերկեայ մէկը միւսէն բխող դուստր ընկերութիւններու շարքեր եւ օֆշորային ընկերութիւններ՝ որոնք բոլորն ալ մաս կը կազմեն նէօլիպերալիզմի անդրազգային ընկերութիւններու (transnational corporations) կառուցուածքին մէջ: Ծառուկեանի հարստութիւնը պէտք է կազմէ վերոյիշեալներէն բազմապատիկ աւելի:

Յաջորդ չորս կէտերուն մէջ պիտի փորձեմ ցոյց տալ՝ Թէ մարդկային շահագործումի, շուկայական մենատիրութեան եւ հակաժողովրդական ի՞նչ ճանապարհներով յաջողած է Ծառուկեան կուտակել իր հարստութիւնը:

(Շար. 1)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Գրիշա Բալասանեան, «Ծառուկեանը գլխաւորում է օլիգարխ պատգամաւորների «TOP ցուցակը»», *Հետք*, 1 Օգոստոս 2011, http://hetq.am/arm/news/3338/tsarukyany-glkhavorum-e-oligarkh-patgamavorneri-top-cucaky.html:

2. «Գագիկ Ծառուկեանի ունեցուածքը», *Lragir.am*, 8 Ապրիլ 2012, http://www.lragir.am/index/ arm/0/country/view/63449:

3. «Գագիկ Ծառուկեանի եւ նրա տիկնոջ ունեցուածքը», *Slaq.am*,http://www.slaq.am/arm/news/134985/:

4. «Ինչեր կը կորցնէր Գագիկ Ծառուկեանը, եթէ առճակատման գնար», *Ժողովուրդ*, 19 Փետրուար 2015, http://armlur.am/309184/:

5. Անահիտ Սիմոնեան, «Գագիկ Ծառուկեանի եւ նրա ընտանիքի գոյքի ու եկամուտների տուեալները», *Ասպարէզ*, 30 Ապրիլ 2014, http://www.asparez.am/gagik_carukyani_ekamut-ner-hy/#.WLVoIm-GPIU:

6. «Գագիկ Ծառուկեանի եւ Սամուէլ Ալեքսանեանի ունեցուածքը», *Slaq.am*, http://www.slaq.am/arm/news/1025304/:

7. «Միլիարդատէր պատգամաւորի ունեցուածքը. որքա՞ն գումար ունի Գագիկ Ծառուկեանի ընտանիքը», *Շաբաթ.am*, 13 Յունիս 2016, https://shabat.am/am/article/ 57714/Miliardater-patgamavori-unecvatsqy.-orqa-n-gumar:

8. Գրիշա Բալալանեան, «Գագիկ Ծառուկեանը 252 հազար եւրոյով վարագոյր է գնել», *Հետք*, 6 Մարտ 2017, http://hetq.am/arm/news/76462/gagik-tsarukyany-252-hazar-evroyov-varaguyr-e-gnel.html:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1786 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 23 ՄԱՐՏ 2017 — ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. — عدد رقم ١٧٨٦ الخميس ٢٣ مارس ٢٠١٧


## ՆՐԱՆՔ, ՈՎՔԵՐ ԼՈՒՐՋ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆՆԵՐԻ ԵՆ ՀԱՍԵԼ ԴՐՍՈՒՄ, ՎԱՐՉԱՊԵՏԻ ԿՈՉԻՆ ՉԵՆ ԱՆՍԱՅ

ՀԵՂԻՆԱԿ՝ ՍԻՐԱՆՈՅՇ ՊԱՊԵԱՆ
ՀԻՒՐ՝ ԲԱԳՐԱՏ ԱՌԱՔԵԼԵԱՆ

*Առաջին լրատուականը* վարչապետ Կարէն Կարապետեանի՝ Սփիւռքին ուղղուած կոչի շուրջ զրուցել է Հայկական Վերածնունդ շարժման Պրահայի մասնաճիւղի ներկայացուցիչ, տնտեսագէտ Բագրատ Առաքելեանի հետ:

**– Պարոն Առաքելեան, վարչապետ Կարէն Կարապետեանը հրաւիրել է Սփիւռքի մեր կառավարիչներին, մշակութային գործիչներին, կրթութեան եւ գիտութեան ոլորտի միջազգային ճանաչում ունեցող հայրենակիցներին մասնակից դառնալ երկրում ընթացող բարեփոխումներին՝ առաջին հերթին կառավարման նոր մշակոյթ բերելու, Սփիւռքի մեր լաւագոյն մասնագէտների գիտելիքներն ու ներուժը համահայկական նպատակներին ծառայեցնելու համար: Սա ի՞նչ արձագանք է գտել Չեխիայի հայ համայնքում:**

– Առանձնապէս որեւէ արձագանք չկայ այս կոչին: Շատ լաւ յիշում եմ նախկինում հնչած նմանատիպ կոչերը՝ թէ՛ Սերժ Սարգսեանի, թէ՛ Ռոբերտ Քոչարեանի, թէ՛ Արամ Սարգսեանի կարճ վարչապետութեան ընթացքում: Բոլորն էլ տալիս էին խոստումներ, որ որեւէ խնդիր չկայ, կարող էք վերադառնալ, երաշխաւոր ենք եւ այլն: Այնպէս որ, յիշելով անցեալում հնչած կոչերը, այդ արձագանքը չի նկատւում: Բացի այդ, ցանկացած նման կոչ պէտք է հիմք ունենայ, իսկ հիմքը Հայաստանի քաղաքական իրավիճակն է, մշակութային մթնոլորտը, եւ այն նախապայմանները պէտք է լինեն, որոնք կարող են վերադարձի հիմք հանդիսանալ: Ցաւօք, Հայաստանն այսօր մի երկիր է, որտեղ քաղբանտարկեալներ կան, ինչը ոչ մէկի համար գաղտնիք չէ, տնտեսական ոլորտում աշխատանքը դժուարացնում է կոռուպցիան եւ այլն: Իսկ ինչ վերաբերում է մշակութային մթնոլորտին, Հայաստանի այսօրուայ այցեքարտը բանդիտական սերիալներն են, որոնք բացի նրանից, որ սովորեցնում են գողական ժարգոն, ուրիշ ոչինչ չեն տալիս: Իսկ նման իրավիճակում, եթէ մի պահ հիպոթետիկ ընդունենք, որ բազմաթիւ մշակութային, բիզնէս ոլորտի ներկայացուցիչներ ուզում են վերադառնալ, ի՞նչ կարող է այսօր իրենց առաջարկի Հայաստանը կոռուպցիայից եւ անճաշակութիւնից բացի: Հայաստանում այսօր կան մշակութային ոլորտի ներկայացուցիչներ, գործարարներ, քաղաքական գործիչներ, որոնք խորը արմատներ են թողել, եւ չեմ կարծում՝ իրենք պատրաստ են իրենց տեղը զիջելու վերադարձողներին: Մի օրինակ բերեմ. Ռուսաստանում իմ շատ լաւ ընկերներից մէկը թատերական ռեժիսոր է աշխատում: Ունի իր սեփական թատրոնը, հիմա Ռուսաստանի ակադեմիական թատրոններից մէկի գեղարուեստական ղեկավարն է: Սարոյեանի փառատօնի ժամանակ իր ներկայացումների ցանկում ունէր *Իմ սիրտը լեռներում է* ստեղծագործութիւնը, որոշեց Սարոյեանի փառատօնին մասնակցելու յայտ ներկայացնել եւ ամէն ինչ արեցին, որ նա չգայ:

**– 2014-ին Դուք ներկայ էիք Սերժ Սարգսեանի՝ Չեխիայի հայ համայնքի հետ հանդիպմանը եւ մեզ այն ժամանակ մանրամասներ հաղորդեցիք, մասնաւորապէս Սերժ Սարգսեանը դժգոհել էր, որ քիչ են ներմուծում. «Այստեղ մարդիկ կան, որոնք կարող են ներդրումներ անել Հայաստանում, բայց չեն անում», – ասել էր նա: Նա նաեւ չէր ժխտել, որ Հայաստանում մենաշնորհ կայ, հէնց չաքարաւազի ներկրման հետ կապուած: Արդեօք որեւէ փոփոխութիւն այս երեք տարիների ընթացքում նկատե՞լ է հայ համայնքը, որ գայ եւ ներդրումներ անի:**

– Փոփոխութիւնները, որ փորձում է անել Կարէն Կարապետեանը, նմանեցնում են նրան, տուն են կառուցում՝ առաջինը տանիքը սարքելով, մինչդեռ պատերը չկան: Դրա համար նախ պատերը պէտք է կառուցուեն, յետոյ անցնեն տանիքին: Հայաստանում իրավիճակն այնպիսին է, որ ոչ թէ պատերը չեն կառուցւում, այլ հիմքը քանդւում է: Կարէն Կարապետեանը փորձում է անել մի բան, որն անհնար է անել նախորդ քայլը չանելով: Այսինքն՝ եթէ լուրջ արմատական փոփոխութիւններ են ուզում անել, ապա փոփոխութիւնները պէտք է սկսել քաղաքականութիւնից, պէտք է ստեղծել այն հիմնասիւները, որոնց վրայ կառուցւում է իւրաքանչիւր նորմալ դեմոկրատական պետութիւն: Այդ հիմնասիւները ազատ ընտրութիւններն են, անկախ դատական համակարգը, անկախ մամուլը: Հայաստանում, այո, գոյութիւն ունեն մի քանի տասնեակ մամուլի կառոյցներ, բայց դա մասսայական բնոյթ չի կրում, խօսքը միայն համացանցային լրատուամիջոցների մասին է կամ մի քանի տպագիր մամուլի: Իսկ հեռուստատեսութիւնը, որն անհամեմատ աւելի մասսայական է, չի բարձրացնում ընդդիմադիր գաղափարներ: Իրական ընդդիմութեան ներկայացուցիչներն էլ այսօր ճաղերի յետեւում են:

**– Այսինքն՝ վարչապետի այս կոչը որեւէ դրական ազդեցութիւն չի՞ ունենայ:**

– Նրանք, ովքեր լուրջ յաջողութիւնների են հասել դրսում, երբեք Հայաստան չեն գայ: Հիմա Հայաստանում նրանց առաջարկում են այդ ամէնը թողնել, գալ, բայց ի՞նչ է առաջարկւում վերադարձից յետոյ: Եթէ Հայաստան էին վերադառնում Մարտիրոս Սարեանը, Արամ Խաչատրեանը, բոլորս յիշում ենք, նոյնիսկ գիտենք, այն ժամանակ Հայաստանում մշակութային դաշտն ազատ էր, հիմա դա լցուած է հիմնականում անմակարդակութեամբ: Հայաստանը կոռումպացուած երկիր է, իսկ տնտեսական ծրագիր իրականացնելու համար անհրաժեշտ է համապատասխան դաշտ, եւ մինչեւ այդ դաշտը չստեղծուի, մինչեւ կոռուպցիոն համակարգը չվերացուի, խօսել ներդրումների մասին, պարզապէս անիմաստ է, քանի որ ներդրողն առաջինը, ինչի վրայ նայում է՝ արդեօք տնտեսական դաշտը համապատասխանո՞ւմ է ընդունուած նորմերին, թէ՞ ոչ: Եւ եթէ չի համապատասխանում, ձեռքերը լուանում է, եւ պէտք է հնարաւորինս ռիսկի գործօնները պակասեցնի: Լուրջ գումար ներդրողը նման խօսքերի չի հաւատում:

*Առաջին լրատուական*, 3 Մարտ 2017

**ՖՐԱՆՍԱ**

## ՖՐԱՆՍԱՀԱՅԵՐԸ Ս. ՍԱՐԳՍԵԱՆԻՆ ԴԻՄԱՒՈՐԵԼ ԵՆ ԲՈՂՈՔԻ ՑՈՅՑԵՐՈՎ

Սերժ Սարգսեանի՝ Ֆրանսիա կատարած այցի ժամանակ նրան ուղեկցող լրատուամիջոցները միայն լուսաբանեցին այցի պաշտօնական մասը, Ս. Սարգսեանի հանդիպումները, ելոյթները:

Սակայն Ս. Սարգսեանի այցի պատուին Ֆրանսիայում ֆրանսահայերը նաեւ բողոքի մեծ ցոյց կազմակերպեցին՝ նրանից պահանջելով հրատապ ազատ արձակել Հայաստանի բոլոր քաղբանտարկեալներին:

Այս մասին *ԳԱԼԱ*ին տեղեկացրեց Հայկական Վերածնունդի Փարիզի մասնաճիւղի ղեկավար Շանթ Ոսկերիչեանը:

«Նախագահ Սերժ Սարգսեանի այս Մարտ ամսին պաշտօնական այցը Ֆրանսիա տեղիք տուեց որոշ նուրբ արտայայտումների նրա պատուին՝ հայկական համայնքի անդամների ներկայութեամբ, ովքեր միմեանց յայտարարեցին համայնքի «ներկայացուցիչներ»: Մարտի 7-ին կայացաւ յարգանքի ընթրիքը՝ Ֆրանսիայում Հայաստանի դեսպանի հրաւէրով Cercle de l'Union Interalliée-ում, այնուհետեւ յաջորդ օրը կէսօրին ընդունելութիւն Փարիզի քաղաքապետարանում՝ քաղաքապետ Անն Հիդալգոյի հրաւէրով, իսկ երեկոյեան Ելիսէյում ընթրիք՝ նախագահ Ֆրանսուա Օլանդի հրաւէրով: Սակայն այս այցի պատճառով Փարիզում տեղի ունեցան երկու ցոյցեր՝ Մադլէնում եւ Պոմպիդու Կենտրոնում, որտեղ ցուցարարները բացայայտեցին այս տօնախմբութիւնների չասուած մասերը», – փոխանցեց Շ. Ոսկերիչեանը:

Ցոյցի ժամանակ ֆրանսահայ ցուցարարները հնչեցրել են հետեւեալ մտքերը.

– Նախագահ Սերժ Սարգսեանն ընտրուել է կեղծուած ընտրութիւնների արդիւնքում:

– Նա գլխաւորում է կոռումպացուած օլիգարխների ցանցը, ովքեր կողոպտում են երկիրը անկախութեան օրուանից ի վեր, սննկացնում են այն՝ յարուցելով մասսայական արտագաղթ:

– Այս կոռումպացուած օլիգարխներն իրենց շահին են ծառայեցնում նոյնիսկ երկրի սահմանային անվտանգութեան համար նախատեսուած գումարները: Նրանք իրականացնում են քաղաքական եւ տնտեսական իշխանութիւն՝ առանց հսկողութեան եւ առանց հաշուետուութեան, ինչն էլ յանգեցնում է

➪ 2

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՀԱՑ ԲԵՐՈՂԸ ԿԸ ՄԱՀԱՆԱՅ

Մարտ 16-ին կը մահանայ արցախեան ազատամարտիկ Արթուր Սարգսեան՝ ծանօթ Հաց Բերող մականունով:

2016 Յուլիս 26-ի առաւօտեան, Արթուր Սարգսեան իր անձնական ինքնաշարժով կը ճեղքէ Էրեբունիի ոստիկանական գումարտակի պատնէշը եւ սնունդ կը հասցնէ զայն գրաւած Սասնայ Ծռերուն:

Յուլիս 31-ին, Սասնայ Ծռերու յանձնուած անդամներուն հետ կը կալանաւորուի: Դեկտեմբեր 30-ին ազատ կ'արձակուի կալանքներէն:

2017 Փետրուար 9-ին դարձեալ կը ձերբակալուի: Կը յայտարարէ անժամկէտ հացադուլ, որուն պատճառով իր առողջութիւնը կտրուկ կերպով կը վատթարանայ: Այս առիթով Երեւանի մէջ տեղի կ'ունենան շարք մը ցոյցեր եւ երթեր, պահանջելով անոր ազատ արձակումը:

Աւելի քան 25 օրուայ հացադուլէ ետք, Մարտ 6-ին դատական որոշումով ազատ կ'արձակուի:

Մարտ 15-ին օդակուած ճողուածքի հետեւանքով կը տեղափոխուի Արմենիա բժշկական կեդրոն, ուր կ'ենթարկուի վիրահատութեան: Յետվիրահատական շրջանին իր մօտ կը զարգանայ սուր սրտանօթային եւ թոքային անբաւարարութիւն եւ զայն կը միացնեն արհեստական շնչառութեան սարքի: Այս հիւանդութիւններուն մեծ մասը ձեռք բերած էր կալանաւորումի յիշեալ հացադուլին ընթացքին: Մարտ 16-ին կը մահանայ հիւանդանոցին մէջ:

➪ 3

## ԳԱԳԻԿ ԾԱՌՈՒԿԵԱՆ ԿԱՄ Ի՞ՆՉՊԷՍ ՍՏԵՂԾԵԼ ՏԻՊԱՐ ՅԱՅՐԵՆԱՍԷՐԻ ՊԱՏԿԵՐԸ

Յ. ԱՒԱԳԵԱՆ

**1. ՄՈՒԼՏԻ ԳՐՈՒՊ ՍՊԸ (ՍԱՀՄԱՆԱՓԱԿ ՊԱՏԱՍԽԱՆԱՏՈՒՈՒԹԵԱՄԲ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ) ԵՒ ՄԱՐԴՈՒ ՇԱՀԱԳՈՐԾՈՒՄԸ**

Ըստ *Վիքիպեդիայի* նորագոյն տուեալներուն, «1995 Թ Գագիկ Ծառուկեանը հիմնադրում եւ նախագահում է Մուլտի Գրուպ բազմաճիւղ կոնցեռնը, որն այժմ ներառում է Աբովեանի Կոտայք գարեջրի գործարանը, Երեւանի քիմիադեղագործական ֆիրման, Մեկ կաՀոյքի խանութների ցանցը, Արարատ կոնեակի, գինու, օղու կոմբինատը, Արարատ ցեմենտի գործարանը, Ավիասերվիս բաժնետիրական ընկերութիւնը, Մուլտի Սթօուն քարի արդիւնաբերական մշակման ընկերութիւնը, Մուլտի Ռեստ ընկերութիւնը, Գլոբալ Մոթորս փակ բաժնետիրական ընկերութիւնը, Մուլտի Սիթի Հաուս ընկերութիւնը: 2002 Թուականին Երեւանի Արարատ կոնեակի-գինուօղու կոմբինատը, ձեռ բերելով նոր սեփականատէր եւ մտնելով Մուլտի Գրուպ կոնցեռնի կազմի մէջ, նոր շունչ ստացաւ:»(9)

Հետաքննող լրագրող Էդիկ Բաղդասարեան 2005-ին կը յաջողի վաւերագրել՝ թէ ինչպէս Մուլտի Գրուպ կը վերաբերի քաղաքի բնակիչներուն Հետ: Ան կը գրէ.

«Երեւանի կենտրոնի Աբովեան փողոցի թիւ 5 շէնքի յարակից տարածքը կառուցապատման իրացման նպատակով պետութեան կարիքների անուան տակ կառավարութիւնը (N 1047 որոշում, 2004Թ. յուլիսի 8) վերցրել եւ ներդրումային ծրագրի իրականացման նպատակով առանց մրցոյթի տրամադրել է Մուլտի Գրուպ ՍՊԸ-ին: ՍՊԸ-ն պատկանում է ԱԺ պատգամաւոր Գագիկ Ծառուկեանին:

«Կառավարութիւնն առանց մրցոյթի, ուղիղ բանակցութիւնների միջոցով 1430 քմ հող է յատկացրել Գ. Ծառուկեանին, չնայած այդ հողը, գործող օրէնքի համաձայն, պէտք է հանուէր աճուրդի եւ, ըստ աճուրդի անցկացման կարգի, տրուէր ամենաբարձր գին առաջարկողի:

«Ինչո՞ւ է կառավարութիւնն այդչափ սիրում Գագիկ Ծառուկեանին: Նշուած հասցէից մի քանի տասնեակ մետր վերեւ Գ. Ծառուկեանը ներկայումս կառուցում է մի բազմայարկ շէնք: Մեր տեղեկութիւններով՝ Գ. Ծառուկեանը Աբովեան 5-ում որոշել է կառուցել բնակելի շէնք:

«Ի՞նչ է նշանակում «պետութեան կարիքների Համար»: Աբովեան 5 շէնքի դէպքում «պետութեան կարիքը» Գ. Ծառուկեանին մեծ շահոյթ ստանալու հնարաւորութիւն տալն է՝ դրա համար զոհաբերելով ՀՀ որոշ քաղաքացիների: Կառավարութեան այս որոշումը կոռուպցիայի դասական օրինակ է (քաղաքի կենտրոնում հողայատկացումների մասին կառավարութեան բոլոր որոշումներն են այսպիսին):»(10)

Բաղդասարեան կը բացատրէ, թէ 1963-էն սկսեալ՝ 42 տարի, Աբովեան փողոցի 5/1 Հասցէով կ'ապրին Ռաֆիկ Ջիչակեան եւ իր կինը: Այնտեղ կ'ապրին նաեւ իր դուստրը, որդին, հարսը եւ թոռնիկը: 1970-ականներուն Ջիչակեան այնտեղ կը կառուցէ խանութ՝ որ կը հանդիսանայ ընտանիքին գլխաւոր ապրուստի միջոցը:

Ջիչակեանի տիկինը՝ ԳոՀար Մանուկեան, Էդիկ Բաղդասարեանին կը տեղեկացնէ. «Բազմիցս նամակներ ենք գրել, որ մեր կառոյցներն օրինականացնեն, օրէնքը դա թոյլ է տալիս, բայց չարեցին: Էս տարի էլ դատարանի որոշում բերեցին, թէ սա իրացման գօտի է, եւ պէտք է ազատենք մեր տունը:»

Վեց հոգինոց ընտանիքի վտարումին համար Ծրագրերի Իրականացման Գրասենեակը (ԾԻԳ) կ'որոշէ վճարել 10 հազար 870 տոլլար եւ նոյնքան՝ իբրեւ խրախուսում: Այս գումարով անհնար է քաղաքին կեդրոնը վեց հոգինոց բնակարան գտնել: Ջիչակեան կը դիմէ դատարան: Իսկ երբ հայցուորը կը դիմէ դատարան, կը զրկուի խրախուսական գումարէն: Դատարանը որոշում կ'ընդունի ի նպաստ վտարումին, եւ Ջիչակեան կը կորսնցնէ խրախուսական գումարը: Այժմ ան պէտք ստանայ գումարին կէսը:

«Այս դատավարութիւնները թատրոն են՝ լրիւ իրենցով տարուած», կ'ըսէ Ռաֆիկ եւ կ'աւելցնէ. «Մենք դա գիտենք, բայց ուրիշ ճար չունենք: Վերաքննիչում դատաւորը լսեց, լսեց, ասաց՝ դուք իրաւացի էք, բայց պրեզիդենտի որոշումն է, ի օգուտ «Երեւանի կառուցապատման եւ ներդրումային ծրագրերի իրականացման գրասենեակի» պիտի լուծուի: Լաւ էլ գիտեն, որ անօրինական է էս ամէն ինչը:»

Էդիկ Բաղդասարեան իր հետաքննութիւնը կ'աւարտէ գրելով՝ թէ դատարանին մէջ, Ջիչակեանի փաստաբան Արթուր Գրիգորեան «նաեւ փորձել է պարզել, թէ ինչ ասել է «պետական կարիքներ», եւ երբուանի՞ց են Մուլտի Գրուպ ընկերութեան շահերը համընկել պետական շահերի հետ: Հայաստանում բոլորն էլ գիտեն, որ Մուլտի Գրուպի սեփականատիրոջ՝ Գագիկ Ծառուկեանի թիկունքում կանգնած է ՀՀ նախագահ Ռոբերտ Քոչարեանը: Ու միայն դա բաւական է, որպէսզի նա յայտնուի «պետութեան կարիքների» ցանկում:»(11)

Ասիկա լոկ մէկ օրինակ մըն է անվարձահատոյց բռնի տեղափոխութիւններուն, որոնք տեղի կ'ունենան Հայաստանի մէջ՝ ի նպաստ բազմահարուստ գործարարներու գերշահոյթին (Հիւսիսային Պողոտայի բազմաթիւ դէպքեր յայտնի են հանրութեան): Բարեգործական չընդհատ ծանուցումներով քանի մը կարօտեալներու բնակարաններ նուիրող Ծառուկեանի համար անընդունելի է Ջիչակեանի նմաններուն լիիրաւ գոհացում տալ, քանի որ այս փոխհատուցումը՝ ըլլալով բացարձակ իրաւունք, չի կրնար տեղաւորել «բարեգործութեան» պիտակին տակ: Անիկա ըլլալով իրաւունք՝ եւ ոչ թէ բարեգործութիւն, անկարող է նպաստել Ծառուկեանի ինքնապատկերի կերտումի գործընթացին:

Դարձեալ Էդիկ Բաղդասարեան, 2008-ին բացայայտումներ կը կատարէ Մուլտի Գրուպին պատկանող Ջի Էմ Մաղարո Փակ Բաժնետիրական Ընկերութեան (ՓԲԸ) մարդկային ոտնձգութիւններուն մասին: Ջի Էմ Մաղարո ունի Լոռիի մարզի Մղարթի ոսկիի հանքավայրի հանքարդիւնահանումի յատուկ արտօնագրութիւն: Անոր միակ բաժնետէրը Գագիկ Ծառուկեանն է:

Բաղդասարեան կը տեղեկացնէ.

«Ջի Էմ Մաղարո ընկերութեան գլխաւոր տնօրէնի աշխատակազմի հետ աշխատաքների գծով օգնական Սիլվա Դանիէլեանը 2007 Թ. յունիսի 11-ին Մղարթ գիւղի բնակիչ Արմէն Դալլաքեանին նամակով տեղեկացրել է, որ «Ընկերութեան եւ Ձեր միջեւ աշխատանքային յարաբերութիւնները դադարեցուել են Ձեր կատարած աշխատանքի անհամապատասխան լինելու պատճառաբանութեամբ: Ձեզ հետ կը կատարուի վերջնահաշուարկ ՀՀ օրէնքով սահմանուած կարգով, մասնաւորապէս կը վճարուի առաջին հնարաւորութեան դէպքում: Կից ուղարկւում է Ձեր աշխատանքային գրքոյկը:

«Նման բովանդակութեամբ նամակներ ստացել են Մղարթ գիւղի այն 46 բնակիչները, ովքեր աշխատում էին իրենց գիւղի յարակից գտնուող ոսկու հանքավայրում: Գրութիւնները սովորական թղթի վրայ են, առանց կնիքի:»(12)

Այս կապակցութեամբ, Հելսինկեան Քաղաքացիական Ասամբլեայի Վանաձորի Գրասենեակը կը հրապարակէ 2009 Ապրիլ 13 թուակիր բաւական խիստ յայտարարութիւն մը.

«Արդէն 5 ամիս է անցել, ինչ մեր կազմակերպութիւնը պաշտօնական 3 գրութեամբ դիմել է ՀՀ կառավարութեանը՝ ԱԺ պատգամաւոր Գագիկ Ծառուկեանի կողմից հիմնադրուած Ջի Էմ Մաղարո ՓԲԸ-ի նախկին աշխատակիցների աշխատանքային իրաւունքների պաշտպանութեանն աջակցելու հարցով:

«Սակայն մինչ օրս կազմակերպութիւնը ՀՀ կառավարութիւնից ոչ մի արձագանգ չի ստացել:

«2006Թ. Գագիկ Ծառուկեանի կողմից Երեւանում հիմնադրուել է Ջի Էմ Մաղարո ՓԲԸ-ն, որը Թումանեանի շրջանում զբաղուել է ոսկու արդիւնաբերութեամբ եւ 2007Թ. մարտի 1-ից աշխատանքի է ընդունել Ալավերդի եւ Մղարթ գիւղի մօտ 50 բնակիչների: Աշխատանքի ընդունելուց յետոյ ընկերութիւնն աշխատակիցներին աշխատավարձեր չի վճարել, այնուհետեւ մօտ 6 ամիս անց հաւաքել է վերջիններիս հետ կնքած աշխատանքային պայմանագրերը եւ այլեւս չի վերադարձրել:

«Աշխատակիցների խօսքերով՝ Ջի Էմ Մաղարո ՓԲԸ-ն նշուած ամիսների ընթացքում որեւէ գործունէութիւն չի ծաւալել:

«Ջի Էմ Մաղարո ՓԲԸ-ի նախկին աշխատակիցների աշխատանքային իրաւունքների պաշտպանութեանն աջակցելու խնդրանքով կազմակերպութիւնը նախ դիմել էր ՀՀ աշխատանքի պետական տեսչութեանը: Աշխատանքի պետական տեսչութիւնը տեղեկացրել էր, որ իրականացւում է վարոյթ եւ արդիւնքների մասին լրացուցիչ կը տեղեկացնի կազմակերպութեանը, թէեւ մինչ օրս իրականացուող վարոյթի արդիւնքների մասին որեւէ տեղեկութիւն չի ներկայացուել:

«Այնուհետեւ կազմակերպութիւնը դիմել է ՀՀ վարչապետին, սակայն որեւէ պատասխան չի ստացել: Նոյն խնդրանքով երկրորդ անգամ ներկայացուած գրութեան կապակցութեամբ կազմակերպութիւնը բանաւոր տեղեկացուել է, որ խնդրի կարգաւորմամբ յանձնարարուել է զբաղուել Լոռու մարզպետարանին, այն դէպքում, երբ խնդրի կարգաւորումը Լոռու մարզպետարանի իրաւասութիւնների շրջանակից դուրս է: 2009Թ. փետրուարի 16-ին կազմակերպութիւնը բաց նամակով է դիմել ՀՀ վարչապետ Տիգրան Սարգսեանին: Այս անգամ եւս որեւէ արձագանգ չի ստացուել:

«Հաշուի առնելով Ջի Էմ Մաղարո ՓԲԸ-ի գործունէութեան վերաբերեալ առկայ փաստերը, եւ այն հանգամանքը, որ ՀՀ վարչապետ Տիգրան Սարգսեանի կողմից որեւէ քայլ չի ձեռնարկւում նման խախտումները վերացնելու կապակցութեամբ՝ եզրակացնում ենք՝

«ՀՀ վարչապետ Տիգրան Սարգսեանի կողմից կոռուպցիայի դէմ պայքարի գործում դրսեւորած անհետեւողականութիւնը պայմանաւորուած է Ազգային Ժողովի պատգամաւոր Գագիկ Ծառուկեանի նկատմամբ վերջինիս մօտ առկայ վախի ⇒ 4

ՅԱՅԱՍՏԱՆ

## 2016 ԹՈՒԱԿԱՆԻՆ ՅԱՅԱՍՏԱՆԻ 22 ՅԱԶԱՐ 264 ՔԱՂԱՔԱՑԻ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱՑԻՈՒԹԻՒՆ Է ԸՆԴՈՒՆԵԼ. ARMTIMES.COM

*Lragir.am*, 21 Մարտ – Ռուսաստանի Պետական դումայի իրաւական հարցերով յանձնաժողովը երկարատեւ քննարկումներից յետոյ Մարտի 20-ին դրական եզրակացութիւն է տուել օրինագծին, որով առաջարկւում է «Արմատների իրաւունքի» հիման վրայ Ռուսաստանի քաղաքացիութիւն տրամադրել ռուսաց լեզուի կրողներին, ովքեր ծնուել են Ռուսական կայսրութեան եւ նախկին ԽՍՀՄ-ի տարածքում եւ նրանց յետնորդներին ու ազգականներին, տեղեկացնում է *Armtimes.com*-ը:

Կայքը գրում է, որ եթէ օրինագիծը նման տեսքով արժանանայ Պետական դումայի հաւանութեանը, կարելի է կանխատեսել, որ Ռուսաստանում հաստատուած տասնեակ հազարաւոր հայեր, ինչպէս նաեւ Հայաստանում բնակուող հազարաւոր քաղաքացիներ, կ'օգտուեն նոր օրէնքի ընձեռած հնարաւորութիւններից եւ Ռուսաստանի քաղաքացիութիւն կ'ընդունեն: Ռուսաստանի ներքին գործերի նախարարութեան Մարտի 20-ին հրապարակած տուեալների համաձայն՝ 2016 թուականին Հայաստանի 22 հազար 264 քաղաքացի Ռուսաստանի քաղաքացիութիւն է ընդունել: Համեմատութեան համար՝ 2015 թուականին Ռուսաստանի քաղաքացիութիւն էր ստացել Հայաստանի 18 հազար 653 քաղաքացի: Այս ցուցանիշով Հայաստանի քաղաքացիները թուով չորրորդն են:

---

## ՖՐԱՆՍԱՀԱՅԵՐԸ Ս. ՍԱՐԳՍԵԱՆԻՆ ԴԻՄԱՒՈՐԵԼ ԵՆ ԲՈՂՈՔԻ ՑՈՅՑԵՐՈՎ

1 ⇒

երկրի թուլացմանը թէ՛ ներսից, թէ՛ սահմաններին:

- Երկիրը պահելու համար Սերժ Սարգսեանն իր վարձակալութեան տակ ունի 20,000 ոստիկան, ովքեր զինուած են աւելի լաւ, քան սահմանին կանգնած զինուորները, ինչպէս նաեւ ԿԳԲ-ի գաղտնի ծառայութիւններ, ովքեր գիտեն, թէ ինչպէս ենթարկել վստագոյն ահաբեկման:

«Այս ռէժիմը յարուցում է վախ, ապատեղեկատուութիւն, անտարբերութիւն: Այս ռէժիմը Հայաստանի այնքան բաղձալի անկախութիւնը դարձնում է մղձաւանջ: Միեւնոյն ժամանակ, իշխանաւոր օլիգարխներն ամէն ինչ արել են սփիւռքին հեռու պահելու համար քաղաքական կեանքից՝ չտալով քուէարկելու իրաւունք իր օտարընակ քաղաքացիներին՝ այսպիսով սփիւռքի հայերին տալով միայն նուիրատուի հասարակ դերը: Եւ օրէցօր տեսնում ենք այս օլիգարխների քմահաճ իշխանութեան աճը սփիւռքի վրայ: Հայ ազգը չի շահագործուի ո՛չ Հայաստանում, ո՛չ սփիւռքում», - *ԳԱԼԱ*-ին փոխանցեց Ոսկերիչեանը:

Assembly of Armenians in Europe, 12 Մարտ 2017

1 ➩

## ՀԱՅ ԲԵՐՈՂԸ ԿԸ ՄԱՀԱՆԱՅ



*22 Մարտ: Հայ Բերող Արթուր Սարգսեանի յուղարկաւորութիւնը*

Մահուան լուրը հրապարակուելէ ետք, Մարտ 16-ին բազմաթիւ ցուցարարներ կը հաւաքուին Ազատութեան Հրապարակ, իսկ աւելի ուշ նաեւ Բաղրամեան պողոտայ՝ Հայաստանի նախագահի նստավայրը եւ Ազգային Ժողովի շէնքի դիմացը, իշխանութիւններուն մեղադրելով Հայ Բերողի մահուան համար: Ազատութեան Հրապարակի մէջ կը հնչեն շարք մը ելոյթներ, որոնցմէ ետք հաւաքի մասնակցողները Ֆրանսայի հրապարակի մօտակայքը կը փակեն Մեսրոպ Մաշտոցի պողոտան: Ոստիկանութիւնը ուժ կը կիրառէ հաւաքուածներուն նկատմամբ: Ապա ցուցարարները բողոքի երթ կը կազմակերպեն դէպի Հայաստանի արդարադատութեան նախարարութեան շէնք, ուր դարձեալ տեղի կ'ունենան ընդհարումներ ոստիկանութեան հետ: Սգոյ բողոքի միջոցառումները կը շարունակուին Ազատութեան Հրապարակ:

Մարտ 17-ին Ազատութեան Հրապարակի մէջ տեղի կ'ունենայ Հայ Բերողին սատարողներու հաւաք, որուն կը յաջորդէն բողոքի նստացոյց Ամիրեան-Մաշտոց պողոտայի մէջ, երթ դէպի Հանրապետութեան Հրապարակ եւ ցոյց կառավարութեան շէնքի մօտ: Ցուցարարները կառավարութենէն կը պահանջեն Արթուր Սարգսեանին յուղարկաւորել Եռաբլուր պանթէոնին մէջ:

Մարտ 19-ին, ցուցարարները նախ կը հաւաքուին Ազատութեան Հրապարակ, ուր կը պահանջեն գլխաւոր դատախազի հրաժարականը եւ պատժել կալանաւորումի որոշումը կայացուցած դատախազներն ու դատաւորները: Կը սկսի երթ Մաշտոցի պողոտայով դէպի Հանրապետութեան Հրապարակ: Ցուցարարները կը փորձեն նստացոյց կազմակերպել Հանրապետութեան Հրապարակի մէջ՝ Տիգրան Մեծ պողոտայ տանող հատուածը, սակայն ոստիկանները կը ցրեն նստացոյցը: Ապա երթի մասնակցողները կը շարժին Թումանեան փողոցով դէպի Ազատութեան Հրապարակ, ուր կը սկսին շուրջօրեայ նստացոյց:

Մարտ 21-ին, Շահումեանի գերեզմանատան յարակից Սան Լազար սգոյ սրահին մէջ տեղի կ'ունենայ հոգեհանգիստ: Խումբ մը քաղաքացիներ մարզահամերգային համալիրէն երթ կը կազմակերպեն դէպի հոգեհանգիստի վայրը:

Մարտ 22-ին, Շահումեանի գերեզմանատան մէջ կը կատարուի յուղարկաւորութիւնը, որ կը վերածուի սգոյ հանրահաւաքի, ուր կը հնչեն նաեւ քաղաքական յայտարարութիւններ: Դերասանուհի Թամար Յովհաննիսեան կը բարձրաձայնէ՝ որ այս տեսակ յուղարկաւորութիւն Հայաստանի մէջ տեղի կ'ունենայ առաջին անգամ:

**ԽՈՀԵՐ**

# ԴԱՐՁԵԱԼ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Թափանցիկութեան, արդարութեան, պարկեշտութեան, սիրոյ, յարգանքի խսպառ բացակայութեան պայմաններուն, միշտ հիմքեր կան կարծելու՝ որ Հայաստանի 1996-ի նախագահական ընտրութիւններուն իրական յաղթողը Վազգէն Մանուկեանն էր՝ յաղթող ճանչցուած Լեւոն Տէր-Պետրոսեանի փոխարէն, 2008-ին Լեւոն Տէր-Պետրոսեանն էր՝ Սերժ Սարգսեանի փոխարէն եւ 2013-ին Րաֆֆի Յովհաննէսեանն էր՝ Սերժ Սարգսեանի փոխարէն: Իսկ 2015 Դեկտեմբեր 6-ի սահմանադրական «բարեփոխումներ»-ու քուէարկութեան զեղծարարութիւնները նոյն օրն իսկ բացայայտուեցան համացանցի էջերուն մէջ: Հակառակ բոլոր ակնյայտութիւններուն, իշխանութիւնը՝ գոնէ ընտրութիւններուն առումով, միշտ պարտադրած է իր կամքը (1998-ի իշխանափոխութիւնը ոչ մէկ կապ ունէր 1996-ի ընտրական հնարաւոր զեղծարարութեան հետ): Կը բաւէ յիշել՝ որ գալիք Ապրիլ 2-ի խորհրդարանական ընտրութիւնները ուղղակի արդիւնքն են 2015-ի զեղծարարութեան: Ապրիլ 2-ով՝ իշխանութիւնը վաւերացուցած պիտի ըլլայ 2015-ը: Այսպէս, իշխանութիւնը միշտ կը յաջողի, եւ Ապրիլ 2-էն ետք ալ պիտի յաջողի, ստեղծել de facto իրականութիւններ:

Գալիք խորհրդարանական ընտրութիւններուն առիթով պիտի փափաքէի մատնանշել երկու կէտ. սփիւռքի ոչ-կուսակցական շերտին ներգրաւումը եւ հայկական *իրական* ձախին բացակայութիւնը:

### 1. ՍՓԻՒՌՔԸ՝ ԻՐ ՈՉ-ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՇԵՐՏՈՎ

Այս առումով հաւանաբար ամենատարածուածը Արսինէ Խանճեանի եւ իր շնորհիւ ստեղծուած շրջապատի ձայնն է:

Խանճեան յաջողեցաւ իր անձը պարտադրել Հայաստանի լրատուամիջոցներուն մէջ եւ սփիւռքահայու մը ձայնը ազդեցիկօրէն բարձրաձայնել այնտեղ:

Նախապէս աքթիւիսթական փորձ ունեցող ծանօթ դերասանուհին 2016 Յուլիսի Սասնայ Ծռերու ապստամբութեան ժամանակ իր յօժար կամքով ելոյթ կ'ունենայ Խորենացի փողոցի ցուցարարներուն առջեւ: Յաջորդ օրը, Խորենացի փողոց այցելելու պահուն բերման կ'ենթարկուի եւ քանի մը ժամ ետք ազատ կ'արձակուի: Ասկէ ետք, Խանճեան կը յաջողի իր ձերբակալումի դէպքը լաւագոյն կերպով օգտագործել եւ լրատուամիջոցներուն մէջ ինքզինք ներկայացնել իբրեւ սփիւռքի ձայն մը, եւ ոչ իբրեւ նեղ իմաստով դէպքի մը զոհը: Այս կեցուածքը նկատելի համակրութիւն մը կը ստեղծէ իր շուրջը: Վերադառնալով Գանատա, բազմաթիւ մտաւորականներու եւ արուեստագէտներու հետ կը ստեղծէ համացանցային խնդրագիր (petition) մը՝ «Արդարութիւն Հայաստանում»(1), որ 2017 Մարտ 20-ի տուեալներով հաւաքած է աւելի քան 5000 ստորագրութիւն: Խնդրագիրը նախաձեռնողներուն մաս կը կազմեն նաեւ Սերժ Թանկեան, Վահէ Պէրպէրեան, Ատոմ Էգոյեան, Էրիկ Նազարեան, Արա Տինքճեան, Քրիս Պոհճալեան, Յասմիկ Պապեան եւ ուրիշներ: Անոնք կը յայտարարեն պայքար փտածութեան, մենատիրութեան, անհաւասարութեան, ոստիկանական դաժանութեան, արտագաղթի, ընտրակեղծիքի դէմ: Վերջապէս, Խանճեան եւ սփիւռքահայ քանի մը յառաջապահ մտաւորական-արուեստագէտներ կ'որոշեն Ապրիլ 2-ի ընտրութիւններուն ստանձնել վերահսկողի դերակատարութիւն:

Արսինէ Խանճեանի (եւ իր հետ նաեւ սփիւռքի կարեւոր շերտի մը) ոչ-բաղձալի յայտնութեան հետ իշխանութիւնը փորձեց առնչուիլ արտաքնապէս հակադիր, բայց իրականութեան մէջ իրարու լրացնող երկու քայլերով:

Առաջին քայլը Խանճեանին վարկաբեկելն էր: Այս տարուայ Փետրուարի սկիզբը իշխանամէտ *Իրաւունք* լրագիրը յօդուած մը կը գրէ, հարցադրելով՝ որ 1996-ին *IRMA VEP* ֆիլմին մէջ մերկ նկարահանուած Խանճեան ի՞նչպէս կրնայ Հայաստանի մէջ պայքարիլ ընտրողներու իրաւունքին համար(2): Իսկ իր համացանցային կայքին մէջ կը գրէ հետեւեալ երկտողը. ««Արդար ընտրութիւնների» համար պայքարող կանադահայ դերասանուհի Արսինէ Խանջեանը ամբողջովին մերկ նկարահանուեալ է *IRMA VEP* ֆիլմում (1996 թ.)», եւ ապա յղում կը կատարէ YouTube-ի մէջ դիտելու այդ տեսանիւթը(3): Կա՞յ աւելի ամօթալի երեւոյթ՝ քան *պոռնիկ*ի մը ներգրաւումը *բարձրակիրթ* խորհրդարանականներու ընտրութեան գործընթացքին մէջ:

Այս «բացայայտում»-ը բաւական կը զբաղեցնէ համացանցի սիրահարները, տեղի տալով անդէմ վիճաբանութիւններու եւ ուշադրութիւնը շեղելով ընտրութիւններէն դէպի պոռնիկութիւն: Ամբողջ գործընթացքին լաւագոյն համառօտագրութիւնը կու տայ *Շաբաթ.am*. «Մի իշխանամէտ ու ռուսամէտ թերթ յիշեցրեց մի արեւմտեան ընդդիմադիր կնոջ մերկ նկարահանման մասին, եւ ողջ հայ հանրութիւնը մոռացաւ արդար ընտրութիւններ անցկացնելու նրա համահայկական նախաձեռնութեան մասին ու կենտրոնացաւ նրա գեղեցիկ մարմնի վրայ: Ինչպէս միշտ, յայտնուեցին հայու գէնի մոլեռանդ պաշտպաններ, ըստ որոնց մերկ տեսարանում նկարահանուող դերասանուհին բարոյական իրաւունք չունի մտահոգուել երկրում արդարութիւնը վերականգնելու հարցերով:»(4)

Երկրորդ քայլը Խանճեանին ներգարաւելն էր իշխանական ցանցին մէջ: Լրագիրի հրապարակումէն ընդամէնը տասը օր ետք՝ 2017 Փետրուար 12-ին, քիչ մը անկախ ձեւացնող, բայց ամբողջութեամբ իշխանական պատումը կրկնօրինակող Շանթ հեռատեսիլի արբանեակային կայանը, *Աշխարհի հայեր* հաղորդաշարին հիւրը կ'ընտրէ Արսինէ Խանճեան: Յստակ ուղերձ մըն էր «աշխարհի հայեր»-ուն՝ որ Հայաստան խնդիր չունի սփիւռքահայ ընդդիմախօսներուն նկատմամբ, այլ, ընդհակառակը, անոնց մասնակցութիւնը Հայաստանի ընտրութիւններուն մէջ բարենիշ երեւոյթ մըն է:

Բնականաբար, իշխանութեան ուղղակի ձայնը ներկայացնող Հ1-ը եւ նմանները՝ առարկայականութեան անունին տակ, հեռու պիտի մնային այս երկու քայլերէն, անոնց կիրառութիւնը յանձնելով իր հաւատարիմներուն կամ իր շահերը պաշտպանող ձեւական ընդդիմադիրներուն:

Այս երկու քայլերը կարեւոր են իշխանութեան համար որպէսզի Խանճեան ու սփիւռքի տուեալ շերտը պահեն որոշ պատկերային վերահսկողութեան տակ: Միաժամանակ, սեղանի վրայ դրած ըլլալով Խանճեանի արհեստական պատկերին երկու կողմերը, իշխանութիւնը կարող է զանոնք շահագործել որեւէ ժամանակ՝ առանձին կամ միասին: Բայց նաեւ կը գտնուի վաւերականութեան հարցը: Բազմաթիւ այլընտրանքային մտածողներ կը մերժեն նոյն ինքը գալիք ընտրութիւններուն վաւերականութիւնը, քանի որ անոր կայացումը պիտի վերացնէ 2015-ի քուէարկութեան բոլոր խեղկատակութիւնները: Խանճեանի եւ սփիւռքի ներգրաւումով, հոգ չէ թէ անբաղձալիօրէն ոչ-կուսակցական եւ ոչ-իշխանական դիրքերէ, պիտի վաւերականութիւն տայ բուն ընտրութիւններուն, անկախ բոլոր հանգամանքներէն: Ընդունիլ ընտրութիւններուն վերահսկողութիւնը, կը նշանակէ ընդունիլ նոյն ինքը ընտրութիւններուն կայացումին օրինականութիւնը:

Այս վերջին գաղափարը ելակէտ ունենալով է որ կարեւոր հրապարակումով մը հանդէս կու գայ սփիւռքահայ ուրիշ ոչ-կուսակցական կարեւոր կազմակերպութիւն մը՝ Հայկական Վերածնունդ: Իր հիմնական կեցուածքը այն է, որ երկիրի մը մէջ՝ ուր կը գտնուին երեք տասնեակէ աւելի քաղբանտարկեալներ, անկարելի է ժողովրդավարութիւն պահանջել: Ան կը մատնանշէ նաեւ, թէ իշխանութիւնները լաւ տիրապետելով ընտրախախտումներու եղանակներուն, կարող են դիւրութեամբ մոլորեցնել արտաքին դիտորդները: Վերջապէս, ան մտավախութիւն կը յայտնէ՝ որ «Սփիւռքը անուղղակիօրէն լեգիտիմութիւն է հաղորդում ռեժիմի անօրինականութիւններին, երբ ունենալով հանդերձ բարի եւ առաքինի նպատակներ, ակամայ ներգրաւում է ռեժիմի աշխատանքներին:»(5)

Ի տարբերութիւն Խանճեանէն, Հայաստանի պաշտօնական մարմիններն ու անոնց զօրակիցները լռութիւն պահպանեցին Հայկական Վերածնունդի նկատմամբ:

Խանճեան՝ նուազ արմատական գաղափարներով կողմնորոշուող եւ աքթիւիսթական միջոցներով առաջնորդուող, իր հետ համախոհ ունենալով սփիւռքի անկախ (ոչ-կուսակցական) հոյլ մը մտաւորականներ եւ արուեստագէտներ, կրցած է ներխուժել Հայաստանի քաղաքականութեան ներքին կեանքին մէջ, որ ինքնին անգնահատելի ձեռք բերում մըն է: Հայկական Վերածնունդը՝ աւելի արմատական գաղափարներով առաջնորդուող, նախընտրած է ցուցաբերել զուգահեռ դիմադրութիւն, համակարգի առաջարկած խողովակներուն մէջ ծաւալուող որեւէ գործունէութիւն համարելով այդ համակարգի օրինականացում:

Երկու պարագաներուն, սփիւռքի ոչ-աւանդական շերտերուն կենսունակութիւնը աննախադէպ է:

(Շար. 1)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. 'Justice Within Armenia', *change.org*, https://www.change.org/p/justice-within-armenia: *Ջահակիր* արտատըպած է խնդրագիրին բնագիրը՝ 20 Հոկտեմբեր 2016, թիւ 1777:

➩ 4

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ԳԱՀԻՐԷ

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Կիրակի, 9 Ապրիլ 2017

**ԾԱՂԿԱԶԱՐԴ**

**ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ ՅԱՂԹԱԿԱՆ ՄՈՒՏՔԸ ՅԵՐՈՒՍԱՂԷՄ**

Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ պիտի մատուցուի Ս. Պատարագ

Յաւարտ Ս. Պատարագի պիտի կատարուի նաեւ՝

**ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐՀՆՈՒԹԻՒՆ**

**ԴՌՆԲԱՑԷՔ -ի արարողութիւն կէսօրէ ետք ժամը 5-ին**

Սկիզբ առաւօտեան ժամերգութեան ժամը 8:30-ին
Սկիզբ Ս. Պատարագի ժամը 10:00-ին

Դէպի եկեղեցի երթ ու դարձը դիւրացնելու համար հաստատուած է հանրաշարժի սպասարկութիւն:

Սալահ Էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 9:00-ին

Այծեմնիկ Յանգստեան Տան շէնքին առջեւէն ժամը 9:10-ին

Իսկ երեկոյեան

Սալահ Էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 3:45-ին

Այծեմնիկ Յանգստեան Տան շէնքին առջեւէն ժամը 4:00-ին

Կը հրաւիրենք հաւատացեալ ժողովուրդը ներկայ գտնուելու սոյն հոգեպարար արարողութիւններուն:

*Ե.Գ.Մ. ՅՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ*

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

**Մեծ Պահոց** շրջանին, **Ուրբաթ, 3 Մարտ-էն սկսեալ**, եւ յաջորդող ամէն Ուրբաթ երեկոյեան, Հելիոպոլսէն դէպի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցի հաւատացեալներուն փոխադրութիւնը դիւրացնելու համար, Եկեղեցւոյ Հոգաբարձութիւնը կարգադրած է հանրաշարժի մասնաւոր սպասարկութիւն «Եկեսցէ»ի արարողութեան համար: Հանրաշարժի կանգառներն են.

Սալահ Էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 4:00-ին

Իսկ Կիրակի առաւօտները

Սալահ Էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 8:45-ին

***Ե.Գ.Մ. ՅՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ***

## ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Այսու կը տեղեկացնենք մեր յարգոյ հասարակութեան թէ Եգիպտոսի Հայոց Թեմի Կազմական Կանոնագրի 23-րդ յօդուածի տրամադրութեան հիման վրայ, Աղեքսանդրիոյ Պատկառելի Թեմական Ժողովի ամբողջական ընտրութիւնները տեղի պիտի ունենան Ուրբաթ, 5 Մայիս 2017-ին:

Սոյն ամբողջական ընտրութիւններուն մասնակցելու իրաւունք ունեցող ազգայիններու ցանկը կախուած է Ս. Պօղոս-Պետրոս եկեղեցւոյ մուտքին եւ Ազգային Առաջնորդարանին մէջ:

Կը տեղեկացնենք նաեւ, թէ ըստ Կազմական Կանոնագրի 13 եւ 14 յօդուածներուն, ընտրութեան ցանկերը «*փակցնելու եւ հրատարակելու գործողութեան թուականի յաջորդող 7 օրերու ընթացքին, 21 տարեկանը լրացած եգիպտահպատակ եւ երկու տարի Աղեքսանդրիոյ եւ անոր շրջակայքին մէջ բնակող իւրաքանչիւր անձ (այր թէ կին), որուն անուան արձանագրութիւնը մոռցուած է, կրնայ պահանջել որ իր անունը արձանագրուի: Նոյնպէս ամէն ընտրող, որուն անունը արձանագրուած է, կրնայ պահանջել, որ առանց իրաւունք ունենալու արձանագրուած անձին անունը ջնջուի*»:

ԴԻՒԱՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

2

## ԳԱԳԻԿ ԾԱՌՈՒԿԵԱՆ ԿԱՄ Ի՞ՆՉՊԷՍ ՍՏԵՂԾԵԼ ՏԻՊԱՐ ՀԱՅՐԵՆԱՍԷՐԻ ՊԱՏԿԵՐԸ

համգամանքով:

«Սոյն յայտարարութեամբ միաժամանակ որպէս հաղորդում դիմում ենք ՀՀ գլխաւոր դատախազութեանը՝

«1. ՀՀ Ազգային Ժողովի ներկայիս պատգամաւոր Գագիկ Ծառուկեանի կողմից հիմնադրուած եւ յանցաւոր ճանապարհով ստացուած եկամուտների օրինականացման նպատակ հետապնդող գործունէութեան կապակցութեամբ քրէական գործ յարուցելուց

«2. ՀՀ վարչապետ Տիգրան Սարգսեանի կողմից անգործութիւն դրսեւորելու փաստերի հիման վրայ քրէական գործ յարուցելու հարցերով:»(13)

Ջի Էմ Մաղարոյի նախկին հաշուապահ Հենրիկ Մամաջանեան՝ Էդիկ Բաղդասարեանին կու տայ խնդիրին համառօտագրութիւնը. «Փաստօրէն, բաւական չէ մեր գիւղի արօտավայրերը փչացրին, էս մարդկանց աշխատանքից էլ զրկեցին, արօտավայրերից էլ զրկեցին:»(14)

Ասիկա տիպական դրամատիրութեան նմոյշ մըն է: Անհատը արմատախիլ ընել իր բնավայրէն՝ խլելով կամ ապականելով [illegible] հողն ու միջավայրը, ուր ատակ էր ինքնուրոյն կազմակերպել իր կեանքի բոլոր կարիքները, ապա այդ արմատախիլ եղած անձին համար աշխատանք հայթայթել՝ զայն արմատախիլ ըրած կամ որեւէ այլ դրամատիրոջ մօտ, եւ ըստ ապա քմայքի խաղալ անոր հետ:

Ասոր կ'աւելնայ նաեւ աշխատավարձքի հարցը: 2009 Նոյեմբերին, ուրիշ հետաքննիչ լրագրող մը՝ Լարիսա Փարեմուզեան, զարձեալ կը հետաքրքրուի Ջի Էմ Մաղարոյով: Տնօրէն Վարուժան Աւդալեանին կը հարցնէ 2007-էն սկսեալ 46 աշխատողներու չվճարուած աշխատավարձքի մասին: Կը ստանայ «դասական» պատասխանը՝ թէ ինք տեղեակ չէ քանի որ այդ ժամանակ տնօրէն չէր տակաւին: Սակայն տնօրէնը կը տեղեկացնէ ներկայ աշխատողներու աշխատավարձքին մասին. «Աշխատողներ ունենք Երեւանից, Արարատից, Մղարթից եւ էս կողքի Ղաչաղան գիւղից: Միջին աշխատավարձը 40-50 հազար դրամ է, 30 հազար էլ կայ:»(15)

Ենթադրենք՝ որ տնօրէնին տեղեկութիւնները ստոյգ են եւ նուազագոյն աշխատավարձքը 30 հազար դրամէն պակաս չէ: 2009 Սեպտեմբեր-Դեկտեմբերի տուեալներով 1 ամերիկեան տոլարին փոխարժէքն էր 384.4 հայկական դրամ(16): Ուրեմն, 30 հազար դրամը պիտի հաշուէր 78 տոլար: Այս գումարով անկարելի է ընտանիք պահել: Ասիկա նոյնիսկ շատ աւելի ցած է դրամատիրութեան բնութրական վարձատրութեան սկզբունքէն, ըստ որուն դրամատէրը բնուորին կը վճարէ այն նուազագոյնը՝ որ կ'ապահովէ իր գոյութիւնը եւ զայն մասնակից կը դարձնէ սպառողականութեան գոյատեւումին եւ վերարտադրութեան:

Ամէն պարագայի, այսպէս, ամբողջացած կ'ըլլայ դրամատիրութեան հիմունքները՝ մարդը արմատախիլ ընել իր արմատէն, զայն ցմահ կարօտ դարձնել դրամատիրոջ «հոգածութեան», եւ ապա իրեն տալ իր եւ սպառողական հասարակարգին գոյութիւնը պահպանելու անհրաժեշտ նուազագոյն վարձատրութիւնը: Ասոնք են Մարքսի շատ յայտնի դրոյթները, զորս կատարելապէս իրագործուած կը գտնենք Ծառուկեանի յիշեալ գործարքին մէջ:

(Շար. 2)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

9. Գագիկ Ծառուկեան, *Վիքիպետիա*, https://hy.wikipedia.org/wiki/Գագիկ_Ծառուկյան, դիտուած՝ 5 Մարտ 2017:

10. Էդիկ Բաղդասարեան, «Պետութեան կարիքներ = Գագիկ Ծառուկեանի շահ», *Հետք*, 26 Դեկտեմբեր 2005, http://hetq.am/arm/news/9548/petutyan-kariqner-=-gagik-tsarukyani-shah.html:

11. Անդ:

12. Էդիկ Բաղդասարեան, «Ո՞վ է շահագործել Մղարթի ոսկու հանքը», *Հետք*, 4 Փետրուար 2008, http://hetq.am/arm/news/31979/ov-e-shahagortsel-mxarti-osku-hanqy.html:

13. «Յայտարարութիւն», 13 Ապրիլ 2009, Հելսինկեան Քաղաքացիական Ասամբլեայի Վանաձորի Գրասենեակ, http://hcav.am/events/հայտարարություն-13/:

14. Էդիկ Բաղդասարեան, «Ո՞վ է շահագործել Մղարթի ոսկու հանքը»:

15. Լարիսա Փարեմուզեան, «Մուլտի Գրուպը սկսել է լայն թափով շահագործել Մղարթի ոսկու հանքավայրը», *Հետք*, 16 Նոյեմբեր 2009, http://hetq.am/arm/news/41221/multi-grupy-sksel-e-layn-tapov-shahagortsel-mxarti-osku-hanqavayry.html:

16. *Progress Report on Implementation of the Sustainable Development Program (Year 2009-2010)*, Yerevan: International Monetary Fund, 2011, էջ 16:

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Ողբ. Արաքսի Ուստայեան-Տէօվլէթեանի մահուան քառասունքին առթիւ, Տէր եւ Տիկին Հրայր եւ Կասիա Ծղալեան, Տէր եւ Տիկին Վահան եւ Մարալ Ոսկեան եւ զաւակները ու Տէր եւ Տիկին Էմանուէլ եւ Կարինէ Սիկալաս եւ զաւակները կը նուիրեն՝

| | |
|---|---|
| «Արեւ»ին | 1000 |
| Եկեղեցւոյ պայծառութեան | 1000 |
| Կոկանեան սրահին | 1000 |
| Հայ Գեղարուեստասիրաց Միութեան | 1000 |
| ՀԲԸՄ-Գահիրէի | 750 |
| ՀՄԸՄ-ՆՈՒՊԱՐԻՆ (Գահիրէ) | 750 |
| Այծեմնիկ «Հանգստեան Տան» | 500 |
| Գահիրէի Բարեսիրաց Միութեան | 500 |
| «Տիգրան-Երկաթ» Հայ Մշակ. Միութեան | 500 |
| «Յուսաբեր»ին | 500 |
| «Ջահակիր»ին | 500 |

(Վերոյիշեալ բոլոր նուիրատուութիւնները ստանալ Գահիրէի Ազգային Առաջնորդարանէն)

2

## ԴԱՐՁԵԱԼ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐ

2. Այս յօդուածին մասին տե՛ս՝ «Ի՞նչ կապ ունի, որ մարդը պոռնօ ֆիլմում է նկարւում, եթէ նա ցանկանում է պայքարել արդարութեան համար», *asekose.am*, 2 Փետրուար 2017, http://asekose.am/hy_AM/news/11/241467-inc-kap-ouni—or-marde-porno-filmoum-e-nkarvoum—ete-na-cankanoum-e-payqarel-ardaroutyan-hamar.html:

3. ««Արդար ընտրութիւնների» համար պայքարող Արսինէ Խանջեանը նկարահանուել է ամբողջովին մերկ», ***Իրաւունք***, 2 Փետրուար 2017, http://www.iravunk.com/news/21809:

4. «Ամերիկահայ դերասանուհու մերկ վիդէօկադրերն ու եւրոպական նախագահի ապտակը Հայաստանին ու Ռուսաստանին. TOP 10», ***Շաբաթ.am***, 11 Փետրուար 2017, https://shabat.am/am/article/115509/Amerikahay-derasanuhu-merk-videokadrern-u:

5. Հայկական Վերածնունդ Համասփիւռքեան Շարժում, «Մի երկրում, որտեղ երեք տասնեակից աւելի քաղբանտարկեալ կայ, «ժողովրդավարական արդար ընտրութիւններ» հասկացութիւնը ծաղրանք է ժողովրդավարութեանը», *Armenian Renaissance*, http://www.armenianrenaissance.org/2017/01/26/13535/: ***Ջահակիր*** արտատպած է այս բնագիրը՝ 9 Փետրուար 2017, թիւ 1783, դիտաւորեալ նոյն սխնակին քովը հրապարակելով Արսինէ Խանճեանի կարծիքը:

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

جاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع
TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1787 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 6 ԱՊՐԻԼ 2017 ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٧٨٧ الخميس ٦ أبريل ٢٠١٧

# ՊԷՏՔ Է ԱՍԵՄ, ՈՐ ՄԱՔՈՒՐ ՉԷՐ ԱՄԷՆ ԲԱՆ. ՍՓԻՒՌՔԱՀԱՅ ԴԻՏՈՐԴՆԵՐԸ ՆԵՐԿԱՅԱՑՐԵԼ ԵՆ ԻՐԵՆՑ ՏՊԱՒՈՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Lragir.am, 3 Ապրիլ – Դիտորդական առաքելութեամբ Հայաստան ժամանած կանադահայ դերասանուհի Արսինէ Խանճեանը, ռեժիսոր Ատոմ Էկոյեանը, ռեժիսոր Էրիք Նազարեանը ներկայացրել են իրենց տպաւորութիւններն ընտրութիւններից ու դիտորդութեան արդիւնքները, տեղեկացնում է *armtimes.com*-ը:


Սփիւռքահայ դիտորդներ՝ Արսինէ Խանճեան (ձախից), Ատոմ Էկոյեան (ձախէն երկրորդը) եւ Սերժ Թանքեան (աջին)

Արսինէ Խանճեանն ասաց, որ իր այցելած բոլոր ընտրատեղամասերում ընտրախախտումներ է արձանագրել:

«Խախտումներ բոլոր տարածքներում էլ արձանագրել ենք: Բոլոր տեղամասերում յատկապէս կուտակումներ կային: Անտեղեակութիւն կար, շփոթմունք: Քուէարկողները չգիտէին, թէ ինչպէս պէտք է օգտագործէին քուէաթերթիկները եւ ծրարները: Մի զինուոր կար տեղամասերից մէկում, չգիտէր ինչ անել, սխալուեց, ստիպուած էր երկրորդ անգամ քուէարկել, բայց չքուէարկեց եւ դուրս եկաւ տեղամասից: Շփոթումը տեղի տուեց բաց քուէարկութեանը: Կար նաեւ ուղղորդում, տարեցների ոչ թէ ուղեկցում, այլ ուղղորդում»:

Խօսելով յանձնաժողովների անդամների ու ղեկավարների վարքի մասին՝ դերասանուհին ընդգծեց, որ նրանց կողմից կողմնակալ վերաբերմունք կար: «Հրաժարւում էին դիտորդների արձանագրած խախտումները գրանցել: Նաեւ շատ հետաքրքրական է, որ դիտորդներն ընդհանրապէս յուսահատ էին, որովհետեւ իրենց լիազօրութիւններն իրականացնելու ազատութիւն չունէին՝ գոնէ նուազագոյնը գրանցումների համար: Երբ որ ես մօտենում եւ ասում էի՝ պէտք է գրանցել այսինչ խախտումը, նոր մօտենում էին ու գրանցում»:

«Սպասում էի, որ աւելի հանդարտ ընտրութիւնների կը մասնակցեմ, որովհետեւ ամէն մարդ ասում էր, ընտրութիւնների մասնակցութեան իմ առաջարկը իզուր է, որովհետեւ ամէն ինչ արւում է մինչեւ այդ օրը: Մենք գիտէինք, որ մինչ ընտրութեան օրը արդէն բաւականին խախտումներ կային: Ես ասում էի ոչինչ, ուզում եմ ընտրութիւնների մաքրութիւնը տեսնել: Բայց պէտք է ասեմ, որ մաքուր չէր ամէն բան: Մենք իսկապէս լուրջ գործ ունենք երկրում, եթէ ուզում ենք դեմոկրատականին մօտեցնել մեր ժողովրդին եւ մեր երկրի ապագան: Եթէ իսկապէս ուզում ենք այս երկիրը յեղափոխութիւն ունենայ, մարդկային, քաղաքական յեղափոխութիւն, մեծ գործ ունեն անելու ընդդիմադիր կուսակցութիւնները... Կարիք կայ քաղաքացիական իրաւունքների եւ պարտականութիւնների գիտակցութիւն ստեղծելու: Հարցերից մէկը ոչ թէ խախտումներն են, այլ այն, որ իրենք այդ պարտաւորութիւնը չեն զգում: Չեն գիտակցում, որ կարող են իրենց ձայնով փոփոխութիւն բերել երկրում: Չէի ասի, որ զարմացայ, բայց մի քիչ աւելի յոյսով էի, որ աւելի զօրաւոր քաղաքացիական գիտակցութեան առջեւ եմ», եզրափակեց Խանճեանը:

Էրիք Նազարեանը եւս անդրադարձաւ ընտրողների մէջ առկայ շփոթմունքին, այն անուանեց քաոս: Խօսելով Տաւուշի մարզի տեղամասեր իր այցի մասին՝ նա ընդգծեց, որ ժողովրդի դէմքից երեւում էր, թէ ինչքան չարքաշ, տանջուած ազգ ենք, եւ ինչքան ուրիշներն են տանջել, հիմա մենք ենք տանջւում:

Ատոմ Էկոյեանը խօսեց ընտրական պրոցէսից եւ ընդգծեց, որ այն չափազանց բարդ էր կառուցուած, ամէն ինչ արուած էր քուէարկութեան արդիւնքը կանխատեսելի դարձնելու համար:

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎԻ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ ԱՐԴԻՒՆՔՆԵՐԸ

Ազգային Ժողով կ'անցնին չորս ուժեր՝ ՀՀԿ՝ 49,12%, Ծառուկեան Դաշինք՝ 27,32%, Ելք Դաշինք՝ 7,77% եւ ՀՅԴ՝ 6,57%:

Միւս կուսակցութիւններուն եւ դաշինքներուն արդիւնքներն են.

- Հայկական Վերածնունդ՝ 3,71%
-Օհանեան-Րաֆֆի-Օսկանեան Դաշինք՝ 2,07%
-Կոնգրէս-ՀԺԿ Դաշինք՝ 1,65%
-Ազատ Դեմոկրատներ՝ 0,94%
-Հայաստանի Կոմունիստական Կուսակցութիւն՝ 0,75%

# ՕՀԱՆԵԱՆ-ՐԱՖՖԻ-ՕՍԿԱՆԵԱՆ ԴԱՇԻՆՔԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

Ապրիլի 2-ին տեղի ունեցած խորհրդարանական ընտրութիւններով Հայաստանը եւս մէկ մեծ ետքայլ արձանագրեց: Սա ոչ թէ ընտրութիւն էր, այլ ձայների առեւտուր եւ իշխանութիւնների կողմից կազմակերպուած համակարգային կեղծարարութիւն:

Ո՛չ ոստիկանութեան յայտարարած ընտրողների թիւը՝ 2 միլիոն 588 հազար, ո՛չ ԿԸՅ-ի յայտարարած՝ ընտրութիւններին մասնակցածների թիւը՝ 1 միլիոն 575 հազար, եւ ոչ էլ ՀՀԿ-ի ստացած 700 հազար քուէները որեւէ աղերս չունեն իրականութեան հետ:

Ընտրութիւնների արդիւնքները չեն արտացոլում մեր հասարակութեան իրական տրամադրութիւնները, չեն արտայայտում ժողովրդի շահերը: Ներքին ու արտաքին քաղաքականութեան բոլոր ոլորտները ձախողած եւ տապալած ուժը չի վայելում Հայաստանի ժողովրդի անգամ նուազագոյն վստահութիւնը:

Այսպիսով, մենք կրկին ունեցանք ապօրինի ճանապարհով ձեւաւորուած ո՛չ լեգիտիմ իշխանութիւն, ինչի արդիւնքում է՛լ աւելի խորացաւ քաղաքական մենաշնորհը, աւելի են սրուելու երկրում առկայ խնդիրները, աւելի է խորանալու անյուսութիւնն ու անարդարութեան զգացումը, աւելի է մեծանալու արտագաղթը եւ լրջօրէն վտանգուելու է մեր երկրի անվտանգութիւնը:


Ձախէն աջ՝ Վարդան Օսկանեան, Սէյրան Օհանեան, Րաֆֆի Յովհաննէսեան

Իշխանութիւնը, կարծես, ուզում է ամրապնդել ժողովրդի մէջ առկայ այն մտայնութիւնը, որ Հայաստանում ընտրութիւնների ճանապարհով որեւէ փոփոխութեան հասնել հնարաւոր չէ: Տեղի ունեցաւ քաղաքականութիւնից հեռու փողատէր թաղային «հեղինակութիւնների» կռիւ՝ երկրի համար ամենածանր հետեւանքներով:

Անկախ ամէն ինչից՝ մեզ համար մեծ պատիւ է, որ մենք մշտապէս պաշտպանել եւ պաշտպանելու ենք ժողովրդի շահերը՝ մնալով ժողովրդի մէջ որպէս նրա բաղկացուցիչ մաս: Մեզ համար թանկ է իւրաքանչիւր քուէն, որը տրուել է դաշինքին: Շնորհակալ ենք մեր ակտիւիստներին ու համակիրներին, որոնք այս կեղտոտ եւ գաղջ մթնոլորտում ցուցաբերել են քաղաքացիական բարձր գիտակցութիւն:

3

# ԿՈՆԳՐԷՍ-ՀԺԿ ԴԱՇԻՆՔ. ԱՊՐԻԼԵԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՀԵՐՈՍՆԵՐՆ ԸՆԿԱՆ ՅԱՆՈՒՆ ԲՈԼՈՐԻՍ ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ԵՒ ԱՆՎՏԱՆԳՈՒԹԵԱՆ

ԱՌԿԱ, 2 Ապրիլ – Կոնգրէս-ՀԺԿ դաշինքն Ապրիլեան Պատերազմի առաջին տարելիցի կապակցութեամբ Ապրիլի 2-ին հանդէս է եկել յայտարարութեամբ:

2016 թ.-ի Ապրիլի 2-ից 5-ն ադրբեջանական զինուած ուժերը ղարաբաղաադրբեջանական շփման գծի հարաւային, հարաւարեւելեան եւ հիւսիսարեւելեան ուղղութիւններով ձեռնարկել են բացայայտ յարձակողական գործողութիւններ՝ հրետանիով, զրահապատ տրանսպորտային միջոցներով եւ աւիացիայով: ԼՂՀ պաշտպանութեան բանակը յաջողութեամբ ճնշել է հակառակորդի գործողութիւնները՝ հասցնելով մեծ վնասներ:

«Այսօր լրանում է Ապրիլեան Պատերազմի զոհերի առաջին տարելիցը: Մէկ տարի առաջ ադրբեջանական զինուած սադրանքը հերթական անգամ համդիպեց հայ ժողովրդի միհամուռ հակահարուածին: Զորսօրեայ պատերազմում մենք կարողացանք ետ մղել հակառակորդին ու խափանել նրա նենգ ծրագրերը: Դա հնարաւոր եղաւ, սակայն, թանկարժէք զոհերի գնով, նրանք հերոսացան յանուն Արցախի եւ Հայաստանի, յանուն բոլորիս ապահովութեան, անվտանգութեան ու խաղաղ կեանքի», – ասւում է Կոնգրէս-ՀԺԿ դաշինքի յայտարարութեան մէջ:

«Կոնգրէս-ՀԺԿ դաշինքը, յարգանքի տուրք մատուցելով Ապրիլեան Պատերազմում


Հայ Ազգային Կոնգրէսի նախագահ՝ Լեւոն Տէր-Պետրոսեան

զոհուած զինուորականների, ազատամարտիկների յիշատակին, եւս մէկ անգամ ցաւակցում եւ իր զօրակցութիւնն է յայտնում նրանց հարազատներին, մերձաւորներին ու մտերիմներին: Նրանց եւ արցախեան պատերազմի զոհերի յիշատակի անմոռաց յուշարձանը կը դառնայ խաղաղութեան հաստատումը, պատերազմի բացառումը, Արցախի եւ Հայաստանի ծաղկումն ու հզօրացումը», – ընդգծւում է փաստաթղթում:

Ղարաբաղեան հակամարտութիւնը սկիզբ է առել 1988 թ.-ին, երբ հիմնականում հայերով բնակեցուած Լեռնային Ղարաբաղը յայտարարեց Ադրբեջանի կազմից դուրս գալու մասին: 1991 թ. Դեկտեմբերի 10-ին, Խորհրդային Միութեան փլուզումից մի

3

# ԳԱԳԻԿ ԾԱՌՈՒԿԵԱՆ
# ԿԱՄ Ի՞ՆՉՊԷՍ ՍՏԵՂԾԵԼ ՏԻՊԱՐ ՅԱՅՐԵՆԱՍԷՐԻ ՊԱՏԿԵՐԸ

Յ. ԱՒԱԳԵԱՆ

## 2. ՊԱՅՔԱՐ ԸՆԴԴԷՄ ՓՈՔՐ ՆԵՐԴՐՈՂԻ

*Հետք* հետաքննական լրագիրը եւ Քրիստինէ Աղալարեան յաջողած են հետեւողականօրէն բացայայտել մէկ պարագայ մը՝ որ վերջացած է մանր ներդրողի մը վռնտումով, ի տես Հայաստանի իշխանութիւններուն եւ պատասխանատու մարմիններուն:

2006 Մայիսին գերմանական Ostinvestor ընկերութիւնը կը գնէ Արարատ կոնեակի-գինու-օղու կոմբինատ Բաց Բաժնետիրական Ընկերութեան (ԲԲԸ) 1520 հատ բաժնետոմս, որ կը կազմէր ընկերութեան բաժնետոմսերուն 3.2%-ը: Այդ ժամանակ, բաժնետոմսերուն մեծ մասը կը պատկանէր Ծառուկեանի Մուլտի Գրուպին:

2008 Յունիսին, Ostinvestor Արարատի գլխաւոր բաժնետիրոջ կողմէ պահանջ կը ստանայ վաճառել բոլոր բաժնետոմսերը, քանի որ Մուլտի Գրուպ նպատակ չունի ճանչնալ Ostinvestor ընկերութեան սեփականութիւնը: Ostinvestor կը մերժէ առաջարկը:

Բաժնետէրերու 2008 Հոկտեմբերի ընդհանուր արտահերթ ժողովը կ'որոշէ համախմբել (consolidate) Երեւանի Արարատի բաժնետոմսերը՝ անոնցմէ ամէն 2363.5 հատը փոխարկելով մէկ նոր բաժնետոմսով, որուն անուանական արժէքն է 18.908.000 դրամ: Եւ քանի որ Ostinvestor ընկերութեան կը պատկանէր ընդամէնը 1520 բաժնետոմս, ան չէ կարողացած ձեռք բերել նոյնիսկ մէկ բաժնետոմս: Այսուհետեւ, Էն-Աուդիտ ՍՊԸ-ն Արարատի մէկ ամբողջական բաժնետոմսի շուկայական արժէքը կը սահմանէ 28 հազար դրամ, մինչդեռ Ostinvestor մէկ բաժնետոմսը ձեռք բերած էր 102 հազար դրամով, իսկ իր 1520 բաժնետոմսերուն համար վճարած էր 159 միլիոն 600 հազար դրամ: Ostinvestor կը հրաժարի այս գինով ծախել, քանի որ ան կը կազմէր իրենց գործարքի եւ գնած գինի ընդամէնը 20%-ը(17):

Մէկ տարի ետք՝ 2009-ին, պատասխանելով Քրիստինէ Աղալարեանի հարցումներուն, Ostinvestor ընկերութեան տնօրէն Ստեֆան Լաքսհուբէր կը կատարէ ապշեցուցիչ բացայայտում մը.

«Ամենասկզբում, երբ այս խնդիրը ծագեց, ես զրուցեցի Մուլտի Գրուպի տնօրէնի հետ, աւելի ճիշդ՝ ոչ անմիջական նրա, այլ թարգմանչի, բայց զրոյցն օպտիմիստական չէր, այլ աւելի շատ՝ սպառնալիքներով լի:

«[...] [Յ]ետոյ սկսեցինք փաստաբան փնտռել: Բաւականին դժուար էր եւ մեզանից երկար ժամանակ խլեց գտնել մի փաստաբանի, ով յօժարակամ կը ստանձնէր մեր գործը եւ կ'աջակցէր մեզ դուրս գալ Մուլտի Գրուպի դէմ: Ես Հայաստանում ծեծել եմ շուրջ 12 փաստաբանական գրասենեակների դռներ եւ ստացել եմ պատասխան, որ՝ մենք խորհուրդ կարող ենք տալ, բայց վախենում ենք դուրս գալ Մուլտի Գրուպի դէմ: Այստեղ ոչ թէ շահերի բախման խնդիր կար, այլ պարզապէս նրանք վախենում էին: Սկզբում մենք հնարաւորութիւն չունեցանք իրական քայլեր ձեռնարկել, միեւնոյն ժամանակ մենք պէտք է առաջ շարժուէինք եւ գտանք մի քանի քաջ փաստաբաններ: Ամենազարմանալին էր, որ նրանց մեծ մասը կանայք են, որոնք պատրաստակամ են մեզ վերցնել եւ չեն վախենում անցնել այդ ճանապարհը:»(18)

Յստակ է, որ գործ ունինք մարդոց ահ ու սարսափի մէջ պահող վիթխարի դրամատիրոջ մը հետ, որ ընդունակ է ամէն անօրինական քայլերու դիմելու իր նպատակին հասնելու համար, թիկունք ունենալով Հայաստանի վերնախաւը:

2010 Մարտ 4-ին գործը կը մտնէ Հայաստանի դատարան(19): Յաջորդ նիստը տեղի կ'ունենայ 2010 Ապրիլ 16-ին, ուր կը պահանջուի փորձաքննութիւն(20):

Անշարժ գոյքի գնահատման Անիկոմ ընկերութիւնը աւարտելով իր փորձաքննութիւնը, կը հասնի այն եզրակացութեան, որ Արարատ պէտք է Ostinvestor-ին վճարէ 600 հազար ամերիկեան տոլար: Միաժամանակ, հայցուոր կողմը կը ներկայացնէ մարազնին տեղեկութիւններ, որոնց հիման վրայ կ'եզրակացնէ. «Արարատ կոնեակի-գինու-օղու կոմբինատը աւելի քան 6 միլիարդ դրամով արհեստականօրէն պակասեցրել է իր սեփական կապիտալը, որպէսզի պակաս վճարի փոքր բաժնետէրերին:»(21)

Փոքրերուն սիրող ու հոգացող եւ միշտ անոնց համար բարեկարծող Ծառուկեան կը պայքարի փոքր ներդրողներուն դէմ:

Դատական նիստերը կը շարունակուին՝ 2012 Սեպտեմբեր(22), Նոյեմբեր 14(23), Դեկտեմբեր 7(24), 2013 Յունուար 22(25), Փետրուար 6(26), Փետրուար 20(27), Մարտ 18(28):

2003 Մարտ 26-ին դատարանը կը հրապարակէ իր վճիռը, ըստ որուն Ծառուկեանի Արարատ կոմբինատը պէտք է Ստեֆան Լաքսհուբէրի Ostinvestor-ին վճարէ ընդամէնը 14.8 միլիոն դրամ փոխհատոյց, միաժամանակ մերժելով 1520 հատ բաժնետոմսերու նկատմամբ սեփականութիւնը վերականգնելու պահանջքի հայցը(29):

Այս վճիռին մասին Ստեֆան Լաքսհուբէր կը յայտարարէ. «Մենք նկատել էինք, որ դատարանը Գագիկ Ծառուկեանի ազդեցութեան/ճնշման տակ է, բայց ես վերջապէս ինչ-որ հասկնալի բան էի ակնկալում: Դատարանի վճիռը եւ դրա հիմնաւորումները ամբողջութեամբ անտրամաբանական են իւրաքանչիւր գիտակից մարդու համար:»(30)

Ապրիլ 18-ին Ostinvestor կը ներկայացնէ վերաքննիչ բողոք Արարատին դէմ, բողոքելով՝ որ համախմբումի պարագային բաժնետոմսերու դուրս մնալը հակասահմանադրական քայլ է, մատնանշելով նաեւ այլ օրէնսդրական խախտումներ(31):

Նոր նիստեր՝ 2013 Յունիս 14(32), Յունիս 28(33), Յուլիս 12(34): Յուլիս 26-ի նիստին վերաքննիչը կ'արձակէ իր վճիռը: «Վերաքննիչը բեկանեց առաջին ատեանի դատարանի վճռի այն մասը, որը վերաբերում էր Անիկոմ ՍՊԸ-ի կողմից տրուած գնահատման հաշուետուութեամբ բաժնետոմսերի դիմաց շուկայական արժէքին համարժէք՝ 142.324.653,93 դրամ փոխհատուցում տրամադրելուն, ինչպէս նաեւ Իստինվեստորի օգտին 14.8 միլիոն դրամ գումարը՝ որպէս բաժնետոմսերի համախմբման հետեւանքով ստացուած կոտորակային բաժնետոմսի յետգնման արդիւնքում բաժնետիրոջը վճարման ենթակայ գումար բռնագանձելուն», կը տեղեկացնէ *Հետք* եւ կ'աւելցնէ. «Միեւնոյն ժամանակ վերաքննիչը նշել է, որ կոնեակի կոմբինատին փոխհատուցում տրամադրելուն պարտաւորեցնելու Իստինվեստորի պահանջն «անհիմն է եւ ենթակայ է մերժման, քանի որ հայցուորի՝ տրամադրուածից աւելի չափով փոխհատուցում ստանալու իրաւունքն ունենալու փաստը չի հաստատուել գործի քննութեամբ:»(35)

Լաքսհուբէր ընդվզած է ամբողջ գործընթացէն. «Ես չէի սպասում իսկապէս ամբողջական փոխհատուցում կամ գնահատում: Ոչ, ես երազող չեմ, ես նոյնիսկ 50 տոկոսի մասին չէի երազում: Սակայն ես յոյս ունէի, որ որեւէ ազդանշան կը ստանամ, որ դատարանն ասէր՝ սա անհեթեթ գնահատում է: Այլ կերպ ասած՝ դու գնում ես Մերսեդէս, եւ Մուլտի Գրուպը գալիս ու ասում է, որ այն 10 դրամ արժէ: Սա այնքան հեռու է իրականութիւնից: Ես գոնէ սպասում էի, որ դատարանն ասէր՝ Մերսեդէսն արժէ 100 դրամ կամ իրականութեանը մօտ մէկ այլ բան: Բայց ոչ մի ազդանշան: Եւ ծիծաղելին այն է, որ մենք տեղեկութիւններ ստացանք, որ դատարանի կողմից ընտրուած գնահատող կազմակերպութիւնը ճնշման է ենթարկուել, չնայած դրան, նրանք ասացին, որ գնահատումը ծիծաղելի է:»(36)

Լաքսհուբէր Արարատի դէմ բողոք կը ներկայացնէ Վճռաբեկ Դատարան(37): Դատարանը կը վերադարձնէ բողոքը եւ Ստեֆան Լաքսհուբէր կ'որոշէ գործը հասցնել Եւրադատարան(38)

Այս պարագան չի կրնար բացառութիւն մը ըլլալ: Արդէն Ostinvestor-ի տնօրէնի վերոյիշեալ խօսքերէն յայտնի է, թէ որքան վտանգաւոր է դէմ կանգնիլ Ծառուկեանին: Ըլլալով գերմանական ընկերութիւն մը, Ostinvestor ուրիշներէն աւելի համարձակութիւն ունեցած է այդ քայլին դիմելու: Կարելի է պատկերացնել՝ թէ ի՞նչ կրնար ըլլալ հայ փոքր ներդրողի մը ճակատագիրը նման քայլի դիմելու պարագային:

(Շար. 3)

### ՄԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

17. Այս բոլորի մանրամասնութիւնները կարելի է կարդալ՝ Քրիստինէ Աղալարեան, «Օտարերկրեայ ներդրողը կորցնում է իր բաժնետոմսերը Հայաստանում», *Հետք*, 20 Յուլիս 2009, http://hetq.am/arm/news/1643/otarerkrya-nerdroxy-korcnum-e-ir-bazhnetomsery-hayastanum.html:

18. Քրիստինէ Աղալարեան, «Գերմանացի ներդրողը Հայաստանը ապահով եւ անվտանգ երկիր չի համարում», *Հետք*, 19 Հոկտեմբեր 2009, http://hetq.am/arm/news/40801/germanaci-nerdroxy-hayastany-apahov-ev-anvtang-erkir-chi-hamarum.html:

19. «Երեւանի Կոնեակի Գործարանը պէտք է տրամադրի փաստաթղթերը», *Հետք*, 4 Մարտ 2010, http://hetq.am/arm/news/43455/erevani-konyaki-gortsarany-petq-e-tramadri-pastatuxty.html:

20. Քրիստինէ Աղալարեան, «Պահանջում են փորձաքննութիւն նշանակել», *Հետք*, 16 Ապրիլ 2010, http://hetq.am/arm/news/44266/pahanjum-en-pordzaqnnutyun-nshanakel.html:

21. Քրիստինէ Աղալարեան, «Կը տա՞յ Գագիկ Ծառուկեանը գերմանացի ներդրողին 600 հազար դոլարը», *Հետք*, 4 Օգոստոս 2011, http://hetq.am/arm/news/3404/kta-gagik-tsarukyany-germanaci-nerdroxin-600-hazar-dolary.html:

22. Քրիստինէ Աղալարեան, «Գերմանացի ներդրողը Գագիկ Ծառուկեանից համարժէք փոխհատուցում է պահանջում», *Հետք*, 8 Հոկտեմբեր 2012, http://hetq.am/arm/news/19302/germanaci-nerdroxy-gagik-tsarukyanic-hamarzhek-pokhhatucum-e-pahanjum.html:

23. Քրիստինէ Աղալարեան, «Գերմանացի ներդրողը պատրաստ է տասնամեակներ շարունակ պայքարել Գագիկ Ծառուկեանի դէմ», *Հետք*, 14 Նոյեմբեր 2012, http://hetq.am/arm/news/20570/germanaci-nerdroxy-patrast-e-tasnamyakner-sharunak-payqarel-gagik-tsarukyani-dem.html:

24. Քրիստինէ Աղալարեան, «Դատաւորը վճիռը ↳ 4

---

**ՅԱՅԱՍՏԱՆ**

## ԸՆԴԴԻՄԱԴԻՐՆԵՐԸ ՍԽԱԼՈՒԵՑԻՆ. ՔՈՒԷԱՐԿՈՒԹԻՒՆԸ ՎԵՐԱՅՍԿՒՈՒՄ Է

Epress.am, 2 Ապրիլ - Սահմանադրութեան փոփոխութիւնից յետոյ անցկացուող առաջին խորհրդարանական ընտրութիւնների նախաշեմին ընտրութիւնների արդար անցնելու մասին վստահեցնում էին ոչ միայն իշխանութիւնը, այլեւ ընդդիմադիր գործիչները եւ քաղհասարակութեան ներկայացուցիչները: Որպէս փաստարկ բերւում էին էլեկտրոնային սարքերը, ցուցակների հրապարակումը, 9 քուէաթերթիկների առկայութիւնը՝ որպէս «կարուսէլի» հակաթոյն եւ այլ նորամուծութիւններ: Ընտրութիւնների օրը, գոնէ դիտորդներն իրենց կարծիքը փոխել են եւ յայտնում են, որ ընտրատեղամասերում էլ խախտումները քիչ չեն:

**Էլեկտրոնային սարքերը խոտանւում են**

Անկախ Դիտորդ նախաձեռնութեան անդամ Դանիէլ Իոաննիսեանը *Epress.am*-ի հետ զրոյցում ասել է. «Եթէ մենք կարծում էինք, որ հիմնական ընտրակեղծիքներն ընտրատեղամասի դրսում են՝ վարչական ռեսուրսների, ընտրակաշառքի տեսքով, այսօր արդէն յայտնի է, որ բուն ընտրական պրոցէսում էլ ընտրակեղծիքները շատ են: Եթէ համեմատենք 2015 թուականի Սահմանադրական հանրաքուէի, էլ չասեմ 2012, 2013 թուականների հետ»: Էլեկտրոնային սարքերը, համաձայն ահազանգերի, խնդիրներ են առաջացրել ընտրատեղամասերի 60%-ում: Դաւիթաշէնում դիտորդ Նարէ Յովհաննիսեանը *Epress.am*-ին պատմել է, որ սարքերը խոտանուել են երկու անգամ, յանձնաժողովի անդամները դա բացատրել են նրանով, որ Vivacell-MTS-ի կապի հետ պրոբլեմներ կան: Մինչդեռ դիտորդները նշում են, որ էլեկտրոնային սարքերը ինտերնէտային սինխրոնիզացիա չունեն:

Աւան թաղամասի ընտրատեղամասերից մէկի դիտորդն ասել է, որ յաճախ սարքերը մատնահետքերը չեն նոյնականացնում:

**Կեղծ դիտորդներ**

Դաւիթաշէն թաղամասում գտնուող 93 միջնակարգ դպրոցի 3 ընտրատեղամասերում *Epress.am*-ի լրագրողին դիտորդներից երեքը հրաժարուել են ներկայանալ, նշել իրենց կազմակերպութեան անունը: Միեւնոյն ժամանակ նրանք իրենց «բեյջերը» պահում էին ծոցագրպանում: Նման մի դէպք է գրանցել նաեւ Անկախ Դիտորդ կազմակերպութեան դիտորդը: Նա Քանաքեռ-Զէյթունում գտնուող 3/31 տեղամասում «կեղծ» դիտորդի գրպանից յայտնաբերել է մարդկանց անուններով ցուցակ, որոնց վրայ եղել են նշումներ, թէ մարդկանցից ովքեր են եկել քուէարկութեան: Անկախ Դիտորդը նկատել է՝ ինչպէս է «կեղծ դիտորդը» նշումներ անում իր ցուցակում եւ ահազանգել է յանձնաժողովի նախագահին: Վերջինս «դիտորդին» հանել է ընտրատեղամասից, բայց ԿԸՅ-ի որոշմամբ նրան յետ են բերել:

Կենտրոնական ընտրական յանձնաժողովում գրանցուել են 28.000 դիտորդներ, նրանցից 21.000-ը, ըստ Դանիէլ Իոաննիսեանի, անյայտ ու կասկածելի կազմակերպութիւններից են:

**Օգնողներ եւ վերահսկողներ**

Մինչ ընտրութիւնների օրը քաղաքացիական ակտիւիստներն ու ընդդիմադիր գործիչները գովում էին նաեւ ընտրական օրէնսգրքի այն փոփոխութիւնը, որով անձը միայն մէկ անգամ կարող է որեւէ մէկին օգնել միեւնոյն ընտրատեղամասում: Բազմաթիւ դիտորներն ահազանգում են, որ ↳ 3

## ԸՆԴԴԻՄԱԴԻՐՆԵՐԸ ՍԽԱԼՈՒԵՑԻՆ. ՔՈՒԷԱՐԿՈՒԹԻՒՆԸ ՎԵՐԱՅՍԿՒՈՒՄ Է

2

միեւնոյն մարդիկ «օգնում են» երկու եւ աւելի անգամ: «Շատ մտահոգիչ են օգնողները: Եղել է դէպք, որ նոյն անձը մի քանի անգամ է օգնել: Մենք այդ խախտումը գրանցել ենք մատեանում: Ակնյայտ է, որ որոշ մարդիկ օգնութեան կարիք չունեն, նրանց ուղղակի վերահսկում են: Այդ դէպքերում փորձում ենք օգնել, պաշտպանել, որ մենակ ընտրեն, ակնոց ենք տալիս, բացատրում, որ այնուամենայնիւ մենակ մտնեն ընտրութեան», - պատմել է համար 80 միջնակարգ դպրոցում դիտորդութիւն իրականացնող Անի Յակոբեանը:

Քաղաքացի Դիտորդ նախաձեռնութեան գրանցած խախտումների մէջ մեծ թիւ են կազմում ընտրողին օգնելու կարգի խախտումները եւ ընտրութիւնը վերահսկելու դէպքերը: Իոաննիսեանի խօսքով՝ կէսօրի դրութեամբ տեղամասեր կային, որտեղ բոլոր ընտրողները քուէարկել են «օգնողի» հետ:

**Թաղային աւիչների եւ ոստիկանականների կուտակումներ**

Դաւիթաշէնի 05/01, 05/02, 05/03 ընտրատեղամասերը տեղակայուած են 93 համարի միջնակարգ դպրոցում: Այստեղ նոյնպէս նկատւում էր մարդկանց եւ մեքենաների կուտակում: Ընտրատեղամասի դրսում մեքենաներն այնքան շատ էին, որ արգելափակում էին այլ մեքենաների մուտքն ու ելքը: Նկատւում էին մեծ թուով ոստիկաններ, ինչը դիտորդները բացատրում էին նրանով, որ ընտրատարածքում ՀՀԿ-ից առաջադրուած է ոստիկանապետ Վլադիմիր Գասպարեանի փեսայ Արթուր Գէորգեանը: Ընտրատեղամասում կուտակման պատճառ էին նաեւ Երկրապահ կամաւորական միութեան Դաւիթաշէնի տարածքային բաժանմունքի ղեկավար Սարգիս Գրիգորեանն ու նրան ուղեկցող շքախումբը:

## ՕՀԱՆԵԱՆ-ՐԱՖՖԻ-ՕՍԿԱՆԵԱՆ ԴԱՇԻՆՔԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

1

Մենք նաեւ շնորհակալութիւն ենք յայտնում բոլոր այն ընտրողներին, որոնք քուէարկել են խղճի մտօք՝ անկախ նրանից, թէ որ ուժին են տուել իրենց ձայնը:

Վստահեցնում ենք, որ դաշինքում ներգրաւուած ուժերը շարունակելու են իրենց գործունէութիւնը յանուն Հայաստանի եւ նրա քաղաքացիների արժանապատիւ կեանքի:

Համոզուած ենք, որ այս մղձաւանջը երկար չի կարող շարունակուել, քանզի մեր երկիրն այնպիսի մարտահրաւէրների առաջ է կանգնած, որ մեծ շռայլութիւն է նման իշխանութիւններին պետութիւն վստահելը: Փոփոխութիւններն անխուսափելի են եւ մենք լինելու ենք այդ փոփոխութիւններին տանող գործընթացների առաջին շարքերում:

**ՕՀԱՆԵԱՆ-ՐԱՖՖԻ-ՕՍԿԱՆԵԱՆ ԴԱՇԻՆՔ**

## ԿՈՆԳՐԷՍ-ՅԺԿ ԴԱՇԻՆՔ. ԱՊՐԻԼԵԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՀԵՐՈՍՆԵՐՆ ԸՆԿԱՆ ՅԱՆՈՒՆ...

1

քանի օր առաջ, Լեռնային Ղարաբաղում տեղի ունեցաւ հանրաքուէ, որի ժամանակ բնակչութեան ճնշող մեծամասնութիւնը՝ 99,89 տոկոսը Ադրբէջանից ամբողջովին անկախանալու կողմ քուէարկեց:

Դրանից յետոյ սկսուեցին լայնամասշտաբ ռազմական գործողութիւններ, որոնց հետեւանքով Ադրբէջանը կորցրեց վերահսկողութիւնը Լեռնային Ղարաբաղի եւ նրան յարակից եօթ շրջանների նկատմամբ: 1994 թ.-ի Մայիսի 12-ին՝ զինադադարի մասին համաձայնագրի ուժի մէջ մտնելուց յետոյ հակամարտութեան գօտում դադարեցին ռազմական գործողութիւնները: Պատերազմի հետեւանքով երկու կողմից զոհուեց մօտաւորապէս 25-30 հազար մարդ եւ մօտ մէկ միլիոնը ստիպուած եղաւ լքել բնակավայրերը: Զինադադարի ռեժիմի մասին համաձայնութիւնը պահպանւում է մինչ այժմ: 1992 թ.-ից մինչ օրս ընթանում են բանակցութիւններ՝ հակամարտութեան խաղաղ կարգաւորման ուղղութեամբ՝ ԵԱՀԿ Մինսկի խմբի շրջանակում, որի համանախագահներն են ԱՄՆ-ն, Ռուսաստանը եւ Ֆրանսիան:

**ԽՈՅԵՐ**

# ԴԱՐՁԵԱԼ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐ

**ՅԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

2. ՀԱՅԿԱԿԱՆ ՁԱԽԻՆ ԲԱՑԱԿԱՅՈՒԹԻՒՆԸ

Երբ «հայկական ձախ» կ'ըսեմ, նկատի չունիմ յարմարուող ձախը՝ ընկերվարութեան գեղեցիկ նշանաբաններ առաջ նետած բայց ամբողջապէս աջակողմեան գործիքներ կիրառող, կամ համայնավարական մենախօսութիւններ բարձրաձայնած բայց գործադրութեան մեքանիզմներուն նկատմամբ բոլորովին անփոյթ խմբակցութիւնները: Այլ այն *իրական* ձախը, որ ունի գիտակցութիւնը դիմադրութեան եւ այլընտրանքներ առաջարկելու:

Վերջերս ունեցած հարցազրոյցի մը ընթացքին, արձակագիր, հրապարակագիր եւ խմբագիր Վահան Իշխանեան շեշտած է Հայաստանի դրամատիրական միաբեւեռութիւնը՝ զերծ որեւէ տեսակ ձախակողմեայ դիմադրութեան.

«Հայաստանում միայն կապիտալիզմն է աշխատում՝ իր բոլոր օրէնքներով ու զրօ դիմադրութեամբ: Իսկ որտեղ կապիտալիզմին դիմադրութիւն չկայ, առաջանում է աղէտ, աղքատութիւն, յուսահատութիւն, արտագաղթ:

«Վերջերս կարդում էի էկուադորի մասին. մինչեւ 90-ականների վերջ Հայաստանի պէս էր՝ կարծեմ երկու միլիոն մարդ էր արտագաղթել: Սոցիալիստները եկան իշխանութեան, երկրի իրավիճակը արմատապէս փոխուեց:

«Հայաստանն էլ աշխարհի մոդելն է. այստեղ էլ ռեսուրսներն ու փողը կուտակուած են մի փոքր խմբի՝ 5-10%-ի ձեռքում, մնացածն աղքատ են կամ աղքատանում են: Ուղղակի աշխարհի մի շարք երկրներում ձախ ուժերը կամ դիմադրում են կապիտալիզմին, ու, եկամուտներն առաւել արդար բաշխելով, տանելի ու նաեւ բարեկեցիկ պայմաններ ստեղծում բոլորի համար, կամ էլ իշխանութիւնը վերցնում են ու հաւասարութիւն հաստատում՝ ինչպէս Կուբայում, Վենեսուէլայում կամ Վիետնամում: [...]

«Հայաստանը միաբեւեռ է, միայն կապիտալիզմի բեւեռ, եւ ինչքան ուշ առաջանայ դիմադրութիւն կապիտալիզմին, այնքան լուծումները առաւել արմատական կը դառնան: Ինչքան ամուր է կապիտալիզմը, ինչքան դեմոկրատական փոխզիջում գոյութիւն չունենայ այլ դասակարգերի հետ, այնքան այդ ամրութեան դէմ կռիւը արիւնալի կը լինի: Այդ դիմադրութեան բացակայութիւնը առաջացրեց 1999թ.-ի «Հոկտեմբերի 27» եւ Սասնայ Ծռերի զինուած ապստամբութիւն:»(6)

Փետրուար 24-ին ելոյթ ունենալով Կենտրոն հեռատեսիլի կայանի *Հայկական Ուրբաթ* հաղորդաշարին մէջ՝ յատկացուած Ապրիլ 2-ի խորհրդարանական ընտրութիւններուն, բանաստեղծուհի Վիոլէտ Գրիգորեան կը շեշտէ *իրական* ձախ խմբակցութիւններուն բացակայութիւնը. «Ամբողջ հարցը դա է, որ միւս խմբերում չկայ էնպիսին, որի դու համարես՝ որ ասենք կը փոխուի հիմնարար մի գաղափարախօսութիւն: Ըստ էութեան, ամբողջը լիբերալ, շուկայական տնտեսութեան, ազատ տնտեսութեան, մրցակցութեան, կապիտալիզմի գաղափարն է:»

2012-ին ուսումնասիրելով ներկայ Հայաստանի կուսակցական կառուցուածքը, գիտնական ու մտաւորական Արամայիս Միրզախանեան կը ցուցադրէ բանուորներուն, ծառայողներուն եւ գիւղացիներուն շահերը պաշտպանող ձախին բացակայութիւնը.

«Հայաստանի քաղաքական կուսակցութիւնների բաշխումը «քաղաքական հարթութեան» վրայ, ըստ իս, սխալ է: Հարթութեան վրայ չեն երեւում կուսակցութիւնների գաղափարախօսութիւնն ու տնտեսական պլատֆորմը: Քաղաքականապէս կայացած ու զարգացած երկրներում կուսակցութիւնները բաժանւում են կենտրոնից (ցենտէր) աջ եւ կենտրոնից ձախ՝ ուղիղ գծի սանդղակի վրայ:

«Կենտրոնից աջ իրենց հաստատուն տեղն ունեն բուրժուական, փոքր ու մեծ կապիտալի շահերը պաշտպանող կուսակցութիւնները:

«Կենտրոնից ձախ նոյնպէս իրենց հաստատուն տեղն ունեն բանուորների, ծառայողների ու գիւղացիների շահերը պաշտպանող ձախ սոցիալիստական կուսակցութիւնները:

«Կուսակցութիւնների այս դասական բաշխումը ապահովւում է երկրի քաղաքական բալանսը (օրինակ՝ Ֆրանսիա, Գերմանիա, Շուեդիա եւ այլն):

«Հայաստանի կուսակցութիւններն իրենց գաղափարախօսութեամբ ու ըստ տնտեսական պլատֆորմի, ազատ շուկայական կապիտալի դիկտատուրայի պաշտպաններ են: Հայաստանի քաղաքական սանդղակի ձախ կողմը լիովին դատարկ է, ուստի խախտուած է երկրի հասարակական, տնտեսական, սոցիալ-ապահովութեան ու աշխատանքի իրաւունքների բալանսը: Այս դիսբալանսը երկրում տիրող բոլոր չարիքների աղբիւրն է:»(7)

Ինչպէս Միրզախանեան կը մեկնաբանէ, աջակողմեայ կուսակցութիւններու բանավէճերու հիմքը կը հանդիսանայ իրենց միջեւ եղած տարաձայնութիւնները, որոնք կը ստեղծեն ընդդիմութեան մը պատրանքը. «Սանդղակի աջ մասում գտնուող կուսակցութիւնները միջկուսակցական բանավէճերը ներկայացնում են որպէս ընդդիմութիւն եւ փակում են ձախ գաղափարախօսութիւն ունեցող ընդդիմութիւն կազմակերպելու ճանապարհը:»(8)

Մարքսիստ մտածող Մարգար Մելքոնեան կը նշէ՝ որ 2016-ի դրութեամբ Հայաստանի խորհրդարան մուտք գործած կուսակցութիւնները կը ծառայեն նէօլիպերալիզմին.

«[Անոնք] կրնան ինքզինքնին նկարագրել իբրեւ ազատականներ, պահպանողականներ, ազգայնականներ, կամ այս բառերուն որեւէ զուգադրութիւններ, բայց երբ կարգը կու գայ իրական քաղաքականութիւններու եւ գործադրութիւններու, այս կուսակցութիւններուն իւրաքանչիւրը կը փորձէ խրախուսել Հայաստանի մեծ դրամատէրերուն այս կամ այն հատուածը: Եւ Հայաստանի ԻԱ. դարու բնաբանին մէջ, ասիկա կը նշանակէ նեցուկ կանգնիլ նէօլիպերալիզմին:»(9)

Ապա Մելքոնեան կ'անդրադառնայ ձախը չահաբեր խաղաթուղթ ընդունած բայց իրականութեան մէջ նէօլիպերալիզմի գիծը գործադրող խմբակցութեան մասին(10):

Ան կը բացատրէ նաեւ, թէ իրական ձախի բացակայութեան հետեւանքով ճնշուած է ժողովրդական լայն խաւերու ձայնը եւ անձայնացած անոնց շահերը պաշտպանող արհմիութիւնները.

«Հայաստան՝ դրամատիրական իշխանութեամբ քայքայուած երկիր մը, պէտք ունի նախաձեռնող արհմիութիւններու: Բայց ո՞ւր են անոնք: Արհմիութիւնների Կոնֆեդերացիան քիչ ազդեցութիւն ունի մասնաւոր հատուածի [private sector] վրայ, ուր տեղի կ'ունենան վատագոյն չարաշահումները: Երբ Քիմպրոմ եւ Նաիրիտ քիմիական գործարանները կը յաջողին ամիսներ շարունակ չվճարել աշխատաւորներուն աշխատավարձքը եւ անվնաս դուրս գալ անկէ, անոնք բարձրաձայն կերպով յայտարարած կ'ըլլան՝ թէ Հայաստանի մէջ աշխատավարձք ստացողները իրաւունք չունին ակնկալելու նոյնիսկ իրենց ամենահիմնական աշխատաւորական իրաւունքները: Արդիւնաբերութեան հրամատարները անձամբ կը սորվեցնեն Հայաստանի աշխաւորներուն՝ որ եթէ իրենց երեխաներուն եւ աշխատաւոր գործընկերներուն համար կը ցանկան աւելի լաւ ապագայ, անոնք պէտք է աւելի լաւ կազմակերպեն պայքարը դասակարգի գիծերուն ընդմէջէն: Ուրիշ երկիրներու մէջ, նման ծայրագոյն չարաշահումներու ենթարկուող աշխատաւորները գրաւած են գործարաններ, հանքեր եւ գրասենեակներ եւ զանոնք գործադրութեան դրած իրենց սեփական շահերուն ի նպաստ:»(11)

Արհմիութիւններու գոյութեան մասին անտեղեակ է աշխատաւորութեան մեծամասնութիւնը: Խօսքը Մարգար Մելքոնեանին եւ Հրանտ Գադարիկեանին.

«Երեւանի մէջ մատուցողուհիի մը կամ սուփերմարքէթի գործակատարի մը հարցուցէք եթէ երբեւէ ինք եւ իր գործընկերները արհմիութեան մը անդամ եղած են: Դատելով մեր փորձառութենէն, ան կա՛մ շշմած պիտի նայի քեզի եւ կա՛մ պիտի վրդովի՝ կարծէք իրեն հաղորդած ըլլաք իր աշխատավայրին մէջ մկնատամի համաճարակի մասին:

«Հայաստանի բազմաթիւ աշխատավարձք ստացողներ, յատկապէս երիտասարդները, տեղեակ չեն ինչ կը նշանակէ արհմիութիւն: Ասիկա զարմանալի կրնայ հնչել սովորական դիտորդի մը համար՝ որ ծանօթացած է Հայաստանի Հանրապետութեան գործազրկութեան, ցած աշխատավարձքներու, ստիպողական յաւելեալ ժամերու եւ սոսկալի աշխատանքային ապահովութեան փաստերուն հետ:»(12)

Ձախի բացակայութիւնը Հայաստանի մէջ համատարած է: Այնտեղ չկայ ձախի հաւանաբար ամենահանճարեղ մտածողը՝ Քարլ Մարքս: Թէեւ ամէն տեղ կը խօսուի մարդու իրաւունքներու ոտնահարումներու եւ մարդկային շահագործումի մասին, խօսք անգամ չկայ՝ թէ այս բոլորին մեկնաբանութիւնները եւ լուծումները շատոնց տուած էր Մարքս: Մշակութաբան Վարդան Ազատեան 2012-ին լաւագոյն կերպով կը համառօտագրէ այս կէտը.

«Այսօր Հայաստանում Մարքս հրատարակելն առնուազն անպատեհ, եթէ չասենք անհեթեթ է թւում: «Մարքսը» հայաստանեան ներկան սահմանող ու հետապնդող մի ուրուականի անունն է: Ծանրաբեռնուած Խորհրդային ամբողջատիրութեան փորձից բխող բացասական ներիմաստներով, «Մարքսը» շարունակում է բացասականօրէն իր գործուն ազդեցութիւնն

4

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ԳԱՀԻՐԷ



## 2 ԳԱԳԻԿ ԾԱՌՈՒԿԵԱՆ ԿԱՄ Ի՞ՆՉՊԷՍ ՍՏԵՂԾԵԼ ՏԻՊԱՐ ՀԱՅՐԵՆԱՍԷՐԻ ՊԱՏԿԵՐԸ


չհրապարակեց. Ծառուկեանի դէմ գերմանացի ներդրողի գործի քննութիւնը վերսկսւում է», *Հետք*, 7 Դեկտեմբեր 2012, http://hetq.am/arm/news/21350/datavory-vtchiry-chhraparakec-tsarukyani-dem-germanaci-nerdroxi-gortsi-qnnutyuny-versksvum-e.html:

25. Քրիստինէ Աղալարեան, «Գերմանացի ներդրողը յոյս ունի, որ Ծառուկեանի դէմ դատարանը կը կայացնի արդարացի վճիռ», *Հետք*, 22 Յունուար 2013, http://hetq.am/arm/news/22571/germanaci-nerdroxy-huys-uni-or-tsarukyani-dem-datarany-kkayacni-ardaraci-vtchir.html:

26. «Դատաւոր Արայիկ Մելքումեանը չի կողմնորոշւում. Ծառուկեանի դէմ վճիռ կայացնե՞լ, թէ՞ ոչ», *Հետք*, 7 Փետրուար 2013, http://hetq.am/arm/news/23088/datavor-arayik-melqumyany-chi-koxmnoroshvum-tsarukyani-dem-vtchir-kayacnel-te-och.html:

27. Քրիստինէ Աղալարեան, «Դատաւոր Մելքումեանը 3-րդ անգամ յետաձգեց Ծառուկեանի դէմ գերմանացի ներդրողի գործով վճռի հրապարակումը», *Հետք*, 21 Փետրուար 2013, http://hetq.am/arm/news/23649/datavor-melqumyany-3-rd-angam-hetadzgec-tsarukyani-dem-germanaci-nerdroxi-gortsov-vtchri-hraparakumy.html:

28. Քրիստինէ Աղալարեան, «Դատաւոր Մելքումեանը վճիռը հրապարակել է, բայց կողմին չի տրամադրել»), *Հետք*, 19 Մարտ 2013, http://hetq.am/arm/24590/datavor-melqumyany-vtchiry-hraparakel-e-bayc-koxmin-chi-tramadrel.html:)

29. Քրիստինէ Աղալարեան, «Գագիկ Ծառուկեանը գերմանացի ներդրողին պէտք է 14.8 մլն դրամ փոխհատուցի», *Հետք*, 27 Մարտ 2013, http://hetq.am/arm/news/24877/gagik-tsarukyany-germanaci-nerdroxin-petq-e-148-mln-dram-pokhhatuci.html:

30. Քրիստինէ Աղալարեան, «Գերմանացի ներդրողը դատարանի վճիռն անտրամաբանական եւ ծիծաղելի է համարում», *Հետք*, 2 Ապրիլ 2013, http://hetq.am/arm/news/25023/germanaci-nerdroxy-datarani-vtchirn-antramabanakan-ev-tsitsaxeli-e-hamarum.html:

31. Քրիստինէ Աղալարեան, «Գերմանացի ներդրողն ուզում է զուտ իրաւական վէճ տեսնել Ծառուկեանի դէմ գործում. նա բողոքարկում է վճիռը», *Հետք*, 22 Ապրիլ 2013, http://hetq.am/arm/news/25746/germanaci-nerdroxn-uzum-e-zut-iravakan-vetch-tesnel-tsarukyani-dem-gortsum-na-boxoqarkum-e-vtchiry.html:

32. Քրիստինէ Աղալարեան, «Վերաքննիչում սկսուել է Գագիկ Ծառուկեանի դէմ գերմանացի ներդրողի բողոքի քննութիւնը», *Հետք*, 14 Յունիս 2013, http://hetq.am/arm/news/27390/veraqnnichum-sksvel-e-gagik-tsarukyani-dem-germanaci-nerdroxi-boxoqi-qnnutyuny.html:

33. Քրիստինէ Աղալարեան, «Նշանակութիւն չունի, թէ ում մօտ ինչ բաժնետոմս կ'առաջանայ. քննւում է գերմանացի ներդրողի բողոքն ընդդէմ Ծառուկեանի», *Հետք*, 28 Յունիս 2013, http://hetq.am/arm/news/27731/nshanakutyun-chuni-te-um-mot-inch-bazhnetoms-karajana-qnnvum-e-germanaci-nerdroxi-boxoqn-ynddem-tsarukyani.html:

34. Քրիստինէ Աղալարեան, «Վերաքննիչում աւարտուեց գերմանացի ներդրողի բողոքի քննութիւնն ընդդէմ Ծառուկեանի», *Հետք*, 12 Յուլիս 2013, http://hetq.am/arm/news/28082/veraqnnichum-avartvec-germanaci-nerdroxi-boxoqi-qnnutyunn-ynddem-tsarukyani.html:

35. Քրիստինէ Աղալարեան, «Վերաքննիչը մասնակիօրէն բաւարարել է Ծառուկեանի գործարանի դէմ գերմանացի ներդրողի բողոքը», *Հետք*, 28 Յուլիս 2013, http://hetq.am/arm/news/28416/veraqnnichy-masnakioren-bavararel-e-tsarukyani-dem-germanaci-nerdroxi-boxoqy.html:

36. Քրիստինէ Աղալարեան, «Գերմանացի ներդրողները Եւրադատարան են դիմում Գագիկ Ծառուկեանի կոմբինատի դէմ», *Հետք*, 8 Նոյեմբեր 2013, http://hetq.am/arm/news/30550/germanaci-nerdroxnery-evradataran-en-dimum-gagik-tsarukyani-kombinati-dem.html:

37. Քրիստինէ Աղալարեան, «Գերմանացի ներդրողը Ծառուկեանի կոմբինատի դէմ վճռաբեկ բողոք է ներկայացրել», *Հետք*, 3 Հոկտեմբեր 2013, http://hetq.am/arm/news/ 29809/germanaci-nerdroxy-tsarukyani-kombinati-dem-vtchrabek-boxoq-e-nerkayacrel.html:

38. Քրիստինէ Աղալարեան, «Գերմանացի ներդրողները Եւրադատարան են դիմում Գագիկ Ծառուկեանի կոմբինատի դէմ»:


## 3 ԴԱՐՁԵԱԼ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐ

ունենալ մեր այսօրը կառուցելու եւ ըմբռնելու գործում. «Մարքսը» հայաստանեան ներկայի նեգատիւի անունն է: *Զաւեշտալի չէ՞ արդեօք, որ այսօր իւրաքանչիւր հայաստանցու առերեւած գերխնդիրը՝ հասարակական անարդարութիւնն իր ամենատարբեր դրսեւորումներով, եղել է հէնց այն հարցը, որն ըմբռնելու եւ յաղթահարելու գործում թերեւս մեծագոյն ներդրումը պատկանում է մի մարդու, ում անունն իսկ տալը այսօր անհեթեթ է թւում:*» (ընդգծումը իմս է, Հ.Ա.)(13)

Ընդհանրապէս, ձախի գաղափարականութիւնն է որ այսօր կը պակսի Հայաստանի մէջ: Առանց այդ գաղափարականութեան, մարդու չահագործումները դեռ երկար պիտի շարունակուին: Պիտի շարունակուին, նոյնիսկ եթէ սփիւռքը իր ոչ-աւանդական կազմով մտնէ Հայաստան, առանց տիրապետելու դիմադրութեան միջոցներուն եւ փորձելու օգտուիլ ձախի դիմադրական գաղափարական ու գործադրական փորձառութենէն:

«Հայաստանի քաղաքական ու տնտեսական առողջացումը կը սկսի այն ժամանակ, երբ աշխատաւորների դասակարգը կ'ուժեղացնի ու կը ստեղծի իր շահերը պաշտպանող կուսակցութիւններն ու արհմիութիւնները, եւ կը զբաղեցնի սանդղակի ձախ կողմը, կատարելով իր պատմական առաքելութիւնը», կ'եզրակացնէ Արամայիս Միրզախանեան(14):

(Վերջ 2)

ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ


6. Անուշ Քոչարեան, «Վահան Իշխանեան. «Խնդրեմ, ինչքան կ'ուզէք ատէք՝ ես ռուսուլման եմ»», *Հետք*, 17 Մարտ 2017, http://hetq.am/arm/news/76782/vahan-ishkhanyan%E2%80%A4-khndrem-inchqan-kuzeq-ateq-es-rusulman-em.html:

7. Արամայիս Միրզախանեան, «Առանց ձախ գաղափարախօսութիւն ունեցող կուսակցութիւնների՝ Հայաստանի քաղաքական համակարգը կայունացնել հնարաւոր չէ», *Հետք*, 17 Յուլիս 2012, http://hetq.am/arm/news/16675/aranc-dzakh-gaxaparakhosutyun-unecox-kusakcutyunneri-hayastani-qaxaqakan-hamakargy-kayunacnel-hnaravor-che.html:

8. Անդ:

9. Markar Melkonian, 'Armenia's Opposition Parties: Same Old Same Old', *Hetq*, 2 October 2016, http://hetq.am/eng/news/71346/armenias-opposition-parties-same-old-same-old.html:

10. Անդ:

11. Markar Melkonian, 'Armenia: Where is Our "Left"?', *Hetq*, 17 June 2016, http://hetq.am/eng/news/68626/armenia-where-is-our-left.html:

12. Markar Melkonian and Hrant Gadarigian, 'Defending Armenia's Workers - Is Class Struggle on the Agenda?', *Hetq*, 10 September 2016, http://hetq.am/eng/news/70633/defending-armenias-workersis-class-struggle-on-the-agenda.html:

13. Կարլ Մարքս, «Ապրանքի ֆետիշային բնոյթն ու նրա գաղտնիքը», Վարդան Ազատեանի նախաբանը, *Ռեւիզոր*, 5 Յունիս 2012, http://www.arteria.am/hy/1338896138:

14. Արամայիս Միրզախանեան, «Առանց ձախ գաղափարախօսութիւն ունեցող կուսակցութիւնների՝ Հայաստանի քաղաքական համակարգը կայունացնել հնարաւոր չէ (մաս 2)», *Հետք*, 22 Յուլիս 2012, http://hetq.am/arm/news/16834/aranc-dzakh-gaxaparakhosutyun-unecox-kusakcutyunneri-hayastani-qaxaqakan-hamakargy-kayunacnel-hnaravor-che-mas-2.html:

ՉԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع
TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1788 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 13 ԱՊՐԻԼ 2017 ՀԱՏԸ ԶԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٧٨٨ الخميس ١٣ أبريل ٢٠١٧

# ՍԻՆ ԽՈՍՏՈՒՄՆԵՐ

**ՈՍԿԱՆ ՄԽԻԹԱՐԵԱՆ**

Համաշխարհային առաջին պատերազմի աւարտին, Լօզանի տխրահռչակ դաշնագրով արդէն վերջ տրուած էր Արեւելեան Հարցին եւ յօդս ցնդած՝ հայ ժողովուրդի բոլոր երազանքները Արեւմտահայաստանի եւ Կիլիկիոյ վերաբերեալ: Հայ ժողովուրդին տրուած բոլոր խոստումները մնացին թուղթի վրայ եւ մեզի կը պակսէր «երկաթեայ չերեփը»՝ մեր բաժինը ստանալու համար միջազգային քաղաքականութեան խոշոր կաթսայէն: Բոլորն ալ լքեցին մեզ որբ ու մինակ: Ամերիկայի Միացեալ Նահանգներու յաջորդական իշխանութիւնները տէր չկանգնեցան մեր արդար դատին, հակառակ նախագահ Վուտրօ Ուիլսընի (Woodrow Wilson) խոստումներուն: Հետեւաբար հարց տանք թէ ինչի՞ կը ծառայէ ցեղասպանութեան ճանաչման համար մեր թափած աշխատանքները, երբ նոյն այդ պետութիւնները չունին պարկեշտութիւնն ու քաջութիւնը ընդունելու իրենց անցեալի սխալները, նամանաւանդ Ամերիկան, որ այսքան ատենէ ի վեր կը մերժէ ճանչնալ ցեղասպանութիւնը որպէս միջազգային կանխամտածուած ոճիր հայ ժողովուրդի դէմ, իրագործուած՝ Թուրք պետութեան կողմէ: Եւ այս բոլորէն ետք կրնա՞յ ըլլալ, որ ան պիտի համաձայնի, որ քրիստոնէական եկեղեցիները իրենց սեփականտէրերուն վերադարձուին: Կարելի՞ է այսքան միամիտ ըլլալ: Ե՞րբ պիտի փարատենք մեր մանկամիտ պատրանքը:

Դժբախտութիւնը շարունակուեցաւ, երբ դաշնակից պետութիւնները, ներառեալ Միացեալ Նահանգները, Լօզանի տխրահռչակ դաշնագրէն ետք չկրցան գործադրել Սեւրի դաշնագրի տրամադրութիւններն ալ, եւ որպէս տխուր հետեւանք՝ Արեւմտահայաստանը դադրեցաւ քաղաքական խնդիր ըլլալէ: Յաղթական դաշնակից պետութիւններու համար պատերազմը աւարտած էր եւ Թուրքիան կրնար անգամ մը եւս փայփայել իր «կայսրութիւն» դառնալու Օսմանեան ցանկութիւններն ու երազանքները:

Թուրք պետութեան դէպի Արեւելք եւ Արեւմուտք ընդարձակուելու ցանկութեան արդիւնքն են Յունական կղզիներու հարցը, Հիւսիսային Կիպրոսի գրաւումը, Սուրիոյ սահմաններու բռնաբարումը, Իրաքեան սահմանէն ներս ռազմական գործողութիւնները, Ատրպէյճանական քարոզչական վարչամեքենային հետ իր համագործակցութիւնը, եւ պատերազմական մասնագէտներով ու զինուորներով իր անսահման մասնակցութիւնը՝ Արցախեան պատերազմին:

Գաղտնիք չէ նաեւ, թէ հակառակ իր բոլոր ընկերային եւ հասարակական փտութեան, Թուրքիա կը փորձէ նաեւ անդամակցիլ Եւրոպական Միութեան որպէս «քաղաքակիրթ» երկիր: Պարզապէս կարելի է ըսել որ թրքական խորամանկութեամբ եւ պատեհապաշտութեամբ ան կը ցանկայ ընդարձակել իր ազդեցութիւնը որպէս Նաթոյի մէկ անդամը, իր աւելի քան մէկ միլիոն կազմ ու պատրաստ բանակով: Հետեւաբար կարելի է յայտարարել, թէ Թուրքիա միջոցներու մէջ երբեք խտրութիւն չի դներ եւ չէ դրած հասնելու համար Օսմանեան կայսրութիւնը վերականգնելու իր ցնորածին ախորժակներուն ու երազանքներուն իրականացման:


Ոսկան Մխիթարեան

Թրքական այս ծաւալուն ախորժակներուն դիմաց ի՞նչ կ'ընեն Եւրոպական Միութեան անդամները, եւ մանաւանդ Ամերիկայի Միացեալ Նահանգները: Միջազգային ոյժերու փոխյարաբերութեան եւ ընդհանրապէս միջազգային ներկայ իրականութեան մէջ, ազգային ազատագրական պայքարները - մասնաւորաբար Քրտական հարցը - կը դիտուին բացառապէս սեփական շահերու անկիւնէն միայն: Նման հարցերու մէջ, գերպետութիւններու համար միջազգային դրամատիրութեան յարուցած առաջադրանքներու նպատակայարմարութիւնն է, որ կը ճշդէ անոնց կեցուածքը: Այլ խօսքով՝ գերպետութիւնները իրենց սեփական շահով եւ զիրենք հետաքրքրող ծրագիրներու իրականացման կշռոյթով է որ կը ղեկավարուին: Դժբախտաբար այս բոլորը իրենց անդրադարձը կ'ունենան մասնաւորաբար փոքր ժողովուրդներու ճակատագրին եւ կեանքի ընթացքին վրայ:

Փոխյարաբերութիւններու այս մթնոլորտին մէջ, հայապատկան հողերու պահանջատիրութեան որեւէ քայլի դիմաց՝ թէ՛ Թուրքիան եւ թէ՛ զինք հովանաւորող «քաղաքակիրթ» երկիրները, ի մասնաւորի Ամերիկայի Միացեալ Նահանգները, հայ ժողովուրդի արդար իրաւունքը պաշտպանելու եւ պահանջելու փոխարէն, Թուրքիոյ հողային ամբողջականութիւնը կը ջատագովեն, ելլելով իրենց պետական շահերէն: Ահաւասիկ այս մօտեցումն է, որ հակամարտութեան դաշտը կը խորացնէ եւ յեղափոխական շարժման կը մղէ ճնշուած եւ անիրաւուած ժողովուրդները:

Վերեւ յիշատակուած ծիրին մէջ նամանաւանդ ներկայ հանգրուանին յատուկ կարեւորութիւն կը ներկայացնէ քրտական հարցը: Դժբախտաբար մինչեւ այսօր քրտական մարտական ոյժերու անմիաբանութիւնն ու անոնց միջեւ գործակցութեան պակասը աննշան յաջողութիւններու հասցուցած է զիրենք: Գիտակցելով հանդերձ ներկայ իրական պայմաններու անփառունակ վիճակին, պէտք է իմանանք որ Հայկական հարցը Թուրքիոյ մէջ այն աստիճան հիւսուած է Քրտական հարցին հետ, որ հայ-քրտական ծրագրուած եւ հաւասարակշռուած գործակցութիւն մը միայն կրնայ շահ ապահովել երկու կողմերուն:

Եւ որպէսզի յիշատակուած գործակցութիւնը իր գործնական արտայայտութիւնն ու ուժականութիւնը ունենայ հայ կեանքի ☞ 3

**ՀԱՅԱՍՏԱՆ**

# ՈՐՔԱՆ ՄԱՐԴ ԱՐՏԱՔԱՂԹԱԾ Է ՀԱՅԱՍՏԱՆԷՆ ՎԵՐՋԻՆ ԵՐԵՔ ՏԱՐԻՆԵՐՈՒՆ

Հայաստանէն գաղթի հոսքերը ընդհանուր առմամբ նուազած են, սակայն աճած է անվերադարձ մեկնողներու թիւը: Այս մասին լրագրողներու հետ հանդիպումին նշած է Վերադարձ եւ Պաշտպանութիւն սոցիալ-իրաւական ՀԿ նախագահ Տաթեւիկ Բէժանեան: Ան ներկայացուցած է վերջին երեք տարիներուն արտագաղթի եւ ներգաղթի տուեալները՝ ըստ իրենց հետազօտութեան, խօսած է փոխանցումային հոսքերու նուազումի պատճառներուն եւ հետեւանքներուն մասին:

Ըստ իրեն, գաղթի տեղաշարժի մէջ մեծ տոկոս կազմած է երկարաժամկէտ աշխատանքային գաղթի համար մեկնողներուն եւ անվերադարձ մեկնողներուն թիւը:

«Տարեկան կտրուածքով՝ երկրից անվերադարձ հեռանում է 35 հազար մարդ, սակայն 2016 թուականին անվերադարձ մեկնողների թիւը դարձաւ 37 հազար: Նրանց 47 տոկոսը կազմում են աշխատանքային միգրանտները, իսկ մնացածը՝

53 տոկոս: Միտում է նկատւում նաեւ բարձր որակաւորում ունեցող մասնագէտների արտահոսքի: Յուսադրող չեն տուեալները, քանի որ միտումը ցոյց է տալիս, որ կարող է կրկնուել 90-ականների սկզբի իրականութիւնը, այսինքն՝ ուղեղների արտահոսք», - նշած է Բէժանեան:

Իր հաւաստումով՝ Հայաստանէն աշխատանքային գաղթողներու հիմնական հոսքը կ'ըլլայ դէպի Ռուսաստան: Ըստ որուն՝ վերջին տարիներուն աշխատանքային գաղթողներու հոսքը նուազած է, որ պայմանաւորուած է ոչ թէ Հայաստանի ընկերային-տնտեսական վիճակի բարելաւումով, այլ Ռուսաստանի տնտեսութեան թուլացումով: Բէժանեանի խօսքով՝ ընդհանուր գաղթի տարիքը 25-54 տարեկանն է, այսինքն՝ վերարտադրողական տարիքը:

«Միգրացիոն հոսքերի նուազումը բերել է տրանսֆէրթների նուազման, ինչը նոյնպէս պայմանաւորուած է արտաքին գործօններով՝ Ռուսաստանի տնտեսութիւնը վերջին տարիներին վատթարացել է, ռուբլու կուրսն ընկել է: Նուազել են նաեւ առողջապահութեան եւ կրթութեան վրայ ծախսուող գումարները», - ընդգծած է Տաթեւիկ Բէժանեան, աւելցնելով՝ որ փոխանցումներու 80 տոկոսը թախսուած է կենցաղային խնդիրներու համար:

# «ՀԱՅԱՍՏԱՆ ԵՒ ԵԳԻՊՏՈՍ» ՇԱՐՔԸ ՆՈՒԻՐՈՒԱԾ Է ՀԲԸՄ-Ի ՀԻՄՆԱԴԻՐՆԵՐՈՒՆ, ՈՐՈՆՔ ԿԸ ՍԵՐԻՆ ԵԳԻՊՏՈՍԻ ՍՓԻՒՌՔԷՆ

ՀԲԸՄ-ի 111-րդ տարելիցին առնչութեամբ, ինչպէս նաեւ Հայաստանի եւ Եգիպտոսի միջեւ 25 տարուայ դիւանագիտական յարաբերութիւններու ձեւաւորումին առիթով, ՀԲԸՄ Հայաստանը կը ներկայացնէ *ՀԲԸՄ ցուցահանդէսներ* շարքէն «Մշակութային երկխօսութիւն. ՀԲԸՄ տօնակատարութիւն» ցուցահանդէսը, որ բաց պիտի մնայ Երեւանի ՀԲԸՄ-ի մասնաճիւղին մէջ մինչեւ Յունիս 4:

«Մշակութային երկխօսութիւն»-ը համընդհանուր լուսանկարչական արուեստի ծրագիր մըն է, որ վերջին վեց տարիներուն կ'իրականանայ շնորհիւ արուեստագիտուհի Տաթեւ Մնացականեանի նախաձեռնութեան: Ծրագիրը կը ներառնէ սփիւռքի հայ արուեստագէտներու կեանքին ու արուեստին յարգանքի տուրք մատուցող շարք մը լուսանկարչական դիմանկարներ: «Հայաստան եւ Եգիպտոս» շարքը խորհրդանշական է եւ նուիրուած է ՀԲԸՄ-ի հիմնադիրներուն, որոնք կը սերին Եգիպտոսի սփիւռքէն:

Իբրեւ երկխօսութիւն՝ որ կ'ենթադրէ մշակութային փոխանակում, Տաթեւ կ'ընդգծէ՝ թէ իւրաքանչիւր արուեստագէտ կրած է հիւրընկալ համայնքին ազդեցութիւնը, միաժամանակ նպաստելով այդ երկիրի մշակոյթի զարգացումին:

Տաթեւի լուսանկարները նպատակ ունին ցոյց տալ, որ ստեղծագործական գործունէութիւնը միջմշակութային փոխանակումի արդիւնք է: Տաթեւի դիմանկարային աշխատանքները կ'ընդգրկեն ականաւոր արուեստագէտներ՝ որոնք այսօր այլեւս բաժնուած են մեզմէ: Յիշատակումի ոգեկոչումով, որ ողջ հայութեան համար առաւել ցայտուն կը դառնայ Ապրիլին, արուեստագիտուհին կը փափաքի իր աշխատանքներուն միջոցով մեծարել անոնց կեանքը, ներդրումներն ու թողած ժառանգութիւնը, որոնք անխուսափելիօրէն միահիւսուած են մեր պատմական եւ ժամանակակից մշակութային ինքնութեան հետ:

# ԳԱԳԻԿ ԾԱՌՈՒԿԵԱՆ ԿԱՄ Ի՞ՆՉՊԷՍ ՍՏԵՂԾԵԼ ՏԻՊԱՐ ՀԱՅՐԵՆԱՍԷՐԻ ՊԱՏԿԵՐԸ

Հ. ԱՒԱԳԵԱՆ

### 3. ԽԱՂԱՏՈՒՆԵՐՈՒ ՄԵՆԱՏԻՐՈՒԹԻՒՆ

Մենատիրութիւնը (monopoly) կը հանդիսանայ դրամատիրութեան ամենաարդիւնաւէտ միջոցներէն մէկը հասնելու գերհարստութեան:

2010-ին Հրանտ Բագրատեան կը գրէր. «Արդէն որերորդ տարին է, Երեւանում գազալիցքաւորուել կարելի է միմիայն Գ. Ծառուկեանի Մուլտի Գրուպին պատկանող գազալցման կայաններում:»(39)

«Ծառուկեանին է պատկանում ալկոհոլի տեղական արտադրութեան մեծ մասը՝ հիմնաւորապէս Երեւան/Նոյ կոնեակի եւ գինու գործարանի միջոցով՝ չնայած այն բանին, որ մրցակիցը՝ ֆրանսիական կոնգլոմերատի պատկանող Արարատ կոնեակի գործարանն ամբողջովին անկախ է», կը գրէ Ուիքիլիքս 2009-ին(40):

Մենատիրութեան արդիւնքն են Գագիկ Ծառուկեանի խաղատուները (քազինօ), որոնք իրեն կ'ապահովեն հսկայական եկամուտ:

Մինչ Ծառուկեան կը ձեռնարկէր իր առաջին խաղատան՝ Փարաւոնի կառուցումը, ան պէտք է ամէն գնով ապահովէր մենատիրութիւնը խաղատնային ասպարէզին մէջ: Սերժ Սարգսեանի կառավարութիւնը կ'ընդունի օրէնք՝ ըստ որուն խաղատուն կամ շահումով խաղ կարելի է գործել միայն Ծաղկաձոր, Ջերմուկ, Սեւան քաղաքներուն մէջ, Զուարթնոց օդանաւակայանի ու Երեւան Ազատ Տնտեսական Գօտիի տարածքները: Իսկ Երեւանէն դուրս գտնուող յարակից տարածքներուն խաղատուներ բանալ եւ շահումով խաղեր կազմակերպել կրնան միայն այն գործարարները որոնք կը ներդնեն 40 միլիառ դրամ, անշուշտ կառավարութեան թոյլտուութեամբ: Այս օրէնքը ուժի մէջ կը մտնէ 2014 Յունուար 1-ին եւ կը գործէ մինչեւ այսօր(41): Եւ քանի որ Երեւանի բոլոր խաղատուներուն ներդրումը 40 միլիառէն պակաս է, անոնք պէտք է փոխադրուին յիշեալ չորս քաղաքները: Ծառուկեան, ըլլալով միակը որ ընդունակ է 40 միլիառէն աւելի ներդրում կատարել, պիտի դառնայ խաղատուներու արքայ: Ուղղակի Ծառուկեանի համար չափաձեւուած օրէնք մը:

Մարինէ Խառատեան կու տայ մանրամասնութիւններ.

«Այսպիսով՝ Փարաքարի կազինոները կը փակուեն, սակայն ուրախանալու առիթ քիչ կայ. դրանց փոխարէն կը գործեն Երեւանից քիչ հեռու գտնուող Ծառուկեանի կազինոները: Եւ ինչպէս փակուած կազինոների տէրերն են պնդում, կազինոների մոնոպոլիան կ'անցնի մէկ հոգու՝ Գագիկ Ծառուկեանին:

«Ընդ որում՝ կազինոների ոլորտում մենաշնորհային դիրքը Գագիկ Ծառուկեանին կարծես շնորհում է հէնց Սերժ Սարգսեանը: Անցեալ տարուայ [2013] վերջին Ազգային Ժողովում ներկայացուեց Սերժ Սարգսեանի առարկութիւնը՝ կապուած «Պետական տուրքի» եւ «Շահումով խաղերի ու խաղատների մասին» օրէնքներում վերջերս կատարուած փոփոխութիւնների հետ: Այդ փոփոխութիւնների հեղինակը հանրապետական պատգամաւոր, ԱԺ տնտեսական հարցերով մշտական յանձնաժողովի նախագահ Վարդան Այվազեանն էր: Վերջինս առաջարկել էր թոյլատրել խաղային ապարատները շահագործել նաեւ Երեւան քաղաքի շրջակայքում: Նրա մէկ այլ առաջարկութեամբ Երեւանում եւ Երեւանի շրջակայքում 40 միլիարդ դրամի ներդրում ունեցող խաղատան դէպքում պետական տուրքը սահմանել 2 միլիարդ 850 միլիոն դրամ:

«Վ. Այվազեանի այս օրինագիծն ընդունուել էր ԱԺ քառօրեայի ժամանակ, որից յետոյ ուղարկուել էր Ս. Սարգսեանի վաւերացմանը: Վերջինս, սակայն, այդ նոյն փոփոխութիւններն իր առարկութիւններով եւ առաջարկութիւններով ետ էր ուղարկել ԱԺ: Ս. Սարգսեանը չէր ընդունել Վ. Այվազեանի այն առաջարկութիւնը, որ խաղային ապարատները պէտք է շահագործուեն նաեւ Երեւանի յարակից շրջաններում՝ Եղուարդում, Փարաքարում եւ Ջրվէժում գտնուող խաղատներում: Ս. Սարգսեանը չէր ընդունել նաեւ Վ. Այվազեանի առաջարկով խաղատների համար սահմանուած 2 միլիարդ 850 միլիոն դրամ տուրքը՝ առաջարկելով այն բարձրացնել եւ դարձնել 4,5 միլիարդ դրամ:»(42)

Սամուէլ Աւագեան եւս կը հաստատէ Ծառուկեանի մենատիրութիւնը.

Ըստ «Շահումով խաղերի եւ խաղատների մասին» օրէնքին, «2014թ. յունուարի 1-ից բոլոր կազինոները, շահումով խաղ կամ անմիջականօրէն (խաղասրահի միջոցով) ինտերնէտ շահումով խաղ կազմակերպողներն իրենց բիզնէսը պէտք է հանեն Երեւանից ու միւս բնակավայրերից, բացառութեամբ՝ Ծաղկաձորից, Սեւանից, Ջերմուկից, Մեղրիից: Բացառութիւն է արուած նաեւ Զուարթնոց օդանաւակայանի համար: Բայց կայ նաեւ երկրորդ բացառութիւնը՝ եթէ ներդրումների արժէքը գերազանցում է 40 միլիարդ դրամը, ապա ՀՀ կառավարութիւնը կարող է թոյլ տալ կազինօ կառուցել նաեւ այլ վայրերում, որոշակի չափորոշիչների բաւարարելու պայմանով:

«[...] Այսպիսով, յունուարի 1-ից բոլոր միւս կազինոները դուրս պէտք է բերուեն Երեւանից ու դրա շրջակայքից, քանի որ դրանցից ոչ մէկը 40 միլիարդ դրամի ներդրում չի կատարել ու չի դիմել կառավարութիւն թոյլտուութիւն ստանալու համար:»(43)

Իսկ Մուսայ Միքայէլեան կը գրէ *Ժամանակի* մէջ.

«Բարգաւաճ Հայաստան կուսակցութեան նախագահ Գագիկ Ծառուկեանը երէկ [30 Հոկտեմբեր 2014] յետհանրահաւաքային հարցազրոյց է տուել, ուրեղ ի թիւս հոկտեմբերի 10-24-ի հանրահաւաքների, նաեւ դրանից յետոյ ստեղծուած իրողութիւնների ու երկրում առկայ խնդիրների, խօսել է նաեւ մոնոպոլիաների վերացման անհրաժեշտութեան մասին: Նա յայտարարել է, որ մոնոպոլիաներ չպէտք է լինեն: Անվիճելի է, ոչ մի խօսք, մոնոպոլիաները քայքայել են Հայաստանն ու շարունակում են քայքայել: Սակայն մոնոպոլիա չլինելու մասին խօսում է մի գործիչ, որն ինքը այս պահին օգտւում է, ըստ էութեան, մոնոպոլ դիրքերից: Գագիկ Ծառուկեանը նման դիրքեր է ստացել խաղատնային բիզնէսի ոլորտում: Այս դիրքերը համահայաստանեան չեն, այսինքն՝ նրա մոնոպոլիան ողջ Հայաստանի տարածքով չէ, այլ ընդամէնը Երեւանի, սակայն եթէ նկատի առնենք, որ Հայաստանում յատուկ օրէնքով խաղատնային բիզնէսը Երեւանի մերձակայքում արգելւում է, եւ նման բիզնէս հնարաւոր է ծաւալել միայն Ծաղկաձորում, Ջերմուկում, Սեւանում եւ Մեղրիում՝ որոնցից Երեւանին ամենամօտը Ծաղկաձորն է, գրեթէ 45 րոպէի ճանապարհ հեռաւորութեամբ, ապա Երեւանում ունեցած մոնոպոլիան էլ բաւական յարմարաւէտ դիրքեր է ապահովում: Նշուած օրէնքում վերապահում կայ, որ մինչեւ 150 միլիոն դոլար ներդրումների դէպքում իրաւունք կայ Երեւանի մերձակայքում խաղատնային բիզնէս կազմակերպել: Իսկ նման չափանիշների համապատասխանում է միայն Գագիկ Ծառուկեանին պատկանող խաղատունը [Փարաւոն], որը գտնւում է Երեւանի հիւսիսային մասում: Երբ օրէնքն ընդունւում էր, իսկ ԲՀԿ-ն այդ ժամանակ կոալիցիայում էր, ուրիշ որեւէ նման խաղատուն չկար, եւ ակնյայտ է, որ վերապահումը արուել է հէնց Ծառուկեանին պատկանող խաղատունը չտեղափոխելու համար: Արդիւնքում, Երեւանի մերձակայքում բոլոր խաղատները փակուեցին, եւ մնաց միայն ԲՀԿ առաջնորդինը: Սակայն Գագիկ Ծառուկեանը, չգիտես ինչու, որեւէ կերպ չփորձեց անհամաձայնութիւն յայտնել իր մոնոպոլ դիրքի կապակցութեամբ, որեւէ կերպ չփորձեց բարձրաձայնել, որ նման կերպ արդար չէ, որ արդարութիւնը պահանջում է կամ բոլոր խաղատները փակել, կամ գործելու հաւասար իրաւունքներ ապահովել:»(44)

Այսպէս, հանդիստ սիրտով, Ծառուկեան 2013 Յունիս 1-ին պաշտօնական բացումը կը կատարէ Երեւան-Սեւան մայրուղիի՝ Բալահովիտ գիւղի դիմացը կառուցուած Փարաւոն ժամանցային համալիրին, որուն հիմքը կը գտնուին խաղատուներու շարք մը. «Փարաւոնն իր մէջ ներառում է յայտնի Շանգրի Լա խաղատունը, երկու մեծ բուրգեր, որոնք նոյնպէս խաղատներ են, Կեմպինսկի հսկայական հիւրանոցային ու կրկին խաղատնային համալիրը եւ մի քանի այլ շինութիւններ», կը տեղեկացնէ *Առաջին լրատուականը*:(45) Փարաւոնին համար Ծառուկեան ներդրած է աւելի քան 200 միլիոն ամերիկեան տոլլար:(46)

2014-ին, Վերին Պտղնի գիւղին մէջ Ծառուկեան կը կառուցէ իր երկրորդ խաղատունը՝ Օնիրա Քլաբ, որուն ներդրումային արժէքը կը կազմէ 61 միլիառ 146 միլիոն 139 հազար դրամ:(47)

Խաղատուները, արդարեւ, գործնական կարեւորութիւն ունին կառավարութեան համար: Հայկ Արամեան կը բացատրէ.

«[Խ]աղատունը լուրջ բան մըն է: Ան ներքին եւ արտաքին քաղաքականութեան կերտումին հիմնավայրն է, համաձայնութիւններու կեդրոնը: Օրինակ, Հայաստանի արտաքին քաղաքական անկիւնագիծը կարգադրուած էր խաղատան միջոցով: Խաղատուն մը կը գործածուի լուծելու համար ոճրագործ համակարգին ներքին համաձայնութիւնները: Շորթումը անհրաժեշտ է թէ՛ խաղատուներու համար դրամ հայթայթելու եւ թէ համաձայնութիւններու ծախսերը ծածկելու համար:»(48)

Չխօսելով անհատին ու հասարակութեան հասցուցած հոգեկան աչռելի քայքայումին մասին: Եւ այս բոլորը եկեղեցիներ կառուցող «հաւատացեալ» Ծառուկեանին կողմէ:

### 4. 2008 ՄԱՐՏ 1-Ի ԴԷՊՔԵՐԸ

Մարտ 1-ի ողբերգական դէպքերուն մասին աւելորդ է կրկին անդրադառնալ: Միայն շեշտեմ՝ որ անիկա արդիւնքն էր շուրջ երկու շաբաթ տեւած ժողովրդական զանգուածային շարժումի մը, որ յաջողելու պարագային կրնար խախտել ամբողջ իշխանութեան, իշխանամերձ խաւերուն, ընդդիմադիր ձեւացնող իշխանասէր կուսակցութիւններուն եւ օլիկարքներուն անդորրութիւնը:

↳ 4

## ՀԱՅԱՍՏԱՆ

### ՀՀԿ-Ն ՄԻԱՅՆ ՆԱԽԸՆՏՐԱԿԱՆ ՔԱՐՈԶԱՐՇԱՒԻ ՎԵՐՋԻՆ ՄԻՋՈՑԱՌՄԱՆԸ ԾԱԽՍԵԼ Է 10 ՄԻԼԻՈՆ ԴՐԱՄ. ԻՍԿ Ո՞ՒՄ ՀԱՇՈՒԻՆ. *ԺՈՂՈՎՈՒՐԴ*

*Ժողովուրդ* օրաթերթը գրում է. «Պարզւում է՝ Կարէն Դեմիրճեանի անուան մարզահամերգային համալիրի սպորտային դահլիճի վարձակալութիւնը բաւական թանկ է. 10 միլիոն դրամ: Սա, ի դէպ, այն դահլիճն է, որտեղ սովորաբար անցկացւում են «հարուստ» կուսակցութիւնների, մասնաւորապէս իշխող Հայաստանի Հանրապետական Կուսակցութեան (ՀՀԿ) համագումարներն ու միւս միջոցառումները: Իսկ ահա համալիրի համերգային դահլիճի վարձակալութիւնն արժի 5 միլիոն դրամ:

*Ժողովուրդի* հետ զրոյցում համալիրի տնօրէն Վազգէն Ասատրեանն ասել է. «Բայց ամառուայ կտրուածքով իրաւունք ունենք 20 տոկոս զեղչ անել: Քանի որ համալիրի ջեռուցումը կապուած է մեծ ծախսերի հետ, այդ պատճառով դա ամռանն ենք զեղչ անում: Ես Ձեզ ասում եմ, որ բոլորին անխտիր, լինի ՀՀԿ, թէ ԲՀԿ կամ ՀՅԴ, ով ուզում է լինի, մենք ունենք

↳ 4

### ՄԻՆՉ ԱՂՔԱՏՈՒԹԻՒՆԸ ՄԵՐ ԵՐԿՐՈՒՄ ՍՐԸՆԹԱՑ ԱՃՈՒՄ Է, ՏԱՐՕՆ ՄԱՐԳԱՐԵԱՆՆ ԱՒԵԼԻ Է ՀԱՐՍՏԱՆՈՒՄ. *ԺՈՂՈՎՈՒՐԴ*

*Ժողովուրդ* օրաթերթը գրում է. «2013թ. Տեղական Ինքնակառավարման Մարմինների (ՏԻՄ) ընտրութիւններին Երեւանի քաղաքապետ Տարօն Մարգարեանի յայտարարագրած աչռելի ունեցուածքը մեծ աղմուկ հանեց: Պարզւում է՝ պաշտօնավարման այս հինգ տարիների ընթացքում, երբ աղքատութիւնը մեր երկրում սրընթաց աճում է, Տ. Մարգարեանը հասցրել է աւելացնել դրամական միջոցները. եթէ 2013թ. նա յայտարարագրել էր 115 միլիոն դրամ, ապա հիմա այդ թիւը դարձել է 250 միլիոն դրամ: Բացի այդ՝ Մարգարեանն ունի 45 հազար դոլար, 50 հազար եւրո, Ջեթ ընդ Ջեթ ընկերութեան 50 տոկոսի բաժնետէրն է: Բաւական տպաւորիչ է Մարգարեանի յայտարարագրած անշարժ գոյքը. Երեւանում՝ Թումանեան փողոցում, ունի բնակելի շէնքի մի ամբողջ յարկ՝ 190.2 քմ. մակերեսով, Աւանի Սայեաթ-Նովայ թաղամասում՝ 137.9 քմ. բնակարան, Աւանի Բաբաջանեան փողոցում՝ 1578.3 քմ. տարածք, առեւտրի կենտրոնի տարածք՝ 761.24 ք/մ մակերեսով: Բացի այդ՝ Աճառեան փողոցում՝ 3729.8 ք/մ, իսկ Զարենցի թաղամասում՝ 44 ք/մ շինութիւն, մէկ ամառանոց Ջերմուկում, երկու աւտօտնակ: Ի դէպ, 2013թ. Մարգարեանը յայտարարագրել էր ամառանոց Դիլիջանում, որը յետոյ վաճառել է: Նա վաճառել է նաեւ երկու մեքենայ՝ Ռենջ Ռովէր եւ Մերսեդէս Բենց: Հիմա Երեւանի քաղաքապետն ունի միայն Մերսեդէս S-450: Իսկ քաղաքապետի կինը՝ Գոհար Սարգսեանն արդէն քանի տարի է՝ յայտարարագրում է 50 միլիոն դրամ ունեցուածք, եւ այդ թիւը մշտապէս անփոփոխ է մնում: Սա, համաձայնէք, խիստ կասկածելի է»:

## ՍԻՆ ԽՈՍՏՈՒՄՆԵՐ

1 ➩

ու մանաւանդ սփիւռքահայ կեանքի մերօրեայ պայմաններուն մէջ, պէտք է ուժեղացնել սփիւռքը իր կազմակերպչական բոլոր աշխատանքներուն մէջ եւ ստեղծել կեդրոնացած միացեալ համահայկական մարմին մը աշխուժացնելու համար հայքրտական ծրագրուած գործակցութիւնը, ստեղծելով վստահութեան մթնոլորտ, անցեալին գործուած սխալները միասնաբար սրբագրելու առաջադրանքով:

Անգամ մը եւս կ'արժէ յիշատակել եւ թարմացնել մեր յիշողութիւնը, թէ երբ գերպետութիւններ յաղթական դուրս եկան Առաջին Համաշխարհային Պատերազմէն, յայտարարեցին որ պատժական դատարաններու առջեւ պիտի քաշեն պատերազմին հեղինակներն ու ոճրագործները: Առաջինը եղաւ Ֆրանսան, որ անմիջապէս 2 Սեպտեմբեր 1914-ին մասնաւոր յանձնախումբ մը կազմեց, որուն պաշտօնը պիտի ըլլար հետապնդել ոճրային արարքները: Ազդարարեցին նաեւ Բարձրագոյն Դրան, որ դաշնակից պետութիւնները գործուած ոճիրներուն համար պատասխանատու պիտի բռնեն օսմանեան կառավարութեան բոլոր անդամները, ինչպէս նաեւ անոր գործակալներէն անոնք՝ որ մեղսակից պիտի նկատուէին ջարդերուն մէջ: Ամէն ինչ թուղթի վրայ մնաց...

Նոյնիսկ Նախագահ Ուիլսըն, 1918-ին յայտարարեց որ «ուշ կամ կանուխ Թուրքիան դատաստանի պիտի բերուի, իր արարքներուն հաշիւ տալու համար»: 25 Յունուար 1919-ին դաշնակից երկիրները 15 անդամներէ բաղկացած յանձնաժողով մը կազմեցին պատժական դատի կանչելու համար գերմանացի եւ Թուրք պատերազմական ոճրագործները: Ո՛չ միայն գերմանացիները, այլեւ Թուրք ոճրագործները եւս անպատիժ մնացին: Ճիշդ է որ Թալէաթ, Էնվէր, Ճեմալ եւ Տոքթ. Նազըմ մահուան դատապարտուեցան Պոլսոյ մէջ անգլիացի դատաւորներէ կազմուած զինուորական ատեանի մը կողմէ, բայց այդ մահավճիռը չգործադրուեցաւ ինչ-ինչ հաշիւներով:

Ինչպէս վերեւ յիշատակեցինք, դաշնակից տէրութիւններէն ո՛չ մէկը պիտի յիշէր այլեւս, թէ պատերազմի սկիզբէն իսկ Թուրք կառավարութեան պաշտօնապէս ազդարարած էին որ «անձնապէս պատասխանատու պիտի բռնէին օսմանեան կառավարութեան բոլոր անդամները, ինչպէս նաեւ իրենց մեղսակից գործակալները»: Դաշնակից տէրութեանց թերացումով, Թուրքերը անմիջապէս վերսկսան իրենց զանգուածային ոճիրները՝ զինադադարէն հազիւ մէկ-երկու տարի ետք: Բացորոշ է որ քեմալական նոր ցեղասպանութիւնը տեղի չէր ունենար, եթէ Անգլիան եւ Ֆրանսան փոխն ի փոխ չօգնէին Թուրքերուն:

Մուսթաֆա Քեմալ, օգտուելով Դաշնակից տէրութեանց թերացումէն, զինուորական ոյժ վերակազմեց եւ ամէն տեղ ըմբոստութեան շարժումներ ստեղծեց եւ շուտով պատուհաս դարձաւ ամողջ տարածաշրջանին մէջ: Ո՛չ միայն Հայ եւ յոյն ջարդեց, այլ եւ մեծ թիւով ֆրանսացի զինուորականներ ալ սպաննեց մասնաւորաբար Կիլիկիոյ մէջ (որմէ ետք տեղի ունեցաւ Կիլիկիոյ պարպումը), ճիւրացնելով հսկայական քանակութեամբ զէնք ու ռազմամթերք, եւ ինքզինք պարտադրեց որպէս Թուրքիոյ կանոնաւոր օրինական իշխանութիւն: Այս բոլորին որպէս հետեւանք, Ֆրանսան կորսնցուց դարերէ ի վեր իր վայելած քաղաքական դիրքն ու վարկը, մասնաւորաբար Միջին Արեւելքի մէջ:

*Արեւելք*, 4 Մարտ 2017

ԽՈՀԵՐ

## ՄԻՈՒԹԻՒՆ ՀԱՅԿԱԿԱՆ ԵՂԱՆԱԿՈՎ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

1987 Ապրիլ 21 Թուակիր *Արեւ* օրաթերթը (71-րդ տարի, թիւ 20591) կ'արտատպէ Վարդան Ա. Քհնյ. Տիւլկէրեանի յաջորդական յօդուածներէն մէկը՝ «Միակողմանի դատողներ», ուր կարելի է կարդալ արժանապատիւ Տէր Հօր հետեւեալ գրգռիչ տողերը.

«Ներկայիս, Սփիւռքի ամբողջ տարածքին, ամէն Հայ կազմակերպութիւն եսական ու միակողմանի ուղղութիւն ունի: Կը դրուատէ մեծաշուինդ ածականներով ու տիտղոսներով ի'ր անդամը, ի'ր մտաւորականը, ի'ր բարերարը, ի'ր երգիչը, յատկապէս իր այն անդամները, որ յանուն իր կազմակերպութեան համբաւի կը հասնին:

«Եւ մեծ ողբերգութիւնը, որ կայ ու կը տեւէ, այն է, որ անկախ մտաւորականը կամ արուեստագէտը որ իր արժանիքով ժողովուրդին կը յենու, ո՛չ արդարօրէն կը դրուատուի եւ ո՛չ ալ բարոյապէս ու նիւթապէս քաջալերութիւն կը գտնէ:

«Միադէմ, միականի ու միակողմանի ղեկավարներ իրենց մամուլի սիւնակներով կ'անգիտանան իսկական մեծութիւնները, որոնք, ժողովուրդին մշակութային վերելքին համար լայն զոհողութիւններու կ'ենթարկուին՝ իրենց տաղանդին եւ անհատական նախաձեռնութեան ուժին կռթնած:»

Բաւական համարձակ գրութիւն մը՝ արձանագրուած սփիւռքահայ պատուաւոր եկեղեցականի մը կողմէ եւ տպագրուած սփիւռքահայ կուսակցական կարեւոր մամուլի մը մէջ:

Բարեբախտաբար, ասիկա «Խոհեր»-ուն ինքնաստեղծ գաղափարը չէ: Եւ որպէսզի «Խոհեր»-ը անպարտ մնայ քննադատութենէ (մէկ տարիէն աւելի է որ ակումբային մակարդակով շատ սուր յարձակումներ տեղի կ'ունենան «Խոհեր»-ուն դէմ), կը յայտարարէ. «Մենք պատասխանատու չենք Տիւլկէրեանի յօդուածին մէջ արտայայտուած կարծիքներուն, մանաւանդ որ անոնք գրուած են ասկէ 30 տարի առաջ եւ կը վերաբերին այդ շրջանի ղեկավարներուն՝ որոնց անձամբ ծանօթ չենք եղած:» Այսպէս, «Խոհեր»-ը ինքզինք ապահով զգալով, կ'անցնի առաջ:

«[Ա]մէն Հայ կազմակերպութիւն եսական ու միակողմանի ուղղութիւն ունի», կը գրէ Տիւլկէրեան... 30 տարի առաջուայ կազմակերպութիւններուն մասին: Խնդիրը այն է, որ «30 տարի առաջուայ կազմակերպութիւններ»-էն իւրաքանչիւրը հանդէս կու գար համայն հայութեան անունով, կը խօսէր իբրեւ *ամբողջ* հայութեան ներկայացուցիչ:

Ասիկա հաստատող օրինակները մամուլի մէջ անհամար են: Բաւարարուիմ պատահականօրէն ընտրուած յօդուածով մը, որ գրուած է ասկէ շուրջ 30 տարի առաջ (ուրեմն՝ ժամանակակից է Տիւլկէրեանի յօդուածին), «կողմ» հանդիսացող կազմակերպութեան մը կողմէ, որ կը գովերգէ իր անցեալի ու ներկայի փառքը (պիտի խնայեմ հեղինակը, հրատարակութեան վայրը եւ կազմակերպութեան անունը, քանի որ սովորութիւն դարձած է որեւէ մատնանշում թարգմանել իբրեւ անձի մը դէմ ուղղուած անհատական քննադատութիւն, մինչդեռ «Խոհեր»-ու նպատակը եղած է անդրադառնալ *միայն* երեւոյթներու մասին: Երեւոյթները գործադրողները, բնականաբար, մարդիկ են, բայց «Խոհեր» կը մերժէ մարդոց անհատականացումը եւ եսականացումը):

Ահաւասիկ անկէ քաղուած պարբերութիւն մը.

«Կեանքի հողմերէն, եղեռններու եւ հորդաններու արիւնոուշտ նախճիրներէն քարկոծուած եւ պնդացած, կոպտացած եւ տառապած, եւ այդ իսկ տառապանքով յղկուած, փափուկ եւ նուրբ հոգիով, ապրելու եւ գոյատեւելու յամառութեամբ թրծուած է մեր ազգը: Անոր ծոցէն ծնան հեռատես եւ աչալուրջ ղեկավարներ, որոնք ի տես իրենց ժողովուրդը ճնշող արհաւիրքներուն եւ ահաբեկումին, ապագայ պատահականութեանց խոր գիտակցութեամբ, յղացան եւ իրագործեցին՝ գաղափարը՝ համազգային կազմակերպութեան մը:»

Նախ, պարբերութեան կազմութիւնը: Ազգը՝ քարկոծուած, տառապած ու յղկուած, ղեկավարը՝ հեռատես եւ աչալուրջ: Այս երկուքը պէտք չէ խառնուին իրարու: Պէտք չէ ըսուի, օրինակ, ազգը՝ հեռատես, ղեկավարը՝ քարկոծուած: Ազգը պէտք է մնայ ամբոխի կարգավիճակի մէջ, իսկ ղեկավարը՝ ընտրեալի:

Ապա, «համազգային» ինքնակոչումը: Կազմակերպութիւն մը՝ որ ամէն առումով «կողմ» է՝ իր վարչականներով, իր անդամներով, իր գործունէութեամբ, իր գաղափարախօսութեամբ, իր մամուլով, իր խօսքը լսողներու զանգուածով: Անիկա «կողմ» է իր սեփական կամեցողութեամբ, իր մարմինին մէջ մերժելով ընդունիլ ամէն բան որ «կողմ» չէ: Մերժելով *ուրիշը*, *այլը*, ինքզինք կը ներկայացնէ *բոլոր*ին խնամակալը: «Կողմ»-ը կը ներկայացուի իբրեւ «համա-»:

Նոյն յօդուածէն ուրիշ քաղուածք մը.

«Սիրեց իր ժողովուրդը անկողմնակալ սիրով, սիրեց իր հայրենիքը, իր եկեղեցին, իր մշակոյթն ու արուեստը: Սատարեց իր ազգին նիւթական ու հոգեւոր վերելքին, եւ իբրեւ «միակ շահոյթ» ունեցաւ իր ժողովուրդին ընդհանուր շահը, շահը վերապրումի, շահը մշակոյթի վերստեղծման, շահը ժողովուրդի լինելիութեան:»

Ի՞նչ կը նշանակէ *իր* ժողովուրդը: Կը նշանակէ՝ թէ «ինք» եւ «ժողովուրդ»-ը տարբեր տարրեր են, տարբեր ենթականեր: Մէկ կողմը *ինք*ն է՝ սիրող ու սատարող, միւս կողմը *ժողովուրդ*ն է՝ սիրուող ու սատարուող: Մէկ կողմը ուժն է, միւս կողմը ուժին ենթարկուողը եւ ուժին կարօտ մնացողը: Գալով իր «կողմ» ընթացքին, իր իսկ արտայայտութեամբ զայն կը ներկայացնէ իբրեւ «անկողմնակալ»: Բայց չէ՞ որ «անկողմնակալ»-ի շեշտադրումը իր մէջ կը պարունակէ «կողմնակալ» ըլլալու հնարաւորութիւն մը:

Վերջին պարբերութիւն մը եւս.

«Մեր մաղթանքն է որ Հայ ժողովուրդի ներկայ եւ գալիք սերունդներուն բնաւորութեան բնորոշ ըլլայ ոչ միայն հոգիի փափկութիւնն ու նրբութիւնը, այլ նաեւ այդ սերունդները մոռնալով իրենց «վէրքերն ու ոխերը» ձգտին հոգիի վեհութեան, ձգտին հոգիի բարձրութեան եւ հասնին անով ապահովուած միութեան եւ զօրութեան:»

Մոռնալ «ոխերը»՝ առանց լուծում տալու այդ ոխերուն տուն տուող պատճառներուն, անհաւանականութիւն մըն է: Զգտիլ «միութեան»՝ երբ իրենք են այդ միութիւնը խախտողներէն մէկը, դժուար է մարսել ու հասկնալ:

Այստեղ է բուն խնդիրը: Ընդհանրապէս, որեւէ պարագայի, աշխարհի որեւէ տեղ գտնուող կազմակերպութիւն մը՝ ըլլայ հայկական կամ ոչ-հայկական, իրաւունք չունի ներկայանալ ամբողջ ժողովուրդի մը անունով: Ժողովուրդի մը *միակ* ամբողջական ներկայացուցիչը նոյն ինք ժողովուրդն է: Իւրաքանչիւր կազմակերպութիւն մասնակի երեւոյթ մըն է, որուն վարչականները՝ եթէ երբեւէ ընտրուած են, կը ներկայացնեն ժողովուրդի միայն մէկ հատուածի մը ձայնը: Եթէ կազմակերպութիւնը ունի անդամներ, անոնք դարձեալ կը ներկայացնեն ժողովուրդի մը միայն մէկ մասը: Կազմական առումով անկարելիութիւն մըն է ըլլալ ամբողջ ժողովուրդի մը ներկայացուցիչը, ալ ուր մնաց գաղափարական առումով, բացի եթէ կազմակերպութիւնը որդեգրած ըլլայ համակեցական-քոմիւնեան գործելակերպ մը, որ չի հանդիսանար դրամատիրական սկզբունքներով առաջնորդուող հայկական կազմակերպութիւններուն պարագան (բոլորովին ուրիշ հարց է առաջ նետուած ձախակողմեայ գեղեցկազարդ նշանաբանները):

«Սփիւռքի ամբողջ տարածքին, ամէն Հայ կազմակերպութիւն եսական ու միակողմանի ուղղութիւն ունի», կ'ըսէ Տիւլկէրեան:

«Համազգային կազմակերպութիւն մը», որ «սիրեց իր ժողովուրդը անկողմնակալ սիրով», կ'ըսէ երկրորդ հեղինակը:

Երկու նախադասութիւններ, որոնց մէջ արտայայտուած հակաբեւեռային գաղափարները ինքնաբերաբար կը հաղորդեն «համազգայնութեան» եւ «անկողմնակալութեան» բացակայութիւնները:

Երկրորդ հեղինակի համազգայնութեան եւ անկողմնակալութեան շեշտադրութիւնը կրնայ բացայայտել երկու իմաստներ.

1. Հեղինակը կ'ուզէ փարատել իր միաւորին հասցէագրուած ոչ-համազգայնութեան եւ ոչ-անկողմնակալութեան կասկածները եւ ամբաստանութիւնները: Ան համոզուած է որ ժողովուրդը այլ կերպ կը մտածէ, այսինքն՝ ժողովուրդը կը հաւատայ կողմնակալութեան: Հետեւաբար, կ'ուզէ նշանաբանել հակառակը:

2. Հեղինակը կ'ուզէ ինքզինք առանձնացնել ուրիշներէն՝ որոնց կը համարէ կողմնակալ: Ուրեմն, դարձեալ հաստատած կ'ըլլայ կողմնակալութեան գերակշիռ գոյութիւնը, հոգ չէ թէ ան ենթադրաբար կը գտնուի իրմէ անդին: Ինք «անկողմնակալ» է, ուրիշը՝ «կողմնակալ»: Դառնալով դրական, հեղինակը փորձ չի կատարեր վերացնել բացասականը: Բացասականը չի վերանար դրականի գեղագիտականացումով: Ընդհակառակը, վերջինս կը նպաստէ անոր աճումին ու զարգացումին: Բացասականը կը վերանայ անոր դէմ գործադրուած յստակ դիմադրութեամբ:

Երկու պարագաներուն ալ երկրորդ հեղինակը հաստատած կ'ըլլայ կողմնակալութեան առկայութիւնը:

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ԳԱՀԻՐԷ

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ**

ԿԻՐԱԿԻ, 16 Ապրիլ 2017-ին,

# ՏՕՆ Է Ս. ՅԱՐՈՒԹԵԱՆ (ԶԱՏԻԿ)

Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ
Պատարագը պիտի մատուցանէ՝

**ԳԵՐՇ. Տ. ԱՇՈՏ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄՆԱՑԱԿԱՆԵԱՆ**
**ԲԱՐԵԽՆԱՄ ԱՌԱՋՆՈՐԴ ԵԳԻՊՏՈՍԻ ՀԱՅՈՑ ԹԵՄԻ**

Յընթացս Ս. Պատարագի պիտի ընթերցէ Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Բ Ամենայն Հայոց Կաթողիկոսի Ս. Յարութեան պատգամը:

Սկիզբ առաւօտեան ժամերգութեան ժամը 8:30-ին
Սկիզբ Ս. Պատարագի ժամը 10:00-ին

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ**

Երկուշաբթի, 24 Ապրիլ 2017

**Ս. Պատարագի Եւ Բարեխօսական կարգ**

# Ի ՅԻՇԱՏԱԿ ՍՐԲՈՑ ՆԱՀԱՏԱԿԱՑ ՄԵՐՈՑ, ՈՐՔ ԿԱՏԱՐԵՑԱՆ ՅԸՆԹԱՑՍ ՀԱՅՈՑ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ՎԱՍՆ ՀԱՒԱՏՈՅ ԵՒ ՎԱՍՆ ՀԱՅՐԵՆԵԱՑ

Սկիզբն Ս. Պատարագի առաւօտեան ժամը 10:00-ին

Ժողովուրդին երթ ու դարձը դիւրացնելու համար հաստատուած է հանրաշարժի սպասարկութիւն:

Սալահ Էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 8:45-ին

Այծեմնիկ Հանգստեան Տան շէնքին առջեւէն ժամը 9:00-ին

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ**

Այսու կը տեղեկացնենք մեր յարգոյ հասարակութեան թէ Եգիպտոսի Հայոց Թեմի Կազմական Կանոնագրի 23-րդ յօդուածի տրամադրութեան հիման վրայ, Աղեքսանդրիոյ Պատկառելի Թեմական Ժողովի ամբողջական ընտրութիւնները տեղի պիտի ունենան Ուրբաթ, 5 Մայիս 2017-ին:

Սոյն ամբողջական ընտրութիւններուն մասնակցելու իրաւունք ունեցող ազգայիններու ցանկը կախուած է Ս. Պօղոս-Պետրոս եկեղեցւոյ մուտքին եւ Ազգային Առաջնորդարանին մէջ:

Կը տեղեկացնենք նաեւ, թէ ըստ Կազմական Կանոնագրի 13 եւ 14 յօդուածներուն, ընտրութեան ցանկերը «*փակցնելու եւ հրատարակելու գործողութեան թուականի յաջորդող 7 օրերու ընթացքին, 21 տարեկանը լրացած եգիպտահպատակ եւ երկու տարի Աղեքսանդրիոյ եւ անոր շրջակայքին մէջ բնակող իւրաքանչիւր անձ (այր թէ կին), որուն անուան արձանագրութիւնը մոռցուած է, կրնայ պահանջել որ իր անունը արձանագրուի: Նոյնպէս ամէն ընտրող, որուն անունը արձանագրուած է, կրնայ պահանջել, որ առանց իրաւունք ունենալու արձանագրուած անձին անունը ջնջուի*»:

ԴԻՒԱՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

2 ➩

## ԳԱԳԻԿ ԾԱՌՈՒԿԵԱՆ ԿԱՄ Ի՞ՆՉՊԷՍ ՍՏԵՂԾԵԼ ՏԻՊԱՐ ՀԱՅՐԵՆԱՍԷՐԻ ՊԱՏԿԵՐԸ

2008 Օգոստոս 24-ին, Փաստահաւաք Խումբը կը հրապարակէ իր չորրորդ զեկոյցը, որմէ կը քաղեմ հետեւեալը.

«Առաջնորդուելով 2009թ. Եւրոխորհրդի Խորհրդարանական Վեհաժողովի Հայաստանում Ժողովրդավարական ինստիտուտների վիճակի մասին թիւ 1677 բանաձեւի 8.1 կէտով՝ ՀՀ Նախագահի 2008 թ. հոկտեմբերի 23-ի կարգադրութեամբ ստեղծուած Փաստահաւաք Խմբի անդամներ Անդրանիկ Քոչարեանը եւ Սեդա Սաֆարեանը (այսուհետեւ զեկուցողներ) որոշեցին մարտիմէկեան իրադարձութիւններին օրէնքով չնախատեսուած զինուած միաւորումների ներգրաւման վերաբերեալ ուսումնասիրութեան արդիւնքները ներկայացնել Ազգային Ժողովի ժամանակաւոր յանձնաժողովին:

«2008 դեկտեմբերի 15-ին Հայ Ազգային Կոնգրէսը Փաստահաւաք Խմբին ներկայացրեց փաստաթուղթ, որում ուղղակիօրէն մատնանշուած են հինգ բարձրաստիճան պաշտօնեաներ եւ չորս պատգամաւորներ, ոյոնց՝ ըստ ներկայացնողի, մարտի մէկին ՀՀ պաշտպանութեան նախարարութեան թիկունքի ծառայութեան պահեստից տրամադրուել է 950 հատ երկու տեսակի զինուորական կոստիւմներ եւ 140 հատ գլխարկներ:

«Հայ Ազգային Կոնգրէսը պնդում էր, որ այդ տեղեկատուութիւնը ստացուել է հաւաստի աղբիւրից, սակայն, անվտանգութեան նկատառումներից ելնելով, չէր բացայայտում տեղեկատուութեան աղբիւրը: Միաժամանակ Հայ Ազգային Կոնգրէսը համոզուած էր, որ նշուած զինուորական համազգեստը օգտագործուել է փաստաթղթում նշուած պաշտօնեաների եւ պատգամաւորների կողմից մարտի մէկին սադրիչ գործողութիւններ կազմակերպելու նպատակով ստեղծուած օրէնքով չնախատեսուած զինուած միաւորումներին հանդերձաւորելու նպատակով:

«Հայ Ազգային Կոնգրէսի կողմից ներկայացուած փաստաթղթում մատնանշուած քանակի համազգեստը, ըստ հաւաստի, սակայն բացայայտման ոչ ենթակայ աղբիւրի պնդմամբ, դուրս է գրուել ՀՀ պաշտպանութեան նախարարութեան իրային պահեստից՝ թիւ 93353 զօրամասի իրային ծառայութեան պետ Յարութ Բարսեղեանի անուամբ:»(49)

Փաստահաւաք Խումբը իր զեկոյցին կը կցէ փաստաթուղթի մը պատճէնը, ուր մանրամասն նշուած են զօրամասէն դուրս գրուած զգեստներուն եւ գլխարկներուն քանակը եւ զանոնք ստացողները: Վերջիններս են՝ Ղազարեան Վաչիկ (վարչապետի աշխատակազմ), Ծառուկեան Գագիկ, Խաչատրեան Սուրիկ, Սարգսեան Լեւոն, Բեգլարեան Գագիկ, Աբրահամեան Յովիկ, Մովսիսեան Առաքել, Սեդրակեան Մհեր, Ալեքսանեան Սամուէլ: Քանակապէս անհամեմատօրէն շատ ստացած անձը Ծառուկեանն է՝ 140 ձմեռային կոստիւմ, 160 բամբակեայ կոստիւմ եւ 49 գլխարկ:(50) Կը նշանակէ թէ Ծառուկեանի թիկնազօրը իր ամբողջ հզօրութեամբ մասնակցած է ժողովրդական շարժումի ջախջախումին:

Ինչպէս ստորեւ պիտի տեսնենք, Ծառուկեան անընդհատ կը խօսի ժողովուրդի անունով՝ իբր ժողովուրդն է իր ուշադրութեան կեդրոնը, իբր իր ամբողջ գործունէութեան նպատակն է ծառայել ժողովուրդին, եւ այլն: Ահաւասիկ, այս նոյն ժողովուրդը Փետրուար 2008-ին իջած է փողոց եւ կը պահանջէ իր մարդկային իրաւունքները: Եւ յանկարծ ժողովուրդի անունով բարձախօսող իշխանութիւնները, «բարեսիրտ» դրամատէրերը եւ ժողովուրդին կարիքները հոգացող գործարարները կա՛մ ուղղակիօրէն դէմ կը կանգնին ցուցարար ժողովուրդին եւ կամ կը պահպանեն քար լռութիւն: Իրենց ժողովուրդը *ուրիշ* ժողովուրդ է: Իրենց ժողովուրդը յեղափոխող ժողովուրդ չէ, ինքնուրոյն մտածող, ինքնուրոյնաբար պահանջող ժողովուրդ չէ, այլ պարտադրաբար ընտրելախաւերուն ենթարկուող, միշտ անոնց հոգածութեան ենթակայ, միշտ բարեգործութիւններու կարօտ ժողովուրդն է:

(Շար. 4)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

39. Հրանտ Բագրատեան, «2008-2009թթ. տնտեսական ճգնաժամը եւ Հայաստանը», No 904 (ինտերնետային No 1064), 13 Յունուար 2010, Զորեքշաբթի, http://www.chi.am/index.cfm?objectID=80F51EE0-8DC0-11E0-9A42005056A30FF7&year=2010&month=01&legacyURL=100113/10011310:

40. «Սերժ Սարգսեանի եւ Ռոբերտ Քոչարեանի բիզնէս բուրգերը. Վիկիլիքս – Հայաստան No 6», *Հայկական Ուսումնասիրութիւնների Անի Կենտրոն*, 16 Օգոստոս 2015, http://www.aniarc.am/2015/08/16/serzh-sargsyan-robert-kocharyan-business-pyramids-wikileaks/:

41. Մարինէ Խառատեան, «Գագիկ Ծառուկեանը նոր կազինո կը կառուցի Երեւանից քիչ հեռու», *Առաջին լրատուական*, 9 Յունուար 2014, http://www.1in.am/242866.html: Տիրայր Մուրադեան, «Խաղատների արքան. Գագիկ Ծառուկեանն ու խաղատների մենաշնորհը», *armtimes.com*, 29 Մայիս 2016, http://www.armtimes.com/hy/article/86458:

42. Մարինէ Խառատեան, նչ. յօդ.ը:

43. Սամուէլ Աւագեան, «Գագիկ Ծառուկեանը հերթական խոշոր կազինոն է կառուցում», *Հետք*, 10 Յունուար 2014, http://hetq.am/arm/news/31896/gagik-tsarukyany-hertakan-khoshor-kazinon-e-karucum.html:

44. Մուսայ Միքայէլեան, «Բուրժուադեմոկրատական մոնոպոլիայի առանձնայատկութիւնները», 31 Հոկտեմբեր 2014, http://www.aravot.am/2014/10/31/511541/:

45. «Վաղը կը բացուի Ծառուկեանի Փարաւոն զուարճանքի կենտրոնը», *Առաջին լրատուական*, 31 Մայիս 2013, http://www.1in.am/188054.html:

46. «Գագիկ Ծառուկեանի նոր՝ 200 միլիոնանոց բիզնէսը», *Slaq.am*, 13 Մայիս 2013, http://www.slaq.am/arm/news/132653/:

47. Մարինէ Խառատեան, նչ. յօդ.ը:

48. Haik Aramyan, 'Another Casino Scandal', *Lragir.am*, 9 December 2013, http://www.lragir.am/index/eng/0/comments/view/31496:

49. «Փաստահաւաք խմբի 4-րդ զեկոյցը», *Lragir.am*, 27 Օգոստոս 2009, http://www.lragir.am/index/arm/0/country/view/28649:

50. Անդ:

2 ➩

## ՀՀԿ-Ն ՄԻԱՅՆ ՆԱԽԸՆՏՐԱԿԱՆ...

պետականօրէն որոշուած գներ, եւ այն բոլորի համար է գործում»: Մեզ մնում է արձանագրել, որ ՀՀԿ-ն իր՝ միայն նախընտրական քարոզարշաւի վերջին միջոցառմանը դահլիճի վարձակալութեան համար ծախսել է 10 միլիոն դրամ, թէ ո՞ւմ հաշուին, ինքներդ ենթադրէք»:

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع
TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1789 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 27 ԱՊՐԻԼ 2017 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ.

عدد رقم ١٧٨٩ الخميس ٢٧ أبريل ٢٠١٧

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ. ՓԱՍՏԱՑԻ ԿԱՐԳԱՎԻՃԱԿԸ ԿԸ ՅԱՂԹԷ Ի ՎՆԱՍ ԺՈՂՈՎՐԴԱՎԱՐՈՒԹԵԱՆ

ԱՐՄԻՆԷ ԻՇԽԱՆԵԱՆ
**Լոնտոնի Տնտեսական Համալսարանի (London School of Economics) Հասարակական Քաղաքականութեան բաժինի օգնական փրոֆեսոր**

Դէպի ժողովրդավարութիւն տանող քառորդ դարու «անցում»-է ետք, լաւագոյն առումով Հայաստան կը մնայ մասնակիօրէն ազատ «կարգաւորուած» ժողովրդավարութիւն մը եւ վատագոյն առումով՝ կիսա-հաստատուած մենատիրական վարչակարգ մը: Աղքատութիւնն ու անհաւասարութիւնը հասած են բարձր մակարդակներու (հայերուն աւելի քան 30%-ը կ'ապրի աղքատութեան գիծէն վար, իսկ 15 տարեկան եւ աւելի բարձր տարիքով բնակիչներուն 45%-ը գործազուրկ է) եւ փաստացի կարգավիճակին [status quo] հանդէպ դժգոհութիւնը պատճառ հանդիսացած է՝ որ 1990-ականներու առաջին տարիներէն սկսեալ անընդհատ չարունակուի արտագաղթը իսկ վերջին տարիներուն տարածուին զանգուածային ցոյցերը:

Ապրիլ 2-ի ընտրութիւններէն անմիջապէս ետք, ուր իշխող Հայաստանի Հանրապետական Կուսակցութիւնը ստացաւ քուէներուն շուրջ 50%-ը, հարցեր բարձրացան՝ թէ ինչո՞ւ, հակառակ քաղաքական եւ հասարակա-տնտեսական փաստացի կարգավիճակին հանդէպ աճող դժգոհութեան՝ ներառեալ Լեռնային Ղարաբաղի չլուծուած խնդիրը, այսքան շատ հայ քաղաքացիներ իրենց աջակցութիւնը ցուցաբերեցին իշխող կուսակցութեան:

Այսօր, հնազանդութեան նման մթնոլորտ մը կը տիրէ հայկական քաղաքացիական հասարակութեան կարգ մը հատուածներուն մէջ՝ զուգորդուած յուսախաբութեամբ, սթափումով, ինչպէս նաեւ աճող գիտակցութեամբ՝ թէ հայ քաղաքացիներուն մեծամասնութիւնը հետաքրքրուած չէ ժողովրդավարութեամբ ու մարդկային իրաւունքներով, եւ արդարեւ պատրաստ է իր քուէները ծախել ամենաբարձր գին առաջարկողին, նոյնիսկ եթէ ասիկա կը նշանակէ իշխող վարչակարգին վերադարձը իշխանութեան:

**Ընտրութիւններուն ֆեթիշիզացումը**

Անկախութենէն ի վեր, ընտրութիւնները օգտագործուեցան իբրեւ ելակէտեր՝ չափելու Հայաստանի եւ այլ յետ-խորհրդային երկիրներու ժողովրդավարացումին աստիճանը, ինչպէս նաեւ գնահատելու այս երկիրներուն դէպի ժողովրդավարութիւն կատարած անցումին յառաջդիմութիւնը: Անցեալ 25 տարիներուն, նուիրատուներու, միջկառավարական կազմակերպութիւններու եւ հասարակական կազմակերպութիւններու կողմէ բաւական ժամանակ եւ դրամ վատնուած է պատրաստելու, կազմակերպելու եւ դիտորդելու ու վերահսկելու ընտրութիւնները: Բայց ընտրութիւններու այս ֆեթիշիզացումը՝ մասնաւորապէս նոյն ինք ընտրութեան օրուան, կ'անտեսէ այն քաղաքական եւ հասարակական աւելի ընդարձակ չարժիչ ուժերը՝ որոնք կրնան ազդել ընտրողի վարքագիծին վրայ:

Վերջին տարիները, ընտրական խախտումներն ու խարդախութիւնները դիմագրաւելու համար առաջնային տեղ գրաւեցին թեքնիքական լուծումները: Բազմաթիւ մասնագէտներ կը քննադատեն զարգացումի գործակալութիւններուն ունեցած նախասիրութիւնը թեքնիքական եւ վարչակարգական մօտեցումներուն հանդէպ: ***Հակա-քաղաքական մեքենան*** (The Anti-Politics Machine) գիրքին մէջ Ճէյմս Ֆերկիւսոն առաջ կը քաշէ իր հուչակաւոր դարձած կարծիքը՝ թէ նուիրատուներուն եւ զարգացումի գործակալութիւններուն համար թեքնիքական լուծումները աւելի գրաւիչ են, քանի որ իրենց կը տրամադրէ տարածութիւն մը ուր կրնան համեմատաբար դիւրին կերպով ինքզինքնին «խցել»՝ առանց յայտնուելու իբրեւ քաղաքականապէս ինքնակոչ անձեր: Մինչ պահպանելով թեքնոքրաթական, առարկայական, չէզոք դիրքորոշում, այսպիսի թեքնիքական մօտեցումները յաճախ կ'անտեսեն ընտրական խախտումներուն քաղաքական եւ կառուցուածքային պատճառները եւ հետեւաբար չեն կրնար հասցէագրել զանոնք:


ԱՐՄԻՆԷ ԻՇԽԱՆԵԱՆ

Օրինակ, Հայաստանի 2017-ի ընտրութիւններու նախապատրաստութեան շրջանին, Եւրոմիութիւնը ծախսեց 7 միլիոն եւրօ որպէսզի զարգացնէ ընտրողներուն ինքնութիւնը ստուգող սարքերը եւ ընտրատեղամասերուն մէջ տեղադրէ կենդանի դիտարկումի համար նախատեսուած քամերաներ: Յոյս կար՝ որ այս նոր թեքնոլոժիները պիտի «նուազեցնէին ընտրութիւններու օրը կատարուող խախտումներուն հաւանականութիւնը եւ պիտի սահմանափակէին ընտրատեղամասերուն մէջ տեղի ունեցող ընտրական գործընթացքին միջամտութիւնները:» Թէեւ ԵՄ-ը ընդունեց՝ որ Հայաստանի ընտրութիւններուն իրենց գնահատականը պիտի չսահմանափակուի ընտրութիւններու օրուայ ընտրական գործառնութիւններու դիտարկումով, բայց այս ընդարձակ ներդրումը կը վկայէ՝ որ քաղաքական եւ կառուցողական դրդապատճառներ ունեցող խնդիր մը հասցէագրելու համար ընտրուած է թեքնիքական լուծումներու փորձը:

Հայաստանի ընտրական անկարգութիւնները՝ ուր տեղ կը գտնեն ընտրակաշառքն ու սպառնալիքը, կը կայանան նախքան ընտրութեան օրը, այնպիսի վայրեր եւ տարածութիւններ՝ ուր կենդանի քամերաները անկարող են հասնիլ: Ընտրութիւններուն նախապատրաստութիւնը տեղի կ'ունենայ մանկապարտէզներու եւ դպրոցներու մէջ, աշխատավայրերու մէջ, ինչպէս նաեւ Հայաստանի զանազան գրասենեակներու մէջ: Ըլլայ բռնադատութեամբ, սպառնալիքով կամ ապագայ օգուտներու խոստումներով, ընտրողներուն կը համոզեն վաճառել իրենց աջակցութիւնը: Առանձին բռնադատութիւնը անբաւարար է բացատրելու ընտրողի վարքագիծը, քանի որ բազմաթիւ ընտրողներ իրենց նիւթական շահերը հետապնդելու համար աշխուժօրէն կը գործածեն իրենց գործօնը՝ քուէն դնելով առեւտրական ապրանքաշրջանառութեան մէջ: Այս խնդիրները հասցէագրելու համար բաւարար չէ քամերաներու միջոցով որսալ քուէներու կեղծումը: Պէտք է հասկնանք նաեւ թէ մարդիկ *ինչու* պատրաստ են վաճառել իրենց քուէները:

Երկրորդ, ընտրութեան օրուայ դիտարկումի տարածուած ռազմավարութիւն մըն է նաեւ դիտարկումի առաքելութիւններու գործածու- 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԸ ԿԱՅԱՑՐԵՑ ՈՐՈՇՈՒՄԸ

Lragir.am, 22 Ապրիլ - Gallup International Association-ի անունից Հայաստանում հարցումներ անցկացնող ընկերութիւնը հրապարակել է Երեւանի աւագանու ընտրութեան վերաբերեալ առաջին հարցումները: Ըստ այդմ՝ հարցուածների 61,2%-ը ձայնը կը տայ Տարօն Մարգարեանին, 11,5%-ը՝ Նիկոլ Փաշինեանին, 3,9%-ը՝ Զարուհի Փոստանջեանին:

Աւագանու ընտրութեանը մասնակցում են ՀՀԿ-ն, Ելք դաշինքն ու Երկիր Ծիրանի կուսակցութիւնը:

Երեւանի աւագանու ընտրութիւնը սովորաբար յաջորդում է Ազգային Ժողովի ընտրութեանը եւ բացի երեւանեան իշխանութեան ձեւաւորումից, ունի նաեւ համապետական ընտրութեան լիցքաթափման ու արդիւնքների «լեգիտիմացման» դեր ու նշանակութիւն:

Այս անգամ էլ բացառութիւն չէ, եւ հարցման հրապարակուած տուեալները վկայում են այդ մասին: Ընդ որում, եթէ խորհրդարանի ընտրութեան կապակցութեամբ արուած հարցումներում ՀՀԿ-ի տոկոսները սկսեցին «զրոյից» ու վերջին հարցումներում հասան առաւելագոյնին, Երեւանի աւագանու ընտրութեան կապակցութեամբ հրապարակուեց «վերջնական» թիւը:

Խորհրդարանի ընտրութեան ընթացքն ու արդիւնքն այնպիսին էին, որ իշխանութիւնն արդէն աւելորդ սեթեւեթանքների «հաւէս» չունի: Պէտք է ամրագրել համոզիչ ու վերջնական արդիւնք՝ այդ պատճառով աւագանու ընտրութեանը հրաժարուեցին մասնակցել Ծառուկեանն ու ՀՅԴ-ն, ինչպէս նաեւ միւս կուսակցութիւնները: Բացի այդ, կ'ամրագրուի Ելք դաշինքի ընդդիմադիր կարգավիճակը, աւագանի մուտք կ'ունենայ նորաստեղծ Երկիր Ծիրանին: Այսպիսով, յայտնի դարձաւ Սերժ Սարգսեանի որոշումը Երեւանի աւագանու ընտրութեան կապակցութեամբ:

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ *ՋԱՀԱԿԻՐ*Ի Է. ՅԱՒԵԼՈՒԱԾԸ՝ ՆՈՒԻՐՈՒԱԾ ՆԱԽԿԻՆ ԵԳԻՊՏԱՀԱՅ ԵՐԱԺԻՇՏ ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ ԵԳԻՊՏՈՍԻ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ

Լոյս տեսաւ *Ջահակիր*ի եօթներորդ յաւելուածը՝ *Խմբավար եւ երգահան Հայկ Սարգիսեանի Եգիպտոսի շրջանի գործունէութեան ուրուագիծ (ըստ վաւերաթուղթերու եւ փաստագրութիւններու)*, 562 էջ:


ԽՄԲԱՎԱՐ ԵՒ ԵՐԱԺՇՏԱՀԱՆ
ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ
ԵԳԻՊՏՈՍԻ ՇՐՋԱՆԻ
ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ ՈՒՐՈՒԱԳԻԾ
(ըստ վաւերաթուղթերու եւ փաստագրութիւններու)
Հաւաքեց եւ պատրաստեց՝ ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ
ՋԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՅԱՒԵԼՈՒԱԾ Է.
ԳԱՀԻՐԷ
2017

Գիրքը կը հանդիսանայ *Ջահակիր*ի Յաւելուածներու երաժշտական չարքին երրորդը: Ան կ'ամփոփէ Հայկ Սարգիսեանի Եգիպտոսի գործունէութեան հետ կապուած նիւթեր՝ հայերէն, ֆրանսերէն եւ արաբերէն յօդուածներ, իր հիմնած եւ խմբավարած ՀԲԸՄ-ի Կոունկ (Գահիրէ) եւ Գուսան (Աղեքսանդրիա) երգչախումբերու, ինչպէս նաեւ Գահիրէի Պետական Երաժշտանոցի Երգչախումբի երգահանդէսներուն գրեթէ ամբողջական յայտագիրները, անտիպ նամակներ Տիգրան Մանսուրեանէն եւ Նուպար Մնկրեանէն, ձեռագիր-ինքնագիր եւ տպագիր ստեղծագործութիւններու առաջին էջերու պատճէններ՝ ներառեալ երկու եգիպտական չարժանկարներու երաժշտութիւնները, արաբական աշխարհի հանրածանօթ փոփ երգչուհի Անուշքայի (Անուշքա Զատըրճեան) հետ կապուած ստեղծագործական համագործակցութեան նիւթեր, եւ այլն:

Սարգիսեանի մէկ տասնամեակէ աւելի երկարած եգիպտական գործունէութիւնը (1980-1992) կարեւոր ազդեցութիւն թողած է թէ' եգիպտահայ եւ թէ' եգիպտական երաժշտական հասարակութեան վրայ: Ան այժմ կը հանդիսանայ Փարիզի Սիփան-Կոմիտաս երգչախումբի գլխաւոր խմբավարը:

# ԳԱԳԻԿ ԾԱՌՈՒԿԵԱՆ ԿԱՄ Ի՞ՆՉՊԷՍ ՍՏԵՂԾԵԼ ՏԻՊԱՐ ՀԱՅՐԵՆԱՍԵՐԻ ՊԱՏԿԵՐԸ

Յ. ԱՒԱԳԵԱՆ

Ծառուկեանի դէմքի միւս կողմը՝ անբաղձալի կողմը, պէտք է հեռու մնայ հիմնահոսանքային լրատուամիջոցներէն: Իսկ հիմնահոսանքը մեծ վարպետութեամբ հիւսեց եւ «պարտադրեց» հայրենասէր ու բարեսիրտ տիպարի մը պատկերը:

Այս պատկերի կերտումին գլխաւոր դերակատարը եղաւ Ծառուկեանի սեփականութիւնը հանդիսացող Կենտրոն հեռատեսիլի կայանը: *Իր* հեռատեսիլի միջոցով ստեղծեց *իր* պատկերը:

Այս ուղղութեամբ տարուած տարիներու հետեւողական աշխատանքները՝ անընդհատ ցուցադրուած Կենտրոնի պաստառէն, իրենց գագաթնակէտին հասան խորհրդարանական ընտրութիւններու նախօրեակին՝ 2017 Յունուար-Փետրուարին, երբ Կենտրոն ցուցադրեց հինգ շարունակական «վաւերագրականներ», խորագիր ունենալով՝ *Մարդ, որը կառուցում է. Գագիկ Ծառուկեան*: Անոնք ամբողջութեամբ պատրաստուած ու հովանաւորուած էին Կենտրոնի կողմէ:

Շարքի բոլոր հինգ մասերը (իւրաքանչիւր մաս միջին հաշուով կը տեւէ մէկ ժամ) կառուցուած են Ծառուկեանի հետ ծաւալուող հարցազրոյցի մը վրայ՝ ուր ան կը պատմէ իր գործունէութեան մասին եւ կը վերյիշէ հին ու նոր դրուագներ: Ծառուկեանի խօսքը անընդհատ կ'ընդհատուի իր գործունէութիւններուն հետ կապուած տեսագրութիւններով եւ տարբեր անձնաւորութիւններու արտայայտած կարծիքներով: Տեսագրութիւններուն կ'ուղեկցին թաւ ու գրաւիչ ձայնով պատմողի մը բացատրութիւնները: Ամբողջապէս «ինք իր համար» եւ «ինք իր մասին» սկզբունքով կատարուած փիլմաշար մը, ուր իրապէս բարձր վարպետութեամբ եւ հմտութեամբ կերտուած է «կատարեալ» հայրենասէրի մը ինքնապատկերը:

Շարքը ունի տրամաբանական կառուցուածք: Առաջին մասը յատկացուած է իր գործարարական գործունէութեան, երկրորդը՝ եկեղեցաշինութեան, երրորդը եւ չորրորդը՝ մարզանքի, հինգերորդը՝ բարեգործութեան:

Ա. ՄԱՍ

ԳՈՐԾԱՐԱՐԱԿԱՆ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆ

Դրամատէրերը իրենց գործարարական «յաջողութիւնները» կը փորձեն առնչել երկու հիմնական պատկերներու հետ: Մէկը ինքնուրոյն աշխատանքի պատկերն է, ուր իբր անոնք յաջողութեան համար պայքարած են առանձին՝ առանց ազդեցիկ օգնութիւններու, եւ ինքնուրոյնաբար յաղթահարած բոլոր դժուարութիւնները: Միւսը սովորական աշխատաւորի ընտանիքէ սերած ըլլալու պատկերն է, որ աւելի եւս կ'ամրացնէ յաջողութեան չափանիշը: Այս երկու պարագաներն ալ ներկայացուած են փիլմին մէջ:

Ծառուկեան կը շեշտէ՝ որ «ոչ ծանօթ կար, ոչ բարեկամ, ոչ փողատէր, ոչ պաշտօնեայ, այլ սովորական աշխատող ընտանիք էին», հայրը՝ ելեկտրիկ, մայրը՝ հաշուապահ: Պատմողը կը շարունակէ՝ որ յաջողութեան համար Ծառուկեան պէտք է յաղթահարէր խոչընդոտներ, ապա կը հաստատէ. «Որքան էլ դժուար է հաւատալ սակայն բոլորի համար յաջողակ համարուող Գագիկ Ծառուկեանի կեանքում ձեռքբերումները հեշտ չեն ընտրուել: Ծնողներից ժառանգած անսահման աշխատասիրութիւնն ու դէպի նպատակն առաջնորդող մեծ հաւատ: Հայաստանում ու նրա սահմաններից դուրս գործող աւելի քան 40 խոշոր ձեռնարկութիւնների սեփականատէրը տարիներ առաջ ամէն ինչ սկսել էր բացառապէս զրոյից:»

Ամէն բան ըսուած է. սովորական ընտանիքի զաւակ, ոչինչէ սկսած գործարք, խոչընդոտներու յաղթահարում եւ, վերջապէս, յաջող գործարար:

Այս բնաբանէն ետք, Ա. մասը մանրամասն կը ցուցադրէ գործարքային այդ յաջողութիւններուն «վերելք»-ը՝ սպիտակ սունկի արտադրութիւն (1984), ագարակ, օղիի արտադրութիւն եւ ներմուծում, մեղուաբուծութիւն, Մուլտի Գրուպ կոնցեռն (1998), Կոտայք գարեջուրի գործարան, Արարատ-Ցեմենտ գործարան, Արարատ կոնեակի-գինու-օղու կոմբինատ, հիւրանոցային համալիրներ, Փարաւոն համալիր, Առինջ Մոլ, Մուլտի Ռեսթ կեդրոն:

Բ. ՄԱՍ

ԵԿԵՂԵՑԱՇԻՆՈՒԹԻՒՆ

Վահէ Սարուխանեանի ուսումնասիրութեան համաձայն, անկախութենէն ետք Հայաստանի եւ Արցախի մէջ կառուցուած է հարիւր եկեղեցի, ծախսուելով առնուազն 50 միլիոն տոլար: Ասոնցմէ դուրս կը մնան հին եկեղեցիներու եւ մատուռներու վերակառուցումն ու վերանորոգութիւնը եւ մատուռներու կառուցումը: Խօսքը միայն նոր եկեղեցիներու կառուցումի մասին է(51):

Հարիւր եկեղեցիներէն եօթը կառուցած է Գագիկ Ծառուկեան:

Ան եկեղեցիները կառուցեց Աստուծոյ հրամանով: Փիլմին մէջ, ճարտարապետ Սամուէլ Ստեփանեան կ'ըսէ. «35 տարի ես եկեղեցի եմ վերակառուցում ու կառուցում, եւ եկել եմ էդ եզրակացութեան՝ որ վերից կապը պիտի լինի: Շնորհը, սրբութիւնը, իշխանութիւնը, օրհնութիւնը, էդ ամէնը պիտի լինի վերեւից: Եթէ Աստուած չդնէր Ծառուկեանի սրտին, սրտին ա դրել որ դու պիտի կառուցես, մտքին ա դրել, հոգու մէջ ա դրել որ դու պէտք ա եկեղեցիներ կառուցես:»

Աստուածային տեսիլքը կամ երազն է որ պատճառ հանդիսացաւ Ծառուկեանին կառուցելու իր առաջին եկեղեցին՝ Ս. Աստուածածինը: Այս երազը բացատրելու համար, յստակօրէն գծագրուած սենարիոյի մը միջոցով, ելոյթ կ'ունենան Ծառուկեան ընտանիքի երեք անդամներ: Մայրը՝ Ռոզա Ծառուկեան կը պատմէ Վարդենիսցի ծերունիի մը երազը, ապա կինը՝ Ջաւահիր Ծառուկեան կը նկարագրէ մօրաքրոջ երազը, եւ վերջապէս դուստրը՝ Անահիտ Ծառուկեան դասախօսութիւն կը կարդայ աստուածային երա՛զի կարեւորութեան մասին.

«**Ռոզա Ծառուկեան** – Առաջի եկեղեցին ինչ-որ մէկը Վարդենիսի տարածաշրջանից, ծեր մարդ, երազ ա տեսնում: Գագիկին ասել էր՝ որ ինձ երկու անգամ երազ ա եկել, ես չեմ եկել քեզ ասել, բայց ինձ հանգիստ չեն տալիս, ասում են որ իրան ասա, Աստուածածնի քանդուած եկեղեցուց դէպի արեւելք պիտի անպայման եկեղեցի կառուցէք:

«**Ջաւահիր Ծառուկեան** – Բացի ուրիշի երազը, նաեւ մօրաքոյրն էր տեսել էդ նոյն երազը՝ որ քանդուած էդպէս փլատակներ ա եւ այդ փլատակների մօտ կանգնած ա Գագիկը ու պէտք է ինքը տեղանքում եկեղեցի կառուցի: Զուգադիպեց եւ յաջորդեց մէկը միւսին:

«**Անահիտ Ծառուկեան** – Շատ կարեւոր նշանակութիւն ունի հէնց առաջին հերթին այն՝ որ ուղղակի որոշում չի եղել հէնց եկեղեցի կառուցել այլ յատուկ երազներով ինչ-որ նշանակութիւնը հայրիկիս մօտ: Ըստ իս իւրաքանչիւր քրիստոնեայ մարդու համար պէտք է կարեւոր դեր ունենայ այն ամէնը ինչը կապուած է հոգեւոր արժէքների հետ:»

Ամբողջական պատում մը, ուր միջնադարը ներկայ է իր համակ վերանցականութեամբ:

Վերանցականութեան ուրիշ օրինակ մըն է իր որդիներուն պատմութիւնը: Ծառուկեան ընտանիքի անդամները յաջորդաբար կը պատմեն՝ թէ ինչպէս Գագիկի չորրորդ դստեր ծնունդէն ետք, ընտանիքը կ'երթայ Սպիտակի շրջանի Ղալթախչի գիւղի Ս. Յովհաննէս մատուռը, մոմ կը վառէ, կ'աղօթէ եւ Աստուծոյ կը խնդրէ շնորհել որդի: Քանի որ Ծառուկեանները հաւատացեալ ընտանիք են, Աստուած կը կատարէ իրենց ցանկութիւնը եւ շուտով կը ծնի անդրանիկ որդին, որուն կը յաջորդէ երկրորդը:

Եւ այսպէս հրաշքները Ծառուկեան ընտանիքի մէջ կը շարունակուին: Երբ Ծառուկեան կը կառուցէր Նոր Հաճնի եկեղեցին, կինը ծանր հիւանդ էր: Գագիկ կը խնդրէ կնոջմէ որ ինք անձամբ որոշէ եկեղեցիին անունը: Կինը կ'ընտրէ Ամենափրկիչ անունը: Ամենափրկիչի օծումէն ետք կինը լրիւ կ'առողջանայ: Այսքան պարզ ու յստակ:

Ի՞նչպէս նման տեսիլքային, աստուածաշնորհային, հրաշքային գաղափարախօսութիւնը ո՛չ միայն կարելի է ժամանակակից Հայաստանի մէջ այլեւ անհրաժեշտութիւն մըն է ստեղծելու կատարեալ մարդու պատկերը: Առաջին պատճառը, ինչպէս մշակութաբան Վարդան Ջալոյեան կը նշէ, Հայաստանի մէջ լիպերալ-տեմոքրաթիք հաստատութիւններուն բացակայութիւնն է, պակաս մը՝ զոր կը լրացնէ կրօնական գաղափարախօսութիւնը. «Կրօնը հին եւ միջին դարերում եղել է միակ գաղափարախօսութիւնը եւ միապետները մեծ կարեւորութիւն են տուել եկեղեցաշինութեանը: Բուրժուա-դեմոկրատական դարաշրջանում գաղափարախօսութիւնն աշխարհիկացաւ եւ արդէն կուսակցութիւններն էին մշակում գաղափարախօսութիւններ: Այժմ, ԽՍՀՄ փլուզումից յետոյ, մենք ապրում ենք յետգաղափարախօսական դարաշրջանում, երբ կրօնը յաճախ լրացնում է գաղափարախօսական դատարկութիւնը: Յատկապէս դա նկատելի է Հայաստանում, որտեղ լիբերալ-դեմոկրատական հաստատութիւնները չկայացան:»(52)

Միւս պատճառը յետ-խորհրդային Հայաստանի որոշ հասարակական եւ մշակութային զարգացումներու նկարագրութեան համար Եուլիա Անտոնեանի անուանած «նոր-աւատատիրութիւն»-ն (neo-feudalism) է.

«Հայաստանի «նոր-աւատատիրական» մշակութային եւ հասարակական բնաբանին համար էական է «ազգային» եկեղեցիի գերակշռութիւնը եւ բացայայտ նախապատուութիւնը: Եթէ քաղաքացիական կրօնքը կ'օգտագործէ կրօնական խորհրդանշաններ եւ բնագիրներ՝ զանոնք տեղադրելով աշխարհիկ գործողութիւններու բնաբանին մէջ, ապա կրօնքի քաղաքական աղբիւրներուն «նոր-աւատատիրութեան» գործածութեան հայկական տարբերակը, ընդհակառակը, «կ'աշխարհիկացնէ» կրօնական գործողութիւններն ու խորհրդանշանները՝ անոնց վերագրելով ոչ-կրօնական իմաստներ եւ նպատակներ: Ի՞նչ են այս իմաստներն ու նպատակները:

«Կրօնքը նշանակալի դեր խաղաց յետ-խորհրդային ազգային պետութիւններու կազմաւորումին մէջ իբրեւ իրենց ազգային ինքնութեան մասը, ինչպէս նաեւ ազդեցիկ գործիք հանդիսացաւ զօրահաւաքելու եւ հզօրացնելու մշակութային եւ քաղաքական դրամագլուխը՝ որ ցարդ ճնշուած էր համայնավար գաղափարախօսական վարչակարգին կողմէ: Առաջին քայլը վերադառնալն էր կրօնքներու մենատիրութեան՝ պետութեան մասնակցութեամբ: Երկրորդ քայլը պետութեան եւ եկեղեցիին քաղաքական եւ գաղափարախօսական համագործակցութիւնն էր,

4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՕՐԻՆԱԽԱԽՏՆԵՐԸ ՊԱՐԳԵՒԱՏՐՈՒԵՑԻՆ. ԿԵՂԾԱՐԱՐ ՏՆՕՐԷՆՆԵՐԸ՝ ԱՒԱԳԱՆՈՒ ՀՀԿ ՑՈՒՑԱԿՈՒՄ. *ԺՈՂՈՎՈՒՐԴ*

*Ժողովուրդ* օրաթերթը գրում է. «*Ժողովուրդ* օրաթերթին յայտնի դարձաւ, որ ՀՀԿ աւագանու ցուցակում ընդգրկուած են Ապրիլի 2-ին կայացած Ազգային Ժողովի ընտրութիւնների նախընտրական սկանդալում յայտնուած կրթական հաստատութիւնների տնօրէններից մի քանիսը: Խօսքը Իրազեկ Քաղաքացիների Միաւորում հ/կ բացայայտման մասին է: Յիշում էք՝ ԱԺ ընտրութիւններից առաջ հրապարակուեցին թուով 114 դպրոցների եւ մանկապարտէզների տնօրէնների ինքնախոստովանական ձայնագրութիւնները, որտեղ վերջիններս յայտարարել էին ՀՀԿ օգտին մարդկանց ցուցակագրելու եւ այդ ցուցակները պետական կառոյցներին յանձնելու մասին: *Ժողովուրդ* օրաթերթը պարզեց, որ ՀՀԿ ցուցակում ընդգրկուած են սկանդալի մէջ յայտնուած տնօրէններից երեքը՝ Երեւանի թիւ 170 դպրոցի տնօրէն Անուշ Հայրեանը, որը ցուցակի 35-րդ հորիզոնականում է, Երեւանի թիւ 175 դպրոցի տնօրէն Անահիտ Բաբաջանեանը, որը 176-րդն է, եւ Երեւանի թիւ 51 մանկապարտէզի տնօրէն Հրանուշ Խաչատրեանը, նա էլ 172-րդն է:

## ԳԻՒՄՐՈՒ ԱՆՕԹԵՒԱՆ ԸՆՏԱՆԻՔՆԵՐԻՑ ՄԷԿԸ ՎԻՃԱԿԱՀԱՆՈՒԹԵԱՄԲ ԲՆԱԿԱՐԱՆ ՍՏԱՑԱՒ

A1+ – Գիւմրին Առանց Տնակների հիմնադրամը գիւմրեցի եւս մէկ անօթեւանի խնդիր է լուծել: Գուսան Շերամի 160 ամեակին նուիրուած համերգային ծրագրի շրջանակում հաւաքագրուած ամբողջ գումարն ուղղուել է այդ նպատակին:

Ընտանիքի ընտրութիւնը կատարուել է վիճակահանութեան միջոցով: Նոյն սկզբունքով Բարեկամութեան այգու տնակային թաղամասի 14 շահառուից բնակարանատէր է դարձել 234/254 տնակի բնակիչ Արամայիս Եուզբաշեանը:

ԽՈՀԵՐ

# ԲՆԱԳԻՐԸ՝ ՍԱՐՍԱՓԻ ԱՂԲԻՒՐ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Հայ եւ ոչ-Հայ արուեստագէտներ, մտաւորականներ, քաղաքական ու հասարակական գործիչներ անընդհատ ու անվերջ կը փնտռեն իրենց անձը գովաբանող բնագիրներ (texts), այլեւ դրամական եւ իշխանական ուժով ստեղծել կու տան նման բնագիրներ, որպէսզի զանոնք դարձնեն իրենց դէմքը պայծառեցնող անդրդուելի «փաստեր»: Առանց բնագիրի, առանց իրենց մասին *դուրսէն* արտայայտուած ամբագիր կարծիքի, անոնք անկարող են յարատեւել: Անոնք *պէտք* ունին բնագիրի: Անոնք կը պաշտեն բնագիրը:

Եթէ կը պաշտեն բնագիրը, ուրեմն նաեւ կը սարսափին անկէ: Սարսափը այնքան խոր է, որ հակառակ իրենց մասին ստեղծուած դրական բնագիրներու չռայլ քանակութեան, մէկ «աննպաստ» բնագիր մը բաւարար է խանգարելու անդորրը, քանի որ անոնք քաջ գիտեն թէ ինչպէս մէկ բնագիր մը ընդունակ է կուռքեր քանդելու եւ ինքնակերտ պատկերներ տապալելու: Դէպի դիրքային կամ դրամական նուիրապետութեան աստիճանները բարձրանալու համար տակաւ առ տակաւ ստեղծուած փխրուն ինքնապատկերը կրնայ ցնդիլ մէկ բնագիրի մը պատճառով:

Բնագիրի սարսափը գոյութիւն ունեցած է հինէն ի վեր եւ անվերջանալիօրէն պիտի շարունակուի: Պատմութեան մէջ ծանօթ են մատենադարաններու հրկիզումները, գիրքերու արգելումները, պետական անգիջում գրաքննութիւնները եւ մտաւորականներու աքսորներն ու սպանութիւնները: Այսօր, ԻԱ. դարու «քաղաքակիրթ» աշխարհի մէջ, մարդիկ մահացու ծեծի կ'ենթարկուին կամ կը բանտարկուին ֆէյսպուքի եւ Թուիթթըրի մէջ իրենց ազատ կարծիքը արտայայտած ըլլալնուն համար, ինքնուրոյն բնագիր ստեղծած ըլլալնուն համար, նոյնիսկ եթէ այդ բնագիրը կազմուած է քանի մը տողէ: Այս բոլորի մասին կը գտնուին բազմաթիւ ուսումնասիրութիւններ եւ նպատակ չունիմ կրկնել զանոնք: Նկատի չունիմ նաեւ մտաւորական բանավէճերը, որոնք կրնան նոր ու հետաքրքրական միտքեր յառաջացնել: Խօսքս կը վերաբերի անձնական կամ հիմնարկային ոչ-պետական դրսեւորումներուն, այսինքն՝ «վտանգաւոր» բնագիր մը դիմագրաւելու համար անհատի մը կամ հիմնարկի մը դիմած մեթոտներուն.

1. Բնագիր մը որ կէտ առ կէտ բացայայտումներ կը կատարէ՝ ըստ վստահելի տեղեկութիւններու եւ անձնական ապրուած փորձառութեան, գրեթէ անկարելի կ'ըլլայ պատասխանել *համապատասխան* բնագիրով, քանի որ իւրաքանչիւր մանրամասնում ակամայաբար կրնայ յառաջացնել նոր, ոչ-նպաստաւոր ինքնաբացայայտումներ: Պատասխանել կարելի է *անհամապատասխան* բնագիրով, ուր ընդհանուր ծրարումով մը առաջին բնագիրը կ'անուանուի անմակարդակ, անհեթեթ կամ անհիմն, իսկ գրողին անձը կը վարկաբեկուի զանազան ածականներով: Մանաւանդ գրողի մը կամ անձի մը հասցէագրուած ուղղակի վարկաբեկումը եւ անոր յառաջացուցած գայթակղութիւնն ու խայտառակութիւնը բաւական հաճելի են արդի հիմնահոսանքային լրատուամիջոցներուն եւ անկէ օգտուող ամբոխներուն:

2. Եթէ հետախուզող եւ բացայայտող բնագիրը տպագրուած է այլընտրանքային մամուլի մը մէջ եւ անոր շրջանառութիւնը «քանակապէս» սահմանափակ է, «քանակապէս» աւելի տարածուած մամուլը կը նախընտրէ զայն թողուլ անպատասխան, որպէսզի ան չգրաւէ աւելի լայն շրջանակներու ուշադրութիւնը, քանզի խիստ վտանգաւոր պիտի ըլլայ զանգուածներուն մօտ հետաքրքրութիւն արթնցնել անոր նկատմամբ: Անշուշտ «քանակութիւն» հասկացողութիւնն ինքնին արդիական-դրամատիրական խաբկանք մըն է: Քանակապէս տարածուած մամուլ մը մեծ մասամբ կը հիմնուի դէպքերու, պահերու, կէտերու, մկրատումներու, բնաբանէ անջատուած լուրերու, իշխանական պատումներու, տեղեկատուական ֆեթիշներու վրայ: Քանակապէս քիչ տարածուած մամուլ մը հնարաւորութիւն ունի հիմնուելու իրադարձութիւններու, ժամանակա-տարածութիւններու, շարունակական գիծերու, ամբողջականութիւններու, իմաստալի լուրերու, հասարակական մտահոգութիւններու, տեղեկատուական մեկնաբանութիւններու վրայ:

3. Ոչ միայն հետախուզական, այլ «ոչ-աւանդական» գրական բնագիրները եւս կրնան վտանգ ներկայացնել հաստատուած աւանդապաշտներուն եւ պահպանողականներուն համար, որոնց գոյութիւնը բաւական գերակշռող է յատկապէս հայկական սփիւռքին մէջ:

Օրինակ, 1984-ին Պէյրութի մէջ կը սկսի գրական շարժում մը՝ Նոր Գրականութիւն անունով, որ կը հրատարակէ իր առաջին գիրքը՝ անխորագիր, Հրազդան-Միհր-Սեւակ համադրական ստորագրութեամբ: 1988-ին լոյս կ'ընծայէ երկրորդ հատորը՝ *Սէր*, որուն նախաբանին մէջ կ'արձանագրուին նախորդ գիրքին արձագանգները. «Եւ այս գիրքը կոչեցինք *Սէր* մեր բոլոր սիրած բաներուն համար ու բոլոր չսիրածներուն ընդդէմ որպէս ապար:... «Սէր» մեր դէմ ցցուած կաղապարեալ լռութեան, մեր հանգանակի նեղսիրտ խեղաթիւրման եւ մեզի շնորհուած բնորոշումներուն՝ «ամբարտաւան, մեծ բրդող, սնամէջ եւ այլ լօլօներ:»»(1)

Յստակ է: Նոր Գրականութիւնը ըլլալով արդիական ուղղութիւն մը եւ իր էջերուն մէջէն վանելով տիրակալ աւանդականներու լեզուական եւ գաղափարախօսական բիւրեղացումները, զայն չէզոքացնելու ամենադիւրին միջոցը վարկաբեկումն էր՝ «ամբարտաւան, մեծ բրդող, սնամէջ»: Նոր Գրականութեան կեանքը շատ կարճ կ'ըլլայ:

4. Հայկական որոշ համայնքներ ունին բնագիրները դիմագրաւելու իւրայատուկ մեթոտ մը՝ որ կը կոչուի ակումբ: Ի՞նչ ըսես չի խօսուիր այս ակումբներուն մէջ, ի՞նչ լուր ուզես կայծակի արագութեամբ չի տարածուիր այնտեղ: Շատ բան չէ փոխուած Յակոբ Պարոնեանէն մինչեւ այսօր՝ լուրերու քաղքենիական տարածումին առումով: Այստեղ կարելի է վտանգաւոր բնագիր մը դիւրութեամբ հակադարձել՝ գրողին հանդէպ տարածելով վարկաբեկիչ եւ ստորացուցիչ վարկածներ, միշտ հեռանալով բնագիրի բուն, իրական եւ համակողմանի բովանդակութենէն: Անշուշտ, ասիկա տեղի կ'ունենայ առանց բնագիրը կարդալու, այլ բարեսիրտ, բարեպաշտ եւ գրամոլ ու գրքամոլ կարդացողի մը ողջունելի միջնորդութեամբ:

5. Խրախուսուող միջոց մը եղած է ծեծն ու սպանութիւնը: Հայկական իրականութիւնը ԺԹ. դարու վերջաւորութենէն սկսեալ փայլուն տեղ կը գրաւէ այս առումով: Ծեծուած ու սպաննուած մտաւորականներուն ցանկը տակաւին պէտք է կազմուի: Հռչակաւոր սպանութիւններէն մէկն է Արփիար Արփիարեանի դէպքը, որուն մասին վերջերս «Արփիար Արփիարեանի «գործը»» խորագիրով «ակադեմիական» յօդուած մը նոյնիսկ միտում կը ցուցաբերէ արդարացնել սպանութիւնը:

Հակառակ ծեծող-սպաննողներու կամ անոնց ետեւ կանգնած տարբեր կազմակերպութիւններու ինքնութեան իրազեկութեան, ցարդ բացայայտ մեղադրական քննարկումներ չեն կատարուած անոնց մասին: Առաւելագոյնը յիշատակուած է դէպքերուն անպատշաճութիւնը: Աւելին: Սփիւռքի մէջ կը գտնուին մտաւորականներ ծեծած քանի մը յայտնի անձեր՝ որոնք յետագային դարձած են ազգային երեսփոխան, առանց ոչ մէկ յուզում յառաջացնելու մտաւորականներուն եւ հասարակութեան մօտ:

5. Հետախուզող բնագիր մը տապալելու լաւագոյն միջոցներէն մէկն է դատավարութիւնը: Ռոպըրթ Փիքարտ 1982-ին կը գրէր՝ թէ ինչպէս Ամերիկայի մէջ օրէնսդրութիւնը կը սահմանափակէ լրագրական ազատութիւնը.

«Ամերիկացի հրատարակիչներն ու հաղորդավարները աւելի ու աւելի կը գործադրեն ինքնա-գրաքննութիւն՝ խուսափելու համար մեծածախս դատավարութիւններէ, որոնց հետեւանքը կ'ըլլայ մամուլի ազատութեան անկում, կ'ըսեն Միացեալ Նահանգներու լրագրողներն ու իրաւական մասնագէտները:

«Ինքնա-գրաքննութեան պատճառով հանրութիւնը կը զրկուի լայնատարած տեղեկութիւններէ, որովհետեւ լրագրողները կը վախնան զրպարտող եւ անձնական դատերէ, ինչպէս նաեւ կառավարութեան փաստաբաններու հետ ճակատումէ՝ որուն իրաւական ծախսը կրնայ հասնիլ ժամը 200 տոլարի: [...]

«Բազմաթիւ լրագրողներ եւ փաստաբաններ համոզուած են՝ որ հայցուորներու դատական յաղթանակները ներկայ տարիներուն կրնան աւելցնել դատական հայցերուն քանակը, քանի որ դատաւորներուն կողմէ վճռուած բարձր վնասահատուցումները բազմաթիւ անհատներու համար կրնան դրդապատճառ հանդիսանալ դատարան դիմել, նոյնիսկ եթէ զրպարտութիւնը ըլլայ անհիմն:

««Երկիրը կը գտնուի դատամոլական տրամադրութեան մէջ. ներկայիս ամէն մարդ դատական հայց կը ներկայացնէ, եւ նոյնիսկ եթէ անոր համար ոչ մէկ իրական հիմք կը գտնուի, շատ սուղ է դատերու պաշտպանութիւնը», կ'ըսէ *Writer's digest*-ի թղթակից Արթ Սփիքօ:

«Որեւէ դատի մը պաշտպանութիւնը՝ ներառեալ փաստաբանի ծախսերը, կը հասնի օրական մօտաւորապէս 1000 տոլարի, որ բաւարար է լրատուութեան ղեկավարներուն մեծամասնութիւնը պահելու սարսափի մէջ:»(2)

Հետախուզող լրագրող Տընի Ռոպէր 2001 եւ 2002-ին յաջորդաբար կը հրատարակէր *Révélations* եւ *La Boîte noire* գիրքերը, ուր ամենամանրամասն փաստարկումներով եւ վաւերական նիւթերով կը բացայայտէր Clearstream անունով լիւքսանպուրկեան դրամատունի (bank) մը աւազակային վարքագիծը, ուր բոլոր մեծ դրամատուներու, հսկայ ընկերութիւններու եւ մեծահարուստ դրամատէրերու գիտակցութեամբ ու մասնակցութեամբ տեղի կ'ունենայ անհաւատալի չափանիշերով դրամի սպիտակեցում: Հատորին յայտնաբերութիւնները բացարձակ իրականութիւններ են: Գիրքերուն կը յաջորդէ տասը տարի տեւած դատավարութիւններ եւ շուրջ 400 դատական կատարածուներու այցելութիւններ(3): «Զանազան գործընթացքներու համար ծախսուած է աւելի քան 150 հազար եւրօ: Ամէնուրեք դատեր բացին դէմս», կը տեղեկացնէ Տընի Ռոպէր 2010-ին(4): Հակառակ որ տասը տարի ետք դատարանները Ռոպէրին անպարտ կը յայտարարեն, բայց մէկ տասնամեակը քիչ չէ սնանկացնելու եւ հոգեպէս կործանելու լրագրող մը: Իսկ Clearstream-ը նոյն հզօրութեամբ կը շարունակէ իր գործունէութիւնը:

Ո՞վ ըսաւ որ աշխարհի դատական համակարգը հիմնուած է արդարութեան վրայ: Մենք անընդհատ կը հակասենք մեզի՝ երբ մէկ կողմէ կը գովերգենք դատական արդարութեան գաղափարը, միւս կողմէ կը դրուատենք բարձր սակագինով փաստաբանը: Վատ փաստաբանը հաւասար է ցած գումարի, լաւ փաստաբանը՝ բարձր գումարի: Ասիկա կատարելապէս կը յարմարի դրամատիրական արժէքային գնահատումի չափանիշերուն, ուր միշտ այն տպաւորութիւնը պէտք է գերիշխէ, որ շատ դրամ վաստակող անձը՝ ըլլայ ան գործարար թէ արուեստագէտ, լաւ մասնագէտ է: Նիւթէս բոլորովին անդին կը մնայ կրկնել գոնէ ձախերուն կողմէ տրուող հիմնաւոր բացատրութիւնները՝ թէ դրամը կապուած է ուժի, իշխանական շահու եւ դասակարգային գերադասութեան հետ, եւ երբեք չի կրնար արտայայտել իրի մը իրական արժէքը (ո՞վ ըսաւ, որ Փաւարոթթի-Տոմինկօ-Քարրերաս երրեակը՝ ժամանակուայ ամենասուղ թենորները, *միակ* լաւագոյններն էին. ո՞վ ըսաւ, որ սփիւռքահայութեան մէջ ամենասուղ վճարուած մտաւորականներն ու արուեստագէտները սփիւռքահայութեան լաւագոյն տարրերն են): Նոյն ձեւով նաեւ փաստաբանութիւնը: Ամենասուղ փաստաբանը այն է, որ նախ եւ առաջ ունի իր ազդեցութեան լծակներն ու շրջանակները եւ իր ձայնը աւելի դիւրին ազդեցութիւն կրնայ ունենալ դատաւորին վրայ:

Ուրեմն, ըստ նոյն ինքը դատականութեան կողմէ սահմանուած բայց չգրուած օրինաչափութեան, եթէ աղքատը արդար է եւ հարուստը անարդար, հարուստ անարդարը կը յաղթէ, քանի որ միայն վերջինը կարողութիւն ունի «լաւ» փաստաբան վարձելու: Ամերիկացի սպիտակները օրէնքի ուժով տեղահան ըրին միլիոնաւոր բնիկներ: Հայաստանի իշխանութիւնները օրէնքի ուժով տեղահան ըրին Հիւսիսային Պողոտայի բուն բնակիչները՝ փողոցը նուիրելով հարուստ դրամատէրերուն: Նոյն իշխանութիւնները օրէնքի ուժով մինչեւ այսօր տեղահան կ'ընեն հանքային վայրերը ապրող գիւղացիները՝ որոնք յաւէտ կը կորսնցնեն իրենց առօրեան ապահովող հողը: Ամբողջ աշխարհի մէջ, դրամատիրութիւնը եւ դրամատէրերը մեծ ներդրումներու պատրուակով օրէնքի ուժով իրաւունք ունին տեղահանել տեղաբնակները: Անոնց կարողութեան մէջ է «տեղահանել» բնագիրը: Օրէնքը հարուստի սեփականութիւնն է:

«Լաւ, օրէնքը քիչ մը նման է տպագիր մամուլին. ան ձեւով մը չէզոք է՝ կրնաս անոր կատարել տալ ինչ որ կ'ուզես: Ըսել կ'ուզեմ, որ օրէնքի դպրոցին մէջ փաստաբաններուն սորվածը խորամանկութիւնն է, այսինքն՝ ինչպէս թուղթի վրայ գրուած բառերը փոխակերպել ուժային գործիքներու: Եւ նայած թէ ուր կը գտնուի ուժը, օրէնքը պիտի նշանակէ տարբեր

4

ՔԱՂԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

# ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ
## ՍՈՒՐԲ ԽՈՐԱՆԻ ՎԵՐԱՕԾՈՒՄ

Ուրախութեամբ կը տեղեկացնենք որ Հելիոպոլսոյ Ազգային Գերեզմանատան Ամենայն Սրբոց Մատուռը վերանորոգուած ըլլալով՝ *Կիրակի, 30 Ապրիլ առաւօտեան*, պիտի կատարուի Ս. Խորանին վերաօծումը, եւ մատուցուի Սուրբ Պատարագ:

**Յաւարտ Ս. Պատարագի հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի**
Ազգային Բարերարներու եւ Եկեղեցւոյ Նուիրատուներու:

Սկիզբը արարողութեան  ժամը 10:00-ին

Դէպի Հելիոպոլսոյ Ազգային Գերեզմանատուն, ժողովուրդին երթ ու դարձը դիւրացնելու համար հաստատուած է հանրաշարժի սպասարկութիւն:

Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարէն  առաւօտեան ժամը 8:30-ին
Սալահ Էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն)  ժամը 9:00-ին

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

ԳԱԳԻԿ ԾԱՌՈՒԿԵԱՆ

## 2 ԿԱՄ Ի՞ՆՉՊԷՍ ՍՏԵՂԾԵԼ ՏԻՊԱՐ ՀԱՅՐԵՆԱՍԷՐԻ ՊԱՏԿԵՐԸ

ուր կղերականները հաւատարմութիւն կը ցուցադրեն իշխող կուսակցութիւններուն իսկ իշխանութիւնները՝ տիպար բարեպաշտութիւն եւ երկիւղածութիւն ազգային եկեղեցիին:»(53)

Այս բոլորը բաղձալի կը դարձնէ վերոյիշեալ աստուածային պատումի գոյութիւնը, այլեւ այդ պատում-գաղափարախօսութիւնը իր ետեւը կը քօղարկէ օլիկարքական համակարգի մը շահերը, ինչպէս կը ներկայացնէ Անտոնեան.

«Պետութեան եւ եկեղեցիին միջեւ քաղաքական եւ գաղափարախօսական միութիւնը կը պաշտօնականացուի 2007-ին, ընդունելով օրէնք մը՝ որ կը կարգաւորէ երկու կողմերուն միջեւ բոլոր օրինական, ընկերային եւ տնտեսական յարաբերութիւնները: Այս օրէնքը եկեղեցիին արտօնութիւն կու տայ կառուցել եւ վերանորոգել կրօնական կառոյցները՝ յատկացումարներ ստանալով պետական պիւտճէէն դուրս: Եկեղեցիին շնորհելով նաեւ ուրիշ իրաւունքներ, հարկային բացառումներ եւ ազատութիւններ, այլեւ կազմելով միացեալ մարմիններ եւ դաշտը բանալով համատեղ գործունէութիւններու, պետութիւնը սկսաւ աշխարհիկ եւ կղերական աղբիւրներու միաձուլումի, լծակներու վերահսկողութեան եւ եկեղեցիի «օլիկարքացում»-ի գործընթացք մը թէ՛ տնտեսական եւ թէ՛ հասարակական-մշակութային առումներով:»(54)

Այսպէս, եկեղեցաշինութիւնը կը դառնայ նպաստաւոր դաշտ մը օլիկարքական վերնախաւին համար: «[Հայաստանի] [օ]լիգարխները ոչ միայն եկեղեցի են չինում, այլեւ՝ ռեստորան, կազինօ, գիշերային ակումբ եւ այլն» կը գրէ Ջալոյեան ու կ'աւելցնէ. «Այսինքն եկեղեցին նոյն շարքում է, ինչ վայելքների կենտրոնները: Աստուած օլիգարխներին ամէն ինչ թոյլատրել է, որովհետեւ եկեղեցին սեփականուել է նրանց կողմից:»(55)

(Շար. 5)

ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

51. Վահէ Սարուխանեան, «Անկախութիւնից յետոյ Հայաստանում ու Արցախում 100 եկեղեցի է կառուցուել. ծախսուել է ամենաքիչը 50 մլն դոլար», *Հետք*, 11 Յունուար 2017, http://hetq.am/arm/news/74539/ankakhutyunic-heto-hayastanum-u-arcakhum-100-ekexeci-e-karucvel-tsakhsvel-e-amenaqichy-50-mln-dolar.html:

52. Վարդան Ջալոյեան, «Եկեղեցին չի ստեղծում օլիգարխիա, այն օրինականացնում է նրա իշխանութիւնը», *Հայաստանի կրօնները*, 16 Յունուար 2014, http://www.religions.am/arm/interviews/Եկեղեցին-չի-ստեղծում-օլիգարխիա_-այն-օրինականացնում-է-նրա-իշխանութիւնը/:

53. Yulia Antonyan, 'Political Power and Church Construction in Armenia', *Religion, Nation and Democracy in the South Caucasus*, edited by Alexander Agadjanian, Ansgar Jödicke and Evert van der Zweerde, Oxon, New York: Routledge, 2015, pp. 82-83:

54. Անդ, էջ 84:

55. Վարդան Ջալոյեան, նշ. յօդ.ը:

## 3 ԲՆԱԳԻՐԸ՝ ՍԱՐՍԱՓԻ ԱՂԲԻՒՐ

բաներ:» Ասիկա հանճարեղ մտաւորական Նոամ Չոմսքիի խօսքերն են(5): Բայց այդ փոխակերպումը եւ խորամանկութիւնը գործադրելու համար համակարգը պէտք ունի ազդեցիկ, ուրեմն՝ բարձր սակագինով, փաստաբաններու:

Օրէնքը լաւագոյն միջոց մըն է կասեցնելու բնագիրը: Գրողներ՝ որոնք քաջատեղեակ են դատական այս մեքանիզմին, ի սկզբանէ պիտի չարտադրեն իրենց բնագիրը: Եւ այս է օրէնքին գլխաւոր նպատակը: Ոչ թէ արդարութիւնը բացայայտող բնագիրի մը դէմ վճիռ արձակել, այլ չթողուլ որ նման բնագիր գոյանայ ընդհանրապէս: Արդարադատութիւնը աւարտած կ'ըլլայ իր պարտականութիւնը: Արադարադատութիւնը լռեցուցած կ'ըլլայ արդարութեան ձայնը:

Վերջացնելու համար նշեմ՝ որ այս հինգ կէտերը յստակ գիծերով բաժնուած չեն իրարմէ, անոնցմէ երկուքը կամ երեքը կրնան ընթանալ համատեղօրէն, չհաշուելով նաեւ ուրիշ բազմաթիւ նրբութիւններ կապուած պատասխանել-չպատասխանելու եղանակներուն հետ:

ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Նոր Գրականութեան հետազօտութիւն մը կատարած է Մարուշ Երամեան իր թեկնածուական անտիպ թէզին մէջ՝ *Ուրուանկար 1965-1995 թուականներու սփիւռքահայ բանաստեղծութեան*: Յիշեալ քաղուածքը կատարած եմ այս աշխատութենէն:

2. Robert G. Picard, 'Self-Censorship Threatens US Press Freedom'. *Index on Censorship*, 11:3, 1982, p. 15:

3. Marianne Bouchard, 'French Landmark Case: A New Dawn for Investigative Journalism?', *journalism.co.uk.*, 11 January 2012, https://www.journalism.co.uk/news-features/french-landmark-case-a-new-dawn-for-investigative-journalism-/s5/a547334/:

4. 'Denis Robert', Propos recueillis par Pryska Ducœurjoly, *Nexus 70*, septembre-octobre 2010, p. 19:

5. *Understanding Power: The Indispensable Chomsky*, Edited by Peter R. Mitchell and John Schoeffel, Penguin Books, 2002, p. 347:

## 1 ՀԱՅԱՍՏԱՆԻ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ. ՓԱՍՏԱՑԻ ԿԱՐԳԱՎԻՃԱԿԸ ԿԸ ՅԱՂԹԷ Ի ՎՆԱՍ...

թիւնը: Այս տարի, առաջին անգամ ըլլալով, շարք մը սփիւռքահայեր աշխուժօրէն խրախուսուեցան եւ հրաւիրուեցան մասնակցելու ընտրութեան դիտարկումներուն Քաղաքացի Դիտորդ նախաձեռնութեան ընդմէջէն: Այս նախաձեռնութիւնը՝ որ կազմակերպուած էր Հասարակական Կազմակերպութիւններու (ՀԿ) դաշնակցութեամբ, հայկական սփիւռքին կոչ ըրաւ «միկունք կանգնիլ ժողովրդավարութեան եւ օրէնքի գերակայութեան:» Transparency Tour 2017-ը՝ որ կրնայ օրինակ ծառայել բազմաթիւ մասնագէտներու նկարագրած «կամաւորա-զբօսաշրջիկութեան» (voluntourism), կը ներառնէր հանդիպումներ «տեղացի ժողովրդավարամէտ աքթիւիսթներուն եւ մտաւոր առաջնորդներուն» հետ եւ առիթ մըն էր ծանօթանալու հայկական քաղաքական հիմնարկներուն հետ ու ներքաշուիլ «հասարակութեան, մշակոյթի եւ ներկայ իրադարձութիւններուն մէջ:»

Թէեւ ընտրութեան դիտարկումը անկասկած ունի իր արժէքը, բայց այս գործողութիւնը եւս թեքնիքական լուծում մըն է՝ որ կը փեթիշիզացնէ ընտրութեան օրը եւ կ'անտեսէ դէպի ընտրութիւնը առաջնորդող գործընթացքը: Հակառակ որ հարիւրաւոր սփիւռքահայ անհատներ դիտորդական առաքելութեամբ ճամբորդեցին Հայաստան, բայց հանրածանօթ եւ յարգուած ՀԿ-ներէ, ինչպէս նաեւ աւելի անյայտ եւ քիչ մը կասկածելի կազմակերպութիւններէ հաւաքուած դիտորդներուն քանակը անոնց ձգեց չուքի մէջ: Ըստ տեղական աղբիւրներու, կասկածելի կազմակերպութիւններու դիտորդական առաքելութիւնները կը ցուցանշեն՝ թէ ինչպէս քուէի կեղծարարները կը հակամիտին սորվիլ, յարմարուիլ եւ զարգանալ:

Յստակ ըլլալու համար նշենք՝ որ այստեղ մեր նպատակը չէ առարկել թեքնոլոժիական լուծումներուն եւ դիտորդական առաքելութիւններուն անկարեւորութիւնը: Ընդհակառակը, անոնք կրնան մեծապէս օժանդակել ընդլայնելու հանրութեան վստահութիւնը ընտրական ընթացքին նկատմամբ: Բայց եւ այնպէս, անոնք չեն կրնար փոխարինել շատ աւելի դժուար գործընթացքը՝ որուն միջոցով կարելի է հասկնալ եւ հասցէագրել այն գլխաւոր պատճառներն ու գործօնները որոնք մարդոց կ'առաջնորդեն ծախելու իրենց քուէները:

**Քաղաքացիական հասարակութիւնը եւ ժողովրդավարութիւնը զայրոյթի եւ անվստահութեան դարաշրջանին**

Համաձայն չափորոշիչ մեկնաբանութիւններու մեծամասնութեան, քաղաքացիական հասարակութիւնը կարեւոր դեր կը խաղայ ժողովրդավարութեան կառուցումի գործին՝ խթանելով աշխոյժ քաղաքացիական մասնակցութիւն, երկխօսութիւն եւ բանավէճ, ինչպէս նաեւ զարգացնելով հասարակական դրամագլուխը եւ վստահութիւնը: Բայց եւ այնպէս վերջին տարիներուն, բազմաթիւ հիմնարկներու, ներառեալ քաղաքական կուսակցութիւններու, արհմիութիւններու եւ ՀԿ-ներու հանդէպ հանրային վստահութիւնը կտրուկ կերպով անկում ապրած է, ոչ միայն Հայաստանի մէջ, այլ աշխարհի բազմաթիւ վայրեր: Ոմանք կը պնդեն՝ թէ այսօր կ'ապրինք զայրոյթի եւ անվստահութեան դարաշրջան մը, ուր քաղաքականութեան վրայ ներգործութիւն ունին վախն ու անհանգստութիւնը: Բազմաթիւ մասնագէտներ համաձայն են՝ թէ այս հարցերուն հետ կապուած ներկայ բողոքի ցոյցերը ամբողջ աշխարհի մէջ կ'արտացոլեն ժողովրդավարութեան բացակայութեան, հասարակական արդարութեան եւ արժանապատուութեան, ինչպէս նաեւ աճող անկայունութեան եւ անհաւասարութեան հանդէպ աճող մտահոգութիւնները:

2010-էն ի վեր Հայաստան եւս ունեցաւ ցոյցերու եւ քաղաքացիական զօրաշարժի իր բաժինը՝ ընդդէմ փտածութեան, օրէնքի գերիշխանութեան/ժողովրդավարութեան բացակայութեան, օլիկարքական դրամատիրութեան աճին եւ սովորական հայ քաղաքացիներուն մտահոգութիւնները հասցէագրելու պաշտօնական քաղաքական վերնախաւերու ձախողութեան: Իմ հետազօտութեանս մէջ հասայ այն եզրակացութեան՝ թէ Հայաստանի աքթիւիսթները քաղաքացի հասկացողութիւնը յաճախ կ'ըմբռնեն իբրեւ անհատներ՝ որոնք ունին իրաւունքներ, ինչպէս նաեւ պատասխանատուութիւններ իրենց համայնքներուն եւ իրենց երկիրին հանդէպ: Այս իմաստով, անոնք մարդոց կրնան քաջալերել դառնալու իրենց երկիրին «տէրեր»-ը, այսինքն՝ ըլլալու հասարակութեան աշխոյժ ենթականեր փոխանակ մնալու կրաւորական եւ լուռ հանդիսատեսներ, որոնք թէեւ առանձնաբար դժգոհութիւններ կը յայտնեն տարբեր խնդիրներու շուրջ, բայց երբեք փոխելու համար կը դիմեն ոչ մէկ հասարակական գործողութեան:

Արդարեւ, աքթիւիսթները կ'ընդունին՝ որ հակառակ ակներեւ զայրոյթին եւ դժգոհութեան, լիազօրուած քաղաքացիի եւ քաղաքացիական պատասխանատուութեան այս զգացողութիւնը լայն տարածում չունի Հայաստանի մէջ: Ինչպէս Սօնա Մանուսեան կը գրէ՝ կը շարունակուի «դիմադրութեան դէմ դիմադրութիւնը Հայաստանի մէջ», եւ «կը գտնուի կացութիւնը փոխելու ցանկութիւն մը, որուն միաժամանակ կ'ուղեկցի փոփոխութեան հանդէպ վախ մը:» Որոշ Երեւանի աքթիւիսթներ, քաղաքացիական մասնակցութիւնը ընդարձակելու նպատակով փորձած են կապեր հաստատել մայրաքաղաքէն դուրս գտնուող համայնքներու եւ անհատներու հետ, թէեւ անոնք կ'ընդունին՝ որ գիտակցութիւնը բարձրացնելու եւ ժողովրդավարութեան մշակոյթ կառուցելու համար շատ աւելի աշխատանք պէտք է տարուի:

Մէյ մը որ հարցերը հանդարտին, կը մնայ տեսնել թէ ինչպէս Հայաստանի քաղաքացիական հասարակութիւնը պիտի արձագանգէ վերջին ընտրութիւններուն: Արդե՞օք տեղի պիտի տայ յուսախաբութեան եւ վհատութեան թէ պիտի սկսի դժուար եւ երկարատեւ աշխատանք մը որպէսզի կառուցէ ժողովրդավարութիւնը վարէն դէպի վեր: Յստակօրէն շատ բան կայ ընելիք եւ տակաւին շատ կանուխ է գուշակութիւններ կատարելու համար:

*The London School of Economics and Political Science*

http://blogs.lse.ac.uk/europpblog/2017/04/04/armenias-election-the-status-quo-wins-at-the-expense-of-democracy/

Անգլերէնէ թարգմանեց՝ Հ. Ա

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1790 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 11 ՄԱՅԻՍ 2017 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Ղրկ. ٢٠١٧ مايو ١١ الخميس ١٧٩٠ عدد رقم


## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆՈՐ ԱՍՈՑԱՑՈՒՄԸ

### ՅԱԿՈԲ ԲԱԴԱԼԵԱՆ

Մայիսի 1-ին Հայաստանում աշխատանքի կամ աշխատաւորների օրը դէ ֆակտօ անպաշտպանութեան օրն է, քանի որ Հայաստանում աշխատող հասկացութիւնը առաւելապէս ասոցացւում է անպաշտպանութեան հետ:

Այդ երեւոյթն իհարկէ համատարած չէ, քանի որ ներկայում Հայաստանում կան աշխատանքային մի շարք միջավայրեր, որտեղ գործատու-աշխատող յարաբերութիւնն ամենեւին այնպիսին չէ, ինչպէս օրինակ «ՍԱՍ-ի ժողովի» մասին պատմող յայտնի ձայնագրութիւնում:

Հայաստանում նոր որակի աշխատանքային յարաբերութիւնը, գործատու-աշխատող նոր մշակոյթը առկայ է հիմնականում տեղեկատուական տեխնոլոգիաների, նորարար այլ մօտեցումներով առաջնորդուող ներդրումների միջավայրերում: Այլ կերպ ասած, նոր բիզնէս մշակոյթի, նոր մտածողութեան տէր ներդրողների ստեղծած աշխատանքային շրջանակներում:

Այդ շրջանակը Հայաստանում գերակշռող չէ: Ընդ որում, խօսքը միայն տեսակարար կշռի մասին չէ, այլ նաեւ Հայաստանում պետական կեանքի համար կարեւոր քաղաքական որոշումների կայացման վրայ ազդեցութեան մասով՝ անմիջական մասնակցութեան կամ լոբբինգի առումով:

Հայաստանում այդ հարթութիւնում գերակշռում են գործատուները, որոնց համար անհրաժեշտ է, որպէսզի աշխատողը չլինի օրէնսդրօրէն պաշտպանուած, լինի իրենցից կախուած, ենթակայ, գործատուին համարի նոյնիսկ փրկիչ: Հակառակ պարագայում հնարաւոր չի լինի վերարտադրել պետական կեանքի կազմակերպման գործում ազդեցութիւնը՝ անմիջական մասնակցի, թէ լոբբիստի կարգավիճակով:

Այսինքն, հակառակ պարագայում կը կորի իշխանութիւնը:

Այդպիսով, խնդրի հիմքում դարձեալ իշխանութեան հարցն է:

Ըստ այդմ, հարց է առաջանում, Հայաստանում նոր որակի բիզնէս մշակոյթի կրողները, նոր որակի ներդրողները դնո՞ւմ են իշխանութեան խնդիր, կամ գիտակցո՞ւմ են իրենց ներդրումային, տնտեսական գործունէութեան այդ քաղաքական համգամանքը, դրա անխուսափելիութիւնը, նաեւ ընդհանրապէս հայաստանեան միջավայրում որակական փոփոխութեան անհրաժեշտութիւնը, թէ՞ նրանց համար խնդիր չէ նոր որակի «կղզի» լինելը կամ մնալը՝ բաւարարուելով գուցէ «կղզիների չգրուած ասոցիացիայի» հեռանկարով:

Ինչ խօսք, ժամանակն աշխատում է նրանց օգտին:

Պարզապէս ժամանակը Հայաստանի օգտին չէ, քանի որ մինչ այդ, «մայրցամաքային գործատուների» մտածողութեան ազդեցութեան շարունակութեան դէպքում հետեւանքը Հայաստանի համար կարող է լինել ծանր: «Կղզին» կարող է մնալ անձեռնամխելի, բայց դա «կղզու», ոչ թէ Հայաստանի խնդրի լուծում է: Հետեւաբար հարցն այն է, թէ կա՞յ արդեօք Հայաստանի համար պատասխանատուութեան խնդիր եւ դրա շուրջ նոր որակի ներդրողների թէկուզ չգրուած, բայց լիարժէք գիտակցուող ասոցացում:

Դրանից կը բխի հասարակական-քաղաքական զարգացումների բոլորովին այլ վեկտոր:

1 Մայիս 2017

http://www.lragir.am/index/arm/0/society/view/152644

---

ԹՈՒՐՔԻԱ

## ԳԱՐԵԳԻՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ՊԵՔՃԵԱՆԸ ՉԻ ՊԱՏՐԱՍՏՒՈՒՄ ՀՐԱԺԱՐՈՒԵԼ ՊՈԼՍՈՅ ՊԱՏՐԻԱՐՔԱԿԱՆ ՏԵՂԱՊԱՀԻ ՊԱՇՏՕՆԻՑ

4 Մայիս, 1in.am – Պոլսոյ Հայոց Պատրիարքական տեղապահ ընտրուած Գարեգին Արքեպիսկոպոս Պեքճեանը հերքել է հայկական մի շարք լրատուամիջոցներով տարածուած տեղեկութիւնն այն մասին, թէ պատրաստւում է հրաժարական տալ: Այս մասին յայտնում է Ստամբուլի հայկական *Ժամանակ* օրաթերթը:

Անդրադառնալով լրատուամիջոցներից մէկին տուած մեկնաբանութեանը՝ Պեքճեանը պարզաբանել է. «Խօսքի մէջ ասացի՝ եթէ պէտք լինի, կարող եմ հրաժարուել, սակայն նման բան չկայ»:

Սրբազան Հայրն անդրադարձել է Թուրքիայի նախագահ Էրդողանի՝ Ապրիլի 24-ին արած ուղերձին ու դրանում պատրիարքական ընտրութեան մասին ակնարկին՝ նշելով. «Լաւ է, որ նման պատգամ է հրապարակել: Անցեալ տարի էլ էր հրապարակել, այս տարի էլ: Ինչ վերաբերում է պատրիարքական ընտրութեան հարցին նրա անդրադարձին՝ դա լաւ է, տեսնենք արդիւնքում ինչ է լինելու»:

Տեղապահը յայտնել է, որ առաջիկայ օրերին կը ժամանի Մայր Աթոռ Սուրբ Էջմիածին, այնուհետեւ կը մեկնի Մոսկուա՝ մասնակցելու Գերագոյն Հոգեւոր Խորհրդի ժողովներին: Հաւանական է, որ Էջմիածնում Պեքճեանը Ամենայն Հայոց Գարեգին Բ կաթողիկոսի հետ քննարկի պատրիարքական աթոռի շուրջ ստեղծուած հարցը:

Պեքչեանը Գերագոյն Հոգեւոր Խորհրդի անդամ է որպէս Գերմանիայի Հայոց թեմի առաջնորդ, սակայն Մոսկուայում կայանալիք նիստին մասնակցելու է որպէս Պոլսոյ պատրիարքական աթոռի ընտրեալ տեղապահ: *Ժամանակի* տեղեկութիւններով՝ պատրիարքական փոխանորդ Արամ Արքեպիսկոպոս Աթէշեանը առաջիկայում չունի ծրագրած այցեր Մայր Աթոռ կամ Մոսկուա՝ մասնակցելու Գերագոյն Հոգեւոր Խորհրդի նիստերին, ուստի ԳՀԽ ժողովին Պոլսոյ պատրիարքարանի միակ ներկայացուցիչը լինելու է Պեքճեանը:

---

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՊԱՇՏՕՆՆԵՐԻ ԲԱՇԽՈՒՄԻՑ ՈՐՈՇ ՄԱՆՐԱՄԱՍՆԵՐ ԵՆ ՅԱՅՏՆԻ ԴԱՐՁԵԼ. *ՀՐԱՊԱՐԱԿ*

*Հրապարակ* թերթը գրում է. «Ազգային Ժողովի պաշտօնների բաշխման գործընթացը թէպէտ խիստ գաղտնի է պահւում Հայաստանի Հանրապետական Կուսակցութեան շարքային անդամներից, ՀՀԿ Գործադիր Մարմնի անդամներին Սերժ Սարգսեանն ասել է, որ կ՚իմանան մինչեւ ԱԺ առաջին նիստը՝ ԳՄ նախորդող նիստում: Այդուհանդերձ, խորհրդարանական շրջանակներում արդէն գիտեն, որ պետաիրաւական հարցերի յանձնաժողովի նախկին նախագահ Յովհաննէս Սահակեանը կը փոխարինի Հրայր Թովմասեանին՝ նշանակուելով ԱԺ աշխատակազմի ղեկավար: Իսկ արդարադատութեան նախարարի պաշտօնը կը զբաղեցնի ՀՀ նախագահի իրաւական հարցերով օգնական Հրայր Ղուկասեանը: Ընդհանրապէս, պաշտօնների բաշխումը կը կատարուի երկու փուլով՝ մինչեւ 2018 թիւը եւ 2018-ից յետոյ»:

---

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՌՈԲԵՐՏ ՔՈՉԱՐԵԱՆԸ ԲԱՆԱԿՑԵԼ Է ՄԻ ՓԱՍՏԱԹՂԹԻ ՇՈՒՐՋ, ՈՐՏԵՂ ԽՕՍՈՒԵԼ Է 6-7 ՇՐՋԱՆԻ ՎԵՐԱԴԱՐՁԻ ՄԱՍԻՆ. *ԱՌԱՒՕՏ*

Լրագրող Թաթուլ Յակոբեանն *Առաւօտի* հետ զրոյցում յիշեցրել է, որ Հայաստանի երկրորդ նախագահ Ռոբերտ Քոչարեանը բանակցել է մի փաստաթղթի շուրջ, որտեղ խօսք է գնացել 6-7 շրջանի վերադարձի մասին: Նա նշել է. «Պէտք չէ ամբողջ խելութիւնը տանել նրան, որ Սերժ Սարգսեանն ու Լեւոն Տէր-Պետրոսեանը հող տուողներ են, իսկ Ռոբերտ Քոչարեանը հայրենասէր էր եւ հող չէր տալիս: Նա էլ էր բանակցում մի փաստաթղթի շուրջ, ըստ որի՝ Հայաստանը գոնէ փաստաթղթային մակարդակով պատասխանատուութիւն էր յայտարարում, որ Ղարաբաղի կարգավիճակի, անկախութեան դիմաց հայկական կողմը յետ տայ առնուազն վեց շրջաններ»: Թաթուլ Յակոբեանը գերադասել է չանդրադառնալ միւս քաղաքական ուժերի նախընտրական ծրագրերին՝ պատճառաբանելով, որ եթէ անգամ նրանց ծրագրում գրուած են Ղարաբաղեան կարգաւորման թէզերը, դա մի բան է, այլ բան է, երբ իշխանութեան մէջ են եւ ռէալ վարում են բանակցութիւններ:

---

## ԵԱՀԿ ՊԱՇՏՕՆԵԱՆԵՐԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՆ ԵՐԵՒԱՆԵԱՆ ԳՐԱՍԵՆԵԱԿԻ ՓԱԿՄԱՆ ՄԱՍԻՆ

4 Մայիս, Lragir.am – ԵԱՀԿ Խորհրդարանական վեհաժողովի նախագահ Քրիստին Մուտոնէնը եւ Հարաւային Կովկասում յատուկ ներկայացուցիչ Քրիստիան Վիգենինն ափսոսանք են յայտնել, որ անհնար է եղել երկարաձգել Երեւանում ԵԱՀԿ գրասենեակի մանդատը: Այն կը փակուի մօտակայ ամիսների ընթացքում, նշուած է կազմակերպութեան տարածած մամուլի հաղորդագրութիւնում:

Մուտոնէնի յայտարարութիւնում նշուած է, որ չնայած գործադրուած ջանքերին, Մշտական Խորհուրդը չի կարողացել կոնսենսուսի հասնել Երեւանում ԵԱՀԿ գրասենեակի կարեւոր աշխատանքը շարունակելու հարցում: Վիգենինն էլ ասել է, որ ԵԱՀԿ-ն շարունակելու է ակտիւ ներգրաւուած լինել տարածաշրջանում:

---

## ԹՈՒՐՔ ՊԱՏՄԱԲԱՆ ԹԱՆԷՐ ԱՔՉԱՄԸ ՀԱՅՈՑ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ ՆՈՐ ԱՐԽԻՒԱՅԻՆ ՓԱՍՏԱԹՈՒՂԹ Է ՀՐԱՊԱՐԱԿԵԼ

Թուրք պատմաբան Թանէր Աքչամը, որն առաջին թուրք գիտնականներից մէկն է, որ ճանաչել է Հայոց Ցեղասպանութիւնը, հայերի կոտորածի վերաբերեալ նոր արխիւային փաստաթղթեր է հրապարակել: Այս մասին հաղորդում է *Ակօս* պարբերականը:

Թանէր Աքչամը ներկայացրել է հեռագիր, որը 1915 թ. Յուլիսի 4-ին ուղարկուել է Խարբերդի նահանգապետին, վերջինս այն պէտք է փոխանցէր Նազիմ բէյին: Հեռագիրը տեղեկութիւններ է խնդրում այդ տարածքից տեղահանուող հայերի մասին: «Այդ վնասակար տարրերը միայն տեղահանւո՞ւմ են, թէ՞ նաեւ ոչնչացւում, խնդրում ենք բացայայտօրէն տեղեկացրէք մեզ, եղբայր», – ասւում է Բեհաէդդին Շաքիրի կողմից գրուած նամակում:

Հեռագրի վրայ դրուած է յատուկ կնիք, որը հաստատում է փաստաթղթի խելութիւնը:

Աւելի վաղ Աքչամը յայտարարել էր, որ Հայոց Ցեղասպանութեան վերաբերեալ արժէքաւոր փաստաթղթեր է յայտնաբերել Երուսաղէմի Հայոց պատրիարքարանում:

## ԳԱԳԻԿ ԾԱՌՈՒԿԵԱՆ
## ԿԱՄ Ի՞ՆՉՊԷՍ ՍՏԵՂԾԵԼ ՏԻՊԱՐ ՀԱՅՐԵՆԱՍԷՐԻ ՊԱՏԿԵՐԸ

Հ. ԱՒԱԳԵԱՆ

### Գ. ԵՒ Դ. ՄԱՍԵՐ
### ՄԱՐԶԱՆՔ

Եթէ Ծառուկեան եկեղեցաշինութիւնը կատարած էր աստուածային նախախնամութեան շնորհիւ, ապա մարզանքը (sport) իբր իր տարերքն է՝ ան չի կրնար ապրիլ առանց մարզանքի:

Ահաւասիկ Հայաստանի Ազգային Օլիմպիական Կոմիտէի առաջին նախագահ Ռուբէն Յակոբեանի խօսքը. «Ինքը ապրում ա դրանով: Էդ մարդը լրիւ սպորտի մարդ ա: Սպորտը իրա ոնց որ ասենք կեանքի դոբինգն ա:» Նոյն միտքը կ՚արտայայտէ նաեւ Հայաստանի Ազգային Օլիմպիական Կոմիտէի նախկին նախագահ Իշխան Զաքարեան. «Համարձակ կարող եմ ասել որ սպորտ աշխարհին օգնելը եւ օժանդակելը իր տարերքն է:»

Գ. եւ Դ. մասերուն մէջ կը ցուցադրուի Ծառուկեանի անձնական-մարմնական ուժը: Մանրամասն կը նկարագրուի՝ թէ ինչպէս 1996-ին եղած է բազկամարտի (arm wrestling) աշխարհի ախոյեան ԱՄՆ-ի մէջ: Երկիցս կը ցուցադրուի նաեւ տեսագրութիւն մը՝ ուր 190 քիլօ ծանրաբարձութեան նախավարժանքի ընթացքին ծանրութիւնը կը բարձրացնէ տասը անգամէ աւելի:

Ուժի գաղափարախօսութիւնը կարմիր թելի նման կ՚անցնի երկու շարքերուն ընդմէջէն: Անձի բացարձակ ուժը կը հանդիսանայ դրամատիրական գաղափարախօսութեան ողնասիւնը եւ իրի արժեւորումի գլխաւոր գործօնը: Ուժային համակարգերու մեկնաբան, «ուժ»-ի փիլիսոփայ Միշէլ Ֆուքօ չէ փորձած դիմադրել այդ համակարգերը: Քննադատելով հանդերձ ուժային համակարգերը (սեռականութեան արդի համակարգը, հիմնարկային տիրապետութիւնները, եւ այլն), ան աւելի նպաստած է ուժային պատումի վերարտադրութեան քան անոր տկարացումին:

Ուժային համակարգին մէջ կը ներկայացուի Ծառուկեանի «նպաստ»-ները Հայաստանի մարզաշխարհին՝ Աշոտ Սարգսեանի յիշատակին նուիրուած բազկամարտի տարեկան մարզական մրցոյթը, մարզիկներու եւ մարզիչներու ամսականները եւ յաղթանակի պարագային պարգեւները: Ամենակարեւորը՝ Հայաստանի Ազգային Օլիմպիական Կոմիտէի փոխ նախագահի եւ ապա նախագահի գրաւած դիրքերը եւ այս առումով իր անձնական քսակէն ծախսած մեծաքանակ գումարները Հայաստանի զանազան վայրերու մարզական ենթակառոյցի հիմնադրութեան եւ զարգացումին համար: Ասոր կիզակէտը կը հանդիսանայ Օլիմպիական Հաւաքականների Կենտրոնի հսկայ կառոյցը (մօտ 9000 ք.մ. մակերեսով տարածք, մօտ 35 հազար ք.մ. շինութիւն), ամբողջապէս կառուցուած եւ սարքաւորուած իր անձնական դրամով: Հայաստանի Ազգային Օլիմպիական Կոմիտէն՝ երկիրի մեծագոյն մարզական կազմակերպութիւնը, կը դառնայ Ծառուկեանի փաստացի սեփականութիւն-մենատիրութիւնը: Ուժի համակեդրոնացում մէկ անձի մը ձեռքը:

Մարզանքը, ինչպէս Սթանլի Էյթզըն կը գրէ, վերահսկողութեան միջոց մըն է հասարակութեան վրայ: Նախ, կը գտնուի մարզանքի եւ ազգայնականութեան սերտ կապը. «Միջազգային մարզական մրցոյթներու մէջ ձեռք բերուած յաջողութիւնը կը միտի հպարտութիւն յառաջացնել տուեալ ազգի քաղաքացիներուն: Օլիմփիքները եւ միւս միջազգային խաղերը կը միտին մարզիկներուն, մարզիչներուն, քաղաքական գործիչներուն, մամուլին, երկրպագուներուն եւ նոյնիսկ մարզանքով չզբաղուողներուն մէջ խթանել «մենք» ընդդէմ «անոնց» զգացողութիւնը: [...] Այսպէս, միջազգային մրցոյթները կը դիտուին իբրեւ քաղաքական մրցոյթներ, ուր ազգերը կը շահին կամ կը կորսնցնեն համաշխարհային խորհրդանշական պատերազմի մը մէջ:»(56)

Այս բնաբանը նկատի ունենալով կարելի է լսել Բազմամարտի Հայաստանի Ֆեդերացիայի նախագահ Արսէն Գաբրիէլեանի խօսքը ֆիլմին մէջ. «1998 թուականին էր, մեկնեցինք հերթական Եւրոպայի առաջնութեանը, որը որ տեղի էր ունենում Լիտվայի Պալանգա քաղաքում: Մէկ օր առաջ էր եթէ չեմ սխալւում, չքերթի օրն էր, ռուսաստանցի էր կարծեմ, երբոր տեսաւ թէ իրեն ինչ հակառակորդ ա սպասում, նրա աչքերը, նոյնիսկ ժողովրդական լեզուով ասեմ, թռել ա նրա ճակատին՝ թէ սա ինչ յաղթանդամ հակառակորդ ա: Նա հայեացքով սենց Ծառուկեանին հետեւեց եւ ես պատկերացնում եմ թէ ինչ հոգեբանական պարտութիւն ապրեց հէնց էդ պահին: Այդ ժամանակ էլ պարոն Ծառուկեանը իրեն հաւասարը չունեցաւ, Եւրոպայի առաջնութիւնում նա նոյնպէս ճանաչուեց յաղթող:»

Օգտագործուած է «հակառակորդ» բառը՝ փոխանակ մարզաշխարհին բնորոշ «մրցակից» բառին, իսկ ասիկա այն բառն է զոր հայաստանեան լրատուամիջոցները ամէն օր կը գործածեն նկարագրելու համար Ազրպէյճանը՝ «հակառակորդը տեղի տուաւ», «հակառակորդը նահանջեց», «հակառակորդը խախտեց զինադադարը», եւ այլն: Ասոր կը յաջորդէ հակառակորդի (ռուս մարզիկի) հոգեկան խախտումը՝ «աչքերը թռել ա նրա ճակատին» եւ «հայեացքով սենց Ծառուկեանին հետեւեց»: Ասիկա կը մտնէ պատերազմական «հակառակորդ»-ի պատկերը ստեղծելու հնարքի գործընթացքին մէջ՝ մտացածին, երեւակայական, անիրական, ամբոխավարական պատկեր մը, որ մեծապէս նպաստաւոր է պատերազմի այս կողմը գտնուող վերնախաւի դիրքերը ամրացնելու համար: Վերջապէս երրորդ քայլը՝ երկու փուլերով: Առաջին փուլը «հոգեկան պարտութիւն»-ն է, ինչպէս որ հայ զինուորները իրենց մարտունակութեամբ միշտ հոգեբանական ճնշումի տակ կը պահեն ազրպէյճանցի զինուորները, երկրորդ փուլը՝ իրական պարտութիւնը կամ «մեր» կողմի հաւասարը չունեցող յաղթանակը: Ամբողջ պատերազմ մըն է մարմնաւորուած Ֆեդերացիայի նախագահի խօսքերուն մէջ:

Նմանատիպ խօսքեր բազմիցս կը հնչեն տեսագրութեան մէջ երբ կը խօսուի Ծառուկեանի ֆինանսաւորումով աշխարհի ախոյեան դարձած մարզիկ-մարզիկուհիներուն մասին, ամէն անգամ շեշտուելով՝ որ յաղթանակը ազգի յաղթանակն է, եւ ամէն անգամ ցոյց տրուելով ազգի խորհրդանիշը՝ եռագոյնը:

Այս պատումը աւելի հզօրացնելու բացառիկ առիթ մը կը ներկայանայ՝ երբ Ծառուկեանի մարզիկները եւ Հայաստանի Օլիմպիականը 2015-ին կը մեկնին Պաքու, մասնակցելու Եւրոպական Խաղերուն (European Games): Ֆիլմին մէջ այս մասնակցութիւնը կը վերածուի իրական պատերազմի:

Մարզանքի մեկնաբան Կարէն Գիլոյեան, որ մաս կազմած էր հայկական պատուիրակութեան, կ՚ըսէ. «Բաքու գնալը, դա շատ կարեւոր էր, պէտք էր: Մենք գնացինք ու մարդիկ հասկացան՝ որ ո՛չ, *մենք* ենք խաղաղութեան կողմնակիցը, մենք պատրաստ ենք անգամ վտանգելով մեր կեանքը, գնալ մեր թշնամի երկրի մայրաքաղաք: Ու 70 հազար հանդիսականի ներկայութեամբ չքերթը անցնել ու մի ոռնոց լսել՝ որ ահռելի ու սահմռկեցուցիչ էր:»

Քանի որ արդէն ո՛չ թէ պատերազմական *կացութեան* մէջ ենք, այլ *բուն* պատերազմի մէջ՝ ան ալ Ազրպէյճանի հողին վրայ, «հակառակորդ»-ը կը վերածի «թշնամի»-ի, ինչպէս, օրինակ, տեղի ունեցաւ ապրիլեան պատերազմի ժամանակ, ուր պաշտօնական լրատուամիջոցները ժամանակաւորապէս գործածեցին «թշնամի» բառը: Եւ, անշուշտ, Պաքուի այս պատերազմը յաղթեցինք, կը բացատրէ

➪ 4

## ՉԻ ԿԱՐԵԼԻ ՅԱՐԳԱՆՔԻ ՏՈՒՐՔ ՄԱՏՈՒՑԵԼ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ԶՈՀԵՐԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ ԵՒ ՉՊԱՀԱՆՋԵԼ ԱԶԱՏ ԱՐՁԱԿԵԼ ՔԱՂԲԱՆՏԱՐԿԵԱԼՆԵՐԻՆ

24 Ապրիլ 2017 թիւ. Հայոց Ցեղասպանութեան 102-րդ տարելից: Անտարակուսօրէն առաջանում ենք դէպի 2115-ը, երկրորդ հարիւրամեակը՝ միակ տարեթիւը, որն ի զօրու է մրցակցել 2015-ի հետ:

Ցեղասպանութեան ճանաչման համար մղուած պայքարը, հատուցումներ ստանալու համար մղուած պայքարը, նախնեաց հողերի յիշատակը մէկ դար շարունակ ինքնութեան հզօր առանցք են հանդիսացել հայերի համար: Նրանք տարեցտարի, սնուելով կորցրած հայրենիքի ակունքներից, մինչ յարգանքի տուրք էին մատուցում անմեղ զոհերի յիշատակին, ժամանակի ընթացքում դարձել են արդարութեան եւ եղբայրութեան համամարդկային գաղափարների նկատմամբ ամենազգայուն ազգերից մէկը: Ստիպուած են դառնալ այդպիսին, քանզի զոհն են դարձել մեծագոյն ոճիրի, վերստին ոտքի են կանգնել, չեն մոռացել: Անարդարութիւնը հաշիւ ունէր տալու իրենց, ինչպիսին էլ լինէր այն, ո՛ւր էլ որ, ո՛ւմ էլ որ այն զարկէր: Այսպիսով, արդարութեան եւ եղբայրութեան համամարդկային արժէքների պաշտպանութեան ճանապարհով է, որ հայերը յարգանքի տուրք են մատուցել իրենց զոհերի յիշատակին: Դա էլ նպաստել է իրենց ինքնութեան ձեւաւորմանը՝ սփիւռքում, հայրենի հողից դուրս՝ լեզուից, պատմութիւնից, քաղաքակրթութիւնից իրենց մնացածի հետ միասին:

Ու 25 տարի առաջ, մինչ փլուզւում էր Բեռլինի պատը, միջազգային բեմ դուրս եկաւ մի անկախ Հայաստան, ու սփիւռքահայութեան հայեացքներն ուղղուեցին դէպի նա եւ դէպի Արցախ, ինչը եւ թոյլ պիտի տար վերահաստատել նախնեաց հողերի շարունակականութիւնը՝ թէկուզեւ հայկական պատմական հողերի ընդամէնը 1/10-րդ մասի վրայ: Բայց այսօր, երբ հայեացքդ դարձնում ես դէպի Հայաստանի Հանրապետութիւն, տեսնում ես, որ մինչեւ հիմա հայ ժողովրդի միասնութեան շաղախն հանդիսացած արդարութեան եւ եղբայրութեան գաղափարները խեղուած են երեւում: Սփիւռքում բոլորն էլ գիտեն, որ Հայաստանում իշխանութիւնն օլիգարխիկ բնոյթ ունի, որ գործում է քաղաքական մի համակարգ, որն իշխանութիւնը կենտրոնացրել է մի քանի ընտանիքների ձեռքում, որոնք կէս դարից էլ քիչ ժամանակահատուածում կուտակել ու ֆինանսական դրախտներում թաքցրել են միլիոնաւոր, նոյնիսկ միլիարդաւոր դոլարներ: Նրանք աւերել են Հայաստանի տնտեսութիւնը, թալանել են ժողովրդին, միայն իրենց սեփական շահերի համար են օգտագործել սփիւռքից եկող ֆինանսական բարեգործական միջոցները: Բոլորն էլ գիտեն, որ այդ իշխանութիւնը շարունակում է գործել կեղծուած ընտրութիւնների շնորհիւ:

Բոլորն էլ գիտեն, որ տնտեսական եւ բարոյական այդ իրավիճակը յանգեցրել է զանգուածային արտագաղթի. աւելի քան 1.500.000 մարդ, մէկ ու կէս միլիոն՝ խորհրդանշական թիւ, որն ամչեցնում է՝ յուշելով չարիքի շարունակականութեան մասին: Բոլորն էլ գիտեն, որ առաջին հերթին երկիրն անվտանգ դարձնելու փոխարէն իշխանութեան գլուխ կանգնած օլիգարխներն իրենց շահերին են ծառայեցնում այն գումարները, որոնք պէտք է ուղղուէին բանակն աւելի ժամանակակից դարձնելուն: Ոչ ոք չի մոռացել դրա հետեւանքները. անցեալ տարուայ Ապրիլին սահմանին զոհուեցին հարիւրից աւելի զօրակոչիկներ՝ զինուորական համապատասխան սարքաւորումների եւ տեղեկատուութեան պակասի պատճառով: Բոլորն էլ գիտեն գերժամանակակից զէնքերով զինուած քսան հազարից աւելի ոստիկանների մասին, որոնք իշխանաւորների թիկնազօրն են կազմում, եւ որոնց գործողութիւններին ականատես ենք լինում խաղաղ ցոյցերի ժամանակ: Բոլորն էլ գիտեն, որ այդ ամէնը յանգեցրեց այս ամռանը Սասնայ Ծռեր խմբաւորման ապստամբութեանը: Բոլորն են տեղեակ: Եւ ի՞նչ: Ապա ինչպէ՞ս է, որ սփիւռքահայութեան չնչին մի մասնիկն է միայն սատարում նրանց, ովքեր Հայաստանում քաջութիւն ունեն ընդվզել գործող իշխանութեան դէմ: Ինչո՞ւ... 1910 թուականին *Notre jeunesse*-ում Շառլ Պեգին գրում է. «Պէտք է միշտ ասել այն, ինչ տեսնում ես: Յատկապէս միշտ պէտք է տեսնել այն, ինչ իրականում տեսնում ես, իսկ դա աւելի դժուար է»: Այո՛, դժուար է տեսնել այն, ինչ տեսնում ենք: Դրա համար մարդ ինքն իր վրայ պէտք է աշխատանք տանի: Հրատապ է, որ սփիւռքահայութիւնն սկսի այդ աշխատանքը տանել, քանի որ հակառակ դէպքում իր ինքնութիւնն իսկ չի փրկուի: Եթէ սփիւռքահայութիւնը շարունակի ոտնահարել արդարութեան եւ եղբայրութեան գաղափարները, ապա իր իսկ գոյութիւնը չի կարողանայ փրկել:

Այսօր ցեղասպանութեան յետհարիւրամեակի տարելիցն այլ ձեւով պէտք է ոգեկոչուի: Այլեւս չենք կարող անցեալի վերաբերեալ պահանջել արդարութիւն, ճանաչում, հատուցում ու միեւնոյն ժամանակ ժխտել Հայաստանի անկախու-

➪ 3

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Հինգշաբթի, 25 Մայիս 2017

**ՏՕՆ Է**

**ՀԱՄԲԱՐՁՄԱՆ ՔՐԻՍՏՈՍԻ**

**Եւ**

**Յիշատակ Փոխադրութեան Հայրապետական Աթոռոյն Հայոց**

**ի Սուրբ ի Ս. Էջմիածին, յամի տեառն 1441**

Այս առթիւ նոյն օրը Ս. եւ Անմահ Պատարագ պիտի մատուցուի

Ս. Գրիգոր Լուսաւորիչ մայր եկեղեցւոյ մէջ:

Յաւարտ Ս. Պատարագի պիտի կատարուի մաղթանք, վասն Մայր Աթոռ

Ս. Էջմիածնի պայծառութեան եւ անսասանութեան:

Սկիզբ Ս. Պատարագի առաւօտեան ժամը 10:00-ին

Երթ ու դարձը դիւրացնելու համար հաստատուած է հանրաշարժի սպասարկութիւն:

Սալահ Էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 8:45-ին

Այծեմնիկ Յանգստեան Տան շէնքին առջեւէն ժամը 9:00-ին

**Ե.Գ.Մ. ՅՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## ՄԵՐՃԱՆԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶ

**Ամավերջի Հանդէս**

Ուրբաթ, 19 Մայիս 2017, երեկոյեան ժամը 6:00-ին

Կոկանեան ակումբի սրահէն ներս

Հովանաւորութեամբ՝

**ԳԵՐՇ. Տ. ԱՇՈՏ Ս. ԵՊՍԿ. ՄՆԱՑԱԿԱՆԵԱՆԻ**

Բարեխնամ Առաջնորդ Եգիպտոսի Հայոց Թեմի

Նախագահութեամբ՝

**Տէր եւ Տիկին Շահէ Լուսարարեանի**

**ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ**

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ-ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆ
## ՄԵՐՃԱՆԵԱՆ ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶ

Ներկայիս կու զանք տեղեկացնելու յարգելի ծնողաց, թէ Գալուստեան-Նուպարեան Ազգային Վարժարանի 2017 – 2018 ուսումնական տարեշրջանի Մերճանեան Մանկապարտէզի նորեկ Բողբոջ դասարանի աշակերտներու դիմումները պիտի կատարուին 22-29 Մայիս 2017-ին, առաւօտեան ժամը 9:30-12:00:

Նորեկ աշակերտներուն ծնողներէն կը խնդրուի իրենց զաւակին հետ ներկայանալ, իրենց հետ բերելով 6 փոքր լուսանկար, ծննդեան ու մկրտութեան վկայագրերուն բնագիրները:

**ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ**

### ՉԻ ԿԱՐԵԼԻ ՅԱՐԳԱՆՔԻ ՏՈՒՐՔ ՄԱՏՈՒՑԵԼ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ԶՈՀԵՐԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ ԵՒ ՉՊԱՀԱՆՋԵԼ ԱԶԱՏ ԱՐՁԱԿԵԼ

2 ➪

Թիւնից ի վեր իշխանութեան գլուխ կանգնած «կլանի» գործած զանցանքները: Այսօր չի կարելի յարգել Ցեղասպանութեան զոհերի յիշատակը ու չլսել Հայաստանի բնակչութեան ցաւի ձայնը, չի կարելի յարգանքի տուրք մատուցել Ցեղասպանութեան զոհերի յիշատակին եւ չպահանջել ազատ արձակել քաղբանտարկեալներին, ովքեր տառապում են Հայաստանի բանտերում, ոմանք էլ մեռնում են այնտեղ: Այսօր յարգել Ցեղասպանութեան զոհերի յիշատակը նշանակում է պայքար տանել իսկապէս ազատ եւ անկախ Հայաստանի համար, որը մտահոգ կը լինի իր քաղաքացիներից իւրաքանչիւրի իրաւունքների համար եւ որը, հաւատարիմ լինելով համամարդկային արժէքներին, կ'ընդառաջի հայ ժողովրդի ամենանուիրական ձգտումներին՝ լինի դա Հայաստանում, Արցախում, Ջաւախքում, Արեւմտեան Հայաստանի տարածքում, թէ սփիւռքում:

Մենք յարգում ենք 1915 թ. անմեղ զոհերի յիշատակը եւ յարգանքի տուրք ենք մատուցում նրանց յիշատակին՝ պահանջելով Հայաստանում բոլոր քաղբանտարկեալների անյապաղ ազատումը:

ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԲԱՆՏԱՐԿԵԱԼՆԵՐԻ ԱԶԱԿՑՈՒԹԵԱՆ
ՓԱՐԻԶԻ ԿՈՄԻՏԷ

**ԽՈՀԵՐ**

# ՄԱՅԻՍ ՄԷԿ

**ՅԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

Լոկ մենք՝ ճորտերս եւ բանուորներս,
Ունենք անխախտ մի իրաւունք՝
Ասել, որ հողը մե՛րն է, մե՛րն է,
Կորչի հարուստը թող տզրուկ:
(Հատուած *Ինտերնացիոնալէն*)
Թարգմանութիւն՝ Եղիշէ Չարենց

1886 Մայիս 1-ին, ԱՄՆ-ի արդիւնաբերական կեդրոններու մէջ սկիզբ կ'առնեն աշխատաւորական զանգուածային գործադուլեր եւ ցոյցեր, որոնց կը մասնակցին 300 հազարէն մինչեւ կէս միլիոնի հասնող աշխատաւորներ, պահանջելով կիրառել ութ ժամուայ աշխատանքային օր: Շարժումի կեդրոնն էր Չիկակօն, ուր 30-40 հազար բանուորներ կը յայտարարեն գործադուլ եւ նոյնքան քանակութեամբ մարդիկ կը դիմեն բողոքացոյցի: Մայիս 3-ի երեկոյեան տեղի կ'ունենան որոշ բախումներ, ուր ոստիկանութիւնը կը սպաննէ վեց աշխատաւոր: Ցոյցերու կազմակերպիչները կ'որոշեն յաջորդ օրը հանրահաւաք կազմակերպել Չիքակոյի Հայմարքէթ Հրապարակի վրայ: Մայիս 4-ի հանրահաւաքը կ'ընթանայ խաղաղ, մինչեւ որ գիշերը անյայտ անձ մը ռումբ մը կը նետէ: Կը ստեղծուի խուճապ ու խառնաշփոթութիւն, որուն ընթացքին կը սպաննուին չուրջ եօթը ոստիկաններ (որոնցմէ քանի մը հատը սպաննուած են մթութեան պատճառով կատարուած փոխհրանաձգութեան պատճառով) եւ երեք ցուցարարներ: Կը կատարուի դատավարութիւն՝ առանց երբեք յայտնաբերելու ռումբ նետողը, ուր ութ առաջնորդներ կը մեղադրուին ոստիկանները սպաննելու համար, որոնցմէ չորսը կախաղան կը բարձրացուին:

Հիմնուելով դէպքերու մանրամասն ուսումնասիրութեան վրայ, շատեր համոզուած են՝ որ Մայիս 4-ի հանրահաւաքը ի սկզբանէ կառավարութեան կողմէ կարգադրուած թակարդ մըն էր, ճնշելու աշխատաւորական շարժումները: Յաջորդ օրը արդէն կառավարութիւնը կը յայտարարէ ռազմական դրութիւն ամբողջ Միացեալ Նահանգներու տարածքով, կը ջախջախէ տեղական աշխատութիւնները, կը փակէ լրագիրները(1): Իսկ թէ՛ պատմագրութեան եւ թէ՛ ժողովրդական ասոյթին մէջ այսօր ընդունուած է՝ որ ութ մեղադրեալները անմեղ էին իսկ ամբողջ դատավարութիւնը կեղծուած գործողութիւն մըն էր եւ ուղղուած էր ընդդէմ աշխատաւորական շարժումին(2):

Հայմարքէթի ցոյցը եւ անոր ջախջախումը հիմնաքարային նշանակութիւն կ'ունենայ աշխատաւորական շարժումներուն համար: Երկրորդ Միջազգայինը 1889 Յուլիս 14-19-ին Փարիզի մէջ կը գումարէ իր առաջին համագումարը, ուր, Հայմարքէթի դէպքին ազդեցութեան եւ տպաւորութեան տակ, Մայիս 1-ը կը յայտարարէ Աշխատաւորներու Միջազգային Օր:

Առաջին Համաշխարհային Պատերազմի նախօրէին՝ 1913-ին, Ռոզա Լուքսեմպուրկ այսպէս կը նկարագրէ Մայիս Մէկի կարեւորութիւնը.

«Մայիսի Օրուայ գլխաւոր փայլուն գաղափարը կը հանդիսանայ բանուորական զանգուածներու ինքնավար ու անյապաղ յառաջխաղացումը եւ միլիոնաւոր աշխատաւորներու քաղաքական զանգուածային գործողութիւնը: Այլապէս, այս աշխատաւորները կը մնան մասնատուած, շնորհիւ այն խոչընդոտներուն՝ զորս կը յարուցէ պետութիւնը խորհրդարանական գործառնութիւններու ընդմէջէն, ուր աշխատաւորները մեծ մասամբ իրենց սեփական կամքը կրնան արտայայտել բացառապէս քուէի միջոցով՝ իրենց ներկայացուցիչներու ընտրութեամբ: Միջազգայինի Փարիզի Համագումարին, ֆրանսացի Լաւին կը կատարէ գերազանց առաջարկ մը, որուն շնորհիւ այս խորհրդարանական, բանուորի կամքի անուղղակի արտայայտութեան կ'աւելնայ ուղղակի, միջազգային զանգուածային արտայայտութիւն մը՝ գործադուլը, իբրեւ ցոյց եւ պայքարելու միջոց յանուն ութ ժամուայ աշխատանքային օրուայ, աշխարհի խաղաղութեան եւ ընկերվարութեան: [...]

«Վերջին տասնամեակի ամբողջ զարգացումը եւ իմփերիալիզմի ամբողջ միտումը կը մղէ միջազգային աշխատաւորական դասակարգին աւելի յստակօրէն եւ աւելի շօշափելիօրէն տեսնել՝ որ միայն ամենալայն զանգուածներու անձնական յառաջխաղացումն ու անձնական քաղաքական գործողութիւնը, միայն զանգուածային ցոյցերն ու զանգուածային գործադուլերը (որոնք վաղ թէ ուշ պէտք է ճամբայ բանան դէպի պետութեան մէջ իշխանութեան համար մղուած յեղափոխական պայքարներու ժամանակաշրջանի մը) կրնան ներկայացնել բանուորին ճիշդ պատասխանը իմփերիալիսթական քաղաքականութեան պատճառած անհուն կեղեքումին նկատմամբ: Սպառազինական խելագարութեան եւ պատերազմական չուայտանքներու ներկայ պահուն, միայն աշխատաւորական զանգուածներու վճռական կամքը եւ ուժեղ զանգուածային գործողութիւններու կարողութիւնն ու պատրաստակամութիւնը կրնան պահպանել աշխարհի խաղաղութիւնը եւ դուրս մղել համաշխարհային համավառութեան սպառնալիքը: Եւ որքան աւելի Միջազգայինի եւ գերմանական աշխատաւորական դասակարգի ուժեղագոյն խումբերուն մէջ արմատաւորուի Մայիս Մէկի գաղափարը, այսինքն՝ վճռական զանգուածային գործողութիւններու գաղափարը իբրեւ միջազգային միասնականութեան արտայայտութիւն եւ խաղաղութեան ու ընկերվարութեան համար մղուած պայքարի միջոց, այնքան աւելի վստահութեամբ կրնանք երաշխաւորել՝ որ անխուսափելիօրէն վաղ թէ ուշ կայանալիք համաշխարհային պատերազմէն անդին, ի յայտ պիտի գայ յստակ ու յաղթական պայքար մը աշխատանքի եւ դրամագլուխի երկու աշխարհներուն միջեւ:»(3)

Մայիս Մէկի ցոյցերուն գլխաւոր կարգախօսներէն մէկը կը դառնայ՝ «Բանուորներ բոլոր երկիրներու, միացէ՛ք», քաղուած Մարքսի եւ Էնկելսի 1848-ին տպագրուած հանրածանօթ գրքոյկէն՝ *Համայնավար կուսակցութեան մանիֆեսթը*: Իր ուղղակի իմաստով անիկա կապուած է բանուորներու հետ եւ ուղղուած է անոնց ազատագրութեան: Բայց աւելի լայն իմաստով, անիկա կը վերաբերի բոլոր չահագործուող դասակարգներուն, բոլոր պաշտօնեաներուն՝ որոնք կ'աշխատին դրամատէրերու բարօրութեան համար, բոլոր մտաւորականներուն՝ որոնք կը ծառայեն տիրող գաղափարախօսութեան, բոլոր անոնց՝ որոնք կը գործեն ուրիշի համար եւ իրենց ապրուստին համար կ'ենթարկուին ուրիշին:

«Բանուորներ բոլոր երկիրներու, միացէ՛ք» արտայայտութիւնը, դժբախտաբար, ծաղրաբանութեան աստիճան նսեմացաւ խորհրդային համայնավարութեան թութակային կրկնութեան ու իմաստային մեղկացումի պատճառով, եւ ծաղրանքի առարկայ դարձաւ արեւմտեան դրամատիրութեան կրողներուն կողմէ: Այսօր, անիկա գրեթէ անգոյ նախադասութիւն մը դարձած է եւ զայն գործածող սակաւաթիւ անձերն ու միութիւնները կրնան մեղադրուիլ բացասական ռազմատենչութեամբ: Այսօր, սակայն, այս նախադասութիւնը՝ իր ամենալայն հասկացողութեամբ, աւելի քան այժմէական պէտք է հնչէ: Մարդոց մեծամասնութիւնը կը զանգատի իր առօրեայ դժուարութիւններէն. առողջապահական հասարակական ծառայութիւնները կը նուազին ու կը վատթարանան, կրթութիւնը կը դառնայ վճարովի, պետական ամսականները կը նուազին, սեփական ձեռնարկութիւններու ամսավճարները կը կրճատուին, կը վտանգուին ապահովագրութիւնները, միջին դասակարգէն կարեւոր զանգուած մը կը դառնայ աղքատ, իսկ 70-80-ականներէն սկսեալ գերհարուստներու բոլորովին նոր եւ շատ աւելի նօսր դասակարգ մը կ'իշխէ աշխարհին: Երեւակայեցէ՛ք եթէ աշխարհի *բոլոր* աշխատաւորները որոշեն չաշխատիլ: Համաշխարհային դրամատիրական շահերը յանկարծ կը յայտնուին փակուղիի առջեւ, քանի որ դրամատէրը յուսահատօրէն պէտք ունի աշխատուժի եւ աշխատաւորներու զանգուածի, որոնց բացակայութեան

➪ 4

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԳԱԳԻԿ ԾԱՌՈՒԿԵԱՆ

## 2 ԿԱՄ Ի՞ՆՉՊԷՍ ՍՏԵՂԾԵԼ ՏԻՊԱՐ ՀԱՅՐԵՆԱՍԷՐԻ ՊԱՏԿԵՐԸ

Առուստամեան. «Իմ մտքում մի միտք էր: Դէ հիմի ասէք ինչ էք ասում: Սուլում էք, հասկանում եմ: Բայց ես ուղիղ, գլուխս բարձր, ու հպարտութիւն էի զգում որ մենք հիմա աւելի ուժեղ ենք քան էդ 70 հազարը:»

«էդ դրօշը դառաւ մի ատոմային ռումբ ձեռս», նկարագրեց Օլիմպիական Կոմիտէի քարտուղար Հրաչեայ Ռոստոմեան՝ որ չքերթին անձամբ վերցուցած էր հայկական դրօշակը: Իրական պատերազմ:

Այս բոլորին մէջ, բնականաբար, պէտի մոռնայինք, որ 2015-ի Պաքուի մրցոյթը կը հանդիսանար Եւրոպական Խաղերուն առաջնեկը եւ Պաքու բաւական յոխորտաց առաջնեկը իր հողին վրայ կատարուած ըլլալուն համար: Խաղերը առիթ մըն էին ազըրպէյճանական ազգայնականութեան չոյանքին: Ալիեւ յաջողեցաւ լաւագոյն կերպով օգտագործել ու ամրացնել ազերիական ազգային զգացումները, նպաստելով նորոգ գունազարդելու մենատէր առաջնորդի իր պատկերը:

Մարզանքի միջոցով հասարակութիւնը վերահսկելու Սթանլի Էյթզընի յաջորդ դիտողութիւնն է՝ մարզանքը իբրեւ ժողովուրդը միացնելու ազգային քաղաքականութեան գործիք. «Աւելի որոշակիօրէն, մարզանքը կարելի է օգտագործել իբրեւ ծանուցողական մեքենայ, իբրեւ մեքանիզմ մը՝ որուն միջոցով հասարակութեան իշխող վերնախաւը կը միաւորէ իր քաղաքացիները եւ կը փորձէ տպաւորել ուրիշ երկիրներու քաղաքացիներուն:»(57)

Ծառուկեան Հայաստանի Ազգային Օլիմպիական Կոմիտէն դարձուց իր կռուախնձորը, մասնաւոր ներդրումներով ստեղծելով անհրաժեշտ ենթակառոյցներ եւ տրամադրելով դրամական կարեւոր օժանդակութիւններ: Եւ յաջողեցաւ, Հայաստանի համար երկար ընդմիջումէ ետք, ձեռք բերել միջազգային մրցոյթներու ոսկի մետալներ եւ աշխարհի ախոյեանի կոչումներ՝ Արսէն Ջուլֆալակեան, Արթուր Ալեքսանեան, Հռիփսիմէ Խուրշուդեան, Նազիկ Աւդալեան եւ ուրիշներ: Իւրաքանչիւր ախոյեանութենէ ետք ամբողջ Հայաստանի լրատուամիջոցներն ու ժողովուրդը կը հաւաքուէին մարզիկներուն շուրջ, կը կատարէին հարցազրոյցներ, կը հնչեցնէին ազգային գերազանցութեան նշանաբաններ, կը տարածէին ցեղապաշտական կարգախօսներ:

Այս բոլորը, նաեւ, Սթանլի Էյթզընի կարծիքով, կրնայ օգտագործուիլ իբրեւ զանգուածներու թմրադեղ. «Ինչպէս տեսանք, մարզանքը կրնայ միացնել ազգի մը քաղաքացիները քանի որ մարդիկ նենգափոխուած են ծանուցողականութեան եւ խորհրդանշաններու գործածութեան պատճառով, քանի որ մարդիկ կը միանան որպէսզի միասնաբար պարտութեան մատնեն «անոնց», եւ քանի որ մարդիկ համատեղօրէն կը հպարտանան իրենց երկրի մարզական յաջողութիւններով: Այս միասնութիւնը կը ծածկէ իշխող վերնախաւին մարտահրաւէրները եւ այդպէս ընելով մարզանքը կը ծառայէ իբրեւ «զանգուածներու թմրադեղ»:»(58) Տուեալ պարագային, այս ծածկումը կապուած է մասնաւորապէս Ծառուկեանի գործունէութեան հետ, քանի որ ինքն է կանգնած գործընթացքին գլուխը եւ իր շուրջ է որ կը ստեղծուի պատկերը:

Էյթզըն կը շեշտէ նաեւ մարզանքի կազմակերպչական աշխատանքի նուիրապետական համակարգը, վերէն վար ունենալով վերահսկողական բուրգ մը՝ պաշտօնատարներ, մարզիչներ եւ մասնակցողներ(59): Ասոնց գլուխն է Ծառուկեան, որ, ինչպէս ցոյց կը տրուի ֆիլմին մէջ, կը ղեկավարէ, կ'առաջնորդէ, որոշումներ կը կայացնէ, կը գրուցէ իրմէ վար գտնուող պաշտօնատարներուն եւ մարզիկներուն հետ:

Մարզանքը կը հանդիսանայ Ծառուկեանի ուժի բանեցումի գլխաւոր օղակներէն մէկը, ինչպէս նաեւ պատկերի ստեղծումի ամենադիւրին եւ ամենաժողովրդական միջոցներէն մէկը:

(Շար. 6)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

56. D. Stanley Eitzen, 'Social Control and Sport', *The Handbook of Sports Studies*, edited by Jay Coakley and Eric Dunning, SAGE Publications Ltd, 2008, p. 371:

57. Անդ, էջ 371:

58. Անդ, էջ 372:

59. Անդ, էջ 376-377:

### ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Սիրեցեալ ամուսնոյն եւ հօր՝ Ողբ. Պերճ Յովակիմեանի մահուան քառասունքին առթիւ, Տիկին Շաքէ Յովակիմեան եւ զաւակունք կը նուիրեն՝

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ պայծառութեան | 1000 |
| Գահիրէի Բարեսիրաց Միութեան | 1000 |
| Այծեմնիկ «Հանգստեան Տան» | 1000 |
| «Յուսաբեր» Մշակ. Ընկերակցութեան | 1000 |
| Հայ Կարիքի Խաչին | 1000 |
| ՀՄԸՄ-«Արարատ»ին | 1000 |
| Հայ Դատի Մարմինին | 1000 |
| «Յուսաբեր»ին | 1000 |
| «Արեւ»ին | 1000 |
| «Ջահակիր»ին | 1000 |

(Ստանալ «Յուսաբեր»էն)



## 3 ՄԱՅԻՍ ՄԷԿ

պարագային ան կը դառնայ անդամալոյծ: Կորսնցնելով իր եկամուտը, դրամատէրը ստիպուած կ'ըլլայ ենթարկուիլ աշխատաւորներու պահանջքին, եւ վերջապէս կրնայ դադրիլ դրամատէր ըլլալէ՝ ամբողջ արտադրութիւնը անցնելով աշխատաւորներուն ձեռքը:

Երեւակայեցէ՛ք եթէ սփիւռքահայ պաշտօնեայ մտաւորականները դադրին գիրքեր ու յօդուածներ հրապարակել իրենց հովանաւորող մեծահարուստներուն մասին, դադրին մամուլով գովերգել իրենց միութիւններուն ղեկավարները, դադրին միութիւններու պատմութիւններ գրել տուեալ միութիւններու ֆինանսաւորումով, դադրին կոյրօրէն վերարտադրել կուսակցական գաղափարախօսութիւնները:

2017 Մայիս 1-ին աշխարհի տարբեր կողմեր տեղի ունեցան զանազան ցոյցեր եւ չքերթներ: Անոնք թէեւ շատ հեռու էին դրամատիրութեան ընթացքին վրայ ազդող աշխատաւորական համաշխարհային շարժում մը ըլլալէ, բայց կը ցուցանշէին Մայիս Մէկի գաղափարի կարեւորութիւնը ժամանակակից աշխարհին համար: Ստորեւ, այս ցոյցերէն նմոյշներ (կը հետեւիմ երկիրներու այբբենական կարգին).

ԱՄՆ

Տեղի ունեցան լայնատարած ցոյցեր ու հանրահաւաքներ բոլոր կարեւոր քաղաքներուն մէջ, յատկապէս թիկունք կանգնելու գաղթական աշխատաւորներուն եւ ընդդիմանալու սպանախօսներուն, մահմետականներուն եւ այլ գաղթականներուն դէմ Տոնալտ Թրամփի ձեռնարկած յարձակումներուն:

Յիշատակելի են հետեւեալ քաղաքները. Լոս Անճելոս, Սան Ֆրանսիսքօ, Սան Խոզէ, Օքլանտ, Հիւսթոն, Չիքակօ, Միլուօքի, Ֆիլատելֆիա, Նիւ Եորք, Ուաշինկթոն, Աթլանթա, Փորթլանտ, Սիաթըլ, Ֆէօնիքս, Լաս Վեկաս, Ինտիանափոլիս, Փիցպուրկ, Մայամի, Պոսթոն, Ռոտ Այլընտ:

Հանրահաւաքներուն մեծամասնութիւնը ձեռնարկած էին Տեմոքրաթիք Կուսակցութեան անդամները եւ արհմիութիւններու պաշտօնատարները, որոնք ժողովրդական զայրոյթը սեւեռեցին բացառապէս Թրամփի վրայ, քօղարկելով Օպամայի հակա-գաղթականական քաղաքականութեան անցեալը:

ԱՐԺԱՆԹԻՆ

Պուէնոս Այրէսի խորհրդարանին առջեւ ժողովուրդը կը հաւաքուի ու կ'երգէ հակակառավարական նշանաբաններ:

ԱՒՍՏՐԻԱ

Աւստրիոյ Սոսիալ Տեմոքրաթ Կուսակցութիւնը (SPÖ) եւ արհմիութիւնները Վիեննայի մէջ կը քալեն դրօշակներով եւ կարգախօսային դրօշներով:

ԳԵՐՄԱՆԻԱ

12 հազար մարդ կը հաւաքուի Մայիս Մէկի փողոցի փառատօնին Քրէօցպերկի մէջ:

Արհմիութիւններու անդամներ Պեռլինի մէջ կը չքերթեն ի նպաստ աշխատաւորներու իրաւունքներուն: Անոնց կը միանայ 14 հազար մարդ, ինչպէս նաեւ Պեռլինի քաղաքապետ Միքայէլ Միւլլէր:

Հազարաւոր ձախակողմեայ ցուցարարներ կը քալեն Պեռլինի փողոցներով արձակելով զանազան նշանաբաններ, ինչպէս՝ «Ողողել G20-ը», ակնարկելով Համպուրկի մէջ այս ամառ կայանալիք 20 տնտեսական ուժերու գագաթնաժողովին:

Պեռլինի ցոյցերուն կը միանան ինտոնեսիացիներ՝ որոնք կը բողոքեն գերմանական HeidelbergCement ընկերութեան դէմ, որ նպատակ ունի Ինտոնեսիայի մէջ կառուցել չիմենթոյի հսկայ գործարան:

ԷԼ ՍԱԼՎԱՏՈՐ

Ժողովրդական չքերթ Սան Սալվատորի մէջ:

ԹԱՅՈՒԱՆ

Հազարաւոր աշխատաւորներ բողոքացոյցով կը քալեն Թայփէի փողոցները, բողոքելով ցած աշխատավարձքերուն եւ աշխատանքային վատթարացող պայմաններուն դէմ: Անոնք կը բարձրացնեն դրօշակներ եւ խաւաքարտային ազդանշաններ:

ԹՈՒՐՔԻԱ

Թուրքիոյ կառավարութիւնը կը փակէ հանրածանօթ Թաքսիմ հրապարակը: Ցուցարարներ՝ որոնք կը փորձեն մուտք գործել այնտեղ, կը ձերբակալուին:

Իսթանպուլի եւ Անքարայի մէջ կարեւոր արհմիութիւններ կը կազմակերպեն չքերթներ պետականօրէն արտօնուած տարածութիւններու վրայ:

ԻՆՏՈՆԵՍԻԱ

Հազարաւոր աշխատաւորներու հանրահաւաք Ճաքարթայի մէջ, պարտադրելու կառավարութեան բարձրացնել աշխատավարձքերը, ապահովել անվճար առողջապահութիւն եւ բարելաւել աշխատաւորներուն աշխատանքային պայմանները:

ԻՏԱԼԻԱ

Թուրինի Սան Քարլօ հրապարակին վրայ տեղի կ'ունենայ հանրահաւաք, ուր ելոյթ կ'ունենան արհմիութիւններու առաջնորդները: Հրապարակին մօտ գտնուող ցուցարարներուն եւ ոստիկանութեան միջեւ տեղի կ'ունենան բախումներ:

ԼԵՀԱՍՏԱՆ

Արհմիութենական Համալեհական Դաշնակցութիւնը, Տեմոքրաթիք Ձախ Դաշնակցութիւնը եւ ձախակողմեայ աքթիւիսթներ չքերթ ու քայլերթ կը կազմակերպեն Վարշաւայի մէջ, պաշտպանելու թէ՛ աշխատաւորներուն եւ թէ՛ քաղաքացիական իրաւունքները, ինչպէս նաեւ մարդկային արժանապատուութիւնն ընդհանրապէս:

(Շար. 1)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. William J. Adelman, 'The Haymarket Affair', *Illinois Labor History Society*, http://www.illinois-laborhistory.org/the-haymarket-affair/:

2. Timothy Messer-Kruse, *The Trial of the Haymarket Anarchists: Terrorism and Justice in the Gilded Age*, New York: Palgrave Macmillan, 2011, p. 4:

3. *Selected Political Writings of Rosa Luxemburg*, Edited and introduced by Dick Howard, New York and London: Monthly Review Press, 1971, pp. 319-320:

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع
TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1791 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 8 ՅՈՒՆԻՍ 2017 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ՂԻԿ. عدد رقم ١٧٩١ الخميس ٨ يونيه ٢٠١٧


## ՊԵՏԱԿԱՆ ՊԱՐՏՔԸ ՀԱՏԵՑ ՎԵՑ ՄԻԼԻԱՐԴ ԴՈԼԱՐԻ ՇԵՄՆ ՈՒ ԴԵՌ Կ'ԱՃԻ

**ՍԵԴԱ ՀԵՐԳՆԵԱՆ**

Հայաստանի պետական պարտքն այս տարուայ Ապրիլի վերջի դրութեամբ հատել է 6 միլիարդ դոլարի շեմն ու կազմել շուրջ 6.037 միլիարդ ԱՄՆ դոլար: Միայն մէկ ամսում այն աւելացել է մօտ 41 միլիոն դոլարով կամ 0.7%-ով, իսկ այս տարեսկզբի համեմատ՝ 95 միլիոն դոլարով կամ 1.6%-ով:

Ընդհանուր պարտքից 4.852 միլիարդ դոլարը մեր արտաքին պետական պարտքն է, իսկ 1.185 միլիարդ դոլարը՝ ներքին պարտքը: Թէ մէկը, թէ միւսն աւելացել են տարեսկզբի համեմատ: Ու չնայած ներքին պարտքի ծաւալը շատ աւելի փոքր է, սակայն այն նախորդ տարուանից սկսած՝ աւելի մեծ տեմպերով է աճում: Կառավարութիւնը դա բացատրում է ընդհանուր պարտքի կազմում ներքին պարտքի կշիռն աւելացնելու նպատակադրութեամբ՝ հիմնականում նշելով, որ ներքին պարտքի պարագայում երկիրը զերծ է մնում արտարժոյթի տատանումների բացասական հետեւանքներից:

Մասնաւորապէս, արտաքին պարտքն աճել է մօտ 47 միլիոն դոլարով կամ մօտ 1%-ով, իսկ ներքին պարտքը՝ 48.5 միլիոն դոլարով կամ 4.3%-ով:

Արտաքին պարտքի գերակշիռ մասը Հայաստանի կառավարութեան պարտքն է: Իսկ ներքին պարտքի կազմում, որը եւս կառավարութեան պարտքն է, առիւծի բաժինը Հայաստանի ռեզիդենտների կողմից ձեռք բերուած պետական պարտատոմսերն են: Կառավարութեան ընդհանուր պարտքը կազմել է 5.514 միլիարդ դոլար:

Դրամային արտայայտութեամբ Ապրիլի վերջի դրութեամբ ընդհանուր պետական պարտքը կազմել է 2 տրիլիոն 926.2 միլիարդ դրամ, որից 2 տրիլիոն 351.8 միլիարդ դրամը արտաքին պարտքն է, իսկ 574.348 միլիարդ դրամը՝ ներքին պարտքը:

Պետական պարտքի բեռը գնահատելու համար ամէնից յաճախ հաշուարկւում է, թէ պարտքը նախորդ տարուայ համախառն ներքին արդիւնքի (ՀՆԱ) քանի տոկոսն է կազմում, այսինքն՝ պետական պարտք/ՀՆԱ յարաբերակցութիւնը: 2016 թուականին Հայաստանի ՀՆԱ-ն, ըստ վիճակագրութեան, կազմել է 5 տրիլիոն 79.9 միլիարդ դրամ: Ստացւում է, որ այս տարուայ Ապրիլի վերջի դրութեամբ պետական պարտք/ՀՆԱ յարաբերակցութիւնը կազմել է մօտ 57.6%: 2015-ի վերջի դրութեամբ, օրինակ, այս ցուցանիշը մօտ 49% էր:

«Պետական պարտքի մասին» Հայաստանի օրէնքի համաձայն՝ կառավարութեան պարտքը տուեալ տարուայ Դեկտեմբերի 31-ի դրութեամբ չպէտք է գերազանցի Հայաստանի նախորդ տարուայ համախառն ներքին արդիւնքի 60%-ը: Այս պահանջին չհամապատասխանող պետական պարտք առաջացնող գործարքն առ ոչինչ է:

Ուշադրութիւն դարձնենք, որ այս սահմանափակումը վերաբերում է ոչ թէ ընդհանուր պարտքին, այլ՝ միայն կառավարութեան պարտքին: Դեռեւս երկու տարի առաջ այն վերաբերում էր ընդհանուր պարտքին, սակայն կառավարութեան առաջարկով պարզապէս «պետական» բառը փոխարինուեց «կառավարութիւն» բառով, ինչն, ըստ երեւոյթին, նոր պարտքեր ներգրաւելու հնարաւորութիւն ստանալու համար էր:

Ապրիլի վերջի դրութեամբ՝ կառավարութեան պարտքը կազմել է 2 տրիլիոն 672.6 միլիարդ դրամ (մօտ 2.098 տրիլիոն դրամ արտաքին պարտքը եւ 574.3 միլիարդ դրամ ներքին պարտքը): Ըստ այդմ՝ կառավարութեան պարտք/ՀՆԱ յարաբերակցութիւնը 52.6% է:

Այսինքն՝ թէեւ պետական պարտք/ՀՆԱ յարաբերակցութիւնը բաւականին մօտ է 60%-ի շեմին, սակայն միայն կառավարութեան պարտք/ՀՆԱ յարաբերակցութիւնը փոքր-ինչ աւելի «բարւօք» վիճակում է: Շնորհիւ օրէնքում կատարուած փոփոխութեան, որի մասին նշեցինք, կառավարութիւնն այսօր կարողանում է պնդել, որ երկրի ուսերին ծանրացած պարտքն այնքան էլ մօտ չէ օրէնքով սահմանուած վերին շեմին: Լրագրողների հետ զրոյցներում թէ ֆինանսների նախարար Վարդան Արամեանը, թէ պետական պարտքի կառավարման վարչութեան պետ Արշալոյս Մարգարեանը շեշտում են, որ պետական պարտքը կառավարելի մակարդակում է եւ մտահոգիչ ոչինչ չկայ: Մինչդեռ այն շարունակելու է աճել, որպէսզի լրացուի բիւջէի դեֆիցիտը:

Թէ որքանով կ'աճի ընդհանուր պարտքը, յայտնի չէ, սակայն միայն կառավարութեան պարտքի առաւելագոյն շեմը կարելի է հաշուել. այն չի գերազանցի ՀՆԱ-ի 60%-ը, այսինքն՝ 3 տրիլիոն 48 միլիարդ դրամը:

*Հետք*, 3 Յունիս 2017

**ԹՈՒՐՔԻԱ**

## ԳԱՐԵԳԻՆ ԱՐՔ. ՊԷՔՃԵԱՆ ԿԸ ԺԱՄԱՆԷ ՊՈԼԻՍ

Պոլսոյ հայոց պատրիարքական փոխանորդի պաշտօնակատար Արամ Արք. Աթէշեան Մայիս 24-ին ներկայացուց իր հրաժարականը:

Գերմանիոյ հայոց թեմի առաջնորդ Գարեգին Արք. Պէքճեան Մարտ 15-ին Պոլսոյ պատրիարքարանի հոգեւոր խորհուրդին կողմէ ընտրուած էր պատրիարքական տեղապահ: Ընտրութենէն ետք, սակայն, Արամ Արք. Աթէշեան հրաժարած էր հեռանալ պատրիարքական փոխանորդի պաշտօնէն, որուն հետեւանքով պատրիարքարանին մէջ ստեղծուած էր լարուածութիւն: Աթէշեանի հրաժարականով սկիզբ կ'առնէ պատրիարքական ընտրութիւններուն առկախեալ գործընթացքը:

Յունիս 1-ի յետմիջօրէին Գարեգին Արք. Պէքճեան կը ժամանէ Պոլիս: Ս. Աստուածածին Աթոռանիստ մայր եկեղեցւոյ մէջ կը դիմաւորուի *Հրաշափառ*ի արարողութեամբ եւ կը կատարէ իր երդումը:

Պոլսոյ *Ժամանակ*ը կը յայտնէ՝ թէ այս առիթով յայտարարութեամբ հանդէս եկաւ Սուրբ Փրկիչ Ազգային Հիւանդանոցի հոգաբարձութեան ատենապետ Պետրոս Շիրինօղլու, ուր կ'ողջունէ նորին սրբազնութեան գալուստը իսկ համայնքին կոչ կ'ուղղէ համախմբուիլ անոր շուրջ եւ կեդրոնանալ բուն նպատակին՝ պատրիարքական ընտրութեան:

Հաշուի առնելով նաեւ անցեալ ինը տարիներու անձնուրաց պարտականութիւնը, Շիրինօղլու նաեւ յայտնած է, թէ Արամ Արք. Աթէշեանի նկատմամբ պէտք է յարգանք ու երախտագիտութիւն դրսեւորել: Ուստի, համայնքային հաստատութիւններու վարիչներուն ու համայնքի բոլոր խաւերուն եւ անդամներուն պատասխանատուութիւնն է յառաջիկայ շրջանին խրախուսել հոգեւորական դասի համերաշխութիւնը:

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ԲՆԱՊԱՀՊԱՆՆԵՐ՝ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԳԼԽԱՒՈՐ ՄԱՐՏԱՀՐԱՒԷՐԸ ՀԱՆՔԱՐԴԻՒՆԱԲԵՐՈՒԹԻՒՆՆ Է

Յունիսի 5-ին աշխարհը նշեց Շրջակայ Միջավայրի համաշխարհային օրը: Այս տարուայ թեմա է ընտրուել «Ես բնութեան հետ եմ» կարգախօսը եւ նուիրուած է բնութեան եւ մարդու ներդաշնակութեանը: Շրջակայ Միջավայրի համաշխարհային օրուայ նախօրէին Հայաստանի բնապահպանական մարտահրաւէրները ներկայացրեցին էկօԼուր տեղեկատուական ՀԿ-ի նախագահ Ինգա Զարաֆեանը եւ Յանուն Կայուն Մարդկային Զարգացման ասոցիացիայի նախագահ Կարինէ Դանիէլեանը Նոյեան Տապան լրատուական գործակալութեան մամուլի սրահում:

Որպէս գլխաւոր մարտահրաւէր՝ բանախօսները շեշտը դրեցին հանքարդիւնաբերութեան վրայ, որի հետեւանքով Հայաստանը զրկւում է իր մաքուր հողերից, ջրերից, իսկ բնակիչները՝ առողջութիւնից:

«Հայաստանում ունենք 30 մետաղական հանք, որից 8-ը շահագործւում է, ունենք 21 պոչամբար: 1 հեկտար հանքարդիւնաբերական տարածքն աղտոտում է լրացուցիչ 10 հեկտար տարածք: Հայաստանն անցել է սակաւաջուր երկրների ցանկը, դա շատ վատ ցուցանիշ է: Մեր գետերում ջրի փոխարէն պոչ է հոսում, օրինակ Կարճեւանը, Ախթալան եւ այլն... Հանքարդիւնաբերութիւնն այն բիզնէսն է, որն ունի բաց կառավարման լուրջ խնդիրներ, եւ պէտք է լինի թափանցիկ ու հաշուետու», - նշեց էկօԼուր տեղեկատուական ՀԿ-ի նախագահ Ինգա Զարաֆեանը:

Ինգա Զարաֆեանը մէջբերեց Վայոց Ձորի մարզի Ամուլսարի ոսկու եւ Գլաձորի բազմամետաղային հանքավայրերը, որոնք մի կողմից աղտոտելու են բնութիւնը, իսկ միւս կողմից խաչ են քաշում այդ տարածաշրջանում արուած ներդրումների վրայ:

«Ինչ ենք մենք կորցնում Ամուլսարի դէպքում. Ջերմուկը, որտեղ միլիոնների ներդրումներ են արուած, Սեւանայ լիճը, որն ազգային անվտանգութեան երաշխիք է, Որոտան-Արփայ ջրային աւազանը, Կեչուտ, Սպանդարեան ջրամբարները... Գլաձորի հանքավայրի դէպքում մենք կորցնում ենք մեր Վերնաշէն գինու բրենդը: Բացի այդ, Վերնաշէն համայնքն ունի շատ ծրագրեր՝ ուղղուած գիւղատնտեսութեան զարգացմանը: Ներդրումներն արդէն արուած են թէ միջազգային կառոյցների կողմից, թէ բիւջէից: Կարելի՞ է այդ ներդրումները մի կողմ դնել եւ բացել մի հանք, որն ունի բարձր պարունակութեամբ թունաւոր տարրեր», - ասաց Ինգա Զարաֆեանը:

Յանուն Կայուն Մարդկային Զարգացման Ասոցիացիայի նախագահ Կարինէ Դանիէլեանն անդրադարձաւ հանքարդիւնաբերական շրջաններում առողջապահական խնդիրներին:

«ՀՀ ԳԱԱ էկոլոգոնոօսֆերային կենտրոնի եւ Ամերիկեան Համալսարանի կողմից արուել են ուսումնասիրութիւններ՝ շրջակայ միջավայրի աղտոտումը ծանր մետաղներով: Հաւաքել ենք այդ բոլոր տուեալները՝ շրջակայ միջավայր եւ առողջութիւն, եւ պէտք է գտնէինք ամենառիսկային գօտիները: Եւ, իհարկէ, դուրս եկանք հանքարդիւնաբերութեան ոլորտի վրայ՝ Լոռի եւ Սիւնիք: Բացի այդ, տարածքային կառավարման նախարարութիւնը մշակել է մարզերի զարգացման ծրագրերը, եւ միակ մարզը, որտեղ ռիսկերի մէջ գրուած է բարձր մահացութիւն՝ Լոռին է: Թուերն այստեղ շատ խօսուն են», - նշեց Կարինէ Դանիէլեանը:

Բանախօսներն անդրադարձան Մաքուր Հայաստան ծրագրին՝ նշելով, որ նախաձեռնութիւնը, իհարկէ, դրական է, սակայն աղբի կառավարման խնդիրները չի լուծում:

↳ 2

# ԳԱԳԻԿ ԾԱՌՈՒԿԵԱՆ ԿԱՄ Ի՞ՆՉՊԷՍ ՍՏԵՂԾԵԼ ՏԻՊԱՐ ՀԱՅՐԵՆԱՍԷՐԻ ՊԱՏԿԵՐԸ

**Հ. ԱԻԱԳԵԱՆ**

Ե. ՄԱՍ

ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԻՒՆ

Եթէ եկեղեցիներ կը կառուցէ Աստուծոյ հրամանով եւ օրհնութեամբ, եթէ մարզանքը կը հանդիսանայ իր տաբերքը, ապա բարեգործութիւնը առկայ է իր ծննդաբանական յատկանիշներուն մէջ:

Խօսքը Ծառուկեանին. «Ուրեմն, հիմնականում բարեգործական աշխատանքը, ես կարող եմ ասել, որ դա ինքն ըստ ինքեան մարդու գեների մէջ պէտք է լինի: Դա պէտք է] ի սրտէ կատարես, ոչ թէ ձեւական, նայելով ասենք թէ հիմա ինչ որ սա պէտք է անեմ որ ինձ գովաբանեն, կամ սա ինձ պէտք ա՝ ես անեմ:»

Նոյնը կը կրկնէ մայրը՝ Ռոզա Ծառուկեան. «Մանկութիւնից էդ երեխայի հոգեբանութեան մէջ եղել է, եթէ մօտը գումար կայ, անպայման պիտի ծախսի բոլորի վրայ:»

Բարեգործութեան միջոցով՝ ըլլայ իր ընտանիքի, ըլլայ իր անձի, ըլլայ Ծառուկեան Հիմնադրամի անունով, ֆիլմը կը փորձէ շեշտել գրաւիչ յատկանիշներ, մատնանշել խօսուն ոլորտներ եւ դիմել Հայաստանի եւ Սփիւռքի հայութեան ազդեցիկ չերտերուն.

– **Հաւատարմութիւն իր ծննդավայրին եւ արմատներուն:** Ասիկա կ'արտայայտուի ծննդավայր Առինջի մէջ կատարած բարեգործութիւններով՝ Առինջի Կոլեա Ծառուկեանի Անուան Միջնակարգ Դպրոց, Առինջի Անահիտ Ծառուկեանի Անուան Բուժ Ամբուլատորիա, Առինջի Ռոզա Ծառուկեանի Անուան Մանկապարտէզ:

– **Գիւղացիութիւն**: Ըստ Հայաստանի Վիճակագրական Ծառայութեան տրամադրած տեղեկութիւններուն, 2015 Յունուար 1-ի դրութեամբ գիւղացիները կը կազմէին Հայաստանի բնակչութեան 36.5 տոկոսը(60): Կարեւոր զանգուած մըն է: Ֆիլմը կը ցուցադրէ, թէ ինչպէս Հայաստանի 10 մարզերու մէջ Ծառուկեան ստեղծած է մեծածաւալ մեքենաթրաքթորական կայաններ եւ նպաստած գիւղատնտեսական ոլորտի զարգացումին՝ բնութեան արհաւիրքներէն տուժած գիւղացիներուն ցուցաբերած աջակցութեննէն մինչեւ հակակարկուտային կայաններու տեղադրում:

– **Աղէտի գօտի**: Երկրաշարժէն տուժած գիւմրեցիներու օգնութիւն, աղէտի գօտիի վերականգնումի ծրագիրներ: Վերջին երեք տարիներուն Ծառուկեան Հիմնադրամը 250 միլիոն դրամի նպաստ յատկացուցած է տնակային աւաններու մէջ բնակուող գիւմրեցի ընտանիքներուն, ինչպէս նաեւ չատերուն նուիրած է կահաւորուած, երեք սենեականոց բնակարաններ:

– **Ղարաբաղ**: Դրամ ընտանիքներուն, թրաքթորներ, մեքենաներ, սիմէնթ (ցեմենտ):

Շնորհիւ Ծառուկեան Հիմնադրամին, Մրրօ հայ ազգային երգարուեստի կեդրոնի Գութան ազգագրական երգի-պարի փառատօնը 2016-ին իր առաջին ծիլերը կ'արձակէ Արցախի մէջ: Իսկ սահմանամերձ գօտիի Տաւուշի բնակիչներուն հանդէպ կը ցուցաբերէ յատուկ հոգածութիւն եւ անոնց կը տրամադրէ անվճար բուժումի կարելիութիւն:

– **Ցեղասպանութիւն**: Ցեղասպանութեան 100-ամեակին առիթով Քուէյթի Սրբոց Վարդանանց Եկեղեցիի բակը կը տեղադրէ խաչքար, իսկ Հայ Ազգային Վարժարանի աւելի քան 30 աշակերտներ եւ ուսուցիչներ կը հրաւիրէ Հայաստան՝ մասնակցելու 100-ամեակի տօնակատարութիւններուն:

– **Առողջապահութիւն**: Ամբողջ Հայաստանի տարածքով կազմակերպած է Անվճար Առողջապահութեան Ակցիա, որուն շնորհիւ տասնեակ հազարաւոր քաղաքացիներ հնարաւորութիւն ունեցած են անվճար բուժուելու: Առինջի մէջ հիմնած է Անահիտ Ծառուկեանի Անուան Բուժ Ամբուլատորիա:

– **Կրթութիւն**: Դպրոցներ Առինջի մէջ, Ուսանողներու Միջազգային Տօնին առիթով յառաջադէմ ուսանողներու պարգեւատրութիւն, լիբանանահայ քսան ուսանողի վարձավճար, 100 հազար տոլարի նուիրատուութիւն Պէյրութի Ազգային Միացեալ Վարժարանին: Ֆիլմին համար կարեւոր յաւելում մըն է Հայաստանի լրատուամիջոցներուն ամենայայտնի կրթական գործիչ՝ Մխիթար Սեբաստացի կրթահամալիրի տնօրէն Աշոտ Բլէյեանի Ծառուկեանը գովաբանող տեսագրութիւնը:

– **Երիտասարդութիւն**: Աշխարհի մէջ կա՞յ հիմնարկ մը, միութիւն մը, կուսակցութիւն մը, պետութիւն մը՝ որ երիտասարդութիւնը չի դարձներ իր կուախնձորը: Ծառուկեան հոգացած է երիտասարդներուն կարիքները՝ աշխատատեղերու ստեղծումէն մինչեւ անվճար փոխադրամիջոցներու տրամադրում, ուսումի վարձավճարներէն, կրթաթոշակներէն ու դրամաշնորհներէն մինչեւ խրախուսական պարգեւներ ու գիտակրթական ծրագիրներ: Ուսանողներու Միջազգային Տօնին առիթով լաւագոյն ուսանողներուն կը պարգեւատրէ հիմնադրամի անուանական կրթաթոշակով: Կը հովանաւորէ Հայաստանի երիտասարդ երաժշտահաններու մրցոյթ մը: Կը ստանձէ լիբանանցի քսան երիտասարդներու Հայաստանի տարբեր համալսարաններու մէջ ուսանելու վարձավճարը:

– **Հայ մշակոյթ**: Բազմաթիւ փառատօներ, շնորհանդէսներ, դասական երաժշտութեան նուագահանդէսներ, թատերական ներկայացումներու մրցոյթներ, երիտասարդ երաժշտահաններու մրցոյթ: Շէքսփիրի միջազգային փառատօնը 2016-ին նոր շունչ ստացաւ՝ Ծառուկեանի միջոցներով Հայաստան ժամանելով աշխարհահռչակ թատերախումբեր եւ դէմքեր: Ծառուկեանի մշակութային նուաճումները փառաբանելու համար ֆիլմին մէջ ելոյթ կ'ունենան՝ ՀՀ ժողովրդական արուեստագէտ Գուժ Մանուկեան, ՀՀ արուեստի վաստակաւոր գործիչ, երաժշտագէտ Մարգարիտ Ռուխկեան, ՀՀ արուեստի վաստակաւոր գործիչ, երաժշտահան Լեւոն Զաուչեան, Հայաստանի Փոքրիկ Երգիչներ երգչախումբի գեղարուեստական ղեկավար եւ գլխաւոր խմբավար Տիգրան Հէքէքեան, ՀՀ արուեստի վաստակաւոր գործիչ, երաժշտահան Երուանդ Երկանեան, Արուեստների Պատկերասրահ մշակութային հիմնադրամի տնօրէն Մարիամ Շահինեան, Կոմիտասի Անուան Պետական Կոնսերվատորիայի փրոֆեսոր, դաշնակահար Սերգէյ Սարաջեան. ՀՀ վաստակաւոր արուեստագէտ, դաշնակահար Անահիտ Ներսէսեան, ՀՀ արուեստի վաստակաւոր գործիչ, երաժշտահան, դաշնակահար Վահրամ Բաբայեան, երգիչ, երգահան Ռուբէն Հախուերդեան: Արուեստագէտներ՝ որոնց համար գնահատումի հիմքը սպառողական արժէքը (use value) պէտք է ըլլայ, այսինքն՝ իրի ներքին յատկանիշները, կը դրուատեն մարդ մը՝ որուն համար գնահատումի հիմքը սպառողական արժէքն է (exchange value), այսինքն՝ իրի յատկանիշները կ'որոշէ դուրսէն, ծանուցողական բնոյթով արտաքին գրգիռներէ:

– **Սփիւռք**: 2015-ին այցելելով Անթիլիաս, Մեծի Տանն Կիլիկիոյ Կաթողիկոսութեան կը նուիրէ 600 հազար տոլար, որուն 500 հազարը համատեղաբար պէտք է յատկացուի Կաթողիկոսութեան եւ սուրիահայերուն (չի նշուիր սուրիահայերուն յատկացուելիք գումարին թիւը, ոչ ալ չափանիշ մը կը սահմանուի՝ թէ ինչպէս, ինչ պայմաններու տակ պիտի օգտագործուի դրամը սուրիահայութեան հասցնելու համար) եւ 100 հազարը Պէյրութի Ազգային Միացեալ Վարժարանին: Լիբանանէն քսան ուսանողի համար կը վճարէ Հայաստանի տարբեր համալսարաններու մէջ ուսանելու վարձավճարը:

Ցեղասպանութեան 100-ամեակին առիթով, Քուէյթի Անթիլիասի Թեմի Սրբոց Վարդանանց Եկեղեցիի բակը կը տեղադրէ խաչքար: Իսկ նոյն Թեմին յարող Հայ Ազգային Վարժարանի աւելի քան 30 աշակերտ եւ ուսուցիչ իր ծախսերով 2015 Ապրիլ 22-24 կ'այցելեն Հայաստան, մասնակցելու 100-ամեակի տօնակատարութիւններուն:

2016-ին կը մեկնի Իրան ներկայ գտնուելու 48-րդ Համահայկական Խաղերու բացումին: Խաղերու մրցանակային ֆոնտին կը նուիրէ 100 հազար տոլար: Կ'այցելէ ՀՅԴ-ի 85-ամեայ *Ալիք* օրաթերթի խմբագրատուն եւ կը նուիրէ 100 հազար տոլար:

2013-ին, Ծառուկեան Հիմնադրամի շնորհիւ կարելի կ'ըլլայ Հայաստանի մէջ իրականացնել Հ.Մ.Ը.Մ.-ի 9-րդ մարզախաղերը:

«Սիրիահայ համայնքի պահպանումը ժամանակուայ հրամայականն է», կ'ըսուի ֆիլմին մէջ: Ծառուկեան կը յայտարարէ՝ որ Սուրիոյ հայրենակիցներուն աջակցելու մեծ գործընթացք մը պիտի նախաձեռնէ, որուն համար Անթիլիասի մէջ կը հանդիպի Արամ Ա. Կաթողիկոսի հետ եւ քամերաներուն առջեւ կ'առաջարկէ հիմնադրամ ստեղծել եւ մեծածաւալ աջակցութիւն ցուցաբերել սուրիահայութեան: Այսքան: Խոստումներէ եւ մեծախօսութիւններէ անդին ոչ մէկ իրական գործողութիւն կամ դրամական յատկացում: Կարեւորը սուրիահայութեան հոգալու հարցը առաջ նետելն էր, «սուրիահայ» բառին արծարծումը, քանի որ վերջերս սուրիահայութիւնը դարձաւ ամբողջ հայութեան ուշադրութեան կեդրոնը եւ անոնց օգնութեան հասնելու գաղափարը լաւ, կարճ ու դիւրին առիթ մը կրնայ ըլլալ բարելաւելու բարերարի մը պատկերը:

Ուրեմն, Սփիւռքը ներկայացուած է մէկ ուժային կեդրոնով եւ անոր ճիւղաւորումներով, ինչպէս ➩ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՔԱՆԻ ԲՆԱԿԻՉ ՈՒՆԻ ՀԱՅԱՍՏԱՆԸ. *ԺՈՂՈՎՈՒՐԴ*

*Ժողովուրդ* օրաթերթը գրում է. «Հայաստանի ազգային վիճակագրական ծառայութեան տուեալներով՝ Հայաստանի մշտական բնակչութեան թիւն Ապրիլի 1-ի դրութեամբ կազմել է 2 միլիոն 981.5 հազար հոգի, մինչդեռ նախորդ տարի մշտական բնակչութիւնը շատ էր 12.9 հազարով: Նկատենք, որ այս ցուցանիշն ամբողջութեամբ չի բացայայտում արտագաղթի ծաւալները, եւ երկրում ապրող մարդկանց իրական թիւը կարելի է իմանալ միայն մարդահամարի արդիւնքում, երբ հրապարակուի առկայ բնակչութեան ցուցանիշը: Բայց այլ ոլորտների ցուցանիշների համադրմամբ կարելի է գրեթէ ճշգրիտ պատկերացում կազմել բնակչութեան թուի մասին:

Այս հարցում օգնութեան կարող է հասնել, օրինակ, հացի արտադրութեան ծաւալների վերլուծութիւնը: Պարզւում է՝ 1998թ. Հայաստանում արտադրուել է 373 հազար տոննա հաց, 2006թ. հացի արտադրութեան ծաւալները կազմել են 295 հազար տոննա, իսկ նախորդ տարի արտադրուել է 277.9 հազար տոննա հաց: Հանրահաշուական մի քանի պարզ գործողութիւնների միջոցով կարող ենք պարզել, որ Հայաստանում հիմա բնակչութեան թիւը 2 միլիոնի հազիւ է հասնում: Իսկ Սերժ Սարգսեանը խօսում է 4 միլիոն բնակչութիւն ունենալու ծրագրից»:

## ՌՈՒՍԱՍՏԱՆՑԻՆԵՐԻ ԸՆԴԱՄԷՆԸ 12%-Ն Է ՀԱՅԱՍՏԱՆԸ ԲԱՐԵԿԱՄ ԵՐԿԻՐ ԱՆՈՒԱՆԵԼ

5 Յունիս, Lragir.am - Լեւադա կենտրոնը հարցում է անցկացրել՝ պարզելով, թէ ռուսաստանցիները որ երկրներն են բարեկամ համարում: 1600 հարցուածների ընդամէնը 12%-ն է Հայաստանը նշել Ռուսաստանի բարեկամ երկրների թւում: Այս առումով առաջատարը Բելառուսն է 46%-ով, երկրորդը՝ Չինաստանը 39%-ով:

Ռուսաստանցիների 34%-ը բարեկամ երկիր է համարում Ղազախստանը, 15%-ը՝ Սիրիան, 14%-ը՝ Հնդկաստանը, 11%-ը՝ Կուբան, 9%-ը՝ Ադրբեջանը:

Ռուսաստանցիների 69%-ը համարում է, որ ԱՄՆ-ն թշնամաբար է տրամադրուած Ռուսաստանի նկատմամբ: ԱՄՆ-ին յաջորդում են Ուկրաինան՝ 50%, Գերմանիան՝ 24%, Լատվիան՝ 24%, Լիտվան՝ 24%, Լեհաստանը՝ 21%: Վրաստանը թշնամաբար տրամադրուած երկիր է համարում 9%-ը:

## 1 ➩ ԲՆԱՊԱՀՊԱՆՆԵՐ՝ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԳԼԽԱՒՈՐ ՄԱՐՏԱՀՐԱՒԷՐԸ ՀԱՆՔԱՐԴԻՒՆԱԲԵՐՈՒԹԻՒՆՆ Է

«Մաքուր Հայաստանը լաւ ծրագիր է, բայց այն աղբի, կոշտ կենցաղային թափօնների կառավարման հետ կապ չունի: Մենք աղբի կառավարման բաղադրիչներ չունենք: Վարկային ծրագրեր, որոնք արդէն ունենք, դրանցով պարզապէս աղբ են կուտակում, նոր աղբավայրեր ստեղծում, բայց տեսակաւորման եւ վերամշակման մասին խօսք չկայ: Օրինակ բերեմ պլաստիկը, հասարակութիւնն արդէն քանի տարի պայքարում է դրա դէմ, բայց արդիւնք չենք տեսնում: Այդ հարցը պէտք է լուծուի կոնկրէտ միջոցառումներով», - նշեց Ինգա Զարաֆեանը:

«Ես ոգեւորուած եմ Մաքուր Հայաստան ծրագրով: Երբ երկիրն աղբով ծածկուած է, տուրիզմ հնարաւոր չէ զարգացնել: Բայց մեր կառավարութեան նպատակները իրար հետ «կռւում են»: Մի կողմից հանքարդիւնաբերութիւն են ուզում զարգացնել, միւս կողմից գիւղատնտեսութիւն ու տուրիզմ», - ասաց Կարինէ Դանիէլեանը:

*Էկօլուր*

ԳԱՀԻՐԷ

## ԱՒԵՏԻՍ ՄՈՎՍԷՍԵԱՆ՝ ՎԻՐԱՀԱՏՈՒԱԾ

*Ջահակիրի* նախկին խմբագիր Աւետիս Մովսէսեան՝ որ քանի մը տարի է ուղեղային կաթուածի հետեւանքով կը խնամուի Գահիրէի Իտալական Ծերանոցին մէջ, Մայիս 8-ին Իտալական Հիւանդանոցին մէջ ենթարկուեցաւ զոյգ վիրահատումներու՝ միզապարկի քարերու եւ շագանակագեղձի բորբոքումի պատճառով: Այժմ ան ապաքինումի բարեյաջող շրջան մը կ'անցընէ Ծերանոցին մէջ:

*Ջահակիր* իր նախկին խմբագիրին կը մաղթէ շուտափոյթ բուժում եւ ինչու չէ, նաեւ, օր մըն ալ վերադարձ դէպի *Ջահակիր*:

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ**

Շաբաթ, 17 Յունիս 2017

**ՏՕՆ Է**

**ՍՐԲՈՅ ՀՕՐՆ ՄԵՐՈՅ**

**ԳՐԻԳՈՐԻ ԼՈՒՍԱՒՈՐԻՉԻՆ**

**ԵԼՆ Ի ՎԻՐԱՊԷՆ**

Կիրակի, 18 Յունիս 2017

**ՏՕՆ Է**

**ԿԱԹՈՒՂԻԿԷ Ս. ԷՋՄԻԱԾՆԻ**

Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ պիտի մատուցուի Ս. Պատարագ:

Յաւարտ Ս. Պատարագի պիտի կատարուի «Հայրապետական մաղթանք»

Սկիզբ Ս. Պատարագի առաւօտեան ժամը 10:00-ին

Երթ ու դարձը դիւրացնելու համար հաստատուած է հանրաշարժի սպասարկութիւն:

Սալահ Էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 8:45-ին

Այծեմնիկ Համգստեան Տան շէնքին առջեւէն ժամը 9:00-ին

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

**ԳԱԼՈՒՍՏԵԱՆ-ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ**

**ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆ**

Ուրախութեամբ կը տեղեկացնենք յարգոյ հասարակութեան եւ ազնիւ ծնողներուն, Վարժարանիս 2016-2017 ուսումնական տարեշրջանի Զ. Նախակրթարանի եւ Գ. Պատրաստականի Պետական քննութեանց արդիւնքները:

Ստորեւ կու տանք ցանկը համապատասխան նիշերով:

| | | |
|---|---|---|
| **Զ. Նախակրթարան** | | |
| Մանուէլ Եուսէֆ Գէորգեան | Գերազանց | 97.7% |
| Տանիէլ Սարգիս Զերտելեան | Գերազանց | 97.1% |
| Լորին Լորիս Քէօհնէլեան | Գերազանց | 96.4% |
| Դիա Պերճօ Տէր Ներսէսեան | Գերազանց | 92.8% |
| Ժանօ Ժորժ Սապպաղ | Գերազանց | 92.8% |
| Նատա Րաաֆաթ Նասիֆ | Շատ Լաւ | 88.2% |
| **Զերծ Արաբական Նիւթերէ** | | |
| Դարա Մարիա Հայկ Չաղալանեան | Գերազանց | 95.58% |
| **Գ. Պատրաստական** | | |
| Մանէ Յակոբ Սայեան | Գերազանց | 99% |
| Լորետանա Րաֆֆի Մկրտիչեան | Գերազանց | 98.25% |
| Ճէնիքա Կարապետ Գումրուեան | Գերազանց | 97.6% |
| Մարիա Հրայր Տրդատեան | Գերազանց | 97.5% |
| Էտուարտ Ռոպէր Նակիպ | Գերազանց | 94.1% |
| Րաֆիք Սամի Ղազարեան | Գերազանց | 91.9% |
| Նաթաշա Րաֆֆի Բախչանեան | Գերազանց | 89.9% |
| Էլիսա Պերճօ Տէր Ներսէսեան | Շատ Լաւ | 84.6% |
| Րաֆֆի Հայկ Աւագով | Շատ Լաւ | 77.8% |
| Ալֆրէտօ Միշէլ Արուսեան | Գոհացուցիչ | 62.5% |

Վարժարանի Տնօրէնութիւնը եւ ուսուցչական կազմը ջերմօրէն կը շնորհաւորեն յարգելի ծնողները եւ աշակերտները իրենց յաջողութեան առթիւ:

ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ

ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

**ՀՄԸՄ-ՆՈՒՊԱՐ ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ**

**ԳՐԱՒՈՒԱԾ ԹՈՒԱԿԱՆՆԵՐ**

**ՊԱՍՔԷԹ-ՊՈԼԻ**

**ԵԳԻՊՏԱՀԱՅ ՄՐՑԱՇԱՐ**

Ուրբաթ 14, Շաբաթ 15 եւ Կիրակի 16 Յուլիս 2017

ՆՈՒԻՐՈՒԱԾ՝

**ԱՍՊՆՋԱԿԱՆ ԵԳԻՊՏՈՍԻ ՅՈՒԼԻՍ 23-Ի ՅԵՂԱՓՈԽՈՒԹԵԱՆ 65-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ**

*Մանրամասնութիւնները յաջորդիւ*

*Կը խնդրուի նկատի ունենալ եւ չխաչաձեւել*

**ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**

ԽՈՀԵՐ

## ՄԱՅԻՍ ՄԷԿ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

ԿԻՊՐՈՍ

Կիպրացի յոյներն ու Թուրքերը Մայիս Մէկը կը նշանաւորեն «Ռոք խաղաղութեան համար» նուագահանդէսով, նպատակ ունենալով միացնել կղզիին երկու բաժանումները:

Կիպրացի յոյն ձախակողմեայ արհմիութիւններու անդամներ կը հաւաքուին Կիպրոսի Ֆինանսական Նախարարութեան առջեւ, ուր իրենց աջակցութիւնը կը հաստատեն խաղաղութեան համաձայնագիրին նկատմամբ: Ապա կը քալեն դէպի մայրաքաղաքի սահմանամերձ Լետրա Պալատը, ուր կը միանան իրենց կիպրացի Թուրք գործընկերներուն: Միասին կը մտնեն ՄԱԿ-ի արգելակ տարածութիւնը, ուր տեղի կ'ունենան յոյներու եւ Թուրքերու ռոք երաժշտութեան գործողութիւնները:

ՀԱՐԱՒԱՅԻՆ ԱՓՐԻԿԷ

Նախագահ Ճաքոպ Զումա կը ստիպուի ջնջել Պլումֆոնթէյնի Մայիս Մէկի ելոյթը, երբ աշխատաւորները եւ արհմիութիւններու անդամները կը սկսին ծաղրել իրեն եւ պահանջել իր հրաժարականը:

ՀԱՐԱՒԱՅԻՆ ՔՈՐԷԱ

Սէուլի աշխատաւորական ցոյցին գլխաւոր պահանջքն էր կրճատել ժամանակաւոր աշխատաւորներն ու «անկախ կապալառուներ»-ը, որոնք կ'օգտագործուին օրինականօրէն սահմանուած աշխատավարձքերու եւ նպաստներու վճարումէն խուսափելու նպատակով:

ՀՆԴԿԱՍՏԱՆ

Աշխատաւորներ եւ արհմիութիւններու անդամներ կարմիր զգեստներով հանրահաւաք կը կազմակերպեն Պանկալորի մէջ:

ՄԵԾՆ ԲՐԻՏԱՆԻԱ

UNITE, ASLEF, PCS, TSSA եւ RBU AND UNISON արհմիութիւնները եւ Համայնավար Կուսակցութիւնը քայլերթ կը կազմակերպեն Լոնտոնի փողոցներով ընդդէմ ծառայողական կրճատումներուն եւ հակա-արհմիութենական օրէնքներուն:

Գաղթականները ներկայացնող կազմակերպութիւններ եւս քայլերթներ կը կազմակերպեն:

ՅՈՒՆԱՍՏԱՆ

Յունաստանի ցուցարարները կը շեշտեն պայքարի անհրաժեշտութիւնը՝ պաշտպանելու աշխատաւորական հիմնական իրաւունքները եւ արգիլելու կառավարութեան ստորագրելիք նոր օրէնքները՝ որոնք ալ աւելի կը նսեմացնեն աշխատաւորական դասակարգի պայմանները:

Աթէնքի մէջ 10 հազար ցուցարարներ կ'իջնեն փողոց: Յունաստանի արհմիութենական աշխատաւորութիւնը ներկայացնող երկու կազմակերպութիւններ՝ GSEE եւ ADEDY, միացեալ հանրահաւաք կը կազմակերպեն Քլաֆթմոնոս հրապարակին վրայ, որմէ ետք կը քալեն դէպի խորհրդարան: Ուրիշ արհմիութիւններ, կազմակերպութիւններ, ուսանողներ եւ հակա-մենատիրական խումբեր եւս կը կազմակերպեն հանրահաւաքներ մայրաքաղաքին կեդրոնը: Սինթակմա Հրապարակին վրայ առանձին հանրահաւաք կը կազմակերպէ PAME արհմիութիւնը:

Ցոյցեր եւ հանրահաւաքներ տեղի կ'ունենան Թեսալոնիք (5 հազար անձ), Փաթրաս, Ակրինիօ, Մեսոլոնկի, Փիրկոս, Աիկիօ, Նաֆփաքթոս, Լարիսա քաղաքները, ինչպէս նաեւ Կրետէի Զանիա եւ Իրաքլիօ քաղաքները:

ՇՐԻ ԼԱՆՔԱ

Քոլոմպոյի մէջ Ժողովուրդի Ազատագրութեան Ճակատը կը կազմակերպէ չքերթ, կրելով Լենինի լուսանկարը:

ՉԻԼԻ

Ժողովրդական ցոյցեր Սանթիակոյի մէջ, ուր տեղի կ'ունենայ բախում ոստիկանութեան հետ:

ՊԱՆԿԼԱՏԷՇ

Հազարաւոր հագուստեղէնի աշխատաւորներ կը հաւաքուին Տհաքայի մէջ, պահանջելով աշխատավարձքի բարձրացում, բնակութեան, առողջապահութեան եւ կրթութեան աւելի լաւ պայմաններ:

ՊԵԼՃԻՔԱ

Լիէժի մէջ Աշխատաւորներու Կուսակցութեան պատգամախօսը չքերթի ընթացքին կ'ենթարկուի ոտքի դանակահարութեան:

ՌՈՒՍԱՍՏԱՆ

Փութինի նախաձեռնութեամբ եւ վերահսկողութեամբ Կարմիր Հրապարակին վրայ տեղի կ'ունենայ փառաւոր չքահանդէս: Տարբեր երթերով կը մասնակցին պաշտօնական արհմիութիւնները եւ համայնավարները:

ՍՊԱՆԻԱ

UGT եւ CC.OO արհմիութիւնները կը կազմակերպեն չքերթներ, ուր պահպանողական կառավարութենէն կը պահանջեն հրաժարիլ աշխատանքային անբարենպաստ բարեկարգութիւններէն, ուր կարելի կը դառնայ աշխատաւորներուն հեռացնել աշխատանքէն: Կը պահանջեն նաեւ աշխատավարձքի եւ կենսաթոշակի բարձրացում: Հազարաւոր ցուցարարներ կը մասնակցին չքերթներու Մատրիտի, Պարսելոնայի, Սեւիլլիայի, Վալենցիայի եւ այլ քաղաքներու մէջ:

ՎԵՆԵԶՈՒԵԼԱ

ԱՄՆ-ի ամբողջական աջակցութիւնը վայելող աջակողմեայ թեւը ցոյցեր կը կազմակերպէ Քարաքասի մէջ, որոնք ոչ մէկ կապ ունէին աշխատաւորական պահանջքներուն հետ, այլ, ընդհակառակը, անոնց նպատակն էր յեղաշրջելով Նիքոլաս Մատուրոյի վարչակարգը, հաստատել մասնաւոր դասակարգի մը դրամատիրական նեղ շահերը:

Միւս կողմէ, կառավարութեան նախաձեռնութեամբ քայլերթ կը կազմակերպուի նշելու համար Մայիս Մէկը:

ՓՈՐԹՈՒԿԱԼ

Հազարաւոր մարդիկ կը քալեն Լիզպոնի փողոցներով՝ «Աշխատանքի եւ աշխատաւորներու արժէք» կարգախօսով: CGTP-IN արհմիութիւնը իր յայտարարութեան մէջ կը նշէ, որ աշխատաւորները պէտք է կառավարութեան մղեն վերաքննել ազգային պարտքը, քանզի Փորթուկալի պարտքը կը հանդիսանայ Եւրոմիութեան երկրորդ ամենաբարձրը Յունաստանէն ետք:

ՓՈՒԵՐԹՕ ՌԻՔՕ

Կղզին գրեթէ անդամալոյծ կը դառնայ շնորհիւ կառավարութեան կրճատումներուն դէմ կատարուած զանգուածային ցոյցերուն: Ցուցարարները կը մեղադրեն Քարրիպեան տարածութեան ԱՄՆ-ի առաջնորդները, անոնց շրջանցումները տեղական կառավարութեան ֆինանսական հարցերուն եւ կը պահանջեն ունկնդրութիւն՝ սահմանելու 70 միլիառ տոլարի պարտքի պատասխանատուները:

ՔԱՄՊՈՏԻԱ

Աւելի քան հազար հագուստեղէնի աշխատաւորներ բողոքացոյցով կը քալեն դէպի Ֆնոմ Փենհի Ազգային Ժողովը, ուր կառավարութեան կը ներկայացնեն խնդրագիր մը՝ պահանջելով նուազագոյն աշխատավարձքի բարձրացում եւ հաւաքոյթի առաւել ազատութիւն:

ՔՈՒՊԱ

Տեղի կ'ունենայ չքերթ նախագահ Ռաուլ Քասթրոյի հովանաւորութեամբ եւ ռազմական ու քաղաքացիական առաջնորդներու եւ օտար հիւրերու պաշտօնական ներկայութեամբ:

ՖԻԼԻՓԻՆՆԵՐ

100 հազար մարդ կը միանայ ազգային բողոքին, Տիւթերթէի կառավարութենէն պահանջելով աշխատավարձքի բարձրացում եւ ժամանակաւոր աշխատանքի վերացում:

Աշխատաւորական եւ մարտնչող խումբերու հազարաւոր անդամներ կը հաւաքուին Մանիլայի մէջ եւ հաւաքական կոչ կ'ուղղեն կառավարութեան վերջ տալ աշխատանքային անարդարութիւնները, յատկապէս հողագործներու եւ շինարարական բանուորներու պարագային:

Ցոյցեր կը կատարուին նաեւ հիւսիսային Թակալոկ արուարձանները, Պիքոլ նահանգը, Նեկրոս Կղզի մարզը եւ Տաւաօ քաղաքը:

ՖՐԱՆՍԱ

Ֆրանսայի ցոյցերուն կեդրոնն էր Մայիս 7-ին կայանալիք նախագահական ընտրութիւնները Էմմանուէլ Մաքրոնի եւ Մարին Լը Փէնի միջեւ:

Երկու արհմիութիւններ՝ CFDT եւ Unsa, ☞ 4

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԳԱԳԻԿ ԾԱՌՈՒԿԵԱՆ

## 2 ԿԱՄ Ի՞ՆՉՊԷՍ ՍՏԵՂԾԵԼ ՏԻՊԱՐ ՀԱՅՐԵՆԱՍԷՐԻ ՊԱՏԿԵՐԸ

նաեւ սուրիահայերու չկայացած օգնութեան պատումով:

Բարեգործական յիշեալ կէտերը կը ներկայացնեն բոլոր այն մեծ պատումները, որոնք կը կազմեն թէ՛ հայկական հիմնահոսանքի՝ Ղարաբաղ, աղէտի գօտի, Սփիւռք, Ցեղասպանութիւն, ակունքներու հաւատարմութիւն, եւ թէ՛ «քաղաքակիրթ» աշխարհի հիմքը՝ առողջապահութիւն, կրթութիւն, երիտասարդութիւն: Չմոռնալով նաեւ հայկական ինքնութեան կարեւոր խորհրդանիշ մը՝ խաչքարը:

Այսպէս, ֆիլմաշարի հինգերորդ եւ վերջին մասով Ծառուկեան ամփոփած կ'ըլլայ բարեգործի իր պատկերը:

*Ջահակիր*ի յօդուածաշարի մը մէջ (ոչ-համեստօրէն) կը փորձէի ներկայացնել մեծահարուստներու բարեգործութեան բուն նպատակը: Կը յիշէի Նոր Կտակարանի ծանօթ առակներէն մէկը, ըստ որուն Յիսուս կը դիտէր՝ թէ ինչպէս հարուստները իրենց տեսքի բարելաւումին համար շատ դրամ կը ձգէին գանձանակը: Եւ յանկարծ կու գայ աղքատ մը եւ երկու լումայ կը ձգէ: Յիսուս կ'ըսէ իր աշակերտներուն. «Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, որ աս աղքատ որբեւայրին գանձանակը ստակ ձգողներուն ամենէն աւելի ձգեց. ինչու որ ամէնքը իրենց աւելցածէն ձգեցին, բայց ասիկա իր չքաւորութենէն՝ ունեցածին բոլորը ձգեց՝ իր բոլոր ապրուստը»: Յիսուսի «աւելցած»-ը Քարլ Մարքսի «յաւելեալ արժէք»-ն (surplus value) է: ԺԹ. դարուն, յաւելեալ արժէքի արդէն գոյութիւն ունեցող տեսութիւնը Մարքս խորապէս պիտի վերլուծէր դրամատիրական համակարգի լոյսին տակ: Ասկէ դիւրութեամբ պիտի հետեւէր՝ որ դրամատիրական շրջանի բոլոր բարեգործութիւնները կը կատարուին յաւելեալ արժէքի սահմաններուն մէջ: Այսինքն, մեծահարուստը բարեգործութիւն պիտի կատարէ իր գերշահոյթի մէկ աննշան մասնիկով, պայմանով որ այս մասնիկը իր կարգին օգնէ դրամական նոր կուտակումի: Յաւելեալ արժէքով բարեգործութիւնը, ծայրագոյն պարագաներու (ինչպէս՝ Ճորճ Սորոսի պարագային), կրնայ իրականացնել պետական յեղաշրջումներ (Միլոշեւիչի դէմ յեղաշրջումը 2000-ին՝ կեղծ յեղափոխութեան տարազով)(61):

Ծառուկեանի բարեգործութիւնը անկարելի է դիտել յաւելեալ արժէքի եւ դրամական կուտակումի սահմաններէն անդին: Ան *պէտք ունի* բարեգործութեան:

### ՈՒՐԻՇ ՊԱՏԿԵՐՆԵՐ

Ֆիլմաշարի հինգ մասերուն մէջ կարելի է գտնել նաեւ ինքնապատկերի ուրիշ դրուագներ եւս:

Վճռորոշ կերպով կը ներկայացուի ընտանիքի գաղափարը, քանի որ բոլոր հինգ մասերուն մէջ անընդհատ ելոյթ կ'ունենան Ծառուկեանի մայրը, կինը, չորս դուստրերը եւ երկու զաւակները, միշտ ստեղծելով համերաշխ, բարեսիրտ, փոխադարձ սիրով եւ յարգանքով կապուած, հայկական ու քրիստոնէական ընտանեկան աւանդոյթները պաշտող ընտանիքի մը անբիծ պատկերը, չմոռնալով չեշտել հայկական հայրիշխանական գերդաստանի (կեդրոնը՝ Գագիկ Ծառուկեան) յատկանիշը:

Հաւատացեալ հայ քրիստոնեայի տիպարը միշտ ներկայ է, շարունակաբար ցուցադրուելով եկեղեցիներու եւ երկու կողմի կաթողիկոսներուն տեսագրութիւնները, ինչպէս նաեւ անընդմէջ Ծառուկեանի կողմէ օգտագործուելով քրիստոնէական բառապաշարներ:

Ամենատպաւորիչը կեդրոնական տիպարի ստեղծումն է ողջ հինգ ժամերուն ընթացքին: Ծառուկեան միշտ կը գտնուի ամենատարբեր մարդկային խմբաւորումներու կեդրոնը: Ամբոխը ճեղքած ժամանակ մարդիկ միշտ կ'ուզեն ձեռքով բարեւել իրեն, երկրպագուները կ'արձակեն հիացական խօսքեր, ծերունիները կը համբուրեն իր ձեռքը, մայրերը իրենց երեխաները կ'ուղարկեն Ծառուկեանի գիրկը լուսանկարուելու համար: Իրական աստղի մը դրութիւն:

* * *

Այսպէս, կ'ունենանք Գագիկ Ծառուկեանի երկու դէմքերը: Առաջինը՝ մարդու չահագործումը, փոքր ներդրողներու հանդէպ անհանդուրժողականութիւնը, մենատիրութեան համար մղած բուռն պայքարը՝ յատկապէս քազինոներու համար, ժողովրդական շարժումներու ջախջախումը: Երկրորդը՝ կատարեալ հայու ինքնաստեղծ պատկերը:

Դրամատիրութիւնը կը սիրէ պատկերները, կը պաշտէ գերիրականութիւնը:

(Վերջ 7)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

60. *Վիճակագրական տեղեկագիր. Հայաստանի Հանրապետութեան մշտական բնակչութեան թուաքանակը 2015 թուականի Յունուարի 1-ի դրութեամբ*, Հայաստանի Հանրապետութեան Ազգային Վիճակագրական Ծառայութիւն, Երեւան, 2015, էջ 7:

61. Հ. Ա., «Բարեգործութիւն՝ յաւելեալ արժէքով», *Ջահակիր*, 29 Յունուար 2015, թիւ 1738. 12 Փետրուար 2015, թիւ 1739. 26 Փետրուար 2015, թիւ 1740. 26 Մարտ 2015, թիւ 1741:

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ-ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

### Ցաւակցագիր

Խոր վիշտով լսեցինք մահուան գոյժը Եգիպտահայ Թեմի Բարեխնամ Առաջնորդ Գերաշնորհ Տ. Աշոտ Եպս. Մնացականեանի հօր՝ Պավլուշա Արսէն Մնացականեանի, որ իր մահկանացուն կնքեց Հայաստան, 31 Մայիս 2017ին:

Գալուստեան-Նուպարեան Ազգային Վարժարանի տնօրէնութիւնը, ուսուցչական կազմը, աշակերտութիւնը, հոգաբարձուներ-ծնողք-ուսուցիչներու միութիւնը եւ Տիկնանց խնամակալութիւնը իրենց խորին ցաւակցութիւնները կը յայտնեն Առաջնորդ Սրբազան հօր եւ ընտանիքի բոլոր անդամներուն:

Աստուած ննջեցեալին հոգին լուսաւորէ եւ ընտանիքը մխիթարէ:

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Կիրակի, 25 Յունիս 2017

Ս. Պատարագ՝ Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ:

Յաւարտ Ս. Պատարագի, հոգեհանգստեան մասնաւոր պաշտօն պիտի կատարուի ***ՔՍԱՆ ՀՆՉԱԿԵԱՆՆԵՐՈՒ*** հոգւոյն ի հանգիստ, որոնք կախաղան հանուեցան եւ նահատակուեցան 1915-ին, Կ. Պոլսոյ մէջ:

Սկիզբ Ս. Պատարագի առաւօտեան ժամը 10:00-ին

Երթ ու դարձը դիւրացնելու համար հաստատուած է հանրաշարժի սպասարկութիւն:

Սալահ Էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 8:45-ին

Այծեմնիկ Հանգստեան Տան շէնքին առջեւէն ժամը 9:00-ին

*Ե. Գ. Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ*

## 3 ՄԱՅԻՍ ՄԷԿ

Փարիզի մէջ բողոքի երթ կը կազմակերպեն՝ թիկունք կանգնելով Մաքրոնին: Անոնք կը քալեն հակա-ցեղապաշտական եւ միասեռականներու իրաւունքները պաշտպանող կազմակերպութիւններու հետ: Ուրիշ արհմիութիւններ՝ CGT, Force ouvrière, FSU, Solidaires, Unef եւ լիսէականներ երթ կը կազմակերպեն մերժելով թէ՛ Մաքրոնը եւ թէ՛ Լը Փէնը: Մերժելով Մաքրոնը, անոնք կը մնան միակ ձայները՝ որոնք կը պայքարին Մարքոնի լիպերալ, խնայողական, կրճատողական եւ ձեռնարկատիրական քաղաքականութեան դէմ:

Մաքրոնի եւ Լը Փէնի կուսակցութիւնները Փարիզի մէջ կը կազմակերպեն ընտրարշաւային հանրահաւաքներ:

Անոնցմէ անկախ, տակաւին չբացայայտուած ցուցարարներ Փարիզի մէջ քարիւղային ռումբեր եւ այլ առարկաներ կը նետեն ոստիկաններուն վրայ, որոնք կը պատասխանեն արտասուաբեր կազով եւ մահակի ծեծով:

Զանազան ցոյցեր կը կատարուին Փարիզ, Մարսէյ, Ռէնն, Լիլ, Պորտօ, Թուլուզ, Լիոն եւ այլուր, մեծ մասամբ ուղղուած Լը Փէնի դէմ:

* * *

Ինչպէս կ'երեւի, վերոյիշեալը կարելի չէ միանշանակօրէն ընդունիլ իբրեւ աշխատաւորական ազատագրական շարժումներ: Այնտեղ կը գտնուին երկիրներու նախագահներուն կողմէ կազմակերպուած պետական չքերթներ, ինչպէս Քուպա եւ Ռուսաստան, ուր իշխանականները կը յաւակնին խօսիլ աշխատաւորներու անունով, մինչդեռ աշխատաւորները իրաւունք անգամ չունին բողոքի ձայն բարձրացնել: Կը գտնուի Ֆրանսայի պարագան, որ իր ընդհանուր գիծերով թիկունք կը կանգնի հակա-աշխատաւորական միտումներ ունեցող, ամբողջ ֆրանսական ֆինանսական հիմնարկներուն աջակցութիւնը վայելող Մաքրոնին: Վենեզուելայի աջակողմեայ թեւին ցոյցերը ուղղակիօրէն հասցէագրուած էին վերականգնելու դրամատիրական իշխանութիւնը եւ ունէին հակա-Մարտ մէկեան բնոյթ: Արժանթին, Ինտոնեսիա, Կիպրոս, Յունաստան, Սպանիա եւ այլուր ունէին ազատագրական պահանջքներ՝ ըլլայ մտաւոր թէ աշխատանքային առումներով:

Նկատելի էր՝ որ սփիւռքահայեր ոչ մէկ միութիւն արձանագրեց իր մասնակցութիւնը Մարտ Մէկի ցոյցերուն կամ հանրահաւաքներուն:

Ի՞նչպէս համաշխարհային հիմնահոսանքային լրատուամիջոցները արձագանգեցին այս ցոյցերուն: Ինչպէս միշտ, լուրերուն կիզակէտրոնը կը գտնուէր բռնութեան ցուցադրութիւնը, պայմանով որ այդ բռնութեան յանցանքը բարդուի ցուցարարներու ուսերուն: Կարեւոր է որ ցոյցերը ներկայացուին իբրեւ կանոնազանցութիւն եւ ոչ իբրեւ արդար իրաւունքի պահանջք: Բացակայեցաւ կամ նուազագոյնի վերածուեցաւ խաղաղօրէն ընթացած ցոյցերուն ցուցադրութիւնը: Ամենակարեւորը, դուրս մնաց բուն ցուցարարներուն խօսքը, որ, բնականաբար, ուղղուած պիտի ըլլար ընդդէմ իշխանական չահագործումներուն եւ չարաշահումներուն՝ ի նպաստ աշխատաւորական պայմաններու բարելաւումին:

Այս առումով, Փարիզի ցոյցերը լաւագոյն առիթ մը ներկայացան: Մոռնալով խաղաղ ցուցարարները, հեռատեսիլի կայանները կեդրոնացան բռնութիւններուն վրայ: Իսկ Ֆրանսայի ներքին գործոց նախարար Մաթիաս Ֆէքլ դատապարտեց «անհանդուրժելի կատաղութիւնը», առանց ոչ մէկ չեշտադրում կատարելու ցուցարարներու միւս խումբի «գնահատելի խաղաղութեան» մասին:

Հայերը չեշտեցին Թուրքիոյ վարչակարգին գործադրած ոստիկանական բռնութիւնները: Ամբողջապէս իրաւացի էին: Բայց եթէ կայ ոստիկանական բռնութիւն, ուրեմն կայ նաեւ բռնութեան ենթարկուող զանգուած մը, որուն բուն նպատակը երկիրի ժողովրդավարացումն է: Այս զանգուածային բնիկ ձայնը չհնչեց հայկական լրատուամիջոցներէն: Մեր նպատակը արդե՞օք ամբողջ թուրքական դէմքին սեւացումն է Էրտողանի նման բռնապետի մը ընդմէջէն, թէ՞ փափաքն է Թուրքիոյ մէջ տեսնել ժողովրդավարութեան յաղթանակը: Եթէ Թուրքիոյ մէջ կը գտնուի ժողովրդական չերտ մը՝ որ կը ձգտի ազատ խօսքի եւ ազատագրուած միտքի, ուրեմն կայ չերտ մը որուն հետ կարելի է խօսիլ ու բանակցիլ: Մեծահռչակ Հրանդ Տինքի գլխաւոր ձգտումն էր յարաբերիլ ու հաղորդակցիլ թուրքերու այս չերտին հետ, անոնց միջոցով Թուրքիոյ մէջ բարձրացնել հայկական հարցն ու հայոց ցեղասպանութիւնը եւ անոնց օգնութեամբ գտնել լուծումներու կարելիութիւններ: Այս միտումը բոլորովին անընդունելի մնաց հայկական հիմնահոսանքին կողմէ, թէեւ վերջինս չվարանեցաւ Տինքը դարձնել ազգային հերոս: Թաքսիմ հրապարակի (անշուշտ Թաքսիմը այստեղ կ'ընդունիմ իբրեւ խորհրդանիշ) ցուցարարները կարեւոր բանալի մը կրնան հանդիսանալ հասնելու չօշափելի յաջողութիւններու, եթէ հայերուն կողմէ այս ուղղութեամբ տարուի գիտակից աշխատանք: Բայց այստեղ սփիւռքի աւանդականներուն ու Հայաստանի իշխանականներուն համար պիտի ծագի ուրիչ խնդիր մը: Եթէ անոնք ընդունին Թուրքիա մտնել վարէն՝ քաղաքացիական հասարակութեան կողմէ, ի՞նչպէս պիտի արդարացնեն *իրենց* սեփական քաղաքացիական հասարակութեան գոյութեան աչխուժութիւնը, ի՞նչպէս պիտի ընդունին, որ իրենք եւս կառավարուին վարէն՝ հայ քաղաքացիական հասարակութենէն, եւ հրաժարին բուրգային նուիրապետական համակարգէն:

(Տար. 2)

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1792 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 22 ՅՈՒՆԻՍ 2017

ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ.

عدد رقم ١٧٩٢ الخميس ٢٢ يونيه ٢٠١٧


## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԸ ՏԱՆՈՒԼ Է ՏԱԼԻՍ. «ՍԱԴՐԱՆՔԸ» ԲԱՑԱՅԱՅՏԵՑ ՀՀԿ ԽՈՒՃԱՊԸ

**ՅԱԿՈԲ ԲԱԴԱԼԵԱՆ**

Խորհրդարանում կառավարութեան ծրագրի քննարկումը փաստացի վերածուեց ՀՀԿ-ԵԼՔ հեռակայ կամ անուղղակի երկխօսութեան: Ծրագրի քննարկում, որպէս այդպիսին՝ բովանդակային առումով, գործնականում չկայ: ԵԼՔ դաշինքը կենտրոնացաւ 2018 Թուականի վարչապետի խնդրի վրայ, Թէ Կարէն Կարապետեանին ուղղուած հարցերի, Թէ դաշինքի առաջնորդների ելոյթների մասով: 2018 Թուականի խնդիրը առնուազն հանրային հարԹակում Կարէն Կարապետեանի «Թոյլ տեղն» է, եւ ԵԼՔ-ը հասկանալիօրէն փորձեց որսալ այն եւ դրանով գնալ առաջ:


Յակոբ Բադալեան

Միաժամանակ, ԵԼՔ-ն այդպիսով բացայայտեց իր Թոյլ տեղը՝ իշխանութեան հետ բովանդակային բանավէճի մէջ մտնելու անկարողութիւնը, կամ ընդհանրապէս իշխանական օրակարգից դուրս օրակարգ կամ մԹնոլորտ ձեւաւորելու անկարողութիւնը, կամ գուցէ անպատրաստակամութիւնը:

Յամենայն դէպս, կառավարութեան ծրագրի քննարկմանը ԵԼՔ դաշինքը տուրք տուեց ներիշխանական ինտրիգին: Թէ ինչ է շահում դրանից դաշինքը, այդքան էլ պարզ չէ: Փոխարէնը պարզ է դրանից ունեցած Սերժ Սարգսեանի կամ այսպէս ասած իշխանութեան «հին ոգու» շահը: Դա ակներեւ դարձաւ նաեւ ՀՀԿ-ականների արձագանքի բովանդակութիւնից, որից տպաւորութիւն ստացուեց, որ ԵԼՔ-ը հարցեր էր բարձրացնում, որպէսզի ՀՀԿ-ականները շարունակեն դրանք իրենց պատասխանով:

Այդ պատասխանների գերակշռող մասի առանցքում այն էր, որ կարեւոր չէ, Թէ ով է լինելու վարչապետ 2018 կամ 2040 Թուականին, քանի որ առաջնորդը միեւնոյն է լինելու է Սերժ Սարգսեանը:

Ի՞նչ հարց ունի ԵԼՔ-ն այս կապակցութեամբ, դեռեւս պարզ չէ: Բայց, ՀՀԿ-ԵԼՔ անուղղակի կամ հեռակայ երկխօսութիւնը ՀՀԿ-ի համար առնուազն ստացուեց: Ոքանո՞վ, դեռեւս պարզ չէ, որովհետեւ չի բացառւում՝ նաեւ, որ ԵԼՔ-ը իր հարցերով, «երկխօսութեան» հնարամիտ «սադրանքով» բացայայտեց Սերժ Սարգսեանի ու ՀՀԿ խուճապը:

Բանն այն է, որ ՀՀԿ պնդումները, Թէ ով էլ լինի վարչապետ՝ առաջնորդը լինելու է Սերժ Սարգսեանը, որքան խօսում են Կարէն Կարապետեանի այսպէս ասած «լուսանցքում» մնալու մասին, նոյնքան էլ, իսկ գուցէ աւելի, յուշում են Սերժ Սարգսեանի «լուսանցքային» վիճակի մասին:

Սարգսեանի մօտ չի ստացւում ըստ իր ծրագրի լուծել 2018 Թուականի վարչապետի հարցը, եւ այդ իսկ պատճառով ՀՀԿ-ին իջեցուած է 2018-ի վերաբերեալ հարցի պատասխանի տարածուող տարբերակը՝ կապ չունի, Թէ ով է լինելու վարչապետ, քանի որ առաջնորդը եւ մեծամասնութիւնը լինելու են Սերժ Սարգսեանն ու ՀՀԿ-ն: Այդ պնդումները եզակի չեն, դրանք շարունակուող են, տարածուող, ինչը Թողնում է տպաւորութիւն, որ վարչապետի նշանակման հարցում Սարգսեանը տանուլ է տալիս, եւ մնում է փոխհատուցել այդ հանգամանքը նրանով, որ միեւնոյն է մեծամասնութիւնն է իր ձեռքին եւ լինելու է մինչեւ 2040 Թուականը:

Բայց դա աւելի շատ հոգեբանական փոխհատուցման տարբերակ է, որովհետեւ եԹէ Սերժ Սարգսեանը չկարողացաւ հասնել կամ իր վարչապետութեանը, կամ հէնց իր Թեկնածու վարչապետի նշանակմանը, - իսկ Կարէն Կարապետեանը նրա Թեկնածուն էր 2016-ին եւ 2017-ին, բայց 2018-ի նրա Թեկնածուն չէ, - ապա չի կարող պահել Թէ մեծամասնութիւնը, Թէ առաջնորդութիւնը ոչ միայն մինչեւ 2040, այլ նոյնիսկ մինչեւ 2022:

Իշխանութեան մէջ վարչապետի, կամ որեւէ այլ ազդեցիկ կարգավիճակով մնալը Սերժ Սարգսեանի համար սկզբունքային խնդիր է, քանի որ միայն ՀՀԿ նախագահի պաշտօնում իշխանութեան վրայ ազդեցութիւնը երկար պահելը չի ստացուի: Կամ դրա համար նա 2018-ին պէտք է ձեւաւորի ամբողջութեամբ դրածոների կառավարութիւն, բայց որի դէպքում անգամ հեռակայ ազդեցութիւնը կրելու է ժամանակաւոր բնոյԹ, քանի որ դրածոները, զգալով իշխանութեան համը՝ սկսելու են դէ եուրէ իշխանութիւնից դէ ֆակտո դառնալու գործընԹացը:

3

## ԷՐ ՔԱՅՐՕ Կ'ԻՐԱԿԱՆԱՑՆԷ ԻՐ ԱՌԱՋԻՆ ԹՌԻՉՔԸ ԵԳԻՊՏՈՍԷՆ ՀԱՅԱՍՏԱՆ

Երեքշաբթի, Յունիս 20-ին, եգիպտական Air Cairo օդանաւային ընկերութիւնը կ'իրականացնէ իր առաջին Թռիչքը Եգիպտոսի Հուրղատայի օդանաւակայանէն դէպի Երեւանի Զուարթնոց օդանաւակայանը: Ընկերութիւնը նախատեսած է շաբաթական երկու Թռիչք՝ մէկը Երեքշաբթի օրերը Հուրղատա-Երեւան-Հուրղատա, միւսը Հինգշաբթի օրերը Շարմ էլ-Շէյխ-Երեւան-Շարմ էլ-Շէյխ:



Առաջին Թռիչքով, ընկերութեան յատուկ հրաւէրով Երեւան մեկնեցան եգիպտահայ գաղութի ղեկավար դէմքերը եւ մշակութային ու մարզական ակումբներու ատենապետները:

Air Cairo ընկերութիւնը հայկական շուկայ մուտք կը գործէ առաջին անգամ: Հայաստանի քաղաքացիները այլեւս ստիպուած չեն ըլլար եգիպտական հանգստավայրեր մեկնիլ Վրաստանի միջոցով:

Air Cairo-ի պաշտօնական ներկայացուցիչը Հայաստանի մէջ կը հանդիսանայ Անոփվա-Տուր:

## ՔՍԱՆ ՀՆՉԱԿԵԱՆ ՎԿԱՆԵՐՈՒՆ

**ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆ**

Ի՜նչպէս անշուշտ մըսեցաւ, ո՜հ, մըսեցա՜ւ ձեր հոգին՝
Երբ մայիսի այդ առտուն, արշալոյսէն դեռ առաջ,
Իրարու քով, իրարու միայն կառչած նայուածքին,
Մահափայտերը տեսաք՝ ձեր դէմ ցցուած իբրեւ խաչ...

Ինչպէ՜ս անշուշտ խորհեցաք Թէ ա՛լ արեւը երբե՛ք,
Նոյն օրն ու օր մը նորէն, պիտի նորէն չը ծագի
Ձեզի համար, եւ ինչպէ՛ս այս ըզգացմամբ սըրտաբեկ՝
Դուք նայեցաք ճերմըկող անհունութեանն երկընքի...

Ի՜նչպէս անցան, մի առ մի, ձեր աչքերուն առջեւէն
Սիրուած դէմքերը բոլոր՝ հայրենիքին հետ սիրուած,
Ե՛ւ հին յուշերը անուշ, ե՛ւ նոր յոյսերը ամէն...

Բայց եւ ի՜նչպէս, ամենքդ ալ, վերջին պահուն, ձեր դիմաց,
Երազային, շատ պայծառ, ուրիշ Արեւ մը տեսաք,
Եւ ճօճեցաք օդին մէջ՝ զայն խըմելէ վերջ ցըլյագ...
1915

## ՀԱՅԱՍՏԱՆ

## «ՀՐԱԺԱՐԱԿԱՆԻ ԴԻՄՈՒՄ». ԿԱՐԷՆ ԿԱՐԱՊԵՏԵԱՆԻ ԳՐԱՌՈՒՄԸ. *armtimes.com*



Վարչապետ Կարէն Կարապետեանն Ազգային Ժողովի Յունիսի 21-ի նիստում, երբ ներկայացրեց իր ղեկավարած կառավարութեան 2017-2022 Թուականների գործունէութեան ծրագիրը, նստեց իր տեղում եւ սկսեց գրառումներ անել: Նրա գրառումներից երկուսն ուշագրաւ են. «Հրաժարականի դիմում», «Ինչ է լինելու 2018 Թուականից յետոյ...»:

Մէկ այլ ԹերԹիկի վրայ վարչապետը պատգամաւորների անունների դիմաց կամ անուն ազգանունների տակ նոյնպէս գրառումներ է կատարել: Հանրապետական պատգամաւոր Մարգարիտ Եսայեանի անուան տակ գրել է «Սրտով»: Բացի դա, Կարէն Կարապետեանը մէկ այլ ԹղԹի վրայ երկրաչափական պատկերներ է նկարել, խաչ, որի եզրերը մգացրել է:

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԸ ԽՕՍՈՒՄ ԷՐ ՈՉ ԹԷ ՈՐՊԷՍ ՀԵՌԱՑՈՂ ՆԱԽԱԳԱՀ, ԱՅԼ ՈՐՊԷՍ ՄՕՏԵՑՈՂ ՎԱՐՉԱՊԵՏ. ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆ

«Ամէն ինչ շատ նման է նրան, որ այսօր մենք ոչ Թէ Կարէն Կարապետեանի կառավարութեան ծրագրի հաստատմանն ենք ներկայ, այլ Կարէն Կարապետեանի կառավարութեան հրաժեշտի մեկնարկի գործընԹացին», - Յունիս 21-ին խորհրդարանում կառավարութեան ծրագրի ներկայացման ժամանակ ասաց Ելք խմբակցութեան ղեկավար Նիկոլ Փաշինեանը: Նա նշեց, որ հիմա քաղաքական գլխաւոր հարցը հետեւեալն է՝ արդեօք Կարէն Կարապետեանը յաւակնում է 2018 Թուականին Թիւ մէկ պաշտօնեայի՝ վարչապետի պաշտօնին:

«Խաչաձեւ հարցաքննութեան ընԹացքում վարչապետն ի վերջոյ ասաց, որ ինքը պատրաստ է լինել Հայաստանի վարչապետ 2018 Թուականի Ապրիլից յետոյ: Սա ինչ-որ պատասխան է, բայց ընդամէնը 10 տոկոսով: Ի՞նչ է լինելու, Թէ, օրինակ, պարզուի, որ այդ պաշտօնը պատրաստ է ստանձնելու Սերժ Սարգսեանը կամ Սերժ Սարգսեանը պատրաստ է, որ այդ կարգավիճակը ստանձնի Վիգէն Սարգսեանը: Մայիսի 18-ին այս ամբիոնից ելոյԹ ունենալով՝ Սերժ Սարգսեանը խօսում էր ոչ Թէ որպէս հեռացող նախագահ, այլ որպէս մօտեցող վարչապետ», - ասաց Փաշինեանը: Նրա խօսքով՝ Հայաստանի Հանրապետական Կուսակցութեան (ՀՀԿ) գործիչների խօսքում կարմիր Թելի պէս անցնում է այն, որ որպէս վարչապետ երկիրը ղեկավարելու է Սերժ Սարգսեանը:

«ՀՀԿ խօսնակի խօսքին ուշադրութիւն դարձրի՞ք, ինքն ասեց, որ էս կառավարութեան ծրագիրը հիմնուած է այս ելոյԹի վրայ, այն ելոյԹի վրայ, ինչպէս քնքուշ նկատում էր, Սերժ Սարգսեանի ելոյԹի վրայ, կառավարութիւնից մի հոգու անուն

3

# *ԽՈՐ ԼԵՌԸ*՝ ԱՐԱԲԵՐԷՆ

Թուրք այլախոհ լրագրողուհի եւ գրող Էճէ Թեմելքուրանի *Խոր լեռ* հատորը Թրքերէն լեզուով լոյս տեսած է Իսթանպուլի մէջ 2008-ին (Ece Temelkuran, *Ağrı'nın Derinliği*, İstanbul: Everest Yayınları, 2008): Գիրքը կը ներկայացնէ անձնական ու մարդկային մտորումներ հայերուն եւ Եղեռնի մասին: 2010-ին Նիւ Եորքի մէջ կը հրատարակուի անոր անգլերէն թարգմանութիւնը (Ece Temelkuran, *Deep Mountain: Across the Turkish-Armenian Divide*, New York: Verso, 2010): 2013-ին ան կը թարգմանուի խրուաթերէնի (croatian) եւ լոյս կը տեսնէ Զակրէպի մէջ (Ece Temelkuran, *Planina boli: S onu stranu tursko armenskoga sukoba*, Zagreb: Naklada Ljevak, 2013): Վերջապէս, 2016-ին Գահիրէի մէջ կը հրատարակուի անոր արաբերէն տարբերակը՝ Մայսարա Սալահ Էլ-Տինի թարգմանութեամբ (Էճէ Թեմելքուրան, *Ալ-ճապալ ալ-'ամիք. Ռո'եա էնսանէյյա մու'ասերա հաուլ ալ-մաս'ալա ալ-արմաննէյա*, Գահիրէ, Սաֆսաֆա Հրատարակչութիւն, 2016):

Եգիպտացի գրող, բանաստեղծ եւ թատերագիր Մայսարա Սալահ Էլ-Տին ծնած է Աղեքսանդրիա, 1979-ին: Ունի եօթը բանաստեղծական ժողովածուներ եւ երկու թատրերգութիւններ՝ բոլորն ալ գրուած եգիպտական ժողովրդական բարբառով: Ունի տարբեր պարբերականներու մէջ հրատարակուած բանաստեղծութիւններ եւ այլազան յօդուածներ: Հեղինակած է բազմաթիւ երգերու խօսքեր: Մասնակցած է Գահիրէի Գիրքի Միջազգային Ցուցահանդէսի մտաւոր երեկոներուն, իր գործերը քննարկուած են զանազան գրական ու մշակութային կեդրոններու մէջ: Արժանացած է մրցանակներու:

Ստորեւ, թարգմանաբար կը ներկայացնեմ *Խոր լեռ* արաբերէն հատորի նախաբանը՝ զոր գրած է Մայսարա Սալահ Էլ-Տին:

Հ. Ա.

## ԹԱՐԳՄԱՆԻՉԻ ՆԱԽԱԲԱՆԸ
## *ԽՈՐ ԼԵՌ* ԱՆԲՈՒԺԵԼԻ ՎԷՐՔԵՐՈՎ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՄԸ ՆՈՐՈՎԻ ԸՆԹԵՐՑՈՒՄԸ

Երբ 2014-ի ամռան սկիզբները, մեր հաւաքոյթներէն մէկուն ընթացքին հրատարակիչ բարեկամս Մոհամմէտ Ալ-Պա'լի խնդրեց ինձմէ համագործակցիլ Սաֆսաֆա Հրատարակչատան հետ թարգմանելու իր նոր ծրագիրներէն մէկը, ուրախութեան եւ մտահոգութեան տրամադրութիւն մը համակեց զիս՝ միախառնուած հետաքրքրասիրութեան զգացումով:

Կը ցանկայի որ առաջարկէր բանաստեղծական ծաղկաքաղ մը կամ նոյնիսկ վէպ մը՝ որոնք կը ներկայացնեն ապահով տարածութիւն մը ինծի նման բանաստեղծի եւ թատերագիրի մը համար: Բայց խառնաշփոթ կացութիւն մը յառաջացաւ մօտս երբ տեղեկացայ՝ թէ թարգմանութեան համար առաջարկուած գիրքն է լրագրողուհի Էճէ Թեմելքուրանի *Խոր լեռը*:

Այստեղ գրողը կը բացայայտէ 1915 թուականի հայկական ահռելի ջարդերը՝ որոնք գործադրուեցան օսմանեան իշխանութեան կողմէ: Երբ ստացայ գիրքը եւ սկսայ կարդալ զայն, գիտակցեցայ որ գործ ունիմ հրաշալի գեղարուեստական գլուխ գործոցի մը հետ, որ իր ծալքերուն մէջ կը միատեղէ այլազան ստեղծագործական հնարքներ:

Գրողը կարողացած է լրագրական նիւթի խորութիւնն ու հետախուզական վերլուծութեան հմտութիւնը համատեղել գրաւիչ կառուցուածքի մը մէջ՝ որ ընդունակ է մրցելու վէպի մը պատմողականութեան եւ բանաստեղծութեան մը գունագեղութեան հետ:

Առաջին հայեացքէն թարգմանութիւն մը կը թուի ըլլալ դիւրին աշխատանք մը: Բայց խնդիրը ամբողջապէս կը փոխուի երբ գործ կ'ունենանք գիրքի մը հետ՝ որ յագեցած է մարդոց, վայրերու եւ դէպքերու մասին իրական եւ բծախնդիր մանրամասնութիւններով: Բնագիրի խորքը թափանցելու եւ անոր արտաքին ոլորտը շրջանցելու համար անհրաժեշտ է ուսումնասիրել այս բոլորը:

Վերստին սկսայ համբերութեամբ կարդալ եւ ուսումնասիրել հայ-թրքական պատմութիւնը՝ դիտուած ոչ միայն հակամարտութեան երկու բեւեռներուն այլեւ հայկական եւ թրքական հասարակութիւններուն ընդերքը գտնուող զանազան հոսանքներուն կողմէ: Զգտելով պահպանել թարգմանական հաւատարմութիւնը եւ բնագիրին յորդուն հարստութիւնը, ինքզինքս հեռու պահեցի դատողութենէ եւ ներգրաւումէ:



Մայսարա Սալահ Էլ-Տին

Բնագիրը կը գործածէ հետեւեալ անուանումները՝ «մեծագոյն ոճիրը, զանգուածային ոչնչացումը, էթնիք մաքրագործումը, հայոց ցեղասպանութիւնը, բռնագաղթի գործողութիւնը, փոխադրութեան եւ բնակութեան օրէնքը» եւ այլն, եւ ժամանակակից մօտեցումով կը մեկնաբանէ զանոնք: Ասոնք կը նկարագրեն այն արիւնալի դէպքերը՝ որոնք Օսմանեան Կայսրութեան կողմէ 1915 Ապրիլ 24-ին գործադրուեցան հայ հպատակներուն հանդէպ:




Թուրքիա յետնախորքը միշտ կը դնէ Առաջին Համաշխարհային Պատերազմը, ուր ան կորսնցուց բազմաթիւ հողատարածութիւններ եւ Ուղղափառ Ռուսաստանի ուժերուն ձեռքով ենթարկուեցաւ ստորացուցիչ ռազմական կորուստներու, մինչ Ռուսաստանը այդ ժամանակ յարաբերութեան մէջ կը գտնուէր հայերուն հետ: Ըստ թրքական պաշտօնական պատմութեան, պատերազմին պատճառով Անատոլիա եւ Թուրքիոյ այլ վայրերը գտնուող գիւղերու հայերը բնակութեան համար կը փոխադրուին Սուրիոյ նոր գաղթավայրեր: Ճանապարհի ընթացքին տեղի կ'ունենան հայերու մեծաքանակ սպանութիւններ:

Ասիկա կը հակասէ հայերուն հաստատած հաւաքական գիտակցութեան, ըստ որուն պատահածը ազգայնական եւ իսլամական Օսմանեան Կայսրութեան կողմէ կատարուած էթնիքական մաքրագործումի եւ զանգուածային ոչնչացումի փորձ մըն էր: Անշուշտ, հայերը իրենց հարցին դեսպանները հանդիսացան ամբողջ աշխարհով:

Այս դէպքերուն նզովքը շարունակեց հետապնդել բոլոր գործադրողները: Պատերազմի վերջաւորութեան Օսմանեան Կայսրութիւնը խորտակուեցաւ՝ կորսնցնելով իր հողերուն մեծամասնութիւնը, իսկ քաղաքական առաջնորդները եւ իշխող Միութիւն եւ Յառաջդիմութիւն կուսակցութեան անդամները աքսորուեցան, սպաննուեցան կամ փախուստ տուին: Իբրեւ պատերազմական ոճրագործ գնդակահարուեցաւ ներքին գործերու նախարար Թալէաթ փաշա, իսկ սուլթան Ապտէլ Համիտ գահազուրկ եղաւ եւ ցմահ դրուեցաւ բնակարանային կալանքի տակ:

Ընդամէնը քանի մը ամսուան ընթացքին վերջացուցի գիրքին թարգմանութիւնն ու սրբագրութիւնը: Ասիկա կարեւոր յաւելում մը եղաւ իմ ունեցած մարդկային ու մշակութային փորձառութեանս վրայ՝ գերազանցելով բոլոր ակնկալիքներս:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՍՓԻՒՌՔԻ ՄԵԾԱՄԱՍՆՈՒԹԻՒՆԸ ՀԵՏԱՔՐՔՐՈՒԱԾ ՉԷ ՀԱՅԱՍՏԱՆՈՎ. ՀՐԱՉ ՉԻԼԻՆԿԻՐԵԱՆ

Սասնայ Ծռերի գործողութիւններից յետոյ բաւականին հետաքրքրական եւ անցումային շրջան տեղի ունեցաւ: Սփիւռքը աւելի քաղաքական «ակնոցով» սկսեց նայել Հայաստանին, եւ սա իր ձեւով խթան հանդիսացաւ, որ Սփիւռքի որոշ շրջանակներ, որոնք ակտիւ չէին Հայաստանի քաղաքական կեանքում, սկսեն ուշադրութիւն դարձնել Հայաստանում տեղի ունեցող իրողութիւններին», - *Առաջին լրատուականի* հետ զրոյցում ասել է Օքսֆորդի համալսարանի արեւելագիտութեան ամբիոնի դասախօս, սփիւռքագէտ Հրաչ Չիլինկիրեանը:

Հարցին՝ որքանո՞վ Սփիւռքը իրաւունք ունի միջամտելու Հայաստանի ներքաղաքական կեանքին, Հրաչ Չիլինկիրեանը նշեց. «Այդ տեսակէտն էլ գոյութեան իրաւունք ունի: Ես կարծում եմ՝ չի կարելի Սփիւռքի մասին ընդհանուր եզրերով խօսել: Սփիւռքը այսօր ապրում է չորս երկրներում՝ Ռուսաստան, ԱՄՆ, Ֆրանսիա եւ Վրաստան: Այսինքն՝ Սփիւռքի 80 տոկոսը այս երկրներում է: Իւրաքանչիւր սփիւռք ունի իր իւրայատկութիւնը: Բացի այդ, եթէ Հայաստանում չես ապրում, դա դեռ չի նշանակում, որ դու կարծիք յայտնելու իրաւունք չունես»:

Անդրադառնալով այն գնահատականներին, թէ Սփիւռքը հետաքրքրուած չէ Հայաստանով, Հրաչ Չիլինկիրեանը նկատեց, որ այստեղ աւելի սկզբունքային խնդիր կայ. «Անշուշտ, Սփիւռքի մէջ որոշ հայեր կան, որ գալիս գնում են, այս իրադարձութիւններից, խնդիրներից տեղեակ են, իսկ քանի որ ճանաչում են սփիւռքը, մեծամասնութիւնը Հայաստանից սպասում է, որ Հայաստանը լինի իր ժողովրդի իրաւունքները յարգող, պաշտպանող, որ օրէնքի հաւասարութիւն լինի, որ մարդու հիմնական իրաւունքները պաշտպանուեն»:

## ՅՈՎՀԱՆՆԷՍ ԻԳԻԹԵԱՆԻ ԿԱՐԾԻՔՈՎ՝ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ ՊԷՏՔ Է ՓՈԽԻ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿՈՒՐՍԸ. *ԱՌԱՒՕՏ*

Հայոց Համազգային Շարժման (ՀՀՇ) վարչութեան անդամ, Ազգային Ժողովի (ԱԺ) արտաքին յարաբերութիւնների յանձնաժողովի նախկին նախագահ Յովհաննէս Իգիթեանը կարծում է, որ Հայաստանի իշխանութիւնը եւ դիւանագիտութիւնը պէտք է փոխեն իրենց կուրսը:

«Վերջին երեք-չորս տարիների ընթացքում մեզ ասում էին, թէ Հայաստանում տեղակայուած ռուսական ռազմաբազան ոչ միայն Հայաստանի, այլեւ տարածաշրջանային անվտանգութեան խնդիրն է լուծում, մեր իշխանաւորները նաեւ ասում էին, որ Հաւաքական Անվտանգութեան Պայմանագրի Կազմակերպութեան (ՀԱՊԿ) դէպքում չի լինելու որեւէ ռազմական ոտնձգութիւն, տարօրինակ է լսել, որ մեզ ներկայացնում էին տնտեսական համակարգ՝ Մաքսային Միութիւն, որը յետոյ դարձաւ Եւրասիական Տնտեսական Միութիւն (ԵՏՄ)՝ իբրեւ անվտանգութեան երաշխիք Արցախի եւ Հայաստանի համար: Իսկ Հայաստանի դիւանագիտութեան մասը ներկայացնում էր, որ տարբեր հարթակներում իրենք դուրս են գալիս ամբողջ աշխարհի դէմ Ռուսաստանի շահերի համար՝ հիմնաւորուելով, թէ իբր Ռուսաստանն է որոշում Հայաստանի անվտանգութիւնը: Մինչդեռ իշխանութիւնները պէտք է այլ ճանապարհներ գտնեն, յայտարարեն, որ այս երաշխիքները չեն գործում, ու փորձում են գտնել այլ երաշխիքներ», - *Առաւօտի* հետ զրոյցում ասել է նա:

ԳԱՀԻՐԷ

## ՍՏԱՑԱՆՔ

Ուրախութեամբ ստացանք եգիպտահայ ատամնաբոյժ, հասարակական գործիչ, մատենագիր եւ *Յուսաբեր* օրաթերթի նախկին խմբագիր Սուրէն Ն. Պայրամեանի վերջին հատորը՝ *Հայկական համայնքային կառոյցները Եգիպտոսի մէջ*, Գահիրէի Ազգային Առաջնորդարանի Հրատարակչութիւն, 2017, 312 էջ: Տպարան՝ Նուպար Տպագրատուն, Ալ-Ուպուրի մասնաճիւղ: Հատորը բաղկացած է 15 գլուխներէ. «Վարժարաններ», «Մշակութային եւ զանազան միաւորներ», «Նուագախումբեր», «Երգչախումբեր», «Թատերախումբեր», «Մարզական ակումբներ», «Տպարաններ», «Գրադարաններ», «Մամուլ», «Նմոյշներ կանոնագիրներու», «Նկարներ կառոյցներու», «Նկարներ նուագախումբերու», «Նկարներ երգչախումբերու», «Նշանակներ մարզական միաւորներու», «Յուշակոթողներ»:

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԸ ԽՕՍՈՒՄ ԷՐ ՈՉ ԹԷ ՈՐՊԷՍ ՀԵՌԱՑՈՂ ՆԱԽԱԳԱՀ, ԱՅԼ ՈՐՊԷՍ ՄՕՏԵՑՈՂ ՎԱՐՉԱՊԵՏ. ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆ

1 ➩

չտուեց, նոյնիսկ վարչապետի անունը: Այս ծրագրի հետ կառավարութիւնը ոչ մի կապ չունի: Հէնց հարցն էլ հետեւեալն է՝ այս կառավարութեան ծրագրի քննարկումը իմաստ կ'ունենայ, քաղաքական լուրջ քննարկում կը ծաւալուի միայն այն դէպքում, երբ վարչապետ Կարէն Կարապետեանը յստակ կը յայտարարի՝ ով է ինքը եւ ինչ դերակատարում է իրեն վերապահում առաջիկայում, երբ տեղի է ունենալու իշխանութեան տրանսֆորմացիա», - ասաց նա:

Նիկոլ Փաշինեանը նաեւ ասաց, որ Կարէն Կարապետեանը պէտք է յստակ պատասխան տայ՝ ինչո՞ւ է ստանձնել վարչապետի պաշտօնը, Սերժ Սարգսեանի վերարտադրութիւնն ապահովելու համա՞ր: Մինչ այժմ վարչապետի արած բոլոր քայլերը, նրա խօսքով, խօսում են հէնց այս վարկածի օգտին:

«Գործող վարչապետը 2017 թուականի ընտրութիւններից առաջ վարչապետի պաշտօնն ստանձնելով ու ՀՀԿ շարքերը համալրելով՝ իր նոր կերպարով պոզիտիւ ֆոն ստեղծեց ընտրակաշառքների բաժանման եւ ՀՀԿ եւ Սերժ Սարգսեանի վերարտադրութեան համար: Քարոզարշաւում ակտիւ դերակատարութիւն ունենալով՝ վարչապետը ֆիասկոյի առաջ կանգնեց, որովհետեւ եթէ փորձենք այսօր ճշտել, թէ խորհրդարանական մեծամասնութիւնում ովքեր են վարչապետի կողմնակիցները, երեւի այդ մարդկանց հաշուելու համար մեզ պէտք կը լինի մէկ ձեռքի մատների կէսը», - ասաց նա:

Ըստ պատգամաւորի, «Կարէն Կարապետեանը երկու յստակ հարցի պէտք է պատասխանի: Առաջինն ինքն ասաց, որ պատրաստ է մնալ վարչապետ, իսկ ինքը պատրա՞ստ է Սերժ Սարգսեանի կամ Վիգէն Սարգսեանի կառավարութիւնում լինել վարչապետ կամ նախարար: Նաեւ Կարէն Կարապետեանը պէտք է շատ յստակ պատասխանի հետեւեալ հարցին՝ 2016 թուականին, երբ ինքը ստանձնում էր վարչապետի պաշտօնը, երբ քննարկում էին իր նշանակումը, արդեօք նրանք չէին քննարկել այն իրավիճակը, որը պէտք է ստեղծուի 2018 թուականին:

Արդեօք նրանք չունեն պայմանաւորուածութիւններ: Եթէ ունեն, ինչու են այդ պայմանաւորուածութիւնները գաղտնի պահւում հասարակութիւնից ու խորհրդարանից: Հիմա ճիշտ տեղն ու ժամն է, որ մենք պէտք է իմանանք, թէ դուք այն ժամանակ ինչ էք խօսել: Ես համոզուած եմ, որ դա նաեւ ազգային անվտանգութեան խնդիր է», - ասաց Փաշինեանը:

*Lragir.am*

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԸ ՏԱՆՈՒԼ Է ՏԱԼԻՍ. «ՍԱԴՐԱՆՔԸ» ԲԱՑԱՅԱՅՏԵՑ ՀՀԿ ԽՈՒՃԱՊԸ

1 ➩

Աւելին, Սերժ Սարգսեանի համար այդ տարբերակը կարող է լինել նոյնիսկ ամենավտանգաւորը: Ինչպէս ժողովրդական խօսքն է ասում՝ օձը տաքացնողին է կծում: Դրածոների դէ եուրէ իշխանութիւնը դէ ֆակտօ իշխանութեան է վերածւում միայն «արքայադաւութեան» շնորհիւ: Հայաստանը վերջին քառորդ դարում անցել է այդ «պատմութեան այդ քառուղիով», եւ Սերժ Սարգսեանը եղել է դրա անմիջական մասնակից վկաներից:

22 Յունիս 2017

http://www.lragir.am/index/arm/0/comments/view/155866

ԽՈՀԵՐ

# ՄԱՅԻՍ ՄԷԿ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

ՀԱՅԱՍՏԱՆ

Սամուէլ Մարտիրոսեան Մայիս 1-ի առիթով իր ֆէյսպուքի էջին մէջ կը գրէ.

«[Է]սօր պէտք է յիշենք, որ Հայաստանում.

– Չկան աշխատող արհմիութիւններ:

– Աշխատաւորների իրաւունքները խախտւում են ֆէոդալական եւ կապիտալիստական համակարգերի աննորմալ սիմբիոզի պատճառով:

– Քաղաքական դաշտում չկան ձախ, սոցիալիստական ուժեր, որոնք այդպիսին են ոչ թղթի, այլ ռէալ գործի հիման վրայ:

– Մարդկանց մեծամասնութիւնը շփոթում է սոցիալիզմը բոլշեւիզմի հետ եւ համ դրական, համ բացասական տեսանկիւնից:

– Երկրում չկայ քաղաքական գաղափարախօսութիւնների մրցակցութիւն, որպէս հետեւանք զարգանում է ամենավայրենի կապիտալիզմը իր բոլոր դուստր երեւոյթներով. կոռուպցիայով, օլիգարխիկ համակարգով, տնտեսութեան եւ քաղաքականութեան անառողջ սերտաճմամբ եւ այլն:

– Եւ այլն:»

Ասիկա կրնայ բացատրել Հայաստանի մէջ Մայիս մէկեան իրական շարժումին պակասը:

Տեղի ունեցան երկու, իրարմէ անկախ երթեր: Անոնցմէ մէկը կազմակերպեց Հայաստանի Կոմունիստական Կուսակցութիւնը: Մասնակցողները Մարտիրոս Սարեանի արձանէն շարժեցան դէպի Մաշտոցի պողոտայ եւ Շահումեան հրապարակ, բացագանչելով՝ «Կեցցէ Մայիսի 1-ը» եւ «Կեցցէ Հայաստանի Կոմունիստական Կուսակցութիւնը», յիշեցնելով խորհրդային շրջանի համատարած «կեցցէ»-ները, որոնք կենացներէ անդին չէին կրնար անցնիր: Անոնք բարձրացուցին պաստառներ՝ «Ինչո՞ւ գողացաք մեր քուէները», «Չենք վստահում իշխանութիւններին» եւ «Ոչ հակաժողովրդական իշխանութիւններին» կարգախօսներով: Հնչեցին խորհրդային շրջանի համայնավարական երգեր: Երթին մասնակցեցաւ նաեւ «պիոներական ջոկատ»-ը՝ կարմիր վզկապներով եւ փուչիկներով: Խորհրդային շրջանի նմանակային պատկեր մը, իր զինուորագրուած անդամներով եւ կոչերով: Ուրիշ հարց, թէ ՀԿԿ-ն Հայաստանի միակ կուսակցութիւնն էր որ իջաւ փողոց ու պաշտօնապէս նշեց Մայիս Մէկը:(1)

Երկրորդ խումբ մը եւս իջաւ փողոց: Անոնք աքթիւիսթներն էին, իսկ աքթիւիզմը՝ իր բնածին դրսեւորումով, միշտ կապուած է քաղաքացիական հասարակութեան ընդերքին հետ: Մեծ թիւ մը չէին ներկայացներ, բայց իրենց բարձրացուցած կարգախօսները կը խօսէին լիովին ինքնագիտակից, ինքնակազմակերպուած, ոչ-ինքնամէտ, ոչ-ինքնանպատակ խմբակի մը գոյութեան մասին:

Անոնք երթերով քալեցին Երեւանի կեդրոնական փողոցներով, անցնելով Մաշտոցի պուրակէն, Օփերայի բակէն, Հիւսիսային պողոտայէն եւ Հանրապետութեան հրապարակէն: Իրենց բարձրացուցած պաստառներն ու արտասանած վանկարկումները ունէին հետեւեալ կարգախօսները. «Անվճար բուժօգնութիւն, անվճար կրթութիւն», «Սոված ես՝ կեր հարուստներին», «Կանայք ընդդէմ հայրիշխանութեան, կապիտալիզմի, շահագործման», «Ազգ-բանակ՝ թալանելու, իշխելու ու սպանելու նոր փաթեթաւորում», «Կապիտալիզմ, մենք պիտի բաժանուենք, կը ներես», «Աղքատները հրաժարւում են զոհուել», «Գուգլ արէք «նէօլիբերալիզմ» ու կը հասկանաք, թէ ոնց մեզ սենց (յ)ոռի աղքատացրին», «Մաքրենք փողոցները ագահութիւնից», «Ազատ շուկայ. հարուստները հարստանում են, աղքատները աղքատանում», «Ոչ տէր, ոչ տիրակալ, ոչ ազգ, ոչ բանակ», «Մայիսի 1-ը 2 չի դառնում», «Զօրութիւն եւ սէր համբալներին», «Սովորել, սովորել, սովորել, անվճար, անվճար, անվճար», «Ոչ բռնութեանը՝ փողոցում եւ տանը»:(2)

Աքթիւիսթները իրենց անցած փողոցներով նաեւ կատարեցին հանրային ընթերցումներ, որոնցմէ կարելի է քաղել հետեւեալը.

– «Հանքերի շահագործում» բառակապակցութիւնը, որը ներկայացւում է որպէս տնտեսական ու արդիւնաբերական տերմին, բնոյթով ու բառակազմական ձեւով զուտ կապիտալիստական հասկացութիւն է՝ «գործել (կամ գործարկել) յանուն




շահի»: Շահագործման հոմանիշներն են՝ հարստահարումը, կեղեքումը, թալանը: Շատ կարեւոր է ընդգծել, որ սա ինչպէս մարդկանց ու նրանց ծառայեցուող հանրային բարիքի թալան է, այնպէս էլ կապիտալիստական էքսպանսիւ ու հայրիշխանական կեղեքիչ մօտեցում է բնութեան ու կենսոլորտի նկատմամբ: Հայաստանի ազատ շուկայական, այսինքն՝ նէօլիբերալ կապիտալիստական տնտեսութեան մէջ պրիմիտիւ արդիւնաբերութիւն համարուող այս գործունէութիւնը շղարշուած է քաղաքական ու տնտեսական հաստաշերտ միփերով, որոնց քօղազերծման ուղղութեամբ ո՛չ մասնագիտական, այսինքն՝ գիտա-վերլուծական, ո՛չ էլ ֆորմալ քաղաքական հաստատութիւնների (ասենք՝ կուսակցական) շրջանակները ոչինչ չեն ձեռնարկում, աւելին՝ ամրապնդում են այդ միփերը: Միփերն են օրինակ, որ հանքարդիւնաբերութիւնը ստեղծում է աշխատատեղեր, մինչդեռ այն զրկում է գիւղացիութիւնն ու յարակից արտադրողներին իրենց աշխատատեղերից ու Հայաստանում ընդամէնը շուրջ 10.000 հոգի է աշխատում հանքերում, 2.5 միլիոն բնակչութեան պարագայում՝ շուրջ 0.4 տոկոս: Ո՞ր դա տնտեսութեան աճ է, երբ աճի ամբողջ կոնցեպցիան հարցականի տակ է, եւ ի՞նչ աճ կարող է լինել ապագայի հաշուին:




– Դեռեւս 1930-ականներին տնտեսագէտ Ջոն Մեյնարդ Քեյնսը կանխատեսում էր, որ 2030թ.-ին մարդիկ շաբաթական 15 ժամից աւել աշխատելու կարիք չեն ունենայ: Բայց այսօր էլ, երբ որոշ արեւմտեան երկրներ հինգ անգամ աւելի հարուստ են, քան 30-ականներին, այնտեղ նոյնպէս հիմնական խնդիրը շարունակում է մնալ հանգստի պակասը: Աշխարհում այսօր շաբաթական 40-ժամեայ աշխատանքային գրաֆիկը նորմ է եւ ուրեմն, հարց է առաջանում, արդեօք մե՞նք ենք աշխատասէր, թէ՞ քիչ աշխատելը, երբ մի շարք ոլորտներ աւտոմատացուել են, ձեռնտու չէ պետութիւններին եւ խոշոր կապիտալիստներին: Իսկ ինչո՞ւ քիչ աշխատելը կարող է ձեռնտու չլինել նրանց: Չէ՞ որ հաշուի առնելով զարգացուածութեան ներկայ մակարդակը՝ իսկապէս կարելի է խորհել դադար տալու, մշտական աճի մասին չմտածելու մասին, որից առանց այդ էլ տուժում է ինչպէս մշտապէս շահագործուող բնութիւնը, այնպէս էլ՝ մշտապէս շահագործուող մարդը: Իսկ եթէ չլինի մշտական աճը եւ հետեւաբար՝ մշտապէս աշխատելու կարիքը, մարդիկ միգուցէ կը սկսեն խորհել ասենք՝ հարստութեան արդար վերաբաշխմա՞ն, պետութեան առաւել խելամիտ, արդար ու չգերիշխող ներքին եւ արտաքին քաղաքականութեան վարմա՞ն մասին, միգուցէ անգամ պետութիւնների դերի վերաիմաստաւորմա՞ն շուրջ: Իսկ արդեօք սա ձեռնտո՞ւ է պետութիւններին եւ մասնաւոր հատուածին, որոնք իրենց շահերն ունեն մարդկանց մշտապէս զբաղուած պահելու մէջ, քանի որ այդ կերպ վերջիններս աւելի քիչ են մտածում պետութեան եւ մասնաւոր սեկտորի վերահսկման մասին եւ առաւել շատ են

➩ 4

# ՑԱՆԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ՄԱՀԱԶԴ

Տիար (Օննիկ) Պօղոս Պօղոսեան, Տիար Րաֆֆի Պօղոսեան, Տէր եւ Տիկին Ռոպէր եւ Անի Թաշճեան եւ զաւակները, Գոչեան ընտանիք (Աւստրալիա), Տիար Մինաս Թորիկեան (Աւստրիա), Տէր եւ Տիկին Պետրոս եւ Մարիա Թորիկեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Սիմոն եւ Վիվիան Թորիկեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Ջաւէն եւ Օլֆադ Թաշճեան, խոր ցաւով կը ծանուցանեն իրենց սիրեցեալ կնոջ, մօր, քրոջ, մեծ մօր, զոքանչին, մօրաքրոջ եւ ազգականին՝

### ՅԱՍՄԻԿ ՊՕՂՈՍԵԱՆԻ

**Ծնեալ Գոչեան**

յանկարծակի մահը, որ տեղի ունեցաւ Երկուշաբթի, 19 Յունիս 2017-ին:

Յուղարկաւորութեան տխուր արարողութիւնը տեղի ունեցաւ նոյն օրը ժամը 1-ին Սուրբ Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ, ապա հանգուցեալին մարմինը ամփոփուեցաւ Հելիոպոլսոյ Ամենայն Սրբոց գերեզմանատունը ընտանեկան դամբարանին մէջ:

Ցաւակցութիւնները տեղի ունեցան երեկոյեան ժամը 6-9-ը Կոկանեան Սրահին մէջ:

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Իրենց չատ սիրելի ամուսնոյն եւ հօր՝ ողբ. Տոքթ. Արեգ Օհաննէսեանի մահուան քառասունքին առթիւ, Տիկին Մարի Թերեզ եւ դուստրը՝ Անի Օհաննէսեան կը նուիրեն

| | |
|---|---|
| «Այծեմնիկ»ին | 200 |
| Գահիրէի Բարեսիրաց Միութեան | 200 |
| Հայ Կարիքի Խաչին | 200 |
| «Արեւ»ի ֆոնտին | 100 |
| «Յուսաբեր»ի ֆոնտին | 100 |
| «Ջահակիր»ին | 100 |
| Գալուստեան-Նուպարեան Ազգային Վարժարանին | 100 |

## ՀՄԸՄ-ՆՈՒՊԱՐ ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

**ՊԱՍՔԷԹ-ՊՈԼԻ**

**ԵԳԻՊՏԱՀԱՅ ՄՐՑԱՇԱՐ**

Ուրբաթ 14, Շաբաթ 15 եւ Կիրակի 16 Յուլիս 2017

ՆՈՒԻՐՈՒԱԾ՝

**ԱՍՊՆՋԱԿԱՆ ԵԳԻՊՏՈՍԻ ՅՈՒԼԻՍ 23-Ի ՅԵՂԱՓՈԽՈՒԹԵԱՆ 65-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ**

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ

**ԳԵՐՇ. Տ. ԱՇՈՏ Ս. ԵՊՍ. ՄՆԱՑԱԿԱՆԵԱՆԻ**

ԲԱՐԵԽՆԱՄ ԱՌԱՋՆՈՐԴ ԵԳԻՊՏՈՍԻ ՀԱՅՈՑ ԹԵՄԻ

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ

**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ՆՈՒՊԱՐ ՍԻՄՈՆԵԱՆԻ**

ԱՏԵՆԱՊԵՏ ԳԱՀԻՐԷԻ ՊԱՏԿ. ԹԵՄԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ

ՄՐՑԱՇԱՐԻՆ ԲԱԺԱԿԸ ՆՈՒԻՐԱԾ ԵՆ՝

**ՏԻԿԻՆ ԱՆԻ ԱՐԹԻՆԵԱՆ ՈՒ ԶԱՒԱԿՆԵՐԸ**

**ՕՐ. ԹԱՆԻԱ ԵՒ ՏՈՔԹ. ՎԱՀԷ ԱՐԹԻՆԵԱՆ**

Ի ՅԻՇԱՏԱԿ ԻՐԵՆՑ ԾՆՈՂԱՑ ԵՒ ՄԵԾ ԾՆՈՂԱՑ

ՈՂԲ. ՅԱԿՈԲ ԵՒ ԶԱՊԷԼ ՏԻՇՉԷՔԷՆԵԱՆՆԵՐՈՒ

ԵՒ ՈՂԲ. ՍԻՐՎԱՐԴ ԱՐԹԻՆԵԱՆԻ

ՄՐՑԱՇԱՐԻՆ ՄԵՏԱՅԼՆԵՐԸ ՆՈՒԻՐԱԾ ԵՆ՝

**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ՎԱՐԴ ԱԼԵՔՍԱՆԵԱՆ**

<u>Մրցումներու Յայտագիր</u>

Ուրբաթ, 14 Յուլիս 2017

Ա. մրցում երեկոյեան ժամը 7.30-ին

ՀՄԸՄ-ԿԱՄՔ x ՀՄԸՄ-ՆՈՒՊԱՐ ԱՂԵՔՍ.

Բ. մրցում երեկոյեան ժամը 9.00-ին

ՀՄԸՄ-ԱՐԱՐԱՏ x Ս. ԹԵՐԵԶԱ

Շաբաթ, 15 Յուլիս 2017

Գ. մրցում երեկոյեան ժամը 7.30-ին

ՀՄԸՄ-ՆՈՒՊԱՐ (ԳԱՀԻՐԷ) x Բ. մրցումի յաղթական խումբին

Կիրակի16 Յուլիս 2017

երեկոյեան ժամը 7.30-ին

Աւարտական մրցում

Ա. մրցումի յաղթական խումբը x

Գ. մրցումի յաղթական խումբին

**ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**

## ՄԱՅԻՍ ՄԷԿ

3 ➩

մտածում գումար վաստակելու, ընտանիք պահելու, ինչու չէ նաեւ սեփական երեխաներին ու հարազատներին վերահսկելու մասին: Այսօր էլ, ինչպէս առաջ, մարդուն մշտապէս զբաղուած պահելու շնորհիւ է, որ համեմատաբար հզօր պետութեան համար առաւել հեշտ է սեփական գերիշխանութիւնը փաթաթել այլ պետութիւնների վրայ, քանի որ այդ պրոցէսին ամենահաւանական խոչընդոտ հանդիսացող անհատ-քաղաքացին չափազանց զբաղուած եւ յոգնած է պետութեան պլանները խախտելու համար: Միւս կողմից էլ՝ մասնաւոր հատուածը, որն օգտւում է նման զաւթողական իրավիճակից, սեփական շուկան ընդլայնելով, զէնք արտադրելով-մատակարարելով, նոյնպէս շահում է անհատ-քաղաքացիների մշտական աշխատանքից: Մշտապէս զբաղուած եւ յոգնած քաղաքացին նաեւ որակեալ սպառող է, քանի որ իրեն հանգստացնելու, երջանկացնելու համար մշտապէս փնտռում է սպառելու հնարաւորինս ճոխ ապրանք՝ սկսած նիւթականից՝ վերջացրած սպառողականութեանը ծառայող մշակոյթ-արուեստով:

– Մենք ապրում ենք հասարակութիւնում, որտեղ կանանց մեծամասնութիւնը զրկուած է սեփական կեանքին վերաբերող հարցերում որոշումներ կայացնելու հնարաւորութիւնից: Հանրային դաշտում իշխող կարծիքը փորձում է համոզել, որ համակարգային բռնութիւնը, տնտեսական կախուածութիւնը եւ կանանց կցուածութիւնը տղամարդկանց՝ հօրը, եղբօրը, ամուսնուն կամ բոլորին միաժամանակ, վերջիններիս բացակայութեան դէպքում էլ՝ բացարձակ խոցելիութիւնը անձնական եւ երբեք ո՛չ քաղաքական խնդիրներ են:

– Իւրաքանչիւրը պէտք է վերադարձնի իր պարտքը: Սա են մեզ սովորեցնում՝ ընտանիքի, հայրենիքի ու բանկերի մասին խօսելիս: Այսօր, Հայաստանում եւ աշխարհով մէկ՝ սովորական ֆինանսական պարտքը վերածուել է բարոյականի եւ դարձել անմարելի: Կարելի է տարիներով փակել վարկերը, բանկերին տալով աշխատավարձի մեծ մասը, վճարել աւելին, քան վերցրել ես եւ, միեւնոյն է, զրկուել գոյքից, տանիքից՝ օրէնքով եւ պետական հարկադիր ծառայութեան հովանու ներքոյ: Եթէ դա ձեռնտու լինէր, բանկերը կը ստիպէին պետութեանը օրինականացնել նաեւ հին աւանդական ստրկութիւնը: Իւրաքանչիւրը պէտք է վերադարձնի իր պարտքը: Բայց պարտքը վերադարձնել հնարաւոր չէ: Աղքատները, տոկոսներ վճարելով, մնալու են աղքատ կամ էլ աւելի են աղքատանալու: Հարուստներն էլ դրա հաշուին հարստանալու եւ նոր վարկեր են տրամադրելու՝ վարկառուների հաշուին օդից փող բռնելու համար: Այս ընթացքը աւելի մեծ մասշտաբով երեւում է տարբեր երկրների արտաքին պետական պարտքի օրինակով. Յունաստան, Իտալիա, Իսպանիա, Պորտուգալիա, ժամանակին, Լատինական երկրների մեծ մասը, երրորդ աշխարհի երկրները եւ իհարկէ Հայաստանը, բոլորը ընկել են վարկային ծուղակի մէջ: Հզօրներն եւ հարուստները ստիպում են համեմատաբար թոյլ եւ աղքատներին վերցնել վարկեր, որոնք թոյլ կը տան չարունակել մրցակցել խաղի նոր պայմաններում: Սակայն խաղի պայմաններն այնպիսին են, որ վարկառուն միշտ պարտւում է եւ մնում կախեալ կարգավիճակում: Սկզբում վարկառու պետութեանը պարտադրում են կրճատել բիւջէտային ծախսերը՝ աշխատատեղերի, բուժօգնութեան եւ կրթութեան հաշուին, որպիսզի այն կարողանայ վճարել վարկի տոկոսները: Այնուհետեւ նրան պարտադրում են պայմաններ, որոնք կը յաւերժացնեն իր կախեալ վիճակը՝ արտահանել ընդերքը, արտօնեալ պայմաններ ապահովել միջազգային կորպորացիաների համար: Ժամանակակից կապիտալիզմը փոփոխում է նաեւ հին ասացուածքները. բոլորը պիտի ունենան պարտք: Սպառողական վարկ, ուսանողական վարկ, գիւղատնտեսական վարկ, արագ վարկ, հիփոթէք, բուժման նպատակով վարկ, ամանորեայ վարկ, ծնունդ, կնունք, հարսանիքի եւ թաղման վարկ, զինծառայողի վարկ,



ոստիկանի վարկ եւ այլն: Նոյնիսկ եթէ կարիք չունենք վարկ վերցնելու, սպառողական մշակոյթը կը ստեղծի կարիքի պատրանք, կը փաթաթի այն մեր վզերին:(3)

Այս ասոյթները կը բացայայտեն հասուն աքթիւիսթական չարժումի մը գոյութիւնը, որ գիտակից է խնդիրներուն խորքային բովանդակութեան եւ պատրաստ է առաջարկել դիմադրութեան միջոցներ: Աքթիւիսթները կը ներկայացնեն Հայաստանի հաւաքական ենթակայականութիւնը: Սփիւռքը՝ եթէ *իրապէս* մտահոգուած է «հայրենիքի»-ի հարցերով, պէտք է մաս կազմէ այս ենթակայականութեան:

Աքթիւիսթական չարժումին հակաբեւեռային կողմը կը գտնուէր աշխատաւորներու պետական դրսեւորումը: Վարչապետ Կարէն Կարապետեան կը շնորհաւորէ աշխատաւորներուն օրը եւ իր ֆէյսպուքի էջին մէջ կը գրէ. «Մեր երկրում ամենամեծ արժէքը արարող մարդն է, եւ հէնց այդ աշխատողի միտքն ու ձեռքն են ստեղծում նոր արժէքներ: Պէտք է գնահատել ու պաշտպանել աշխատող մարդուն, նպաստաւոր պայմաններ եւ նոր հնարաւորութիւններ ստեղծել նրա գործունէութեան համար: Շնորհաւոր Մայիսի 1»:(4)

Կարէն Կարապետեանի եւ իր ընտանիքի բացառիկ հարստութեան, ձեռնարկատիրական գործառնութիւններուն եւ օֆշորային ընկերութիւններուն մասին մանրամասն հետախուզած է Քրիստինէ Աղալարեան(5): Մայիս Մէկը գոյութիւն ունի օլիկարքական համակարգին դէմ պայքարելու համար, եւ ահաւասիկ ամենացայտուն օլիկարքներէն մէկը կը շնորհաւորէ տօնը: Մայիս Մէկը գոյութիւն ունի դրամատիրական չահագործումը վերացնելու համար, եւ ահաւասիկ գլխաւոր չահագործողներէն մէկը կը շնորհաւորէ տօնը:

Վերջապէս, Սերժ Սարգսեան եւս՝ Հայաստանի ամբողջ օլիկարքական համակարգի նիւթողն ու աջակցողը, կը շնորհաւորէ տօնը:

(Վերջ 3)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ


1. «Կոմունիստները երթով նշել են Մայիս 1-ը», *Երկիր մեդիա*, 1 Մայիս 2017, http://yerkir-media.am/social/komunistner-ert-mayisi-1/: ««Կեցցէ, մայիսի 1-ը». կոմունիստները դուրս են եկել երթի», *Այսօր*, 1 Մայիս 2017, http://www.aysor.am/am/news/2017/05/01/Կոմունիստներ/1253511:

2. «Մայիսմէկեան երթը Երեւանում», *epress.am*, 1 Մայիս 2017, http://epress.am/2017/05/01.html:

3. Անդ:

4. ««Պէտք է գնահատել ու պաշտպանել աշխատող մարդուն». վարչապետը շնորհաւորել է Մայիսի 1-ը», *armtimes.com*, 1 Մայիս 2017, http://www.armtimes.com/hy/article/ 110773:

5. Քրիստինէ Աղալարեան, «Նորանշանակ վարչապետի հետ առնչութիւն ունեցող բիզնէսները եւ օֆշորային ընկերութիւնները», *Հետք*, 9 Սեպտեմբեր 2016, http://hetq.am/arm/news/70589/noranshanak-varchapeti-het-arnchutyun-unecox-biznesnery-ev-ofshorayin-ynkerutyunnery.html:

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1793 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 6 ՅՈՒԼԻՍ 2017 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٧٩٣ الخميس ٦ يوليه ٢٠١٧

# ՈՎՔԵ՞Ր ԵՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԵՒ ԽՂՃԻ ԲԱՆՏԱՐԿԵԱԼՆԵՐԸ. ՈՐՈՇ ՅՍՏԱԿԵՑՈՒՄՆԵՐ

### ԱՆՈՒՇ ՀԱՄԲԱՐԵԱՆ

Հայաստանում վերջին տարիներին ազատազրկուած մի շարք անձանց հետ կապուած գոյութիւն ունի տեսակէտների բախում, թէ արդեօ՞ք այդ անձինք հանդիսանում են քաղաքական բանտարկեալներ: Հիմնական միտումն այն է, որ իշխանութեան ներկայացուցիչները հերքում են Հայաստանում քաղաքական բանտարկեալների առկայութիւնը, իսկ ընդդիմադիր, ինչպէս նաեւ հասարակական գործիչները, իրաւապաշտպանները գտնում են, որ Հայաստանում քաղբանտարկեալներ կան: Աւելին, կան մարդիկ, ովքեր պնդում են, որ եթէ անձի գործողութիւններում յանցակազմ կայ, ապա այդ մարդն արդէն չի կարող քաղբանտարկեալ կոչուել:

Քաղաքական բանտարկեալների հարցերով զբաղուող միջազգային կառոյցներն ունեն որոշակի չափանիշներ այս կամ այն անձին այդ կատեգորիային դասելու համար: Փորձենք քննարկել ամենահեղինակաւոր կառոյցների կողմից «քաղբանտարկեալ» եւ «խղճի բանտարկեալ» եզրոյթների սահմանումները:

**ԵԽԽՎ**

Եւրոպայի Խորհրդի Խորհրդարանական Վեհաժողովը (ԵԽԽՎ, որին նաեւ Հայաստանն է անդամակցում) 2012Թ. ընդունուած բանաձեւով վերահաստատել է 2001Թ.-ին իր կողմից ընդունուած չափանիշներն առ այն, թէ ովքեր կարող են համարուել քաղաքական բանտարկեալ: Բանաձեւում մասնաւորապէս նշուած է, որ ազատութիւնից զրկուած անձը կարող է համարուել քաղաքական բանտարկեալ, եթէ՝

Անձը ազատազրկուել է Մարդու Իրաւունքների եւրոպական կոնվենցիայով եւ կից արձանագրութիւններով երաշխաւորուած հիմնարար իրաւունքներից / ազատութիւններից որեւէ մէկի խախտմամբ, մասնաւորապէս խղճի, մտքի, կրօնի, արտայայտման, տեղեկատուութեան, հաւաքների, միաւորումների ազատութեան.

Անձի ազատազրկումը տեղի է ունեցել զուտ քաղաքական պատճառներով՝ առանց որեւէ յանցանքի հետ առնչութիւն ունենալու.

Քաղաքական դրդապատճառներով ազատազրկման ժամկէտը կամ պայմանները յստակօրէն անհամաչափ են այն յանցանքին, ինչի համար անձը մեղաւոր է ճանաչուել կամ կասկածւում է.

Քաղաքական դրդապատճառներով անձը այլ անձանց համեմատ խտրական կերպով է ազատազրկուել.

Ազատազրկումը արդիւնք է յստակօրէն անարդար դատավարութեան, ինչը առերեւոյթ կապուած է իշխանութիւնների քաղաքական դրդապատճառների հետ:

Բանաձեւում նաեւ յստակօրէն սահմանւում է, որ ահաբեկչական գործողութիւնների համար ազատազրկուած անձինք չեն կարող համարուել քաղաքական բանտարկեալներ:

**Ամնեսթի Ինթերնէշնլ**

Աշխարհահռչակ Ամնեսթի Ինթերնէշնլ իրաւապաշտպան կազմակերպութիւնը առանձնացնում է երկու հասկացութիւն՝ քաղաքական բանտարկեալ եւ խղճի բանտարկեալ: Կազմակերպութիւնը քաղաքական բանտարկեալ տերմինի համար ունի աւելի լայն սահմանում, մասնաւորապէս այն քաղաքական բանտարկեալ է համարում ազատազրկուած ցանկացած անձի, ում դէպքն ունի նշանակալի քաղաքական տարր՝ կը լինի դա բանտարկեալի գործողութիւնների դրդապատճառը, բուն գործողութիւնը թէ այդ անձի նկատմամբ իշխանութիւնների գործողութիւնների դրդապատճառները: Կազմակերպութիւնը քաղաքական բանտարկեալների համար պահանջում է արդար դատավարութիւն:

Քաղաքական բանտարկեալ հասկացութիւնն իր մէջ ներառում է խղճի բանտարկեալ հասկացութիւնը: Ամնեսթի Ինթերնէշնլը խղճի բանտարկեալ է համարում միայն այն անձանց, ովքեր բանտարկութեամբ կամ այլ եղանակով ազատութիւնից զրկուել են իրենց համոզմունքների, արտայայտած տեսակէտների կամ ազգային, ռասայական եւ այլ պատկանելութեան համար եւ, որպէս պարտադիր պայման, որեւէ բռնութիւն չեն գործադրել կամ քարոզել: Կազմակերպութիւնը գտնում է, որ բոլոր խղճի բանտարկեալները պէտք է անյապաղ եւ առանց նախապայմանների ազատ արձակուեն:

**Հայաստանում**

Հետեւապէս, կարելի է վստահաբար պնդել, որ երկու չափանիշներով էլ Հայաստանում քաղաքական բանտարկեալներ կան: ԵԽԽՎ-ի չափանիշներով քաղաքական բանտարկեալներ են, օրինակ, Անդրիաս Ղուկասեանը, Գէորգ Սաֆարեանը, Ծանթ Յարութիւնեանը, Հայկ Կիւրեղեանը եւ այլն: Սասնայ Ծռերի քաղաքական բանտարկեալ լինել/չլինելը ԵԽԽՎ-ի չափանիշներով քննարկման առարկայ է, բայց եթէ հիմնաւորուի, որ, օրինակ, նրանց նկատմամբ վերաբերմունքը առաւել խիստ է իրենց ընդդիմադիր հայեացքների համար, ապա իրենք էլ պէտք է որակուեն քաղաքական բանտարկեալ:

Ամնեսթի Ինթերնէշնլի սահմանմամբ Սասնայ Ծռերը քաղաքական բանտարկեալներ են, իսկ Գէորգ Սաֆարեանը, Անդրիաս Ղուկասեանը եւ մի շարք այլ անձինք՝ խղճի բանտարկեալներ:

(https://sut.am/archives/1279)

# ՎԱԽՃԱՆԱԾ Է ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Յուլիս 5-ին, Սիտնիի Royal North Shore հիւանդանոցին մէջ, 86 տարեկան հասակին կը վախճանի բազմավաստակ պատմաբան, հրապարակագիր ու գրող Աւետիս Եափուճեան: Եղած է Գահիրէի *Արեւ* օրաթերթի երկարամեայ խմբագրապետ (1967-1990): Այնտեղ ստորագրած է անթիւ հրապարակախօսական յօդուածներ, քննախօսականներ, գրախօսականներ, խմբագրականներ եւ քաղաքական վերլուծութիւններ, ինչպէս նաեւ պատմագիտական ու թարգմանական մեծաքանակ թերթօններ, միշտ դրսեւորելով յստակ կողմնորոշումներ եւ համոզումներ: Այդ տարիները *Արեւի* համար իրապէս կարելի է անուանել եափուճեանական շրջան: Մեկնելով Սիտնի, ստանձնած է *Միութիւն* ամսագրի խմբագրի պատասխանատուութիւնը, չմոռնալով նաեւ շարունակել իր հետազօտական աշխատանքները: 85-ամեակին առիթով *Ջահակիր* անդրադարձած է Եափուճեանի թերթօններուն մասին, տալով հակիրճ բացատրութիւններ եւ մեկնաբանութիւններ (*Ջահակիր*, 11 եւ 25 Փետրուար 2016):

# ՔԱԹԱՐ-ՍԱՈՒԴԵԱՆ ԱՐԱԲԻԱ ԿՈՆՖԼԻԿՏԸ ԻՆՉՊԷ՞Ս Կ'ԱԶԴԻ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎՐԱՅ

*Առաջին լրատուականի* զրուցակիցն է Երեւանի Պետական Համալսարանի արաբագիտութեան ամբիոնի վարիչ, դոցենտ Հայկ Քոչարեանը:

**– Պարոն Քոչարեան, Մերձաւոր Արեւելքի վերջին իրադարձութիւնները, մասնաւորապէս զարգացումները Քաթարի շուրջ, ռազմական գործողութիւնների ակտիւացումը Սիրիայում եւ Իրաքում, ահաբեկչական յարձակումները Թեհրանում որքանո՞վ են փոխկապակցուած:**

– Այս ամէնը, իհարկէ, կապակցուած է, բայց խնդիրն այն է, որ իրավիճակը ժամ առ ժամ փոխւում է, եւ տարածաշրջանային, եւ արտատարածաշրջանային մի շարք խաղացողներ Քաթարի շուրջ վերջին զարգացումներից յետոյ փորձեցին վերանայել իրենց դիրքորոշումը սիրիական ճգնաժամի վերաբերեալ: Դեռ վաղ է խօսել, բայց կայ միտում, որ Քաթարը կարող է ներգրաւուել սիրիական հակամարտութեան կարգաւորմանը Աստանայի բանակցութիւնների ձեւաչափով, այսինքն՝ Թուրքիա-Իրան-Ռուսաստան եռակողմ ձեւաչափը կը դառնայ քառակողմ: Շատ հետաքրքիր կը լինի, եթէ նման զարգացումներ տեղի ունենան: Սա կախուած է այն հանգամանքից, թէ ինչպէս կը զարգանան իրադարձութիւնները Ծոցում: Ծոցի հին խաղացողների կողմից ճնշումների գործադրումը Քաթարի կօալիցիայի նկատմամբ կարող է յանգեցնել դրան, ինչն առայժմ վերջնական ձեւաւորուած փաստ չէ:

**– Իսլամական Պետութիւն խմբաւորումը ստանձնեց Թեհրանի ահաբեկչութիւնների պատասխանատուութիւնը, բայց շատ փորձագէտներ համոզուած են, որ այդ յարձակումների թիկունքում կարող էր կանգնած լինել Սաուդեան Արաբիան: Կա՞ն արդեօք լուրջ փաստեր նման պնդում անելու համար:**

– Իսլամական Պետութիւնը ստանձնեց պատասխանատուութիւնը, բայց ռեսուրսների եւ ահաբեկչութեան իրականացման տեսանկիւնից դա լուրջ աջակցութիւն է պահանջում, ինչի հնարաւորութիւնն ունէին Սաուդեան Արաբիան կամ արտատարածաշրջանային ուժերը: Սա է պատճառը, որ բոլորը դիտում են այս յարձակումները՝ որպէս դրսից ուղղորդուած:

**– Փաստօրէն այս գործընթացները սկսուեցին Թրամփի՝ Ռիյադ կատարած այցից եւ այնտեղ կայացած հանդիպումներից յետոյ: Կարո՞ղ ենք ասել, որ ԱՄՆ նախագահը խախտեց հաւասարակշռութիւնը Սաուդեան Արաբիայի եւ Քաթարի միջեւ ու հիմա աւելի շատ շեշտը դնում է Սաուդեան Արաբիայի հետ յարաբերութիւնների վրայ: Չէ՞ որ Քաթարը եւս միշտ կարեւոր դաշնակից է եղել Միացեալ Նահանգների համար՝ յատկապէս Օբամայի նախագահութեան տարիներին:**

– Եկէք դէպքերից շատ առաջ չընկնենք: Քաթարը շարունակում է դաշնակից մնալ, եւ ամերիկեան ռազմաբազան շարունակում է մնալ Քաթարում: Խնդիրն այդ տարածաշրջանում Սաուդեան Արաբիայի եւ Քաթարի միջեւ է, թէ ով կարող է իր վրայ վերցնել հիմնական դաշնակցի գործառոյթը: Այս պահի դրութեամբ տեսնում ենք, որ սաուդցիները կարողացել են համոզել ամերիկացիներին կամ խաղաքարտերն այնպէս են դասաւորել, որ իրենց վրայ են վերցնում Միացեալ Նահանգների հիմնական դաշնակցի դերը: Բայց Քաթարն էլ շատ հեշտ չի յանձնւում: Եթէ յիշում էք, ժամանակին ԱՄՆ-ի բազան Սաուդեան Արաբիայում էր, որտեղից տեղափոխուեց Քաթար: Հիմնական պատճառն այն էր, որ սաուդցիներն էին խնդրել տեղափոխել, քանի որ ազգաբնակչութիւնը դժգոհ էր ամերիկեան ներկայութիւնից: Իսկ Քաթարում նման խնդիրներ չեն եղել ամերիկեան ռազմաբազայի հետ, ուստի լուրջ ↳ 3

## *ԽՈՐ ԼԵՌ* ԳԻՐՔԻ ԱՐԱԲԵՐԷՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ ԱՌԻԹՈՎ

*Զաւակիր* իր անցեալ թիւով ներկայացուց Էճէ Թեմելքուրանի *Խոր լեռ* գիրքին արաբերէն թարգմանութեան նախաբանը, գրուած թարգմանիչին՝ Մայսարա Սալահ Էլ-Տինի կողմէ:

Այս թիւով կը ներկայացնենք թարգմանութեան առիթով գրուած գրախօսական մը՝ Նեսրին Էլ-Պախշունկիի ստորագրութեամբ:

# *ԽՈՐ ԼԵՌ* ԱՆԲՈՒԺԵԼԻ ՎԷՐՔԸ ՀԱՅԵՐՈՒՆ

### ՆԵՍՐԻՆ ԷԼ-ՊԱԽՇՈՒՆԿԻ
### ԱՐԱԲԵՐԷՆԷ ԹԱՐԳՄԱՆԵՑ՝ Հ. Ա.

Առաջին անգամ է՝ որ ոչ գրական գիրք մը կը կարդամ այսքան կիրքով ու հետաքրքրութեամբ: Այս գործը, ինչպէս կը նկարագրէ թարգմանիչը՝ բանաստեղծ Մայսարա Սալահ Էլ-Տին, կը հանդիսանայ «գլուխ գործոց» մը, ոչ միայն որովհետեւ կը պարունակէ վարպետօրէն շարադրուած հետախուզական լրագրական նիւթ մը, այլ որովհետեւ յօրինողը՝ յայտնի թուրք լրագրողուհի Էճէ Թեմելքուրան, ներդնելով գրական ու մարդկային իր անձնական հպումը՝ յաջողած է երեւան բերել վայելչագեղ ու հետաքրքրական գործ մը:

Գիրքը բաղկացած է երեք գլուխներէ: Նպատակ ունենալով թափանցել հայկական հոգիին մէջ, գրողը զրոյցներ կատարած է զանազան մարդոց հետ եւ վկայակոչումներ հաւաքած: Հայ ժողովուրդը տակաւին կը տառապի օսմանցիներուն կատարած ցեղասպանութեան հետեւանքներէն, ցեղասպանութիւն մը՝ որուն պատճառով անոր բաժին ինկաւ սփռուածութիւնը եւ վիշտը: Գրողը ճամբորդեց Հայաստան, Ֆրանսա, Իտալիա եւ Ամերիկա, ուր հանդիպումներ ունեցաւ բոլոր մշակութային եւ ընկերային շերտերուն պատկանող հայերուն հետ:

«Ես չեմ խաղար բառերու հետ, ոչ ալ կ'աղաւաղեմ իրականութիւնը: Իրականութիւնը պիտի պատմեմ ինչպէս որ կայ: Այն ցեղասպանութիւնը՝ որուն համար կը հեկեկաս, կը ներկայացնէ ընդամէնը մէկ կէտ մը իմ երկիրիս պատմութեան, ուր զանգուածային սպանութիւնը դարձաւ սովորական երեւոյթ մը: Այո, սիրելի քոյրս, անիկա տեղի ունեցաւ 1915-ին, երբ սկսան ծաղկիլ մահուան թաքուն սերմերը եւ սկսան քու մեծ հայրերդ ու մեծ մայրերդ գաղթել հայրենիքէն եւ տարածուիլ ամբողջ աշխարհով: Քու ազգակիցներդ իրենց ուսերուն վրայ կրելով զոհերը անցան երկար տարածութիւններ, մինչեւ հաստատուեցան հեռաւոր հողերու վրայ, ուր ցաւը դարձաւ այն սիւնը՝ որ կանգուն պահեց ձեր բնակարաններուն առաստաղները եւ որուն դուք կառչեցաք: Ձեր ծնողքը մտահոգուած էր պահպանել այս վէրքը, մինչ ուրիշներ կը փորձէին ոչնչացնել զայն: Եւ որքան փորձեցին ոչնչացնել, այնքան աւելի դուք կառչեցաք անոր: Երկիրը կորսնցնելու վախը պատճառ հանդիսացաւ որ ցեղակիցներս ընտրովի կորսնցնեն իրենց յիշողութիւնը: Մեզի եւս այսպէս պատմած են:»

Թեմելքուրան սորված է դպրոցի մը մէջ որ կը կոչուի՝ Սեպտեմբեր Ինը Նախակրթարան: Սեպտեմբեր 9-ին տեղի կ'ունենայ տարեկան տօնակատարութիւն, ուր երեխաներուն կը սորվեցնեն հետեւեալ նախադասութիւնը. «Դաւաճանին նետեցին ծով»: Անիկա նկատի ունի հայոց ցեղասպանութիւնը թուրքերուն կողմէ: Երեխաներուն մէջ ատելութիւն սերմանելու բազմաթիւ մատնանշումներ կը գտնուին գիրքին մէջ: Հակառակ դէպքի հնութեան, աճած է ատելութեան տրամադրութիւնը: Թուրքերուն մօտ գտնուող հպարտութեան զգացումին եւ հայերուն պարտութեան տրամադրութեան միջեւ կ'ապրին երկու դրացի երկիրներուն երեխաները: «Մեզի, ինչպէս նաեւ աշխարհի բոլոր երեխաներուն, մանկութեան տարիներէն կը ծանօթացնեն՝ թէ վիշտի որ տեսակին կը պատկանինք:»

Գրողը որոշ գաղափարներ ընդունած է հայկական բանահիւսութենէն, օրինակ՝ նուռը իբրեւ խորհրդանիշ պտուղ. «Հայերուն համար նուռը ունի խիստ կարեւոր նշանակութիւն: Անոնք հարսի ոտքերուն նուռ կը նետեն իբրեւ պտղաբերութեան խորհրդանիշ եւ կը հաւատան՝ որ պտուղէն դուրս ցայտած սերմերը կը ներկայացնեն ծննդաբերուելիք երեխաներուն քանակը:» Գրողը կը փորձէ մտցնել բնածին մարդկային տարրողութիւն մը. «Ինչո՞ւ նուռը այսքան կարեւոր է հայերուն համար: Թերեւս որովհետեւ անոնք ամբողջ աշխարհով տարածուեցան նռան հատիկներուն նման, թերեւս անոնց գոյատեւումը հիմնուած է պտղաբերութեան եւ ծննդաբերութեան վրայ՝ զորս կը մարմնաւորէ այս առասպելական պտուղը:»

Եթէ նուռը կապուեցաւ հայ մշակոյթին հետ, հայերուն կապը Արարատ լերան հետ սահման չունի: Հայերը զայն կը դիտեն հեռուէն եւ հետամուտ կ'ըլլան զայն վերադարձնել: Անոնք համոզուած են որ թուրքերը գողցած են իրենց հողերը, օրինակ՝ Կոստանդնուպոլիս քաղաքը, զոր վերանուանած են Իսթանպուլ, ինչպէս նաեւ Արարատ լեռը՝ որ կը ներկայացնէ հայերուն էութեան եւ գոյութեան խորքը եւ հայրենիքի ու հողի հանդէպ ունեցած զգացողութիւնը: Հետեւաբար, գրողին համաձայն, հայերը կ'ատեն Կոստանդնուպոլիսը Իսթանպուլ անուանող մարդոց:

Ինծի մասնաւորապէս տպաւորեց 84 ամեայ բանաստեղծուհի Սիլվա Կապուտիկեանի վկայութիւնը, որ կը պատմէ իր յարաբերութիւնը թուրք բանաստեղծ Նազըմ Հիքմաթի հետ. «Իւրաքանչիւր հանդիպումի ժամանակ սովորութիւն դարձած էր կատակել Նազըմի հետ, երբ կ'ըսէի՝ «Վերադարձուցէք մեր հողերը»: Ան ժպիտով կը պատասխանէր՝ «Յեղափոխութենէն ետք»:» Իսկ Արարատ լերան կարեւորութեան մասին Հայաստանի ամենատարեց բանաստեղծուհին կ'ըսէ. «Արարատ... Արարատը այն լեռն է որուն չենք կրնար հասնիլ եւ որքան կը հեռանայ այնքան աւելի կը գեղեցկանայ մեզի համար: Մեր սիրտերը կ'այրին անոր ոտքերուն տակ»: Կը դադրի նայիլ գաւաթին կամ դիտել պատուհանէն դուրս եւ իր աչքերով դարձեալ կը դիմէ ինծի ըսելով. «Ով երիտասարդուհի, քեզի համար Արարատը ընդամէնը բարձրութիւն մըն է, մինչդեռ մեզի համար խորութեան խնդիր մըն է ան:»

Ըստ տարբեր տարիքային ու դասակարգային շերտերու պատկանող հայերու վկայակոչումներուն, բոլորն ալ կը պահանջեն իրենց ծնողքներուն եւ մեծ ծնողքներուն հանդէպ կատարուած ցեղասպանութեան ճանաչումը, ցեղասպանութիւն՝ զոր կատարեցին թուրքերը էթնիքական մաքրագործումի նպատակով: Ճանաչումը պիտի բուժէ հայ ժողովուրդին վէրքերը եւ փարատէ վիշտը:

Էճէ Թեմելքուրան *Խոր լեռը* կ'աւարտէ դիմելով իր բարեկամ լրագրող Հրանդ Տինքի խօսքին: Յիշենք, որ Տինք սպաննուեցաւ Թուրքիոյ եւ Հայաստանի միջեւ երկխօսութիւն հաստատելու ուղղութեամբ իր տարած ճիգերուն պատճառով, իսկ անոր սպանութիւնը գլխաւոր խթան հանդիսացաւ Թեմելքուրանին գրելու այս գիրքը: Ահաւասիկ գիրքին աւարտը. «Հրանդ Տինք իրաւացիօրէն կ'ըսէր՝ թէ հայրենիքը կրնայ հրաժարիլ քեզմէ բայց դուն չես կրնար հրաժարիլ հայրենիքէն: Դուն պարտաւոր ես սիրել հայրենիքդ նոյնիսկ եթէ ան վէրքերով բեռնաւորած է սիրտդ:»

*Խոր լեռ* գիրքը լոյս տեսած է 2008-ին: Հակառակ որ կը քննարկէ թրքական հասարակութեան համար զգայուն խնդիր մը, գիրքը արժանացաւ լայն ընդունելութեան եւ թարգմանուեցաւ զանազան լեզուներու, ներառեալ անգլերէն, եւ վերջապէս Տար Սաֆսաֆա հրատարակչատունը լոյս ընծայեց անոր արաբերէն տարբերակը՝ բանաստեղծ Մայսարա Սալահ Էլ-Տինի հրաշալի թարգմանութեամբ:

*Ախպար ալ-հաուատես*, շաբաթաթերթ, Գահիրէ

19 Յունիս 2016

## ՀԱՅԱՍՏԱՆ

### ՏԽՈՒՐ ՓԱՍՏԵՐ. ՈՐ ՏԵՂՈՒՄ Է ՀԱՅԱՍՏԱՆԸ ԲՆԱԿՉՈՒԹԵԱՆ ԹՈՒՈՎ. *ԺՈՂՈՎՈՒՐԴ*

*Ժողովուրդ* օրաթերթը գրում է. «Հայաստանում կեանքի միջին տեւողութիւնը 75 տարեկանն է: Ըստ որում, այս ցուցանիշով Հայաստանը տարածաշրջանի երկրների մէջ Վրաստանի հետ միասին երկրորդն է: Առաջին տեղում Թուրքիան է, որտեղ կեանքի միջին տեւողութիւնը 77 տարի է, իսկ Ադրբեջանում՝ 74 տարի: Ինչ վերաբերում է Ռուսաստանին, ապա այնտեղ կեանքի միջին տեւողութիւնը 71 տարի է: Փոխարէնը, սակայն, Հայաստանը լրջօրէն զիջում է բնական յաւելաճի ցուցանիշներով. եթէ 2014թ. այն 5.1 հազար էր, ապա 2015-ին այն դարձել էր 4.6: Մինչդեռ նոյն Ադրբեջանում այս ցուցանիշը մի քանի անգամ բարձր է. տարեկան բնական յաւելաճը 12 հազար է: Հայաստանն Ադրբեջանին զիջում է նաեւ բնակչութեան թուաքանակով. մեզ մօտ բնակիչների թիւը վաղուց նուազել է 3 միլիոնից, իսկ այնտեղ աւելի քան 9 միլիոն բնակչութիւն կայ: Տխուր է, բայց փաստ»:

## ԹՈՒՐՔԻԱ

### ԶԵԿՈՅՑ ՊՈԼՍՈՅ ՊԱՏՐԻԱՐՔԱՐԱՆԻ

Այսու կը ծանուցանենք թէ 28 Յունիս 2017, Չորեքշաբթի, ժամը 10.00-ին, Եկեղեցական Ընդհանուր Ժողովը գումարուեցաւ, Պոլսոյ Պատրիարքարանի դահլիճին մէջ, նախագահութեամբ՝ Պատրիարքական Տեղապահ՝ Բարձր. Տ. Գարեգին Արքեպիսկոպոս Պեքճեանի:

Տեղապահ Սրբազան Հայրը ժողովին տեղեկութիւն փոխանցեց Գերշ. Տ. Արամ Արքեպիսկոպոս Աթէշեանի հետ ունեցած իր հանդիպումին մասին: Բարձր. Տ. Գարեգին Սրբազան Հայրը, Գերշ. Տ. Արամ Սրբազան Հօր յայտնած էր, թէ որպէսզի պատրիարքական ընտրութիւնները ունենան առողջ գործընթաց եւ կանխուին հաւանական սխալ հասկացողութիւններ, անհրաժեշտ է իր հրաժարականը: Նաեւ յայտնած էր, թէ կայանալիք Եկեղեցական Ընդհանուր Համագումարը պիտի քննարկէ սոյն պարագան եւ որոշում պիտի կայացնէ: Ուստի Տեղապահ Սրբազան Հայրը, Գերշ. Տ. Արամ Սրբազան Հօր առաջարկած էր ինքնաբերաբար ներկայացնել գրաւոր հրաժարական՝ յանուն համերաշխութեան: Գերշ. Տ. Արամ Արքեպիսկոպոս յայտնած էր, թէ չէ մտադրուած հրաժարական ներկայացնել ու պիտի յարգէ ժողովոյ որոշումները:

Ուստի Եկեղեցական Ընդհանուր Համագումար Ժողովը, կատարուած քուէարկութեամբ 22 դրական, 2 ժխտական եւ 1 ձեռնպահ քուէով վաւերացուց ստորեւ բանաձեւը եւ որոշեց թէ՝ Գերշ. Տ. Արամ Ս. Արքեպիսկոպոս Աթէշեան դադրած է պատրիարքական ընդհանուր փոխանորդի իր պաշտօնէն եւ ընդհանուր փոխանորդի վայելած իրաւասութիւններէն եւ պատասխանատուութիւններէն:

*26 Հոկտեմբեր 2016 թուականին կատարուած Եկեղեցական Ընդհանուր Համագումար Ժողովը հաստատած էր, թէ Պատրիարքական Աթոռը թափուր է, եւ հանգստեան կոչած՝ Ն.Ա.Տ. Մեսրոպ Ս. Պատրիարք Հայրը:*

*15 Մարտ 2017-ին թափուր մնացած Աթոռին տեղապահ ընտրուած էր Բարձր. Տ. Գարեգին Ս. Արքեպիսկոպոս Պեքճեանը, Եկեղեցական Ընդհանուր Համագումար Ժողովի կողմէ:*

*Նկատի ունենալով տեղապահի ընտրութիւն կատարուած ըլլալը եւ մեր հնաւանդ եկեղեցական կանոններուն ուղղութեամբ ցնոր պատրիարքի ընտրութիւն, թէ՛ վարչական եւ թէ ներկայացուցչական առումով Պատրիարքական Աթոռոյ լիազօրն է Տեղապահ Սրբազան Հայրը: Եկեղեցական հնաւանդ կանոններուն համաձայն, տեղապահի ընտրութեամբ վերջ գտած է ընդհանուր փոխանորդի պաշտօնի պահանջքը: Ուստի բնականօրէն վերջ կը գտնէ Գերշ. Տ. Արամ Ս. Արքեպիսկոպոս Աթէշեանի պատրիարքական ընդհանուր փոխանորդի պաշտօնը:*

*Եկեղեցական Համագումար Ժողովը, որպէսզի պատրիարքական ընտրութեան գործընթացի մէջ կանխուին հաւանական սխալ հասկացողութիւններ, 28 Յունիս 2017 թուականի ժողովին կատարուած քուէարկութեամբ կը հաստատէ, թէ Գերշ. Տ. Արամ Ս. Արքեպիսկոպոս Աթէշեան դադրած է պատրիարքական ընդհանուր փոխանորդի իր պաշտօնէն եւ ընդհանուր փոխանորդի վայելած իրաւասութիւններէն եւ պատասխանատուութիւններէն:*

**ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ**

29 Յունիս 2017

## ՔԱԹԱՐ-ՍԱՈՒԴԵԱՆ ԱՐԱԲԻԱ ԿՈՆՖԼԻԿՏԸ ԻՆՉՊԷ՞Ս Կ'ԱԶԴԻ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎՐԱՅ

1

իրադարձութիւններ պիտի տեղի ունենան, որպէսզի սրա վերանայումը հնարաւոր դառնայ: Այս պահի դրութեամբ նման նախապայման չկայ: Եթէ Քաթարը փորձի շատ ինքնուրոյն խաղալ, կարող է եւ լինել:

**– Հայաստանի նախագահը Մայիսի կէսերին՝ Ռիյադի գագաթնաժողովից եւ Քաթարի դէմ դիւանագիտական դեմարշից օրեր առաջ, պաշտօնական այցով գտնւում էր Քաթարում: Հայաստանի նախագահի այցը կարո՞ղ էր որեւէ կապ ունենալ Քաթարի եւ Սաուդեան Արաբիայի հակամարտութեան հետ:**

– Հայաստանը փորձում է զարգացնել յարաբերութիւններ Ծոցի երկրների՝ Քուվէյթի, Արաբական Միացեալ Էմիրութիւնների, Քաթարի հետ: Տուեալ այցն այս տրամաբանութեան շրջանակներում է: Հայաստանի ներկայութիւնը Քաթարում ապահովւում է Արաբական Միացեալ Էմիրութիւններում (ԱՄԷ) Հայաստանի դեսպանատունը, բայց այսօր այս երկու երկրների միջեւ անգամ փոստային կապն է դադարեցուած, հետեւաբար կտրուկ վերանայման խնդիր է առաջացել նման գործառոյթները յանձնելու, օրինակ, Քուվէյթի դեսպանատանը, քանի որ Քուվէյթն աւելի չէզոք դիրքորոշում ունի այս հակամարտութեան մէջ: Իմ կարծիքով՝ սա պէտք է արագօրէն վերանայուի, եթէ փորձում ենք պահպանել յարաբերութիւնները Քաթարի հետ, եւ քանի որ Քաթարի հետ գործում է առանց վիզայի ռեժիմ, լաւ կը լինի, որ այդ յարաբերութիւններն արագօրէն կարգաւորուեն, եւ ստեղծուեն պայմաններ դիւանագիտական յարաբերութիւնները յետագայում էլ շարունակելու համար: Իսկ ԱՄԷ-ի եւ Քաթարի յարաբերութիւնների պատճառով այդ երկրում իրականացուող մեր դիւանագիտական ծառայութիւնը հարցականի տակ է:

**– Կարելի է ենթադրել՝ Քաթարի հետ վիզային ռեժիմը չեղարկուեց այն պատճառով, որ քաթարցի ներդրողները կարողանան աւելի հեշտ մուտք գործել Հայաստան:**

– Դա տնտեսական բովանդակութիւն ունէր, ինչի հիմնական նպատակը նաեւ այցն էր: Դրանով կարգաւորւում է ֆինանսա-տնտեսական յարաբերութիւնների ոլորտը, եւ վիզաների չեղարկումը պէտք չի դիտարկել ահաբեկչութեան սպառնալիքների կամ հակաահաբեկչական գործողութիւնների համատեքստում:

**– Քաթարի հետ յարաբերութիւնների զարգացումը կարո՞ղ է հրահրել Սաուդեան Արաբիային Հայաստանի դէմ ինչ-որ գործողութիւնների:**

– Իսկ ի՞նչ կարող է լինել: Չկան յարաբերութիւններ, որպէսզի դրանք խզուեն: Տարբեր ճակատներում, միջազգային հարթակներում հակահայկական դիրքորոշում եղել է եւ կը մնայ: Մենք անելիք ունէինք, որպէսզի Սաուդեան Արաբիայի հետ յարաբերութիւնները լաւացնէինք: Փորձեր արուել են: Հաւանաբար հիմա էլ արւում են, բայց դրա մասին կոնկրետ տեղեկութիւններ առայժմ չկան:

**ԽՈՀԵՐ**

# ԴԱՐՁԵԱԼ ՍՓԻՒՌՔԻ ՆԱԽԱՐԱՐՈՒՀԻՆ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

2017 Յունիս 30-ին Հայաստանի Ազգային Ժողովը կը քննարկէ 2016-ի պիւտճէի կատարողականութիւնը, ուր կը յիշուի՝ թէ Սփիւռքի Նախարարութեան յատկացուած էր 1,1 միլիառ դրամ: Անշուշտ, այդ գումարէն սփիւռք-Հայրենիք համագործակցութեան համար տրամադրուած մասը ամբողջապէս ու յաջողապէս ծառայած է նախատեսուած հայրենասիրական ու ազգասիրական նպատակներուն՝ «հայապահպանութեանը սփիւռքում», «սփիւռքի ներուժի օգտագործմանը», «ճանաչողական այցերին», եւ այլն, ինչպէս յայտարարուեցաւ: Այսինքն, ես աւելի հայապահպանուեցայ, կամ իմ ներուժս հրաշալիօրէն օգտագործուեցաւ, կամ ճանաչողական այցելութիւն կատարեցի Հայաստան, եւ այլն:

Այս բոլոր յաջողութիւններէն ետք, նիստին ընթացքին հրանոյշ Յակոբեան հետեւեալ հրամանը կու տայ մեզի. «Չպէտք է լինի հայ, որը Հայաստան չայցելի: Մենք անգամ նոր ծրագիր ունենք, ասում ենք՝ երեք տարին մէկ հանգստացէք Հայաստանում, դուք կը հանգստանաք, մենք՝ կը հարստանանք»:

Ի՞նչ կը հասկնանք այս խօսքէն.

1. «Դուք»-ի եւ «մենք»-ի խիստ վտանգաւոր երկուութիւն մը: Սփիւռքահայու եւ հայաստանաբնակի անջատում-օտարացում մը, երկու զանգուածներու հաստատագրումը՝ զէրօ յարաբերութեամբ:

2. Հանգստացէք-հարստանանք պատճառա-հետեւանքային խեղաթիւրուած ժամանակագրութիւն մը՝ առանց փոխներթափանցումի կարելիութեան:

3. Կեդրոնը դրամն է եւ ոչ թէ մշակոյթը: Դրամով հարստանալ եւ ոչ թէ մշակոյթով: Սփիւռքը մշակութապէս ոչինչ ունի տալիք Հայաստանին: Ասիկա Հայաստանի երրորդ հանրապետութեան իշխանականներուն որդեգրած ձեռնարկն է՝ «անկախութեան» սկզբնական տարիներէն ի վեր: Ասիկա նաեւ սփիւռքի առաջնորդներուն փայփայած միջոցն է: Դրամի ուժով եւ ազդեցութեամբ սփիւռքի մեծամեծեր եւ աւանդականներ դիւրին մուտք գործեցին իշխանական-օլիկարքական համակարգին մէջ, ըլլայ անձնական շահութաբերական, ըլլայ քաղաքական առումներով: Սփիւռքի Նախարարութեան ձեռնարկներուն ու փառատօներուն մասնակցող սփիւռքահայ անհատներն ու խումբերը անոնք են՝ որոնք *դրամական* կարողութիւն ունին մեկնիլ ու քանի մը օր մնալ Հայաստան: Անոնք որոնք դրամ չունին ճամբորդելու, կամ գաղութը չի մատակարեր անոնց ճամբորդական ծախսը, պարզապէս կը մնան իրենց տեղը: Նախարարուհիին կողմէ մրցանակ ստացողները այն անհատներն ու խումբերն են՝ որոնք կարողութիւն ունին մեկնիլ Հայաստան *անկախ* իրենց արժէքէն: Սփիւռքը կը գնահատուի ըստ իր փոխանակային արժէքին (exchange value)՝ փոխանակ սպառողական արժէքին (use value): Սփիւռքը ինքզինք հանգիստ կը զգայ այս արժէքային համակարգին մէջ, ուրախ է որ կը գնահատուի ըստ շուկայի օրէնքներուն:

4. «Հանգստացէք Հայաստանում» գործողութիւնը հասցէագրուած է սփիւռքահայ այն բարեկեցիկ դասակարգին՝ որ ի վիճակի է հոգալ գբօսաշրջիկութեան ամբողջ ծախսերը: Սփիւռքի դասակարգային բաժանում մըն է, ուր հայրենասէր է բարեկեցիկը: Կան միլիոնաւոր սփիւռքահայեր՝ որոնք անկարող են հոգալ նոյնիսկ ներքին զբօսաշրջիկութեան ծախսերը: Ասոնք անկարեւոր մարդիկ են, քանի որ Սփիւռքի Նախարարութիւնը անկարող է անոնց հայ տիտղոսը շնորհել՝ Հայաստան զբօսաշրջելու անկարողութեան պատճառով:

5. Հայաստանը կը վերածուի զբօսաշրջիկային հանրապետութեան:

6. Սփիւռքի լռութիւնը այս եւ նման յայտարարութիւններուն նկատմամբ կը փաստէ անոր մեղսակցութիւնը Հայաստան-սփիւռք յարաբերութեան նիւթականացումին ու նիւթարկումին (reification):

Դժբախտաբար, կամ բարեբախտաբար, Հայաստանի եւ սփիւռքի լաւագոյն յարաբերութիւնները տեղի կ'ունենան հասարակութիւններու ներքին շերտերու շնորհիւ, որոնք հեռու են երկու կողմերու առաջնորդներու պարտադրանքներէն եւ անձնական շահերէն եւ յաճախ կը յաջողին ճեղքել Հայաստան-սփիւռքին տրուած բաժանումներուն արհեստականութիւնը:

7. Դրամ տուէք՝ հարստանանք: Սփիւռքի Նախարարութիւնը երբեք չէ փորձած սփիւռքահայերը ընդելուզել հայաստանեան հասարակութեան մէջ: Ան սփիւռքահայերուն կը դիմէ այն ժամանակ՝ երբ կարող է նախարարութեան եւ նախարարուհիին անունները շուկայականօրէն արժեւորել: Նոյնիսկ հալէպահայերու անասելի ողբերգութիւնները կարողացաւ չահագործել նախարարութեան եւ պետութեան բարեսիրական ու հայրենասիրական դէմքը փայլեցնելու համար: Քանի մը օրինակ: Հայաստանի Ազգային Գրադարանը սկսած է թուայնացնել ու համացանցի մէջ անվճար տեղադրել հայկական աբողջական մամուլը: Հսկայական աշխատանք մը՝ որ մասամբ պէտք ունի նաեւ սփիւռքը գտնուող լրագիրներու եւ հանդէսներու հաւաքածոներուն: Գրադարանը անպայմանօրէն բնօրինակները չէ որ կ'ուզէ ունենալ, կը բաւէ որ սփիւռքահայութիւնը ուղարկէ թուայնացած տարբերակները եւ անմիջապէս զանոնք կրնայ տեղադրուած գտնել Գրադարանի կայքէջին մէջ: Սփիւռքի Նախարարութեան համատարած ձայնը այս առումով կրնայ շարժել սփիւռքահայութիւնը եւ մշակութային *իրական* կապեր հաստատել սփիւռքի եւ Գրադարանի միջեւ: Բայց Նախարարութիւնը, որ կը խօսի *ամբողջ* սփիւռքահայութեան անունով եւ սփիւռքահայութեան համար կը ներկայացնէ *ամբողջ* Հայաստանը, ի՞նչ պիտի շահի «ծառայելով» Ազգային Գրադարանին: Ուրիշ օրինակ մը: Սփիւռքը լեցուն է մենակատար երաժիշտներով: Հայաստանի նուագախումբերը (Սիմֆոնիք, Երիտասարդական, Կամերային) հազուադէպ կը հրաւիրեն սփիւռքահայ մենակատարներ՝ ելոյթ ունենալու իրենց հետ: Սփիւռքահայ կոչուածներուն մեծամասնութիւնը անոնք են որոնք լքած են Հայաստանը՝ հետապնդելով «միջազգային» ասպարէզ, եւ սերտ կապեր կը պահեն Հայաստանի իշխանականներուն հետ: Պիտի առարկուի՝ որ ասիկա Մշակոյթի Նախարարութեան պատասխանատուութիւնն է, քանի որ Հայաստանի բոլոր երաժշտական հիմնարկները կը գտնուին իր տնօրինութեան տակ: Շատ լաւ: Բայց եթէ Սփիւռքի Նախարարութիւնը կը ներկայացնէ սփիւռքը, Մշակոյթի Նախարարութիւնը՝ մշակոյթը, սփիւռքահայ մշակոյթը ո՞ւր պէտք է փնտռել՝ «սփիւռք»-ի՞ թէ «մշակոյթ»-ի հասկացողութեան մէջ: Ամբողջ հայկական վերնախաւը՝ ըլլայ Հայաստանի մէջ թէ սփիւռքի, անընդհատ կը գրէ, կ'արտասանէ ու կը կրկնէ հետեւեալ նշանաբանները. «միասնական հայրենիք», «միասնական հայութիւն», «միասնական ուժ», «միութիւնը ուժ է», «հայուն ուժը իր միասնութեան մէջ է», եւ այլն, եւ այլն: Եւ ահաւասիկ մէկ երկիրի մը երկու նախարարութիւնները՝ որոնք այս նշանաբանները արտադրողներն են, իրենց կազմական կամ կառուցուածքային պատճառներով անկարող են յարաբերիլ իրարու հետ: Հայերուն կը պարտադրուի միանալ, իսկ միութիւնը քարոզարշաւի վերածողները կը մնան անմիաբան: Սփիւռքի Նախարարութիւնը՝ ուրիշ նախարարութիւններու հետ յարաբերելու իր անկարողութեամբ, սփիւռքահայուն մուտքը Հայաստան կը դարձնէ իր անձնական սեփականութիւնը եւ սփիւռքահայը անջատած կ'ըլլայ բուն հայկական հասարակութենէն՝ իր ամենալայն իմաստով:

Արդարեւ, սփիւռքի նախարարուհիին յայտարարութիւնը միակը չէ իր նախարարական կենսագրութեան մէջ. անիկա շարունակութիւնն է յաճախակի պարբերականութեամբ հնչող նմանատիպ խօսքերու:

Նախարարուհիին դիրքաւորումը հասկնալու համար կարեւոր է իրազեկ ըլլալ իր անցեալին: Յակոբեան եղած է խորհրդային շրջանի Քոմսոմոլի ամենէն ազդեցիկ ղեկավարներէն մէկը: 1978-1983-ին եղած է Երեւանի Պետական Համալսարանի Լենինեան Կոմունիստական Երիտասարդական Միութեան կոմիտէի (Համալսարանի Քոմսոմոլ) քարտուղարի տեղակալ, 1983-1985-ին՝ Հայաստանի Լենինեան Կոմունիստական Երիտասարդական Միութեան կենտկոմի (Հայաստանի Քոմսոմոլ) քարտուղար, 1985-1990-ին՝ նոյնի առաջին քարտուղար եւ Համամիութենական Լենինեան Կոմունիստական Երիտասարդական Միութեան կենտկոմի (Համամիութենական Քոմսոմոլ) անդամ:

Խորհրդային համայնավարութիւնը՝ դասական մարքսիզմի ինքնագիտակից ու ինքնակերտ համայնքայնութիւնը վերածելով բռնապետական ամբողջատիրութեան, մշակած էր վերահսկողական մեքանիզմներ: Այդ մեքանիզմներէն էր կազմակերպութիւններու ստեղծումը՝ ուր կարելի էր համախմբել քաղաքացիները, իրենց գիտակցական ամենափոքր տարիքէն սկսեալ: Հիմնուեցան հոկտեմբերիկներու (7-9 տարեկան), Պիոնէրներու (9-14 տարեկան) եւ Քոմսոմոլականներու (14-28 տարեկան) միութիւններ: Անոնք, խորհրդային ամենավաղ շրջանին ըլլալով սքաութական բնոյթով համախմբումներ, ստալինեան ինքնակալութեան շրջանին դարձան վարդապետական քարոզչութեան կարեւոր միջոցներ եւ տարբեր շերտաւորումներով ու պատկերումներով շարունակուեցան մինչեւ խորհրդային փլուզումը:

Ի՞նչ դերակատարութիւն ունէր յատկապէս Քոմսոմոլը Խորհրդային Միութեան մէջ:

Նախ, Խորհրդային Միութեան մասին անդրադառնալու համար պէտք է նկատի առնել երկու հանգամանք.

1. Համայնավարութիւնը շատ հեռու էր դասական մարքսիզմի համայնավար եզրէն, որուն իմաստային հիմքը կը կազմէր համայնքայնութիւնն ու համակեցութիւնը, մինչդեռ Խորհրդային Միութիւնը ստալինեան յեղաշրջումէն ետք դարձաւ աշխարհի ամենանուիրապետական պետութիւններէն մէկը:

2. Կարեւոր է զանազանել Խորհրդային Միութեան լենինեան ամենասկզբնական շրջանը յետ-լենինեան միակալ ամբողջատիրութենէն, երբ նոյն ինք Լենինի տիպարը ստացաւ խեղաթիւրուած ու ֆեթիշականացուած արհեստական վիճակ մը, որ միայն կրնար ծառայել ստալինեան նպատակներուն:

4

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ



## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Իրենց չատ սիրելի ազգականին՝ ողբ. Տոքթ. Արեգ Օհաննէսեանի մահուան քառասունքին առթիւ, Տէր եւ Տիկին Հարի Զէչչնեան ու Տէր եւ Տիկին Րաֆֆի Զէչչնեան եւ դուստրը՝ Անի Զէչչնեան կը նուիրեն

| | |
|---|---|
| «Այծեմնիկ»ին | 200 |
| Գահիրէի Բարեսիրաց Միութեան | 200 |
| Հայ Կարիքի Խաչին | 200 |
| «Արեւ»ի ֆոնտին | 100 |
| «Յուսաբեր»ի ֆոնտին | 100 |
| «Ջահակիր»ին | 100 |
| Գալուստեան-Նուպարեան Ազգային Վարժարանին | 100 |

*(Ստանալ «Արեւ»էն)*



## 3 ԴԱՐՁԵԱԼ ՍՓԻՒՌՔԻ ՆԱԽԱՐԱՐՈՒՀԻՆ

Այս բնաբանին մէջ կարելի է դիտել Քոմսոմոլներու կազմութիւնը եւ զարգացումը:

Ռուս երիտասարդութեան յատկացուցած իր հետաքրքրական գիրքին մէջ, Հիլարի Փիլքինկթոն կը մէջբերէ Քոմսոմոլի մասին արտայայտուած երկու ղեկավարներու կարծիքներ: Առաջինը Լենինի կարծիքն է, արտասանուած 1920-ին. «Կոմունիստական Երիտասարդական Միութիւնը պէտք է գործէ իբրեւ գործողութեան նմոյշ երիտասարդ աշխատաւորներուն եւ գիւղացիներուն համար...: Անկարող եմ ըսել՝ թէ ասիկա ինչպէս կրնայ կազմակերպչական առումով կարգաւորուիլ եւ ինչպէս կրնայ իրականանալ...:»(1)

Երկրորդը Սթալինի կարծիքն է, արտասանուած 1924-ին. «[Քոմսոմոլը կը ներկայանայ] բացառապէս իբրեւ կուսակցութեան պաշարը եւ կը հանդիսանայ գործիք մը իր ձեռքերուն մէջ:»(2)

Փիլքինկթոն կը մեկնաբանէ այս երկու կարծիքները, չեշտելով Քոմսոմոլի դերակատարութեան փոփոխութիւնը Լենինէն դէպի Սթալին, դասական մարքսիզմին բնորոշ ինքնավարութեան համոզումէն դէպի ի վերուստ թելադրուած պարտաւորութիւն.

«Քոմսոմոլի այս սահմանումները արտասանուած են ընդամէնը չորս տարի տարբերութեամբ: Առաջինը՝ արտասանուած Լենինի կողմէ 1920-ին, յստակօրէն կ'ընդունի երիտասարդական կազմակերպութեան ինքնավարութիւնը, մինչդեռ երկրորդը՝ տրուած Սթալինի կողմէ 1924-ին, անոր դերը կը տեսնէ թէ՛ իբրեւ կուսակցութեան հնազանդ անդամներ պատրաստելու միջոց, եւ թէ՛ իբրեւ կուսակցութեան կամքի գործադրութեան գլխաւոր մարմին:»(3)

Ճիշդ է, ամբողջ Խորհրդային Միութեան ընթացքին Քոմսոմոլները կարեւոր դեր խաղացին հաւաքագրելու երիտասարդները եւ կառուցելու քաղաքներ ու մեծ կառոյցներ(4): Բայց ասիկա տեղի ունեցաւ գաղափարախօսական վերահսկողութեան հսկայ քոմսոմոլական համակարգի մը ընդմէջէն: Կը բաւէ յիշել, որ «1925-էն սկսեալ, Քոմսոմոլի իշխանութիւնները» ուշադրութեամբ հետեւեցան «մանկական գիրքերու եւ հանդէսներու գաղափարախօսական ուղղամտութեան, դատապարտելով բոլոր անոնց որոնք կը ձախողին համահունչ ընթանալ քաղաքական ըմբռնողութեան չափանիշերուն», ինչպէս կ'արձանագրէ Քաթրիոնա Քելլի(5):

Սեթ Պերնսթայն ամբողջ թէզ մը կը պաշտպանէ Խորհրդային Միութեան երիտասարդական քաղաքականութեան մասին, որուն համառօտագրութեան մէջ կը կարդանք.

«1935-ին, Կոմունիստական Երիտասարդական Միութիւնը (Քոմսոմոլ) որդեգրեց «համայնավար դաստիարակութիւն» կոչուող քաղաքականութիւն մը, որ փոխեց խորհրդային երիտասարդութեան պաշտօնական մշակոյթին նպատակը: Հիմնադրուած 1918-ին, Քոմսոմոլը եղած էր մշակութային բանուորականացումի [proletarianization] եւ տնտեսական զօրաշարժի կազմակերպութիւն մը: Վերէն թելադրուած Սթալինի յեղափոխութեան տուայտանքէն ետք, խորհրդային առաջնորդները յայտարարեցին՝ որ երկիրը մտած էր ընկերվարութեան շրջանը: Ընկերվարութեան նոր պայմաններուն տակ, ներառեալ պատերազմի սպառնալիքը դրամատիրական աշխարհին հետ, «համայնավար դաստիարակութիւն»-ը երիտասարդական միութիւնը վերափոխեց զանգուածային հասարակայնացումի [socialization] կազմակերպութեան մը՝ որուն նպատակն էր երիտասարդութիւնը կաղապարել վարչակարգի կերպարանքով:

««Համայնավար դաստիարակութեան» գլխաւոր նպատակներն էին ընդարձակել խորհրդային քաղաքական մշակոյթի ազդեցութիւնը եւ երիտասարդներուն մօտ ամրացնել «կրթուած» վարքագիծի ծածկագիր մը: Քոմսոմոլը՝ իբրեւ երիտասարդ տղամարդ աշխատաւորներու միութիւն, երիտասարդ առաջնորդներու կողմէ վերափոխուեցաւ եւ դարձաւ կազմակերպութիւն մը՝ որ 1941-ին կը պարփակէր խորհրդային երիտասարդութեան աւելի քան քառորդը, ներառնելով համեմատաբար աւելի չափահասներ, կիներ եւ ոչ-աշխատաւորներ: Կիրառելով զբօսանք, վարձատրութիւն եւ կարգապահական գործողութիւններ՝ պարուրուած ճնշումի եւ զանգուածային հասարակայնացումի պայմաններուն մէջ, Քոմսոմոլի նպատակն էր ստեղծել «խորհրդային» երիտասարդութեան գումարտակ մը՝ զգաստ, կարգապահ, ֆիզիքապէս ուժով եւ քաղաքականապէս հնազանդ Սթալինի վարչակարգին:

«[...] Քոմսոմոլի ընդմէջէն, երիտասարդութիւնը պետութեան համար դարձաւ միջոց մը, որուն շնորհիւ ընդունակ եղաւ ուղղութիւն հարթել անորոշ ու վտանգաւոր ճանապարհէն դէպի համայնավարութեան ապագան: Արձագանգելով տեղական եւ միջազգային ճգնաժամերուն, սթալինեան առաջնորդները ստեղծեցին երիտասարդներու պետական հասարակայնացումի համակարգ մը՝ որ պիտի տեւէր մինչեւ Խորհրդային Միութեան փլուզումը:»(6)

Թէ՛ Փիլքինկթոն եւ թէ՛ Պերնսթայն համաձայն են՝ որ երիտասարդութեան զինուորագրումը Քոմսոմոլի ընդմէջէն կատարուած է յետ-լենինեան Խորհրդային Միութեան մէջ, զինուորագրութիւն մը՝ որ տարբեր չերտաւորումներով, ինչպէս կը չեշտէ Պերնսթայն, շարունակուեցաւ մինչեւ 1991: Այս զինուորագրումի յաջող գործիչներէն էր մեր այսօրուայ նախարարուհին: Ասիկա, կարծեմ, աւելորդ մեկնաբանութիւններու կարօտ չէ: Սփիւռքահայերը քոմսոմոլականներ են՝ որոնք պէտք է լսեն ու անչեղօրէն իրագործեն իրենց կողմէ չընտրուած (ոչ ոքի կողմէ ընտրուած) ղեկավարին հրամանները, ինչպէս նաեւ լռելեայն մտնեն ու յարմարուին անոր հարթած ուղիներուն մէջ՝ եթէ կ'ուզեն ըլլալ տիպար սփիւռքահայեր եւ ստանալ թուղթէ վկայականներ, վկայականներ՝ որոնք աւելի կարեւոր են նախարարութեան համար, փաստելու համար իր գոյութիւնը, քան ստացողներուն:

Զմոռնանք, որ սփիւռքահայ միութիւններ եւս ունեցած են նման մանկական-պատանեկան-երիտասարդական խումբեր, որոնց միջոցով փոքրահասակները զինուորագրելով կ'ենթարկուէին տիրական ու անվիճելի գաղափարախօսութեան: Իրենց նուիրապետական ու վերահսկողական-զինուորագրական եղանակով անոնք քիչ տարբերութիւն ունէին Քոմսոմոլներէն:

Վերջապէս, *Shame.am* կայքէջը այսպէս կը լուսաբանէ նախարարուհիին խօսքը. «Հրանոյշ Յակոբեանին հարստացնող Սփիւռքը դեռ չի արձագանքել այս անկեղծ հոգու ճիչին: Փոխարէնը հայաստանցիները մէկ այլ առաջարկ են հնչեցրել: Նրանց տարբերակն այսպէս է. «Իսկ կը լինի՞, որ Հրանոյշը հանգստանայ, մենք հարստանանք, որովհետեւ անհանգիստ Հրանոյշը երկրի վրայ թանկ է նստում»:»(7)


ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Hilary Pilkington: *Russia's Youth and its Culture: A Nation's Constructors and Constructed*, London and New York: Routledge, 1994, p. 40:
2. Անդ, էջ 40:
3. Անդ, էջ 40:
4. Հիլարի Փիլքինկթոնի գիրքը մանրամասն կը նկարագրէ այս շինարարական աշխատանքները:
5. Catriona Kelly: *Children's World: Growing Up in Russia,1890-1991,* New Haven and London: Yale University Press, 2007, p. 73:
6. Seth Bernstein: *Communist Upbringing under Stalin: The Political Socialization and Militarization of Soviet Youth, 1934-1941*, A thesis submitted in conformity with the requirements for the degree of Doctor of Philosophy, Department of History University of Toronto, 2013, pp. ii-iii:
7. «Ով հանգստանայ՝ ով հարստանայ», *Shame.am*, 30 Յունիս 2017, http://www.shame.am/news/view/64654.html:

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير

جريدة أسبوعية

ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR

Armenian Weekly



P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com



Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1794 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 20 ՅՈՒԼԻՍ 2017 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ԴԻԿ. عدد رقم ١٧٩٤ الخميس ٢٠ يوليه ٢٠١٧


## ԽՆԴՐԱԳԻՐ Ո՛Չ ԳՐԱՔՆՆՈՒԹԵԱՆԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

«Հայցում ենք Ձեր ներողամտութիւնը եւ յայտնում, որ Ոսկէ Ծիրան Երեւանի 14-րդ միջազգային կինոփառատօնի *Հայեր. Հայեացք ներսից եւ դրսից* արտամրցութային ծրագիրը ամբողջութեամբ չի կայանալու»: (Սա Ոսկէ Ծիրանի նամակն է՝ ուղղուած ծրագրում ընդգրկուած ֆիլմարտադրողներին):

Այս նամակը չէր լինի, եթէ Հայաստանում մարդիկ եւ կառոյցները, որոնք կոչուած են կինոյի շահը պաշտպանելու, կինոարտադրութիւնը զարգացնելու, չահաբեկուէին ու չընկրկէին ինչ-որ սակաւաթիւ անյայտ մարդկանց պահանջների առջեւ ու ենթարկուելով նրանց քմահաճոյքին՝ փառատօնից չհանէին մի ամբողջ ծրագիր:

Մենք դատապարտում ենք թէ՛ Կինեմատոգրաֆիստների Միութեանը, որը յանդգնել է երկու ֆիլմում արծարծուող թեմայի պատճառով գրաքննել Ոսկէ Ծիրան միջազգային կինոփառատօնի յատուկ ծրագիրը, թէ՛ Ոսկէ Ծիրանին, որը 37 կինոգործիչներին երկտողանոց, առանց բացատրութեան նամակ գրելու փոխարէն, պէտք է բոլոր ջանքերը ներդնէր, որպէսզի ծրագիրն այլ վայր տեղափոխէր:

Ծրագիրը փառատօնից հանելով՝ Ոսկէ Ծիրանը միայն կանաչ լոյս է վառում Հայաստանում գրաքննութեան դիմաց, իր այդ քայլով միայն հաստատում է, որ Հայաստանում իւրաքանչիւր ֆիլմի նկատմամբ կարող է այսպիսի կամայական վերաբերմունք լինել: Ի վերջոյ, Հայերը շատ լաւ գիտեն գրաքննութեան հետեւանքները թէ՛ Խորհրդային Միութեան, թէ՛ երիտ-թուրքական, թէ՛ Օսմանեան Կայսրութեան հայերի դէմ գրաքննութեան պատմութիւնները նկատի ունենալով:

Ոսկէ Ծիրանը անպայման պէտք է վերականգնի ծրագրի բոլոր ֆիլմերի ցուցադրութիւնները, ինչ ձեւաչափով էլ որ լինի: Հակառակ դէպքում, Ոսկէ Ծիրան միջազգային կինոփառատօնը պէտք է ընդունի, որ գրաքննութիւնը լեգիտմացնող է եւ իր մէջ փոփոխութիւններ կատարի: Հանրայնութիւն վայելող կինոկառոյցը չպէտք է վտանգի ու խոչընդոտի Հայաստանի կինոարտադրութեան զարգացումը:

Մենք չենք ընդունում Ոսկէ Ծիրանի՝ գրաքննութեան դիմաց ներողութեան հայցը, այդ ներողութիւնն ընդունելը կը նշանակի, որ մենք նոյնպէս հանդուրժում ենք տեղի ունեցածը:

Ոսկէ Ծիրա՛ն, ներողութիւն հայցելու փոխարէն պաշտպանի՛ր ընտրածդ ֆիլմերը, վերականգնի՛ր ծրագրում բոլոր ֆիլմերի ցուցադրութիւնները մէկ այլ վայրում ու դատապարտի՛ր Կինեմատոգրաֆիստների Միութեան այդ քայլը: Միայն ծրագրի վերականգնումը կարող է փրկել փառատօնի նախկին բարի համբաւը:

Հասկանալով, որ սա ոչ միայն խտրականութիւն է Հայաստանի Լեսբուհի, Գէյ, Բիսեքսուալ, Տրանսգենդէր (ԼԳԲՏ) համայնքի դէմ, ստեղծագործական եւ արտայայտման ազատութիւնների ոտնահարում, այլ հարուած նաեւ հայկական կինոարտադրութեանը, մենք կոչ ենք անում ՀՀ Մշակոյթի Նախարարութեանը, Ոսկէ Ծիրան միջազգային կինոփառատօնի անձնակազմին, հովանաւորներին եւ գործընկերներին անել հնարաւոր ամէն ինչ *Հայեացք ներսից եւ դրսից* ծրագիրը վերականգնելու համար:

**ՆՈՒԱՐԴ ՄԱՐԳԱՐԵԱՆ, ԵՐԵՒԱՆ**

Խնդրագիրը պիտի յանձնուի՝
Նախարար, Արմէն Ամիրեան
ՀՀ Մշակոյթի Նախարարութիւն
Կինեմատոգրաֆիստների Միութիւն
Յարութիւն Խաչատրեան
Ոսկէ Ծիրան միջազգային փառատօն
*Change.org*

Ջ. - Արդեօք ո՞վ համարձակութիւն կ'ունենայ օր մը *Change.org*-ի մէջ խնդրագիր տեղադրել *սփիւռքի* հայկական միութիւններու գրաքննութիւններուն եւ ինքնագրաքննութիւններուն նկատմամբ, որոնց քանակը բաւական շատ է:

## ՄԻՆՍԿԻ ԽՄԲԻ ՀԱՄԱՆԱԽԱԳԱՀՆԵՐԸ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ ԵՆ ՏԱՐԱԾԵԼ ՆԱԼԲԱՆԴԵԱՆ-ՄԱՄԱԴԵԱՐՈՎ ՀԱՆԴԻՊՄԱՆ ԱՐԴԻՒՆՔՆԵՐՈՎ

Եւրոպայում Անվտանգութեան եւ Համագործակցութեան Կազմակերպութեան (ԵԱՀԿ) Մինսկի խմբի համանախագահները Յուլիսի 11-ին Բրիւսէլում Հայաստանի ու Ադրբէջանի արտաքին գործերի նախարարներ Էդուարդ Նալբանդեանի ու Էլմար Մամադեարովի հետ հանդիպման արդիւնքներով յայտարարութիւն են տարածել: *Արմենպրէսը* ներկայացնում է յայտարարութիւնն ամբողջութեամբ:

«ԵԱՀԿ Մինսկի խմբի համանախագահները՝ Իգոր Պոպովը (Ռուսաստան), Ստեֆան Վիսկոնտին (Ֆրանսիա) եւ Ռիչարդ Հոգլանդը (ԱՄՆ), Յուլիսի 11-ին հանդիպել են Ադրբէջանի արտգործնախարար Էլմար Մամադեարովի եւ Հայաստանի արտգործնախարար Էդուարդ Նալբանդեանի հետ՝ քննարկելու Լեռնային Ղարաբաղի հակամարտութեան կարգաւորման շուրջ յետագայ աշխատանքի մանրամասները: Հանդիպմանը ներկայ է եղել նաեւ ԵԱՀԿ գործող նախագահի անձնական ներկայացուցիչ Անջէյ Կասպշիկը:



Նախարարները համաձայնել են փոխանցել իրենց նախագահներին համանախագահների առաջարկը՝ այս տարի աւելի ուշ բարձր մակարդակով հանդիպում կազմակերպելու մասին: Համանախագահներն առաջարկել են իրենց օգնութիւնը հանդիպման կազմակերպման գործում:

Քննարկուել է նաեւ ներկայ իրադրութիւնը շփման գծում:

Նախարարները եւ համանախագահները համաձայնել են կրկին հանդիպել Սեպտեմբերին Նիւ Եորքում՝ ՄԱԿ-ի Գլխաւոր Ասամբլեայի 72-րդ նստաշրջանի շրջանակում», - ասւում է յայտարարութեան մէջ:

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ԿԻՆՈՄԻՈՒԹԵԱՆ ՆՈՐ ՂԵԿԱՎԱՐՆԵՐԸ ՀՐԱԺԱՐՈՒԵՑԻՆ ՈՍԿԷ ԾԻՐԱՆԻ ԼԳԲՏ ՀԱՄԱՅՆՔԻ ՖԻԼՄԵՐԸ ՑՈՒՑԱԴՐԵԼ. ՅԱՐՈՒԹԻՒՆ ԽԱՉԱՏՐԵԱՆ

**ՅԱԿՈԲ ԱՍԼԱՆԵԱՆ**

Կինոմիութեան նոր ղեկավարները՝ նայելով Ոսկէ Ծիրան կինոփառատօնի ինֆորմացիոն ծրագիրը, որում Լեսբուհի, Գէյ, Բիսեքսուալ, Տրանսգենդէր (ԼԳԲՏ) համայնքի մասին պատմող երկու ֆիլմ կար, եւ տեսնելով հասարակական աղմուկը, նշեցին, որ իրենք չեն կարող այն ցուցադրել: Այս մասին այսօր կայացած մամուլի ասուլիսին ժամանակ ասաց Ոսկէ Ծիրան միջազգային կինոփառատօնի հիմնադիր եւ գլխաւոր տնօրէն Յարութիւն Խաչատրեանը:

«Մեր գործընկերներից մէկը Կինոմիութիւնն է, որոնցից մենք դահլիճ չենք վարձում, այլ իրենք այդ ինֆորմացիոն ծրագիրը ցուցադրում են Կինոյի տանը: Մենք պայմանաւորուել էինք Ռուբէն Գէորգեանցի հետ, ով վերջերս մահացաւ: Ծրագիրը պէտք է ցուցադրուէր եւ յանկարծ պարզուեց, որ բաւականին մեծ աղմուկ կայ ծրագրի շուրջ հասարակութեան կողմից: Նոր ղեկավարներն էլ յայտնեցին, որ իրենք այսպիսի սգի չեն կարող նման ծրագիր ցուցադրել», - ասաց Խաչատրեանը՝ յաւելելով, որ իրենք չէին կարող Կինոմիութեանը ստիպել, քանի որ դահլիճը չէին վարձում:

Նշենք, որ Ոսկէ Ծիրան 2017 միջազգային կինոփառատօնի ֆիլմերի ցանկից հանուել է ԼԳԲՏ համայնքի ներկայացուցիչների կեանքի մասին պատմող երկու ֆիլմ: Մէկ գեղարուեստական՝ *Ծիրանի այգիներ* ֆիլմը, որի ռեժիսորը Փուրիա Հէյդարին է, եւ մէկ փաստավաւերագրական ֆիլմ՝ *Լսիր ինձ*, որի ռեժիսորն էլ Գագիկ Ղազարէն է: Երկու ֆիլմերն էլ պէտք է հանդիսատեսին ներկայացուէին Յուլիսի 13-ին:

Յարութիւն Խաչատրեանի խօսքով՝ այս անգամ ոչնչից մեծ աղմուկ բարձրացրին, ըստ նրա՝ անհասկանալի բողոք եղաւ:

«14 տարի մենք աշխատել ենք եւ երբեք խնդիր չենք ունեցել ոչ ծրագրի հետ, ոչ էլ հասարակութեան հետ: Նոյնիսկ այն ժամանակ, երբ թուրքական ֆիլմեր ցուցադրում էին տարբեր տեղերում: Մենք երկիր ենք, որտեղ գրաքննութիւն չկայ: Երբեւէ չենք ունեցել ճնշման կամ միջամտութեան դէպք ո՛չ իշխանութիւններից, ո՛չ գործընկերներից, ոչ էլ հովանաւորներից», - նշեց նա:

Նա համոզուած է, որ այս միջադէպը փառատօնի վրայ ստուեր չի գցի, որովհետեւ դրանք ո՛չ միջազգային, ոչ էլ մրցութային ֆիլմերն էին: Խաչատրեանը յոյս յայտնեց, որ ծրագիրը յաջորդ տարի կը կարողանան ցուցադրել:

*ԹԵՐԹ.am*

7 Յուլիս 2017

Ջ. - Գրող, հրապարակագիր եւ մտաւորական Վահան Իշխանեան Ֆէյսպուքի մէջ կու տայ Յուլիս 7 թուակիր հետեւեալ հետաքրքրական մեկնաբանութիւնը.

«Հասարակութեան յիշողութիւնը կարճ է, եւ նա ով 15 տարի առաջ խօսքի ազատութեան ջարդարար էր, այժմ արդէն արուեստի պրոպագանդիստ ու հումանիստ արուեստագէտ է: Յիշեցնեմ որ Ոսկէ Ծիրան փառատօնի տնօրէն Յարութիւն Խաչատրեանը 2002թ. Ա1+ հեռուստատեսութիւնը փակողներից մէկն էր, իսկ այսօր էլ արգելել է ցուցադրել Ոսկէ Ծիրան փառատօնում ընդգրկուած ԼԳԲՏ համայնքի մասին պատմող երկու ֆիլմերը: Այն ժամանակ նա Ռոբերտ Քոչարեանի ձեռքին էր ջարդարար, այսօր՝ մի խումբ ֆաշիստների:»

(Harutyun-Xachatryan/2424611#.WV91YY 1UlBE.facebook)

# *ԽՈՐ ԼԵՌԸ* ԵԳԻՊՏԱԿԱՆ ԸՆԿԱԼՈՒՄՈՎ

Հ. Ա.

Յաջորդական երկու համարներու մէջ *Զարթօնք* ներկայացուց Էճէ Թեմելքուրանի *Խոր լեռ* գիրքի արաբերէն թարգմանութեան նախաբանը եւ թարգմանութեան առիթով գրուած գրախօսական մը:

Յիշեցնեմ, որ գիրքին արաբերէն տարբերակը լոյս տեսած է Գահիրէ, 2016-ին (Սաֆսաֆա Հրատարակչատուն), եգիպտացի գրող ու բանաստեղծ Մայսարա Սալահ Էլ-Տինի թարգմանութեամբ:

Այս երրորդ եւ վերջին յօդուածով կը փափաքիմ ամփոփել արաբերէն թարգմանութեան որոշ արձագանգները եգիպտական շրջանակներու մէջ, հետեւելով ժամանակագրական յաջորդականութեան:

Գիրքի լոյս ընծայումէն անմիջապէս ետք, 2016 Մայիս 31-ին, *Էլ-Էսպու’* շաբաթաթերթի համացանցային էջը կարճ հարցազրոյց մը կը վարէ Մայսարայի հետ.

**«Հարցում – Արդեօ՞ք գիրքը կը ներկայացնէր ընդամէնը իրական պատմութիւններու թուագրում մը:**

Պատասխան – *Խոր լեռ* հարուստ է մարդոց, վայրերու եւ դէպքերու մասին իրական ու ճշգրիտ մանրամասնութիւններով, որոնք պէտք է մօտէն հետազօտուին եւ ուսումնասիրուին, որպէսզի կարելի է ըլլայ մտնել բնագիրի խորքը եւ շրջանցել անոր արտաքին սահմանագիծը: Գիրքը ոչ միայն կը թուագրէ իրական դէպքերը, այլեւ կը պարունակէ խորաթափանց վերլուծութիւններ եւ մարդկային տեսակէտներ:

**Հարցում – Արդեօ՞ք պէտք ունեցար կարդալ հայոց պատմութիւնը, թէ կարելի եղաւ լոկ հետեւիլ բառացի թարգմանութեան՝ առանց յետնախորքի:**

Պատասխան – Անհրաժեշտ էր վերստին կարդալ հայ-թրքական պատմութիւնը տարբեր տեսանկիւններէ, ոչ միայն հակամարտութեան երկու բեւեռներուն այլեւ հայկական եւ թրքական հասարակութիւններուն ընդերքը գտնուող զանազան հոսանքներուն կողմէ: Ջգտելով պահպանել թարգմանական հաւատարմութիւնը եւ բնագիրին յորդուն հարստութիւնը, որոշեցի ինքզինքս հեռու պահել դէպքերուն մասին դատողութիւններ ընելէ եւ խուսափիլ այս կամ այն կողմին նկատմամբ նախասիրութիւն կամ կողմնակցութիւն ցուցաբերելէ:»(1)

2016 Յունիս 19-ին, *Ախպար ալ-Հաուատես* շաբաթաթերթը կը հրատարակէ գրախօսական մը՝ «*Խոր լեռ*՝ անբուժելի վէրքը հայերուն», Նեսրին Էլ-Պախչունկլիի ստորագրութեամբ(2):

2016 Հոկտեմբեր 27-ին, Մինիայի (Հարաւային Եգիպտոս) Մակրայա հիմնարկին մէջ տեղի կ’ունենայ գիրքին քննարկումը թարգմանիչին ներկայութեամբ: Քննարկումը կը վարէր Աշրաֆ Միլատ՝ մագիստրոս Մալթայի Համալսարանէն 2006-ին (մարդու իրաւունքներու եւ ժողովրդավարութեան մասին) եւ մագիստրոս Գահիրէի Ամերիկեան Համալսարանէն 2009-ին (գաղթականներու եւ փախստականներու մասին):

2017 Յունուար 3-ին տեղի կ’ունենայ քննարկում մը եւս Գահիրէի Գիրքի Միջազգային Կեդրոնին (Ալ-Մարքազ ալ-տաուլի լըլքիթապ) մէջ: Քննարկումը կը վարէին՝ Մայսարա Սալահ Էլ-Տին, Մոհամմէտ Ալ-Պա’լի (Սաֆսաֆա Հրատարակչատան տնօրէնը), Մետհաթ Թահա (գրող) եւ Աշրաֆ Միլատ:

Քննարկումի ընթացքին, Ալ-Պա’լի կու տայ հետեւեալ բացատրութիւնները.

«Գիրքին հիմքը կը կազմեն Էճէ Թեմելքուրանի 2006-ին հրատարակած յօդուածներու շարքը, երբ պրկուած էին Թուրքիոյ եւ Հայաստանի յարաբերութիւնները եւ երբ Ֆրանսայի խորհրդարանը կը քննարկէր հայոց ցեղասպանութեան օրէնքը: Բայց թրքահայ լրագրող եւ ազթիւսթ Հրանդ Տինքի սպանութենէն ետք, հարցը զարգանալով դա[illegible] գիրք մը՝ *Խոր լեռ* խորագիրով, որ կը համախմբէ հայկական հարցին վերաբերեալ ժամանակակից բազմաթիւ վկայութիւններ եւ տեսակէտներ Հայաստանէն, Ֆրանսայէն, Ամերիկայէն եւ նոյնիսկ Թուրքիայէն: Գիրքը կը ներկայացնէ հայկական հարցին ամբողջական պատկերը՝ դիտուած խիստ քնքոյշ եւ առանձնայատուկ մարդկային տեսանկիւնէ:

«2014-էն սկսեալ գիրքը երկար ճանապարհ անցած է Սաֆսաֆա Հրատարակչատան հետ: Ծրագիրը հովանաւորելու համար դիմեցինք Թրքական Դեսպանատուն՝ ուր կը գտնուի թարգմանութիւնները նպաստելու բաժին, որ մերժեց առաջարկը՝ առարկութիւն յայտնելով գիրքի բովանդակութեան հանդէպ: Միաժամանակ դիմեցինք հայկական գիրքեր թարգմանելու ծրագիրը տնօրինողներուն, որոնք նոյնպէս մերժեցին քանի որ անիկա չէր համապատասխաներ իրենց տեսակէտին(3): Ասկա կը հաստատէ հեղինակի անկախութեան աստիճանը: Եւ այս հանգամանքն էր որ մղեց մեզի ձեռնարկելու թարգմանութիւնը:»(4)

Աշրաֆ Միլատ իր ելոյթին մէջ կ’ըսէ. «Հայկական հարցին նկատմամբ լրատուամիջոցներուն առաջադրած պատմութիւնները բազմազան են: Դժուարութիւնը այն է՝ որ ան տեղի ունեցած է մէկ դար առաջ: Հայկական ցեղասպանութիւնը կը հանդիսանայ պատմութեան երկրորդ ամենայայտնի ցեղասպանութիւնը Ողջակիզումէն ետք: Մինչեւ այսօր Իսրայէլ չէ ընդունած զայն: Ընդունած են աշխարհի ընդամէնը 40 երկիրներ, այսինքն աշխարհի երկիրներուն 15%-ը, քանզի ցեղասպանութեան ճանաչումը ենթարկուած է քաղաքական շահերու, յատկապէս արաբական աշխարհին մէջ:»(5)

Գրող Մետհաթ Թահա կ’արտայայտէ հետեւեալ կարծիքը. «Գիրքը կարեւոր է հասկընալու հայկական հարցը եւ անոր հետեւանքները, ինչպէս նաեւ տեղեկանալու էթնիքական ոչնչացումի տեսակներուն ընդհանրապէս: Գիրքին առանձնայատուկութիւններէն մէկը այն է՝ որ ան չի պատասխաներ բոլոր հարցադրումները, այլ կը բանայ քննարկումի հորիզոններ: Ուրիշ ցեղասպանութիւններու համեմատութեամբ, հայկական հարցը լայն տարածութիւն գտած է լրատուամիջոցներուն մէջ, քանի որ հայերը՝ տարածուելով տարբեր երկիրներ, յաջողած են ներկայացնել ուժեղ գոյութիւն մը: Անտեսուած է, օրինակ, պաղեստինեան ցեղասպանութիւնը Իսրայէլի կողմէ, որուն դիմաց, դժբախտաբար, աշխարհը կը մնայ ձեռնպահ:»(6)(7)

2017 Մայիսին, *Ռոզ Ալ-Եուսէֆ* օրաթերթը հարցազրոյց մը կը վարէ Մայսարայի հետ: Թարգմանիչը, ի միջի այլոց, կ’ըսէ. «Երբ հրատարակիչ Մոհամմէտ Ալ-Պա’լի ինծի առաջարկեց թարգմանել թուրք գրող Էճէ Թեմելքուրանի *Խոր լեռ* գիրքը, խանդավառ էի թարգմանական փորձով բայց նուազ խանդավառ տուեալ գիրքով: Ճիշդ կողմնորոշուելու համար որոշեցի լաւ ծանօթանալ գիրքին: Իրապէս, երբ սկսայ կարդալ զայն, ինքզինքս գտայ մանրամասնութիւններու գրաւիչ աշխարհի մը մէջ, զոր գրողը փոխանցած է բարձր հմտութեամբ: Տարադրուած ըլլալով վէպի շրջանակի մէջ, հեղինակը քաղաքական հետազօտութիւնը փոխած է գրական լիարժէք գործի: Գիրքը հիմնուած է պատումի, մարդկային զգացումներու եւ յորդուն գաղափարներու վրայ: Պատմողները մարդիկ են՝ որոնց մեծ հայրերը այս կամ այն ձեւով ներգրաւուած էին հայոց ցեղասպանութեան մէջ, կատարուած 1915-ին՝ Առաջին Համ[illegible]արհային Պատերազմի ընթացքին, օսմանեան բանակի ձեռքով: Պատմողները կրնան ըլլալ իրենք թուրքերը, կամ հայերը, կամ ընդհանրապէս հարցի

4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿԳ ՆԱԽԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ ՌՈՒՍԵՐԷՆԻՆ ՊԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԱՎԻՃԱԿ Է ՏՈՒԵԼ

6 Յուլիս, Top-News.am – Հայաստանում պետական լեզուն հայերէնն է: Այսուհանդերձ, պարզւում է, որ Հայաստանի Կրթութեան եւ Գիտութեան Նախարարութիւնը հայերէնից բացի պետական լեզուի կարգավիճակ է տուել նաեւ ռուսերէնին:

Աւարտական դասարաններն աւարտածները ստացան իրենց ատեստատները եւ յայտնաբերեցին, որ բացի հայերէնից, ինչպէս խորհրդային ժամանակներում, իրենց ատեստատը ոչ միայն հայերէնով է, այլ նաեւ ռուսերէնով:

Ով է պատասխան տալու, թէ ինչու է այդպէս, ով է համապատասխան պարզաբանում տալու: Վերջապէս ինչու ռուսերէն, եւ ոչ անգլերէն կամ պարսկերէն կամ վրացերէն:

Եւ վերջապէս, ե՞րբ ենք սովորելու ապրել պետութիւն ունեցող ազգի նման, արժանապատիւ կեցուածքով եւ խելամիտ քայլերով:

Հիմա ոմանք կ’ասեն, թէ էլ ինչ արժէք ունի ձեր անկախութիւնը, անցած տարիների տառապանքը, եթէ նախկինի նման ատեստատներում նշումներն արուելու են հայերէնով եւ ռուսերէնով:

Ի դէպ, Պետական Համալսարանը եւս դիպլոմները տալիս է հայերէնով եւ ռուսերէնով:

*Զ.*– Ի՞նչ կ’ըլլար եթէ «ատեստատ»-ի երկրորդ լեզուն ըլլար արեւմտահայերէն: Կրնայի՞նք այլեւս խօսիլ արեւմտահայերէնի վտանգի մասին:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՄԵՆԱՄԵԾ ՍԽԱԼԸ ԱՐՑԱԽԻՆ ԲԱՆԱԿՑԱՅԻՆ ԳՈՐԾԸՆԹԱՑԻՑ ԴՈՒՐՍ ԹՈՂՆԵԼՆ Է ԵՂԵԼ. ԿՈՆՍՏԱՆՏԻՆ ԶԱՏՈՒԼԻՆ. *ԺՈՂՈՎՈՒՐԴ*

*Ժողովուրդ* թերթը գրում է. «Ռուսաստանի Պետդումայի Անկախ Պետութիւնների Համագործակցութիւն (ԱՊՀ) գործերով, եւրասիական ինտեգրման ու հայրենակիցների կապերի կոմիտէի առաջին փոխնախագահ, ԱՊՀ երկրների ինստիտուտի ղեկավար Կոնստանտին Զատուլինը *Ժողովուրդ*ի հետ զրոյցում անդրադարձել է Լեռնային Ղարաբաղի հակամարտութեան կարգաւորման գործընթացին՝ նշելով, թէ Հայաստանի ամենամեծ սխալը Արցախին բանակցային գործընթացից դուրս թողնելն է եղել: «Ամենավատ սխալը, որն արուել է եւ վառ է իմ յիշողութիւնում, Լեռնային Ղարաբաղի դուրս մնալն է բանակցային գործընթացից: Դա տարբեր պատճառներով, իմ կարծիքով՝ աւելի շատ ոչ թէ ներքին, այլ արտաքին ազդակներից ելնելով, իր ժամանակին արել է իմ կողմից շատ յարգուած Ռոբերտ Քոչարեանը: Դա սխալ էր, որը շատ դժուար է ուղղել, եւ մինչ այժմ դա չի էլ յաջողուել», – ասել է նա: Ինչ վերաբերում է վերջին օրերին շփման գծում լարուածութեանն ու հրադադարի ռեժիմի խախտումներին, Զատուլինն ասել է, թէ Ադրբէջանը նման քայլերով եւ լարուածութեամբ փորձում է ուշադրութիւն գրաւել Ղարաբաղեան կոնֆլիկտի անլուծելի մնալու վրայ»:

## ՀԱՄԱՅՆՔԱՅԻՆ ԱՄԷՆ ԽՈՇՈՐԱՑՈՒՄԻՑ ՅԵՏՈՅ ԳԻՒՂԵՐ ԵՆ ԱՆՀԵՏԱՆՈՒՄ. ՎԱԶԳԷՆ ՍԱՖԱՐԵԱՆ

Հայրենական Ապրանք Արտադրողների միութեան նախագահ Վազգէն Սաֆարեանը Հայելի ակումբում լրագրողների հետ հանդիպմանը յայտարարեց, որ համայնքային ամէն խոշորացումից յետոյ գիւղեր են անհետանում: Պետութիւնը բոլոր թեր եւ դէմ քայլերը վերլուծելուց յետոյ միայն պէտք է այդքան պատասխանատու քայլեր ձեռնարկէր:

«Կարծում եմ՝ կառավարութիւնը պատշաճ ուսումնասիրութիւններ այս առումով չի կատարել եւ ծրագրի իրագործման հարցում մի փոքր շտապել է: Ես լուրջ համոզմունք ունեմ, որ մենք պէտք է հնարաւորինս ամուր յենուենք գիւղի վրայ, զարգացնենք կոոպերացիաները: Բայց դրա համար նախ պէտք է տնտեսական հիմքեր ապահովել, եւ նոր միայն տարածքային խոշորացման ծրագիր նախաձեռնել: Հանրային խորհրդի անդամները մօտ օրերս պէտք է մեկնեն Դիլիջան՝ հանդիպելու բնակիչներին եւ տեսնելու, թէ ինչպէս են փոքր համայնքներն իրենց զգում Դիլիջանին միանալուց յետոյ: Իրականում պէտք էր հաշուի առնել ժողովրդի մենթալիտետն ու կենցաղը, նրանց սովորոյթները, յետոյ միայն համայնքային խոշորացման քայլ կատարել», – ամփոփեց Հայրենական Ապրանք Արտադրողների միութեան նախագահը:

*Դեմոկրատական Սոցիալիզմ*

28 Յունիս 2017

ԳԱՀԻՐԷ

# *ՋԱՀԱԿԻՐԻ* ՈՒԹԵՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾԸ՝ ՆՈՒԻՐՈՒԱԾ ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻՆ

Լոյս տեսաւ *Ջահակիրի* Ը. Յաւելուածը՝ *Դաշնակահար եւ մակավարժ Նուարդ Տամատեանի կեանքի ուղեգրութիւնը (ըստ վաւերաթուղթերու եւ փաստագրութիւններու)*, 546 էջ:


ԴԱՇՆԱԿԱՀԱՐ ԵՒ ՄԱՆԿԱՎԱՐԺ ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԿԵԱՆՔԻ ՈՒՂԵԳՐՈՒԹԻՒՆԸ
(ըստ վաւերաթուղթերու եւ փաստագրութիւններու)

Հաւաքեց եւ պատրաստեց՝ ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

ՋԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ ՅԱՒԵԼՈՒԱԾ Ը.

ԳԱՀԻՐԷ
2017

Գիրքը կ'ընդգրկէ Նուարդ Տամատեանի (Աղեքսանդրիա, 1910 - Գահիրէ, 2004) ամբողջական գործունէութիւնը՝ Փարիզ, Պէյրութ, Հալէպ, Գահիրէ, Աղեքսանդրիա:

Այս հրատարակութիւնը կը հանդիսանայ եգիպտահայ երաժշտութեան նուիրուած *Ջահակիրի* Յաւելուածներուն չորրորդը:

ՀԱՅԱՍՏԱՆ

# ԿԱՅԱՑԱՒ ԵՐԻՏԱՍԱՐԴ ԱՐԵՒԵԼԱԳԷՏՆԵՐԻ 38-ՐԴ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԳԻՏԱԺՈՂՈՎԸ

Յուլիսի 7-ին եւ 8-ին ՀՀ ԳԱԱ Աղուերանի հիւրերի Տանը կայացաւ ՀՀ Գիտութիւնների Ազգային Ակադեմիայի Արեւելագիտութեան ինստիտուտի երիտասարդ արեւելագէտների XXXVIII միջազգային գիտաժողովը:



*Խմբանկար արեւելագէտներու ժողովի մասնակցողներուն*

Գիտաժողովին մասնակցում էին երիտասարդ գիտնականներ եւ հետազօտողներ Հայաստանի բուհերից եւ գիտական ինստիտուտներից, ինչպէս նաեւ Վրաստանի եւ Ռուսաստանի մի շարք համալսարաններից ու գիտական կենտրոններից:

Գիտաժողովում ողջոյնի խօսքով հանդէս եկաւ Արեւելագիտութեան Ինստիտուտի տնօրէն ակադեմիկոս Ռուբէն Սաֆրաստեանը: Նա անդրադարձաւ այս գիտաժողովի ձեւաւորուած աւանդոյթներին եւ շարունակականութեան անհրաժեշտութեանը: Ակադեմիկոս Ռ. Սաֆրաստեանը նշեց գիտաժողովի կարեւորութիւնը արեւելագիտութեան ոլորտում իրենց առաջին քայլերն անող երիտասարդ հետազօտողների համար:

Գիտաժողովին ներկայացուած զեկուցումները եւ նիւթերը ընդգրկում են ժամանակագրական լայն շրջանակ՝ հին աշխարհի պատմութիւնից մինչեւ Թուրքիայում, Իրանում, արաբական երկրներում արդի իրադարձութիւններով: Գիտաժողովի զեկուցումների մի մասն էլ նուիրուած էր միջնադարեան ձեռագրերի, վիմագրերի, արձանագրութիւնների ուսումնասիրութեանը:

# *ՄԱՐԻՈՆԷՏՆԵՐԻ ԹԱՏՐՈՆ*. ՖԻԼՄ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*Մարիոնէտների Թատրոն* ֆիլմը պատմում է, թէ ինչպէս են տեղի ունենում ընտրութիւնները Հայաստանում: Ինչպիսի ընտրակեղծիքների է դիմում վարչախումբը, ինչ դերաբաժանումներ կան, ինչ պայմաններում են գործում կուսակցութիւնները: Խօսւում է երկրում տիրող առկայ հակասահմանադրական վիճակի եւ քաղաքացիների ապաքաղաքականացուած դերաբաշխման մասին:

Ֆիլմում դիրքորոշումներ են յայտնել ընտրութեանը մասնակցած բոլոր քաղաքական ուժերը բացի ՀԿԿ-ից եւ Ծառուկեան դաշինքից: Բոլոր նամակները եւ զանգերը մնացել են անպատասխան:

Ֆիլմի հեղինակ՝ Թեհմինէ Ենոքեան:

# ԼՐԱԳՐՈՂՆԵՐԻ ՆԿԱՏՄԱՄԲ ԽՏՐԱԿԱՆ ՎԵՐԱԲԵՐՄՈՒՆՔ ԿԱՅ ԿԱԼԱՆՔԸ ՈՐՊԷՍ ԽԱՓԱՆՄԱՆ ՄԻՋՈՑ ԸՆԴՈՒՆԵԼԻՍ. ՄԱՆԷ ԹԱՆԴԻԼԵԱՆ

Ազգային Ժողովի Ելք խմբակցութեան պատգամաւոր Մանէ Թանդիլեանը, ԱԺ-ի Յուլիսի 10-ի նիստի իր ելոյթում խօսելով կալանքը որպէս խափանման միջոց կիրառելու պրակտիկայի մասին, նկատեց, որ Մարդու Իրաւունքների Եւրոպական Դատարանում (ՄԻԵԴ) արդէն վաղուց մօտեցումները փոխուել են, սակայն Հայաստանում դեռ շարունակւում է նախորդ պրակտիկան:

4

ԽՈՀԵՐ

# ՄԵՆՔ/ԵՍ ԵՒ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆԸ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Պատմական գիտութիւններու տոքթոր, փրոֆեսոր, ՀՀ ԳԱԱ Թղթակից անդամ, ակադեմիկոս, ՀՀ ԳԱԱ Պատմութեան Ինստիտուտի տնօրէն: Խօսքը Մ.-ի մասին է:

Վերջերս Ազգային Ակադեմիայի մէջ տեղի ունեցաւ սուրիահայերուն նուիրուած գիտաժողով: *ԹԵՐԹ.am* հինգ ու կէս վայրկեան տեւողութեամբ հարցազրոյց մը վարեց Մ.-ի հետ, զոր կարելի է դիտել YouTube-ի մէջ: Ակադեմիկոսը ըսաւ.

«Ցաւալիօրէն, մեր իրաքահայերը հանգրուանելով այստեղ, միայն մասնակիօրէն մնացին այստեղ, մի զգալի մասը թողեց եւ հեռացաւ արտասահման: Նոյն սխալը թոյլ տուեց նաեւ սիրիահայերի պարագայում: Մեր հայրենիքի, հայրենի հողի վրայ, մեր հայրենիքի այսպէս կարօտով ապրող հայրենադարձ սփիւռքահայերի համար Հայաստանը միշտ պէտք է լինի հայրենիք, բայց ոչ թէ, ներողութիւն այս բառիս համար, տրամպլին արտասահման հեռանալու համար: Հայկական անձնագրեր տալուց յետոյ, ցաւօք սրտի, նրանց մի մասը հեռացաւ արտասահման, մասնաւորապէս Շուեդիա, Կանատա եւ այլն: Ես կարծում եմ որ մենք այստեղ սխալներ թոյլ տուեցինք: Այդ խնդրում մենք պէտք էր գիտական մօտեցում հանդէս բերէինք, եւ գիտէք ինչ, չռայլօրէն պէտք չէր որ անձնագրեր բաժանէինք բոլորին: Այստեղ մենք զգացական հողի վրայ սխալներ թոյլ տուեցինք այն տեսանկիւնից, որ այդ անձնագիրը սիրահայերի համար դարձաւ միջոց արտասահման հեռանալու համար զանազան աւազակային կազմակերպութիւններ՝ տուրիստական անուան տակ նրանց համար շենգէնեան վիզաներ ապահովեցին եւ նրանք յայտնուեցին արտասահմանում: Գիտէք ինչ կայ, երբ որ իշխանութիւնները որոշակի ջանքեր գործադրեցին, փորձեցին օգնել այդ մարդկանց, հայրենիքում տեղ գտնելու, իրենց բիզնէսը կազմակերպելու համար եւ յանկարծ արդիւնքում տեսանք որ այդ մարդիկ յայտնուեցին դրսում: Սա շատ ցաւալի երեւոյթ է: Գիտէ՞ք ինչ կայ: Սա հոգեբանօրէն սպանում է բոլորիս որովհետեւ հայաստանցին որը տեսնում է որ սիրիահայը հայրենադարձւում է հայրենիք եւ այստեղ չի մնում հեռանում է, բնականաբար ինքն էլ որ արդէն բռնել է այդ չարաբաստիկ արտագաղթի ճանապարհը, սա դառնում է համընդհանուր երեւոյթ եւ մեր ինքնութեան ձեւախեղում է տեղի ունենում: Այսինքն մենք մոռացել ենք մեր արմատները եւ այս իմաստով գիտական մօտեցում է պէտք հանդէս բերել: ... Ես կարծում եմ որ այն սերուցքը որ եկաւ սիրիահայերի մնաց հայրենիքում ստեղծեց իր բիզնէսը, որոնց հետ հաւատացէք ես անձնական մտերմութիւն եմ ստեղծել, մտնում եմ այդ մարդկանց խանութները, այդ մարդկանց ճաշարանները, ողջունում եմ նրանց, հարցնում եմ թէ արդեօք ձեզ նեղացնողներ կան թէ չէ, երբ որ դրական պատասխան եմ ստանում որ շատ լաւ են իրենց զգում, այդ զգացումը բնականաբար փոխանցւում է ինձ:»

Քանի մը դիտողութիւն.

1. Հետեւինք իր միտքերուն յաջորդականութեան. սուրիահայեր եկան Հայաստան, իշխանութիւնը իրենց անձնագիրներ տուաւ, այդ անձնագիրները չահագործելով մեկնեցան արտասահման, հայաստաբնակ ժողովուրդը՝ որ արդէն միշտ մեկնելու միտում ունեցած է, վարակուեցաւ սուրիահայերու արտագաղթէն եւ աւելի շատցաւ գաղթելու իր ցանկութիւնը, արտագաղթը սովորական երեւոյթէ դարձաւ համընդհանուր երեւոյթ եւ, վերջապէս, տեղի ունեցաւ մեր ինքնութեան ձեւախեղում: Ձեւախեղուեցաւ հայ ինքնութիւնը: Հիմա մեր ինքնութիւնը ձեւախեղուած է: Հայկական ազգային ինքնութեան ձեւախեղումին պատճառներէն մէկը սուրիահայերուն արտագաղթն է: Կարեւոր չէ հասկնալ՝ թէ ինչպէս կրնայ արտագաղթը ինքնութիւն ձեւախեղել եւ թէ Մ. ինչ կը հասկնայ ինքութիւն հասկացողութեամբ, երբ ինքնութիւնը շատ լայն, բազմաշերտ ու բազմիմաստ հասկացողութիւն մըն է, որ կը փոխուի ժամանակներու եւ տարածութիւններու ընդմէջէն: Ինքնութիւնը ամբողջատիրութիւն մը չէ՝ որ կարելի ըլլայ մէկ նախադասութեամբ ձեւախեղել:

Բաց աստի, արդեօ՞ք արտագաղթը քսան տարի է համընդհանուր երեւոյթ չէ դարձած: Մէկ միլիոնէն աւելի հայաստանաբնակ արտագաղթած է երեք նախագահներուն ժամանակ, եւ տակաւին սուրիահայերուն պատճառով ան կը դառնայ համընդհանուր: Համընդհանուր չէր՝ դարձաւ համընդհանուր:

Ահաւասիկ 1992-2015-ին արտագաղթողներուն թիւը՝ ըստ Թաթուլ Յակոբեանի հաշուարկումներուն. «Լեւոն Տէր-Պետրոսեանի նախագահութեան տարիներին Հայաստանից հեռացել եւ չի վերադարձել 586.800 մարդ: ... Ռոբերտ Քոչարեանի նախագահութեան 10 տարիներին Հայաստանից արտագաղթել է 129,300 մարդ: ... Սերժ Սարգսեանի նախագահութեան 8 տարիներին Հայաստանից արտագաղթել է 296,988 մարդ:»(1) Այսինքն, 23 տարուայ ընթացքին արտագաղթած է աւելի քան մէկ միլիոն մարդ: Ասիկա համընդհանուր չէ տակաւին: Տակաւին ինքնութիւնը չէ ձեւախեղուած: Համընդհանուր դարձաւ սուրիահայերու արտագաղթով:

2. Խօսքին մէջ կը գտնուին երկու տեսակ սուրիահայեր, մէկը՝ բացասական ու անպարկեշտ, որ հայրենիքը «տրամպլին» գործածելով կը մեկնի արտասահման, միւսը՝ դրական, պարկեշտ ու հայրենասէր, որ կը մնայ ու կ'աշխատի հայրենիքի մէջ: Առաջինը անձայն է: Մ. չէ խօսած ու չի խօսիր անոնց հետ: Նոյնիսկ եթէ խօսած է, անոնց խօսքը պէտք չէ արտայայտէ տեսագրութեան մէջ: Անոնք բացասական մարդիկ են, իսկ բացասականներուն արգիլուած է խօսիլ: Անոնց կարծիքը, խօսքը, տեսակէտը չկայ: Երկրորդը ձայնաւոր է՝ Մ.-ի ընդմէջէն: Մ. այս դասակարգումի անդամներուն հետ կը հանդիպի, կը հարցնէ անոնց որպիսութիւնը, կացութիւնը, եւ միշտ կը ստանայ դրական պատասխան: Նման պատահական հանդիպումները լրատուամիջոցային ծանուցումի հնչեղութիւն ունին եւ կը փոխարինեն դաշտային ուսումնասիրութեան: Դաշտային ուսումնասիրողը այն անձն է՝ որ կազմակերպուած ու դասակարգուած զրոյցներ կ'ունենայ ենթականերու բոլոր շերտերուն հետ, կ'արձանագրէ անոնց խօսքերն ու կարծիքները, եւ, դարձեալ, յատուկ դասակարգումներով, լսելի կը դարձնէ անոնց ձայնը՝ ինչպէս որ կայ, կու տայ մեկնաբանութիւններ եւ կ'առաջարկէ լուծումներ: Այս դաշտային ուսումնասիրողները յաճախ կը փոխարինուին լրատուական պատկերաւորութեամբ, երբ անձ մը իր ունեցած քանի մը հանդիպումներն ու զրոյցները, կը ներկայացնէ իբրեւ վաւերականութիւն՝ յագեցած զգացական հռետորականութեամբ: Զգացական վաւերականութիւնը կը փոխարինէ իրական փորձառութեան: Վերացարկուած գիտականութիւնը կը փոխարինէ քննական գիտականութեան:

Վերջապէս, Մ.-ին համար առաջին եւ երկրորդ տիպարներուն միջեւ երկխօսութիւն չկայ, իսկ անոնց միջեւ ուրիշ տիպարներ գոյութիւն չունին:

3. Ըստ Սփիւռքի Նախարարութեան Մերձաւոր եւ Միջին Արեւելքի հայ համայնքներու վարչութեան պետ Լեւոն Անտոնեանին, սուրիական պատերազմի սկզբնաւորութենէն ի վեր Հայաստան գաղթած է 22 հազար սուրիահայ(2): Թիւը բաւական խօսուն է: Այս 22 հազարն է որ Մ. կը բաժնէ երկու մասի՝ բացասական ու դրական, եւ կը հարցնէ դրականներուն որպիսութիւնը իրենց խանութներուն եւ ճաշարաններուն մէջ, միշտ ստանալով դրական պատասխաններ: Քանի՞ հոգիի մասին է խօսքը: Հի՞նգ, տա՞սը, յիսո՞ւն: Իսկ մնացեալ հազարաւորնե՞րը, տասնահազարաւորնե՞րը: Չկա՞ն արդեօք սուրիահայեր՝ որոնք կը շարունակեն բնակիլ Հայաստան բայց դժգոհ են: Քանի՞ հոգի կրնայ խանութ ու սրճարան բանալ կամ պիզնէս ձեռնարկել: Գոյատեւող դժգոհներուն ձայները արգիլուած են Մ.-ի համար:

4. Հարցազրոյցի ընթացքին կը ստեղծուի գլխագիր Այլի դրութիւնը՝ իր ամբողջ

4

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ



### ՄԵՆՔ/ԵՍ ԵՒ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆԸ

3

տարողութեամբ: Երկու մարդկային շերտեր՝ Հայաստանի իշխանութիւններ եւ սուրիահայեր.

ա.- Առաջին շերտը Հայաստանի իշխանութիւններն են՝ այն լաւ, բարի ու զգացական մարդիկ, որոնք «որոշակի ջանքեր գործադրեցին» եւ «փորձեցին օգնել այդ մարդկանց»: Ի՞նչ է արդեօք իշխանութեան մը պարտականութիւնը՝ եթէ ոչ ժողովուրդին օգնել: Որո՞ւն համար կը գործեն իշխանութիւնները՝ պաշտօնատարներու բարձր ամսականներով: Մ.-ի մօտ իշխանութիւնները կը ստանան զոհի կարգավիճակ, քանի որ հակառակ իրենց նուիրական ջանքերուն, սուրիահայերուն մէկ մասը չահագործեց անոնց: Իշխանութիւնը՝ մինչեւ խորքը արմատաւորուած օլիկարքական այդ համակարգը, ամբողջապէս խարդախուած ընտրութիւններով պաշտօնի գլուխ անցած զանգուածը, կը դառնայ զոհ: Տակաւին պէտք է պարզաբանել՝ թէ ՀՀ ԳԱԱ Պատմութեան Ինստիտուտի տնօրէնի նշանակումը ո՞վ կը կատարէ՝ ո՞ր չընտրուած բարձրաստիճանին ստորագրութեամբ կը նշանակուի ան: Միայն թող չըսուի որ ան կ'ընտրուի հիմնարկի գիտաշխատողներուն միաձայն ընտրութեամբ եւ հաւանութեամբ:

բ.- Երկիցս կը գործածուի «այդ մարդկանց» արտայայտութիւնը, որ կը վերաբերի սուրիահայ թէ՛ պարկեշտ եւ թէ՛ անպարկեշտ զանգուածներուն: Հայերէնը եւ աշխարհի լեզուները ունին դերանուն՝ իրենք կամ անոնք: Երբ դերանունին կը փոխարինէ «այդ մարդոց»-ը, ուրեմն խօսքը կ'ընթանայ մարդոց մասին որոնք տարբեր են խօսողէն, կը կազմեն խօսողէն անդին գտնուող անորոշ ամբողջականութիւն մը՝ որոնց տրամաբանութեան հետ խօսողը կը մերժէ նոյնանալ: «Այդ մարդոց»-ը արտաքին մատնանշում մըն է, ուրեմն տարբեր է, մաս չի կազմեր խօսողի ենթակայականութեան: Եւ տակաւին կը խօսուի հայրենիքի մասին՝ իբրեւ մէկ ամբողջականութիւն:

Կը յառաջանայ իշխանութիւն՝ բարի, հայրենասէր, օգնել սիրող եւ զոհ դարձած, որուն մէջ Մ. կը գտնէ ինքզինք, եւ սուրիահայեր՝ «այդ մարդիկ», որոնց մէջ ան չի գտներ ինքզինք, նոյնիսկ եթէ անոնք կը ներկայացնեն բարի կողմը:

(Շար. 1/2)

ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Թաթուլ Յակոբեան, «Մաշուող Հայաստան. արտագաղթը 1992-2015թթ.», 3 Օգոստոս 2016, *CivilNet*, http://www.civilnet.am/news/2016/08/03/:

2 . «Հայաստանը 22 հազար սիրիահայ է ընդունել», *Երկիր Մեդիա*, 9 Յունիս 2017, http://yerkirmedia.am/social/siriahay-hayastan/:



### ԼՐԱԳՐՈՂՆԵՐԻ ՆԿԱՏՄԱՄԲ ԽՏՐԱԿԱՆ ՎԵՐԱԲԵՐՄՈՒՆՔ ԿԱՅ ԿԱԼԱՆՔԸ ՈՐՊԷՍ ԽԱՓԱՆՄԱՆ ՄԻՋՈՑ...

3

«Նախաքննական աշխատանքները շատ դէպքերում տեւում են տարուց աւելի, եւ եթէ թեթեւ հաշուարկ անենք ու բազմապատկենք, թէ ինչքան միջոց է ծախսւում այդ անարդիւնաւէտ խափանման միջոցը կիրառելու համար, կը հասկանանք, որ այդ բեռը եւ անարդիւնաւէտ ծախսը նորից ընկած է Հայաստանի հարկատուների ուսերին», - նկատեց պատգամաւորը:

Մանէ Թանդիլեանին մտահոգում է այն դէպքը, որ լրագրողի նկատմամբ կալանքը որպէս խափանման միջոց փոխարինելու միջնորդութիւնը չի բաւարարուել այն հիմնաւորմամբ, որ լրագրողը կարող է նիւթեր հրապարակել. «Բայց արդեօ՞ք մենք ընդունում ենք, որ լրագրողի նկատմամբ գործ յարուցելիս առաջին հերթին եւ ըստ էութեան նրա մասնագիտութիւնը որպէս հիմք է ընդունւելու: Ես խտրական վերաբերմունք եմ տեսնում լրագրողների նկատմամբ կալանքը որպէս խափանման միջոց ընդունելիս», - նշեց Մանէ Թանդիլեանը:



### *ԽՈՐ ԼԵՌԸ* ԵԳԻՊՏԱԿԱՆ ԸՆԿԱԼՈՒՄՈՎ

2

նկատմամբ հետաքրքրուող ու շահագրգռուող մարդիկ: Անշուշտ, չեմ հերքեր՝ որ պատմութեան եւ մարդկային ժառանգութեան նկատմամբ ունեցած բուռն սէրս որոշիչ դեր խաղաց համաձայնութիւնս տալու եւ ուժերուս ներած չափով ընդունելու մարտահրաւէրը, մանաւանդ երբ նկատեցի՝ որ յիշատակուած անուններուն մեծամասնութիւնը նոր եւ ժամանակակից դէմքեր են, որոնք գիրքին ընդմէջէն առիթ ունեցած են անսանձօրէն բացայայտել իրենց զգացումները եւ նոր տարածութիւններ գտնել խօսելու իրենց կեանքին, անձին եւ իրականութեան հետ ունեցած յարաբերութիւններուն մասին, այս բոլորը ընդունելով պատմական դէպքերու սեփական տեսակէտներու եւ մեկնաբանութիւններու լոյսին տակ, դէպքեր՝ որոնք հետք ու ազդեցութիւն թողած են իրենց կեանքին վրայ:»(8)

ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Ժիհան Հուսէյն, «*Ալ-կապալ ալ-'ամիք*՝ րո'եա էնսանէյյա մու'ասերա 'ան մա'սաթ ալ-արման» [Խոր լեռ՝ մարդկային ժամանակակից տեսակէտ մը հայկական ողբերգութեան նկատմամբ], *Էլ-Էսպու'*, շաբաթաթերթ, Գահիրէ, 31 Մայիս 2016, http:// www.xn—igbhe7b5a3d5a.com/Article/265588/:)

2. Նեսրին Էլ-Պախշունկի, *«Ալ-կապալ ալ-'ամիք*՝ ալ-կարհ ալ-արմաննի ղայր ալ-քապէլ լըլ-էնտըմալ» [*Խոր լեռ*՝ անբուժելի վէրքը հայերուն], *Ախպար ալ-հաւատես*, շաբաթաթերթ, Գահիրէ, 19 Յունիս 2016: Անոր հայերէն թարգմանութիւնը տե՛ս *Ջահակիրի* անցեալ համարը:

3. Հայկական գիրքերու թարգմանութեան ծրագիր ըսելով վստահաբար նկատի ունի եգիպտահայ միութիւններէն մէկը կամ Հայաստանի ներկայացուցչութիւնը Եգիպտոսի մէջ: Չմոռնանք, որ Ալ-Պա'լիի խօսքը տրուած է լրագրողի մը արձանագրութեամբ եւ կրնայ ենթարկուած ըլլալ մէկ-երկու բառի փոփոխութեան: Չմոռնանք նաեւ, որ նման հարցերը եգիպտահայ գաղութին մէջ յաճախ կը լուծուին մէկ անհատի մը որոշումով: Ենթադրաբար, Ալ-Պա'լի խօսած է հայու մը հետ, որ, ըստ սովորութեան, առանց դիմելու ժողովականներու եւ մասնագէտներու այլ ինքզինքին իրաւունք շնորհած ըլլալով խօսիլ ամբողջ հայութեան անունով, տուած է վերջնական պատասխան մը:

4. Իսլամ Նուր, *«Ալ-կապալ ալ-'ամիք*՝ քըրա'ա մու'ասերա լըլ-մաս'ալա ալ-արմաննէյա» [*Խոր լեռ*՝ հայկական հարցին ժամանակակից ընթերցում մը], *Ռոզ Ալ-Եուսէֆ*, օրաթերթ, Գահիրէ, 2 Փետրուար 2017:

5. Անդ:

6. Անդ:

7. Հայերուն ամենամեծ թերացումներէն մէկն է պաղեստինեան ցեղասպանութեան անտեսումը: Մեր ամբողջ տրամադրութիւնները ուղղուած են Ողջակիզումի հետ համեմատութիւններ ընելու եւ յաճախ հրեաներէն (կամ ուեւէ այլ ժողովուրդէ) *աւելի* ցեղասպանեալ ըլլալու «հաճոյք»-ը ըմբոշխնելու: Ողջակիզումը՝ ուր կը մտնէին հրեաները, գնչուները, միասեռականները եւ բոլոր անկատար նկատուող մարդկային շերտերը, անկասկած, մարդկութեան պատմութեան ամենէն ողբերգական իրադարձութիւններէն մէկն է: Բայց կը մոռնանք՝ որ ցեղասպանութեան ենթարկուած հրեաները իրենք գործադրած են ու տակաւին կը շարունակեն գործադրել ցեղասպանութիւն պաղեստինցիներուն նկատմամբ: Հայ ժողովուրդը՝ իբրեւ ցեղասպանութիւն ապրած զանգուած, կը կարծեմ պարտաւոր է համակեցական վերաբերմունք ունենայ *բոլոր* ճնշուած ժողովուրդներուն նկատմամբ:

8. «Մայսարա Սալահ Էլ-Տին՝ Ալ-թա'ամոլ ֆի ալ-թարկամա պրուհ ալ-շարիք ուա ալ-պահես ալ-'ամիք» [Մայսարա Սալահ Էլ-Տին՝ թարգմանութեան հետ կ'առնչուիմ իբրեւ գործընկեր եւ բարեխիղճ հետազօտող], հարցազրոյցը վարեց՝ Իսլամ Նուր, *Ռոզ Ալ-Եուսէֆ*, օրաթերթ, Գահիրէ, 24 Մայիս 2017:

ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1795 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 3 ՕԳՈՍՏՈՍ 2017 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ.

عدد رقم ١٧٩٥ الخميس ٣ أغسطس ٢٠١٧


# ԱՂՕԹԱՎԱ՞ՅՐ ԹԷ ՎԱՃԱՌԱՏՈՒՆ

[Ամերիկահայ եկեղեցիներուն մասին]

**ՌՈՍԿԱՆ ՄԽԻԹԱՐԵԱՆ**

«Իմ Հօրս տունը առուտուրի տուն մի՛ ընէք»
Յովհ. Բ. 16

Որքա՞ն կարելի է լուռ մնալ ի տես այս հակաքրիստոնէական գործելակերպին: Այս խորագիրը անկասկած որ իւրաքանչիւր հաւատացեալ հայուն միտքը չարչրկող հրատապ հարցերէն մէկն է, որ տակաւին անլոյծ կը մնայ եւ ենթակայ է զանազան մեկնաբանութիւններու: Մի՛ մեղադրէք ժողովուրդը, «արժանապատիւ» եւ «հոգեշնորհ» ժամկատար հայրեր, որովհետեւ դո՛ւք երկնաւոր Հօր տունը վերածած էք եկամտաբեր վաճառատան (բացառութիւնները միշտ յարգելի):

Մի քանի օր առաջ ազնիւ բարեկամ մը սրտնեղած հեռաձայնեց, ըսելով. «Եղբա՛յր, այս ի՞նչ կողոպուտ է: Տղաս պիտի ամուսնանայ, հեռաձայներ է եկեղեցի եւ իրմէ պահանջեր են 1,200 տոլար սակագին, ու հիմա բարկացած՝ որոշած է քաղաքական պսակ ընել առանց եկեղեցականի: Հարսին ծնողն ալ փեսացուն հանգստացնելու համար առաջարկեր է հանրային պարտէզի եւ կամ ծովեզերեայ պանդոկի մը մէջ կատարել պսակադրութեան արարողութիւնը եւ խոստացեր են անպայման քահանայ մը բերել: Դժբախտաբար յուսախաբ մնացեր են անոնք ալ, երբ իմացեր են որ թէ՛ Էջմիածնական եւ թէ՛ Կիլիկեան թեմերու առաջնորդարանները որոշած են քահանայ չտրամադրել բոլոր անոնց որոնք կ'ուզեն իրենց պսակադրութիւնը կատարել եկեղեցիէն դուրս»: Զարմանալի՝ բայց իրաւ... չէ՞ որ Քրիստոս հոն է՝ ուր որ մենք կ'աղօթենք: «Դարձեալ ասեմ ձեզ, եթէ երկու ի ձէնջ միաբանիցեն յերկրի վասն ամենայն իրաց, զինչ եւ խնդրեսցեն՝ եղիցի նոցա ի Հօրէ իմմէ որ յերկինսն է: Զի ուր իցեն երկու կամ երեք ժողովեալ յանուն իմ, անդ եմ ես ի մէջ նոցա»: (Եւ կ'ըսեմ ձեզի, որ եթէ ձեզմէ երկու հոգի երկրի վրայ միաբանին որեւէ խնդրանքի համար, ի՞նչ որ ալ խնդրեն՝ երկնաւոր Հայրս պիտի կատարէ ատիկա: Որովհետեւ ուր որ երկու կամ երեք հոգի հաւաքուին իմ անունովս, ես հոն եմ՝ անոնց միջեւ): Մատթ. ԺԸ. 19-20:

Ինծի համար զարմանալի չէր այս բոլորը: Լսեր էի նախապէս որ առաջնորդարանները նման որոշում մը առած են, ինչ որ ներհակ է քրիստոնէական վարդապետութեան ուսուցողութեան: Հաւանաբար նման որոշում մը առնուած է զուտ տնտեսական մտահոգութիւններէն մեկնելով: Եթէ իսկապէս ա՛յդ է մտահոգութիւնը, եկեղեցիէն դուրս ամուսնանալ փափաքող զոյգերուն կրնան թելադրել որ պէտք է եկեղեցւոյ ինքնաբուխ նուէր մը տան իրենց պսակադրութեան առիթով, եւ այդ նուէրը երբեք կաղապարուած գին պէտք չէ ունենայ, նամանաւանդ երբ տուեալ եկեղեցին աւելի ընդարձակ եւ հարուստ է քան ուրիշ եկեղեցիներ: Նոյնն է նաեւ ծիսակատար եկեղեցականին տրուելիք գումարին պարագան՝ փոխան երկու աղօթքի: Զմոռնանք յիշեցնել այստեղ, թէ բոլոր եկեղեցականներն ալ կոկիկ ամսականներ ունին զորս համայնքը կը հոգայ, հետեւաբար ազնիւ եւ արդար չէ յատուկ գումար պահանջել խորհրդակատար քահանային կամ վարդապետին համար - չխօսինք եպիսկոպոսներու սակագինի մասին....... մեղա՜յ Աստուծոյ...: Ի վերջոյ քահանան, կուսակրօն կամ ամուսնացեալ, մոռնալով աշխարհային կեանքը, ուխտած է ծառայել Աստուծոյ, հետեւաբար ինչո՞ւ պիտի ունենայ անձնական հարստութիւն, հողատարածք, եկամտաբեր կալուած կամ բնակարան՝ քաղաքի հարուստ շրջանին մէջ, եւ կամ իր օրը անցընէ հետեւելով սակարանի արժեթուղթերու ելեւէջին:

Օրինակներով խօսինք.

1.- Ս. Ղեւոնդեանց Մայր եկեղեցի (Էջմիածնական), պսակադրութիւն՝ 1,600.00 տոլար:

2.- Ս. Կարապետ Մայր եկեղեցի (Կիլիկեան), պսակադրութիւն՝ 850.00 տոլար:

3.- Ս. Պետրոս եկեղեցի (Է), պսակադրութիւն՝ 950.00 տոլար:



4.- Ս. Աստուածածին եկեղեցի (Կ), պսակադրութիւն՝ 850.00 տոլար:

5.- Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցի (Է), պսակադրութիւն՝ 950.00 տոլար:

6.- Ս. Խաչ եկեղեցի (Կ), պսակադրութիւն՝ 800.00 տոլար:

7.- Ս. Յակոբ եկեղեցի (Է), պսակադրութիւն՝ 900.00 տոլար:

8.- Ս. Քառասնից Մանկանց եկեղեցի (Կ), պսակադրութիւն՝ 550.00 տոլար:

9.- Ս. Սարգիս եկեղեցի (Կ), պսակադրութիւն՝ 700.00 տոլար:

Ահաւասիկ գայթակղութիւն մը որուն համար պայքար տարած եմ անցեալին, միաբանական տարիներուս, եւ ամէն անգամ գիս մեղադրած են ըսելով. «Հարուստի զաւակ է, ատոր համար դրամ չ'առներ որեւէ աղօթքի եւ կամ խորհրդակատարութեան համար»: Յիսուն տարիներ անցած են եւ տակաւին կը պայքարիմ այս գայթակղութեան դէմ: Այո՛, սիրելի ընթերցողներ, եթէ իսկապէս քրիստոնեաներ ենք՝ չենք կրնար գումար պահանջել մեր աղօթքներուն համար: Հակաքրիստոնէական է այդ ըմբռնողութիւնը, որ կը նսեմացնէ, կ'արատաւորէ եկեղեցականի ուխտին նուիրականութիւնը:

Նմանօրինակ գայթակղութիւն է նաեւ տեսնել եկեղեցւոյ մուտքին դրուած մոմերու սակը: Հաւատացեալին կու տաք այն տպաւորութիւնը, որ ան աղօթավայր չէ եկած, այլ՝ վաճառատուն: Նոյնքան առաւել եւս գայթակղութիւն է Ս. Պատարագի կէսին պնակ պտտցնելու սովորութիւնը: Որքա՜ն տգեղ է աղօթքի պահուն հաւատացեալի կեդրոնացումը խանգարելով դրամ պահանջել: Ի՞նչ պէտք է ընէ աղօթող հաւատացեալը ի տես այլոց, եթէ, ենթադրենք, այդ օր բաւարար գումար չէ վերցուցած իրեն հետ, կամ բոլորովին մոռցած է իր դրամապանակը:

Ու այս բոլորէն ետք կարելի՞ է ակնկալել որ մեր եկեղեցւոյ աթոռները թափուր չըլլան: Ի՞նչ պէտք է ընենք հաւատացեալը, նամանաւանդ երիտասարդ սերունդը, մօտեցնելու Եկեղեցւոյ. որովհետեւ Եկեղեցիին վերապահուած է կարեւոր դեր, ո՛չ թէ իշխանութեան, այլ բարոյական հեղինակութեան առումով: Եթէ չխօսինք այս նիւթերու մասին, ո՞վ պիտի ըլլայ մեղաւորը Եկեղեցւոյ բարոյական գահավիժումին: Նկատի ունենալով Հայց. Եկեղեցւոյ դերը դարերու ընթացքին, որուն խորապէս կը գիտակցի մեր ժողովուրդը, պարտաւոր ենք կատարել ախտաճանաչումներ, որոնք քննադատութիւն չեն, այլ վիճարկումներ, որոնելու համար ուղիներ որպէսզի լաւագոյնս կարելի ըլլայ ծառայել զաղութի, եւ ընդհանրապէս ամբողջ հայ ժողովուրդի ազգային նկարագրի անեղծ պահպանման:

Բոլորս ալ գիտենք թէ Հայց. Եկեղեցին դժուարութիւններ ունեցած է անցեալին եւ

3

# ԲՈՂՈՔԻ ՑՈՅՑԵՐ ՍԱՄՆԱՅ ԾՌԵՐՈՒ ԳՈՐԾՈՂՈՒԹԵԱՆ ԱՌԱՋԻՆ ՏԱՐԵԼԻՑԻՆ ԱՌԻԹՈՎ

Յուլիս 17-ին լրացաւ Սասնայ Ծռերու գործողութեան առաջին տարելիցը: Այս առիթով Սթրասպուրկի, Լոս Անճելոսի եւ Երեւանի մէջ տեղի ունեցան բողոքացոյցեր եւ հանրահաւաքներ:

Ի պաշտպանութիւն Սասնայ Ծռերուն, Յուլիս 17-ին ֆրանսահայերը բողոքի ցոյց կազմակերպեցին Սթրասպուրկի մէջ՝ Եւրոպայի Խորհուրդի շէնքին առջեւ: Հայկական Վերածնունդ կազմակերպութեան ֆրանսական մասնաճիւղի համակարգող Ցանթ Ոսկերիչեան *ԳԱԼԱ*ին կը հաղորդէ հետեւեալը.

«Ֆրանսայի զանազան քաղաքներէն, Պելճիքայէն, Գերմանիայէն, Հոլանտայէն եւ Սպանիայէն Հայեր ընդառաջած էին Հայկական Վերածնունդ սփիւռքեան կազմակերպութեան Ֆրանսայի եւ Պելճիքայի մասնաճիւղերու, ինչպէս նաեւ Հայաստանի Քաղաքական Բանտարկեալներու Պաշտպանութեան Յանձնախումբի կոչին: Յետմիջօրէի առաջին ժամերուն սկսած եւ մինչեւ իրիկուն տեւած հանրահաւաքին խօսք առին նախաձեռնող երեք կազմակերպութիւններու պատասխանատուները, որոնք բուռն կերպով դատապարտեցին Սասնայ Ծռերու դատավարութեան ընթացքը, զինեալ խումբին որոշ անդամներու ծեծի ենթարկուիլը, անոնց փաստաբաններուն դէմ յարուցուած զանազան խոչընդոտները, եզրակացնելու համար, որ պետութեան նպատակն է ի վերջոյ յանգիլ դատական դռնփակ նիստերու:

«Անոնք պնդեցին, որ անաչառ դատավարութեան մը համար հարկ է ժողովուրդին դատաստանը: Նաեւ կոչ ըրին եւրոպական հիմնարկներուն՝ չօժանդակելու Հայաստանի այս վարչակարգին, մա՛նաւանդ դադրեցնելու «ժողովուրդը ջարդող ոստիկանութեան բարեկարգումին» ուղղուած նպաստները: Մինչ Սասնայ Ծռերուն նուիրուած երգեր կը հնչէին բարձրախօսներէն, հանրահաւաքի վայրի յատակին զետեղուեցան Հայաստանի նախագահի եւ բարձրաստիճան պաշտօնեաներու նկարները, որոնք ըստ կազմակերպիչներուն կա՛մ

3

# ՆՈՐ ՎԱՐԿ՝ ԱՆՈՐՈՇ ԱՊԱԳԱՅՈՎ. ՊԵՏԱԿԱՆ ՊԱՐՏՔԸ ՎԱՂՈՒՑ Ի ՎԵՐ ԳԵՐԱԶԱՆՑԵԼ Է 6 ՄԻԼԻԱՐԴ ԴՈԼԱՐԻ ՍԱՀՄԱՆԱԳԻԾԸ. *ԺՈՂՈՎՈՒՐԴ*

*Ժողովուրդ* թերթը գրում է. «Հայաստանը Ռուսաստանի հետ քննարկում է ռազմական նոր վարկ ստանալու հարցը. այդ մասին յայտարարել է ֆինանսների նախարար Վարդան Արամեանը: «Նոր բանակցութիւններ այս պահին, այսպէս ասեմ՝ տարբեր քննարկումներ ունենում ենք: Բայց որեւիցէ բան ֆորմալ դեռեւս չունենք: Նախնական պայմանաւորուածութիւն բարձր մակարդակի ժամանակին եղել է, որ Ռուսաստանի հետ ներքին գներով մեզ ռազմամթերք մատակարարուի: Որպէս ստրատեգիկ մեր գործընկեր համաձայնել էր, որ ներքին գներով դա մատակարարուի, եւ այդ շրջանակներում է բանակցութիւնները տարւում», - ասել է նա՝ առանց մանրամասնելու, թէ ինչ գումարի մասին է խօսքը: Նախ նկատենք, որ Հայաստանի պետական պարտքը վաղուց ի վեր գերազանցել է 6 միլիարդ դոլարի սահմանագիծը. այս տարուայ Յուլիսի 1-ի դրութեամբ այն կազմել է 6 միլիարդ 140 միլիոն դոլար: Ու թէեւ իշխանութիւնները դեռ չեն բացայայտում նոր ռուսական վարկի չափը, բայց դժուար չէ ենթադրել՝ բաւական կլորիկ գումար է լինելու: Անշուշտ, յանուն զինուած ուժերի, արժի գնալ նման զոհողութիւնների. ի վերջոյ, բանակը նոր զինատեսակներով սպառազինելը պետութեան կարեւորագոյն խնդիրներից մէկն է: Բայց նախարարի յայտարարութիւնը յիշեցրեց ոչ վաղ անցեալում սպառազինութիւն գնելու համար ռուսական 200 միլիոն դոլարի յայտնի վարկի պատմութիւնը: Եթէ յիշում էք՝ 2015թ. Յունիսին ստորագրուեց այդ փաստաթուղթը, բայց տեւական ժամանակ այն չէր իրագործւում, եւ միայն յաջորդ տարի իրականացուեցին զէնքի մատակարարումները, այն էլ գործընթացն արագացնելու համար առիթ հանդիսացաւ ապրիլեան չարաբաստիկ քառօրեայ պատերազմը: Հիմա չի բացառւում, որ նոր վարկային համաձայնագրի ոչ միայն քննարկումները, այլեւ դրա իրագործումը եւս տեւեն տարիներ»:

# ԱՆԱՀԻՏ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ ՍՐԻՆԳԸ, ՆԱՆԱՐԸ ԵՒ ՄԱՆԿԱՎԱՐԺՈՒԹԻՒՆԸ՝ ՖԵՄԻՆԻՍԹԱԿԱՆ ՍԼԱՑՔ ՄԸ ԵԳԻՊՏԱՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻՆ ՄԷՋ

Յ. ԱՒԱԳԵԱՆ

Խիստ առնականացուած գաղութ մըն է եգիպտահայութիւնը: Գաղութին ընտրելախաւը ներկայացնող Քաղաքական ու Թեմական Ժողովներուն (եգիպտահայ խորհրդարաններուն) ատենապետներն ու անդամները միշտ կազմուած են ամբողջապէս տղամարդոցմէ: Կուսակցական լրագիրներուն խմբագիրները, միութենական, կուսակցական ու մարզական ակումբներուն ատենապետները եղած են տղամարդիկ: Գաղութին մէջ ազդեցիկ դեր խաղացող եւ իր ձայնը պարտադրող եկեղեցին՝ իր աւանդական սովորութեան համեմատ, տղամարդկային է: Գահիրէի կեդրոնական դպրոցներուն՝ Գալուստեան եւ Նուպարեան Ազգային Վարժարաններու տնօրէններուն 83 տոկոսը եղած են տղամարդիկ: Բոլոր մեծահասակ երգչախումբերու խմբավարները եղած են տղամարդիկ:

Հասարակական գործիչ հասկացողութիւնը կապուած է տղամարդոց հետ: Օրինակ, Այծեմնիկ Հանգստեան Տան կամաւոր տիկինները՝ որոնք անգնահատելի օգնութիւն կը ցուցաբերեն այնտեղ ապաստարան գտած տարիքաւորներուն, երբեք հասարակական գործիչի տիտղոսին չեն արժանացած: Ոչ ալ ցանկութիւն ունին այդպէս անուանուիլ: Բայց հասարակական գործունէութիւն կատարող տղամարդիկ՝ բուռն կերպով կ'ուզեն այդպէս յորջորջուիլ:

Կինը դրուած է «աւանդական» շրջանակի մէջ, յատկապէս՝ մանկապարտէզ, ազգագրական պարի պարուսոյց, Տիկնանց Խնամակալութիւններ:

Տասը տարի (1983-1992) Անահիտ Սարգիսեան ապրած ու գործած է Գահիրէի մէջ՝ իբրեւ սրնգահար (flutist), Նանար սրնգահարներու համոյթի ղեկավար, եւ մանկավարժ, բայց մեծ մասամբ մնացած է ածանցեալ վիճակի մէջ՝ իբրեւ խմբավար ու երաժշտահան Հայկ Սարգիսեանի կողակիցը: Ոչ թէ որովհետեւ ան իրապէս «ածանցեալ» էր, այլ պարզապէս որովհետեւ այդ դասակարգումը յարմար էր առնականացուած գաղութին համար: Սոյն յօդուածաշարով պիտի փորձեմ վերընթերցել եգիպտահայ գաղութի մօտիկ անցեալի երաժշտական եւ մանկավարժական շարժումի մէկ կարեւոր էջ մը՝ կապուած Անահիտ Սարգիսեանի գործունէութեան հետ, յատուկ շեշտադրութիւն դնելով Նանար համոյթին վրայ, իբրեւ, ըստ իս, իր ամենաջերմ դրսեւորումներէն մէկը:

Յիշեցնեմ՝ որ Անահիտ Ճէպէճեան-Սարգիսեան ծնած է Պէյրութ, ապրած Հալէպ, աւարտած Երեւանի երաժշտական ուսումնարանը իբրեւ սրնգահար, այնտեղ ամուսնացած Հայկ Սարգիսեանի հետ, ունեցած դուստր մը՝ Արեւիկ, 1983-ին Հայկին հետ հաստատուած Գահիրէ, ունեցած երկրորդ զաւակ մը՝ Պարոյր, եւ 1992-ին ընտանեօք փոխադրուած Փարիզ, ուր կը գործէ մինչեւ այսօր: Յօդուածիս հիմքը կը կազմէ Անահիտի եգիպտական շրջանը, շրջան մը՝ որ կարծես Անահիտ կը փորձէ շրջանցել, երբ իր համառօտ կենսագրականներուն մէջ կը յիշատակէ ծննդավայրը (Պէյրութ) եւ ներկայ գործելավայրը (Փարիզ): Հաւանաբար, հոգեբանական խզում մըն է իր տասնամեայ գործունէութեան հանդէպ, արդար ըմբոստութիւն մը իր «ածանցեալ» դրութեան դէմ:

### ՄԵՆԱԿԱՏԱՐ ՍՐՆԳԱՀԱՐ

1984 Ապրիլ 14-ին, Պըլըքտանեան սրահին մէջ, Հայկ Սարգիսեանի խմբավարած Կռունկ երգչախումբի երկրորդ ելոյթին, եգիպտահայութեան առջեւ առաջին անգամ կը հնչէ Անահիտի սրինգը, նուագելով Պախի Սոնաթ թիւ 5-ը, դաշնակի նուագակցութեամբ Տէյվիտ Հէյլգի(1):

Աւելի քան հինգ տարի ետք՝ 1989 Դեկտեմբեր 7-ին, Հայաստանի երկրաշարժի առաջին տարելիցի հոգեճաշին, Անահիտ կը նուագէ *Դլէ եամա* եւ *Տէր ողորմեա*, Հայկի նուագակցութեամբ(2):

1990 Յունուար 6-ին, Զայքովսքի համդիսասրահին մէջ, երիտասարդական փառատօնին կը նուագէ Խաչատուր Աւետիսեանի երգերէն փունջ մը եւ *Կտոր մը երկինք* շարժանկարի Տիգրան Մանսուրեանի երաժշտութենէն հատուած մը, դաշնակի նուագակցութեամբ Հայկի(3):

1990 Մարտ 3-ին, Գահիրէի Ամերիկեան Քոլէճին մէջ, պարային-երաժշտական երեկոյթին երկար մենանուագով ելոյթ կ'ունենայ Հայկի նուագակցութեամբ(4):

1990 Սեպտեմբեր 22-ին, Կոկանեան սրահին մէջ, *Արեւի* 75-ամեակի տօնակատարութեան կը նուագէ Ռոմանոս Մելիքեանի *Վարդը* եւ Ռոպերթ Ամիրխանեանի *Ես միշտ ուրախ եմ լինում* երգերը, նուագակցութեամբ Հայկի(5):

1991 Ապրիլ 24-ին, Պըլըքտանեան համդիսասրահին մէջ, Եղեռնի յուշատօնին կը նուագէ *Հաւուն-հաւուն* եւ Տիգրան Մանսուրեանի յօրինումներէն, նուագակցութեամբ Հայկի(6):

Մենանուագի սակաւութիւնը կամ մենանուագի հանդէպ ունեցած նուազ սէրը կարելի է դիւրութեամբ բացատրել երբ հասկնանք ուրիշ ոլորտներու մէջ իր ունեցած ներդրումները: Անահիտի գործունէութեան հիմքը մարդն է, մարդկային յարաբերութիւնը՝ որ կը կազմուի խմբային նուագի եւ մանկավարժութեան ընդմէջէն: Մինչդեռ մենանուագը՝ իր «փրոֆեսիոնէլ» հասկացողութեամբ, ուղղուած է դէպի անձը, եսը:

Թեքում մը դէպի ֆեմինիսթական արտայայտութիւ՞ն: Հաւանաբար՝ այո:

### ԵՌԱՆՈՒԱԳ՝ ՍՐԻՆԳ, ԴՀՈԼ ԵՒ ԴԱՇՆԱԿ

1984 Դեկտեմբեր 29-ին, Գահիրէի Կումհուրեյա սրահին մէջ Կռունկ երգչախումբի երգերուն սրինգով կը նուագակցէր Անահիտ(7): 1985 Մարտ 27-ին, Գալուստեան Ազգային Վարժարանի ամավերջի հանդէսն է, ուր ելոյթ կ'ունենայ վարժարանի երգչախումբը Հայկի խմբավարութեամբ, իսկ Անահիտ կը նուագակցի իր սրինգով(8):

1985-ի վերջերը կը կազմուի եռանուագ խումբ մը՝ Անահիտ Սարգիսեան (սրինգ), Ռուբէն Թէրզիպաշեան (դհոլ) եւ Կասիա Տէօվլէթեան (դաշնակ), որ կը սկսի հանդէս գալ Կռունկին նուագակցելով: Կռունկի հետ առաջին ելոյթը տեղի կ'ունենայ 1986 Յունուար 5-ին, Էուըրթ Մեմորիըլ Սրահին մէջ կայացած երիտասարդական փառատօնին(9): Կը յաջորդեն հետեւեալ ելոյթները՝ միշտ նուագակցելով Կռունկին.

- 26 Յունուար 1986, Աղեքսանդրիոյ Պօղոսեան Ազգային Երկրորդական Վարժարանի Մելգոնեան համդիսասրահ, Կռունկի երգահանդէս(10):
- 14 Դեկտեմբեր 1986, Գահիրէի Ամերիկեան Համալսարանի Էուըրթ Մեմորիըլ Սրահ, Կռունկի երգահանդէս(11):
- 6 Յունուար 1987, Էուըրթ Մեմորիըլ Սրահ, Երիտասարդական Փառատօն(12):
- 28 Յունիս 1987, Էուըրթ Մեմորիըլ Սրահ, երգի եւ պարի երեկոյթ(13):
- 19 Յունուար 1989, 8 Մարտ սրահ, Դամասկոս, Կռունկի երգահանդէս(14):
- 21, 22 եւ 23 Յունուար 1989, ՀԲԸՄ-ի սրահ, Հալէպ, Կռունկի երգահանդէս(15):
- 26 Յունուար 1989, Ֆիլատելֆիա սինեմասրահ, Ամման, Կռունկի երգահանդէս(16):
- 23 Փետրուար 1989, Կէօթէ սրահ, Գահիրէ, յայտագիրներու շարք նուիրուած հայ մշակոյթին(17):
- 25 Մարտ 1989, Կումհուրիէ Թատերասրահ, Գահիրէ, խմբերգային երեկոյ(18):
- 6 Յունուար 1990, Զայքովսքի համդիսասրահ, Գահիրէ, երիտասարդական փառատօն(19):
- 7 Ապրիլ 1990, Զայքովսքի համդիսասրահ, Գահիրէ, Կռունկի երգահանդէս(20):
- 9 Մայիս 1992, Պըլըքտանեան սրահ, Կռունկի երգահանդէս(21):

Հայկի խմբավարած Աղեքսանդրիոյ Գուսան երգչախումբի պարագային, եռանուագի դաշնակահարին կը փոխարինէր Զուարթ Գալայճեան(22) կամ Հայկ Սարգիսեան(23):

Ինչպէս կ'երեւի թուականներէն, Կռունկի եռանուագը եղած է յարատեւ: Անահիտ ինքզինք ազատ զգացած է մարդոց միջեւ՝ երգչախումբ եւ նուագողներ: Դարձեալ ֆեմինիսթական հակում մը, ձերբազատում մը ինքնասեւեռուն առնական կեդրոնացումէ:

(Շար. 1/3)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Աւետիս Եափուճեան, «Կռունկ երգչախումբին երկրորդ ելոյթը», *Արեւ*, 16 Ապրիլ 1984, 68-րդ տարի, թիւ 197010, էջ 1:

2. Աւետիս Եափուճեան, «Ահաւոր աղէտին տարելիցը Գահիրէի մէջ», *Արեւ*, 8 Դեկտեմբեր 1989, 74-րդ տարի, թիւ 21353, էջ 1:

3. Աւետիս Եափուճեան, «Հայ Գեղարուեստա- ➪ 4

## ԱՐՑԱԽ

# ԱՐՑԱԽԻ ՆԱԽԱԳԱՀ Է ԸՆՏՐՈՒԵԼ ԲԱԿՕ ՍԱՀԱԿԵԱՆԸ

Արցախի Ազգային Ժողովի յատուկ նիստում՝ Յուլիսի 19-ին, Բակօ Սահակեանն ընտրել է Հանրապետութեան նախագահի պաշտօնում:

Ազգային Ժողովի յատուկ նիստին մասնակցել է 32 պատգամաւոր, որոնցից Բակօ Սահակեանի օգտին քուէարկել է 28 պատգամաւոր: Միւս թեկնածուն՝ Շարժում-88 խմբակցութեան ղեկավար, Ստեփանակերտի նախկին քաղաքապետ Էդուարդ Աղաբէկեանի օգտին քուէարկել է 4 պատգամաւոր:

Փակ գաղտնի քուէարկութեան արդիւնքները խորհրդարանում յայտարարել է հաշուիչ յանձնաժողովի նախագահ Ռոմելա Դադայեանը:

Յիշեցնենք, որ Արցախի նախագահական ընտրութիւններում առաջադրուել է երկու թեկնածու՝ գործող նախագահ Բակօ Սահակեանը եւ Շարժում-88 խմբակցութեան պատգամաւոր Էդուարդ Աղաբէկեանը:

ԼՂՀ ԱԺ երեք խմբակցութիւններ՝ Հայրենիք, Ժողովրդավարութիւն եւ Դաշնակցութիւն խմբակցութիւնները յայտարարել էին, որ սատարում են գործող նախագահ Բակօ Սահակեանի թեկնածութիւնը:

Աւելի վաղ *NEWS.am*-ը յայտնել էր, որ Արցախի նոր Սահմանադրութեամբ 2017-2020 թթ. երկրի համար սահմանուել է անցումային ժամանակաշրջան, մինչեւ Ազգային Ժողովի լիազօրութիւնների ժամկէտի աւարտը, որից յետոյ արդէն տեղի կ'ունենան Արցախի նախագահի համապետական ընտրութիւններ: Այդ ընթացքում երկրի օրէնսդրութիւնն ու կառավարման կարգը պէտք է համապատասխանեցուեն նախագահական կառավարման մոդէլին:

2020 թ-ին՝ Արցախում անցումային շրջանի աւարտից յետոյ, համաժողովրդական քուէարկութեամբ կ'ընտրուի ինչպէս նախագահ, այնպէս էլ՝ նոր խորհրդարան: Ընտրութիւնների նման նախադէպ Արցախում եղել է 1995 թ-ին:

Ըստ այդմ, ընտրուած թեկնածուն իր պաշտօնը ստանձնում է գործող նախագահի լիազօրութիւնների աւարտման օրը: Պաշտօնի ստանձնման օրուանից սկսած՝ 20 օրուայ ընթացքում, նորընտիր նախագահը պէտք է ձեւաւորի կառավարութիւն եւ յայտարարի կառավարութեան կազմը՝ ի տարբերութեան նախորդ յետընտրական զարգացումների, երբ խորհրդարանը մասնակցում էր կառավարութեան ձեւաւորմանը: Կառավարութեան կազմաւորումից յետոյ 20-օրեայ ժամկէտում նորընտիր նախագահը հրապարակում է կառավարութեան գործունէութեան ծրագիրը:

## ՀԱՅԱՍՏԱՆ

# ՄԻԿՐՕ ԶԳԱՑՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ՝ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍ

Յուլիսի 7-16-ը տեղի ունեցաւ Գոռ Առուշանեանի *Միկրօ զգացողութիւններ* անհատական ցուցահանդէսը, Դալան Արթ ցուցասրահում:

Գոռ Առուշանեան. «Կերպարուեստ սիրող երեւանցիները վաղուց ժամանակն է, որ վարժուեն սերնդափոխութեան մշակութային նոր դրսեւորումներին եւ գուցէ դժուարութեամբ, բայց հասկանան Մարտիրոս Սարեանի, Մինաս Աւետիսեանի եւ ընդհանրապէս 60-80 թուականների ուժեղ գեղանկարչական ներկայութիւնից յետոյ եկած այս նոր սերնդին: Անկախ Հայաստանի 25-ամեայ կենսագրութիւնը միայն զօրահանդէսներով եւ յաղթանակներով չեն ներկայացուած: Զոհերի, պատերազմի (մեծ եւ փոքր), ցրտի, սովի, մթի եւ որբութեան ողջ ծանրութիւնը իմ սերնդի վրայ է՝ մենք պիտի իւրացնենք, մարսենք եւ որպէս մշակոյթ մատուցենք հասարակութեանը: Սա չի նշանակում որ մեր հոգեբանութեան մէջ միայն մռայլ կամ պարտուողական դրսեւորումներ են լինելու, սակայն կեղծ հերոսականութիւնը եւս խորթ է մեզ: Կեանքը ինչպէս կայ լոյս եւ ստուեր, կեանք եւ մահ, պարտութիւն եւ յաղթանակ...»:

1 ⇨

## ԲՈՂՈՔԻ ՑՈՅՑԵՐ ՍԱՍՆԱՅ ԾՌԵՐՈՒ ԳՈՐԾՈՂՈՒԹԵԱՆ ԱՌԱՋԻՆ ՏԱՐԵԼԻՑԻՆ...

պատասխանատուութիւն կը կրէին այդ գործողութեան ծնունդ տուող պատճառներու առումով, կա՛մ ալ գործողութեան ընթացքին եւ անկէ ետք զինեալ խումբի անդամներուն նկատմամբ ցուցաբերուած անարդար վերաբերումին պատճառով:

«Մասնակիցները կոխկռտեցին զանոնք, նախքան հրկիզելը: Աւարտին, երեք հոգինոց պատուիրակութիւն մը ընդունուեցաւ Եւրոպայի խորհուրդի բարձրաստիճան ռուս պատասխանատուի մը կողմէ: Անոր յանձնեցին նամակ մը եւ թղթածրար մը, որ կը պարունակէր Սասնայ Ծռերու դատավարութեան ընթացքին արձանագրուած դէպքերու մանրամասնութիւնները, քաղաքական 120 բանտարկեալներու ցանկ մը, ինչպէս նաեւ մարդկային իրաւանց կազմակերպութիւններու դատապարտող հաղորդագրութիւնները: Պաշտօնեան խոստացաւ պատգամը հաղորդել Եւրոպայի խորհուրդի ընդհանուր քարտուղարին»:

Լոս Անճելոսի մէջ եւս տեղի ունեցաւ հանրահաւաք: Լոս Անճելոսի Հայ Համայնքի ներկայացուցիչները հրապարակեցին տեսագրութիւններ հետեւեալ խորագիրով՝ *Լոս Անճելոսի Հայ Համայնքը սատարում է Սասնայ Ծռերին*: Կցուած գրութեամբ տեղեկացուցին՝ որ ներկայ եղած են հաւաքը լուսաբանող լրագրողներ *Glendale News press* թերթէն եւ *KTLA5* հեռատեսիլի կայանէն:

Յուլիս 17-ին հաւաք եւ երթ կատարուեցաւ նաեւ Երեւանի մէջ, ուր մասնակցողները իրենց աջակցութիւնը յայտնեցին Սասնայ Ծռերու անդամներուն:

1 ⇨

## ԱՂՕԹԱՎԱ՞ՅՐ ԹԷ ՎԱՃԱՌԱՏՈՒՆ

տակաւին ունի՝ մեր ժողովուրդին դաժան ճակատագրին պատճառով: Յուսախաբութիւններ՝ չա՛տ: Ատով հանդերձ մենք մեզի իրաւունք պէտք չէ տանք ըսելու թէ Եկեղեցին ըսելիք չունի, եւ կամ մենք Եկեղեցւոյ հետ ըսելիք չունինք: Նման դիրքորոշում մը, ազգային անկիւնէ դիտուած, պիտի նմանի անձնասպանութեան: Ընդհակառակը, անհրաժեշտ է զօրավիգ կանգնիլ Եկեղեցիին որպէս կրանիթեայ ազգային հիմնակառոյց, դարձնելով զայն հաւատացեալ ժողովուրդի իսկական տուն, քրիստոնէական լիիրաւ հաւաքականութեամբ:

Սփիւռքեան մեր պայմաններու մէջ, Եկեղեցին ունի համախմբելու մեծ կարողութիւն եւ ահա ճիշդ այս նպատակով – եւ ո՛չ թէ վանողական մեր գործելակերպով, – պարտինք ստեղծել եկեղեցիներու շուրջ ազգային ժողովական կեանք, ժողովրդավարական սկզբունքներով, ժողովուրդի մասնակցութեամբ եւ ներկայութեամբ ստեղծել առողջ հոգեմտաւոր ներշնչարան: Յաջողած պիտի ըլլայ ա՛յն ղեկավարութիւնը՝ որ պիտի կարենայ ժողովուրդի ստուար մեծամասնութիւնը, նամանաւանդ երիտասարդութիւնը, բերել գործօն մասնակցութեան Եկեղեցւոյ կեանքէն ներս:

Անգամ մը եւս կ՚արժէ շեշտել այստեղ, որ Եկեղեցին եկեղեցականներուն սեփականութիւնը չէ: Եկեղեցին կը պատկանի ժողովուրդին եւ եկեղեցականը կը սպասարկէ եկեղեցւոյ, իմա՛ ժողովուրդի հոգեւոր կարիքներուն, եւ ժողովուրդն ալ փոխադարձաբար կ՚ապահովէ պարկեշտ վարձատրութիւն մը եկեղեցականին: Այս փոխ-յարաբերութիւնը կը ներդաշնակուի ու կը զօրանայ երբ չկայ այդտեղ բարոյական գայթակղութիւն եւ մամոնայի պաշտամունք: Այլ խօսքով՝ Եկեղեցին կը մնայ իր բարձունքին վրայ, իր սրբազան առաքելութեան իսկական ճանապարհին մէջ, եւ չի վերածուիր վաճառատան՝ որպէս եկամուտի աղբիւր:

Ազգային արժէքներու վերականգնումի ճանապարհին մեծ ոստում մը կատարած կ՚ըլլանք եթէ հաւատարիմ մնանք Աւետարանի ճշմարիտ ուսուցման ու մեր աղօթավայրերը չվերածենք վաճառատան:

**ԽՈՀԵՐ**

# ՄԵՆՔ/ԵՍ ԵՒ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆԸ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

5. Մ. կը նշէ գիտական ուսումնասիրութեան պակասը՝ անձնագիրներ տալ-չտալու առումով: Կ՚անտեսէ խորքային հարցը՝ ամբողջ *սուրիական* գաղթականութեան հանդէպ լուրջ ու գիտական վերաբերմունքի պակասը: Ուսումնասիրութիւնները, սակայն, կու գան ոչ-պետական հիմնարկներէն: Օրինակ, Արսէն Յակոբեանի *Սիրիահայերը Հայաստանում. Հայրենադարձներ թէ՞ փախստականներ* ուսումնասիրութիւնը, որ կարելի դարձած է շնորհիւ Բաց Հասարակութեան Հիմնադրամներ – Հայաստանի ամբողջական դրամական օժանդակութեան: Այստեղ հեղինակը համակողմանի կերպով կը բացատրէ պետութեան լուրջ բացթողումները:

Յակոբեան կը շեշտէ հեռանկարային քաղաքականութեան բացակայութիւնը սուրիահայերուն նկատմամբ.

«2012թ. սկսուած սիրիահայերի զանգուածային ներհոսքը ՀՀ ցոյց տուեց, որ ՀՀ-ն ո՛չ կանխատեսումների, ոչ գործնական իրականութեան, ո՛չ էլ բովանդակային քաղաքականութեան առումով պատրաստ չէր այս նոր իրողութիւններին: ՀՀ ընդունած որոշումները խօսում են առաւելապէս իրավիճակային մօտեցումների, այլ ոչ թէ որոշակի հեռանկարից բխող քաղաքականութեան մասին:»(3)

Յակոբեան կը բացատրէ նաեւ Հայաստանի անփութութիւնը սուրիահայերը փոխադրելու Հայաստան.

«Սիրիահայերի տեղափոխումը դէպի ՀՀ հիմնուած է եղել անհատական, ընտանեկան լուծումների վրայ, իրենց միջոցների հաշուին, աւելին՝ պատերազմական իրավիճակում նոյնիսկ խոչընդոտներ են ծագել Արմաւիայի կողմից տոմսի գների բարձրացման, միայն Հալէպ-Երեւան-Հալէպ ուղղութեամբ տոմսերի վաճառքի, այնուհետեւ արդէն Հայաստանում ետդարձի տոմսի փոխհատուցման յետաձգումների հետ կապուած: Առհասարակ Հալէպ-Երեւան օդանաւային հաղորդակցութեան խնդիրներն ուղեկցուել են տարատեսակ պրոբլէմներով:

«Իհարկէ, մարդկանց իրաւունքն է ընտրելու այս կամ այն երկիր տեղափոխուելու կամ հաստատուելու հանգամանքը, սակայն, պատերազմական իրավիճակով թելադրուած պայմաններում, կարծում ենք, դէպի Հայաստան փոխադրումները պէտք է զերծ լինէին այդօրինակ խնդիրներից, չթողնուէին անհատական կամ փոխադրող ընկերութեան/ների հայեցողութեանը կամ կոմերցիոն շահերին ու պէտք է համարժէք լինէին պետութեան՝ իր հայրենակիցների ապահովութեանն ուղղուած մարդասիրական քաղաքականութեան յայտարարուած սկզբունքներին:»(4)

Կարեւոր թերացում տեղի ունեցած է սուրիահայերը ընդունելու առումով.

«ՀՀ-ում սիրիահայերի ընդունման որեւէ կէտ կամ համակարգ չի գործել, ո՛չ երկրի ներսում, ո՛չ էլ պետական սահմանին: ... Առհասարակ, միգրացիոն այս հոսքի փաստագրման կամ տուեալների հաւաքագրման որեւէ մեխանիզմ ու համակարգ չի գործել (բացի ՀՀ պետական սահմանը հատելու ու վիզա ստանալու ֆորմալ ընթացակարգերից):»(5)

Այս բոլորը, ինչպէս նաեւ Յակոբեանի առաջ քաշած ուրիշ հարցերը պարզապէս կը լուսաբանեն՝ որ խնդիրը շատ աւելի ընդարձակ ու խորքային է քան Մ.-ի «տրամպլինային» տեսութիւնը:

Պիտի ըսէի՝ որ գիտական ուսումնասիրութեան պակասը կը տարածուի ամբողջ սփիւռքի նկատմամբ, սփիւռքը՝ իբրեւ շարժում եւ հասարակութիւն եւ ոչ իբրեւ քանի մը ղեկավար ու միութենական մամուլ: Նոյնիսկ առարկայական տեղեկութիւններու առումով կան լուրջ թերացումներ: Օրինակ, *Արեւ* օրաթերթի 100-ամեակին առիթով Հրանոյշ Յակոբեան լրագիրին կ՚ուղղէ շնորհաւորագիր մը: Բացի ընդհանուր կարծրատիպային խօսքերէ՝ որոնք մեքենայաբար կրնան վերաբերիլ որեւէ հիմնահոսանքային լրագիրի, սփիւռքի նախարարուհին արտօնած է երկու սխալ: Ան կը նշէ՝ «Հայ Բարեգործական Ընդհանուր Միութեան հովանու ներքոյ գործող *Արեւ*»-ը(6): *Արեւ* երբեք Բարեգործականի հովանիին տակ չէ եղած, ոչ ալ հեռուէն կապ ունեցած է անոր հետ: Ան ունեցած է արտօնատէրեր, իսկ 1970-էն սկսեալ իր «հովանի»-ն դարձած է Հայ Ազգային Հիմնադրամը:

Ուրիշ տեղ մը նախարարուհին կը գրէ. «Իսկ ահա 1998թ. *Արեւը* որդեգրեց նոր քաղաքականութիւն՝ Հայ Ազգային Հիմնադրամի օժանդակութեամբ ստեղծեց եւ Յունուար ամսին լոյս ընծայեց *Արեւի* արաբերէն ամսօրեայ յաւելուածը:»(7) Սխալ: Արաբերէն *Արեւը* ստեղծուեցաւ Գահիրէի ՀԲԸՄ-ի օժանդակութեամբ եւ այդպէս մնաց մինչեւ վերջ: Հայ Ազգային Հիմնադրամի օժանդակութիւնը այնտեղ փոքր տոկոս մը կը ներկայացնէր:

«Խոհեր»-ու մէջ կրնան նման սխալներ սպրդիլ: Անիկա հիմնարկային նախաձեռնութիւն մը չէ: Սփիւռքի Նախարարութիւնը հիմնարկ մըն է՝ *պետական* հիմնարկ մը: Իսկ պետութեան մը ուժը ենթադրուած է թաքնուած ըլլալ իր ամբարած գիտելիքի մէջ:

Շարունակենք Մ.-ի խօսքը: Ան կը խօսի սուրիահայ մտաւորականի մը մասին՝ որ հայրենադարձուած է, հաստատուած է Հայաստան, կը շարունակէ աշխատիլ այնտեղ եւ Հայաստանի մէջ ան լոյս կ՚ընծայէ կարեւոր հատորներ: Եւ կ՚եզրակացնէ. «Այդպիսի գիտնականները տեղ ունեն միայն հայրենիքում:» «Այդպիսի», այսինքն՝ անոնք որոնք կը յարմարին տիրական գաղափարախօսութեան եւ մանաւանդ կատարելապէս կը հրաժարին խնդրականացնել փաստերը, չեն սիրեր գտնել գաղափարական չերտեր ու պատմական նոր ոլորտներ: Արդե՞օք Մարք Նշանեան, Հայր Լեւոն Զէքիեան, Սեդա Տատոյեան, Ռազմիկ Փանոսեան, Արա Սանճեան եւ ուրիշներ տեղ ունին Մ.-ի հայրենիքին մէջ եւ կրնան իր կողմէ անուանուիլ «այդպիսի» գիտնականներ: Անշուշտ՝ ոչ:

Հարցազրոյցը կը վերջանայ այսպէս. «Մենք սփիւռքում, ցաւօք սրտի, հեռանկար չունենք: Սա գործընթաց է որը ի վերջոյ անդառնալիօրէն տանելու է ագգաձուլման, առաւել եւս որ մենք ինքնութեան հետ կապուած խնդիրներ ունենք, բուն հայրենիքում ունենք այդ խնդիրը, երբոր Հայաստանի բնակչութեան մի ահռելի մասը հարցախոյզի արդիւնքում ցանկութիւն է յայտնում լքելու հայրենիք ուրեմն նշանակում է մեր հասարակութիւնը հիւանդ է, պէտք է բուժել:»

Սփիւռքը հեռանկար չունի: Լաւ: Գոնէ հայաստանցիները հարիւր տարի ետք կ՚ազատին սփիւռքի ցկեանս նախարարուհին պահելէ:

Եւ ահաւասիկ կու գայ ամենէն վտանգաւոր յայտարարութիւնը՝ թէ Հայաստանի «հասարակութիւնը հիւանդ է, պէտք է բուժել:» Կը հասկնանք՝ որ Մ. կը գտնուի առողջ կողմը, գիտէ ախտորոշել հիւանդը եւ բժշկել զայն: *Իր* պարտականութիւնն է բուժել հասարակութիւնը: Իսկ թէ ինչու ինք չէ հիւանդացած, գաղտնիք մը պէտք է ըլլայ:

Դարձեալ տարօրինակ պատճառա-հետեւանքային ժամանակագրութիւն մը. հայերը թէ՛ ինքնութեան խնդիրներ ունին եւ թէ՛ հիւանդ են, եւ այս երկու պատճառներով կը գաղթեն հայրենիքէն: Արտագաղթի պատճառը հասարակութեան ինքնութեան պակասն ու հիւանդութիւնն է: Արտագաղթի համար բարեհոգի իշխանութիւնները ո՛չ մէկ յանցանք ունին: Պատճառը հասարակութիւնն է, որ *պարտաւոր է* աղքատ ապրիլ՝ փոքրաթիւ գերհարուստ աւազակներու հովանիին տակ:

Հասարակութիւնները չեն կրնար հիւանդ ըլլալ, հասարակութիւնները կրնան հիւանդանալ իշխանական քաղաքականութիւններու պատճառով՝ բռնութիւն, սպառնալիք, փտածութիւն, եւ այլն:

Հասարակութիւնները կը հիւանդանան նաեւ երբ իշխանաւորները բարձր վարպետութեամբ եւ խոր մտածուածութեամբ կը ստեղծեն ու առաջ կը նետեն գաղափարախօսութիւններ՝ այնքան հզօր, ստիպողական, պարտադրող եւ անառարկելի, որ հասարակութենէն կը խլեն մտածելու եւ ինքնուրոյն շարժելու ամէն կարելիութիւն: Հասարակութիւնը կորսնցնելով մտածելու կարելիութիւնը, միաժամանակ գաղափարախօսութեան թութակային կրկնութեամբ ինքն իրեն համար ստեղծելով մտածելու պատրանքը, անշուշտ կը դառնայ հիւանդ: Իշխանականները յաջողած կ՚ըլլան հիւանդացնել հասարակութիւնը՝ զայն դարձնելով անխօս զանգուած մը: Իսկ անխօսութիւնը հիւանդութիւն է:

Դրամատիրութիւնը ստեղծելով հանճարեղ Զափլինի *Modern Times* շարժանկարի մարդկային ոչխարները, անշուշտ արտադրած կ՚ըլլայ հիւանդ հասարակութիւն մը՝ ինքնուրոյն մտածելէ զուրկ: Իսկ օգտուողը կ՚ըլլայ դրամատէրը՝ որ անընդհատ պէտք ունի իր ձեռքին տակ պահել հիւանդ հասարակութիւն մը Մ.-ի օրինակով, այլապէս ոչ ոք պիտի ընդունի շահագործուիլ: Այն առողջ հասարակութիւնը՝ որ կը պահանջէ իր իրաւունքները, որ կ՚ըմբոստանայ ու կը ձգտի ինքնուրոյնութեան, պետական օրէնքը զայն կը համարէ հասարակաց կարգուկանոնը խախտող ոճրագործ հիւանդ մը, հետեւաբար կա՛մ կը սպաննէ զայն գործողութեան մէջ (Յունուար 25-ի յեղափոխութեան սպանուեցան 800 եգիպտացի «կանոնազանց» յեղափոխականներ, Մարտ 1-ի դէպքերուն Քոչարեան-Սարգսեան զոյգը գործադրեց անմարդկային բռնութիւն եւ սպանութիւն՝ փողոց իջած *առողջ* զանգուածին դէմ) կա՛մ ալ կը բանտարկէ:

Զգեցէ՛ք հասարակութիւնները ազատ, անկաշկանդ, առանց գաղափարախօսութեան, առիթ տուէք հասարակութեան ստեղծէ *իր* գաղափարները՝ փոխանակ ⇨ 4

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ՄԵՆՔ/ԵՍ ԵՒ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆԸ

3 ☞

վերադիր գաղափարախօսութեան, կը ստանանք ամենէն առողջ հասարակութիւնը:

Մ. պետական գաղափարախօսութեան ստեղծողն է Հայոց պատմութեան դպրոցական դասագիրքերու ընդմէջէն(8): Երկու, եւ *միայն* երկու, տեղեկութիւն կը հաղորդէ աշակերտներուն: Առաջին տեղեկութիւն՝ մեր բոլոր յաղթանակները կատարուած են շնորհիւ թագաւորներուն, իշխանականներուն եւ հազուագիւտ նաեւ ժողովուրդին (ժողովուրդը իբրեւ ամբոխ եւ ոչ իբրեւ չարժիչ ուժ) կողմէ: Երկրորդ տեղեկութիւն՝ մեր բոլոր պարտութիւնները արդիւնքն են արտաքին, մեզմէ անկախ դաւաճանութիւններու եւ վայրագութիւններու: Ինչպէս մեծապէս թերագնահատուած մտաւորական Վահան Իշխանեան վերջերս գրած է՝ «Ընդհանրապէս, ազգային սնափառութիւնը չի սիրում խոստովանել, որ սեփական կորուստները լինում են նաեւ սխալ քաղաքականութեան պատճառով, եւ, սխալներն անտեսելով, դրանց համար մեղադրում են միայն դրսի ուժերին:»(9)

Ոչ մէկ կերպ կարելի է անտեսել նաեւ Գէորգ Եազըճեանի պնդումը, թէ Կարսի անկումի գլխաւոր պատճառը մենք՝ հայերս էինք(10): Ան կը գրէ. «[Ա]սել ճշմարտութիւնը՝ նշանակում է ընդունել սեփական սխալը եւ պայքարել դրա համար, իսկ պայքարել՝ նշանակում է սխալը գիտակցելուց յետոյ զղջալ ու ամաչել դրա համար, ներողութիւն խնդրել եւ սխալը չկրկնելու աննկուն կամք դրսեւորել: Այս առաքինութիւնը մեզ՝ հայերուս մօտ հազուագիւտ է:»(11) (Յանկարծ յիշեցի սփիւռքահայ աւանդականներուն մամուլը, ուր վերնախաւը անընդհատ, ընդմիշտ ու յաւիտեան անսխալական է:)

Եազըճեան քիչ մը վարը ուղղակիօրէն խօսքը կ'ուղղէ Մ.-ին եւ իր ղեկավարած հիմնարկին, երբ կը գրէ. «Հայութեան սեփական սխալների ոչ մէկ ճանաչում. Ահա հայաստանեան պատմագիտական մտքի մշտական արատը:»(12)

Այս բոլորէն բացի, Մ.-ի դասագիրքերուն մէջ կը բացակայի պատմութեան ամենակարեւոր տարրը՝ հասարակութիւնը: Առաւելագոյն եւ ամենապարտադրուած պարագաներուն, այդ հասարակութիւնը յիշուած է իբրեւ ամբոխ: Պատմութիւնը ներկայացուած է իբրեւ իշխող դասի դէպքային արարքներ: Հասարակութիւնը կը բացակայի, եւ ահաւասիկ, ***ԹԵՐԹ**.am*-ի գրոյցը կը վերջանայ ժամանակակից հասարակութեան ախտորոշումով իբրեւ հիւանդ: Հասարակութիւնը՝ եթէ պատմական է, չգոյութիւն մըն է, եթէ ժամանակակից է՝ հիւանդ գոյութիւն մը:

Գաղափարախօսական լեզուն պէտք ունի կարծրատիպային բառերու կրկնութիւններու, որոնց յառաջացուցած զգացական զեղումներուն շնորհիւ կարելի կ'ըլլայ քօղարկել գաղափարական խեղաթիւրումներն ու դիւրասահ ուղղութիւն տալ իշխանական պարտադրանքներուն: Հինգ ու կէս վայրկեան տեւող հարցազրոյցին մէջ Մ. 12 անգամ գործածած է «հայրենիք» բառը: Խնդիրը այս բառը չէ, խնդիրը անոր 12 անգամ գործածութիւնն է՝ կարճ ժամանակամիջոցի մը մէջ: Եւ քանի որ հայրենիքը սուրբ է՝ զգացականօրէն անվիճելի, գաղափարախօսապէս անքննարկելի, գիտականօրէն անխնդրայարոյց, ուրեմն անոր շուրջ շարահիւսուած որեւէ նախադասութիւն եւս կ'ենթարկուի նոյն տրամաբանութեան: «Հայրենիք» բառը այլեւս կորսնցնելով իր բնական, ներարժէքային իմաստը՝ իմաստ մը որ անսահման է ու մշտանորոգ, եւ դառնալով ֆեթիշական առարկայ մը, կարելի կ'ըլլայ անոր հովանիին տակ արտասանել ամէն բան՝ ամենէն անտրամաբանականը, ամենէն վտանգաւորը, ամենէն փաշիսթականը:

(Վերջ 2)

ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

3. Արսէն Յակոբեան, *Սիրիահայերը Հայաստանում. Հայրենադարձներ թէ՞ փախստականներ*, Երեւան, Բաց Հասարակութեան Հիմնադրամներ – Հայաստան:

4. Անդ:

5. Անդ:

6. «Փառք *Արեւի* 100-ամեակին», *Արեւ*, օրաթերթ, Գահիրէ, 24 Մայիս 2016, 101-րդ տարի, թիւ 26370, էջ 1:

7. Անդ:

8. *Հայոց պատմութիւն*, 6-12, Երեւան, Զանգակ, 2009-2013:

9. Վահան Իշխանեան, *Ռուսուլմանի նոթեր. Փորձագրութիւններ*, Երեւան, Ինքնագիր Գրական Ակումբ, 2017, էջ 10-11:

10. Կարսի անկումին նուիրուած իր ուսումնասիրութիւնը ամբողջութեամբ այս ուղղութեամբ կ'ընթանայ. Գէորգ Եազըճեան, *Կարսի 1920 թ. անկման խորքային պատճառները*, Բ. հրատարակութիւն, Երեւան, Հեղինակային հրատարակութիւն, 2009:

11. Անդ, էջ 12:

12. Անդ, էջ 13:

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Կիրակի, 13 Օգոստոս 2017

**Տօն է**

**ՎԵՐԱՓՈԽՄԱՆ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ**

Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ պիտի մատուցուի հանդիսաւոր Ս. Պատարագ:

Սկիզբ Ս. Պատարագի առաւօտեան ժամը 10:00-ին

Երթուղարձը դիւրացնելու համար հաստատուած է հանրաշարժի սպասարկութիւն:

Սալահ Էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 8:45-ին

Այծեմնիկ Հանգստեան Տան շէնքին առջեւէն ժամը 9:00-ին

Կը հրաւիրենք մեր բարեպաշտ ժողովուրդը ներկայ գտնուելու սոյն արարողութեան:

*Ե.Գ.Մ.*

*ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ*

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

**ԵՂԻԱՅԵԱՆ ԿՐԹԱԹՈՇԱԿԻ ԵՒ ԿԱՐԱՊԵՏ ԱՂԱ ԳԱԼՈՒՍՏ ԲԱՐՁՐԱԳՈՅՆ ՈՒՍՈՒՄԻ ՀԻՄՆԱԴՐԱՄՆԵՐՈՒ**

2017-2018 ուսումնական տարեշրջանի յատկացումներ

Այսու կը ծանուցանենք թէ 2017-2018 ուսումնական տարեշրջանի համար վերանորոգելի կրթաթոշակներէն զատ, Գահիրէի Ազգային Առաջնորդարանը պատրաստ է նոր յատկացումներ կատարել արժանաւոր ուսանողներու, որոնք կը փափաքին բարձրագոյն ուսման հետեւիլ Եգիպտոսի համալսարաններու եւ Հայաստանի բարձրագոյն ուսումնական հաստատութիւններու մէջ:

Թեկնածուները պարտին ներկայացնել պահանջուած հետեւեալ փաստաթուղթերը.

Դիմումնագիր եւ երկու լուսանկար:

Հայկական եկեղեցիի մէջ մկրտուած ըլլալու հաստատագիր (վկայական):

Ինքնութեան թուղթ (եթէ եգիպտահպատակ չէ, ապա անձը հաստատող փաստաթուղթ եւ դիմումի թուականին նախորդող երեք տարիներուն վերաբերեալ մնայուն կեցութեան իրաւունքի հաստատագիր-փաստաթուղթ):

Երկրորդական բաժինի աւարտական վկայական, ինչպէս նաեւ անոր նախորդող բաժիններու աւարտական կարգերու քննութիւններու յաջողութեան վկայականները:

Ընդունելութեան ժամեր.

Ամէն Ուրբաթ, առաւօտեան ժամը 10:00 – 14:00:

Դիմումնագիրերը ներկայացնելու վերջին պայմանաժամն է 30 Սեպտեմբեր 2017:

Յաւելեալ մանրամասնութիւններու համար դիմել Գահիրէի Ազգային Առաջնորդարան

Հեռաձայն 25901385 - 25904219 - 25913686.

**ԴԻՒԱՆ**

**ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

## ԱՆԱՀԻՏ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ ՍՐԻՆԳԸ, ՆԱՆԱՐԸ ԵՒ ՄԱՆԿԱՎԱՐԺՈՒԹԻՒՆԸ՝ ՖԵՄԻՆԻՍԹԱԿԱՆ ՍԼԱՅՔ ՄԸ ԵԳԻՊՏԱՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻՆ ՄԷՋ

2 ☞

սիրաց Միութեան երիտասարդական 30-րդ փառաւոր փառատօնը», *Արեւ*, 20 Յունուար 1990, 74-րդ տարի, թիւ 21387, էջ 2:

4. Աւետիս Եափուճեան, «Զանգեզուր պարախումբի չորրորդ ելոյթը», *Արեւ*, 8 Մարտ 1990, 74-րդ տարի, թիւ 21426, էջ 1:

5. Աւետիս Եափուճեան, «*Արեւ* օրաթերթի հիմնադրութեան 75 ամեակի փառաւոր տօնակատարութիւնները Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ մէջ», *Արեւ*, 20 Հոկտեմբեր 1990, 75-րդ տարի, թիւ 21602, էջ 2-3:

6. Մարօ Սագայեան, «Ապրիլեան Եղեռնի համազգային յուշատօնը նշուեցաւ փառաշուքօրէն», *Արեւ*, 29 Ապրիլ 1991, 75-րդ տարի, թիւ 21754, էջ 1:

7. Աւետիս Եափուճեան, «Կրկին հնչեց հայ երգը», *Արեւ*, 2 Յունուար 1985, 69-րդ տարի, թիւ 19914, էջ 1:

8. Աւետիս Եափուճեան, «Գալուստեան Ազգային Վարժարանի ամավերջի հանդէսը», *Արեւ*, 28 Մարտ 1985, 69-րդ տարի, թիւ 19984, էջ 1: Հաղորդագրութիւն, «Գալուստեան Ազգային Վարժարանի շրջանաւարտից հանդիսութիւնը», *Արեւ*, 21 Մայիս 1985, 70-րդ տարի, թիւ 20026, էջ 2:

9. Աւետիս Եափուճեան, «Միջքաղաքային երիտասարդական փառատօն», *Արեւ*, 18 Յունուար 1986, 70-րդ տարի, թիւ 20220, էջ 2:

10. Մինաս Պանտոյեան, «Երգահանդէս», *Ջահակիր*, 20 Փետրուար 1986, նոր շրջան, թիւ 1044, էջ 2:

11. Աւետիս Եափուճեան, «Հ.Բ.Ը.Մ.ի 80-ամեակն ու Կոմիտաս երգչախումբի համերգը», *Արեւ*, 15 Դեկտեմբեր 1986, 71-րդ տարի, թիւ 20486, էջ 1: Յակոբ Համբիկեան, «Հ.Բ.Ը.Մ.ի 80-ամեակի հանդիսութիւն եւ տարեկան համերգ», *Ջահակիր*, 25 Դեկտեմբեր 1986, նոր շրջան, թիւ 1075, էջ 3:

12. Աւետիս Եափուճեան, «Հ.Գ.Մ.ի երիտասարդական 27-րդ փառատօնը», *Արեւ*, 24 Յունուար 1987, 71-րդ տարի, թիւ 20518, էջ 3:

13. Զաւէն Պալաեան, «Հայկական ժողովրդական երգի ու պարի յաջող ելոյթը», *Ջահակիր*, 9 Յուլիս 1987, նոր շրջան, թիւ 1103, էջ 4: Աւետիս Եափուճեան, «Հայկական ժողովրդական երգի ու պարի աննախընթաց երեկոյթին փառաւոր յաջողութիւնը», *Արեւ*, 13 Յուլիս 1987, 72-րդ տարի, թիւ 20654, էջ 3:

14. Տեղեկութիւնը քաղած եմ տպագրուած յայտագիրէն:

15. Թորոս Թորանեան, «Հ.Բ.Ը.Մ.ի Կոմիտաս երգչախումբին յաջող համերգները Հալէպի մէջ», *Արեւ*, 29 Մարտ 1989, 73-րդ տարի, թիւ 21151, էջ 2:

16. Ներսէս Ներսէսեան, «Հ.Բ.Ը.Մ.ի Կոմիտաս երգչախումբին յաջող համերգը Ամմանի մէջ», *Արեւ*, 16 Փետրուար 1989, 73-րդ տարի, թիւ 21118, էջ 3:

17. Աւետիս Եափուճեան, «Հայ երգը հնչեց գերմանական կամարներուն տակ», *Արեւ*, 24 Փետրուար 1989, 73-րդ տարի, թիւ 21125, էջ 1:

18. Աւետիս Եափուճեան, «Խմբերգային երեկոյ», *Արեւ*, 31 Մարտ 1989, 73-րդ տարի, թիւ 21153, էջ 1:

19. Աւետիս Եափուճեան, «Հայ Գեղարուեստասիրաց Միութեան երիտասարդական 30-րդ փառաւոր փառատօնը», *Արեւ*, 20 Յունուար 1990, 74-րդ տարի, թիւ 21387, էջ 2:

20. Մարօ Սագայեան, «Կոմիտաս երգչախումբը դարձեալ լուսարձակներու տակ», *Արեւ*, 12 Ապրիլ 1990, 74-րդ տարի, թիւ 21456, էջ 1:

21. Յովհաննէս Տէր Պետրոսեան, «Հ.Բ.Ը.Մ.ի Կոմիտաս երգչախումբի հոյակապ ելոյթը», *Արեւ*, 12 Մայիս 1992, 76-րդ տարի, թիւ 22056, էջ 1:

22. Մինաս Պանտոյեան, «Հ.Բ.Ը.Միութեան Գուսան երգչախումբի խմբերգային նոր նուաճումը», *Արեւ*, 5 Մայիս 1988, 72-րդ տարի, թիւ 20894, էջ 2:

23. Մարօ Սագայեան, «Երիտասարդական Ծաղկատօնը», *Արեւ*, 12 Ապրիլ 1988, 72-րդ տարի, թիւ 20876, էջ 1:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly


P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com


Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1796 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 24 ՕԳՈՍՏՈՍ 2017 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ.

عدد رقم ١٧٩٦ الخميس ٢٤ أغسطس ٢٠١٧


## ՍԱՍՆԱՅ ԾՌԵՐՈՒ ԴԱՏԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ ՕՐԱԳՐՈՒԹԻՒՆ

Հիմնադիր Խորհրդարանի համակարգող եւ «100-ամեակն առանց ռեժիմի» շարժումի առաջնորդ Ժիրայր Սէֆիլեան բազմիցս ձերբակալուած է Հայաստանի մէջ: Վերջին անգամ ան կը ձերբակալուի 2016 Յունիս 20-ին, իսկ Յունիս 22-ին Սէֆիլեանի եւ 8 անձերու դէմ մեղադրանք կ'առաջադրուի ապօրինի զէնք եւ ռազմամթերք ձեռք բերելու յանցագործութեամբ:

2016 Յուլիս 17-ին, Հիմնադիր Խորհրդարան շարժումի անդամներ՝ Սասնայ Ծռեր անունին տակ, զինեալ ապստամբութեամբ կը գրաւեն Էրեբունիի պարեկապահակէտային ծառայութեան (ՊՊԾ) գունդի վարչական շէնքերն ու յարակից տարածքը: Յուլիս 31-ին խումբը կը յանձնուի, վերջ տալով 15 օրուայ ապստամբութեան: Ապստամբները կը պահանջէին Սերժ Սարգսեանի հրաժարականը, ապրիլեան պատերազմի գրաւուած հողերուն վերականգնումը զէնքի ուժով եւ Ժիրայր Սէֆիլեանի ազատ արձակումը: Իրադարձութիւնը ցնցեց ամբողջ Հայաստանի քաղաքացիական հասարակութիւնը եւ չփոթութեան մատնեց իշխանական համակարգը եւ անոր համակիր մտաւորական խաւը: Մէկ տարի ետք կը սկսին դատական գործողութիւնները:

**10 ՄԱՅԻՍ 2017**

Սասնայ Ծռեր խումբի 14 անդամներու քրէական գործը կ'ուղարկուի դատարան: Մեղադրեալներն են՝ Աշոտ Պետրոսեան, Արայիկ Խանդոյեան, Արեգ Կիւրեղեան, Արմէն Բիլեան, Արմէն Լամբարեան, Գագիկ Եղիազարեան, Էդուարդ Գրիգորեան, Մխիթար Աւետիսեան, Պաւէլ Մանուկեան, Սեդրակ Նազարեան, Սմբատ Բարսեղեան, Վարուժան Աւետիսեան, Կարօ Եղնուկեան, Խաչատուր Գիչեան:

**26 ՄԱՅԻՍ 2017**

Երեւանի Շենգաւիթ վարչական շրջանի ընդհանուր իրաւասութեան դատարանի մէջ տեղի կ'ունենայ Ժիրայր Սէֆիլեանի եւ 8 մեղադրեալներու դատավարութիւնը: Ըստ մեղադրութեան, ան խումբ մը անձերու հետ համաձայնած էր 2015 Ապրիլ 24-ին զանգուածային անկարգութիւններ հրահրել Երեւանի մէջ: Դատարանի դահլիճը լեփլեցուն էր: Ներկաները Սէֆիլեանին եւ միւսներուն դիմաւորեցին ծափերով եւ «Սասնայ ծուռ» եւ «մահ ռեժիմին» վանկարկումներով: Նիստը շատ արագ վերջ կը գտնէ, քանի որ պաշտպաններէն մէկը ներկայ չէր:

**2 ՅՈՒՆԻՍ 2017**

Կ'աւարտի Սասնայ Ծռեր խումբի ապստամբութեան գործով մեղադրուող եւս 18 անձերու քրէական գործի նախաքննութիւնը: Մեղադրեալներն են՝ Տիգրան Սարգսեան, Յովհաննէս Վարդանեան, Արամ Յակոբեան, Վարդան Գեւորգեան, Սերգէյ Կիւրեղեան, Գէորգ Իրիցեան, Տիգրան Մանուկեան, Թորոս Թորոսեան, Արթուր Մելքոնեան, Արթուր Սողոմոնեան, Գառնիկ Յովակիմեան, Արայիկ Յակոբեան, Մարտիրոս Յակոբեան, Արամ Մանուկեան, Թաթուլ Թամրազեան, Յովհաննէս Յարութիւնեան, Մանուէլ Աթոյեան, Վարդգէս Գէորգեան:

**8 ՅՈՒՆԻՍ 2017**

Էրեբունի - Նուբարաշէն վարչական շրջաններու ընդհանուր իրաւասութեան դատարանին մէջ պէտք է կայանար 14 անդամներու դատական առաջին նիստը: Բայց նիստը կը յետաձգուի: Դատարանը կը պատճառաբանէ խումբի մտերիմներուն եւ աջակիցներուն աղմուկը, ինչպէս նաեւ խումբին մերժումը ոտքի կանգնելու դատաւորի ներս մտնելու ժամանակ: Միւս 18 անձերու անջատուած քրէական գործը մեղադրական եզրակացութեամբ կ'ուղարկուի դատարան:

**13 ՅՈՒՆԻՍ 2017**

Շենգաւիթի դատարանին մէջ տեղի կ'ունենայ Ժիրայր Սէֆիլեանի եւ 8 կալանաւորներուն դատական նիստը: Նիստը դարձեալ սկսաւ «Ժիրա'յր, Ժիրա'յր», «Մա'հ ռեժիմին» վանկարկումներով ու ծափահարութիւններով: Ժիրայր Սէֆիլեանն ու փաստաբանները կը շարունակեն յայտարարել, որ ինք որեւէ յանցանք չէ գործած եւ բանտարկուած է բացառապէս իր քաղաքական հայեացքներուն համար:

**21 ՅՈՒՆԻՍ 2017**

Աւան եւ Նոր Նորք վարչական շրջաններու ընդհանուր իրաւասութեան դատարանին մէջ տեղի կ'ունենայ Սասնայ Ծռերու դատական նիստը: Փաստաբանները կը մերժեն խուզարկուիլ՝ զայն համարելով օրէնքի խախտում, եւ կը հրաժարին մտնել դատարան: Կ'անցնի բաւական պրկուած մթնոլորտի մէջ, նիստի ընթացքին դատաւորը քանի մը անգամ ընդմիջում կը յայտարարէ: Փաստաբանները վերջապէս կը յաջողին մտնել առանց զննումի:

**27 ՅՈՒՆԻՍ 2017**

Շենգաւիթի դատարանին մէջ տեղի կ'ունենայ Ժիրայր Սէֆիլեանի եւ կալանաւորուածներու դատական նիստը: Սէֆիլեան եւ Ներսէս Պօղոսեան ոտքի չկանգնեցան, որուն պատճառով դատաւորը զանոնք հեռացուց դատարանէն: Ներկայ էր Ժառանգութիւն Կուսակցութեան առաջնորդ Րաֆֆի Յովհաննէսեան: Յունիս 28-ին, Սէֆիլեան կը հրապարակէ հետեւեալ յայտարարութիւնը. «Իմ նկատմամբ յարուցուած չինծու քրէական գործի դատավարութիւնը անցնում է հրապարակայնութեան եւ օրինականութեան բռնաբարման ակնյայտ պայմաններում: Հայաստանում իշխանութիւնը զաւթած Սերժ Սարգսեանի եւ իր խամաճիկների մտադրութիւնը այս «դատավարութիւնը» առանց իմ մասնակցութեան անցկացնելն է եւ ինձ լռեցնելը:»

**28 ՅՈՒՆԻՍ 2017**

Սասնայ Ծռերու դատական նիստը՝ Աւան եւ Նոր Նորք դատարանին մէջ: Այսօր եւս կարգադրիչները փաստաբաններէն ոմանց չթոյլատրեցին մուտք գործել, քանի որ վերջիններս մերժեցին բանալ իրենց պայուսակները: Մինչ փաստաբաններն ու կարգադրիչները կը վիճէին, դատական դահլիճի մէջ տեղի ունեցաւ բախում ոստիկաններուն եւ ամբաստանեալներէն ոմանց միջեւ: Ապակիներուն միւս կողմը գտնուող քաղաքացիներն ու լրագրողները միայն տեսան, թէ ինչպէս ամբաստանեալ Արեգ Կիւրեղեանին, Մխիթար Աւետիսեանին, Սմբատ Բարսեղեանին ոստիկանները բռնի ուժի կիրառումով դուրս տարին նիստերու դահլիճէն: Յետագային, քրէակատարողական հիմնարկներ տեղափոխուած կալանաւորներու մարմինի զննութեամբ կը յայտնաբերուին մարմնական վնասուածքներ: Կիրքերը հազիւ հանդարտած էին, երբ վիճաբանութիւն սկսաւ դատարանի դիմաց գտնուող փաստաբաններուն եւ ոստիկաններուն միջեւ: Փաստաբանները տեսած էին, թէ ինչպէս խումբ մը ոստիկաններ բռնի ուժով եւ ծեծի ենթարկելու միջոցով բերման ենթարկեցին քաղաքացի մը:

**3 ՅՈՒԼԻՍ 2017**

Սասնայ Ծռերու 18 անդամներու առաջին դատական նիստը՝ Աւան եւ Նոր Նորք դատարանին մէջ: Ներկաները անդամներուն դիմաւորեցին ծափահարութիւններով եւ «Սասնայ ծռեր» ➪ 3

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԶԲՕՍԱՇՐՋԻԿՈՒԹԻՒՆԸ ԴԷՊԻ ԿԱՐՄԻՐ ԾՈՎ ԿԸ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԻ

Յուլիս 14-ին, Հուրղատայի մէջ խելագար մը՝ ինքզինք իսլամիստ ներկայացնելով, անձնական նախաձեռնութեամբ, պանդոկի մը ծովափը դանակով կը սպաննէ երկու գերմանացի զբօսաշրջիկներ եւ կը վիրաւորէ չորս ուրիշներ, որոնցմէ երկուքը Հայաստանի քաղաքացի էին: Վերջինները գործողութեան կ'ենթարկուին Գահիրէի մէջ: Իրենց կեանքին վտանգ չէր սպառնար:

Մտավախութիւն կար, որ հայաստանցի զբօսաշրջիկները հրաժարէին գալ Եգիպտոս: Բայց դէպքը ոչ մէկ ազդեցութիւն ունեցած է հայաստանցիներուն վրայ: Հայաստանի զբօսաշրջիկային ընկերութիւններէն մէկը՝ *Արմէնփրէս*ին տուած Յուլիս 18-ի յայտարարութեամբ կ'ըսէ.

«Որեւէ մէկը չի զանգահարել, չի հարցրել այնտեղ տիրող իրավիճակի մասին: Որեւէ դէպք չունենք, որ ցանկութիւն յայտնեն փաթեթը յետ վերադարձնել: Աւելին, շարունակում ենք դէպի Հուրգադա, Շարմ Էլ Շէյխ ուղղութիւններով փաթեթ վաճառել: Այնքան պահանջուած է, որ նոյնիսկ կոնկրէտ օրերի համար այլեւս ինքնաթիռի տոմս չկայ: Շատերը զանգահարում են այն յոյսով, որ որեւէ մէկն իր գնած տոմսը յետ կը վերադարձնի եւ իրենք կը գնեն:»

Տարօրինակ է: 2015 Հոկտեմբերին ռուսական օդանաւի աղէտի... 

Տարօրինակ է: 2015 Հոկտեմբերին ռուսական օդանաւի ահաբեկչութեան ժամանակ պատկերը տարբեր էր, ինչպէս կարելի էր կարդալ Սարգիս Ղազարեանի 2015 Նոյեմբեր 15 թուակիր յօդուածին մէջ՝ «Հայերը հրաժարւում են մեկնել Եգիպտոս», հրապարակուած *168hours*ի մէջ.

«Հայաստանեան զբօսաշրջային շուկայում արտերկրեայ ամենաէժան փաթեթները Եգիպտոսինն են, այդ իսկ պատճառով մեր հայրենակիցներն այս սեզոնին սովորաբար նախընտրում էին մեկնել Շարմ էլ Շէյխ կամ Հուրգադա: Սակայն պատկերն արագ փոխւում է, եւ չնայած ցածր գներին՝ Հայաստանում մարդիկ սկսել են երկմտել՝ մեկնե՞լ Ամանորը այնտեղ դիմաւորելու, թէ՞ ոչ: Պատճառը, իհարկէ, ռուսական A321 ինքնաթիռի՝ Հոկտեմբերի 31-ին տեղի ունեցած աւիավթարն է:»

Ամէն բան հիմնուած է Զանգուածային Լրատուամիջոցներուն (ԶԼՄ) վրայ: Ռուսական ԶԼՄ-ները կրցան ստեղծել խուճապային տրամադրութիւններ հայաստանցիներուն համար, թէեւ հայաստանցի զոհեր չկային այնտեղ: Հայկական ԶԼՄ-ները վերջին դէպքը լուրէն անդին չանցուցին, թէեւ հայաստանցի վիրաւորներ կային այնտեղ: Այսքան ուժե՞ղ է ռուսական ԶԼՄ-ներուն ազդեցութիւնը Հայաստանի վրայ:

**ՎԵՆԵՏԻԿ**

## ՊՈ-ԱՐԱՔՍ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԵԱՆ ՏԱՐԵԿԱՆ ԴԱՍԸՆԹԱՑՔԸ

Օգոստոս 1-20-ին տեղի ունեցաւ Պօ-Արաքս Մշակութային Ընկերակցութեան հայերէն լեզուի եւ մշակոյթի 32-րդ ամառնային խտացուած դասընթացքը, որ ամէն տարի տեղի կ'ունենայ Վենետիկի մէջ: Յիշեցնենք, որ Պօ-Արաքսի հիմնադիրն ու նախագահն է բանասէր, պատմաբան, փիլիսոփայ, Պոլսոյ հայ կաթողիկէ թեմի առաջնորդ Հայր Լեւոն Զէքիեան:

Տեղի ունեցան աշխատարաններ (workshop) Անահիտ Տօնապետեանի կողմէ, նիւթ ունենալով՝ *Արեւմտահայերէնը այսօր՝ բնաբան, գործառոյթներ, կառուցուածք, գործածութիւն* եւ *Լեզուական եւ մարտավարական կենսունակութիւնը արեւմտահայերէնը փոխանցելու համար*: Դասախօսութիւններ կարդացին Հայր Լեւոն Զէքիեան՝ *Հայկական ինքնութիւնը եւ լեզուն*, Պենետեթթա Քոնթի՝ *Հայր Ղեւոնդ Ալիշանի արչիւները հայկական Վենետիկի եւ Վենեթոյի մասին*, եւ Աւետիս Հաճեան՝ *Հայու կերտումը՝ Թուրքիոյ թաքուն հայերը սփիւռքեան հեռանկարով*: Ցուցադրուեցան ֆիլմեր, որոնց յաջորդեցին բանավէճեր Արծուի Բախչինեանի ղեկավարութեամբ: Ռոզին Թաշճեան կը պատրաստէ դասընթացքի երգչախումբ մը՝ որ կը մասնակցի Սուրբ Խաչ եկեղեցիի պատարագին:

Տեղի ունեցան արտաուսումնական դասեր՝ դուդուկի նուագածութիւն Արամ Իփէքճեանի ղեկավարութեամբ եւ հայ աւանդական պարի դասեր Արծուի Բախչինեանի ղեկավարութեամբ:

# ԱՆԱՀԻՏ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ ՍՐԻՆԳԸ, ՆԱՆԱՐԸ ԵՒ ՄԱՆԿԱՎԱՐԺՈՒԹԻՒՆԸ՝ ՖԵՄԻՆԻՍԹԱԿԱՆ ՍԼԱՑՔ ՄԸ ԵԳԻՊՏԱՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻՆ ՄԷՋ

Հ. ԱԻԱԳԵԱՆ

ՍՐԻՆԳԻ ՆԱՆԱՐ ՀԱՄՈՅԹԸ

1987-ի ամառնային արձակուրդին, Գալուստեան Ազգային Վարժարանի վեց աշակերտներու Անահիտ կը դասաւանդէ սրինգի նուագածութիւն եւ կը կազմէ իւրայատուկ համոյթ մը, զոր կ'անուանէ Նանար: Այս վեց նորակազմ սրնգահարներն են՝ Կարինէ Տէօվլէթեան, Մարի Տէր Ներսէսեան, Թալին Կալփեան, Նորա Գոլոյեան, Մարգրիտ Թահթապրունեան եւ Արամ Դել-փեան:

Առաջին նուագահանդէսը կը կազմակերպէ 1987 Հոկտեմբեր 16-ին, վարժարանի գաւիթին մէջ(24):

Նուագահանդէսին համար Անահիտ ոչ մէկ ծանուցում կ'ուղարկէ մամուլին: Անսովոր մօտեցում մը եգիպտահայ սպառողապաշտ գաղութին համար: Բայց ճիշդ այդ սպառողութիւնը դիմադրելու միտում մըն էր ծանուցումէ հրաժարիլը: Ըստ Էուլթեան, Անահիտի փափաքն էր նուագահանդէսին արժէքը բխեցնել բուն նուագահանդէսի ներսէն, կատարուածի ըն-դերքէն: Բացի այդ, սփիւռքները աւանդական անուանումով կը կոչուին համայնքներ: Համայնքը ենթադրուած է ըլլալ համակեցական գոյութիւն մը, հիմնուած փոխօգնութեան, փոխհասկացողութեան, փոխըմբռնումի եւ համայնական ինքնակազմակերպուած գործունէութեան վրայ: Բայց աւանդական սփիւռքները համայնքային համակեցութենէն դարձած են կուսակցական մրցակցութեան տիպարներ, իսկ համայնք-համակեցութիւնն ու մրցակցութիւնը անհամատեղելի են ու փոխվանողական: Ասոր աւելցած է նաեւ սպառողական դրամատիրական մտածողութեան ամբողջ ծանրութիւնը մշակութային առումով, ուր մշակութային գործիչներու ինքնաֆեթիշիզացումը, անոնց ինքնաօտարացումը հասարակութենէն եւ ստացած դասակարգային առաւելութիւնները վերացուցած են համայնքայնութեան ամէն հնարաւորութիւն: Թէքէեանի նման հանճար մը՝ իր լրագրական թափանցող գրութիւններով եւ յօդուածներով, իր գաղափարներու համայնքային (Պոլիս, ապա Գահիրէ) հինուածքով, յետմահու դարձաւ կուռք մը՝ բանաստեղծական սահմանափակ ընտրանիի մը բացարձակացումով եւ պարտադրանքով: Ասիկա՝ լոկ մէկ օրինակ մը:

Սպառողականութիւնը համայնքին լուրերը չի տարածեր, առաւելագոյնը զանոնք կը վերածէ ակումբներու ու հարուստներու սալոններու պարոնեանական չռայլանքի առարկաներ: Համայնքը՝ եթէ համայնք մըն է, պէտք չունի յայտարարութիւններու եւ ծանուցումներու, քանզի գիտելիքը կը տարածուի բնական ու բնազդական հաղորդականութեան միջոցով, բանաւոր անկաշկանդ ու անկողմնակալ փոխանցումով: Համայնքի գլխաւոր յատկանիշներէն մէկը հաղորդականութիւնն է: Ծանուցումը կը սկսի երբ կը դադրի համայնքայնութիւնը: Անահիտի ցանկութիւնն էր կորսուած համայնքայնութեան մէջ ներշնչել հայմայնքի նշոյլ մը: Հակա-առնական քայլ մը:

Համայնքայնութեան գաղափարը Անահիտ փորձեց վերարտադրել նաեւ բուն ձեռնարկին ընդմէջէն: Խօսքը մշակութային համայնքայնութեան մասին է, այսինքն Նանար համոյթին արտայայտչականութիւնը չսահմանափակել *միայն* երաժշտութեամբ: Անահիտի նպատակն էր ստեղծել գեղարուեստական ներքին մթնոլորտ մը, յատկապէս երբ Եափուճեան կը տեղեկացնէ՝ թէ «գաւիթին պատերը զարդարուած էին գունաւոր կապերտներով, սրնգահար աղջիկները կապած էին նախշուն գոգնոցներ:»(25) Երաժշտութիւնը եւ պատերուն տեղադրուած կապերտները կը մտնեն երկխօսութեան մէջ, բնագաւառներ՝ որոնք փրոֆեսիոնէլ կոչուած մասնագէտներուն շնորհիւ դարձած են օտարացած հասկացողութիւններ: Այս տեսակ համակեցութիւնը կը նուազեցնէ սեւեռումը անձին՝ ղեկավարին (Անահիտին) նկատմամբ, քանի որ հետաքրքրութիւնը եւ ներկայացուած գիտելիքը կը դառնան տարածուն եւ համապարփակ: Ղեկավարը իր արժէքն ու իմաստը կը ստանայ շրջապատէն, շրջապատ մը՝ որուն ինք մաս կը կազմէ, իր ձեռքով հրաժարելով ինքնիշխանական միանձնութենէ ու անհատական պաշտամունքէ՝ թէեւ եգիպտահայ առնականացուած գաղութը բոլոր պայմանները ստեղծած է նման դրսեւորումներու:

Նանար ներկայացուց կոմիտասեան երգերու փունջ մը: Նանարի սրնգահարները պարբերաբար կը նուագէին նաեւ քսիլիֆոն եւ զանգակ, ինչպէս նաեւ կ'երգէին միաձայն, երկձայն եւ եռաձայն: Ինչպէս Եափուճեան կը համառօտագրէ՝ «Անահիտ Սարգիսեան այսպիսով մեզի ներկայացուց հաճելի եւ սիրուն երաժշտական քոմփոզիսիոն մը:»(26) Սրբագրեմ՝ *գեղարուեստական* քոմփոզիսիոն մը:

Կոմիտասեան յայտագիրով մը Նանար կը մասնակցի Գալուստեան Ազգային Վարժարանի վկայականներու բաշխումի հանդէսին, 1988 Ապրիլ 9-ին: «Անահիտին կենարար շունչն էր, որ այդ պահուն կը թեւածէր սրահին վրայ», իրեն անսովոր արտայայտութեամբ մը կը նկարագրէ Եափուճեան Նանարի ելոյթը:(27)

Դարձեալ կոմիտասեան երգերով, Նանար կ'ունենայ երրորդ ելոյթ մը Եղեռնի յուշատօնին, 1988 Ապրիլ 23-ին, Պըլըքտանեան սրահի մէջ(28):

Նանարի չորրորդ ելոյթը եւ երկրորդ մենահանդէսը կ'իրականանայ 1988 Դեկտեմբեր 8-ին, Գահիրէի Ազգային Առաջնորդարանի մուտքին: Հովանաւորութիւնը ստանձնած էր Հայ Մշակոյթի Բարեկամներու Մարմինը, որ մամուլին կը յանձնէ նուագահանդէսին ծանուցումը: Վստահաբար Անահիտի խնդրանք-պարտադրանքով է որ այս ծանուցումը կը կրէ տողերու նուագագոյն քանակ, կը պարունակէ նուազագոյն տեղեկութիւն եւ, անշուշտ, չի յիշատակեր Անահիտի անունը(29):

1989 Փետրուար 23-ին, Գահիրէի գերմանական մշակութային կեդրոնի Կէօթէ սրահին մէջ, հայ մշակոյթին նուիրուած յայտագիրներու ծիրին մէջ ելոյթ կ'ունենան Նանար եւ Կոունկ: Անահիտ անկարող է Նանարը ներկայացնել առանց նոր շունչի: Ահաւասիկ ինչ կը գրէ Եափուճեան. «Նախ ելոյթ ունեցաւ սրինգի Նանար խումբը, երգերով, դհոլի, թմբուկի, եռանկիւնի եւ բամբիռի ընկերակցութեամբ: Անահիտ Սարգիսեանի նախաձեռնութեամբ կազմուած այս նոր խումբը, պէտք է ըսել, որ օր ըստ օրէ կը յառաջդիմէ, անդամները հետզհետէ ինքնավստահութիւն ձեռք կը բերեն, եւ հայու մեր հոգիները կը հրճուեցնեն, իսկ օտարներուն ալ գնահատանքին կ'արժանանան: Այս անգամ, Անահիտ Սարգիսեան նորութիւն մըն ալ մտցուցեր էր. զանազան քանակութեամբ ջուր լեցուած շիշերով ալ նուագեցին խումբին անդամները, նոր հնչեղութիւն մը ստեղծելով:»(30) Նանարին կը միանայ դհոլ, թմբուկ, եռանկիւն, բամբիռ եւ, ամենէն ուշագրաւը՝ ջուրի շիշերով քսիլոֆոն: Անընդհատ գեղարուեստական շարժումի մէջ է Նանար:

Նանար՝ չորս սրնգահարներով, կը մասնակցի Եղեռնի յուշահանդէսին 1989 Ապրիլ 22-ին, Պըլըքտանեանի մէջ(31):

Ահաւասիկ երրորդ մենահանդէսը՝ 1989 Նոյեմբեր 18-ին, Ազգային Առաջնորդարանի դահլիճին մէջ: Դարձեալ անհրապոյր ծանուցում մը(32): Այս անգամ Նանար կազմուած էր հինգ սրնգահարներէ՝ Թալին Կալփեան, Մարի Տէր Ներսէսեան, Կարինէ Տէօվլէթեան, Մարկրիթ Թահթապրունեան եւ Նորա Գոլոյեան: Անոնց կը միանային Րաֆֆի Չէչճէնեան՝ երգով ու դհոլով, եւ Ժորժ Գազազեան՝ ուտով: Իսկ սրնգահարները նաեւ կ'երգէին ու կ'արտասանէին: Կատարեցին քսան ստեղծագործութիւն(33):

Ձեռնարկը կը քննախօսէ Յակոբ Համբիկեան, որ կը տեղեկացնէ՝ թէ «[գ]եղեցիկ յայտագիր մը բաժնուեցաւ»:(34) Եգիպտահայ մամուլին մէջ հազուադէպ քննախօս մը կը շեշտէ տպագրուած յայտագիրի մը գեղեցկութիւնը: Կրնամ առաւելագոյնը նշել անոր *չքեղութիւնը*: Բայց քանի որ այս կէտը շեշտուած է, ուրեմն բացառութիւն մը կը գտնուի: Բնաւ զարմանալի չէ որ Անահիտ յատուկ ուշադրութիւն դարձուցած ըլլայ յայտագիրի էջադրումի եւ ձեւաւորումի գեղեցկութեան, որպէսզի անիկա ըլլայ ոչ թէ նուագահանդէսին ներկայացուցչական դէմքը՝ լեցուն վճռական տեղեկութիւններով եւ ինքնակենսագրականներով, այլ ձեռնարկին մաս կազմող գիտելիքային-գեղագիտական գործօն մը:

Վերջապէս, Համբիկեան իր քննախօսականին մէջ կ'ընդօրինակէ յայտագիրին վերջին էջը տպագրուած Մուշեղ Գալշոյեանի *Բրաբիոն ծաղիկ որոնողը* արձակ գրութիւնը, որ կը սկսի այսպէս.

«... Երկրի լեռներում մի ծաղիկ է աճում:

Երջանկութեան բրաբիոն ծաղիկը: Շատերն են եկել երջանկութեան ծաղիկը որոնելու... Բայց ոչ մէկը չի գտել:» եւ այլն(35):

Դարձեալ այստեղ կը նկատենք՝ որ խօսքերը ընտրուած են մթնոլորտ, եղանակ, տրամադրութիւն յառաջացնելու համար: Անիկա բնագիր մըն է՝ որ ոչ թէ *կ'արտացոլէ* Նանարը, այլ *կը մասնակցի* անոր ստեղծագործական արտայայտութեան: Գաղափարը աւելի յստակ ըլլալու համար պէտք է դիտել տալ, որ «փրոֆեսիոնէլ» յայտագիրները բանաստեղծական կամ արձակ բնագիրներ կը տպագրեն միայն այն ժամանակ՝ երբ կը յիշատակուի գրողի մը ամեակը: Անկէ անդին, «փրոֆեսիոնէլ» աշխարհը սովորութիւն չունի գրականութիւն տպագրել յայտագիրներուն վրայ՝ ձեռնարկին հետ համահնչիւն ընթանալու ցանկութեամբ: Կարեւորը, հիմնականը, կեդրոնականը, բացառիկը, միակը ձեռնարկն է՝ բեմին վրայ գտնուող անձերով:

Համբիկեան կը շեշտէ յատկապէս սրնգահարներու զգեստներուն իւրայատուկ տեսքն ու գոյները՝ իբրեւ ձեռնարկին համար մթնոլորտ ստեղծող հանգամանքներ. «Իրենց զգեստները բացառաբար գունագեղ – դեղին, կարմիր, կանանչ շերտեր որոնք իրենց մարմինը կը պատէին եւ նոյնքան երփներանգ մուճակներ – հաստ, ճերմակ բուրդէ գուլպաներով –

➩ 4

ԳԱՀԻՐԷ

## ԼՈՒՐԵՐ ԵԳԻՊՏԱՀԱՅ ԴԵՐԱՍԱՆՈՒՀԻՆԵՐՈՒ

Այս տարուայ Ռամատանին, 2017 Մայիս 27-էն սկսեալ եգիպտական արբանեակային հեռատեսիլի կայանները ցուցադրեցին *Կեանքի քաղցրութիւնը* (Հալաուաթ ալ-տոնիա) ֆիլմաշարը (serial), կազմուած 28 մասէ (28 օր), որուն գլխաւոր դերերէն մէկը կը խաղար եգիպտահայ նախկին փոփ մեներգչուհի, այժմ դերասանական ասպարէզ մուտք գործած Անուշքա (Անուշքա Զատըրճեան) (ծն. 1960): Գլխաւոր դերակատարներն էին՝ Հէնտ Սապրի (Ամինա), Զաֆէր Ալ-'Ապտին (Սէլիմ), Հանան Մութաուէ' (Սարա), Անուշքա (Ամինայի մայրը), Ռակա' Ալ-Կէտտաուի (Ամինայի մեծմայրը): Բեմադրիչ՝ Հուսէյն Ալ-Մենպաուի: Դէպքերը կ'անցնին Ամինայի շուրջ, որ իր ամուսնութենէն քիչ մը առաջ կը յայտնաբերէ քաղցկեղի հիւանդութիւն: Ասիկա պատճառ կը հանդիսանայ որ ան փոխէ իր բոլոր ծրագիրները եւ սկսի վերանայիլ իր յարաբերութիւնը շրջապատին հետ:

Քաղաքացիութեամբ հայաստանցի, բայց երկար տարիներ արդէն Եգիպտոս հաստատուած արեւելեան պարուհի եւ դերասանուհի Սաֆինազ կամ Ծովինար (Ծովինար Գրիգորեան) (ծն. 1976) աւարտած է *Ապահով է, ընկերս* (Աման եա սահպի) կատակերգական ֆիլմին նկարահանումը, դերակատարներ՝ Սա'տ Ալ-Սաղիր, Մահմուտ Ալ-Լիսի, 'Ալա' Մորսի, Պատրէյա Թոլպա, հեղինակ՝ Սայէտ Ալ-Սապքի, բեմադրիչ՝ Հանի Համտի: Առաջին ցուցադրութիւնը նախատեսուած է Սեպտեմբեր 1-ին, Պայրամի տօնին առաջին օրը: Դէպքերը կ'ընթանան երկու եղբայրներու շուրջ, որոնք կ'ապրին ժողովրդական երգի եւ պարի կեդրոնը ներկայացնող Մոհամմէտ 'Ալի փողոցը, դրամական ու ընկերային շատ վատ պայմաններու մէջ: Բարեկամ մը կ'առաջարկէ իրենց ծանօթանալ եւ ամուսնանալ հարուստ ընտանիքի երկու աղջիկներու հետ: Սիրոյ անունին տակ կը ծանօթանան անոնց հետ եւ կը սկսին բախումները իրենց եւ աղջիկներու եղբայրներուն միջեւ: Դէպքերը կը շարունակուին բախումներու եւ անհամաձայնութիւններու ընդմէջէն:

Սկսած է *Մեր տունի փողոցը* (Ալ-Շարէ' ԸԱԸ ուարանա) ֆիլմաշարին (serial) նկարահանումը, որուն գլխաւոր դերը կը ստանձնէ եգիպտահայ ծանօթ դերասանուհի Լէպլէպա (Նինուշքա Գիւբէլեան) (ծն. 1945): Դերակատարներն են՝ Ֆարուք Ալ-Ֆիշաուի, Տորրա, Նեսրին Ամին, Ահմատ Հաթէմ, Հէնտ 'Ապտէլ Հալիմ: Հեղինակն է՝ Հաթէմ Հաֆէզ, բեմադրիչը՝ Մակտի Ալ-Հաուարի: Ֆիլմաշարը նախատեսուած է ցուցադրուիլ 2017-2018-ի ընթացքին: Դէպքերը կ'անցնին երեւակայական մթնոլորտի մը մէջ:

## ՍԱՍՆԱՅ ԾՌԵՐՈՒ ԴԱՏԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ ՕՐԱԳՐՈՒԹԻՒՆ...

1

վանկարկումներով: Դատաւորի ներս մտնելու ժամանակ ամբաստանեալները ոտքի չկանգնեցան:

**4 ՅՈՒԼԻՍ 2017**

Ժիրայր Սէֆիլեանի եւ միւսներուն դատավարութիւնը Շենգաւիթի դատարանին մէջ: Անցեալ նիստին դատաւորը պատժամիջոց կիրառած էր Սէֆիլեանի դէմ, որուն պատճառով ան այսօր դատարան չէ բերուած:

**6 ՅՈՒԼԻՍ 2017**

Սասնայ Ծռերու 18 անդամներու դատական նիստը՝ Աւան եւ Նոր Նորք դատարանին մէջ:

**12 ՅՈՒԼԻՍ 2017**

Սասնայ Ծռերու 14 անդամներու դատական նիստը՝ Աւան եւ Նոր Նորք դատարանին մէջ: Պաշտպանեալ փաստաբան Արա Ղարագէօզեան խօսքը կ'ուղղէ դատաւորին. «Այս դատավարութիւնը դուք չէք կառավարում: Այն կառավարւում է Վլադիմիր Գասպարեանի, Բաղրամեան 26-ի ու Դատական Դեպարտամենտի կողմից: Դուք ինքնուրոյն որոշումներ չէք կայացնում: Դուք ամէն ժամը մէկ, մէկ ժամով չհիմնաւորուած ընդմիջումներ էք անում. գնում էք զանգեր ստանալու եւ որոշակի գործողութիւններ կատարելու համար:»

**13 ՅՈՒԼԻՍ 2017**

Սասնայ Ծռերու 18 անդամներու դատական նիստը՝ Աւան եւ Նոր Նորք դատարանին մէջ:

**19 ՅՈՒԼԻՍ 2017**

Սասնայ Ծռերու 14 անդամներու դատական նիստը՝ Աւան եւ Նոր Նորք դատարանին մէջ:

**20 ՅՈՒԼԻՍ 2017**

Սասնայ Ծռերու 18 անդամներու դատական նիստը՝ Աւան եւ Նոր Նորք դատարանին մէջ:

**26 ՅՈՒԼԻՍ 2017**

Սասնայ Ծռերու 14 անդամներու դատական նիստը՝ Աւան եւ Նոր Նորք դատարանին մէջ:

**27 ՅՈՒԼԻՍ 2017**

Սասնայ Ծռերու 18 անդամներու դատական նիստը՝ Աւան եւ Նոր Նորք դատարանին մէջ:

**28 ՅՈՒԼԻՍ 2017**

Ժիրայր Սէֆիլեանի եւ միւսներուն դատավարութիւնը Շենգաւիթի դատարանին մէջ:

**2 ՕԳՈՍՏՈՍ 2017**

Սասնայ Ծռերու 14 անդամներու դատական նիստը՝ Աւան եւ Նոր Նորք դատարանին մէջ: Արձակուրդի պատճառով դատական նիստը յետաձգուեցաւ երկու շաբաթով:

**3 ՕԳՈՍՏՈՍ 2017**

Սասնայ Ծռերու 18 անդամներու դատական նիստը՝ Աւան եւ Նոր Նորք դատարանին մէջ: Բանաստեղծուհի Վիոլէտ Գրիգորեան իր ֆէյսպուքեան էջին մէջ կ'արձանագրէ. «Նոր լուրերով նայեցի Սասնայ Ծռերի դատից հատուած, խայտառակութիւն էր, յենակներով մարդուց դատաւորը պահանջում է ոտքի կանգնել, ոչ մի կերպ թոյլ չի տալիս խօսել, երբ փաստաբանը քանի անգամ պնդեց, որ իր պաշտպանեալը յայտարարութիւն է անում, յետոյ էլ յենակներով մարդուն ոստիկանները կոպիտ բրդբրդելով, հրելով-քաշքշելով դուրս են տանում դահլիճից:» Դատաւորը երեք շաբաթով կը յետաձգէ նիստը:

**4 ՕԳՈՍՏՈՍ 2017**

Ժիրայր Սէֆիլեանի եւ վեց անձերու դատական նիստը՝ Շենգաւիթ վարչական շրջանի ընդհանուր իրաւասութեան դատարանին մէջ: Արդէն քանի մը նիստ է՝ որ վեցէն միայն Յովհաննէս Պետրոսեանը կը մասնակցի նիստին, քանի որ միւսները դատաւորի ներս մտնելու ժամանակ ոտքի չկանգնելնուն համար հեռացուած են նիստերէն:

**11 ՕԳՈՍՏՈՍ 2017**

Ժիրայր Սէֆիլեանի դատական նիստը՝ Շենգաւիթի դատարանին մէջ: Դատապաշտպան նշանակելու հարցով անհամաձայնութեան պատճառով նիստը կը յետաձգուի:

**23 ՕԳՈՍՏՈՍ 2017**

Սասնայ Ծռերու 12 անդամներու դատական նիստը՝ Աւան եւ Նոր Նորք դատարանին մէջ: Ամբաստանեալ Արայիկ Խանդոյեանի մուտքը ընդունուեցաւ ծափահարութիւններով ու վանկարկումներով: Փաստաբան Լուսինէ Սահակեան ուզեց բոլոր փաստաբաններու անունով միջնորդութիւն ներկայացնել դատաւորին: Դատաւորը արգիլեց իսկ փաստաբանները առարկեցին: Դատաւորը պատժամիջոց կը կիրարկէ փաստաբաններուն դէմ, որոնք պոյքոթելով կը հեռանան դահլիճէն: Անոնց կը միանան ամբաստանեալներուն հարազատներն ու ընկերները:

**24 ՕԳՈՍՏՈՍ 2017**

Սասնայ Ծռերու 18 անդամներու դատական նիստը՝ Աւան եւ Նոր Նորք դատարանին մէջ:

**ԽՈՀԵՐ**

# ԱՆԿԱՐԵԼԻ ԴԱՐՁԱԾ ԿԱՐԵԼԻՈՒԹԻՒՆՆԵՐ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

Ամէն բանէ առաջ չեշտեմ, որ հայկական աւանդական կուսակցութիւնները իրենց գոյութեան առաջին տարիներէն սկսեալ առիթ տուած են խզումներու եւ հակաճառութիւններու, թէեւ կը հետապնդէին նոյն նպատակները՝ յեղափոխութիւն, ապստամբութիւն, զինեալ պայքար, արեւմըտահայաստանի ազատագրում: Զըսելու համար՝ որ կուսակցութիւններէն երկուքը ընկերվարական էին, հնչակեանները՝ մարքսիստ, դաշնակցականները՝ կիսամարքսիստ, ուրեմն՝ եղած են շատ մօտ գաղափարախօսներ: Բայց կար խմբային պատկանելիութեան եւ խմբային անջատումի խնդիրը, որ ոչ մէկ կապ ունէր կանոնագիրներուն, գաղափարախօսութիւններուն եւ գործադրութիւններուն հետ: Հնչակեանութիւնն ու դաշնակցութիւնը՝ որոնք գաղափարապէս շատ մօտ էին իրարու, խմբային առումով դարձան հակաբեւեռներ, իսկ մարքսիստ հնչակեանները եւ սկզբունքօրէն պուրժուա-լիպերալ ռամկավար ազատականները՝ որոնք կանոնագրապէս կը գտնուէին հակաբեւեռային դիրքերու վրայ, չվարանեցան կազմել ռամկավար-հնչակեան յայտնի պլոքը: Ազատական ռամկավարները՝ որոնք գաղափարախօսապէս կը գտնուէին մարքսիզմի հակառակ կողմը, դարձան խորհրդային մարքսիստ վարչակարգի ամենէն ուժեղ քարոզիչները սփիւռքի մէջ: Մինչդեռ երկու մարքսիստներ՝ դաշնակցութիւնն ու Խորհրդային Միութիւնը, դարձան «թշնամի»-ներ: Իսկ հնչակեանութեան եւ Խորհրդային Միութեան հաշտ փոխյարաբերութիւնները դժուար է կողմնորոշել մարքսիստական ընկալումներու տեսանկիւնէն: Գիտելիքն ու գաղափարը իրենց դիրքերը զիջեցին ներխմբային հոգեբանութեան եւ, անշուշտ, ներխմբային շահերու, ինչ որ այսօր դրամատիրութիւնը առանց մտահոգուելու կը կոչէ մրցակցութիւն: Մրցակցութիւնը սպառողական արժէքներ չի ճանչնար, ան կը ճանչնայ միայն փոխանակային արժէքներ: Մրցակցութիւնը հակաբեւեռն է տիալեքթիքի եւ տրամախօսութեան: Մրցակցութեան անունին տակ կը զոհուին բոլոր գաղափարները, համոզումները, ներյատուկ արժէքները: Մրցակցութիւնն ինքնին կը դառնայ արժէք: Այս (հակ)արժէքաւորումի հովանիին տակ կարելի է գործադրել ամենէն անտրամաբանական արարքները:

Նշեմ նաեւ, որ ի սկզբանէ, դիրքեր զիջելու կամ բոլոր կուսակցութիւնները մէկ նոր կուսակցութեան մէջ ձուլելու խնդիրներ չէին դրուած կուսակցական ծրագիրներուն մէջ, ուրիշ հարց՝ թէ այդպիսի նշանաբաններ ու այդ ուղղութեամբ շարժումներ գոյութիւն ունեցած են կուսակցութիւններու գործողութիւններու մէջ, գտնուած են նաեւ միութեան հաւատացողներ, ինչպէս պիտի ակնարկեմ ստորեւ:

Բայց եւ այնպէս, կը գտնուէին կարելիութիւններ, որոշ բաց ճամբաներ ու փոխներթափանցումի խողովակներ, որոնք բոլորն ալ այսօր կարելիութիւններէ դարձած են անկարելիութիւններ:

Ահաւասիկ այս կարելիութիւններէն քանի մը օրինակ:

Համիտեան բռնութիւններուն ժամանակ, 1896 Օգոստոսին, Երուանդ Օտեան ֆրանսական ժիռոնտ շոգենաւով կը յաջողի փախչիլ Պոլիսէն եւ Օգոստոս 19 (հ.տ.) / 31-ին (ն.տ.) հասնիլ Բիրէ: Լրիւ պատահականութեամբ, նոյն շոգենաւին մէջ կը գտնուէին Օգոստոս 14 (հ.տ.) / 26-ի (ն.տ.) Պանք Օթթոմանի գրաւումէն ետք ողջ մնացած 17 դաշնակցականները, որոնք ռուսական եւ ֆրանսական հովանաւորութեամբ կը հեռանային Պոլիսէն: Մինչեւ նաւուն Յունաստան հասնիլը, Օտեան՝ քիչ մը հնչակեան համոզումներ ունեցող բայց ոչ մէկ կերպ դաշնակցական կողմին համակրող, կը ծանօթանայ, սիրալիր կը զրուցէ տղոց հետ եւ վեց տարի ետք այս քառօրեայ հանդիպումներուն մասին բաւական խանդավառ յուշեր կը հրապարակէ: Այնտեղ կը տեղեկացնէ՝ թէ նաւուն վրայ դաշնակցական տղաքը երգած են հնչակեան երգ մը.

«Նոյն միջոցին Դաշնակցականները կ'երգեն.<br>
Զար բռնակալը Հայոց կեղեքիչ,<br>
Վախէն պահուեցաւ ոսկէ գահուն տակ,<br>
Խուլ Եւրոպայի թնդաց մէն դահլիճ,<br>
Հայը սարսռեցաւ, կարմրեցաւ Հնչակ:»

Օտեան կ'եզրակացնէ. «Այս ատեն Դաշնակցականները Հնչակեան երգեր կ'երգէին եւ փոխադարձաբար. երանելի՜ ժամանակ:»(1)

Այս «երանելի ժամանակ»-ը 1896-ն էր: Ուրեմն, Օտեանի գրութեան շրջանը՝ 1912 թուականը, այս առումով արդէն ոչ-երանելի ժամանակ մըն էր:

Բայց կարելի է այդ «երանելի ժամանակ»-ը քանի մը տարի եւս յետաձգել: 1915 Մայիս 9-ին, Աղեքսանդրէոյ Հնչակեան Մասնաճիւղը Սալ Լիֆօնթի մէջ ցերեկոյթ մը կը կազմակերպէ: Վահան Թէքէեանի խմբագրութեամբ տակաւին նոր հաստատուած *Արեւ* եռօրեայ լրագիրը անստորագիր քննախօսական մը կը գրէ, ուր կը կարդանք.

««Ինչպէս եւրոպական կռուող ազգերու, նոյնպէս եւ մեր մէջ, այսօր այլեւս կուսակցութիւններ չկան, այլ կայ միայն ազգը» - աղաղակեց բանախօսը [Սապահ-Գիւլեան, Հ.Ա.] սրահին որոտալից ծափահարութիւններուն մէջ, եւ այս յայտարարութիւնն ու ծափահարութիւնները երեւան կը հանէին կիրակիի հանդէսին բուն ոգին, որ աւելի չեշտուեցաւ երբ փակման պահուն «Հնչակեան քայլերգ»-էն ետք երգուեցաւ նաեւ «Դաշնակցական քայլերգ»-ը:»(2)

Շատ հաւանական է որ այս անստորագիր քննախօսականին հեղինակը ըլլայ Թէքէեան:

Կը հասկնանք, որ մինչեւ 1915 (կրնայ ըլլալ անկէ ետք որոշ ժամանակ մը եւս) կարելի էր որ դաշնակցականները հնչակեան երգեր երգէին եւ հնչակեանները՝ դաշնակցական:

Այսօր, ԻԱ. դարուն, դաշնակցական մը կ'ընդունի՞ արդեօք իր ձեռնարկին մէջ երգել *Տալւորիկը*, հնչակեան մը կամ ռամկավար մը՝ *Մշակ, բանուորը*: Շարունակե՞մ: Իւրաքանչիւր կուսակցութիւն, հակառակ նշանաբաններուն, պիտի ուրախանա՞յ արդեօք եթէ ուրիշ կուսակցութիւն մը երբեւէ երգէ իր սեփականացուցած երգը (թէեւ ցնորական վարկած մըն է ասիկա): Չէ՞ որ երգերու ինքնասեփականաշնորհում տեղի ունեցած է: Իսկ շատ կը կասկածիմ՝ որ սեփականատէրերը հրճուին իրենց սեփականութիւնը ունկնդրել ուրիշներու բերաններէն: Եթէ ըսածս սխալ է, ուրեմն պէտք է զայն հերքել գործնական գետնի վրայ: Ո՞վ պատրաստ է զայն հերքել: Մինչեւ 1910-ականները այս հերքումը կարելի էր: Կարելի էր՝ որ Պանք Օթթոմանի դաշնակցականները երգէին հնչակեան երգ, իսկ Սապահ-Գիւլեանի ձեռնարկի մը մէջ հնչէր *Մշակ, բանուորը*: Կարելիութիւն մը՝ որ այսօր դարձած է անկարելի: Ասիկա չի նշանակեր, որ կուսակցութիւններուն միջեւ սիրալիր համերաշխութիւն կը գործէր ժամանակին: Պարզապէս կարելի է թերթել ժամանակուայ *Հնչակն* ու *Դրօշակը* այս կէտը հերքելու համար: Ըսել ուզածս պարզապէս կարելիութեան մասին է, կարելիութիւն՝ որ իրապէս գոյութիւն ունեցած է:

Այսօր, ԻԱ. դարուն՝ մարդու իրաւունքներու, ցեղասպանութիւններու դատապարտումի, բարեգործութեան համաշխարհայնացումի, խաղաղութեան միջազգային համագումարներու դարաշրջանին, դարաշրջան մը՝ երբ հայկական հիմնահոսանքը կ'ապրի ազգային նշանաբաններու տարափ մը՝ ազգասիրութիւն, ազգագոհութիւն, ազգային ինքնութիւն, ազգային միասնականութիւն, ազգային յաղթանակ, ազգային մտածելակերպ, համազգային համագումարներ, եւ այլն, երգերու փոխկատարումներու մասին աւելորդ է անգամ մտածել: Չկա՞յ արդեօք հակասութիւն մը խօսքի եւ գործադրութեան միջեւ:

(Շար. 1/2)

ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Երուանդ Օտեան, «Տասներկու տարի Պոլսէն դուրս 1896-1908», *Ժամանակ*, օրաթերթ, Կ. Պոլիս, 20 Սեպտեմբեր 1912 (ն.տ.), Դ. տարի, թիւ 1211, էջ 1:

2. «Կիրակի օրուան ցերեկոյթը», *Արեւ*, օրաթերթ, Գահիրէ, 13 Մայիս 1915, Ա. տարի, թիւ 2, էջ 3:

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ



## Հ.Բ.Ը.ՄԻՈՒԹԻՒՆ - Գահիրէ

### ՍԱԹԵՆԻԿ Ճ. ՉԱԳԸՐ ՀԻՄՆԱԴՐԱՄ ԿՐԹԱԿԱՆ ՕԺԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

### 2017-2018 ՏԱՐԵՇՐՋԱՆ

Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի Սաթենիկ Ճ. Չագըր Հիմնադրամը 2017-2018 տարեշրջանին եւս կրթաթոշակ պիտի յատկացնէ արժանատր ուսանողներու, որոնք կրնան անձամբ ներկայանալ Հ.Բ.Ը.Մ.ի Հելիոպոլսոյ գրասենեակը, լեցնելու համար յատուկ հարցաթերթիկը, իրենց հետ ունենալով 2 լուսանկար, ծննդեան վկայականի պատճէն, դիմումնագիր մը և վերջին երկու տարիներու իրենց վիճակացոյցները:

Աղեքսանդրիոյ թեկնածուները՝ պարտին իրենց դիմումնագրերը ներկայացնել Աղեքսանդրիոյ Հ.Բ.Ը.Մ.ի գրասենեակը:

Սաթենիկ Ճ. Չագըր Հիմնադրամէն արդէն իսկ կրթաթոշակ ստացողները պարտին ղրկել նախորդ տարեշրջանին ա. և բ. կիսամեայի կամ տարեվերջի քննութեանց արդիւնքները, անմիջապէս որ զանոնք ստանան իրենց յաճախած կրթական հաստատութիւններէն:

Բոլոր տեսակի դիմումնագրերը (նոր և վերանորոգելի) ընդունելու վերջին պայմանաժամն է՝ Գահիրէի և Աղեքսանդրիոյ համար՝ 30 Սեպտեմբեր 2017:

Ծ.Ն. Յաւելեալ մանրամասնութիւններու համար հեռաձայնել 22916444- 24151127-24152478:

### ՍԱԹԵՆԻԿ Ճ. ՉԱԳԸՐ ՀԻՄՆԱԴՐԱՄ ԿՐԹԱԿԱՆ ՄՐՑԱՆԱԿՆԵՐ

Գահիրէի ՀԲԸՄ-ի Սաթենիկ Չագըր Հիմնադրամը, 2016-2017 տարեշրջանին համար, դրամական մրցանակներ պիտի տրամադրէ եգիպտահայ համայնքին պատկանող բոլոր այն ուսանողներուն, որոնք փայլուն արդիւնքներ կը բերեն որեւէ կրթական հանգրուանի աւարտական քննութիւններուն:

Այսպէս, մրցանակներ պիտի տրամադրուին նախակրթական կրթութեան աւարտական կարգերու՝ պետական կամ համազօր քննութիւններու ներկայացող բոլոր այն աշակերտներուն, որոնք 90% եւ աւելի արդիւնք բերած են:

Դրամական մրցանակները իւրաքանչիւր կրթական հանգրուանի համար են եւ պիտի տրամադրուին հետեւեալ ձեւով.

| | |
|---|---|
| Նախակրթարանի աւարտական դասարան | Ե.Ո. 250.- |
| Պատրաստականի աւարտական դասարան | Ե.Ո. 500.- |
| Երկրորդականի աւարտական դասարան | Ե.Ո. 1000.- |
| Համալսարանի աւարտական տարի | |
| Ա- Շատ լաւ արդիւնք | Ե.Ո. 1500.- |
| Բ- Գերազանց արդիւնք | Ե.Ո. 2000.- |
| Մագիստրոսական աստիճանի աւարտին | Ե.Ո. 2500 |
| Դոկտորական աստիճանի աւարտին | Ե.Ո.. 5000 |

Գահիրէի դիմորդները իրենց ձեռք բերած կրթական արդիւնքը հաստատող փաստաթուղթը եւ անկէ պատճէն մը պարտին ներկայացնել ՀԲԸՄ-ի Գահիրէի գրասենեակը:

Աղեքսանդրիոյ դիմորդները պարտին նոյները ներկայացնել Աղեքսանդրիոյ ՀԲԸՄ-ի վարչութեան:

Բոլոր դիմորդները ընդունելու վերջին պայմանաժամն է 30 Սեպտեմբեր 2017:

Մրցանակներու յանձնումը թէ՛ Գահիրէի եւ թէ՛ Աղեքսանդրիոյ մէջ պիտի կայանայ հանդիսաւոր իրադրութեամբ:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

2

## ԱՆԱՀԻՏ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ ՍՐԻՆԳԸ, ՆԱՆԱՐԸ ԵՒ ՄԱՆԿԱՎԱՐԺՈՒԹԻՒՆԸ՝ ՖԵՄԻՆԻՍԹԱԿԱՆ ՍԼԱՅՔ ՄԸ ԵԳԻՊՏԱՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻՆ ՄԷՋ

ստեղծեցին երգին հետ ներդաշնակ մթնոլորտ մը:»(36)

Մէկ ձեռնարկ մը՝ իր բազմաթիւ նրբութիւններով, չերտաւորումներով եւ ներքին չարժումներով, գոնէ եգիպտահայ գաղութի պարագային կարելի է ըսել՝ որ ֆեմինիսթական մտածողութեան արդիւնքն է, քանզի երբեք նման մօտեցում չեմ հանդիպած առնականութեամբ, բարձրաձայնութեամբ ու յաճախ ծանր խճողումներով լեցուած եգիպտահայ ձեռնարկներուն մէջ:

1991 Ապրիլ 5-ին՝ Նանարի յաջորդ նուագահանդէսը Առաջնորդարանի գաւիթին մէջ: Առաջին անգամ ըլլալով ծանուցումը կը կրէ Անահիտ Սարգիսեանի անունը(37): Սկզբունքներու խախտո՞ւմ մը թէ արտաքին պարտադրանք մը:

Նոյն հինգ սրնգահարները՝ որոնք նաեւ կ'երգեն, իրենց հետ ունենալով Րաֆֆի Չէչճէնեանի դհոլը:

Յայտագիր մը՝ գրուած գեղեցիկ ձեռագիրով(38): Դարձեալ խախտում մը սովորամոլութեան: Ինչո՞ւ չգործածել մարդկային ձեռագիրը՝ եթէ ան կրնայ ըլլալ գարդարուն, արտայայտիչ ու խօսուն: Սկիզբը եղած է մարդկային ձեռագիրը՝ քարերու, պատերու եւ ապա մագաղաթներու վրայ: Ձեռագիրը տեսողական վայելք մը կը ներկայացնէ՝ գիրերու բնական տարբերութիւններով եւ մասնաւոր ոլորումներով: Ոչ վաղ անցեալին դպրոցներու մէջ գեղագրութեան դասընթացք գոյութիւն ունէր: Հիմա ասիկա աւելորդ համարելով ջնջեցին, իր հետ ջնջելով ձեռագրական գեղագիտութեան ամբողջ համակարգ մը: Տպագրական տիպականութիւնն ու կայունութիւնը դարձան աւելի կարեւոր: Արտամարդկային գործօնը դարձաւ առաջնային:

Արաքսի Տէօվլէթեանի նկարագրութեան համաձայն, գաւիթին բարձր մասը եւ դէպի վեր տանող աջ եւ ձախ սանդուխները գործածուեցան իբրեւ բեմ(39): Տարածական մօտութիւն մը կատարողներուն եւ հանդիսատեսին միջեւ, հետեւաբար՝ փոխանցիկ մտերմութիւն եւ հաղորդականութիւն: Ներդաշնակութիւն կայ նաեւ կատարողներուն միջեւ. «Անոնք կ'երգեն ու կը նուագեն երբեմն միասին, երբեմն առանձին, երբեմն միաձայն, երբեմն երկու ձայնով, մէկը յաջորդելով միւսին, մէկը ամբողջացնելով միւսը:» Իսկ նուագարաններուն մէջ կը գտնուէին «ապակեայ պարզ շիշեր որոնք դարձած էին նուա

Յայտագիրն էր՝ *Ես պուճուր / Եարս պուճուր, Մարկերի ոլորը / Հմայեակ, Կեանքիդ արեւին մատաղ / Խնձորի ծառի տակին, Սասնայ սարեր / Նուպար-Նուպար, Այ խնտիլօ,* եւ *Նարէ / Խամպաճի / Հայաստանի աղջիկներ / Քամին եանա / Գնացիր եկար բարով:*

Եւ կրկին արձակ գրութիւն մը. «Որքան ալ աղաւնին հեռացնեն իր բոյնէն, ան դարձեալ կը փնտռէ եւ գտնէ զայն...: Փորձենք գտնել ճամբան մեր հայրենի բոյնին... եւ թէկուզ չիւղով մը ճոխացնենք զայն...»:(41) Ֆեմինիզմ՝ անչուչտ: Առնականութիւնը այլ կերպ կ'արտայայտուի: Ան պիտի գոռայ ազգայնապաշտ ձայնով, ազգայնականութիւն պիտի քարոզէ, պիտի գտնէ դաւաճաններ ու ազգադաւեր, ազգայինի մասին պիտի խօսի անվիճարկելի վճռականութեամբ: Արդեօ՞ք ազգային չէ Անահիտի ընտրած բնագիրը՝ ուր ազգային բառն անգամ չէ գործածուած, բնագիր մը՝ որ կ'արտայայտէ հայրենի բոյնը ճոխացնելու հաճոյքը եւ ոչ թէ պարտադրանքը, ուր ազգայինը մարդկային է եւ ոչ իշխանական:

Ամբողջ հետոնիզմ մը կը գտնուի ձեռնարկին մէջ՝ զգալու, մասնակցելու, հաղորդակցելու բերկրանք մը: Դիւրամատչելի առաջադրութիւններ եւ լուծումներ, հպումներ եւ չփումներ, մարդկային յարաբերութիւններ եւ գիտելիքային տրամախօսութիւններ:

1991 Ապրիլ 11, Պըլըքտանեան սրահ, Բարեգործականի 85-ամեակի հանդիսութիւն, ուր Նանար կը ներկայացնէ հայկական ժողովրդական երգերու փունջ մը(42):

1992 Յուլիս 4, Առաջնորդարանի գաւիթ, վերջին նուագահանդէս: Ծանուցումին մէջ կը բացակայի Անահիտին անունը, որ կրնայ փարատել նախորդ ծանուցումի հանդէպ արտայայտած կասկածանքս(43): Ձեռնարկին մասին լռութիւն մամուլին կողմէ:

Վերջին կարճ ելոյթ մը 1992 Սեպտեմբեր 23-ին, Պըլըքտանեան սրահին մէջ, Հայաստանի անկախութեան առաջին տարելիցի տօնակատարութեան(44), եւ արդէն Անահիտին կը գտնենք Փարիզ:

Նանար համոյթը՝ իր ամբողջ շրջապատով, անսովոր երեւոյթ մըն էր եգիպտահայութեան համար, դժուար տեղադրելի մեծ նշանաբաններու, սփիւռքեան պատումներու եւ կանխասահմանուած ու կանխորոշուած բայց երբեք չյստակուած հայապահպանումի կարգախօսներու մէջ: Ան ֆեմինիզմ մըն էր՝ գոնէ սովորական առնական կորովութիւնը, միակամութիւնը եւ միահեծանութիւնը կազմաքանդելու առումով:

(Շար. 2/3)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

24. Քննախօսականը տես՝ Աւետիս Եափուճեան, «Երաժշտական աննախընթաց երեկոյ մը», *Արեւ*, 20 Հոկտեմբեր 1987, 72-րդ տարի, թիւ 20732, էջ 1:
25. Անդ:
26. Անդ:
27. Աւետիս Եափուճեան, «Համերգ եւ ցուցահանդէս Գալուստեան Ազգ. Վարժարանի», *Արեւ*, 14 Ապրիլ 1988, 72-րդ տարի, թիւ 20878, էջ 1:
28. Աւետիս Եափուճեան, «Ապրիլեան Եղեռնի յիշատակութիւնը Գահիրէի մէջ», *Արեւ*, 26 Ապրիլ 1988, 72-րդ տարի, թիւ 20887, էջ 1:
29. *Արեւ*, 6 Դեկտեմբեր 1988, 73-րդ տարի, թիւ 21059, էջ 4:
30. Աւետիս Եափուճեան, «Հայ երգը հնչեց գերմանական կամարներուն տակ», *Արեւ*, 24 Փետրուար 1989, 73-րդ տարի, թիւ 21125, էջ 1:
31. Աւետիս Եափուճեան, «Մեծ Եղեռնի յիշատակութիւնը Գահիրէի մէջ», *Արեւ*, 24 Ապրիլ 1989, 73-րդ տարի, թիւ 21173, էջ 1:
32. *Արեւ*, 17 Նոյեմբեր 1989, 74-րդ տարի, թիւ 21335, էջ 3:
33. Յակոբ Համբիկեան, «Անահիտ Սարգիսեանի Նանարը», *Արեւ*, 9 Դեկտեմբեր 1989, 74-րդ տարի, թիւ 21354, էջ 3:
34. Անդ:
35. Անդ:
36. Անդ:
37. *Արեւ*, 28 Մարտ 1991, 75-րդ տարի, թիւ 21733, էջ 4:
38. Պատճէնը հրատարակուած է *Արեւի* քննախօսականին մէջ՝ Արաքսի Տէօվլէթեան, «Նանար խումբի երաժշտական երեկոն», *Արեւ*, 18 Ապրիլ 1991, 75-րդ տարի, թիւ 21746, էջ 2:
39. Անդ:
40. Անդ:
41. Անդ:
42. Արաքսի Տէօվլէթեան, «Հ.Բ.Ը.Միութեան հիմնադրութեան 85-ամեակի հանդիսութիւն», *Արեւ*, 2 Մայիս 1991, 75-րդ տարի, թիւ 21756, էջ 2: Մանուէլ Գրիգորեան, «Հ.Բ.Ը.Միութեան հիմնադրութեան 85-ամեակի հանդիսութիւնը Գահիրէի մէջ», *Ջահակիր*, 2 Մայիս 1991, Նոր շրջան, թիւ 1227, էջ 2-3:
43. *Արեւ*, 1 Յուլիս 1992, 77-րդ տարի, թիւ 22094, էջ 4:
44. *Արեւ*, 15 Սեպտեմբեր 1992, 77-րդ տարի, թիւ 22150, էջ 4:

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.
TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1797 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 7 ՍԵՊՏԵՄԲԵՐ 2017 ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٧٩٧ الخميس ٧ سبتمبر ٢٠١٧

# ԱՆՎՏԱՆԳԱՅՆԱՑՈՒՄ. ՀԱՍԱՐԱԿՈՒԹԵԱՆԸ ՎԵՐԱՀՍԿԵԼԻ ԴԱՐՁՆԵԼՈՒ ՄԻՋՈՑ

**ԱՆՆԱ ԲԱՐՍԵՂԵԱՆ**

Անվտանգութիւնը մեր կեանքի կարեւորագոյն տարրերից է: Ջնայած Մասլոն իր պահանջմունքների բուրգում նրան յատկացրել է երկրորդ տեղը՝ առաջնայնութիւնը տալով ֆիզիկական պահանջներին, սակայն ակնյայտ է, որ եթէ, օրինակ, սնունդը անվտանգ չէ մեր առողջութեան համար՝ մենք երբեք այն չենք ուտի, կամ չենք խմի ջուր, որից յետոյ մեզ կարող ենք վատ զգալ: «Անվտանգութիւն» հասկացութիւնը եւ ընդհանրապէս՝ հայեցակարգը բազմաթիւ փոփոխութիւններ են կրել, հարստացուել նոր տարրերով, դարձել բազմաթիւ դպրոցների ուսումնասիրութեան առարկան: «Անվտանգութիւն» հասկացութեան դասական սահմանման կողմնակիցներն այն դիտարկում էին նեղ սպեկտրով, պետականակենտրոն մօտեցմամբ՝ առանցքում պահելով ռազմական գործօնը: Սակայն արդի աշխարհում այս մօտեցումը վաղուց հնացած է, որը գիտակցում էին նաեւ Անվտանգութեան կոպենհագէնեան դպրոցի ներկայացուցիչները, ովքեր էլ առաջ քաշեցին նոր հայեցակարգ: Դպրոցի կարկառուն դէմքերից Բարի Բուզանը անվտանգութիւնը տեսնում է հինգ սեկտորներում՝ ռազմական, շրջակայ միջավայրի, տնտեսական, սոցիետալ եւ քաղաքական:

Սակայն այս դպրոցի հիմնական ներդրումը «անվտանգայնացում» (securitisation) հասկացութեան ներմուծումն է գիտական ոլորտ: Այն երկաստիճան գործընթաց է: Անվտանգայնացման առաջին մակարդակը քաղաքականացումն է: Խնդիրը քաղաքականացուած չէ, եթէ այն պետական գործունէութեան մէջ ներառուած եւ հանրային բանավէճերի առարկայ չէ: Քաղաքականացուած հարցը հանրային քաղաքականութեան մասն է, որը պահանջում է կառավարութեան կոնկրէտ գործողութիւններ:

Յաջորդ փուլը քաղաքականացուած հարցի անվտանգայնացումն է: Այն օբիեկտը, որի համար անհրաժեշտ է որեւէ հարց քաղաքական մակարդակից տեղափոխել անվտանգային մակարդակ, խնդիրը ներկայացնում է որպէս էքզիստենցիալ սպառնալիք, որին դիմակայելու համար անհրաժեշտ է հանրային համախմբում, ռեսուրսների հաւաքագրում եւ նոյնիսկ պայքարի համար նախատեսուած ծայրայեղ միջոցների ներառում:

Այսպիսով, եթէ ամփոփ ներկայացնենք «անվտանգայնացում» հասկացութեան էութիւնը, ապա պետութիւնը, կախուած իշխող քաղաքական ուժի ներքին եւ արտաքին խնդիրների նկատմամբ վերաբերմունքից, վերցնում է որեւէ խնդիր (ցանկալի է, որ այն իսկապէս առկայ լինի տուեալ հասարակութեան մէջ), այն դարձնում է հանրային քննարկումների առարկայ, քաղաքական կարեւորութիւն տալիս եւ ապա դարձնում էքզիստենցիալ վտանգ պետութեան եւ հասարակութեան համար: Իհարկէ, այլ քաղաքական ուժեր եւս կարող են օգտուել այս տեխնոլոգիայից, սակայն հէնց իշխանութիւններն ունեն տեղեկատուական հոսքերի վրայ ազդելու եւ հանրային օրակարգ ձեւաւորելու առաւել մեծ հնարաւորութիւն:

Հայկական քաղաքական դաշտի կողմից եւս անվտանգայնացման տեխնոլոգիան լայնօրէն կիրառւում է, որը լրացուցիչ անգամ նպաստում է հասարակութեան կոնսոլիդացմանը, իշխանութիւնների համար ցանկալի հնազանդութեանը, վերահսկելի ու կանխատեսելի հասարակութեան ստեղծմանը: Քննարկենք Հայաստանի երեք նախագահների օրօք անվտանգայնացուած հարցերի ցցուն օրինակներ:

Պատմական իրողութիւնների բերումով հայ ժողովրդի համար էքզիստենցիալ վտանգ ներկայացրել է Թուրքիան: Սակայն Հայաստանի առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը փորձ կատարեց փոխել այդ մօտեցումը՝ վարելով Թուրքիայի հետ բարիդրացիական յարաբերութիւններ վարելու քաղաքականութիւն: 1991թ. Յունուարի 7-ին Թուրքիայի նախագահը յայտարարեց Հայաստանի հետ տնտեսական յարաբերութիւններ հաստատելու ծրագրի մասին: 1991թ. Ապրիլին Լեւոն Տէր-Պետրոսեանը Երեւան ժամանած ԽՍՀՄ-ում Թուրքիայի դեսպան Վոլքան Վուրալին հաւաստիացրեց, որ Հայաստանը փոխւում է, ուզում է բարեկամանալ եւ պատրաստ է Թուրքիայի հետ ամէն տեսակի փոխշահաւէտ համագործակցութեան, ըստ որում՝ «Հայաստանը որեւէ տարածքային պահանջ չունի Թուրքիայից»:


Աննա Բարսեղեան

Այս ամէնն, անշուշտ, Անկարայում դրական գնահատուեց, եւ դրուեցին տնտեսական համագործակցութեան համար անհրաժեշտ քաղաքական հիմքերը:

Այս քաղաքականութիւնը հիմնովին փոխուեց Ռոբերտ Քոչարեանի օրօք, ով հայ-թուրքական յարաբերութիւնները անվտանգայնացրեց: Այս ամէնը պայմանաւորուած էր նաեւ դաշնակցականների քաղաքական ասպարէզ վերադարձով եւ նախագահի վրայ ունեցած ազդեցութեամբ: Անվտանգայնացնելով հայ-թուրքական յարաբերութիւնները՝ Քոչարեանը փորձում էր հիմնաւորել հայ-ռուսական յարաբերութիւնների անհրաժեշտութիւնը: Փակ սահմաններին միակ այլընտրանք եւ փրկութիւն դառնում էին Ռուսաստանի հետ ամուր տնտեսական, քաղաքական եւ ռազմական յարաբերութիւնները: Այդ քաղաքականութեան շրջանակներում էլ երկրի կարեւոր, ռազմավարական նշանակութիւն ունեցող օբիեկտները վաճառուեցին կամ «Գոյք՝ պարտքի դիմաց» ծրագրի շրջանակներում տրուեցին Ռուսաստանին: Հիւսիսային հսկան ձեռք բերեց մեր երկրի տնտեսութեան վրայ ազդելու հսկայական լծակներ: Հայ-թուրքական սահմանի անվտանգութիւնը եւս ռուսական ռազմաբազաների կողմից է ապահովւում: Ռուսական դրօշը զսպիչ գործօն է դիտարկւում թուրքերի հնարաւոր յարձակման դէպքում:

Հայ-թուրքական սահմանի բացման նախաձեռնութիւն Թուրքիայի կողմից չի դրսեւորուել, իսկ հայկական կողմը հետեւեալ հիմնաւորումն ունէր. «Եթէ սահմանը բացենք՝ Թուրքիան գուցէ ռազմական գործողութիւնների չդիմի, սակայն տնտեսական էքսպանսիա կը կատարի, որի արդիւնքում կը տուժեն հայրենական արտադրողները»: Այս ամէնն, իհարկէ, օբիեկտիւ հիմքեր ունի. Թուրքիան աշխարհի հզօր տնտեսութիւն ունեցող երկրներից մէկն է, որն Օսմանեան Կայսրութեան տարիներին ունեցած երբեմնի ռազմական ազդեցութիւնը փորձում է վերականգնել փափուկ ուժի գործիքակազմի միջոցով՝ կատարելով ներդրումներ եւ մշակութային ազդեցութիւն գործելով օրինակ՝ Վրաստանում, Աջարիայում, Աբխազիայում, Բալկաններում եւ այլուր:

Սակայն մնալ այդ մտածելակերպի շրջանակներում՝ նշանակում է երբեւէ չբացել Հայաստանի արեւմտեան սահմանը, դարեր շարունակ ապրել վախի եւ կաշկանդուածութեան մթնոլորտում: Մինչդեռ այն, ինչը մեր վախի պատճառն է, պէտք է դառնայ պայքարի մեր զէնքը: Եթէ մենք վախենում ենք, որ թուրքական ապրանքները կը հեղեղեն հայկական շուկան, ապա դրա հակաքայլը պէտք է լինի հայրենական արդիւնաբերութեան զարգացումը, տնտեսութեան ուժե-

➪ 3

**ԳԱՅԻՐԷ**

# ԳԱԲՐԻԷԼ ՎԱՐԴԱՊԵՏ ՍԱՐԳՍԵԱՆ ԿԸ ՄԵԿՆԻ ԵԳԻՊՏՈՍԷՆ

Եգիպտոսի եւ Սուտանի Հայոց Թեմերուն մատուցած ինը տարուան ծառայութենէ ետք, Սեպտեմբեր 11-ին Հ. Գաբրիէլ վարդապետ Սարգսեան վերջնականապէս կը մեկնի այստեղէն, Պաղտատի մէջ ստանձնելու իր նոր պաշտօնը իբրեւ Հայոց Թեմի Հոգեւոր Հովիւ:



Գաբրիէլ վարդապետ Սարգսեան ուսանած է Սեւանի Վազգէնեան Հոգեւոր Դպրանոցին մէջ: 2002 Սեպտեմբերին ձեռնադրուած է կուսակրօն հոգեւորական:

2003-ին եկած է Եգիպտոս, ուր մասնակցած է Ղպտիական Ուղղափառ Եկեղեցւոյ դասընթացքներու, միաժամանակ սերտելով եւ տիրապետելով արաբերէն լեզուին: Ապա վերադարձած է Ս. Էջմիածին:

Տակաւին աբեղայ, 2009 Յունուարին կ'ուղարկուի արտասահման՝ միաժամանակ ծառայելու Եգիպտոսի եւ Սուտանի Հայոց Թեմերուն, դառնալով Եգիպտոսի Հայոց Թեմի Առաջնորդական Փոխանորդ եւ Սուտանի Հոգեւոր Հովիւ:

2013 Մարտ 11-ին, Մայր Աթոռ Ս. Էջմիածինի Գէորգեան Հոգեւոր Ճեմարանի հանդիսութիւններու սրահին մէջ կը պաշտպանէ վարդապետական թէզը՝ *Տէրունական աղօթքի հայ միջնադարեան մեկնութիւնները*, ուր Տէրունական աղօթքի հայոց հայրերու մեկնաբանութիւնները առաջին անգամ ներկայացուած են համեմատական աստուածաբանութեան տեսանկիւնէն: Յանձնաժողովին մաս կը կազմէին՝ Մայր Աթոռ Ս. Էջմիածինի Վանական Խորհուրդի նախագահ եւ Հրատարակչական բաժինի տնօրէն Տ. Նաթան արքեպիսկոպոս Յովհաննիսեան իբրեւ նախագահ, Շիրակի Թեմի առաջնորդ Տ. Միքայէլ եպիսկոպոս Աջապահեան, Երեւանի Պետական Համալսարանի Աստուածաբանութեան ֆակուլտէտի տնօրէն եւ Երեւանի Ս. Գրիգոր Լուսաւորիչ մայր եկեղեցւոյ հոգեւոր տեսուչ Տ. Անուշաւան եպիսկոպոս Ժամկոչեան, Արագածոտնի Թեմի առաջնորդ Տ. Մկրտիչ եպիսկոպոս Պռոշեան եւ Մայր Աթոռի Կրթական հաստատութիւններու վերատեսուչ Տ. Գէորգ եպիսկոպոս Սարոյեան:

Վարդապետական գաւազանի տուչութենէն ետք կը վերադառնայ Եգիպտոս եւ Սուտան շարունակելու իր ծառայութիւնը:

Գաբրիէլ վարդապետ Սարգսեան մտաւորական մըն է: Կը տիրապետէ աստուածաբանական փիլիսոփայութեան:

2011-2012-ին յօդուածներ ստորագրած է *Ջահակիր*ի մէջ՝ «Մարդու կամքը եւ անոր ուղղուածութիւնը» (Թիւ 1659), «Մարդու ինքնահաստատման ճամբան» (Թիւ 1661), «Մարդու կրթութիւնն ու դաստիարակութիւնը», (Թիւ 1662), «Աստուածորդիին այլակերպութեան խորհուրդին մասին», (Թիւ 1673), «Խորհրդածութիւն անառակի Կիրակիի մասին» (Թիւ 1683), «Գալստեան Կիրակիի խորհրդաբանութիւնը» (Թիւ 1684), «Հրաշքներու գոյութեան մասին» (Թիւ 1690), «Մարդու կազմութեան մասին» (Թիւ 1693):

Խօսելով կամքի մասին, կը գրէ.

➪ 2

# ԱՆԱՀԻՏ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ ՍՐԻՆԳԸ, ՆԱՆԱՐԸ ԵՒ ՄԱՆԿԱՎԱՐԺՈՒԹԻՒՆԸ՝ ՖԵՄԻՆԻՍԹԱԿԱՆ ՍԼԱՑՔ ՄԸ ԵԳԻՊՏԱՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻՆ ՄԷՋ

**Յ. ԱԻԱԳԵԱՆ**

ՄԱՆԿԱՎԱՐԺՈՒԹԻՒՆ

Անահիտի մանկավարժական գործունէութիւնը Գահիրէի Գալուստեան Մանկապարտէզի մէջ անցաւ գրեթէ աննկատ: Կին մանկավարժ մը՝ ինչպէս մանկապարտէզներու բոլոր մանկավարժները, կարծէք ամսավճարով պաշտօն մըն էր զոր կը կատարէր՝ ապրուստի միջոց մը: Բայց կրնա՞յ Նանարի մարդկային միջավայրը ստեղծող անձը ըլլալ կրաւորական մանկավարժ մը:

Գահիրէի մանկավարժական գործունէութեան մասին, արդարեւ, պէտք է դիտել հայելանման հայեացքով՝ ելակէտ ունենալով Փարիզի յետագայ գործունէութիւնը:

Փարիզի մէջ այսօր Անահիտ հռչակուած է իբրեւ մանկավարժ եւ բանաստեղծ(45), մինչդեռ Եգիպտոսի մէջ անոր անունը կապուած էր սրինգի եւ սրնգահարութեան հետ:

Փարիզ հասնելէն ի վեր մինչեւ այսօր կը դասաւանդէ Ռենսիի Դպրոցասէր Տիկնանց Վարժարանի մանուկներուն:

Հիմնադրած է «բարեւ արեւ» մանկական հրատարակչութիւնը: Այս ծիրին մէջ յօրինած ու հրատարակած է՝ *սեւուլիկ սարդիկը* (2002), *կաղանդ գատիկ* (2003), *կիրակի օր մը* (2004), *օրիորդ չուչանիկ* (2006), *պարոն Նիկողոս. առաջին գիրք* (2006), *լուսինին չապիկը* (2007), *պարոն Նիկողոս. երկրորդ գիրք* (2007), *մեր կիրակոսը* (2008), *պարոն Նիկողոս. երրորդ գիրք* (2008), *տէր եւ տիկին* (2009), *ես կը խաղամ Թագաւորին հետ* (2010), *կիրակոսը* (2010), *սիրանուշը* (2011), *Նոյ նահապետ* (2015), *Նոյ նահապետին ստնուկը* (2015): Անահիտ գրած է բոլոր բանաստեղծութիւնները եւ կատարած իւրաքանչիւր էջի նկարազարդումը: Մանկավարժ-բանաստեղծ-նկարիչ ներքին հազուագիւտ համագործակցութիւն մը՝ որակային ու արժէքային իւրայատուկ մօտեցումներով եւ ըմբռնումներով: Ունի նաեւ մանկապարտէզի ծրագիր երեք դասարաններու համար, ինչպէս նաեւ Մարալ Քերովբեանի հետ իրականացուցած է երեք ֆիլմ: Մասնակցած է նաեւ արեւմտահայերէն լեզուի դասաւանդումին նուիրուած համագումարներու:

Դիտել տամ՝ առանց ոչ մէկ եզրակացութիւններ ընելու միտում ունենալու, որ «բարեւ արեւ»-ի առաջին հատորը լոյս տեսած է Փարիզ հաստատուելէն ինը տարի ետք, իսկ համագումարներու մասնակցութիւնը համեմատաբար նոր գործընթացք մըն է:

Այս լոյսին տակ, կարելի՞ է արդեօք վերընթերցել Անահիտի եգիպտական շրջանը Գալուստեան Մանկապարտէզի մէջ, չմոռնալով նաեւ, որ մինչեւ 1989 թուական, մանկապարտէզի հանդէսներուն եւ գեղարուեստական յայտագիրներուն տիրական դէմքն էր դաշնակահար Շամիրամ Դարմանեան՝ բաւական ինքնապարտադրող դէմք մը:

Փորձեմ հետեւիլ մամուլի ժլատ տեղեկութիւններուն.

– 25 Ապրիլ 1986, Գալուստեան Ազգային Մանկապարտէզի ամավերջի հանդէս: Երեխաները երգեցին ու արտասանեցին հայերէն, անգլերէն եւ արաբերէն լեզուներով: Անգլերէն լեզուի ուսուցչուհին էր՝ Անահիտ Սարգիսեան(46):

– 28 Դեկտեմբեր 1986, Գալուստեան Մանկապարտէզի կաղանդի տօնակատարութիւն, ուր «անգլերէն երգերը սորվեցուցած էր Տիկին Անահիտ Սարգիսեան:»(47)

– 22 Մարտ 1987, Գալուստեան Մանկապարտէզի ամավերջի հանդէս: Երեխաները երգեցին ու արտասանեցին հայերէն, անգլերէն եւ արաբերէն լեզուներով: Անգլերէն լեզուի ուսուցչուհին էր՝ Անահիտ Սարգիսեան(48):

– 27 Դեկտեմբեր 1987, Գալուստեան Մանկապարտէզի կաղանդի հանդէս: Պատրաստողներէն մէկն էր Անահիտ Սարգիսեան(49):

– 30 Դեկտեմբեր 1989, Գալուստեան Ազգային Վարժարանի կաղանդի հանդիսութիւն: «Անահիտ Սարգիսեան բոլոր երգերուն ալ դաշնակով ընկերակցեցաւ», կը տեղեկացնէ Եափուճեան, քանզի Դարմանեան արդէն մեկնած էր Սիտնի(50):

– 30 Մարտ 1990, Գալուստեան Ազգային Վարժարանի ամավերջի հանդէս: Եափուճեան կը գրէ. «Հանդիսութեան պաշտօնական այս մասին աւարտէն ետք, տեղի ունեցաւ գեղարուեստական ճոխ յայտագիր մը՝ երգերով, արտասանութիւններով եւ նուագով: Երգերու բաժինը կը ղեկավարէր եւ անոր դաշնակով կ'ընկերակցէր խմբավար Հայկ Սարգիսեան, իսկ նուագի բաժինին՝ նոյն ձեւով՝ Տիկին Անահիտ Սարգիսեան: Իսկ դհոլով եւ եռանկիւնով կ'ընկերակցէին աշակերտներէն Լեւոն Տէր Յակոբեան եւ Էտուար Միլատ:»(51) Այնքան ալ յայտնի չէ Անահիտի դերը «նուագի բաժին» անուանումով, բայց յստակ է, որ մանկապարտէզի կողքին ան կը դասաւանդէր նաեւ Գալուստեան Ազգային Վարժարանին մէջ եւ իր մասնակցութիւնը բերած էր ընդհանուր յայտագիրի կազմակերպութեան:

– 27 Մայիս 1990, Գալուստեան Մանկապարտէզի ամավերջի հանդէս: «[Հ]անդէսին գեղարուեստական ղեկավար Տիկին Անահիտ Սարգիսեան երգերուն կ'ընկարակցէր դաշնակով:»(52) Անահիտ հանդէս կու գայ ամբողջական պատասխանատուութեամբ:

– 31 Դեկտեմբեր 1990, Գալուստեան Ազգային Վարժարանի ամանորի հանդիսութիւն, ուր ելոյթ ունեցան բացառապէս մանկապարտէզի աշակերտները: Վարժարանի մամուլի հաղորդագրութիւն.

«Հանդէսի գեղարուեստական բաժինը կը ղեկավարէին Տէր եւ Տիկին Հայկ եւ Անահիտ Սարգիսեանները:

«Մանուկներու երգերը, պարերը, արտասանութիւնները եղան համարձակօրէն դաշնակի ընկերակցութեամբ Տիկին Անահիտ Սարգիսեանի:

«Մանուկները ի միջի այլոց պատմեցին թէ ինչպէս Կաղանդը կը տօնուի զանազան ազգերու մօտ: Այդ գրութիւնը պատրաստած էր տիկին Զարիկ Գոլոյեանը: Իսկ երգերուն, որոնց մէջ անգլերէն երգեր եւս կային թէ պատրաստութիւնը եւ թէ ղեկավարութիւնը ստանձնած էր Տիկին Անահիտ Սարգիսեանը: Ձեռային աշխատանքները Տիկին Սիլվիա Գասապեան եւ Անահիտ Սարգիսեանը:»(53)

Հաղորդագրութիւնը կը նկարագրէ ձեռնարկը՝ իբրեւ թատերականացուած ցերեկոյթ մը: Առաջին անգամ կը յիշատակուի Անահիտ իբրեւ բազմադիմի նախաձեռնող՝ երգերու, պարերու եւ արտասանութիւններու մարզիչ, դաշնակի նուագակցող, ձեռային աշխատանքներու պատասխանատու եւ ընդհանուր կազմակերպիչ:

– 25 Ապրիլ 1991, Գալուստեան Ազգային Վարժարանի ամավերջի հանդէս: Մանկապարտէզի աշակերտներու երգերը կը ղեկավարէր Անահիտ Սարգիսեան(54):

– 31 Դեկտեմբեր 1991, Գալուստեան Ազգային Վարժարանի ամանորի հանդէս: «Հանդէսը ունեցաւ չորս բաժիններ. Առաջինը՝ Նախակրթարանի եւ Միջնակարգի աշակերտութեան Կաղանդի եւ Ս. Ծննդեան խմբերգներ ղեկավարութեամբ Տիկին Անահիտ Սարգիսեանի եւ դաշնակի ընկերակցութեամբ Պրն. Հայկ Սարգիսեանի»(55):

– 12 Ապրիլ 1992, Գալուստեան Ազգային Վարժարանի ամավերջի հանդէս: Ներկայ մը կը նկարագրէ. «Երբ սրահէն ներս մտանք, նշմարեցինք բեմին ամբողջ պատին վրայ գծուած գոյնզգոյն հսկայ չորս մարգարտածաղիկներ եւ որոնց մէջ արձանագրուած՝ չորս բառեր – Թող միշտ շողայ արեւը: Այսինքն

4

# ԱՐՏԱԳԱՂԹԻ ՊԱՏԿԵՐԸ. ԱՇԽԱՏՈՒՆԱԿ ՏԱՐԻՔԻ ՄԱՐԴԿԱՆՑ ԹԻՒԸ ԿՏՐՈՒԿ ՆՈՒԱԶԵԼ Է. *ԺՈՂՈՎՈՒՐԴ*

*Ժողովուրդ* օրաթերթը գրում է. «Հայաստանից ահռելի չափերի հասած արտագաղթի հետեւանքներն իրենց զգացնել են տալիս ամէն բնագաւառում. *Ժողովուրդի*ն պաշտօնական փաստաթղթերից յայտնի դարձաւ, որ վերջին տարիներին կտրուկ նուազել է աշխատունակ տարիքի մարդկանց թիւը: Իսկ սա, բնականաբար, իր բացասական հետեւանքներն է ունենում երկրի տնտեսութեան եւ, ընդհանրապէս, բոլոր բնագաւառների վրայ: Ըստ Հայաստանի ազգային վիճակագրական ծառայութեան տուեալների՝ եթէ Ս. Սարգսեանի պաշտօնավարման առաջին տարում՝ 2008թ., Հայաստանում աշխատունակ տարիքի մարդկանց թիւը 2 միլիոն 169.9 հազար էր, ապա արդէն 2016թ. այն դարձել է 1 միլիոն 962.9 հազար: Ասել է, թէ այս ինը տարիների ընթացքում միայն աշխատունակ բնակչութեան թիւը, ըստ պաշտօնական վիճակագրութեան, նուազել է 207 հազարով: Սա նշանակում է՝ նոյնքան պակասել է երկրում որեւէ արտադրանք տուող, որեւէ արտադրանք սպառող եւ, վերջապէս, հարկ վճարող քաղաքացիների թիւը՝ դրա բոլոր հետեւանքներով հանդերձ»:

# ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆՆ ԸՆԴԴԷՄ ԱՆԿԱԽ ՄԱՄՈՒԼԻ. ԻՆՉՈ՞Ւ ԵՆ ՓՈՐՁՈՒՄ ՓԱԿԵԼ ՖԻՆԱՆՍԱՒՈՐՄԱՆ ԱՂԲԻՒՐՆԵՐԸ. *ԺՈՂՈՎՈՒՐԴ*

*Ժողովուրդ* օրաթերթը գրում է. «Իշխանութիւնները ձեռնամուխ են եղել հնարաւոր բոլոր միջոցներով անկախ մամուլը ոչնչացնելու գործին: Եւ հիմա այդ նպատակով փորձում են լրատուամիջոցներին, մասնաւորապէս, տպագիր մամուլին զրկել ֆինանսական աղբիւրներից: Յայտնի փաստ է, որ թերթերը ֆինանսաւորման երեք աղբիւր ունեն՝ վաճառքից գոյացած միջոցները, գովազդը կամ վճարովի յայտարարութիւնները եւ, վերջապէս, նուիրատուութիւնները: Ու հիմա կառավարութեան թեթեւ ձեռքով փորձ է արւում փակել մամուլի ֆինանսաւորման առնուազն երկու աղբիւրները: Նախ՝ վարչապետ Կարէն Կարապետեանը պաշտօնավարման սկզբում պետական հիմնարկներին «փակ» հրահանգ տուեց հրաժարուել տպագիր մամուլի բաժանորդագրութիւնից՝ այդ որոշումը պատճառաբանելով խնայողութեան անհրաժեշտութեամբ: Հիմա էլ Հայաստանի արդարադատութեան նախարարութիւնը շրջանառութեան մէջ է դրել օրէնսդրական փոփոխութիւնների մեծ փաթեթ, ըստ որի՝ հրապարակային ծանուցումներն այսուհետ

4

# ԳԱԲՐԻԷԼ ՎԱՐԴԱՊԵՏ ՍԱՐԳՍԵԱՆ ԿԸ ՄԵԿՆԻ ԵԳԻՊՏՈՍԷՆ

1

«Կամքը նախ եւ առաջ մարդու էութեան անբաժանելի միասնութիւնն է, ան կապուած է մարդկային բնութեան ամենակարեւոր յատկութեան հետ, զոր կը կոչենք բանականութիւն, որն ալ կը ներկայացնէ մարդու ճշմարիտ ըմբռնողութիւնը եւ ողջախոհ կշռադատութիւնը՝ ներքին ու արտաքին աշխարհներու ճշմարիտ ըմբռնողութեամբ:»

Անդրադառնալով մարդու ինքնահաստատումի մասին, կը կարծէ՝ որ օրինաչափութիւնն ու ներդաշնակութեան համադրութիւնը պահպանելու համար անհատը պարտաւոր է անցնիլ երեք ճանապարհներ՝ ինքնաճանաչում, այլաճանաչում եւ աստուածաճանաչում: «Մարդու ինքնահաստատումը իր նմանի ճանաչումն ու Աստուծոյ ներկայութեան հաստատումն է, ուր կը կառուցուի մարդ-անհատի բարոյական ու հոգեւոր անձնաւորութիւնը:»

Իրեն համար կրթութիւնն ու դաստիարակութիւնը առարկայական գիտելիքի ամբարում չէ, այլ արժէքի որոնում ու չափանիշի ձեռքբերում, որ «մարդու գիտակցութեան ամենաբարձր վկայութիւնն է հոգեւոր եսը կառուցելու համար:»

Հրաշք կը նշանակէ վեր ելլել «ֆիզիքական օրէնքներու ազդեցութիւններէն:» Հրաշքը «արտաբնական երեւոյթ է, ան ակնյայտօրէն դուրս է բնական օրէնքներու համակարգէն:»

Վերջապէս, «մարդը ունի եռատարր կառուցուածք՝ մարմին, շունչ եւ հոգի, որոնց համատեղ ներդաշնակութիւնը միայն հնարաւորութիւն կ'ընձեռէ Աստուծմով ուրախանալու, Աստուծմով երջանիկ զգալու եւ Աստուծմով գոհանալու:»

*Զարթօնքի* եւ Հայկական Ընթերցասրահի շրջանակներուն համար մեծ հաճոյք մըն էր հայր սուրբը ընդունիլ Ընթերցասրահի 2016 Նոյեմբեր 13-ին կազմակերպած *Միտքի մտերիմ հաւաքոյթ*ին, ուր ան ցուցաբերեց միտքի եւ խօսքի լայն ու խոր ըմբռնողականութիւն, մտածելու, միտքերը դասաւորելու եւ արտայայտուելու բացառիկ կարողութիւն:

Հոգեւորականներու կենսագրութեան մէջ միշտ կը շեշտուի գլխաւոր յատկանիշ մը՝ ծառայութիւն: Ներկայ սպառողապաշտ դարաշրջանին՝ երբ բոլոր արժէքները կը ձեւաւորուին ապրանքայնութեան ծիրին մէջ, ծառայութեան նշանաբանը կրնայ դառնալ չահագործումի քօղ մը, դրամաշինութեան ծածկ մը: Գաբրիէլ վարդապետ Սարգսեան՝ փիլիսոփայ մտաւորական մը, եգիպտական կեցութեան ընթացքին դրսեւորեց ծառայութեան մը բնորոշ բոլոր *իրական* յատկանիշները:

Զ.

## ԱՆՎՏԱՆԳԱՅՆԱՑՈՒՄ. ՀԱՍԱՐԱԿՈՒԹԵԱՆԸ ՎԵՐԱՀՍԿԵԼԻ ԴԱՐՁՆԵԼՈՒ ՄԻՋՈՑ

1

ղացումը, որը չի վախենայ մրցակցութիւնից: Եթէ մենք վախենում ենք թուրքական ներդրումներից, ապա մեր հակաքայլը պէտք է լինի հայկական ներդրումները Թուրքիայի արեւելեան շրջաններում, հակառակ դէպքում «Թուրքը մնում է Թուրք» մտածելակերպի շրջանակներում վարած մեր քաղաքականութիւնից միշտ օգտուելու է ռուսական ուժը:

Հայաստանի երրորդ նախագահի օրօք ամենաանվտանգայնացուած հարցը Լեռնային Ղարաբաղի հիմնախնդիրն է: Անշուշտ, պատերազմական իրավիճակը շարունակւում է, Արցախում ե՛ւ Հայաստանի արեւելեան շրջաններում մշտապէս կարելի է զգալ պատերազմի մահաբեր շունչը, սակայն չնայած այդ էքզիստենցիալ վտանգի առկայութեանը, այս հարցը լիարժէքօրէն անվտանգայնացուել է, Արցախի անունով հանդուրժելի է դառնում խւրաքանչիւր անօրինութիւն: Յաճախ ենք լսում, որ մենք գտնւում ենք պատերազմական իրավիճակում, որի պատճառով պէտք է սահմանափակենք մեր ծախսերը մի շարք ոլորտներում, այդ պատճառով տնտեսական աճը ցածր է, աշխատավարձերը չեն բարձրանում եւ այլն, եւ այլն: Միով բանիւ՝ ամէն ինչ յանուն սահմանի եւ Արցախի:

Պատերազմական իրավիճակում գտնուող խւրաքանչիւր երկրի համար բնական են սահմանափակումները, եւ ժողովրդի մեծամասնութիւնը առարկութիւններ չի ունենում, սակայն անընդունելի է, որ դրանք տարածւում են միայն հասարակ քաղաքացիների վրայ: Անընդունելի է, որ այդ նոյն բանակից կարող են գողանալ, որ ուժային կառոյցներում կարող է կոռուպցիան ծիլեր տալ: Ու միեւնոյն ժամանակ՝ քաղաքացիները պէտք է լռեն այդ մասին, որպէսզի «Թշնամին չիմանայ»: Այդ լռութեամբ մենք դառնում ենք մեր իսկ ամենամեծ թշնամին, մենք աչք ենք փակում յանուն բանակի եւ անվտանգութեան պատրուակով ապօրինութիւնների վրայ, սակայն այդկերպ աւելի շատ ենք վնասում սեփական երկրի սահմանների անվտանգութեանը:

Արտաւոր երեւոյթների մասին խօսելը դաւաճանութեան նման մի բան է դարձել, քանի որ ադրբէջանական լրատուամիջոցների համար տեղեկատուական հարուստ աղբիւր է դառնում: Ֆիզիկական անվտանգութեան խնդիր ունեցող խւրաքանչիւր երկիր պէտք է հոգայ նաեւ տեղեկատուական անվտանգութեան մասին, սակայն դա չի նշանակում առկայ խնդիրների անտեսում, դա չի նշանակում վախենալ, լռել եւ կծկել: Լռութիւնից մեր անվտանգութիւնը խարխլւում է, այլ ոչ թէ ամրապնդւում:

Անվտանգայնացուած թեմաները ինդիկատորներն են այն բանի, թէ ինչպիսի ներքին եւ արտաքին քաղաքականութիւն են վարում տուեալ երկրի իշխանութիւնները: Օրինակ, եթէ Հայաստանում որեւէ արեւմտամէտ ուժ գայ իշխանութեան, ինչպէս, օրինակ, եղաւ Վրաստանի պարագայում վարդերի յեղափոխութիւնից յետոյ եւ մասնաւորապէս Սաակաշվիլու իշխանութեան տարիներին, ապա կ՚անվտանգայնացուի Ռուսաստանից տարբեր ոլորտներում չափազանց մեծ կախուածութեան հիմնահարցը: Հայաստանի հեռահաղորդակցութեան, էներգետիկ, ռազմական եւ մի շարք այլ ոլորտներ տոտալ կախուածութեան մէջ են գտնւում Ռուսաստանից, որն էլ աւելի մեծ ռիսկերի պատճառ կը դառնայ Ադրբէջանի հետ հնարաւոր պատերազմի ժամանակ, եթէ Հայաստանը բաւարար լոյալութիւն չցուցաբերի, սակայն իշխող քաղաքական ուժի պատկերացումներում այս ամէնը էքզիստենցիալ վտանգ չի դիտարկւում:

Քաղաքական այս մանիպուլեացիային դիմագրաւելու միակ տարբերակը այլընտրանքային մեդիայի, խօսքի ազատութեան եւ ժողովրդավարութեան զարգացումն է, քաղաքացիական ինքնագիտակցութեան բարձրացումը, որով հնարաւոր կը լինի ոչ միայն մտածել սահմանային եւ զուտ ֆիզիկական անվտանգութեան մասին, այլ դիտարկել մեր անվտանգութիւնը բազմաշերտ համակարգում, որտեղ ռազմական գործօնը նոյնքան կարեւոր է, որքան տնտեսական անկախութիւնը, կիբերանվտանգութիւնը, էներգետիկ անկախութիւնը եւ անվտանգութեան այլ տեսակները:

*Անալիտիկոն*, Յուլիս 2017

ԽՈՀԵՐ

# ԱՆԿԱՐԵԼԻ ԴԱՐՁԱԾ ԿԱՐԵԼԻՈՒԹԻՒՆՆԵՐ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

Հնչակեան եւ Դաշնակցութիւն կուսակցութիւնները, իրենց սկզբնաւորութենէն ի վեր, անկեղծօրէն թէ ոչ-անկեղծօրէն, արծարծած էին միութեան հարցը: Միութեան խնդիրը *Դրօշակ* նոյնիսկ կը տանի մինչեւ 1890 թուական, Հնչակեաններու Գում-Գաբուի յայտնի ցոյցէն անմիջապէս ետք, երբ նոր կը կազմաւորուէր Դաշնակցութիւնը(1): Երկու կուսակցութիւններ, մէկը՝ իր «նուաճումներու» ցանկին մէջ արդէն ունէր Գում-Գաբուն, միւսը՝ դեռ նոր կը կազմաւորուէր, կը սկսէին քննարկել միացումի հարցը: Բանակցութիւնները կը ձախողին՝ երկու կողմերու փոխադարձ ամբաստանութիւններով: Բայց, միեւնոյնն է, միութեան հարցը առաջարկուած էր: Կարելիութիւն մը:

1897-ին Վերակազմեալ Հնչակեան Կուսակցութիւնը Լոնտոնի մէջ կ'որոշէ ստանձնել Դաշնակցութեան հետ միութեան նախաձեռնութիւնը, զոր կը յայտարարէ իր պաշտօնաթերթ *Մարտ*ին մէջ. «Հնչակեան եւ Դաշնակցական Կուսակցութիւններու միութեան խնդիրը օրուան հարց մըն է: Ընդհանուր հայ ազգը այդ միութեան տենչացող է. հանրային այս փափագը որ Հնչակեաններուն ալ փափագն է, իրականացնելու համար Կուսակցութիւնս որոշումներ տուաւ ու դիմումներ ըրաւ: Աւելորդ չենք համարիր այս ձեռնարկները համառօտաբար ծանուցանել:»(2)

Հետաքրքրական է, որ Նազարբէկեանի «հին» Հնչակեանները եւ Վերակազմեալները իրարու միջեւ միութեան խնդիր չէին դրած, քանի որ երկուքն ալ ինքզինքնին կը համարէին միակ վաւերական Հնչակեանները:

Կը սկսի բազմաչարչար նամակագրութեան շրջան մը Վերակազմեալներուն եւ Դաշնակցութեան միջեւ: Վերակազմեալներէն Սվազլեան 1898-ին կ'երթայ Ժընեւ եւ կը հանդիպի դաշնակցականներու հետ, առանց ոչ մէկ շօշափելի արդիւնքի: 1898-ի վերջերը վերակազմեալները կը մեղադրեն դաշնակցականները միութեան գործը ձախողցնելու համար. «[Ի]ր մէկ տարուան աշխատութիւնները հաստատապէս համոզեցին Հնչակեան կուսակցութիւնը թէ ո՛չ միութիւն եւ ոչ իսկ համերաշխ գործունէութիւն յուսալ հնարաւոր է որքան ատեն որ Դաշնակցական կուսակցութեան վարիչը միութեան խնդրին մէջ Ժընեւի խմբակն է:»(3) *Դրօշակ* կը հրատարակէ 15 Նոյեմբեր-Դեկտեմբեր 1899 թուակիր հանրայայտ Յաւելուածը, ուր կը բողոքէ՝ թէ Վերակազմեալներն իրենց բարոյական անբարենպաստ պայմաններուն պատճառով անկարող են միութեան հարցի քննարկումը շարունակել եւ թէ ամենէն աւելի խանգարիչ հանգամանքը Արփիար Արփիարեանի գոյութիւնն է Վերակազմեալներու Կեդրոնական Կոմիտէին մէջ: Այսպէս վերջ կը դրուէր միութեան տուեալ փուլի նամակագրութիւնները:

Այս ընթացքին կը կատարուի ամենէն կատակերգական դէպքը: Վերակազմեալները Արփիարեանի գլխաւորութեամբ կ'որոշեն Թրքական բանտերը համտեսած Յարութիւն Ճանկիւլեանը ոչ-պաշտօնական հանգամանքով Ժընեւ ղրկել՝ հանդիպելու *Դրօշակ*ի ներկայացուցիչներուն հետ: 1897 Յունիսին Ճանկիւլեան կ'երթայ Ժընեւ, կը հանդիպի Արմէն Գարոյի, Ռուստոյի, Վահանի եւ դաշնակցական այլ ընկերներու հետ: Վերջիններս իրեն կը համոզեն հեռանալ Վերակազմեալներէն՝ «փաստելով» անոնց անբարոյական վիճակը: Ճանկիւլեան երկու-երեք հանդիպումի ընթացքին կը համոզուի եւ Լոնտոն կը վերադառնայ դաշնակցական համակիր մը դարձած: Ինչպէ՞ս կարելի է մեկնաբանել: Դաշնակցութեան կարողութի՞ւնը մարդիկ համոզելու եւ գրաւելու գործին մէջ, թէ Վերակազմեալներուն անճարակութիւնը գտնելու համոզուած անդամներ: Ամէն պարագայի, ասիկա կրնայ ցոյց տալ բանակցութիւններուն լրջութեան աստիճանը(4):

Նման փորձեր բազմաթիւ անգամներ կատարուած են՝ առանց յաջողութեան: Կարելիութիւններ՝ որոնք կը ձախողէին: Բայց կարելիութիւններ՝ որոնց փորձը կարելի էր:

Այս շրջանին էր որ Երուանդ Օտեան 1896-ին Աթէնքի մէջ կը խմբագրէր *Միութիւն* լրագիրը, որ, իր բառերով, «որոշ ուղղութիւն մը ունէր, որ է «միացնել բոլոր յեղափոխական կուսակցութիւնները»:»(5)

Օտեան, որ 1896-ին *Միութեան* մէջ միութիւն կը քարոզէր (լրջօրէ՞ն թէ եգիծաբար), 1912-ին կը յիշէր՝ թէ 1899-1900 սահմանագլուխին, Պոլսոյ *Հայրենիք* օրաթերթի նախկին խմբագիր Յովհաննէս Շահնազար կը հասնի Լոնտոն.

«Շահնազար մասնաւոր նպատակով մը եկած էր Լոնտոն, այն է՝ Դաշնակցական եւ Հնչակեան կուսակցութիւնները իրարու հետ միացնել:

«Այս կուսակցութիւններու միացումը փիլիսոփայական քարին կամ յաւիտենական շարժումին պէս խնդիր մըն էր, որուն վրայ շատեր միտք յոգնեցուցած էին առանց արդիւնքի մը հասնելու:

«Շահնազարէն առաջ ու իրմէ ետքն ալ շատեր փորձեցին այդ միացումը՝ առանց յաջողցնելու:

«Յեղափոխականներու մէջ «միանանք ու Հայաստանը փրկենք» վարդապետութիւնը այնքա՜ն կը յեղյեղուէր որ օր մը Սուրէն Պարթեւեան *Վաղուան ձայն*ին մէջ գրեց.

««Աստուածնիդ սիրէ՛ք, միացէ՛ք ու մեզ ձենէ փրկեցէ՛ք»:»(6)

Արփիար Արփիարեան, որ այնքան գրիչ թափած էր միութեան համար, 1902-ին կը գրէր հայոց... անմիաբանութեան մասին.

«Մեր ազգային արդի կեանքը իր ամբողջութեանը մէջ կատարելապէս ներդաշնակ է, իր անմիութեամբը: - Եւ միթէ առանց անմիութեան ներդաշնակութիւնը կը ստեղծուի՞: - Պատկերացնենք քանի մը գծով:

«Մէկ Հայաստան, եւ վրան երեք պետութիւն՝ թիւրքը, ռուսը, պարսիկը:

«Մէկ Հայաստանեայց Եկեղեցի ու երեք կաթողիկոսութիւն՝ Էջմիածին, Սիս, Աղթամար:

«Մէկ քրիստոնէական կրօնք ու իրեք դաւանանք՝ Հայկական, Թրքահայ աշխարհաբար, ռուսահայ աշխարհաբար:

«Մէկ Յեղափոխութիւն ու իրեք Կուսակցութիւն՝ Արմենական, Դաշնակցական, Հնչակեան:»(7)

Միացում երբեք տեղի չունեցաւ եւ չէր կրնար տեղի ունենալ: Ինչո՞ւ: Որովհետեւ կը գտնուէր խմբային պատկանելիութեան հարցը. կամուած էին խմբային ուժեղ ինքնութիւններ՝ իրենք իրենց մէջ գալարուող, թաւալուող ու ծեփուող: Միացումի համար նախ պէտք է լուծուէր ինքնի (self) հարցը, այն ինքնը՝ որ ստացած էր ներքնակեդրոն եւ ոչ թէ հանրակեդրոն կամ առաւել եւս հանրածաւալ կեցութիւն: Ո՞ր Հնչակեանը կամ դաշնակցականը պատրաստ էր *չԸԼԼԱԼ* Հնչակեան կամ դաշնակցական եւ *ԸԼԼԱԼ* երրորդ կուսակցութիւն մը: Կարելի է առարկել, որ 1921-ին երեք կուսակցութիւններ՝ Արմենական, Վերակազմեալ Հնչակեան եւ Սահմանական Ռամկավար միացան կազմելու համար այսօրուան Ռամկավար Ազատական Կուսակցութիւնը: Բայց երեք կուսակցութիւններն ալ տկար ու քայքայուած վիճակի մէջ կը գտնուէին եւ պէտք ունէին նոր խմբային ինքնութեան, որ իրականացաւ չորրորդ կուսակցութեան ընդմէջէն:

Հակառակ Օտեանի երգիծանքին, Պարթեւեանի ձանձրոյթին եւ յաջորդական ձախողութիւններուն, միութեան գաղափարը սեղանի վրայ դրուած հարց մը եղած է: Եղած է կարելիութիւն մը:

Այսօ՞ր: Կրնա՞յ այս կարելիութիւնը՝ գէթ իբրեւ կարելիութիւն, կեանքի կոչուիլ: Կրնա՞յ մէկը գործնական կարծիք արտայայտել միութեան մասին՝ այլ ոչ թէ լոկ համերաշխ գործակցութեան: Հակառակ ձախողութիւններուն, ԺԹ. դարու վերջաւորութեան եւ Ի. դարու սկիզբները կուսակցութիւններուն մէջ կը գտնուէին միութեան նկատմամբ հաւատք տածող համոզուած մարդիկ: Այսօր միութեան նկատմամբ ոչ մէկ համոզուած անձ կը գտնես կուսակցութիւններէն ներս: Կորսուած կարելիութիւն մը:

Մէկ կողմ ձգենք «ազգային միասնականութիւն» նշանաբանը՝ անմիաբանութեան ներկայ տարափին մէջ: Արփիարեանի 1902-ի անմիաբանութեան ցանկը շատ կարճ է այսօրուայ համար:

Իսկ միութիւնը՝ միութիւն է: Միութիւնը՝ տարբեր պարբերականութիւններով պաշտօնապէս քով քովի նստիլ չէ: Միութիւնը՝ քով քովի նստելու պաշտօնականութեան հերքումն է, անիկա համայնական ինքն է՝ ուր քով քովի նստիլը առօրեայ բնազդ մըն է: Միութիւնը՝ տարբերու-

4

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Իրաքի Հայոց Թեմ Ծառայութեան Մեկնելուն Առիթով

**ՀՈԳՇ. ՏԷՐ ԳԱԲՐԻԷԼ ՎՐԴ. ՍԱՐԳՍԵԱՆ**

Պիտի Մատուցէ

**ՈՒԽՏԻ Ս. ՊԱՏԱՐԱԳ**

**Կիրակի, 10 Սեպտեմբեր 2017-ին**

Ս. Գրիգոր Լուսաւորիչ Եկեղեցւոյ Մէջ

**ՈՂՋԵՐԹԻ ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԻՒՆ**

ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

## Հ.Բ.Ը.ՄԻՈՒԹԻՒՆ - Գահիրէ

## ՍԱԹԵՆԻԿ Ճ. ՉԱԳԸՐ ՀԻՄՆԱԴՐԱՄ ԿՐԹԱԿԱՆ ՕԺԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

### 2017-2018 ՏԱՐԵՇՐՋԱՆ

Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի Սաթենիկ Ճ. Չագըր Հիմնադրամը 2017-2018 տարեշրջանին եւս կրթաթոշակ պիտի յատկացնէ արժանաւոր ուսանողներու, որոնք կրնան անձամբ ներկայանալ Հ.Բ.Ը.Մ.ի Հելիոպոլսոյ գրասենեակը, լեցնելու համար յատուկ հարցաթերթիկը, իրենց հետ ունենալով 2 լուսանկար, ծննդեան վկայականի պատճէն, դիմումնագիր մը և վերջին երկու տարիներու իրենց վիճակացոյցները:

Աղեքսանդրիոյ թեկնածուները՝ պարտին իրենց դիմումնագրերը ներկայացնել Աղեքսանդրիոյ Հ.Բ.Ը.Մ.ի գրասենեակը:

Սաթենիկ Ճ. Չագըր Հիմնադրամէն արդէն իսկ կրթաթոշակ ստացողները պարտին ղրկել նախորդ տարեշրջանին ա. և բ. կիսամեայի կամ տարեվերջի քննութեանց արդիւնքները, անմիջապէս որ զանոնք ստանան իրենց յաճախած կրթական հաստատութիւններէն:

Բոլոր տեսակի դիմումնագրերը (նոր և վերանորոգելի) ընդունելու վերջին պայմանաժամն է՝ Գահիրէի և Աղեքսանդրիոյ համար՝ 30 Սեպտեմբեր 2017:

Ծ.Ն. Յաւելեալ մանրամասնութիւններու համար հեռաձայնել 22916444- 24151127-24152478:

## ՍԱԹԵՆԻԿ Ճ. ՉԱԳԸՐ ՀԻՄՆԱԴՐԱՄ ԿՐԹԱԿԱՆ ՄՐՑԱՆԱԿՆԵՐ

Գահիրէի ՀԲԸՄ-ի Սաթենիկ Չագըր Հիմնադրամը, 2016-2017 տարեշրջանին համար, դրամական մրցանակներ պիտի տրամադրէ եգիպտահայ համայնքին պատկանող բոլոր այն ուսանողներուն, որոնք փայլուն արդիւնքներ կը բերեն որեւէ կրթական հանգրուանի աւարտական քննութիւններուն:

Այսպէս, մրցանակներ պիտի տրամադրուին նախակրթական կրթութեան աւարտական կարգերու՝ պետական կամ համազօր քննութիւններու ներկայացող բոլոր այն աշակերտներուն, որոնք 90% եւ աւելի արդիւնք բերած են:

Դրամական մրցանակները իւրաքանչիւր կրթական հանգրուանի համար են եւ պիտի տրամադրուին հետեւեալ ձեւով.

| | |
|---|---|
| Նախակրթարանի աւարտական դասարան | Ե.Ո. 250.- |
| Պատրաստականի աւարտական դասարան | Ե.Ո. 500.- |
| Երկրորդականի աւարտական դասարան | Ե.Ո. 1000.- |
| Համալսարանի աւարտական տարի | |
| Ա- Շատ լաւ արդիւնք | Ե.Ո. 1500.- |
| Բ- Գերազանց արդիւնք | Ե.Ո. 2000.- |
| Մագիստրոսական աստիճանի աւարտին | Ե.Ո. 2500 |
| Դոկտորական աստիճանի աւարտին | Ե.Ո.. 5000 |

Գահիրէի դիմորդները իրենց ձեռք բերած կրթական արդիւնքը հաստատող փաստաթուղթը եւ անկէ պատճէն մը պարտին ներկայացնել ՀԲԸՄ-ի Գահիրէի գրասենեակը:

Աղեքսանդրիոյ դիմորդները պարտին նոյները ներկայացնել Աղեքսանդրիոյ ՀԲԸՄ-ի վարչութեան:

Բոլոր դիմորդները ընդունելու վերջին պայմանաժամն է 30 Սեպտեմբեր 2017:

Մրցանակներու յանձնումը թէ՛ Գահիրէի եւ թէ՛ Աղեքսանդրիոյ մէջ պիտի կայանայ հանդիսաւոր իրադրութեամբ:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ ԸՆԴԴԷՄ ԱՆԿԱԽ ՄԱՄՈՒԼԻ. ԻՆՉՈ՞Ւ ԵՆ...

2

պէտք է հրապարակուեն ոչ թէ զանգուածային լրատուամիջոցներում, այլ միայն Հայաստանի հրապարակային ծանուցումների պաշտօնական *azdarar.am* կայքում: Այս կայքը արդարադատութեան նախարարութեան ենթակայութեամբ է գործում: Այս տեմպերով եթէ շարունակուի, Հայաստանի վարչապետ Կարէն Կարապետեանը պէտք է հռչակուի որպէս մամուլի թշնամի»:

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Հինգշաբթի, 21 Սեպտեմբեր 2017

Տօն է

**ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԱՆԿԱԽՈՒԹԵԱՆ ՀՌՉԱԿՄԱՆ**

Այս առթիւ Կիրակի, 24 Սեպտեմբեր 2017-ին յաւարտ Սուրբ եւ Անմահ Պատարագի պիտի կատարուի

***Հանրապետական Մաղթանք***

Սկիզբ Ս. Պատարագի առաւօտեան ժամը 10:00-ին

Երթ ու դարձը դիւրացնելու համար հաստատուած է հանրաշարժի սպասարկութիւն:

Սալահ Էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 8:45-ին

Այծեմնիկ Հանգստեան Տան շէնքին առջեւէն ժամը 9:00-ին

Կը հրաւիրենք մեր համայնքի զաւակներն ու հաւատացեալները ներկայ ըլլալու արարողութեանց, աղօթելու մեր Հայրենիքի անկախութեան ամրապնդման եւ մեր ժողովուրդի բարօրութեան համար:

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## ԱՆԱՀԻՏ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ ՍՐԻՆԳԸ, ՆԱՆԱՐԸ ԵՒ ՄԱՆԿԱՎԱՐԺՈՒԹԻՒՆԸ՝ ՖԵՄԻՆԻՍԹԱԿԱՆ ՍԼԱՑՔ ՄԸ ԵԳԻՊՏԱՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻՆ ՄԷՋ

2

թէ յաւերժ մնայ դպրոցը, որ լոյս է տաքութիւն եւ զօրութիւն, ինչպէս արեւը: Այս գեղազարդումը կը պարտինք Տիկին Անահիտ Սարգիսեանի, որ իր ամուսինին՝ խմբավար Հայկ Սարգիսեանի հետ դպրոցի գեղարուեստական ոգին միշտ վառ կը պահէին:»(56)

Ամբողջ պատին գծուած գոյնզգոյն մարգարտածաղիկներ եւ չորս մեղմօրէն արտայայտիչ բառեր՝ արդէն կը կրեն Անահիտի անհերքելի դրոշմը:

Ամփոփելով այս բոլորը կարելի չէ չտեսնել մանկավարժ Անահիտը՝ իրեն բնորոշ դէմքով: Կազմակերպելու ունակութիւն, երգ եւ արտասանութիւն մարզելու կարողութիւն, մանկական երգչախումբի խմբավարութիւն, դաշնակի նուագակցութիւն, ձեռային աշխատանք, նկարչութիւն (մարգարտածաղիկներ): Եւ այս բոլորը գիրար լրացնող, փոխներթափանցող, մշտայար դաշնակցութեամբ ընթացող:

Եգիպտոսի մէջ Անահիտ մնաց ածանցեալ, ոչ միայն իբրեւ «կողակից», այլ իբրեւ մտածող, մտածող մը՝ որ գիտելիքային աժէքը փորձեց ստանալ գործունէութիւններու եւ բնագաւառներու փոխներթափանցումներու ընդմէջէն եւ բուն գիտելիք/գիտելիքներուն ներսը գտնուող արժէքային համակարգէն, առանց արտաքին գրիռներու միջամտութեան: Հետեւաբար, աւելի ճիշդ պիտի ըլլար «ածանցեալ»-ի սահմանափակ ձեւականութիւնը փոխարինել աւելի պարփակուն ու կողմնորոշիչ բառով մը՝ «այլընտրանքային»: Իսկ այլընտրանքային ըլլալը՝ հիմնահոսանքի պարտադրանքներէն անդին չտեսնող գաղութի մը համար, կարեւոր առաւելութիւն մըն է:

(Վերջ 3)

ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

45. Ինքնուրոյն բանաստեղծութիւններ տպագրուած են *Ինքնագիր*, *Բագին* հանդէսներուն մէջ եւ այլուր:

46. Աւետիս Եափուճեան, «Գալուստեան Ազգային Մանկապարտէզի ամավերջի հանդէսը», *Արեւ*, 29 Ապրիլ 1986, 70-րդ տարի, Թիւ 20302, էջ 1:

47. Աւետիս Եափուճեան, «Գալուստեան Ազգային Մանկապարտէզի տօնածառը»: *Արեւ*, 29 Դեկտեմբեր 1986, 71-րդ տարի, Թիւ 20497, էջ 1:

48. Աւետիս Եափուճեան, «Գալուստեան Ազգային Մանկապարտէզի ամավերջի հանդէսը», *Արեւ*, 25 Մարտ 1987, 71-րդ տարի, Թիւ 20569, էջ 1:

49. Աւետիս Եափուճեան, «Գալուստեան Ազգային Մանկապարտէզի կաղանդի հանդէսը», *Արեւ*, 28 Դեկտեմբեր 1987, 72-րդ տարի, Թիւ 20790, էջ 1:

50. Աւետիս Եափուճեան, «Գալուստեան Ազգային Վարժարանի կաղանդի հանդիսութիւնը», *Արեւ*, 3 Յունուար 1990, 74-րդ տարի, Թիւ 21373, էջ 1:

51. Աւետիս Եափուճեան, «Գալուստեան Ազգային Վարժարանի ամավերջի հանդէսը», *Արեւ*, 31 Մարտ 1990, 74-րդ տարի, Թիւ 21446, էջ 1:

52. Աւետիս Եափուճեան, «Գալուստեան Մանկապարտէզի ամավերջի հանդէսը», *Արեւ*, 30 Մայիս 1990, 75-րդ տարի, Թիւ 21491, էջ 1:

53. Տնօրէնութիւն, «Ամանորի հանդիսութիւն Գալուստեան Ազգային Վարժարանի մէջ», *Արեւ*, 22 Յունուար 1991, 75-րդ տարի, Թիւ 21677, էջ 3:

54. Պարգեւ քհնյ. Նալպանտեան, «Գալուստեան Ազգային Վարժարանի ամավերջի հանդէսը», *Արեւ*, 9 Մայիս 1991, 75-րդ տարի, Թիւ 21762, էջ 3:

55. «Ամանորի հանդէս», *Արեւ*, 29 Յունուար 1992, 76-րդ տարի, Թիւ 21975, էջ 3:

56. Ներկայ մը, «Գալուստեան Ազգային Վարժարանի ամավերջի հանդէսը», *Արեւ*, 29 Ապրիլ 1992, 76-րդ տարի, Թիւ 22046, էջ 2:

## ԱՆԿԱՐԵԼԻ ԴԱՐՁԱԾ ԿԱՐԵԼԻՈՒԹԻՒՆՆԵՐ

3

թիւններու ընդունումն ու գործադրութիւնն է, փոխանակ բազմակեցութիւններու հակաճառութեան: Միութիւնը՝ հակամրցակցային է, մրցակցութիւնը միութեան թշնամին է: Միութիւնը՝ գիտելիքի տարբերակային-համակեցական անսահմանութիւն է, մարդկային գեղեցկութիւն: Միութիւնը՝ համյնավարութիւն է, բառին դասական եւ անհունօրէն մարդկային՝ բայց ոչ-խորհրդային, իմաստով:

Այսօր, դարձեալ մէկ կողմ ձգելով նշանաբանները եւ պաշտօնապէս քով-քովի նստիլները, «աւանդական» կուսակցութիւնները գործնականօրէն շատ աւելի կը յարաբերին ու կը համագործակցին իրենցմէ դուրս մարմիններու հետ քան իրենք իրենց միջեւ: Կացութիւնը շատ աւելի տարբեր չէր ժամանակին: Միայն թէ կարելի էր միութեան մասին խօսիլ ու փորձել բան մը ընել: Այսօր՝ կարելի չէ: Անկարելի դարձած կարելիութիւն մը:

(Վերջ 2)

ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Յաւելուած *Դրօշակի*, Ժընեւ, 15 Ապրիլ 1899, էջ 6:

2. «Միութեան խնդիրը», *Մարտ*, Լոնտոն, 15 Ապրիլ 1897, Ա. տարի, Թիւ 1, էջ 1:

3. «Միութեան խնդիրը», *Մարտ*, 20 Դեկտեմբեր 1897, Ա. տարի, Թիւ 7, էջ 27:

4. «Միութեան խնդիրը», *Մարտ*, 20 Յունուար 1898, Ա. տարի, Թիւ 8, էջ 31-32:

5. Երուանդ Օտեան, «Տասներկու տարի Պոլսէն դուրս 1896-1908», *Ժամանակ*, օրաթերթ, Կ. Պոլիս, 30 Սեպտեմբեր 1912 (Ն.տ.), Դ. տարի, Թիւ 1219, էջ 1:

6. Երուանդ Օտեան, «Տասներկու տարի Պոլսէն դուրս 1896-1908», *Ժամանակ*, 25 Հոկտեմբեր 1912 (Ն.տ.), Դ. տարի, Թիւ 1245, էջ 1:

7. Սկեպտիկ [Արփիար Արփիարեան], «Ժամանց. մակաբոյծ գաղափարներ», *Հայ հանդէս*, ազգային եւ գրական կիսամսեակ, Վենետիկ, 15 Սեպտեմբեր 1902, Ա. տարի, Թիւ 4, էջ 61:

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1798 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 21 ՍԵՊՏԵՄԲԵՐ 2017 ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 75 Ե. Դհկ.

عدد رقم ١٧٩٨ الخميس ٢١ سبتمبر ٢٠١٧


## ՀԱՅԱՍՏԱՆ-ՍՓԻՒՌՔ 6-ՐԴ ՀԱՄԱԺՈՂՈՎ

Սեպտեմբեր 18-20-ին Երեւանի մէջ կայացաւ Հայաստան-Սփիւռք 6-րդ Համահայկական Համաժողովը, վերնագիր ունենալով՝ *Փոխադարձ վստահութիւն, միասնականութիւն եւ պատասխանատուութիւն*։ Ան տեղի ունեցաւ Սարդարապատի եւ Հայաստանի Առաջին Հանրապետութեան հռչակումի 100-ամեակի, ինչպէս նաեւ էրեբունի-Երեւանի 2800-ամեակի նախաշեմին։ Կազմակերպութեան առանձին նիստեր զանազան նիւթերով։

Համագումարի նախօրէին, *Սիվիլնէթ* հարցազրոյց մը կը տեսագրէ լրագրող, պատմաբան, Հայկական Ուսումնասիրութիւնների Անի Կենտրոնի համակարգող Թաթուլ Յակոբեանի հետ։ Վերջինս բաւական լայնախոհ մօտեցումով կը փորձէ մատնանշել համագումարի լուրջ բացթողումները, միաժամանակ կարեւոր քննադատութիւններ ուղղելով Սփիւռքի լրատուամիջոցներուն եւ կազմակերպութիւններուն։ Նկատի ունենալով հարցազրոյցին խիստ շահեկանութիւնը, յարմար դատեցինք մեր կողմէ զայն ամբողջութեամբ գրի առնել եւ արեւմտահայերէնի վերածելով ներկայացնել ընթերցողներուն։ Մանր միջամտութիւններ կատարած ենք խօսակցական լեզուի սովորական հարթեցումի կապակցութեամբ։

*Չ.*

**Կարէն Յարութիւնեան – Պիտի գումարուի Հայաստան-Սփիւռք 6-րդ Համաժողովը, որուն օրակարգի հարցերն ու հիմնական թեմաներն են՝ «Հայաստանի տնտեսութեան զարգացում», «Տարածաշրջանային մարտահրաւէրներ եւ ազգային անվտանգութեան օրակարգ», «Արտաքին քաղաքականութեան օրակարգ եւ հայոց ցեղասպանութեան հետեւանքների վերացում» եւ «Հայապահպանութեան հիմնախնդիրներ»։ Կը կարծէ՞ք որ այս օրակարգը կը պատասխանէ մեր ունեցած մարտահրաւէրները, մանաւանդ Առաջին Հանրապետութեան հիմնադրումի 100-ամեակէն առաջ։**

Թաթուլ Յակոբեան – Իմ կարծիքովս ասոնք այնպիսի հարցեր են՝ որոնց շուրջ կարելի է հազար տարի խօսիլ։ Այսինքն անվտանգ թեմաներ են։ Կարելի է միշտ խօսիլ ասոնց մասին՝ առանց որեւէ արդիւնքի հասնելու։ Նախ ես կը կարծեմ որ Հայաստան-Սփիւռք համաժողովները չափազանց կարեւոր են։ Գաղափարը շատ լաւ եւ ճիշդ է։ Ով յղացած է այս գաղափարը եւ ինչպէս զայն յղացած է՝ չեմ գիտեր, բայց ան շատ ճիշդ գաղափար մըն է՝ եթէ չվերածուի ինչ-որ աչքակապութեան, եթէ իրականութեան մէջ այդ համաժողովները քննարկեն Հայաստանն ու Սփիւռքը մտահոգող բոլոր մարտահրաւէրները։ Այսօր Հայաստանի առջեւ կանգնած մարտահրաւէրներէն մէկն է արտագաղթը, որ կը հանդիսանայ ազգային անվտանգութեան ամենակարեւոր խնդիրը։ Մէկ թիւ մը նշեմ, որպէսզի հասկնալի ըլլայ թէ ինչ բանի մասին է խօսքը։ 10 տարի առաջուայ համեմատութեամբ, այս տարի Հայաստանի դպրոցական աշակերտներուն թիւը կը կրճատուի 25%-ով կամ 120 հազարով, իսկ բնակչութեան թիւը 10%-ով։ Այսինքն, վերջին 10 տարիներուն Հայաստանի արտագաղթը, եթէ կարելի է այսպէս անուանել, կը կազմէ 350 հազար մարդ։ Եւ եթէ Հայաստան-Սփիւռք համաժողովին մէջ ասիկա քննարկումի կարեւորագոյն թեմա չի դառնար, մնացած միւս հարցերը էական չեն։ Ինչո՞ւ քննարկումի թեմա չի դառնար փտածութիւնը (կոռուպցիան)։ Ինչո՞ւ քննարկումի թեմա չի դառնար աղաղակող ընտրակեղծարարութիւնը կամ ժողովրդավարութիւնը։ Ասոնք են որոնք պէտք է դառնան հիմնական թեմաները։ Համագումարին նշած թեմաները կարելի է միշտ քննարկել եւ օրակարգի վրայ պահել։ Բայց այնտեղ կը գտնուին թեմաներ որոնք մարտահրաւէրներ չեն ներկայացներ, օրինակ՝ «Հայոց ցեղասպանութեան հետեւանքների վերացում»-ը, մինչդեռ քննարկումի ամենակարեւոր խնդիրը պէտք է դառնար սպիտակ ցեղասպանութիւնը որուն այսօր կ'ենթարկուի նոյն ինք Հայաստանը։ Բայց, կը կրկնեմ, այս քննադատական խօսքերը ըսելով ես չեմ ուզեր նուաստացնել Հայաստան-Սփիւռք խորհրդաժողովներուն կայացումը։ Կը կրկնեմ, անոնք չափազանց կարեւոր են, պայմանով որ օրակարգը չըլլայ այնպէս ինչպէս դուք նշեցիք։

**Կ. Յ. – Թէեւ հետաքրքրական պիտի ըլլար օրակարգին մէջ այդ թեմաները արծարծել, բայց միաժամանակ պէտք է տեղի ունենան Սփիւռքի կամ ներքին հանրութենէն բխած առողջ քննադատութիւններ, առողջ մօտեցումներ։**



*Թաթուլ Յակոբեան*

Թ. Յ. – Անշուշտ։ Ընդհանրապէս, սփիւռքեան մամուլին մէջ վերջին շրջանին զարմանալի բան մը նկատած եմ։ Ես առ նուազն 15-20 տարի անդադար գրած եմ սփիւռքեան մամուլին մէջ եւ հետեւած եմ անոր։ Վերջին տարիներուն, ընդհանրապէս անհասկնալի բան մը կը կատարուի այնտեղ։ Մօտս յառաջացած է այն տպաւորութիւնը՝ որ սփիւռքեան մամուլը արդէն ուղղակիօրէն կը ղեկավարուի Բաղրամեան 26-ի կողմէ։ Ես որեւէ տեղեկութիւն չունիմ ասիկա հաստատելու համար, բայց կարդալով այն լրատուութիւնը որ գոյութիւն ունի սփիւռքեան լրատուամիջոցներու մեծ մասին մէջ, ինծի կը թուի թէ անոնք կանգնած են պարտականութիւններու առջեւ։ Ես չեմ կրնար պնդել որ սփիւռքեան լրատուամիջոցները Բաղրամեան 26-էն նաեւ գումար կը ստանան։ Բայց այն զգուշաւորութիւնը զոր կը նկատեմ ինծի ուղղակի կ'ապշեցնէ։ Եւ այստեղ կը տեսնեմ ինչ-որ համակարգուածութիւն, միտում, քանի որ զարմանալի է որ բոլորը միաբերան լռեն տուեալ թեմայի շուրջ, կարծէք Սփիւռքի մեր լրատուամիջոցները դարձած ըլլան Հայաստանի Բաղրամեան 26-ի կռունկին տակ գտնուող հեռուստաընկերութիւններ։

**Կ. Յ. – Թերեւս դրա՞մ կը ստանան։**

Թ. Յ. – Կը կրկնեմ, ես չեմ կրնար ըսել որ իրապէս դրամ կը ստանան ինչ-որ կէտէ որպէսզի, օրինակ, այս կամ այն թեմաները չլուսաբանեն։ Բայց ասիկա ինծի շատ դառնութիւն կը պատճառէ որովհետեւ ի վերջոյ սփիւռքեան լրատուամիջոցները կրնային դառնալ այն հարթակը ուր իրաւամբ, ազատ, հանգիստ քննարկուին համահայկական բոլոր խնդիրները։ Ասիկա շատ ցաւալի է։ Նոյնպէս ինծի կը զարմացնէ Հայաստան-Սփիւռք լրատուամիջոցներուն խորհրդաժողովները՝ որոնք կ'ընթանան նոյն ձեւով։ Բացառութիւն կը կազմեն քանի մը ելոյթներ, որոնք դարձեալ կը խլացուին։

Յատուկ կ'ուզեմ նշել հետեւեալը. ես երբեւէ կարօտ չեմ որեւէ սփիւռքեան ժողովի ելոյթ ունենալ կամ ներկայ ըլլալ։ Ես ասոր կարօտ չեմ։ Բայց կրնամ ըսել՝ որ յատուկ միտում կայ հետեւողականօրէն չհրաւիրել բոլոր այն լրագրողները՝ որոնք չեն կառավարուիր եւ կը փորձեն քննադատաբար մօտենալ խնդիրներուն։ Խօսքը անձիս մասին չէ։ Կը կրկնեմ, ես ասոր կարիքը չունիմ, ոչ ալ կարօտ եմ։ Բայց բոլոր այն լրագրողները՝ որոնք կը քննադատեն Հայաստանի արտագաղթը, ընտրակեղծարարութիւնը, անարդարութիւնը եւ սոցիալական պետութեան յղացքի ձախողումը, հետեւողականօրէն չեն հրաւիրուիր։ Ասիկա շատ, շատ մտահոգիչ երեւոյթ է։

**Կ. Յ. – Թաթուլ, մէկ կողմէ մենք կ'ակնկալենք որ սփիւռքեան կառոյցները, Սփիւռքի գործիչները, լրատուամիջոցները պէտք է մտահոգութիւն ցուցաբերեն Հայաստանի ժողովրդավարացումի, մարդու իրաւունքներու եւ նմանատիպ խնդիրներու վերաբերեալ, բայց միւս կողմէ կը մոռնանք որ այդ լրատուամիջոցները ճշգրիտ կառոյցներու հովանիի տակ կը գործեն եւ այդ կառոյցները իրենց ներքին կառավարումի առումով ժողովրդավարական չեն։ Ինչպէ՞ս կարելի է ընդհանրապէս ժողովրդավարու-**

☞ 3

## ԻՆՉՈ՞Ւ ՍԱՍՆԱՅ ԾՌԵՐԻ ԳՈՐԾՈՂՈՒԹԻՒՆԸ ՉԻ ԿԱՐՈՂ ՈՐԱԿՈՒԵԼ ՈՐՊԷՍ «ԱՀԱԲԵԿՉՈՒԹԻՒՆ»

Սասնայ Ծռեր խմբի գործողութիւնը չի կարող որակուել որպէս «ահաբեկչութիւն», չնայած վերջին շրջանում Հայաստանի քաղաքական իշխանութեան որոշ հատուածներ կրկին ձգտում են ակտիւացնել այդ թեման՝ օգտագործելով զանգուածային լրատուամիջոցներին ու, այսպէս կոչուած, ընդդիմութեանը։ Այս մասին *Epress.am*-ի հետ զրոյցում յայտարարել է Սասնայ Ծռեր խմբի անդամներ Պաւէլ եւ Արամ Մանուկեանների պաշտպան Յարութիւն Բաղդասարեանը։ Նա պնդում է, որ խումբն ապստամբութիւն է բարձրացրել, եւ Հայաստանի դատախազութիւնը պէտք է հիմնաւորէր, թէ ինչն է յանգեցրել նման գործողութիւններին։

Փաստաբանը նաեւ ընդգծում է, որ Սասնայ Ծռերի գործողութիւնը չի կարելի դիտարկել միայն ներհայկական տիրոյթում։

Բաղդասարեանը խօսում է Սասնայ Ծռերի դատավարութեան, խմբի անդամների քաղաքական դիրքորոշման, դատաւորի եւ ոստիկանութեան գործողութիւնների, փաստաբանների վրայ կիրառուող ճնշումների մասին։

*Epress.am*, 11 Օգոստոս 2017

## ԱՐՑԱԽԻ ԱՆԿԱԽՈՒԹԵԱՆ ՀՌՉԱԿՈՒՄԸ, ԻՆՉՊԷՍ Է ԴԱ ԵՂԵԼ

ԹԱԹՈՒԼ ՅԱԿՈԲԵԱՆ

1991 Թուականի Սեպտեմբեր 2-ից՝ Արցախի անկախութեան հռչակումից ընդամէնը մէկուկէս ամիս առաջ, Լեռնային Ղարաբաղի մարզի այն ժամանակուայ ղեկավարութիւնը եւ քաղաքական վերնախաւը բոլորովին այլ խնդիրներով էր զբաղուած։ Պատմութիւնը «եթէ»-ներ չի սիրում, բայց եթէ չլինէր Մոսկուայի օգոստոսեան ձախողուած խռովութիւնը, ապա Արցախում այսօր կարող էր լինել այլ սթաթիւս քօ եւ այլ քաղաքական իրավիճակ։

1991-ի գարնանը Խորհրդային Միութեան բանակի օժանդակութեամբ եւ անմիջական մասնակցութեամբ Ադրբեջանը իրականացրել էր «օղակ» գործողութիւնը՝ գրաւելով եւ իրենց տներից արտաքսելով հայկական 24 գիւղերի հազարաւոր բնակիչների։ Արցախում եւ Հայաստանում տիրում էր հիասթափութեան, տագնապի եւ անորոշութեան մթնոլորտ։ Այդ օրերին Ադրբեջանը յայտարարել էր, որ ամբողջովին հաւանութիւն է տալիս Խորհրդային Միութեան նախագահ Միխայիլ Գորբաչովի քաղաքականութեանը եւ կողմ է Խորհրդային Միութեան պահպանմանը, մինչդեռ Հայաստանը ընտրել էր անկախութեան եւ Խորհրդային Միութիւնից դուրս գալու ուղին։

Դեռ 1990-ի Օգոստոսի 23-ին Հայաստանը ընդունել էր Անկախութեան Հռչակագիր եւ ձեռնամուխ էր եղել Խորհրդային Միութիւնից դուրս գալու օրինական, իրաւական գործընթացին, մինչդեռ Ադրբեջանը մտադիր էր մնալ Խորհրդային Միութեան կազմում։ Երբ Գորբաչովը 1991-ի Մարտին

☞ 4

# ԾՆՈՂՆԵՐԻ ՅԵՏ ԲԱՐԴ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

**ԱՐՓԻ ՈՍԿԱՆԵԱՆ**

Ծնողներս միշտ ընդդիմանում ու հանդիմանում էին ինձ.
սկզբում պետական դրօշը չարփի տեղ կապելու
եւ կարմիր չրթներկ քսելու առիթով,
ապա՝ հագուկապիս չհետեւելու, չչպարուելու
եւ ինձ կանացի տեսքի չբերելու համար:
Նրանք դէմ էին, որ լինեմ ապրանք
կամ դառնամ տնային տնտեսուհի,
բայց դէմ էին նաեւ, որ սովորեմ ֆիզմաթ դպրոցում
ու դառնամ աստղաֆիզիկոս,
ապա դէմ էին, որ ընդունուեմ Թատերական ինստիտուտ
եւ դառնամ ռեժիսոր,
նրանք դէմ էին, որ ես շատ մեծ նուաճումներ ունենամ
եւ համաձայն չէին, որ դրանք լինեն փոքր:
Նրանք դէմ եղան, որ ամուսնանամ 17-ում,
իսկ 18-ս լրանալուն պէս՝
կեանքս էին ուտում, որ չեմ ամուսնանում:
Նրանց երբեք դուր չէր գալիս իմ այդ պահի ընկերուհին
եւ հանգամանքը, որ ընկերներս մեծ մասամբ տղաներ են,
կասկածելի էր թւում նրանց,
իսկ եթէ աղջիկներն ընկերներիս մէջ աւելի շատ էին լինում,
դա նրանց կասկածելի էր թւում նոյնիսկ էլ աւելի:
Նրանց երբեք դուր չէին գալիս տղամարդիկ,
որ դուր էին գալիս ինձ:
Նրանց դուր չէր գալիս, որ մեծամիտ եմ,
ապա դուր չէր գալիս, որ համեստ եմ պահում ինձ:
Նրանց դուր չէին գալիս իմ երկար փէշը եւ կարճ տաբատը:
Նրանք ընդդիմանում էին իմ բոլոր ցանկութիւններին,
եւ ամենեւին կարեւոր չէր, թէ ես ինչ եմ ցանկանում,
ինչ էլ դա լինէր, նրանք դիմադրելու էին,
ասես ես էի նրանց ծնողը,
իսկ նրանք՝ անցումային տարիքում մնացած
իմ պատանի երեխաները:
2016

# ՄԱՐԻԱ ՄՈՆԹԵՍՈՐԻԻ ՊԱՏՈՒԻՐԱՆՆԵՐԸ ԾՆՈՂՔԻՆ

1. Երեխաները կը դաստիարակուին իրենց շրջապատող միջավայրէն:
2. Եթէ երեխայի մը յաճախ քննադատեն, ան կը սորվի քննադատել:
3. Եթէ երեխայի մը յաճախ գովեն, ան կը սորվի գնահատել:
4. Եթէ երեխայ մը թշնամութիւն տեսնէ, ան կը սորվի կռուիլ:
5. Եթէ երեխայի մը հետ ազնիւ էք, ան կը սորվի արդար ըլլալ:
6. Եթէ երեխայի մը յաճախ կը ծաղրեն, ան սորվի ամչկոտ ըլլալ:
7. Եթէ երեխայ մը կ'ապրի ապահովութեան զգացումով, ան կը սորվի հաւատալ:
8. Եթէ երեխայ մը յաճախ կը վարկաբեկուի, ան կը սորվի յանցաւոր զգալ:
9. Եթէ երեխայի մը յաճախ հաւանութիւն կը տրուի, ան կը սորվի ինքզինքին հետ վայելչօրէն վերաբերիլ:
10. Եթէ երեխայի մը նկատմամբ յաճախ կը ցուցաբերուի հանդուրժողականութիւն, ան կը սորվի ըլլալ համբերատար:
11. Եթէ երեխայ մը յաճախ կը քաջալերուի, ան կը դառնայ ինքնավստահ:
12. Եթէ երեխայ մը կ'ապրի համերաշխ մթնոլորտի մէջ եւ կը զգայ իր պիտանիութիւնը, ան կը սորվի սէր գտնել աշխարհի մէջ:
13. Երեխայի մը մասին վատ մի խօսիք՝ ըլլայ իր ներկայութեան թէ բացակայութեան:
14. Կեդրոնացէք որպէսզի երեխայի մը մէջ զարգանան լաւ յատկանիշները, այնպէս որ վատին տեղ չմնայ:
15. Միշտ մտիկ ըրէք եւ պատասխանեցէք ձեզի դիմող երեխայի մը:
16. Յարգեցէք երեխան որ սխալ մը գործած է եւ պատրաստ է զայն սրբագրել հիմա կամ յետագային:
17. Պատրաստ եղէք օգնելու այն երեխային՝ որ փնտռտուքի մէջ է, եւ աննկատ մնալ այն երեխային՝ որ գտած է ամէն ինչ:
18. Օգնեցէք երեխայի մը յայտնաբերելու անծանօթ իրեր: Ասիկա ըրէք՝ միջավայրը լեցնելով հոգածութեամբ, զսպուածութեամբ, լռութեամբ եւ սիրով:
19. Միշտ երեխայի մը հետ վարուեցէք դրսեւորելով լաւ վարքագիծեր, միշտ անոնց տալով ձեր ունեցած լաւագոյնը:

# ՅԱՅԱՍՏԱՆԻ ԱԶԳԱՅԻՆ ՊԱՏԿԵՐԱՍՐԱՅՈՒՄ ԲԱՑՈՒԵՑ ԱՅՎԱԶՈՎԿՈՒ ԾՆՆԴԵԱՆ 200-ԱՄԵԱԿԻՆ ՆՈՒԻՐՈՒԱԾ ՑՈՒՑԱՅԱՆԴԷՍ

Սեպտեմբերի 15-ին Հայաստանի Ազգային Պատկերասրահում բացուեց հայազգի աշխարհահռչակ ծովանկարիչ Յովհաննէս Այվազովսկու ծննդեան 200-ամեակին նուիրուած *Արարում* ցուցահանդէսը:

Ցուցահանդէսի բացմանը ներկայ էր մշակոյթի նախարար Արմէն Ամիրեանը, արտաքին գործերի նախարար Էդուարդ Նալբանդեանը, կրթութեան եւ գիտութեան նախարար Լեւոն Մկրտչեանը, Ռուսաստանի նախագահի միջազգային մշակութային համագործակցութեան հարցերով յատուկ ներկայացուցիչ, Ռուսաստանի Արտաքին Գործերի Նախարարութեան յատուկ յանձնարարութիւններով դեսպան Միխայիլ Շվիդկոյը, պաշտօնատար այլ անձիք:

Ցուցահանդէսում ներկայացուած է 52 գեղանկար, 26 գրաֆիկական եւ 1 դեկորատիւ-կիրառական արուեստի նմոյշ, 20 վաւերագիր: Հայաստանում առաջին անգամ ցուցադրւում է Վենետիկի Մխիթարեան Միաբանութեան հաւաքածուի *Քաոս. Աշխարհի արարում* հռչակաւոր կտաւը:

Ցուցահանդէսը գործելու է մինչեւ 2018 թ. Յունուարի 15-ը:

Նշենք նաեւ, Սեպտեմբերի 15-16-ին Հայաստանի Ազգային Պատկերասրահի որմնանկարների դահլիճում գումարուեց *Ծովանկարչութեան սահմանները* միջազգային գիտաժողով՝ նուիրուած Այվազովսկու ծննդեան 200-ամեակին:

Յովհաննէս Այվազովսկու 200-ամեայ յոբելեանն ընդգրկուած է ԻՒՆԵՍԿՕ-ի 2017 թուականի յիշարժան տարեթուերի ցանկում:

# ՄՈՆՈՊՈԼԱՑՈՒԱԾ ՏՆՏԵՍՈՒԹԵԱՆ ՅԵՏԵՒԱՆՔՆԵՐԸ. ԿԱՐԱԳԸ ԹԱՆԿԱՑԵԼ Է ՄՕՏ ԵՐԿՈՒ ՅԱԶԱՐ ԴՐԱՄՈՎ. *ԺՈՂՈՎՈՒՐԴ*

*Ժողովուրդ* օրաթերթը գրում է. «Հայաստանում սննդամթերքի շուկայում այս տարուայ ընթացքում արձանագրուած թանկացումները պարզապէս ապշեցնում են: *Ժողովուրդ* օրաթերթի փոքրիկ հարցախոյզով պարզուեց, որ, օրինակ, կարագը Օգոստոսի ընթացքում, նախորդ ամսուայ համեմատ, թանկացել է միանգամից 3 տոկոսով, իսկ դրանից աւելի վաղ՝ Յունիսին, Մայիսի համեմատ, այն թանկացել էր 2.3 տոկոսով: Երէկուայ դրութեամբ President տեսակի կարագի մէկ կիլոգրամը խանութ- 4

# ՕՀԱՆ ԴՈՒՐԵԱՆ. ԾՆՆԴԵԱՆ 95-ԱՄԵԱԿ

Սեպտեմբերի 8-ին լրացաւ հայ մեծանուն դիրիժոր Օհան Դուրեանի (1922, Երուսաղէմ – 2011, Երեւան) ծննդեան 95-ամեակը: Բերում ենք իր խօսքերից քաղուածքներ.



*Օհան Դուրեանի*

**Մենք իրաւունք չունենք լռելու**

Սիրտս արիւնոտում է Հայաստանի ժողովրդի վիճակի համար: Թափուած արիւնը, բոլորիս անէծքը, նզովքը քրքրելու է ձեզ: Մտաւորականն իրաւունք չունի ասել՝ ես մտաւորական եմ, քաղաքականութեամբ չեմ զբաղւում, դա թուլութիւն է, յանցագործութիւն: Հայաստանը կործանւում է եւ մենք իրաւունք չունենք լռելու:

**Ապրել դժուար**

Եւ արուեստում, եւ արուեստից դուրս միշտ իրատեսօրէն եմ նայել իմ բոլոր նուիրումներին, առանց չափազանցումների ու առանց գերագնահատումի: Արել եմ այն, ինչը եղել է ազնիւ եւ ինչը սիրել եմ խորապէս: Կեանքում հեշտ ուղիներ չեմ փնտռել ոչ այն պատճառով, որ չեմ կամեցել, այլ որովհետեւ ես չէի ծնուել հեշտ ապրելու համար:

**Միայնութիւն՝ առանց կեցուածքի**

Շրջապատում ես այնպիսին եմ, ինչպիսին կամ: Դիւանագիտութիւն ասուածն ինձնից հեռու է եօթ սարով: Ինչ ասում եմ կամ անում, հոգուս թելադրանքով է, ներքին մղումով, անկեղծ ու անմիջական: Երբեք չեմ սիրել կեցուածք ընդունել: Հաճոյք եմ ստանում անկեղծ մարդկանցից, անշահախնդիր յարաբերութիւններից, անսուտ ու ազնիւ արուեստից: Սիրում եմ իմացականութիւնն ու խոհականութիւնը, սակայն գերադասում եմ յաճախ շփուել յուզական, անմիջական մարդկանց հետ: Ճշմարտութեան իրենց փնտռտուքի մէջ նրանք կեցուածք չեն ընդունում:

**Երջանկութիւն**

Ես երջանիկ մարդ եմ իմ կրած բոլոր մեծ ու փոքր դառնութիւններով հանդերձ:

**Երբ խօսում եմ**

Ընդհանրապէս չեմ կարողանում, գուցէ ճիշտ է ասել՝ չեմ սիրում շատ խօսել, արտայայտուել, պատմել: Այդպէս է: Հաղորդակցուող ու խօսքաշէն եմ, երբ նուագախմբի առջեւ եմ, երաժիշտների հետ, աշխատանքի, փորձերի ժամանակ: Աւելի յաճախ խօսում եմ... լռութեամբ, շարժումներով ու դիմախաղով՝ նուագավարելիս, երբ ազատօրէն բացում եմ հոգուս դռները: Կեանքում երբեք այդպէս չեմ կարող արտայայտուել: Ինքնամփոփ, անհաղորդ կամ լռակեաց չեմ, բայց շատերի պէս անկաշկանդ, արագ ու հապճեպ ինքնաբացայայտուող էլ չեմ:

**Մեծագոյն հարստութիւնը**

Մարդու մեծագոյն հարստութիւնը համարում եմ հաւատը՝ առողջ, բանական, ապրեցնող: Ինչպէ՞ս կարելի է չհաւատալ այն հզօր, գերագոյն, ամենաստեղծ ուժին, որ կայ մեզնից անկախ, մեզնից դուրս եւ տնօրինում է մեր կեանքն ու ճակատագիրը: Ինչ է մարդ կոչում այդ ուժը՝ Աստուա՞ծ, տիեզերական ոգի՞, թէ՞ մէկ այլ բան, կարեւոր չէ: Պէտք չէ որոշակիացնել... Պէտք է հաւատալ:

**Իմ ուսուցիչը**

Յաճախ անուններ ենք փնտռում, թէ ովքեր են եղել մեր ուսուցիչները՝ երեւի մեր երախտիքն արտայայտելու համար: Դիրիժորի իմ ճամբին ուղենիչ են եղել Սինգըրը, Պֆեֆէրը, Դեզորմիերը, Մարտինոնը: Ջափանիշ են եղել Ֆուրտվենգլէրը, ֆոն Կարաեանը, Տոսկանինին: Բայց իմ ամենամեծ ուսուցիչը Նորին Մեծութիւն երաժշտութիւնն է... այն բոլոր կոմպոզիտորները միասին, որոնց կոթողային գործերը փորձել եմ մեկնաբանել իրենց մտայղացման մեծագոյն յանգոյն եւ իմ հոգուց բխեցնելով: Մարդն իր ողջ կեանքում սովորում է: Սովորում է՝ երբեք չդադարելով զարմանալ: Աշխարհում որքան բան կայ, որ չգիտենք ու չենք էլ հասցնի իմանալ:

**Ապրել յանուն**

Երաժշտութեան մէջ է կեանքիս իմաստը: Եւ երջանիկ եմ, որ հնարաւորութիւն ունեցայ այդ մեծագոյն զգացումն ամէնուր եւ բազմիցս պարգեւել վաստակիս իրական գնահատողին՝ հանդիսատեսին:

**Երբ յոգնում եմ**

Իմ աշխոյժն ու տրտմութիւնը չափից դուրս մօտ են իրար: Երբ շատ յոգնած եմ լինում կամ ինչ-որ պատճառով վրդովուած, խուսափում եմ մարդկանցից: Երբ տրամադրութեան անկումներ եմ ունենում, միակ փրկութիւնս շփումն է մեր այգու ծառ ու ծաղկի եւ իմ սիրասուն կենդանիների հետ:

**Ներքին ցնծութիւն**

Երաժշտական աշխարհում իմ տեւական գործունէութեան ընթացքում շփուելով բազում կոլեկտիւների հետ, աշխատելով տարբեր երկրների, տարբեր ազգերի երաժիշտ-կատարողների հետ՝ ստեղծագործական փոխընկալման առումով ամէնից մեծ բաւականութիւնը ստացել եմ Գերմանիայում: Լայպցիգում՝ Գեւանդհաուզ Ֆիլհարմոնիկ Նուագախմբի հետ աշխատելիս իւրաքանչիւր համերգ ինձ համար եղել է իսկական 4

1

## ՀԱՅԱՍՏԱՆ-ՍՓԻՒՌՔ 6-ՐԴ ՀԱՄԱԺՈՂՈՎ

**Թիւն ակնկալել կառոյցէ մը կամ կառոյցներէ որոնք ժողովրդավար չեն ներքին կառավարումի առումով:**

Թ. Յ. – Հետաքրքրական իրավիճակ ստեղծուած է Հայաստանի պատմութեան մէջ, երբ սփիւռքեան գրեթէ բոլոր կառոյցները՝ որոնք ունին երկար տարիներու աշխատանքի փորձ, ինչ-որ տեղ կը համագործակցին Սերժ Սարգսեանի հետ: Միշտ այսպէս չէ եղած: Օրինակ, գիտենք որ առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանի ժամանակ, սփիւռքեան ամենահզօր կառոյցներէն մէկը՝ ՀՅԴ-ը, եւ իր հետ առնչուող միւս կազմակերպութիւնները լուրջ ընդդիմութեան մէջ էին եւ լուրջ խնդիրներ ունէին Լեւոն Տէր-Պետրոսեանի հետ, որ կ'արտայայտուէր մամուլին մէջ: Եւ ասիկա շատ առողջ երեւոյթ էր: Երբ կը թերթենք այդ ժամանակուայ մամուլը, կը տեսնենք որ Տէր-Պետրոսեանի նախագահութեան շրջանին գոյութիւն ունեցող բոլոր յոռի երեւոյթները օրը օրին գրուած են սփիւռքեան մամուլին մէջ: Յաջորդ նախագահի Ռոբերտ Քոչարեանի ժամանակ միանշանակ չէր իրավիճակը: Այսինքն, ոչ բոլորը կ'ենթարկուէին կամ կը փառաբանէին զայն: Սերժ Սարգսեանի ժամանակ իւրայատուկ իրավիճակ ստեղծուեցաւ երբ այդ կառոյցներուն մեծագոյն մասը, զարմանալիօրէն, սկսաւ շարունակ պաշտպանել Սերժ Սարգսեանը: Անշուշտ այստեղ խնդիր կայ, որովհետեւ մէկ մը որ այդ լրատուամիջոցները դուրս գան կարմիր գիծերու շրջանակէն եւ քննադատեն Սերժ Սարգսեանը, անմիջապէս դժուարութիւններու առջեւ կը կանգնին, քանի որ խնդիրներ կը ստեղծուին հովանաւորող ուժերուն համար: Եւ այս իմաստով, անշուշտ, սփիւռքեան մամուլէն մեծ ակնկալիքներ պէտք չէ ունենանք: Բայց ես չեմ ըսեր որ սփիւռքեան մամուլը անձնաւորէ եւ օր ու գիշեր դատապարտէ Սերժ Սարգսեանը կամ Հանրապետական Կուսակցութիւնը: Խօսքը պարզ երեւոյթներու մասին է: Ամէն օր Հայաստանը կը լքէ 100 հոգի: Ամէն օր Հայաստանի բնակչութիւնը կը պակսի 100 հոգիով: Եթէ ասիկա չի դառնար սփիւռքեան լրատուամիջոցներու եւ Հայաստան-Սփիւռք Համաժողովի քննարկումի թեմա, ապա անիմաստ կը դառնան այս համաժողովները: Կարծէք համաժողովի մասնակցողները աւելի շատ կու գան Սերժ Սարգսեանի կամ Սփիւռքի նախարարի հետ նկար մը ունենալու, կամ ինչ-որ անձնական հարցեր լուծելու կամ Հայաստանը պտըտելու համար: Ես կը կարծեմ որ եթէ Հայաստան-Սփիւռք համաժողովները, ինչպէս նաեւ Հայաստան-Սփիւռք լրագրողներու համաժողովները, այս ձեւով շարունակուին, յետագային, ցաւալիօրէն, անոնք պիտի որակազրկուին եւ դառնան անիմաստ: Մեղք է ասիկա, որովհետեւ նման համաժողովները չափազանց կարեւոր են եթէ անդրադառնան հայութեան յուզող առաջնային խնդիրներուն մասին: Անշուշտ ցեղասպանութեան խնդիրը կարեւոր է: Բայց քանի որ կը շարունակուի Հայաստանի սպիտակ ջարդը, պէտք է առաջնային դառնայ արտագաղթի թեման, փտածութեան թեման, որովհետեւ փտածութիւնը եւ միւս յոռի երեւոյթները արտագաղթի պատճառներէն մէկն են:

**Կ. Յ. – Թաթուլ, համաժողովը կը գումարուի Առաջին Հանրապետութեան 100-ամեակէն առաջ, բայց համաժողովի թեմաթիք քննարկումին մէջ որեւէ խօսք չկայ Առաջին Հանրապետութեան դասերուն եւ այլնի մասին: Ըստ քեզի, ի՞նչ նիւթ պէտք է քննարկումի թեմա դառնար եւ ի՞նչ պէտք է ըլլայ մեր քաղելիք ամենամեծ դասը:**

Թ. Յ. – Նայեցէ՛ք: Առաջին Հանրապետութեան 100-ամեակը կը համարեմ Հայաստանի ամբողջ պատմութեան ամենալուսաւոր կէտերէն մէկը որովհետեւ ԱՀ-ը ի վերջոյ հիմքը դրաւ նաեւ Խորհրդային Հայաստանին եւ մեր Հայաստանին: Չեմ ուզեր այստեղ մանրամասնութիւններու մէջ մտնել՝ ինչպէ՞ս ստեղծուեցաւ այդ Հանրապետութիւնը, որո՞ւն պարտադրանքով ստեղծուեցաւ, ինչո՞ւ ստեղծուեցաւ, եւ այլն: Այս բոլորը կը թողում մէկ կողմ: Ասիկա կը թողունք պատմաբաններուն: ԱՀ-ը չափազանց կարեւոր է որ քննարկուի այս համաժողովին եւ մանաւանդ այն կտրուածքով՝ որ ԱՀ-ը նշուի իբրեւ համայն հայութեան տօն եւ փորձ չկատարուի զայն կուսակցականացնել: Ես լսած եմ շատ մտահոգ ձայներ, որոնք կ'ըսեն թէ փորձ պիտի կատարուի զայն կուսակցականացնել: Ասիկա շատ, շատ վատ կ'ըլլայ: Կը կարծեմ որ այս համաժողովը պէտք է այս նիւթին անդրադառնայ, եւ անդրադառնայ անկեղծօրէն, որպէսզի ԱՀ-ը իրաւամբ նշուի իբրեւ համայն հայութեան տօն: Օրինակ մը տամ: Կարելի չէ Սեպտեմբեր 21-ը ՀՀՇ-ացնել: Նման բան կարելի չէ ընել որովհետեւ անիկա ՀՀՇ-ի տօնը չէ այլ համայն հայութեան տօնն է: Կը կարծեմ, նոյն ձեւով պէտք է վարուիլ ԱՀ-եան հետ: Եթէ Դաշնակցութիւնը փորձէ իրաւամբ այս տօնը, այս 100-ամեակը դարձնել համահայկական տօն, առաջին հերթին օգտակար եղած պիտի ըլլայ կուսակցութեան եւ կը կարծեմ պիտի խօսի Դաշնակցութեան վեհութեան եւ 127-ամեայ փառքի մասին: Կը կարծեմ որ ասիկա չափազանց կարեւոր է:

**Կ. Յ. – Շնորհակալութիւն Թաթուլ:**

ԽՈՀԵՐ

# ՀԱՅԱՍՏԱՆ-ՍՓԻՒՌՔ

### ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

ՀԱՅԱՍՏԱՆ-ՍՓԻՒՌՔ 6-ՐԴ ՀԱՄԱԺՈՂՈՎ

Կ'ուզեմ հարցնել 2014 թուականի Հայաստան-Սփիւռք 5-րդ Համաժողովին մասնակցած Սփիւռքի եւ Հայաստանի աւելի քան 1000 ներկայացուցիչներուն (այս թիւը Սփիւռքի Նախարարութեան պաշտօնական յայտարարութիւնն է) եւ կազմակերպիչներուն, թէ այսօր անոնցմէ քանի՞ հոգի կրնայ յիշել նիստերուն նիւթերը՝ առանց դիմելու համացանցին, քանի՞ հոգի ցանկութիւն ունեցած է հետապնդել նիւթերը՝ հիմնուելով համագումարի դրոյթներուն վրայ կամ ազդուելով անոնցմէ: Վերջապէս, ներկաներէն եւ կազմակերպիչներէն քանի՞ հոգի փորձեց 5-րդ Համագումարը ներքնապէս ու գաղափարապէս կապել 2017 Սեպտեմբեր 18-20-ին կայացած 6-րդ Համագումարին հետ, գտնել շարունակութիւններ, միացումներ, տարբերութիւններ, խզումներ: 6-րդի նախօրեակին չգտայ 5-րդը արժեւորող եւ ընդհանրապէս զայն յիշատակող գրութիւններ, որպէսզի անցում տեղի ունենար դէպի 6-րդը: Անցում՝ հարթ, սահուն, շաղկապուած կամ նոյնիսկ *գիտակցաբար* ընդհատուած, եւ ոչ թէ թռիչքային ոստում դէպի երկրորդ կէտ մը՝ անտեղեակ, անգիտակ, անտարբեր, անհոգ, անփոյթ, անզգայ նախորդէն:

Իսկ ընտրուած նիւթերու կրաւորականութեան մասին կարելի է կարդալ Թաթուլ Յակոբեանի կարծիքը *Ջահակիրի* այսօրուայ առաջնորդող հարցազրոյց-յօդուածին մէջ: Յակոբեան ամբողջապէս իրաւացի է երբ կ'ըսէ՝ թէ հայութեան ամենէն այժմէական նիւթերէն մէկը՝ արտագաղթը, կը բացակայի Համաժողովի օրակարգէն:

Արդարեւ, ի՞նչ փոխուած է Հայաստան-Սփիւռք բոլոր համագումարներէն ետք երկխօսութեան առումով, մէկ կողմ ձգելով, անշուշտ, ընտրելախաւային *անձնական* յարաբերութիւնները, *անձնական* հանդիպումները, *անձնական* շահերը, *անձնական* մրցանակները, *անձնական* պիգնէսները: Այս մարդիկ կրնան ապահով ըլլալ, որ պիտի հրաւիրուին մասնակցելու 7-րդ համագումարին՝ իբրեւ հայրենասէր, հայապահպան ազգայիններ: Գովէ՛ Սփիւռքի եւ Հայաստանի վերնախաւը եւ անոնց կազմակերպած ձեռնարկներն ու համագումարները՝ չես գիտեր ինչպէս մէկ օրէն միւսը կը դառնաս հայրենասէր եւ այս տեսակ համագումարներու դուռները կը բացուին առջեւդ: Գովէ՛ հասարակութեան եւ ժողովուրդի պայքարը ձերբազատուելու վերնախաւային ճնշումներէն ու չահագործութիւններէն եւ մաս կազմէ Սփիւռքի եւ Հայաստանի մէջ մասնակցողական ժողովրդավարութիւն հաստատելու արշաւին՝ մէկ օրէն կը դառնաս հայրենադաւ, իսկ այս տեսակ համագումարները կը մոռնան քեզի: Գովէ՛ մէկ տոկոսը՝ կը դառնաս հայրենասէր, գովէ՛ 99 տոկոսը՝ կը դառնաս հայրենադաւ: Քեզի հայրենասէր դարձնելու խողովակները կը գտնուին մէկ տոկոսին ձեռքը:

Ահաւասիկ Հայաստան-Սփիւռք 6-րդ համաժողովը, որուն պաշտօնական նշանաբանն է՝ *Փոխադարձ վստահութիւն, միասնականութիւն եւ պատասխանատուութիւն*:

### «ՉԱՐԱՄԻՏ» ՈՒ «ՄՏԱՑԱԾԻՆ» ՄԱՐԴԻԿ

Համագումարէն երկու ամիս առաջ, Մոսկուայի *Ժամ* ամսագիրին համար Աննա Գիվարգիզեան երկար հարցազրոյց մը կ'ունենայ Սփիւռքի նախարարուհիին հետ, զոր սփիւռքահայ մամուլը հաճոյքով կ'արտատպէ արեւմտահայերէն փոխադրութեամբ(1):

Յարձակումներ ընդդիմադիր լրագրողներուն եւ Սփիւռքի կառոյցներու ղեկավարներուն դէմ: Նախ լրագրողները, որոնց մասին այսպէս կ'արտայայտուի նախարարուհին. «Երբեմն կ'ըսեն՝ նախարարութիւնը «մուրացկանութիւն» կ'ընէ: Ի՞նչ վատ բան կայ, երբ կ'ըսեմ՝ ո՞ւր են մանթաշովներն ու լազարեւները, դուրսը ապրող եւ աշխատող հայ մեծահարուստները, թող գան, ներդրում կատարեն եւ աշխատին հայրենիքի մէջ: Վա՞տ բան կ'ըսեմ… Կամ՝ կ'առաջարկենք՝ «2–3 տարին մէկ ձեր հանգիստը անցուցէք Հայաստանի մէջ»: Եթէ հայ ես ու ընդամէնը այստեղ հանգստանալով կրնաս օգտակար ըլլալ հայրենիքին, ինչո՞ւ չընել: Որոշ լրագրողներ՝ այս անչափ կարեւոր հարցադրումները գլխիվար կը դարձնեն եւ աղմուկ կը բարձրացնեն: Ատոնք գիս ընդհանրապէս չեն մտահոգեր, քանի որ գիտեմ՝ անոնց ետին չարամիտ մարդիկ կանգնած են, եւ մեծ մասամբ՝ մտացածին:»

Հարուստներուն հասցէագրուած այս առաջարկութիւնը «Խոհեր» մանրամասնօրէն քննադատած էր *Ջահակիրի* Յուլիս 6 թիւին մէջ: Մնաց որ նախարարուհին ժամավաճառ ըլլար *Ջահակիր* կարդալով: Բայց կ'երեւի թէ ուրիշներու քննադատութիւնները կարդացած է: Կը հասկնամ, եթէ նախարարուհին քննադատութեան պատասխանէ քննադատութեամբ: Բայց քննադատութիւնը պատասխանել *ամբաստանութեամբ*՝ «անոնց ետին չարամիտ մարդիկ կանգնած են, եւ մեծ մասամբ՝ մտացածին», պարզապէս կը մնայ անհասկնալի դիւանագիտական հանգամանաւոր պաշտօնատարի մը համար: Ընդդիմադրութիւն մը՝ որ չի բաւարարուիր գեղեցկագարդ խորհուրդներով կամ էական հարցերէ արմատապէս հեռու գտնուող խրատներով, այլ կը մտնէ խնդիրներուն խորքը՝ շրջանցելով նախարարուհիին գծագրած սահմանը, արդէն «անոնց ետին չարամիտ մարդիկ կանգնած են, եւ մեծ մասամբ՝ մտացածին»: Ընդդիմութիւն մը՝ որ կը փափաքի տեսնել Հայաստանի քաղաքացիական հասարակութեան բարօրութիւնը, այդ բարօրութեան բացակայութեան պատճառը կը համարէ օլիկարքական նախարար-նախագահութիւնը եւ կը պայքարի անոնց դէմ, ուրեմն «անոնց ետին չարամիտ մարդիկ կանգնած են, եւ մեծ մասամբ՝ մտացածին»:

Հայաստանի պատասխանատու մարմին մը՝ որ պէտք է վեր կանգնի ամէն տեսակ խօսքային յարձակումներէ, ահաւասիկ ամբաստանութիւններ կը յղէ ընդդիմախօսներուն՝ իբրեւ թէ «անոնց ետին չարամիտ մարդիկ կանգնած են, եւ մեծ մասամբ՝ մտացածին»: Կառավարական «բարձրաստիճան» անձնաւորութեան մը *դիւանագիտական* խօսքը երբ կը հասնի ամբաստանութիւններու աստիճանին, երբ խորքային ընդդիմադիրը կը դառնայ ամբաստանեալ՝ որուն «ետին չարամիտ մարդիկ կանգնած են, եւ մեծ մասամբ՝ մտացածին», այստեղ արդէն խնդիրը հասած կ'ըլլայ շատ տարօրինակ մակարդակի: Բայց ասիկա ինծի յիշեցուց ժամանակուայ կուսակցական մամուլը՝ որ իր դիրքերը ամրացնելու համար լրտեսներու եւ դաւաճաններու դիւրին եւ վտանգաւոր ճամբայ մը ընտրած էր, իսկ դաւաճաններ չգտնելու պարագային գրիչի հպումով մը կը ստեղծէր զանոնք, այս առումով Արփիար Արփիարեանի դէպքը ըլլալով հայկական ամենաողբերգական եւ ամենաբացայայտօրէն կեղծուած դաւաճանումներէն մէկը:

Պարզ յիշեցում մը: Նախարարուհին մաս կը կազմէ իշխանութեան մը՝ որ ընտրուած է ընտրակաշառքներու, սպառնալիքներու եւ մենատիրական քարոզչութեան ու մենաձայն լրատուութեան շնորհիւ՝ մօտէն կամ հեռուէն կապ չունենալով ժողովրդավարութեան հետ (*չընտրուած* իշխանութիւնը *ընտրած* է նախարարուհին), ինչպէս նաեւ մաս կը կազմէ իշխանութեան համակարգի մը՝ որ ուղղակիօրէն պատասխանատու է Հայաստանի բնակչութեան անասելի արտագաղթին: Եթէ ժողովրդավարութիւն գոյութիւն ունենար, նախարարուհին երբեք պիտի չհամարձակէր ամբաստանութիւններ ուղղել մեր հասցէին:

### ՍՓԻՒՌՔԻ ՂԵԿԱՎԱՐՆԵՐԸ ՄԱՅԱՄԻԻ ՄԷՋ Կ'ՕԴԱՓՈԽՈՒԻՆ

Նախարարուհին դժգոհ է սփիւռքի ղեկավարներէն (!), այն ղեկավարներէն՝ որոնց հետ հանգստաւէտ ու յարմարաւէտ յարաբերութիւններու մէջ կը գտնուի, այն ղեկավարներէն՝ որոնք երբեք չեն «դաւաճանած» իրեն, այն ղեկավարներէն՝ որոնք անընդհատ կը գովեն իրեն. «Մեր ամենամեծ դժուարութիւնը, ի տարբերութիւն միւս նախարարութիւններուն, այն է, որ կառոյցները, որոնց հետ կ'աշխատինք, անկախ են եւ կը գործեն տարբեր երկիրներու մէջ: Ես ո՛չ հրամայել կրնամ, ո՛չ յանձնարարել, ո՛չ 4

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Իրենց չատ սիրելի մօր, մեծ մօր, զոքանչի՝ ողբ. **Անահիտ-Յասմիկ Պօղոսեանի** մահուան քառասունքին առթիւ, Տիար Րաֆֆի Պօղոսեան, Տէր եւ Տիկին Ռուպէր եւ Անի Թաչճեան եւ զաւակները կը նուիրեն՝

| | |
|---|---|
| Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Եկեղ. պայծառութեան | 1000 |
| «Արեւ»ի ֆոնտին | 750 |
| «Յուսաբեր»ի ֆոնտին | 750 |
| «Ջահակիր»ին | 750 |
| Կոկանեան Սրահին | 750 |

Իրենց չատ սիրելի հօր, մեծ հօր, աներ հօր՝ ողբ. **Պօղոս-Օննիկ Պօղոսեանի** մահուան քառասունքին առթիւ, Տիար Րաֆֆի Պօղոսեան, Տէր եւ Տիկին Ռուպէր եւ Անի Թաչճեան եւ զաւակները կը նուիրեն՝

| | |
|---|---|
| Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Եկեղ. պայծառութեան | 1000 |
| «Արեւ»ի ֆոնտին | 750 |
| «Յուսաբեր»ի ֆոնտին | 750 |
| «Ջահակիր»ին | 750 |
| Կոկանեան Սրահին | 750 |

*(Վերոյիշեալ բոլոր նուիրատուութիւնները ստանալ Գահիրէի Ազգային Առաջնորդարանէն)*

## ՄՈՆՈՊՈԼԱՑՈՒԱԾ ՏՆՏԵՍՈՒԹԵԱՆ ՀԵՏԵՒԱՆՔՆԵՐԸ. ԿԱՐԱԳԸ ԹԱՆԿԱՑԵԼ Է

2

ներում վաճառուել է 4750-4780 դրամով, մինչդեռ այն անցած տարուայ նոյն ժամանակահատուածում արժէր 2930-3840 դրամ: Յատկանշական է փաստը, որ որեւէ կերպ չի հիմնաւորւում կարագի գների բարձրացումը. միջազգային շուկայում նման տատանումներ չեն եղել: Ու կարելի է ենթադրել՝ սա հետեւանք է մոնոպոլացուած տնտեսութեան»:

## ՀԱՅԱՍՏԱՆ-ՍՓԻՒՌՔ

3

պահանջել, ո՛չ ալ վերահսկել: Միակ տարբերակն է՝ բանակցիլ, երկխօսութիւն վարել, բացատրել, համոզել, խնդրել, սպասել, նամակ գրել... Կը պատասխանէք՝ լաւ, չէք պատասխաներ, ոչինչ կրնաք ընել: Կը պատահի, որ ամիսներով կը սպասենք X կամ Y կառոյցի ղեկավարի պատասխանին, որ յետոյ կ'ըսէ՝ գիտէ՞ք, Մայամի գացած էի, չհասցուցի պատասխանել, կամ՝ չբացի համակարգիչս, կամ՝ չտեսայ: Ի՞նչ կրնանք ընել: Ես միայն մեր աշխատակազմին կրնամ յանձնարարել, պահանջել: Միւս նախարարները հրաման կը ստորագրեն, որ պէտք է կատարէ ողջ համակարգը, եւ յետոյ կը ստուգեն: Մեր կառոյցին մէջ այդպէս հնարաւոր չէ:»

Նախարարուհին կը հակադրէ «հրամայել»-ը «բանակցել»-ուն, նախասիրութիւն տալով առաջինին: Քոմսոմոլի նախկին քարտուղարուհին նեղուած է որ անկարող է մեզի հրամայել: Ան կ'ուզէ «հրամայել», «յանձնարարել», «պահանջել» եւ «վերահսկել» մեզի: Ասոնք հոգեհարազատ գործողութիւններ են իրեն համար: Ուրեմն, ան պէտք ունի հրամայուող եւ վերահսկուող հասարակութեան մը: Պէտք ունի *ենթարկուող* զանգուածի մը: Վերը՝ հրամայողը, ինքը, իսկ վարը՝ հրամայուողը, մենք: Բայց կը պարզուի որ մենք պատրաստ չենք հրամայուելու: Ուրեմն, կը դիմէ իրեն համար ոչ-բաղձալի եւ յոգնեցուցիչ տարբերակին՝ «բանակցիլ, երկխօսութիւն վարել, բացատրել, համոզել, խնդրել, սպասել, նամակ գրել»: Այս բոլորը *տարբերակ* են եւ ոչ *հիմնական*: Ասոնց նախարարուհին դիմած է միայն ու միայն հիմնականը ձախողելէ ետք: Անզիջողականութենէն՝ հրամայականէն, նախարարուհին անցած է զիջողականութեան՝ բանակցութեան: Իսկ ի՞նչ կայ աւելի գեղեցիկ, մարդկային, հրաշալի ու սքանչելի գործողութիւն քան բանակցութիւնը՝ բանակցելու կարողութիւնը, բանակցելու սէրը, բանակցելու կիրքը: Բանակցիլ՝ բանակցելու համար եւ ոչ թէ մրցակցելու կամ առաւելութիւններ ձեռք բերելու համար: Բանակցութիւնն էր որ պէտք է ըլլար առաջնայինը: Բանակցելու նկատմամբ նոյնիսկ նկատելի ձանձրոյթ կ'արտայայտէ նախարարուհին: Իրեն համար բանակցութիւնը երկար ճամբայ մըն է: Անշուշտ բանակցութիւնները չատ աւելի երկար կ'ըլլան քան հրամաններու պարտադրուած գործադրութիւնները: Տակաւին ծաղրանք մըն ալ կայ իր ել-նամակները չպատասխանողներուն նկատմամբ՝ «Մայամի գացած էի», եւ այլն: Իսկ ո՞վ գիտէ ինչ կրնար պատահիլ եթէ Մայամիի փոխարէն Ֆայում գացած ըլլար: Բարեբախտաբար Մայամի գացած է, անկասկած՝ Մայամիի հարուստ տարածաշրջանը, այսինքն՝ ան ամերիկացի է եւ մեծահարուստ: Այսպէս գոնէ ապահովուած կ'ըլլայ նախարարուհիին եւ իր ենթականերուն ներկայացուցչական կողմը:

(Շար. 1/3)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. «Արցախը մեր գոյութեան դարպասն է. Հրանոյշ Յակոբեան», գրուցեց՝ Աննա Գիվարչիզեան, *ՌԱԿ Մամուլ*, 17 Յուլիս 2017, http://ragmamoul.net/hy/news-in-english/articles/2017/07/12/:

## ՕՀԱՆ ԴՈՒՐԵԱՆ. ԾՆՆԴԵԱՆ 95-ԱՄԵԱԿ

2

ցնծութիւն: Ջէի կամենայ ամէն ինչ վերագրել նուագավարի իմ իմացութեանը: Ես աշխատում էի պրոֆեսիոնալ երաժիշտների հետ...

**Մտերիմ ու հոգեմօտ**

Մտերիմ ու հոգեմօտ եղայ ներկայ եւ բացակայ բոլոր մեծերին, ինձ գտայ իրենց աշխարհում եւ իրենց կողքին, բայց ոչ երբեք՝ «տխտղոսաւորների» ու «մեծաւորների», ովքեր, ցաւօք, յաճախ իրենց անարդար դերակատարումն են ունենում մեր ու մեզպէսների կեանքում:

*Hayastan24.com*



## ԱՐՑԱԽԻ ԱՆԿԱԽՈՒԹԵԱՆ ՀՌՉԱԿՈՒՄԸ, ԻՆՉՊԷՍ Է ԴԱ ԵՂԵԼ

1

կազմակերպեց Խորհրդային Միութեան պահպանման հանրաքուէ, Ազրպէյճանը խորհրդային ութ այլ հանրապետութիւնների հետ մասնակցեց քուէարկութեանը եւ կողմ արտայայտուեց Խորհրդային Միութեան յետագայ գոյութեանը: Հայաստանը, ինչպէս նաեւ Վրաստանը, Մոլտովան ու պալթեան երեք հանրապետութիւնները՝ Լիթվա, Էսթոնիա, Լաթվիա, չմասնակցեցին հանրաքուէին: Հայաստանը յայտարարեց, որ ընտրել է անկախութեան ուղին, իսկ նոյն տարուայ աշնանը՝ Սեպտեմբերի 21-ին, կ'անցկացնի անկախութեան ի'ր հանրաքուէն:

Գորբաչովը չնորհակալութիւն յայտնեց Մութալիպովին եւ ազրպէյճանցի ժողովրդին, քանի որ Ազրպէյճանը, ինչպէս նշեցինք, 1991-ի Մարտին մասնակցել եւ «Այո» էր քուէարկել Խորհրդային Միութեան պահպանման հանրաքուէին: Արդէն Ապրիլ-Մայիս ամիսներին Պաքուն Քրեմլինի աջակցութեամբ իրականացրեց «օղակ» գործողութիւնը, որը պետական ահաբեկչութեան եւ ցեղային զտման օրինակ էր:

Հայաստանի եւ Արցախի քաղաքական վերնախաւը ուղիներ էր փնտռում Մոսկուայի ու Պաքուի հետ լեզու գտնելու, որպէսզի Արցախի հայ ազգաբնակչութեան նկատմամբ ցեղային զտումների եւ արտաքսման քաղաքականութեանը վերջ դրուի:

Ահա այս պայմաններում Մոսկուան եւ Պաքուն Արցախի ղեկավարութեանը եւ ժողովրդին առաջարկում են յետ կանգնել Հայաստանի հետ միացման մտադրութիւններից եւ մասնակցել Սեպտեմբերին սպասուող Ազրպէյճանի նախագահական ընտրութիւններին: Յուլիսի 19-ին Ստեփանակերտում տեղի է ունենում մարզխորհրդի նիստ, որի ընթացքում քննարկւում է Արցախի՝ Ազրպէյճանի նախագահական ընտրութիւններին մասնակցելու առաջարկութիւնը: Մարզխորհուրդը, որը ղեկավարում էր Լէոնարդ Պետրոսեանը (սպաննուել է 1999թ. Հոկտեմբերի 27-ին՝ Հայաստանի Ազգային Ժողովում իրականացուած ահաբեկչութեան արդիւնքում) մերժում է ընտրութիւններին մասնակցելու կոչը, բայց ընդունում է միւս առաջարկը՝ մեկնել Պաքու եւ Մոսկուա, բանակցել Ազրպէյճանի եւ Խորհրդային Միութեան ղեկավարութեան հետ:

Արցախում միակ ուժը, որ հրապարակաւ եւ միանշանակ դէմ արտայայտուեց Պաքու պատուիրակութիւն ուղարկելուն, ՀՅԴ-ն էր: Միւս բոլոր ուժերն ու քաղաքական գործիչները, այդ թւում՝ Ռոբերտ Քոչարեանն ու Սերժ Սարգսեանը, կտրուկ դէմ չարտայայտուեցին Պաքու եւ Մոսկուա պատուիրակութիւն ուղարկելու Ազրպէյճանի առաջարկին: Հայաստանի քաղաքական ղեկավարութիւնը եւ անձամբ Լեւոն Տէր-Պետրոսեանը եւս դէմ չարտայայտուեցին: Աւելի՛ն. նրանք Արցախի ղեկավարութեանը յորդորում էին լեզու գտնել Ազրպէյճանի հետ:

Աւելի՛ն. Յուլիսի 15-16-ին Հայաստանի խորհրդարանում տեղի էին ունենում բուռն բանավէճեր այն հարցի չուրջ, թէ պէ՞տք է Արցախի պատուիրակութիւնը մեկնի Պաքու: Հարցը դրուեց քուէարկութեան: Հայաստանի խորհրդարանի 260 պատգամաւորներից միայն 10-ը դէմ արտայայտուեց, իսկ 18-ը՝ ձեռնպահ: Միւսները, այդ թւում՝ խորհրդարանի նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը, այսօր արտաքին գործերի նախարար Շաւարշ Քոչարեանը եւ տասնեակ այլ պատգամաւորներ կողմ քուէարկեցին այն առաջարկին, որով Արցախի մարզային ղեկավարութիւնը պատրաստակամութիւն էր յայտնում «քաղաքական բանակցութիւններ սկսել Ազրպէյճանի իշխանութիւնների հետ եւ փոխզիջումային լուծումներ որոնել Խորհրդային Միութեան սահմանադրութեան եւ օրէնքների շրջանակներում»:

Յուլիսի 20-ին արցախեան 6 հոգանոց պատուիրակութիւնը, որը գլխաւորում էր Լէոնարդ Պետրոսեանը, Ստեփանակերտից մեկնեց Պաքու, հանդիպում ունեցաւ Ազրպէյճանի նախագահ Այազ Մութալիպովի հետ: Պաքու մեկնած պատուիրակութեան անդամներից մէկը՝ Վալերի Գրիգորեանը, երեք շաբաթ անց սպաննուեց Ստեփանակերտի կենտրոնում, օրը ցերեկով՝ հայի կողմից արձակուած կրակահերթից: Պաքու մեկնած պատուիրակութեան միւս անդամները եւս, այդ թւում՝ Լէոնարդ Պետրոսեանը, մեղադրւում էին Արցախի հարցում միակողմանի զիջումների գնալու, անգամ՝ դաւաճանութեան մէջ:

Իսկ Ազրպէյճանը եւ նրա ղեկավար Մութալիպովը ցնծութեան մէջ էին: Նրանց թւում էր, որ հայերը պատրաստւում են հրաժարուել Արցախի եւ Հայաստանի միացման գաղափարից: Բայց տեղի ունեցաւ Մոսկուայի յեղաշրջումը, որն ամբողջովին փոխեց իրադարձութիւնների յետագայ ընթացքը:

Երբ 1991-ի Օգոստոսի 19-21-ին ձախողուեց յեղաշրջման փորձը Մոսկուայում, Խորհրդային Միութեան փլուզման գործընթացն աւելի արագացաւ: Մէկը միւսի յետեւից իրենց անկախութիւնը հռչակեցին խորհրդային հանրապետութիւնները: Օգոստոսի 30-ին, երբ Ազրպէյճանը հռչակեց իր անկախութիւնը, Արցախին այլ բան չէր մնում, քան նոյնպէս հռչակել ի'ր անկախութիւնը:

1991թ. Սեպտեմբերի 2-ին Ստեփանակերտում տեղի ունեցաւ ԼՂԻՄ մարզային եւ Շահումեանի շրջանային խորհուրդների համատեղ նստաշրջանը: Ընդունուեց հռչակագիր ԼՂԻՄ եւ Շահումեանի շրջանի սահմաններում Լեռնային Ղարաբաղի Հանրապետութիւն հռչակելու մասին՝ հիմք ընդունելով 1990թ. Ապրիլի 3-ի Խորհրդային Միութեան Գերագոյն խորհրդի «Խորհրդային Միութեան կազմից միութենական հանրապետութիւնների դուրս գալու կարգի» մասին օրէնքը: Այդ օրէնքի առանցքը Խորհրդային Միութեան կազմից դուրս գալու հանրաքուէի գաղափարն էր: Եթէ միութենական հանրապետութիւնը ցանկանում է դուրս գալ Խորհրդային Միութեան կազմից, ինչը թոյլատրում էր սահմանադրութեան 72-րդ յօդուածը, ապա ընթացակարգը հանրաքուէն՝ ժողովրդական քուէարկութիւնը:

Արցախում ամիսներ անց՝ 1991-ի Դեկտեմբերի 10-ին, տեղի ունեցաւ անկախութեան հանրաքուէ:

Այսպիսով, Արցախն իր անկախութիւնը հռչակեց տէ ժիւրէ գոյութիւն ունեցող Խորհրդային Միութեան օրէնսդրութեան տառին ու ոգուն համապատասխան՝ չխախտելով որեւէ օրէնք եւ ընթացակարգ:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1799 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 5 ՀՈԿՏԵՄԲԵՐ 2017 ՀԱՏԸ ԶԵՌՔԷ 75 Ե. ԴԻԿ. عدد رقم ١٧٩٩ الخميس ٥ أكتوبر ٢٠١٧


**ԽՄԲԱԳՐԱԿԱՆ**

## ՓՈԽՆԵՐԹԱՓԱՆՑՈՒՄ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՇԵՐՏԵՐՈՎ

26 տարի է Հայաստան անկախ է: Անկախութիւն մը՝ որ խորհրդային գերիշխանութենէն տարաւ դէպի նէօլիպերալ գերիշխանութիւն: Անցումը մէկէն դէպի միւսը տեղի ունեցաւ թէեւ աստիճանաբար, բայց առանց նշանակալի դիմադրութեան: Չկար իրական ձախը որ դիմադրէր նէօլիպերալիզմը: Կար համայնավարութեան մը մնացորդը, իսկ խորհրդային համայնավարութիւնը արդէն սթալինեան յեղաշրջումէն ի վեր շատ քիչ կապ ունէր դասական մարքսիզմի հետ՝ բացի ձեւական լոզունքներէ ու մեծաշուինդ նշանաբաններէ:

Անկախութեան տարեդարձին զուգընթաց կատարուեցաւ Հայաստան-Սփիւռք 6-րդ Համաժողովը: Համաժողովներով եւ պաշտօնական ելոյթներով է որ իբր պիտի ստեղծուի երկկողմանի յարաբերութիւն: Խորագիրի Հայաստան եւ Սփիւռք երկու բառերուն չէշտադրութիւնն ինքնին կը յառաջացնէ երկուութիւն, կ'արդիւնաբերէ *երկու* կողմերու գոյութիւնները, զանոնք դարձնելով ֆեթիշական: Խորագիրը՝ Հայաստան-Սփիւռք, բառա-կառուցողապաշտական երկուութիւն մը կը սեւեռէ՝ իր մեղկացուած իմաստով հանդերձ, ապա համագումարի ամբողջ ընթացքին փողկապներով փակուած հանգամանաւոր խօսքերու ընդմէջէն ենթադրուած է քակել արդէն արտադրուած երկուութիւնը եւ սպաննել զայն: Կարելի էր, օրինակ, համագումարը անուանել՝ Փոխներթափանցումի 6-րդ համագումար:

Համաժողովի բացումի հանդիսութիւնը տեղի ունեցաւ Երեւանի Մարզահամերգային Համալիրին մէջ, որուն լայնատարած բեմին վրայ նստած էին ու խօսք առին հայութեան *ուժային* կեդրոնները՝ Սփիւռքի Նախարարուհի Հրանոյշ Յակոբեան, Գարեգին Բ. Ամենայն Հայոց Կաթողիկոս, Հայաստանի նախագահ Սերժ Սարգսեան, Արցախի նախագահ Բակօ Սահակեան եւ Մեծի Տանն Կիլիկիոյ Կաթողիկոս Արամ Ա. Կաթողիկոս: Համաժողովի բնաբանն էր՝ *Փոխադարձ վստահութիւն, միասնականութիւն եւ պատասխանատուութիւն*: Ուրեմն, վստահութենէ, միասնականութենէ եւ պատասխանատուութենէ զերծուած մնացին հայ եկեղեցւոյ ոչ-առաքելական համայնքները. բեմին վրայ չէին Հայ Կաթողիկէ Եկեղեցիի Կաթողիկոս Պատրիարք Գրիգոր Պետրոս Ի. Կապրոյեան եւ Հայ Աւետարանական Համաշխարհային Խորհուրդի Նախագահ Վեր. Պերճ Ճամպազեան, մինչդեռ հայ առաքելական եկեղեցին կը ներկայանար *երկու* կաթողիկոսներով: Միասնականութիւն՝ վերադաս եւ ստորադաս կրօնական համայնքներով: Այլեւ Հայաստան-Սփիւռքի Հայաստան «կողմ»-ին մէջ կը մտնեն փոքրամասնութիւնները, որոնք ներկայացուած չէին բեմին վրայ: Անոնք ուժային կեդրոններէն անդին կը գտնուին: Իսկ այնպէս ալ չբացատրեցին, որ Արցախը՝ Բակօ Սահակեանի ներկայութեամբ, Հայաստանի՞ թէ Սփիւռքի մաս կը կազմէր:

Պաշտօնական զեկուցումները տեղի ունեցան Սեպտեմբեր 18-19-ին, իսկ 20-ի առաւօտեան, ինչպէս պաշտօնական հաղորդագրութիւնը կը նշէ՝ «Հայաստան-Սփիւռք համահայկական 6-րդ համաժողովի անդամները համաժողովի արդիւնքներով համատեղ յայտարարութիւն են ընդունել:» Համատեղ յայտարարութիւն՝ առանց կենդանի քննարկումի: Յայտարարութիւն մը՝ զոր մասնակցողներուն մեծամասնութիւնը առաջին անգամ կը լսէր, թէեւ անոնց հաւանութիւնը անհրաժեշտ էր զայն «համատեղ» ընդունելու համար: Իսկ ամբողջ յայտարարութիւնը կը բովանդակէ 26 տարի չարունակ լսուող «մարտահրաւէրներ»-ը՝ որոնք կարծէք ցկեանս մարտահրաւէրներ պիտի մնան այս մշտափոփոխ աշխարհին մէջ: Հրանոյշ Խառադեան Սեպտեմբեր 21-ի ֆէյսպուքեան գրառումին մէջ անդրադառնալով այս ամփոփումին մասին, ժպիտով մը կ'արձանագրէ. «Հասկանալի է, որ համաժողովի այս՝ ամփոփիչ կոչուող տեքստը գրուել է համաժողովից առաջ: Երեւում է, որ համաժողովը ոչ մի կոնկրէտ, իրագործելի, չափելի, վերահսկելի ծրագիր չի ընդունել:»

Անկախութենէն ի վեր զարգացած յարաբերութիւններու առումով շատ կարեւոր է զանազանել երկու էապէս տարբեր չերտաւորումներ: Մէկը երկու կողմերու՝ Սփիւռքի եւ ☞ 3

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ԲՈՂՈՔԻ ԱԿՑԻԱ ԱՄՈՒԼՍԱՐԻ ԾՐԱԳՐԻ ԴԷՄ. ԲՆԱՊԱՀՊԱՆՆԵՐԸ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆԸ ՆՈՒԻՐԵՑԻՆ «70 ՏՈՆՆԱ ՈՍԿԻ»



Սեպտեմբերի 20-ին Հայկական Բնապահպանական Ճակատի անդամները Երեւանի կենտրոնում բողոքի ակցիա անցկացրեցին Ամուլսարի ոսկու հանքավայրի շահագործման ծրագրի դէմ: Բողոքի ակցիան մեկնարկեց Կասկադ համալիրի սկզբնամասից: Ակցիայի մասնակիցները, պաստառներից եւ թռուցիկներից զատ, իրենց հետ բերել էին մեծ ոսկեգոյն գունդ, որը խորհրդանշում էր Ամուլսարի հանքավայրի ոսկին:

Նրանք կոչ էին անում անցորդներին միանալ բողոքի ակցիային, լուսանկարուել «ոսկէ գնդի» հետ, տարածել լուսանկարները սոցիալական ցանցերում՝ օգտագործելով «#70_տոննա_ոսկի_ռումբ», «Ամուլսար#70 տոննա ոսկի», «No Mining in Amulsar» հեշթեգերը: Նպատակն էր բարձրացնել տեղեկատուածութեան մակարդակն Ամուլսարի ծրագրի ռիսկերի վերաբերեալ:

«70 տոննա ոսկին՝ օտարներին, թոյնը՝ Հայաստանին: Սա ոսկու այն չափն է, որը պէտք է հանուի Հայաստանի ընդերքից, իսկ թոյնը թողնուի մեզ: Այս ծրագրով աղտոտուելու են Արփայ, Որոտան գետերը, Սեւանայ Լիճը... Ու Ամուլսարին», – յայտարարեց Ալբես Զոհրաբեանը:

*Էկօլուրի* հետ զրոյցում բնապահպանը նշեց, որ Ամուլսարի ծրագիրը դեռ հնարաւոր է կանգնեցնել, ի յայտ են եկել նոր հանգամանքներ, որոնց հիման վրայ պէտք է նշանակել Ամուլսարի ծրագրի նոր փորձաքննութիւն, որն էլ ցոյց կը տայ իրական բնապահպանական վտանգները: Խօսքը միջազգային փորձագիտական ընկերութիւնների գնահատումն է, ըստ որի Ամուլսարի ծրագիրը չի կարելի սկսել:

Կոչեր հնչեցնելով եւ թռուցիկներ տարածելով՝ ակցիայի մասնակիցները Կասկադ համալիրից շարժուեցին դէպի Օպերայի եւ Բալետի Ազգային Ակադեմիական Թատրոնի մօտ, այնուհետեւ՝ Հիւսիսային Պողոտայ:

«Մենք ունենք խնդիր. մարդիկ տեղեկացուած չեն, թէ ինչ վտանգների առջեւ ենք կանգնելու Ամուլսարի ծրագրի իրականացման դէպքում: Մենք կորցնելու ենք մեր ջրերը, մաքուր տարածքները... սա բոլորիս խնդիրն է: Կոչ ենք անում չլինել անտարբեր, միանալ եւ փորձել կանգնեցնել այս ծրագիրը: Մենք նաեւ նպատակ ունենք, որ այն լուսաբանուի միջազգային մակարդակով, որպէսզի ֆինանսաւորողներն էլ դադարեցնեն իրենց ֆինանսաւորումը, ինչպէս դադարեցրեց Միջազգային Ֆինանսական Կորպորացիան/IFC», – նշեց Անի Խաչատրեանը:

Ակցիայի վերջին կանգառը Հայաս- ☞ 4

## ՈՐՔԱՆ ԳՈՒՄԱՐ Է ԾԱԽՍԵԼ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆ-ՍՓԻՒՌՔ ՀԱՄԱԺՈՂՈՎԻ ԱՆՑԿԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ. *ԺՈՂՈՎՈՒՐԴ*

*Ժողովուրդ* օրաթերթը գրում է. «*Ժողովուրդ* օրաթերթին յայտնի դարձաւ, որ Հայաստան-Սփիւռք եռօրեայ համաժողովի կազմակերպման եւ անցկացման համար իշխանութիւնները Հայաստանի պետական բիւջէից ծախսել են 80 միլիոն դրամ կամ աւելի քան 160 հազար դոլար: Այս գումարը հիմնականում ծախսուել է տեխնիկական միջոցների վարձակալութեան, ձեւաւորման, տպագրական նիւթերի պատրաստման, Փարաւոն ռեստորանում մասնակիցների ընդունելութեան եւ այլ նման նպատակներով: Իսկ ահա Հայաստան այցելելու, եւ այստեղ իրենց կեցութեան ծախսերը՝ աւիատոմս, հիւրանոցի ամրագրում, սնունդ եւ այլն, պատուիրակները հոգացել են սեփական միջոցներով: Միայն թէ, դժուար է ասել, ի՞նչ կը յիշուի այս համաժողովից, եթէ ամէն ինչ ելոյթների մակարդակից այն կողմ չի գնում»:

**Ծանօթ.** – Փարաւոն քազինօ-ճաշարանային համալիրը կը պատկանի Հայաստանի ամենամեծ օլիկարք, Ազգային Ժողովի պատգամաւոր Գագիկ Ծառուկեանին: Իշխանութիւններէն ելած դրամը կը վերադառնայ իշխանութեան: Ջ.

## «ՏԵՂԵԿԱՏՈՒՈՒԹԵԱՆ ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ» ՆՈՐ ՕՐԻՆԱԳԻԾԸ ԼՈՒՐՋ ՍԱՀՄԱՆԱՓԱԿՈՒՄՆԵՐ Է ԴՆՈՒՄ. *ԺՈՂՈՎՈՒՐԴ*

*Ժողովուրդ* օրաթերթը գրում է. «Այս կառավարութիւնը լրատուամիջոցների գլխին իսկական պատուհաս է դարձել: Հիմա էլ Հայաստանի Արդարադատութեան նախարարութիւնն իբր որոշել է բարեփոխել «Տեղեկատուութեան ազատութեան մասին» օրէնքը, սակայն այնպիսի նախագիծ է ներկայացրել, որ իրականում սահմանափակում է տեղեկատուութիւն ստանալու ազատութիւնը, որը առաջին հերթին հարուած է մամուլին, հասարակական կազմակերպութիւններին եւ կառավարութեան «կոկորդին կանգնած» այլ կառոյցների գործունէութեանը: Ըստ այդ նախագծի՝ տեղեկատուութեան տրամադրումը կարող է մերժուել, եթէ «ակնյայտօրէն չի պարունակում հանրային հետաքրքրութիւն ներկայացնող որեւէ տեղեկութիւն, կամ այնպիսի հարցում է, որով պահանջուող տեղեկութեան ծաւալը շատ մեծ է, եւ դրա տրամադրումն ակնյայտօրէն կը յանգեցնի տեղեկութիւն տնօրինողի ռեսուրսների կամ ժամանակի անհամաչափ կամ անհիմն վատման»: Սա հրաշալի հնարաւորութիւն է՝ մերժելու ցանկացած տեղեկատուութեան տրամադրումը: Ցանկացած հարցման դէպքում կարելի է այս հիմնաւորումներից որեւէ մէկը պատրուակ բռնել: ☞ 4

# ՆԵՂՈՍԻ ՍՈԽԱԿԸ ՎԱԼԵՆՏԻՆԱ ԱՄԻՐԱՅԵԱՆ (ԱՌՆՕ) *

ԱՐԾՈՒԻ ԲԱԽՉԻՆԵԱՆ

Սփիւռքագիտական որոնումները միշտ լեցուն են անակնկալներով... Հայազգի կինոգործիչների եւ չինաբնակ Հայերի փնտրտուքներում կապ հաստատելով հայազգի ամերիկեան բեմադրիչ-դերասան Էդուին Ջերարդի հետ՝ պարզեցի, որ նա թոռն է հին մամուլից ինձ ծանօթ եգիպտահայ երգչուհի-դերասանուհի Վալենտինա Ամիրայեանի, որն էլ, պարզուեց, եղել է դարձեալ մամուլից ինձ ծանօթ չինաբնակ ազգային գործիչ Հայկ Ասատուրեանի կինը: Մեր խնդրանքով Էդուին Ջերարդն ուղարկեց իր տատիկի մասին տուեալներ, յօդուածների կտրօններ (դրանց մի մասի հրատարակութեան տարեթուերն անընթեռնելի են, սակայն ստոյգ լինելն անվիճելի է), եւ արդիւնքում ուրուագծուեց հետեւեալ դիմանկարը...

Վալենտինա Ամիրայեանը՝ ծնեալ Մարիա Վալենտինա Հորտենսիա Նեդդա Առնօ (1901, Կոստանդնուպոլիս – 1971, Լոս Անջելէս), եզակի է սփիւռքահայ մշակոյթի պատմութեան մէջ այն առումով, որ լինելով միայն մօր կողմից հայազգի՝ նուիրուած է եղել հայ արուեստին: Նրա հայրը՝ իտալացի Նիկոլա Միքելէ Առնօն, սերել է Սարդինիայի ազնուական մի տոհմից, մայրը պոլսահայուհի էր՝ Ագապի Համամճեան: Չգիտենք, թէ ինչ պատճառով է մօտ 1920 թուականին Վալենտինան յայտնուել Եգիպտոսում, որտեղ ամուսնացել է ծնունդով զմիւռնիացի Ստեփան Զարմայր Ամիրայեանի հետ: Կահիրէում 1922-ին ծնուել է նրանց դուստր Ալիդան: Վալենտինան եղել է Կահիրէի երաժշտական լիցէյի հիմնադիր, երգահան պրոֆեսոր Կանտոնիի ուսանողը, բազմիցս մասնակցել նրա աշակերտների հանրային համերգներին՝ կատարելով իր ուսուցչի գործերից եւ հայկական երգեր: 1920-ականներին երիտասարդ, գեղեցկատես Վալենտինան իշխող դէմք է եղել Կահիրէի հայ համայնքի երաժշտական եւ թատերական միջոցառումներում: Յատկապէս յաջող է եղել նա Տիգրանեանի *Անուշ* օպերայի բեմադրութեան մէջ: Ինչպէս գրել է Օ. Մ. ծածկանուամբ հեղինակը. «Տիկին Ամիրայեան էր եւ կը մնար կեդրոնական դէմքը խաղին, որ սկիզբէն մինչեւ վերջը փայլեցաւ իր դերին բարձրութեան մէջ, եւ իր հմայիչ երգեցողութեամբ ու սիրուն դերակատարութեամբ օփէրային շնորհքը եղաւ: Մասնաւորապէս տպաւորիչ էր Տիկ. Ամիրայեանի այն երգը որով կը պատմէր Տէրվիշի անէծքը» (Օ. Մ., «*Անուշի* բեմադրութիւնը», *Արեւ*, օրաթերթ, Կահիրէ, 19.05.1925): Նոյն թերթը Ալեքսանդրիայում օպերայի ներկայացման առթիւ դարձեալ գրել է. «Գալով դերակատարներուն, պէտք է ըսել որ Տիկին Ամիրայեան յաջողութեամբ տարաւ Անուշի դերը: Իր մելանուշ ձայնը, նուրբ շարժումները զինքը բաւական մօտիկցուցած էին փիէսին այն տառապող ու դժբախտ Անուշին որուն կարելի չէ չվշտակցիլ, չկարեկցիլ» (Լ. Ա., «*Անուշի* ներկայացումը Աղեքսանդրիոյ մէջ», *Արեւ*, 18.06.1925):

Մեր ձեռքի տակ է 1925 թուականի Օգոստոսի 9-ին Ալեքսանդրիայի Սան Ստեֆանօ կազինոյում կայացած 11-րդ սիմֆոնիկ մեծ համերգի ֆրանսերէն ազդագիրը: Համերգը ղեկավարել է մաեստրօ Էդգարդօ Բոնոմին, մեներգել է Վալենտինա Ամիրայեանը: Հնչել է Շուբերտի *Ողբերգական սիմֆոնիան*, Ռիմսկի-Կորսակովի *Ռուսական մեծ Զատիկը* նախերգանքը, իսկ Ամիրայեանը կատարել է մեներգեր Պուչչինիի *Մանոն Լեսկօ*, Մասկանիյի *Գեղջկական ասպետութիւն* օպերաներից, նաեւ Կոմիտասի *Հայաստանը*: 1927-ի մի համերգում Ամիրայեանը կատարել է հայկական, ֆրանսիական եւ իտալական երգեր, նաեւ մի արիա Մոցարտի *Ֆիգարոյի ամուսնութիւնը* օպերայից: «Մէկ կողմ ձգելով իրեն ձայնին քնքշութիւնն ու զգայնութիւնը, հարկ է յիշել, որ՝ առաջին երգը, Մոզարի *Նոձձէ տի Ֆիկարօն* ձայնի ինչ թարմութեամբ որ սկսաւ, ութը


Արծուի Բախչինեան

ինը դժուարին կտորներ երգելէ վերջը *Սիրուհիսը* եւ ներկաներուն պահանջքին վրայ Պ. Կանաչեանի *Օրօրը* երգեց նոյն թարմութեամբ», – գրել է Ս. Կարապետեանը Կահիրէի *Լուսարձակ* պարբերականում (26.12.1927): 1930-ին երգչուհին Գիւլչորայի դերով հանդէս է եկել *Արշին մալ ալան* երաժշտախաղում: Այս թուականին Կահիրէի *Արաքս* շաբաթաթերթը Յունիսի 14-ի համարում գրել է. «Տիկին Վ. Ամիրայեան իր բնական խաղարկութեամբ եւ սրտագրաւ ձայնով կրցաւ մինչեւ խաղին վերջը խանդավառել ներկաները, մանաւանդ իր *Սիրուհիսը* երազներու աշխարհ մը բացաւ բոլորի սրտին մէջ: Միջնարարին շնորհալի տիկինը երգեց Ա. Ահարոնեանի *Հայրենի տունը*՝ ներկաներէն խլելով բուռն եւ անվերջ ծափեր»:

«Նեղոսի սոխակ», «եգիպտահայ բեմին իսկապէս սոխակը ըլլալու սահմանուած երգչուհի» անուանուած Վալենտինա Ամիրայեանը հրաւիրուել է երգելու նաեւ Եգիպտոսի թագաւորի պալատում: Ելոյթներ է ունեցել նաեւ Սուդանում, արժանացել Խարթումի անգլիալեզու մամուլի գնահատականին, այդ յօդուածները թարգմանաբար լոյս են տեսել Կահիրէի ֆրանսալեզու մամուլում:

Արտիստուհին նախ մեկնել է Փարիզ, մասնակցել կինոյի արուեստագիտուհիների նուագահանդէսին՝ արժանանալով ֆրանսիական մամուլի ուշադրութեանը: «Հաճոյքը ունեցանք ունկնդրելու եգիպտահայ երգչուհի Ամի Րայեան, որ արուեստով կ'արտասանէ ռեփերթուարի բազմաթիւ կտորներ. ի միջի այլոց՝ ան երգեց հայկական հիանալի մելոտի մը, որ իր իսկ հեղինակութիւնն է», – գրել է *Սինէ կոմեդիա* թերթը: Իսկ *Օզ էկլւտ* պարբերականը գրել է. «Էմի Ռայան, տակաւին անծանօթ մի անուն Փարիզում, մի երիտասարդ եգիպտուհի, որ օժտուած է հրաշալի լիրիկական սոպրանոյով: «Մոն կլիւբի» կանանց ընկերակցութիւնը նրան բացայայտեց անցած շաբաթ: Ի թիւս այլ իւրայատկութիւնների՝ Էմի Ռայանը երգում է ինը լեզուով: Նա հաւասար յաջողութեամբ կատարեց իրարից տարբեր ստեղծագործութիւններ՝ Հաջի Ապաստոլոնի յունական օպերէտը, Ռիխարդ Շտրաուսի *Սերենադը* գերմաներէն, *Բոհեմական կեանքի վալսը* իտալերէն, ամերիկեան ոճի իր յօրինուածքը, Վալվերդէի *Կլաւելիտոսը* իսպաներէն եւ Մարգրիտ Մոնէի *Արի իմ գիրկը* ֆրանսերէն»: Փարիզի Կինոյի ակումբի *Լէ կլակէտ* պաշտօնաթերթն էլ վկայել է, որ ակումբի գեղարուեստական նիստը նախագահել է «համակրելի եւ դեռատի եգիպտահայ արուեստագիտուհի օրիորդ Էմի Ռայեանը, որ մօտ ժամանակներս կինոյի կարեւոր ընկերութիւններից մէկի աստղը պիտի լինի»: Շնորհաշատ երգչուհի-դերասանուհին առաջարկ ստանալով Ֆրանսիայի կինոընկերութիւնից՝ Էմի Ռայեան անուամբ նկարահանուել է *Հրաշքների պարտէզը* եւ *Նորին վեհափառութիւն Ք* շարժանկարներում: «Այս երկու ֆիլմերու պատրաստութենէ վերջ, որ պիտի տեւէ երեք ամիս, մեր տաղանդաւոր հայրենակցուհին պիտի մեկնի Ամերիկա, մասնաւոր պայմանագրութեամբ խաղալու համար Հոլիվուտի մէջ: Վստահ ենք, որ Տիկին Ամիրայեան իր թովիչ խաղարկութեամբ եւ հմայիչ ձայնովը քիչ ատենի մէջ պիտի դառնայ խօսուն սինէմայի երկրպագու միջազգային

↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԼՈՅՍ Է ՏԵՍԵԼ ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ԳԻՐՔԸ ՀԱՅ-ԹՈՒՐՔԱԿԱՆ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԻ ԵՒ ՂԱՐԱԲԱՂԻ ՄԱՍԻՆ

Լոյս է տեսել Հայաստանի առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանի *Հայաստանի ապագան, յարաբերութիւնները Թուրքիայի հետ եւ Լեռնային Ղարաբաղի հակամարտութիւնը* (Armenia's Future, Relations with Turkey, and the Karabakh Conflict) վերնագրով անգլալեզու գիրքը:




Գրքի խմբագիր, Լեհիգի համալսարանի (Lehigh University) քաղաքագիտութեան պրոֆեսոր Արման Գրիգորեանը Ֆէյսբուքի իր էջում գրել է, որ գրքում զետեղուած են Տէր-Պետրոսեանի յօդուածները Հայաստան-Թուրքիա յարաբերութիւնների եւ Ղարաբաղեան հակամարտութեան վերաբերեալ:

Ըստ խմբագրի՝ գիրքը կը հետաքրքրէ բոլոր նրանց, ովքեր ուսումնասիրում են այս խնդիրները. «Այն նաեւ կը հետաքրքրի յետխորհրդային ժամանակաշրջանը, ազգայնականութիւնը եւ ընդհանրապէս էթնիկ ազգայնականութիւնը ուսումնասիրող ուսանողների համար»:

## ՎԱԶԳԷՆ ՍԱՐԳՍԵԱՆ՝ ԻՆՉՈՒ ԶՕՐՔԸ ԻՋԵՑՐԻ ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿ. ՍԵՊՏԵՄԲԵՐ 1996Թ.

1996-ի Սեպտեմբերի նախագահական ընտրութիւններից անմիջապէս յետոյ, պաշտպանութեան նախարար, ամենակարող Վազգէն Սարգսեանը հայկական զօրքը՝ տանկերը, իջեցրեց Ազատութեան Հրապարակ:

1996-ի Դեկտեմբերին մի հարցազրոյցում Վազգէն Սարգսեանը բացատրել է, թէ ինչու է բանակը միջամտել Հայաստանի քաղաքական գործընթացներին.

«Ատելութեան այն դոզան, որ կար մեր հասարակութեան մէջ (սեպտեմբերեան դէպքերի - Անի Կենտրոն), ինձ յուսահատութեան հասցրեց: Քաղաքացիական պատերազմը կանխելու մտադրութեամբ գնացի Թատերական Հրապարակ: Ուզում էի ժողովրդին համոզել, որ մի քանի օրով ազատէին հրապարակը: Հէնց այդ նպատակով էլ հրաման արձակեցի զօրքեր քաղաք մտցնել: Այդ օրը ես նկատեցի մի 60-ամեայ կնոջ ատելութեամբ լեցուն հայեացքը, որ ինձ էր ուղղել. սարսափելի էր: Ես արժանի չէի այդ հայեացքին:»

1996թ. Սեպտեմբերի 22-ին Հայաստանում կայացան նախագահական ընտրութիւններ, որոնք ժողովրդի յիշողութեան մէջ մնացին որպէս առաջին կեղծուած ընտրութիւններ: Պաշտօնական արդիւնքներով Լեւոն Տէր-Պետրոսեանը ստացել էր քուէների շուրջ 52, Վազգէն Մանուկեանը՝ աւելի քան 41 տոկոսը: Գլխաւոր անձը, ով ապահովեց Տէր-Պետրոսեանի պաշտօնական յաղթանակը, Վազգէն Սարգսեանն էր:

ՀԱՅԿԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՆԵՐԻ ԱՆԻ ԿԵՆՏՐՈՆ
25 Սեպտեմբեր 2017

## ԿԻՊՐԱՀԱՅ ԳՈՐԾԱՐԱՐԸ ԴԺԳՈՀ Է ՀԱՅԱՍՏԱՆԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՎԵՐԱԲԵՐՄՈՒՆՔԻՑ. *ԺՈՂՈՎՈՒՐԴ*

*Ժողովուրդ* օրաթերթը գրում է. «Հայաստանում աշխատող կիպրահայ գործարար Յարութիւն Թամազեանը *Ժողովուրդ* օրաթերթի հետ զրոյցում դժգոհել է Հայաստանի իշխանութիւնների վերաբերմունքից՝ պնդելով, որ դեռ չի նկատում կառավարութեան յայտարարած ներդրումների քաղաքականութեան արդիւնքները: Ըստ նրա՝ աշխատելիս իւրաքանչիւր անգամ նոր խոչընդոտների է հանդիպում, յատկապէս՝ մաքսաւորների հետ շփումներում: «Ասում է՝ սփիւռքահայե՛ր, եկէ՛ք, այստեղ ներդրումներ արէ՛ք, լաւ, գանք, բայց պէտք է պայմաններ լինեն: Ընդհակառակը, երբ գնում էք որեւէ մաքսային գրասենեակ, նախ իբրեւ սփիւռքահայ քեզ երկրորդ դաս կը դարձնի: Միգուցէ քեզ չի ճանաչում, բայց այն կողմ է դնում քեզ: Ասում է՝ սպասի, հետը կը խօսես, քեզ չի նայում: Այսինքն՝ բաներ կան, որ մեզ համար խորթ են», – ասել է նա:

ԳԱՀԻՐԷ

## *ՃԱՀԱԿԻՐԻ* Թ. ՅԱՒԵԼՈՒԱԾԸ ԳՈՀԱՐ ԳԱՍՊԱՐԵԱՆԻ ԵԳԻՊՏՈՍԻ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ




Լոյս տեսաւ *Ճահակիրի* Թ. Յաւելուածը՝ *Ուրուագիծ Գոհար Գասպարեանի Եգիպտոսի շրջանի գործունէութեան (1940-1948) (88 էջ)*, որ կը բովանդակէ ծանօթ երգչուհիի ստեղծագործական կեանքի սկզբնական շրջանի մասին տեղեկութիւններ:

1 ↪ ՓՈԽՆԵՐԹԱՓԱՆՑՈՒՄ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՇԵՐՏԵՐՈՎ

Հայաստանի վերնախաւի, բարձր պաշտօններու տէր անձերու՝ ներառեալ անոնց հաւատարիմ «մտաւորականներու» յարաբերութիւններն են, որոնք անկախութենէն ի վեր կ'ընթանան անձնական յարաբերութիւններու միջոցով՝ թէեւ յաճախ առաջ կը քաշուին կազմակերպութիւններու եւ միութիւններու անունները, խնդիրին պաշտօնական միտում տուած ըլլալու համար: Երկու կողմի ղեկավարներն են որոնք կը մշակեն փոխադարձ յարաբերութիւններ, իսկ իրենցմէ «ցած» գտնուող անձերը կը մասնակցին բացառապէս անոնց արտօնութեան ու առատաձեռնութեան շնորհիւ:

Արդարեւ, անկախութիւնը բերաւ յարաբերութիւններուն ամենագեղեցիկը եւ ամենամարդկայինը՝ որոնց մասին կը լռէ հիմնահոսանքը: Անոնք երկու կողմերու հասարակութիւններու *ներքին* շերտերու յարաբերութիւններն են, որոնք, բնականաբար, կը մշակուին անձնական միջոցներով եւ ջանքերով: Բայց այս անձնականը բոլորովին տարբեր է վերոյիշեալ վերնախաւային անձնականէն՝ որ ըստ էութեան պէտք չէ ըլլար անձնական: Վերնախաւային անձնականը ուղղահայեաց է, առարկայապաշտական, ուր մասնակցութեան հանգամանքը արտակարգօրէն կարեւոր է եւ չեշտադրուած, անկախ արդիւնքներէն ու ձեռքբերումներէն: Ներհասարակական անձնական յարաբերութիւնը գծային է, ենթակայական, ուր առաջնային են կապն ու փոխներթափանցումը: Յարաբերութիւններուն ամենաջերմն է ասիկա, քանի որ զերծ է շահերէ եւ շահարկումներէ: Իսկ արդիւնքները՝ նկատելի: Դերասանուհի Արսինէ Խանճեանի մասնակցութիւնը 2016-ի Սասնայ Ծռերու ապստամբութեան յաջորդած հանրահաւաքներուն փայլուն օրինակ մըն է: Փիլիսոփայ Մարք Նշանեանի ստեղծագործական արդիւնաւէտ կապը *Ինքնագիր* գրական հանդէսին հետ ուրիշ յաջող օրինակ մըն է: Երրորդ նմոյշ մըն է փիլիսոփայ Ժիրայր Մալխասեանի ելոյթները *արտերիա* ամսագիրին մէջ: Այլեւ իրական գետինի վրայ գործող անթիւ ու անհամար յայտնի ու անյայտ յարաբերութիւններ, որոնք միայն ու միայն կը հարստացնեն թէ՛ Սփիւռքը եւ թէ Հայաստանը: Այս յարաբերութիւնները կը զարգանան ու կը տարածուին շատ արագ եւ բնաւ պէտք չունին համաժողովներու: Այս է անկախութեան ամենայաջող արդիւնքներէն մէկը, որ, դժբախտաբար, կը մնայ ու տակաւին երկար պիտի մնայ այլընտրանքային: Այլընտրանքայինը կը զարգանայ՝ այնքան ժամանակ որ գոյութիւն ունին բռնատիրութիւններն ու կիսաբռնատիրութիւնները:

ԽՈՀԵՐ

# ՀԱՅԱՍՏԱՆ-ՍՓԻՒՌՔ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

### *ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ*՝ ԵՍ *ԱՒԵԼԻ* ԼԱՒ ԵՄ ՔԱՆ ԴՈՒՆ

Հետաքրքրական է: Կ'ըսենք՝ համահայկական, համահայկականութիւն: Բայց կ'ըսենք՝ փանթուրքական, փանթուրքիզմ: Չենք ըսեր՝ փանհայկական: Խիստ հազուադէպ կ'ըսենք՝ համաթուրքական: Pan- կը նշանակէ համա-: Անոնք նոյն բառն են երկու լեզուներով: Այսպէս, միեւնոյն նախածանցին հայերէնը («համա») կը դառնայ դրական, ոչ-հայերէնը («փան»)՝ բացասական:

Հայաստանի օլիկարքական իշխանութեան բառակազմին գլխաւոր բաղկացուցիչներէն մէկն է «համահայկական» բառը: Համահայկականութեան արդիւնաբերութիւն մը տեղի կ'ունենայ: Արդիւնաբերութիւն եւ գաղափարախօսութիւն, որոնք կ'արտայայտուին համաժողովներու ընդմէջէն: Ենթադրուած է՝ որ «համա»-ներու այս տարափին համարժէք ընթանան լրատուական մեկնաբանութիւններուն միջոցով օգտագործուած բառերն ու բառակապակցութիւնները: Բառերը՝ եթէ դիտենք կառուցողապաշտական ուղղահայեաց իմաստներէն անդին, եթէ դիտենք իրենց բնաբաններուն մէջ, նկատի առնելով անոնց գործածութեան պարագաներն ու նպատակները, շատ բան կրնան բացատրել իրենց մարմնաւորած երեւոյթներուն մասին:

Օրինակ, 2015-ի Համահայկական 6-րդ Խաղերը Երեւանի մէջ, նուիրուած ցեղասպանութեան 100-ամեակին: «Համա»-ն կը միացնէ, իսկ ցեղասպանութիւնը՝ սուգը, ողբը, ցաւը, կ'ըսեն որ կը միացնէ: Երկու միացումներ:

Վերցնենք լրագիրներէն քանի մը նմոյշ, որոնք ենթադրուած է ոչ թէ 6-րդ Խաղերուն մրցումները տեղեկագրեն այլ «համա»-ն մեկնաբանեն:

Բոլոր գրութիւնները ձեւակերպուած են մէկը (մէկ հայը) միւսին (միւս հայուն) յաղթելու սկզբունքով: Թերթահաւատները պիտի հարցնեն: Եթէ մէկը միւսին յաղթեց խաղերուն ընթացքին, ինչպէ՞ս կարելի է ուրիշ բան գրել: Կարելի է: Լրատուամիջոցները խաղերուն միակ նպատակը կ'արձանագրեն յաղթանակի մէջ: Ոչ միայն կը նշուի յաղթանակը, այլ, ինչպէս պիտի տեսնենք ստորեւ բերուած օրինակներուն մէջ, պիտի ֆեթիշիզացուի ան: Յաղթանակ, ուրեմն կայ պարտուող: «Համա»-ներու մէջ յաղթողներ եւ պարտուողներ կրնան գոյութիւն ունենալ միայն այն պարագային՝ երբ խնդիրը դրուի ոչ թէ լաւվատի, ուժեղ-տկարի երկուութեան վրայ, այլ տարբերութեան: Երկուութիւնները՝ սեւ-ճերմակի օրինակով, զիրար չեն կրնար հանդիպիլ, անոնք կը հանդիպին իրենց միջեւ եղած անսահման տարբերակներուն շնորհիւ՝ մոխրագոյն, սրճագոյն, կարմիր, վարդագոյն, դեղին, նարնջագոյն եւ այլն: Լրատուամիջոցներուն մէջ ոչ մէկ խօսք կը յիշատակուի «յաղթող»-ին եւ «պարտուող»-ին միջեւ յարաբերութիւններու մասին, հաւանաբար իրական հողի վրայ անոնց խսպառ բացակայութեան պատճառով, բացակայութիւն մը՝ որուն հանդէպ լրատուամիջոցները ոչ մէկ բողոք, յուզում կ'արտայայտեն:

Ահաւասիկ պասքէթի մրցում Լոս Անճելըսի եւ Մոսկուայի միջեւ: *Ասպարէզ* պարզապէս «անաչառօրէն» կը նկարագրէ՝ որ «[լ]եփլեցուն մարզադահլիճին մէջ կայացած այս հանդիպումը աւարտեցաւ Մոսկուայի յաղթանակով: Խումբը, որ հիմնականին մէջ բաղկացած է Հայաստանի մինչեւ 20 տարեկաններու պասքէթի հաւաքականի խաղացողներէ, ոչ մէկ առիթ տուած է Լոս Անճելըսին՝ յաղթելով 94:68 արդիւնքով:»(2) Ուշադրութիւն դարձուցէք՝ «ոչ մէկ առիթ տուած է» արտայայտութեան, ինչպէս նաեւ յօդուածի խորագիրը՝ «Մոսկուան ջախջախեց Լոս Անճելըսը»: Ոչ աւելի, ոչ պակաս՝ «ջախջախեց»: Երկու հակա-համահայկական ըմբռնումներ: «Համա»-յի եւ ցեղասպանական ցաւի պայմաններուն, Լոս Անճելըսը ջախջախուեցաւ: Ինչպէ՞ս կրնան ջախջախողն ու ջախջախուողը զիրար հանդիպիլ, խաղէն ետք նստիլ միասին, բանակցիլ, յարաբերիլ եւ միտքեր փոխանակել:

*Ազդակ* կը նկարագրէ երրորդ օրուայ ընդհանուր արդիւնքները. «Երէկ [6 Օգոստոս 2015] իր հրապարակած մէկ լուրին մէջ, *ArmSport.am* հայկական լրատու գործակալութիւնը կը յայտնէ, որ արդէն իսկ 3 օրերու ընթացքին տեղի ունեցած մրցումներուն արդիւնքներուն հիմամբ, Երեւանի խումբը բաւական հանգիստ ձեւով բազմած է պարագլուխի դիրքին վրայ՝ իր տրամադրութեան տակ ունենալով 20 ոսկի, 15 արծաթ եւ 15 պրոնզ մետալներ:»(3) Երեւանի խումբը «հանգիստ ձեւով բազմած» է եւ դարձած «պարագլուխ»: Միւսնե՞րը: Պարագլուխին ենթականերն են եւ այնքան տկար են որ երեւանցիները «հանգիստ» կերպով ոչ միայն յաղթած են այլ «բազմած»: Սրածայր բառեր, իմաստներու ծայրայեղականացում, որոնք անկարելի կը դարձնեն փոխյարաբերութիւնները: Հանգիստ կերպով պարագլուխ դարձածները կրնա՞ն ընդունիլ հաւասար աչքով դիտել իրենց պարագլուխին տակը գտնուողները, խօսակցիլ անոնց հետ առանց գերադասութեան զգացողութեան, առանց աւելի ուժեղ ըլլալու հաճոյքը արտայայտելու: Լրիւ պատրանքային հարթակի վրայ ենթադրենք որ նման բարեկամական հաւաքոյթ մը տեղի ունեցած ըլլայ խաղերէն ետք, ուրեմն յարաբերութիւնները մշակուած պիտի ըլլան *անհաւասար* գոյութիւններու միջեւ, քանի որ մէկը «հանգիստ» բազմած «պարագլուխ» մըն է, միւսը՝ «անհանգիստ ենթագլուխ» մը, որոնց միջեւ զանազանութիւնը բախումնային է եւ ոչ տարբերակային:

Լիբանան կը շեշտէ իր յաղթանակները: Ահաւասիկ Պէյրութի *Արարատը*. «Համահայկական 6-րդ խաղերու հեծելարշաւի մրցումներուն Հ.Մ.Մ.-ական մարզուհի Քարոլին Պօյաճեան աղջիկներու 10 քմ. հեծելարշաւի մրցումին գրաւեց առաջին դիրքը եւ ապահովեց Պէյրութի առաջին ոսկիէ մետալը: Իսկ Գէորգ Ալթունեան, որ կը ներկայացնէ Պուրճ Համուտը, տղոց 15 քմ. ժամանակի դէմ հեծելարշաւի մրցումին գրաւեց առաջին դիրքը:»(4) Լիբանան հպարտ է ինքզինքով եւ ոչ թէ բոլորով՝ «համա»-ով:

Դարձեալ Լիբանանը, ըստ *ՌԱԿ Մամուլին*. «Հպարտութեամբ իրմէ իմացանք, որ մինչեւ երէկ [10 Օգոստոս 2015] կայացած մրցաշարքերուն Լիբանան կրցած է ապահովել երկու ոսկի մետալներ՝ մէկը Պէյրութի, իսկ միւսը Այնճարի խումբերուն միջոցով: «Տակաւին յոյս ունինք, որ երկու մետալներու եւս տիրանայ Լիբանանի պատուիրակութիւնը, մին աղջկանց կողովագնդակի (պասքէթպոլի), իսկ միւսը փինկ-փոնկի պարագային», յայտնեց Պրն. Համամճեան»:(5)

Կրկին երեւանեան բացարձակ յաղթանակ մը. «Ֆուտբոլի Երեւանի թիմը երրորդ յաղթանակը տարաւ Համահայկական Խաղերում: Այս անգամ մրցակիցը Հոլիվուդի թիմն էր: Խաղն աւարտուեց 2-1 հաշուով:»(6)

Լոս Անճելըսցի պասքէթպոլիստ Կարէն Սպենճեան եւ իր ընկերները Համահայկական Խաղերուն կը մասնակցին իրենց կարողութիւնները փորձելու համար: Ուրիշի հետ մերուիլը կարեւոր չէ, կարեւորը իրենց սեփական ոյժն է. «Դեռեւս երկու տարի առաջ կրկին այստեղ էինք եւ մասնակցում էինք Համահոմէնթմէնական խաղերին, մեզ փորձելու համար: Հայաստանում խաղը դժուար է շոգի պատճառով, բայց այստեղ եկել ենք լաւ պատրաստուած: 4 տարի առաջ յաղթել էինք Համահայկական Խաղերում եւ ուզում ենք 6-րդ Խաղերում էլ յաղթենք», ասաւ Սպենճեան(7):

Ճատրակ. «Ինչպէս տեղեկացնում է Հայաստանի շախմատի ֆեդերացիայի պաշտօնական կայքը՝ կանանց մրցաշարում բոլորից ուժեղ է գտնուել երեւանցի շախմատիստուհի Մարիամ Աւետիսեանը, որը 9 հնարաւորից վաստակել է 8 միաւոր եւ միանձնեայ գրաւել 1-ին տեղը:»(8) Ոյժը երբեք համակեցութեան գործօն մը չի կրնար ըլլալ: Ոյժը գերադասութեան, ստիճանաւորումի արտայայտութիւն մըն է: Ոյժը բան մըն է որ չի կրնար գոյութիւն ունենալ առանց տարածուելու, առանց անձի մը կամ իրի մը՝ որ իր վրայ պէտք է ընդունի զայն: Ոյժը իր վրայ ընդունողը տուժողն է: Ուժ-տուժող չեն կրնար «համա» կազմել միասին: Հայոց ցեղասպանութեան ժամանակ կար ոյժ բանեցնող եւ ոյժ ընդունող հատուածները՝ որոնք չէին կրնար զիրար հանդիպիլ: 6-րդ Խաղերը՝ նուիրուած ցեղասպանութեան, կը քաջալերէ, կը հաստատէ ու կը պնդէ ոյժին կարեւորութիւնը:

Սոչին յաղթեց Մոսկուային. «Երէկ [12 Օգոստոս 2015] աւարտեցաւ Համահայկական ամառնային 6րդ խաղերուն պասքէթպոլի մրցաշարքը, երբ տեղի ունեցաւ տղոց աւարտական մրցումը: Աւարտական այս մրցումին Սոչիի խումբը, բաւական տպաւորիչ յաղթանակ մը արձանագրելով Մոսկուայի դէմ, տիրացաւ տիտղոսին:»(9) «Բաւական տպաւորիչ»՝ մէկ կողմի համար, ուրեմն, միւս կողմը՝ բաւական անհրապոյր, եւ «տիրացաւ»՝ նոյն կողմին համար, ուրեմն՝ միւս կողմը՝ հպատակեցաւ:

Չյաղթանակած խումբերը պարտաւոր են ինքնաբացատրութիւն մը տալ, քանի որ մասնակցութեան նպատակը յաղթելն էր: Անոնք կը դիմեն պատրուակներու. «[Եգիպտահայ պասքէթի] խումբը գրաւեց 9-րդ տեղը՝ մասնակցող 37 քաղաքներուն մէջէն: Այս արդիւնքը արժանի է գովասանքի, նկատի առնելով գաղութիս անդամներուն փոքր քանակը՝ համեմատութեամբ ուրիշ քաղաքներու եւ երկիրներու: Պէտք է նշուի նաեւ որ Գահիրէն, անցնելով նախնական փուլը, 16-րդ շրջափուլին կը պարտուի Սոչիէն՝ խաղերուն ամենաուժեղ ↪ 4

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## 3 ՀԱՅԱՍՏԱՆ-ՍՓԻՒՌՔ

խումբէն: Նախնական փուլին ան կրցաւ պարտութեան մատնել Հոլիուտի ուժեղ խումբը 73-72-ով:»(10) Պատրուակներով, փոխանակ այլընտրանքներու, անշուշտ, կը հաստատուի ու առաջ կը մղուի նպատակակէտը՝ յաղթանակը:

Բոլոր յօդուածներուն մէջ առաջնայինը դիրքն է, գրաւած աստիճանը, բայց ոչ մասնակցութիւնը, մասնակցութեան հաճոյքը: Իսկ առանց մասնակցութեան չեչտադրութեան՝ մասնակցութիւն մը որ շրջապատին հետ կազմէ ապրուած փորձառութիւն, «համա»-ն մատնուած է յաւէտ անգործութեան:

Բոլոր յօդուածներուն մէջ կը լսուի միայն յաղթող-յաղթողներուն ձայնը, մինչդեռ «համա» կ'ենթադրէ լսելի դարձնել բոլորին ձայնը: Պարտուողներն ալ կը խօսին միայն իրենց մասին՝ պատրուակներով:

«Համա» կը նշանակէ միասին, հաւասար, համայնական, համախոհ, փոխլրացնող, փոխներթափանցող, որոնցմէ ոչ մէկը ակնարկուած է յօդուածներուն մէջ:

«Համա» կը նշանակէ՝ 1+1+1...=1: Կը նշանակէ՝ ամէն մէկը ունի իր ինքնուրոյնութիւնը (1+1+1...), բայց այս բոլոր 1-երը կապուած են ենթակայական յարաբերութեամբ, որոնց հանրագումարը դարձեալ 1-ն է (=1): Թուաբանական այս պարզագոյն հաւասարումը կը միացնէ: Միացում՝ տարբերակային ինքնուրոյնութիւններու պահպանութեամբ:

Մինչդեռ մրցակցութիւնը կ'առաջադրէ ուրիշ համաչափութիւն մը՝ 1+1+1=3: Կը նշանակէ՝ ամէն մէկը ունի իր ինքնուրոյնութիւնը (1+1+1), բայց այս բոլոր 1-երը կապուած են առարկայական յարաբերութեամբ՝ օտարացած իրարմէ, որոնց կուտակուած թուաքանակային գումարը կը հանդիսանայ 3 (=3): Թուաբանական այս դասական հաւասարումը կ'անջատէ: Օտարացում՝ բախումնային ինքնուրոյնութիւններու սեւեռումով:

Ինչպէ՞ս կարելի կ'ըլլայ «համա»-ն համատեղել իր գործնական հակառակին հետ, առանց անհանդստութիւն պատճառելու ընթերցողին մօտ: Օտարացումը՝ դրամատիրութեան այդ գլխաւոր յատկանիշը, այս առումով էական դեր կը խաղայ: «Համա»-ն ու մրցակցութիւնը հականիշներ են: Առաջինին արդիւնքը բոլորն են, երկրորդին արդիւնքը միայն այն սակաւաթիւն է որ կը յաջողի մրցակցութեան մէջ, ինքը դառնալով լաւագոյնը, միւսները՝ ոչ-լաւագոյնները, պատճառ դառնալով զանազան *անհաւասար* խումբերու յառաջացումին: Երկուքը չեն կրնար գործել միասին: Կամ մէկը, կամ միւսը: Վերոյիշեալ բոլոր յօդուածներուն օգտագործած բառերն ու արտայայտութիւնները կտրականապէս մրցակցային են եւ ոչ մէկ կապ ունին «համա»-յի հետ: Ներկայ դարաշրջանին օտարացումը այնքան բնական դարձած է, որ նման հակաբեւեռներու համատեղումը կը մնայ աննկատ եւ նոյնիսկ կը դառնայ ողջունելի:

(Շար. 2/3)

ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

2. «Համահայկական խաղեր. Մոսկուան ջախջախեց Լոս Անճելըսը», *Ասպարէզ*, 5 Օգոստոս 2015, http://asbarez.com/arm/232836/:

3. «Համահայկական խաղեր. Երեւանի խումբը կը գտնուի դասաւորման պարագլուխի դիրքին վրայ», *Ազդակ*, օրաթերթ, 7 Օգոստոս 2015, http://www.aztagdaily.com/archives/253108:

4. «Համահայկական խաղեր. Քարոլին Պօյաճեան չահեցաւ տիտղոսը», *Արարատ*, 8 Օգոստոս 2015, 78-րդ տարի, թիւ 170, էջ 4:

5. «Հայրենիքէն վերադարձին Համահայկական Խաղերու Լիբանանի միացեալ մարմնի նախագահը *Զարթօնք*ի խմբագրատան մէջ», *ՌԱԿ Մամուլ*, 11 Օգոստոս 2015, http://ragmamoul.net/hy/diaspora/2015/08/11/:

6. «Համահայկական խաղեր. Ֆուտբոլի Երեւանի թիմի երրորդ յաղթանակը», *Armsport.am*, 8 Օգոստոս 2015, http://www.armsport.am/hy/news/2015/08/08/:

7. «Համահայկական խաղերի բասկետբոլի մրցաշարը չատ ուժեղ թիմեր է հաւաքել այս տարի. Կարէն Սպենջեան», *Արմէնպրէս*, 8 Օգոստոս 2015:

8. «Համահայկական խաղեր 2015. ուժեղագոյն չախմատիստները յայտնի են», *sport.slaq.am*, 12 Օգոստոս 2015, http://sport.slaq.am/arm/news/158862/:

9. «Համահայկական խաղեր. Սոչիի խումբը՝ պասքէթպոլի մրցաշարքի ախոյեան», *Ազդակ*, օրաթերթ, 13 Օգոստոս 2015, http://www.aztagdaily.com/archives/254066:

10. '6th PanArmenian games: Remarkable results', 20 August 2015, *AGBU Egypt*, http://agbuegypt.com/pressdetails.aspx?ID =1265&type=1:

## 1 «ՏԵՂԵԿԱՏՈՒՈՒԹԵԱՆ ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ»

Փաստորէն, մինչ Սերժ Սարգըսեանը փորձում է աշխարհին ներկայանալ ժողովրդավարական իմիջով, պարծենում է, թէ խօսքի ազատութիւն կայ մեր երկրում, իրականում տեղի է ունենում հակառակը: Իսկ այսպէս չարունակուելու դէպքում ոչ միայն Սերժ Սարգսեանը, այլեւ վարչապետ Կարէն Կարապետեանն ու արդարադատութեան նախարար Դաւիթ Յարութիւնեանը կարող են վաստակել մամուլի թշնամու տիտղոսը»:

## 1 ԲՈՂՈՔԻ ԱԿՑԻԱ ԱՄՈՒԼՍԱՐԻ ԾՐԱԳՐԻ ԴԷՄ. ԲՆԱՊԱՀՊԱՆՆԵՐԸ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆԸ ՆՈՒԻՐԵՑԻՆ...

տանի կառավարութեան շէնքի մօտ էր: Հէնց այստեղ էլ որոշեցին թողնել «ոսկէ գունդը»՝ որպէս նուէր Ամուլսարի ծրագրին աջակցող կառավարութեանը:

«Ոսկու փայլին խաբնուած կառավարութիւնը իրաւունք չունի վտանգել մեր եւ ապագայ սերունդների կեանքը: Ամուլսարը չպէտք է դառնայ ոսկու հանք», - ասաց Աննա Շահնազարեանը:

«Այս սիմվոլիկ «70 տոննա ոսկին» մենք նուէր ենք անում կառավարութեանը, որպէսզի նա յիշի, որ ոսկին ուտելով չի կարող կշտանալ: Ջուրը, հողը եւ նրա տուած բերքն աւելի կարեւոր են, քան ոսկին: Ամուլսարի շահագործման ծրագիրն աղէտ է լինելու Հայաստանի համար: Այս ոսկին թող կանգնի բոլոր նրանց կոկորդներին, ովքեր փորձում են աւերել մեր բնութիւնը», - յայտարարեց ՀԲՃ-ի անդամ Լեւոն Գալստեանը:

Բնապահպանները «ոսկէ գունդ»-ը թողեցին Հանրապետութեան հրապարակի օղակի մօտ: Կարճ ժամանակ անց ոստիկանները հեռացրեցին այն:

*ԷկօԼուր*

## 2 ՆԵՂՈՍԻ ՍՈԽԱԿԸ-ՎԱԼԵՆՏԻՆԱ ԱՄԻՐԱՅԵԱՆ (ԱՌՆՕ) *

միլիոնաւոր բազմութիւններու պաշտած կուռքը, եւ հայ անունը այսպէսով անգամ մը եւս պիտի փառաւորէ գեղարուեստական աշխարհիս մէջ, Մամուլեաններու, Մաքսուտեաններու կողքին», - *Արաքս* թերթում գրուել է «Տիկին Վալենթին Ամիրայեանի փայլուն ապագան» յօդուածում:

Էմի Ռայեանը 1933-ին Փարիզից անցել է ԱՄՆ, որտեղ նկարահանուել է մի քանի կինոնկարում (գնչուհի՝ Ալֆրեդ Է. Գրինի *Ես մի կնոջ էի սիրում*, 1933), սակայն աստղ չի դարձել... Ամերիկահայ մի հեղինակ արտիստուհուն նկարագրել է որպէս միջահասակ, «կենցաղագիտական չնորհալի ժեստով օժտուած» մի տիկին: «Եթէ հայերս վարժուած ըլլայինք Ամերիկացւոց նման սոշըլ լայֆ-ի (սոցիալական կեանքի – Ա. Բ.) նկարագրական ձեւին՝ հետաքրքիր կը լինէր յարգելի օրիորդի հագուածքին ու այլ էդիքէդին չուրջ մանրամասնութիւններ տալ, սակայն կը բաւականանք միայն խոստովանելով՝ որ ան գեղեցիկ դիմագիծով, նուրբ կազմով, քաղցրաբարբառ լեզուով եւ չնորհալի ձեւերով օժտուած աղջիկ մ'է, որ եթէ չ'ուզէր իր ինքնութիւնը յայտնել՝ ոչ ոք կը կասկածի, որ ան հայուհի է» (յօդուածագիրն, անշուշտ, չի իմացել արտիստուհու կէս խտալուհի լինելը):

Ինչեւէ, Վալենտինա Ամիրայեանը վերադարձել է Եգիպտոս, որտեղ ծանօթացել է գործարար, Եգիպտոսի բռնցքամարտի նախկին ախոյեան Հայկ Ասատուրեանի (1901, Հելիոպոլիս - 1987, Լոս Անջելէս) հետ: Ամուսնալուծուած լինելով՝ Վալենտինան երկրորդ անգամ ամուսնացել է իր տարեկից, համակրելի, եռանդուն Ասատուրեանի հետ: 1934-ին նրանք մշտական բնակութեան են մեկնել Չինաստան՝ իրենց հետ տանելով ոչ միայն Վալենտինայի Օգիւստա քրոջը, Ալիդա դստերը ու նրա ամուսին Երուանդ Համամճեանին, այլեւ Վալենտինայի առաջին ամուսին Ստեփան Ամիրայեանին: Շանհայ մեկնելու ճանապարհին ճապոնական «Հարունա Մարու» նաւի վրայ Վալենտինան ծանօթացել է ամերիկացի նշանաւոր կինոբեմադրիչ Սեսիլ Բ. դէ Միլի հետ, որը նրան հրաւիրել է ԱՄՆ՝ փորձելու մասնակցել իր *Կլէոպատրա* ֆիլմի գլխաւոր դերակատարուհու մրցոյթին: Սակայն Վալենտինային այլ կեանք էր սպասում...

Հաստատուելով Շանհայում՝ Հայկ Ասատուրեանը դարձել է Չինաստանի կինոյի եւ մարզաշխարհի մագնատներից մէկը: Նրան է պատկանել Շանհայի «Մետրոպոլիտէն ֆիլմզ» ընկերութիւնը, նրա ջանքերով է իրականացուել *Աւազի մորեխները* չինական կինոնկարը: Հիմնել եւ ղեկավարել է մարզադաշտեր Շանհայում, Տիենծինում, նաեւ Մանիլայում (Ֆիլիպիններ): Ասատուրեանը եղել է Չինաստանի հայ համայնքի կարեւոր դերակատարներից, առատաձեռն նուիրատուութիւններ է կատարել ազգային հաստատութիւններին: Ժամանակի մամուլը, սակայն, լռում է, թէ ինչով է զբաղուել Չինաստանում Վալենտինան...

Վրայ է հասել Երկրորդ Աշխարհամարտը: Չինաստանը գրաւած Ճապոնիայի իշխանութիւնները տեղաբնակ հայերին համարել են թշնամի եւ արգելափակել են համակենտրոնացման ճամբարներում: Վալենտինա եւ Ալիդա Ամիրայեանները ձերբակալուել եւ ուղարկուել են Ֆիլիպիններ՝ 1942–1945 թուականներին արգելափակուած մնալով Մանիլայի ճապոնական համակենտրոնացման ճամբարում: Պատերազմի աւարտից յետոյ Վալենտինան գերութիւնից դուրս է եկել քաղցից կիսամեռ վիճակում: Ամերիկացիները նրանց քաղաքացիութիւն են առաջարկել, եւ ընտանիքը մեկնել է Լոս Անջելէս: Այստեղ էլ տարիներ անց նախկին երգչուհին վախճանուել է 70 տարեկան հասակում...

«Նեղոսի սոխակի» գեղարուեստական ձիրքերը ժառանգել է նրա թոռը՝ դերասան, բեմադրիչ, թատերագիր Էդուին Ջերարդը (ծնեալ Վարդան Համամճեան, ծն. 1948), որը տասնեակ բեմադրութիւններ եւ դերակատարումներ է իրականացրել Լոս Անջելէսում եւ Փարիզում...

* Անուանի բանասէր, հայագէտ, ֆիլմագէտ, պատմաբան, բառարանագիր Արծուի Բախչինեանի այս յօդուածը առաջին անգամ տպագրուած է Երեւանի *Ազգ-Մշակոյթ*ի մէջ, 7 Ապրիլ 2017-ին: Այստեղ ան կը հրատարակուի հեղինակին կողմէ կատարուած մանր փոփոխութիւններէ ետք: Նիւթը կարեւոր է 1920-ականներու եգիպտահայ մշակոյթով հետաքրքրուողներուն համար:

Այս առիթով կ'ուզենք յիշեցնել՝ որ 16 տարի առաջ *Ջահակիր* վերահրատարակած էր Բախչինեանի կարեւոր յօդուածներէն մէկը՝ «Հայկական առաջին կինոնկարը ստեղծուել է 1912 թուականին» (*Ջահակիր*, 15 Նոյեմբեր 2001), ուր հեղինակը իր սովորական մանրազննող մօտեցումով հետաքրքրական յայտնագործութիւններ կ'ընէր եգիպտահայ սինեմայի ամենասկզբնական շրջանի պատմութեան վերաբերեալ: Նոյն ամսուայ վերջաւորութեան հայերուն կողմէ լոյս տեսած «Հայագիտական» արաբերէն հրատարակութեան մը մէջ կը հանդիպինք յիշեալ յօդուածին արաբերէն կմախքային թարգմանութիւնը: Արդարեւ, յօդուածը ներկայացուած էր ոչ իբրեւ թարգմանութիւն այլ X անձին հեղինակութիւն, բնականաբար անտեսելով անոր աղբիւրն ու բուն հեղինակը: Հակառակ մեր բանաւոր դիմումներուն, սրբագրութիւն կամ ճշդում տեղի չունեցաւ: Արաբական աշխարհը այս յայտնագործութիւնը վերագրեց X-ին: *Ջահ.*

ՉԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع
TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1800 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 19 ՀՈԿՏԵՄԲԵՐ 2017 ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٨٠٠ الخميس ١٩ أكتوبر ٢٠١٧

# ՀԱՅԱՍՏԱՆՆ ՈՒ ԱՐՏԱԳԱՂԹԸ՝ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՀԱԶԱՐԱՄԵԱՅ ՔԱՌՈՒՂԻՆԵՐԻՑ ԱՌԱՅՍՕՐ

**ԱՐԹՈՒՐ ԵՂԻԱԶԱՐԵԱՆ**
**Պատմաբան, հրապարակախօս**

Արտագաղթը կամ էմիգրացիան (լատ.՝ emigro - «վտարւում եմ» բառից) քաղաքական, սոցիալական, տնտեսական կամ այլ չարժառիթներով հայրենիքից հարկադիր կամ կամաւոր հեռանալն է մէկ այլ երկիր, մշտական կամ ժամանակաւոր բնակութեան նպատակով: Արտագաղթը, իր բոլոր բացասական ընկալումներով հանդերձ, բնական գործընթաց է, որն ուղեկցել է մարդկութեանը՝ առաջացումից սկսած: Արտագաղթի ճանապարհով ողջ երկիր մոլորակը ժամանակին բնակեցուեց նախամարդկանց կողմից եւ ձեւաւորուեց ժամանակակից օիկումէնը (երկրագնդի՝ մարդկութեամբ բնակեցուած հատուածը): Բայց սա, որպէս մարդ տեսակ՝ ընդհանուր ընկալումով: Էթնոսների ձեւաւորումով, իր բնօրրանում արտագաղթը ընկալւում է որպէս բացասական երեւոյթ: Երկրների, ժողովուրդների դիմագիծը ոչ մի երեւոյթ այնքան չի փոխել, որքան մարդկային մեծ խմբերի տեղաշարժերը: Դրանց հետեւանքով պատմութեան թատերաբեմից անհետացան մի շարք էթնոսներ ու ծնուեցին նորերը, քարտէզի վրայից վերացան ու յայտնուեցին պետութիւններ, իրենց տեղը զիջեցին մի շարք լեզուներ ու մշակոյթներ, բայց նրանց փոխարէն յայտնուեցին նորերը:

Արտագաղթին նպաստում են հիմնականում երկու խմբի պայմաններ: Դրանք են.

1) **Դուրս մղող պայմաններ**: Սրանք կապուած են անհատի (խմբի)՝ իր բնակավայրում գոյութեան ծանր կամ անբաւարար պայմանների հետ (աշխատանքի բացակայութիւն, ցածր կենսամակարդակ, մասնագիտական առաջխաղացման դժուարութիւններ, ազգամիջեան, կրօնական հակամարտութիւններ, սով, բռնապետութիւն, պատերազմներ, տնտեսական ճգնաժամ, տարերային-էկոլոգիական, տեխնածին աղէտներ եւ այլն):

2) **Ձգող պայմաններ**: Այլ վայրում ապրելու գրաւիչ մի քանի պայմանների առկայութիւնը: Դրանցից են. նախընտրելի աշխատանք՝ բարձր վարձատրութեամբ կամ եկամտով, բարձր կենսամակարդակ, սոցիալական կարգավիճակի բարձրացման մեծ հնարաւորութիւններ, սոցիալ-տնտեսական եւ քաղաքական կայունութիւն, ազգամիջեան եւ միջկրօնական հանդուրժողականութիւն, բարենպաստ բնակլիմայական պայմաններ եւ այլն):

Այժմ վերադառնանք հայկական իրականութիւն: Յետ վերադառնալով դարերի խորք, տեսնում ենք, որ արտագաղթը Հայկական Լեռնաշխարհում շատ աւելի հին պատմութիւն ունի, քան մեր ժամանակակից էթնիկ գիտակցութիւնը: Հայկական Լեռնաշխարհը, համաձայն մի շարք հայ եւ օտարերկրացի մասնագէտների փաստարկուած վարկածների, հանդիսանալով հնդեւրոպացիների (արիացիների) նախահայրենիքը, դեռեւս հազարամեակներ առաջ, ինչպէս օրգանիզմում սիրտն է արիւնը մղում՝ պարբերաբար իրենից մարդկային խմբեր է մղել լեռնաշխարհից դուրս, որոնք հաստատուելով օիկումէնի տարբեր անկիւններում՝ հիմք են դարձել հին եւ ժամանակակից մի շարք ազգութիւնների եւ պետութիւնների ձեւաւորմանը: Այդ ժողովուրդներին այսօր յայտնի են հնդեւրոպական լեզուաընտանիքին պատկանող էթնոսներ՝ ինքնուրոյն էթնիկ գիտակցութեամբ: Այս ցեղերն ու ցեղախմբերը Հայկական Լեռնաշխարհից արտագաղթել են գրեթէ հաւասարաչափ կրելով վերոգրեալ երկու խմբի՝ **դուրս մղող** եւ **ձգող** պայմաններից մի շարք յատկանիշներն ունենալով: Մարդկային խմբերը լեռնաշխարհում շատացել էին, ու անհրաժեշտութիւն էր առաջացել դուրս գալ դէպի նոր կենսատարածքներ: Հնդեւրոպական այն ցեղերն ու ցեղային միութիւնները, որոնք մնացին Հայկական Լեռնաշխարհում ու նրա յարակից տարածքներում՝ հիմք հանդիսացան հայ ազգի եւ հայկական պետականութիւնների ձեւաւորման համար:

Հայ իրականութեան մէջ առաջին յիշատակուող մեծ արտագաղթը **ձգող** պայմաններով էր: Դա Տիգրան Մեծի օրօք Կիլիկիայում հաստատուելն էր: Եւ սա միակ ու բացառիկ դէպքն է, երբ այդ ու յետագայ դարերի արտագաղթը յանգեցրեց նրան, որ Հայկական Լեռնաշխարհից դուրս հայկական գաղթօջախը ծնունդ տուեց հայկական պետականութեան, ի դէմս Կիլիկիայի Հայկական Թագաւորութեան: Մնացած բոլոր դէպքերում գաղթօջախները, որքան էլ ինչ որ շրջանում կենսունակ լինեն, վաղ թէ ուշ՝ դատապարտուած են ձուլման...

Պատմութեան ընթացքում Հայաստանից հիմնական զանգուածային արտագաղթերը սկսել են պետականութիւնների անկումներից յետոյ: Դա հիմնականում պայմանաւորուած է օտար տիրապետման հետ, երբ մեծանում է ֆիզիկական ոչնչացման հաւանականութիւնը, կեղեքումը՝ յանգեցնելով սոցիալական անկման, ազգային եւ կրօնական խտրական վերաբերմունքի եւ այլն: Այն յատկապէս աւելի սուր դրսեւորուեց արաբական տիրապետութեան օրօք (արտագաղթում էին հիմնականում հարեւան Բիւզանդական Կայսրութիւն, ինչի արդիւնքում հայերը լուրջ դիրք գրաւեցին այնտեղ, անգամ հայկական ծագումով կայսերական դինաստիա ծնունդ առաւ), թուրք սելջուկների, մոնղոլ-թաթարների, ակ-կոյունլու եւ կարա-կոյունլու թուրքմենական ցեղերի տիրապետման, պարսկական եւ օսմանեան տիրապետութիւնների ժամանակ:


Արթուր Եղիազարեան

Բացի օտար տիրապետութեան բերած արհաւիրքներից՝ արտագաղթին նպաստել են նաեւ բնական աղէտները, մասնաւորապէս՝ երկրաշարժը: Երկրաշարժի հետեւանքով, օրինակ, Անիի ու յարակից բնակավայրերի բնակչութիւնն արտագաղթեց դէպի Ղրիմ, Ուկրաինա եւ Լեհաստան, որտեղ ժամանակին հայկական մեծ գաղթավայրեր ձեւաւորուեցին (այդ արտագաղթի արդիւնքում ձեւաւորուած սփիւռքն այլեւս չկայ, ձուլուեց դարերի ընթացքում): Սրանք հիմնականում համապատասխանում էին արտագաղթի դուրս մղող պայմաններին:

Հայկական Լեռնաշխարհի տարածքում տեղի են ունեցել նաեւ դրական հետեւանք ունեցող միգրացիոն տեղաշարժեր: Բայց դրանք չեն դիտւում որպէս ներքին միգրացիոն շարժեր, քանի որ Հայկական Լեռնաշխարհը բաժանուած էր մի քանի պետութիւնների միջեւ, հետեւաբար, Հայաստանի մի հատուածից, որը գտնւում էր մի պետութեան ենթակայութեան տակ, տեղաշարժուելով մէկ այլ հատուած, որը գտնւում էր մէկ այլ պետութեան ենթակայութեան տակ՝ դիտարկւում է որպէս արտագաղթ: Օրինակ, 19-րդ դարասկզբում՝ Օսմանեան Կայսրութեան էրզրումի վիլայէթից հայ բնակչութեան հաստատումը Ջաւախքում, Բիթլիսի ու Վանի վիլայէթներից՝ ներկայիս Գեղարքունիքի, Կոտայքի, Արարատի եւ Արմաւիրի մարզերի տարածքում, պարսկական տիրապետութեան տակ գտնուող Խոյ, Սալմաստ, Ուրմիա, Մակու եւ այլ հատուածներից՝ Վայոց Ձորի ու Արարատի ներկայիս մարզերի տարածքում: Այս արտագաղթերի արդիւնքում կրկին հայաշատ դարձաւ Արեւելեան Հայաստանը, որը դարերով (յատկապէս՝ Շահ-Աբասի օրօք) գրեթէ հայաթափուած էր: Այս արտագաղթերը յայտնի են «ներգաղթ» անունով, եթէ դիտւում է ներկայիս Հայաստանի բնակչութեան աչքերով եւ վերաբնակեցում՝ եթէ դիտւում է Ռուսական Կայսրութեան աչքերով: Բայց իրականում դրանք վերոնկարագրեալ «դուրս մղող» եւ «ձգող» պայմանների առկայութեամբ արտագաղթեր էին՝ քանի որ դատարկւում էին այլ պետութեան տիրապետութեան տակ գտնուող բուն հայկական պատմական մի շարք տարածքներ: 19-րդ դարի 20-ական թուականների վերջի ռուս-թուրքական պատերազմի ու այնտեղից հայերի արտագաղթի արդիւնքում հայերի թիւը բաւականին նուազեց Արեւմտեան Հայաստանի տարածքում, եւ առաջին անգամ հայերն այնտեղ չկազմեցին բնակչութեան 50%-ից աւելին, չնայած մնացած բոլոր էթնոսներից իւրաքանչիւրից թուաքանակով աւելի էին:

Հայ իրականութեան ամենամեծ արտագաղթը 20-րդ դարասկզբի Հայոց Ցեղասպանութիւնն էր, որի արդիւնքում Արեւմտեան Հայաստանը դատարկուեց իր բնիկ էթնոսից ու դադարեց առայսօր հայ կեանքի մասը կազմելուց: Ցեղասպանութիւնից փրկուածներն արտագաղթեցին ներկայիս Հայաստանի տարածք ու աշխարհի տարբեր անկիւններ՝ ծնունդ տալով նոր գաղթօջախների կամ երկրորդ շունչ տալով այն գաղթօջախներին, որոնք արդէն մարում էին (վաղ թէ ուշ՝ բոլոր գաղթօջախներին էլ սպառնում է ձուլումը, յատկապէս գլոբալացման մեր ժամանակաշրջանում...):

Բոլոր դարերում էլ եղել են ձգող պայմաններով արտագաղթեր, որոնք աւելի շուտ կարելի է անուանել աշխատանքային արտագաղթեր: Հայ իրականութեան մէջ այդ տեսակ արտագաղթը կոչւում էր պանդխտութիւն կամ դարիբութիւն: Այս տեսակի արտագաղթը տարբերւում էր նրանով, որ հիմնականում ընտանիքը մնում էր բնօրրանում, իսկ աշխատունակ ⇨ 3

## ԳԱՀԻՐԷ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԼԱՐԱՅԻՆ ՔԱՌԱՆՈՒԱԳԸ ԳԱՀԻՐԷԻ ՕՓԵՐԱՅԻ ՄԷՋ

Հոկտեմբեր 8-ին, Գահիրէի Օփերայի Փոքր Սրահին մէջ տեղի ունեցաւ Հայաստանի Աշոտ Տիգրանեան Մշակութային-Երաժշտական Հիմնադրամի Լարային Քառանուագի նուագահանդէսը: Կատարողներ՝ Դաւիթ Կապոյեան (Ա. ջութակ), Նարեկ Սահակեան (Բ. ջութակ), Ազատ Յարութիւնեան (թաւջութակ) եւ Վերոնիկա Վարդպատրիկեան (վիոլա):

Յայտագիր. Ալեքսանդր Պորոտին՝ Լարային Քառանուագ թիւ 1, Ֆրանց Շուպերթ՝ Լարային Քառանուագ թիւ 13, երկ 29 (*Rosamunde Quartet*) եւ Կոմիտաս-Ասլամազեան՝ եօթը ժողովրդական մեղեդիներ: Նուագահանդէսը կազմակերպուած էր Եգիպտոս-Հայաստան դիւանագիտական կապերու 25-ամեակին առիթով:

## ՀԱՅԱՍՏԱՆ

# *ԺՈՂՈՎՈՒՐԴ*. ԱՄՀ-Ն ՉԻ ՀԱՒԱՏՈՒՄ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՃԻ ԿԱՆԽԱՏԵՍՈՒՄՆԵՐԻՆ

*Ժողովուրդը* գրում է. «Արժոյթի Միջազգային Հիմնադրամը (ԱՄՀ) Հոկտեմբերի 11-ին հրապարակած զեկոյցում կասկածի տակ է դրել Հայաստանում այս տարի 4.3 տոկոս տնտեսական աճ գրանցելու՝ իշխանութիւնների կանխատեսումները: Ըստ այդ զեկոյցի՝ 2017թ. Հայաստանի համար կարելի է կանխատեսել հազիւ 3.5 տոկոս աճ, իսկ 2018թ.՝ 2.9 տոկոս աճ: ⇨ 4

# ԳՐՔԱԽԱՌՆՈՒԹԻՒՆ՝ ՄԱՇՏՈՑԻ ՊՈՒՐԱԿՈՒՄ

Մաշտոցի Պուրակում Հոկտեմբերի 14-ին խսկական գրքի տօն է. Բուկինիստ գրախանութը մինչեւ ուշ գիշեր միջոցառումների մեծ շարք է կազմակերպել, որի գլխաւոր խորհուրդը գրքերի փոխանակութիւնն է՝ «գրքախառնուելը»: Արձակագիր Գուրգէն Խանջեանը *Սիվիլնէթ*ի հետ զրոյցում նշեց, որ այսօրուայ երիտասարդութիւնը սիրում է ընթերցել:

1

## ՀԱՅԱՍՏԱՆՆ ՈՒ ԱՐՏԱԳԱՂԹԸ՝ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՀԱԶԱՐԱՄԵԱՅ ՔԱՌՈՒՂԻՆԵՐԻՑ ԱՌԱՅՍՕՐ

տարիքի տղամարդկանցից մեկնում էին օտար ափեր՝ ընտանիքի համար միջոցներ վաստակելու համար: Այս արտագաղթողների զգալի մասն ի վերջոյ վերադառնում էր հայրենի տուն, եւ քչերն էին կարողանում յետագայում ընտանիքն էլ տանել: Սա պայմանաւորուած էր այն հանգամանքով, որ հիմնականում օրավճար գումար էին վաստակում, որի մի մասով ապրում էին, միւս մասը տուն ուղարկում, եւ քանի որ չէին կարողանում այնքան վաստակել, որ օտար ափերում տուն ձեռք բերէին, իսկ բնօրրանում ունէին ապրելու տեղ՝ հետեւաբար տարիներ անց, երբ անաշխատունակ էին դառնում՝ վերադառնում էին:

Արտագնայ աշխատանքի համար արտագաղթը՝ ձգող պայմանների յատկանիշներով, պահպանուեց նաեւ խորհրդային իշխանութեան տարիներին: Յատկապէս՝ կապուած խամ-խոպան հողերի իւրացման եւ մշակման՝ պետական քաղաքականութեան հետ, ինչպէս նաեւ՝ ընդհատակեայ արտադրութիւն կազմակերպելու կամ այնտեղ աշխատելու հետ (խորհրդային տարիներին նրանց անուանում էին «ցեխաւիկներ»):

Հայաստանի վերանկախացման անցած 26-27 տարիներին արտագաղթը հիմնականում պայմանաւորուել է հայ-ադրբեջանական պատերազմով, դրա ու ԽՍՀՄ փլուզման արդիւնքում առաջացած սոցիալ-տնտեսական դժուարութիւններով: Եթէ 80-ականների վերջերին եւ 90-ականների սկզբներին հանրապետութիւնից բնակչութեան արտահոսքի պատճառները բազմազան ու տարաբնոյթ էին, ապա յետագայում, մասնաւորապէս 1995-ից ի վեր, էմիգրացիոն հոսքերը կրեցին ընդգծուած պատճառականութիւն: Այդ շրջանում իրականացուած ուսումնասիրութիւններն ու հարցումները ցոյց են տալիս, որ արտագաղթի գործընթացում գերակայ դիրք է գրաւում տնտեսական դրդապատճառներով բնակչութեան արտահոսքը: Հարցման մասնակիցների 2/3-ը որպէս արտագաղթի հիմնական դրդապատճառ համարում են աշխատանքի հետ առնչութիւն ունեցող հանգամանքները՝ աշխատատեղերի (այդ թւում՝ մասնագիտական) բացակայութիւնը կամ սղութիւնը, աշխատանքի վարձատրութեան ցածր մակարդակը եւ ինքնուրոյն տնտեսական գործունէութեամբ զբաղուելու բարդութիւնները, երկրում առկայ անօրինութիւնները: Յետագայում անցկացուած հարցմանը մասնակցած տնային տնտեսութիւնների շուրջ 15%-ի անդամները լրացնում են արտագնայ աշխատանքների մեկնածների շարքերը: Այսպիսով, կարելի է արձանագրել, որ աշխատանքային էմիգրացիան շարունակում է էական դեր ունենալ արտագաղթի խճապատկերում:

Վերջին տարիներին, ֆոկուս խմբերի միջոցով շուրջ 1500 անձանց շրջանում իրականացուած հարցումների արդիւնքում (թէ որոնք են արտագաղթի պատճառները, եւ ինչ պէտք է փոխել՝ չարտագաղթելու համար) տարբեր պատճառների մէջ որպէս առաջնային նշուել են հետեւեալները.

ա) Աշխատանք՝ արժանապատիւ վարձատրութեամբ,

բ) Տուն (բնակարան) ձեռք բերելու հնարաւորութիւն,

գ) Օրէնքի առաջ բոլորի հաւասարութիւն:

Անկախութիւնից ի վեր Հայաստանից իրականացուող ժամանակաւոր եւ մշտական միգրացիայի հիմնախնդիրը պետական մակարդակով յստակ կարգաւորուած չէ:

Որոշ մասնագէտների գնահատմամբ՝ հանրապետութիւնից գաղթած բնակչութեան թիւը կազմում է աւելի քան մէկ միլիոն երեք հարիւր հազար մարդ: Սա ժողովրդագրական աղէտի կարող է յանգեցնել: Նման արտագաղթը բազմաթիւ խնդիրներ եւ հարցեր է դնում ինչպէս պետութեան, նրա անվտանգութեան, այնպէս էլ հասարակութեան առջեւ եւ պահանջում, որ անյապաղ ձեռնարկուեն գործուն քայլեր ստեղծուած իրավիճակը բարելաւելու, արտագաղթի սոցիալական, տնտեսական եւ իրաւական պատճառները վերացնելու եւ դրա թողած հետեւանքների վրայ դրական ներգործութիւն ունենալու ուղղութեամբ:

*Անալիտիկոն*

Սեպտեմբեր 2017

ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Այսու կը տեղեկացնենք մեր յարգոյ հասարակութեան թէ Եգիպտոսի Հայոց Թեմի Կազմական Կանոնագրի 23-րդ յօդուածի տրամադրութեան հիման վրայ, Աղեքսանդրիոյ Պատկառելի Թեմական Ժողովի ամբողջական ընտրութիւնները տեղի պիտի ունենան Ուրբաթ, 24 Նոյեմբեր 2017-ին:

Սոյն ամբողջական ընտրութիւններուն մասնակցելու իրաւունք ունեցող ազգայիններու ցանկը կախուած է Ս. Պօղոս-Պետրոս եկեղեցւոյ մուտքին եւ Ազգային Առաջնորդարանիս մէջ:

Կը տեղեկացնենք նաեւ, թէ ըստ Կազմական Կանոնագրի 13 եւ 14 յօդուածներուն, ընտրութեան ցանկերը *«փակցնելու եւ հրատարակելու գործողութեան թուականի յաջորդող 7 օրերու ընթացքին, 21 տարեկանը լրացած եգիպտահպատակ եւ երկու տարի Աղեքսանդրիոյ եւ անոր շրջակայքին մէջ բնակող իւրաքանչիւր անձ (այր թէ կին), որուն անուան արձանագրութիւնը մոռցուած է, կրնայ պահանջել որ իր անունը արձանագրուի: Նոյնպէս ամէն ընտրող, որուն անունը արձանագրուած է, կրնայ պահանջել, որ առանց իրաւունք ունենալու արձանագրուած անձին անունը ջնջուի»*:

ԴԻՒԱՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

ԽՈՀԵՐ

# ՀԱՅԱՍՏԱՆ-ՍՓԻՒՌՔ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

### ԳԻՏԵԼԻՔ ՍՓԻՒՌՔԻ ՄԱՍԻՆ

Արդե՞օք Սփիւռքի Նախարարութիւնը իրապէս հետաքրքրուած է Սփիւռքով: Հետաքրքրութեան ամենակարեւոր գործօններէն մէկը գիտելիքն է: Սփիւռքի Նախարարութիւնը արդէն վարժուած է անվերջ շնորհաւորագիրեր յղել ու ղրկել հաւատարիմ սփիւռքահայ կառոյցներուն եւ անհատներուն: Հաճելի է կարդալ զանոնք: Բոլորը գրուած են միանման շարադրանքով ու բովանդակութեամբ՝ ընդամէնը անուններու փոփոխութեամբ: Ոչ մէկ ձգտում կայ ենթակային մէջ կարդալ իրեն իւրայատուկ որեւէ յատկութիւն: Բոլոր ենթականերն ալ արցախասէր են եւ հայապահպաններ: «Խոհեր»-ու սիւնակներէն մէկուն մէջ (3 Օգոստոս 2017) կը գրէի՝ թէ ինչպէս եգիպտահայ թերթի մը ուղղուած կարեւոր շնորհաւորագիրի մը մէջ նախարարուհին արձանագրած էր երկու աչքառու փաստագրական սխալներ:

Հրապարակախօս եւ վերլուծաբան Սարգիս Հացպանեան միշտ մեզի կը զարմացնէ իր խիզախ խօսքերով եւ քննադատութիւններով՝ արտասանուած Հայաստանի մէջ: Ինքն էր որ վերջերս մեծ համարձակութեամբ կրկին մեզի յիշեցուց Մեսրոպ Մութաֆեան պատրիարքի «պաշտօնական» ծեծը Հայաստանի մէջ 1990-ականներու վերջաւորութեան: Դիւրին բան չէ այսպիսի նիւթ վերաբանալ, մանաւանդ որ ծեծողները կամ զանոնք դրդողները ողջ առողջ տակաւին կը կենակցին իշխանութիւններուն մօտ: Ինչեւէ: Զշեղուիմ նիւթէն: Նախարարութեան գիտելիքային անտեղեկութեան մասին Հացպանեան ըսած է. «Երէկ [13 Հոկտեմբեր 2016-ին] Հայաստանի Սփիւռքի փոխնախարար Սերժ Սրապիոնեանը հարցազրոյց է տուել, ինչը լսելուց ամօթից գետնի տակ կարելի է անցնել: Այդ պետական այրը յայտարարել է, թէ մեզ յայտնի չէ գէթ մէկ սիրիահայի տուեալ, որն ուզում է Հայաստան գալ: Եթէ իրեն յայտնի չէ, թող հարցնի Հացպանեան Սարգսին, կամ միւսներին, կամ մտնի մեր՝ «Հալէպահայեր, մեզ բացակայ չդնէք» էջն ու տեսնի, որ մարդիկ անուն ազգանունով գրում են՝ մենք ուզում ենք գալ: Բայց չգիտեն՝ իրենց դիմաւորող լինելու է, թէ՝ ոչ, իրենց մասին հոգացողներ կան, թէ՝ ոչ:»(11)

Ոչ միայն գիտելիքի պակաս, այլեւ գիտելիքի տիրապետելու ցանկութեան բացակայութիւն:

### ՍՓԻՒՌՔԻ ՆԱԽԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ ԵՒ ԱՐՏԱԳԱՂԹ-ՆԵՐԳԱՂԹԻ ԽՆԴԻՐԸ

Թաթուլ Յակոբեան վերը յիշուած հարցազրոյցին մէջ բարձրացուց արտագաղթի խնդիրը՝ որ դուրս մնացած է Համահայկական Համաժողովներէն:

Եկէք մէկ կողմ ձգենք գոնէ մէկ անձի մը ելոյթը՝ որ նման հարց մը բարձրացուց, որովհետեւ այդ անձը պաշտօնապէս տեսագրուած ու YouTube-ի մէջ իր գիտակցութեամբ տեղադրուած հաւաքոյթի մը ժամանակ, անձնական շահերու բերումով, Հայաստանի ամենավտանգաւոր օլիկարքներէն մէկուն պաշտօնապէս ըսած է՝ «դուք փայլող արեւ էք», խօսք մը՝ որուն նմանը ոչ մէկ մտաւորական արժանացած է հանրային տեսագրութեան մը մէջ, խօսք մը՝ որ ուղղուած է այնպիսի օլիկարքի մը, որ պատասխանատու է Հայաստանի ամենէն յարձակողական դրամատիրական մենատիրութեան արմատաւորումին, օլիկարք մը՝ որ մինչեւ այսօր քրտնաջան հայաստանցիներու փոքր պիզնէսները կը մաքրագործէ իր նէօլիպերալ ընկերութիւնները հիմնելու համար, օլիկարք մը՝ որ իր հանքարդիւնաբերական պիզնէսներով գիւղական հողեր ապականած է, գիւղացիներու հողեր բռնագրաւած է, օլիկարք մը՝ որ իր քազինոներով բիւր հայերու դրամներն ու հոգեկան հաւասարակշռութիւնը խլած է: Կարելի չէ դրամական ակնկալիքներու համար գովել օլիկարք մը՝ որ արտագաղթը ստեղծողներէն մէկն է, եւ ապա ակնարկել արտագաղթի մասին՝ իբրեւ Հայաստանի թերացում: Արտագաղթը վերածեցինք առեւտուրի եւ գաղափարախօսական արդիւնաբերութեան:

*Առաջին լրատուականի* հետ Մայիսին ունեցած հարցազրոյցի մը ընթացքին, Հացպանեան կ'ըսէ, թէ Սփիւռքի Նախարարութիւնը շատ կարեւոր դերակատարութիւն պէտք է ունենայ ներգաղթի կազմակերպութեան համար. «Ոչ թէ «Արի տուն-մարի տուն» լոլոներով մարդկանց խաբել, մարդկանց ձեռք առնել, այլ իրապէս մարդկանց բերել Հայաստան, երաշխիք կանգնել, արժանապատիւ կեանքով ապահովել, աշխատանք տալ, որ այդ մարդը մերուի մեր երկրին, հողին: Սփիւռքի նախարարութիւնը պէտք է դառնայ ներգաղթի նախարարութիւն: Հրանոյշ Յակոբեանը 2008 թուականից մինչեւ այսօր Հայաստանից արտագաղթած իւրաքանչիւրի քայլին նպաստել է անձամբ, իր անգործութեամբ:»(12)

Ներգաղթ կազմակերպելով Հացպանեան կը խօսի իրական ու շօշափելի արդիւնքներու մասին, որոնց կարելի է հասնիլ կազմակերպուած ու հեռանկարային ծրագիր մշակելու պարագային: Մինչդեռ Սփիւռքի Նախարարութիւնը կ'ապրի օրը օրին, համագումարներ՝ առանց հետեւութիւններու, սփիւռքահայերու այցելութիւններ՝ լրագրային լուսանկարներու համար, եւ այլն:

Դարձեալ *Առաջին լրատուականի* հետ 2017 Օգոստոս 3-ին տուած հարցազրոյցին մէջ, Հացպանեան կը շեշտէ՝ որ Արի Տուն ծրագիրը արտագաղթին նպաստող ծրագիր մըն է: Ինչպէ՞ս: Այս ծրագիրով արտասահմանէն եկած երեխաները կը հիւրընկալուին հայաստանցի ընտանիքներու կողմէ: Հացպանեան կը տեղեկացնէ, որ ինք անձամբ ծանօթ է տասը տեղացի ընտանիքներու, որոնք արտասահմանի երեխաները հիւրընկալելէ ետք գաղթած են այդ երեխաներուն երկիրները: Կ'ըսէ՝ թէ եթէ մասնաւոր հետապնդում կատարէ, վստահ է որ անոնց քանակը շատ աւելի պիտի ըլլայ:

Հայաստան-Սփիւռքի համագումարներուն մէջ արտագաղթի կամ ներգաղթի հարց չէ բարձրացած: Յստակ է: Նման նիւթ մը ուղղակիօրէն լուսարձակի տակ պիտի դնէր Հացպանեանի նշած անյաջողութիւնները: Պետական բացթողումները քօղարկելու համար օրակարգէն կը հանուի հայութեան ամենաէական խնդիրը: Նախարարութեան դիմագիծի «իմաճինկ»-ը աւելի կարեւոր է քան ամբողջ ժողովուրդի մը ճակատագիրը: Հատուածական շահը աւելի կարեւոր է քան համայնական շահը, հակառակ համահայկականութեան նշանաբանին: Բայց չէ՞ որ հատուածականին ձեռքն են որոշումներուն արձակումները եւ «իմաճ»-ներուն ստեղծումը: Համահայկականութիւնը ենթական է հատուածականութեան:

### ՍՓԻՒՌՔԸ՝ ԸՆԴԴԷՄ ԻՐ ԸՆԿԵՐՎԱՐԱԿԱՆ-ԺՈՂՈՎՐԴԱՎԱՐԱԿԱՆ ՆՇԱՆԱԲԱՆՆԵՐՈՒՆ

Սփիւռքի ներկայացուցչական խումբ մը՝ մարքսիթ-ընկերվարական է, ուրիշ մը՝ ժողովրդավարական, որուն անուանումը կը բովանդակէ ժողովրդավար բառին հին տարածուած տարբերակը: Այսինքն, առաջինին համար հասարակութիւն եւ երկրորդին համար ժողովուրդ հասկացողութիւնները ենթադրուած են կազմել իրենց մտածողութեան հիմքը: Կը հասկնամ, որ անոնց պարտականութիւնն է պայքարիլ իշխանական զեղծարարութիւններու դէմ եւ թիկունք կանգնիլ հասարակութեան եւ ժողովուրդին:

Պետական անօրինականութեան եւ ճնշումի դէպքերն ալ պատահականօրէն չպակսեցան 2017 Սեպտեմբերին կայացած 6-րդ Համագումարէն առաջ:

Յիշենք, որ վերջին խորհրդարանական ընտրութիւններէն ետք՝ Ապրիլ 13-ին, *Hayastan24* կայքը կը հրապարակէ ՍԱՍ սուփերմարքէթի մէջ կայացած նախընտրական ժողովներէն մէկուն ձայնագրութիւնը, ուր տղամարդ մը աշխատակիցներուն յորդորներով եւ սպառնալիքներով կը պարտադրէր ձայներ բերել Հայաստանի Հանրապետական Կուսակցութեան թեկնածու, այժմ պատգամաւոր Արտակ Սարգսեանի օգտին: Այդ մարդը Արտակի եղբայր Արամ Սարգսեանն էր: Ամբողջ աշխարհը մտիկ կ'ընէ ձայնագրութիւնը, նոյնիսկ ԱՄՆ-ի դեսպանը յայտարարութեամբ հանդէս կու գայ: Կը յարուցուի

4

ՃԱՇԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

3

## ՀԱՅԱՍՏԱՆ-ՍՓԻՒՌՔ

քրէական գործ: 6-րդ Համագումարէն ընդամէնը 10 օր առաջ յատուկ քննչական ծառայութիւնը կը կարճէ յարուցուած քրէական գործը՝ յանցակազմի բացակայութեան հիմքով:

Համագումարի մասնակցողներէն մէկը փափաք ունեցա՞ւ արդեօք քննադատական ձայն մը բարձրացնել բոլորի համար այսքան յստակ դատական զեղծումին մասին, խօսելով արդարութեան եւ ժողովրդավարութեան անունով, երբ այդ նոյն մասնակցողները ամէն օր կը խօսին *իրենց* արդարամտութեան, հայրենիքի համար ըրած զոհողութիւններուն եւ այլնի մասին:

Յովհաննէս Թումանեանի տուն թանգարանին մէջ բացուած էր *Խաւարում* ցուցահանդէսը, որ կը ներկայացնէր սթալինեան բռնաճնշումի որոշ երեսները, հիմք ունենալով Թումանեանի որդիները՝ որոնք եղած էին Սթալինի զոհերը: 6-րդ Համագումարէն չուրջ մէկ շաբաթ առաջ պետական հրամանով կը փակուի ցուցահանդէսը: Մշակոյթի փոխնախարար Արեւ Սամուէլեան լրագրողներուն կը բացատրէ՝ որ պատճառը ցուցահանդէսին «մի փոքր քաղաքականացուած» ըլլալն էր:

Կը զարմանաս: Մէկ կողմէ Հ1 հեռատեսիլի կայանով իշխանութիւններու թոյլտուութեամբ պատրաստուած պատմական-արխիւային բնոյթով հաղորդումներ կը ցուցադրուին սթալինեան բռնաճնշումին զոհ գացած հայ երեւելիներու մասին, միւս կողմէ նոյն իշխանութիւնները թանգարանի մը նախաձեռնած միեւնոյն բովանդակութեամբ ցուցահանդէսին խոչընդոտ կը հանդիսանան: Այնպէս ինչպէս մէկ կողմէ կը կանգնեցնեն Միկոյեանի արձանը, միւս կողմէ արշաւ մը կը սկսին Հայաստանի փողոցներուն անունները լիցքաթափելու խորհրդահայ ղեկավարներու անուններէն:

Այս անորոշութեան մէջ, վստահաբար, մեզի անյայտ կէտեր կան, զորս բնաւ ալ հետաքրքրական պիտի չըլլար գիտնալ: Ոչ ալ կարեւորութիւն պէտք է տալ մշակոյթի փոխ նախարարի ասոյթին՝ թէ ցուցահանդէսը քաղաքականացուած է, քանզի ասիկա լոկ խօսքային պատճառաբանութիւն մըն է, որուն ետեւ թաքնուած է չյայտարարուած, *քաղաքական* պատճառը: Բուն խնդիրը ցուցահանդէսը փակելու հրամանն է ու զայն փակելու կարողութիւնը, առանց առիթ տուած ըլլալու բանակցութեան, վիճաբանութեան եւ հանրային քննարկումի: Քանի որ այս մօտեցումը բացակայ էր, ուրեմն Համագումարի մասնակցողները, իբրեւ ազատութեան եւ մարդու իրաւունքներու պաշտպան ինքնակոչ ներկայացուցիչներ, պարտաւորութիւն մը ունէին ցուցահանդէսի փակումին հարցը բարձրացնել՝ իբրեւ հակաժողովրդավարական քայլ, կամ գոնէ հրապարակային բացատրութիւններ պահանջել:

Հայաստանի ժողովրդավարութեան մասին խօսք անգամ տեղի չունեցաւ: Իսկ սփիւռքահայերուն ներկայացուցած կառոյցները արդե՞օք ժողովրդավարական են որպէսզի կարենան ուրիշին ժողովրդավարութիւնը քննադատել:

### ՍՓԻՒՌՔ-ՀԱՅԱՍՏԱՆ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ

Այս բոլորը նկատի ունենալով, պիտի եզրակացնել որ Սփիւռք-Հայաստան յարաբերութիւնները կա՛մ կեղծ են եւ կամ գոյութիւն չունին: Ասիկա ճիշդ է եթէ ընդունինք որ հայութեան ներկայացուցիչները Հայաստանի ու Սփիւռքի իշխանութիւններն են: Երկու կողմի ընտրելախաւերը իրենց ձեռքը վերցնելով յարաբերութիւնները, զանոնք ծայր աստիճան անձնականացուցած են: Արդարեւ, հայութեան բուն ներկայացուցիչը հասարակութիւնն է: Իսկ Սփիւռք-Հայաստան բաւական չարժուն յարաբերութիւններ գոյութիւն ունին հասարակութեան ներքին չերտերու միջեւ՝ հեռու երկու կողմերու պաշտօնատար անձերու պարտադրանքներէն եւ պաշտօնական միութիւններու, հիմնարկներու, նուագախումբերու, երգչախումբերու ձեւականութիւններէն եւ պատահականութիւններէն: Այս յարաբերութիւնները խորքային են, տարածուն ու խիստ արգասաբեր: Ասիկա է յարաբերութիւններու էական իմաստը: Պաշտօնական համագումարները կը խանգարեն այս յարաբերութիւնները:

(Վերջ 3)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

11. «Պորտաբոյծ մի օրգան, որից կարելի է ուղղակի ազատուել. Սարգիս Հացպանեանը՝ Սփիւռքի Նախարարութեան եւ սիրիահայերին տեղափոխելու մասին», Հարցազրոյցը՝ Աննա Բադալեանի, *Newsbook.am*, 14 Հոկտեմբեր 2016,
http://newsbook.am/?p=92129/:

12. Սօնա Յարութիւնեան, «Հրանոյշ Յակոբեանի տեղը լինէի, հրապարակում կը կախէի ինձ՝ որպէս չյաջողած նախարարի. Հացպանեան», *Առաջին լրատուական*, 29 Մայիս 2017, http://www.1in.am/2149491.html:

1

## *ԺՈՂՈՎՈՒՐԴ*. ԱՄՀ-Ն ՉԻ ՀԱՒԱՏՈՒՄ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՃԻ ԿԱՆԽԱՏԵՍՈՒՄՆԵՐԻՆ

Հետաքրքիրն այն է, որ Հայաստանի ֆինանսների նախարար Վարդան Արամեանն էլ *Ռոյթերզին* տուած հարցազրոյցում, խօսելով Հայաստանի տնտեսութեան վիճակի մասին, ասել է. «Մենք պատրաստւում ենք վերանայել տնտեսական աճի հիմքերը 2017 թուականի համար եւ 3.2-ի փոխարէն սահմանել իրական տնտեսական աճի 4.3 տոկոսանոց ցուցանիշ այս տարուայ համար»: Ի դէպ, փորձը սովորաբար ցոյց է տուել, որ միջազգային կառոյցների կանխատեսումները բաւական ռէալ են: Այնպէս որ, չի բացառւում՝ տարեվերջին հետաքրքիր պատկերի ականատես լինենք»:

2

## ՎԱՐԴԱՆՈՅՇ ՊԱՐԹԵՒԵԱՆ ԿԱՄ ԷՀՍԱՆ ՔԱՄԷԼ՝ ԵԳԻՊՏԱԿԱՆ ՍԻՆԵՄԱՅԻ ԱՌԱՋԻՆ ՀԱՅ ԴԵՐԱՍԱՆՈՒՀԻՆ

ամբողջութեամբ եղաւ գիտակից ու կչռուած եւ վերջացաւ իր անձնասպանութեամբ ու դիտապաստ անկումով որ սքանչելի էր:»(13)

1928 Ապրիլ 29-ին, Էզպէքիէի Պարտէզ Թատրոնին մէջ, Զարիֆեան կու տայ իր հրաժեշտի ներկայացումը Աւետիս Ահարոնեանի *Ոսկէ հէքիաթ* թատերգութեամբ (տրամ 3 արար): Պարթեւեան դարձեալ կը ներկայացուի իբրեւ «արաբական բեմի յայտնի դերասանուհի:»(14)

Դերակատարներն էին՝ Յովհաննէս Զարիֆեան (Ծերունի ուսուցիչ), Վարդանոյշ Պարթեւեան (Եւա), Վալանթին Ամիրայեան (Ելենա), Կ. Կարապետեան (Վարադունի), Տիկին Է (Մարթա):

Օ. Մ. կը գրէ. «Օր. Վ. Պարթեւեան չունեցաւ պէտք եղած յաջողութիւնը Եւայի դերին մէջ, զոր պէտք էր խաղալ քնքոյշ եւ խոր արուեստով մը:»(15)

1929 Մարտ 3-ին, Գահիրէի Թատրոն Ռամսէսին մէջ կը բեմադրուի Յակոբ Պարոնեանի *Ատամնաբոյժն արեւելեանը* (երգախառն կատակերգութիւն 5 արար), կազմակերպութեամբ դերասան Գ. Մանուկեանի եւ մասնակցութեամբ «չնորհալի դերասանուհի» Օր. Վ. Պարթեւեանի: Յայտարարութեան մէջ Պարթեւեան արդէն չի յիշատակուիր իբրեւ եգիպտական բեմերու դերասանուհի(16):

1929 Նոյեմբեր 24-ին, Գահիրէի Թատրոն Բրէնթանիայի մէջ կը բեմադրուի Ալֆրէտ տը Պիէվրըի *Ճշմարիտ գզջում* թատերգութիւնը (բարոյալից տռամ 3 արար), կազմակերպութեամբ Խաչիկ Նորիկեանի(17):

Դերակատարներն էին՝ Խաչիկ Նորիկեան (Իմպէր), Վտարանդի (Մոնթա), Վարդանոյշ Պարթեւեան (Սիւզան), Գարունի (Ժոզէֆ), Արամ (Պլանքէթ), Արշաւիր (Ալպերթ) եւ Համազասպ (անցորդ)(18): Անստորագիր քննախօսականին համաձայն, «Օր. Պարթեւեան (Սիւզան) ունեցաւ սրտայոյզ ապրումներ եւ կրցաւ վառ պահել հանդիսատեսներուն ցաւն ու համակրանքը իր սայթաքած կնոջ, զղջումի եւ զաւակին սիրոյն համար անձնասպանութեան պարագաներուն մէջ:»(19)

1930 Մարտ 30-ին, Գահիրէի Թատրոն Ռամսէսին մէջ, Եգիպտահայ Քօմէտի Թատերախումբը կը ներկայացնէ *Քլէրէթի 28 օրուան գինուորութիւնը* օփերէթը (4 արար), հայերէն թարգմանութեամբ Ռաուլ Բօնչօնի(20):

Դերակատարներ՝ Վ. Արփիար (Միչօնէ), Ռօզա Յովհաննէսեան (Քլէրէթ), Աստղիկ Եկէնեան (Պէրէնիս), Վարդանոյշ Պարթեւեան (Նիչօլթ), Վրթանէս Երամեան (գնդապետ), Ա. Ստեփանեան (Վիվարէլ), Յ. Մամուրեան (Ժիպար) եւ Միքայէլ Միքայէլեան (Պընուա): Եւրոպական նուագախումբը կը ղեկավարէր Մաէսթրօ Գոսթազի:

«Պ. Երամեան եւ Օր. Յովհաննէսեան ապրեցուցին օփերէթը, իսկ Պ. Արփիար եւ Օր. Պարթեւեան խաղը, առաջինը – ինչպէս յաճախ – քիչ մը չափազանցուած բայց միշտ համով, իսկ վերջինը բնական չնորհալի դերակատարութեամբ», կը գրէ *Արեւ*(21):

1930 Մայիս 31-ին, Գահիրէի Թատրոն Բրէնթանիայի մէջ, Եգիպտահայ Քօմէտի Թատերախումբը կը ներկայացնէ *Արշին մալ ալան* օփերէթը (4 արար), ի նպաստ Արարատ Ֆութպօլ Մարմնակրթական Միութեան մարզարանի կահաւորումին:

Դերակատարներ՝ Ռօզա Յովհաննէսեան, Վալանթին Ամիրայեան, Վարդանոյշ Պարթեւեան, Արփիար, Լեւոն Յովհաննէսեան, Ստեփանեան եւ Բագրատունի(22):

Այսպէս, 16 տարեկանին (1923) հանդիսանալով Եուսէֆ Ուահպիի ծանօթ թատերախումբին առաջին դերասանուհիներէն մէկը, 19 տարեկանին (1926) մասնակցելով եգիպտական երկրորդ ֆիլմին, 22 տարեկանին (1929) դարձեալ մասնակցելով եգիպտական ֆիլմի մը, 21-23 տարեկանին (1928-1930) գլխաւոր դերերով ելոյթ ունենալով եգիպտահայ թատրոնի ներկայացումներուն, Վարդանոյշ Պարթեւեան / Էհսան Քամէլի անունը 1930-էն ետք կարելի չեղաւ գտնել արձանագրութիւններու մէջ: Յոյսով եմ, յետագային նոր յայտնագործութիւններ կատարուին իր կեանքի ու գործունէութեան մասին: Բայց այսքանն ալ բաւարար է իր տեղը ապահովելու եգիպտական եւ եգիպտահայ դերասանական արուեստի պատմութեան մէջ:

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. 1927 Դեկտեմբեր 23-ի Զարիֆեանի առաջին ներկայացումին Պարթեւեան չէ մասնակցած (Օ. Մ., «Թատրոն. *Օթէլլօ*», *Արեւ*, օրաթերթ, Գահիրէ, 26 Դեկտեմբեր 1927, ԺԴ. տարի, թիւ 2698, էջ 2):

2. Աւետիս Եափուճեան, *Եգիպտահայ մշակոյթի պատմութիւն*, Գահիրէ, Հայ Ազգային Հիմնադրամ, 1981, էջ 394:

3. Ռաուիա Ռաչէտ, *Եուսէֆ Ուահպի. սանաուաթ ալ-մակտ ուալ-տէմու'* [արաբերէն՝ Եուսէֆ Ուահպի. փառքի եւ արցունքի տարիներ], Գահիրէ, Տար Ալ-Շըրուք Հրատարակչութիւն, 2016:

4. Անդ:

5. *Ֆիլմ Նետա' ալ-րապպ* (1926), *elcinema.com*, http://www.elcinema.com/ work/ 2036409/ (արաբերէն):

6. Անդ:

7. Մոհամմատ Քարիմ, *Արշիւ ալ-սինեմա ալ-մասրէյեա* [արաբերէն՝ Եգիպտական սինեմայի դիւանը], հատոր իններորդ (1924-1940), Գահիրէ, անթուակիր, *Յաւելուած Սինեմա օն լայն հանդէսին*, թիւ 12, էջ 3-4:

8. Անդ, էջ 3:

9. Անդ, էջ 7:

10. *Արեւ*, 9 Յունուար 1928, ԺԴ. տարի, թիւ 2709, էջ 3:

11. Օ. Մ., «*Համլէթ*», *Արեւ*, 24 Յունուար 1927, ԺԴ. տարի, թիւ 2722, էջ 2:

12. *Արեւ*, 7 Ապրիլ 1928, ԺԴ. տարի, թիւ 2786, էջ 3:

13. Օ. Մ., «Թատրոն. *Ինկած բերդի իշխանուհին*», *Արեւ*, 18 Ապրիլ 1928, ԺԴ. տարի, թիւ 2793, էջ 2:

14. *Արեւ*, 21 Ապրիլ 1928, ԺԴ. տարի, թիւ 2796, էջ 3:

15. Օ. Մ., «Թատրոն. *Ոսկէ հէքիաթը*», *Արեւ*, 1 Մայիս 1928, ԺԴ. տարի, թիւ 2804, էջ 2:

16. *Արեւ*, 19 Փետրուար 1929, ԺԵ. տարի, թիւ 3053, էջ 3:

17. *Արեւ*, 16 Նոյեմբեր 1929, ԺԶ. տարի, թիւ 3281, էջ 3:

18. «Թատերական քրոնիկ», *Արեւ*, 29 Նոյեմբեր 1929, ԺԶ. տարի, թիւ 3292, էջ 2:

19. Անդ:

20. *Արեւ*, 25 Մարտ 1930, ԺԶ. տարի, թիւ 3389, էջ 3:

21. «Քօմէտիին յաղթանակը», *Արեւ*, 2 Ապրիլ 1930, ԺԶ. տարի, թիւ 3396, էջ 2:

22. *Արեւ*, 27 Մայիս 1930, ԺԶ. տարի, թիւ 3441, էջ 3: ««Արարատի» ներկայացումը», *Արեւ*, 3 Յունիս 1930, ԺԶ. տարի, թիւ 3447, էջ 2:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1801 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 2 ՆՈՅԵՄԲԵՐ 2017 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٨٠١ الخميس ٢ نوفمبر ٢٠١٧


## ՍՓԻՒՌՔԱԿԵԴՐՈՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԻՒՆ ՈՒ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԿՐԹԱԿԱՆ ՄՕՏԵՑՈՒՄՆԵՐՈՒ ԱՆՀՐԱԺԵՇՏՈՒԹԻՒՆ


**ՌԱԶՄԻԿ ՓԱՆՈՍԵԱՆ**
**Հայկական Համայնքներու Բաժանմունքի Տնօրէն**
**Գալուստ Կիւլպէնկեան Հիմնարկութիւն**


(Այս զեկոյցը արտասանուած է Հայաստան-Սփիւռք 6-րդ Համաժողովին, 18 Սեպտեմբեր 2017-ին:)

Այս զեկոյցը Սփիւռք-Հայաստան յարաբերութիւններու նիւթին շուրջ այնպիսի մօտեցում մը պիտի ներկայացնէ, որ սոյն Համաժողովին ոճէն կամ սպասուածէն կը տարբերի: Խօսքերս սահմանափակուած պիտի մնան կրթական ծիրէն ներս՝ առանց քաղաքական որեւէ հարցի անդրադառնալու: Զեկոյցիս առանցքը արեւմտահայերէնի պահպանման ու զարգացման մարտահրաւէրներն են սփիւռքեան իրականութենէն ներս:

Հիմնական դրոյթս հետեւեալն է. եթէ իսկապէս կ'ուզենք արեւմտահայերէնը պահել, ամրապնդել եւ զարգացնել, պէտք է սփիւռքակեդրոն ըլլանք, սփիւռքակեդրոն մօտեցումներ ու ծրագիրներ մշակենք:

Աւելցնեմ, որ խօսքս աւելի շատ ուղղուած է Սփիւռքի ղեկավարութեան, մտաւորականներուն, լեզուով ու մշակոյթով զբաղող անձերուն:

Արեւմտահայերէնի հիմնական հարցը ի՞նչ է. ուղղագրութի՞ւն, քերականական կանոննե՞ր, արեւելահայերէնի հետ մերձեցո՞ւմ: Ըստ իս, ասոնք կարեւոր են, բայց այս հանգրուանին մեր հիմնական հարցերը չեն: Եթէ UNESCO-ի վերլուծումը լաւ կարդանք, պիտի տեսնենք, որ հիմնական հարցը լեզուն յաջորդ սերունդին փոխանցելու մարտահրաւէրն է: Հո՛ս է, որ լեզուին ամենէն լուրջ նահանջը կը տեսնենք: Ուրեմն՝ հո՛ս է, որ շեշտը պէտք է դնենք ու մեր ներդրումները կատարենք:

Տեղեակ եմ, որ մեր գաղութները փոխուած են: Կեթթոներու մէջ չենք ապրիր եւ ազգային ինքնութիւն պահպանելու ընթացքները կը տարբերին անցեալէն: Այս ընդհանուր խնդիրներուն մասին պիտի չխօսիմ՝ ժամանակի սղութեան պատճառով: Արեւմտահայերէնի նահանջին համար միջազգային իրողութիւններն ու ընկերային հոսանքներն այպանող շատ մելան կը հոսի, թէպէտեւ այս հարցերուն մասին լուրջ ուսումնասիրութիւններ չկան առայժմ: Սակայն, շատ քիչ կը խօսուի Սփիւռքի ղեկավարութեան դերին մասին:

Լեզուն պահելը կամ ոչ առաջին հերթին բարոյական որոշում մըն է: Կ'ուզե՞նք, որ արեւմտահայերէնը գոյատեւէ թէ՞ ոչ: Ինքնախաբէութեամբ չզբաղինք՝ միասնաբար «անշո՜ւշտ» բացագանչելով: Սփիւռքի եւ Հայաստանի մէջ արդէն գոյութիւն ունի այն մտածելակերպը կամ եզրակացութիւնը, թէ սփիւռքեան պայմաններուն մէջ լեզուն պահելն անիմաստ է եւ թէ ասկէ ետք մեր ինքնութիւնն ուրիշ հիմերու վրայ պէտք է կերտենք: Ես բացարձակապէս կը մերժեմ այս մօտեցումը ու անոր ենթադրած պարտըւողականութիւնը: Թէպէտեւ միաժամանակ աւելցնեմ, որ երբեք չեմ ըսած թէ ազգային ինքնութիւնը միայն լեզուի վրայ խարսխուած է կամ թէ միայն լեզուով կ'արտայայտուի:

Ուրեմն՝ խօսքս անոնց ուղղուած է, որ կը հաւատան թէ լաւ կ'ըլլայ եթէ արեւմտահայերէնը գոյատեւէ եւ զարգանայ:

Մենք՝ Սփիւռքի կրթական ու մշակութային ծիրէն ներս գործունեայ անհատներ ու կառոյցներ, պէտք է քիչ մը ինքնաքննադատութեամբ զբաղինք: Ո՞ւր է որ ձախողած ենք ու կը շարունակենք ձախողիլ: Սովորաբար լեզուի եւ դպրոցներուն անկումը կը վերլուծենք առանց հայելիին նայելու ու մեր թերութիւնները նշմարելու: Կ'այպանենք համաշխարհայնացումը (globalisation), ծնողները, մեր ապրած երկիրներուն կրթական օրէնքները եւ նոյնիսկ՝ երեխաները, բայց երբեք չե՛նք հարցներ թէ մե՛նք՝ կրթական ծրագիրներու պատասխանատուներ, տնօրէններ եւ ուսուցիչներ, ի՞նչ սխալ ըրինք:

Զորս կէտեր մատնանշեմ: Առաջինը կը վերաբերի հայեցի դաստիարակութեան գաղափարին, որուն ընդմէջէն հայերէնն ու հայեցին նոյնացուցած ենք մեր դպրոցներուն եւ մեր մտածելակերպին մէջ: Կը կարծեմ, որ այս միաձուլումը իր բացասական դերը սկսած է ունենալ: Լեզուն «կեթթոյացուցած» ենք եւ կեթթոյին անունը դրած ենք «հայեցի դաստիարակութիւն»: Այսինքն՝ հայերէնով հայոց պատմութիւն, գրականութիւն, լեզու ու կրօնք կը սորվեցնենք առանց աշխարհին հետ հայերէնով առնչուելու:

Այս պատճառով ալ, առանց անդրադառնալու կ'ամրապնդենք այն գաղափարը թէ անգլերէնը, սպաներէնը կամ ֆրանսերէնը, օրինակ, աշխարհի հետ կապուելու լեզուներ են, բայց ո'չ հայերէնը: Այս երեւոյթը իրապէս վտանգ մըն է մեր լեզուի կենսունակութեան համար, որովհետեւ այն լեզուն կը նուաստացնէ ու զանիկա միայն մէկ «նիւթի»՝ հայկականութեան լեզու կը դարձնէ, եւ այդպիսով, տարիներու ընթացքին, լեզուն կը սկսի իր այժմէականութիւնը կորսնցնել՝ դառնալով գեղեցիկ, բայց սառած յուշապատկեր մը, «ծրար» մը՝ մեծ հօր ու մեծ մօր լեզուն եւ ո'չ թէ մեզի հասակակից բարեկամներու հետ յարաբերելու լեզուն կամ նորարարութիւններու լեզուն:


Ռազմիկ Փանոսեան

Երկրորդ՝ լեզուն վերածեցինք պարտադրանքի, բեռի, գաղափարախօսութեան եւ նոյնիսկ՝ սրբութեան, երբ այն պզտիկին ու պատանիին համար պէտք է ըլլայ հաճոյքի, խաղի ու աշխարհին բացուելու լեզու: Եթէ 21-րդ դարու սկիզբը կ'ուզենք արեւմտահայերէնը ամրապնդել ու զարգացնել, ուրեմն լեզուն պէտք է անպայման դուրս գայ պարտադրանքի կամ պարտականութիւն ըլլալու ծիրէն ու գրաւիչ դառնայ երիտասարդ սերունդին համար: Այո՛, ասիկա կարելի է իրականացնել:

Երրորդ՝ շարունակելով նախորդ գաղափարը, մանկավարժական մեր մօտեցումները չկրցանք թարմացնել՝ քայլ պահելով արդի կրթական մօտեցումներուն հետ: Շարունակեցինք հայերէնը սորվեցնել որպէս «մայրենի» նոյնիսկ երբ շատ տեղեր այն արդէն վերածուած էր երկրորդ լեզուի՝ պահանջելով ուսումնական մեթոտաբանութեան փոփոխութիւն, մասնաւորապէս՝ արեւմտեան Սփիւռքի մէջ: Կը խօսինք նահանջի մասին, կը տեսնենք դրական արդիւնքի պակասը, բայց տակաւին դասական մօտեցումներուն կառչած կը մնանք՝ պարտադրելով, որ պզտիկն ու պատանին լեզուն սորվին տափակ մթնոլորտի մը մէջ՝ փոխանակ զանիկա հաճելի պայմաններու տակ «իւրացնելու»:

Չորրորդ՝ սկսանք հաւատալ, որ մեր հարցերուն լուծումները ուրիշ տեղէ մը, այսինքն՝ Երեւանէն պիտի գան: (Վստահ եմ, որ այս կէտն է, որ ամենէն շատ ընդվզում պիտի յառաջացնէ այս սրահին մէջ:) Հոս է, որ «սփիւռքակեդրոնի» գաղափարը աւելի պիտի ընդլայնեմ:

Ցետեղեռնեան Սփիւռքի ղեկավարները, մասնաւորապէս՝ Միջին Արեւելքի մէջ, այսօրուան մեր գաղութները կերտեցին: Անոնք ո'չ միայն հայախօսութեան կը հաւատային, այլեւ զանիկա իրագործեցին իրենց ջանքերով ու իրենց գաղութներու հնարաւորութիւններով: Անոնք հիմնուեցան 19-րդ դարու Զարթօնքէն բխած եւ Օսմանեան Կայսրութեան մէջ տարածուած հայկական դպրոցներու փորձառութեան ու մանկավարժական գիտելիքներու հարուստ աւանդութեան վրայ: Ուզեցին եւ կրցան շարունակել կրթական ու լեզուական իրենց աշխատանքները՝ ապաւինելով իրենց անցեալի փորձին եւ իրենց ժամանակակից կրթական նորարարութիւններուն:

Ներկայիս, կարծէք սկսած ենք մեր հարցերուն լուծումը փնտռել այլուր՝ երկրի մը մէջ, ուր արեւմտահայերէնը այդքան ալ կեդրոնական հարց մը չէ: Այո՛, արեւմտահայերէնի հանդէպ որոշ հետաքըրքրութիւն մը կայ այնտեղ, բայց մենք մեզ չխաբենք. փաստերը չկան թէ այդ հետաքրքրութիւնը չօշափելի արդիւնքի պիտի առաջնորդէ:

Թող սխալ չհասկցուիմ, որ հայրենիքը որեւէ դեր չունի արեւմտահայերէնի պահպանումին մէջ: Մասնագիտական ծիրէն ներս Հայաստանի համալսարաններն ու մասնագէտները որոշ դերակատարութիւն կրնան ունենալ՝ հետազօտական աշխատանքներ տանելով, բայց ո'չ մանկավարժական ծիրէն ներս, ուր մեր ներկայի կարեւորագոյն պէտքերն են:

Կը խորհիմ, որ Սփիւռքի ղեկավարներն ու մտաւորականները իրենց պատասխանատուութիւնն ուրացած եւ անկէ խուսափած կ'ըլլան, երբ կ'ըսեն թէ նախաձեռնութիւնները, լուծումները եւ նոյնիսկ մարդուժը Հայաստանէն պէտք է գան: (Զմռոնանք,

☞ 4

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ԵՐԻՏԱՍԱՐԴՆԵՐԸ ԸՆԴԴԷՄ ՊԱՇՏՊԱՆՈՒԹԵԱՆ ՆԱԽԱՐԱՐՈՒԹԵԱՆ ՕՐԻՆԱԳԻԾԻՆ

«Զինծառայութեան եւ զինծառայողի կարգավիճակի մասին» Պաշտպանութեան Նախարարութեան օրինագիծը կը միտի ուսանողական ըմբոստութեան պատճառ դառնալ:

Երեւանի մէջ ուսանողները բողոքի ցոյց կազմակերպած են օրինագիծին դէմ:

Գիտութեան Զարգացման նախաձեռնութեան անդամ Սարգիս Բաղդարեան յայտարարած է. «Պայքարի մարտավարութիւնը որոշելու եմ ոչ թէ ես, ոչ թէ այս շարժման նախաձեռնող խումբը, այլ որոշելու են բոլոր էն ուսանողները, որոնք միանալու են մեր պայքարին»:

Պաշտպանութեան Նախարար Վիգէն Սարգսեանի նախաձեռնած օրինագիծին համաձայն, բոլոր արական ուսանողները 18 տարեկանին պէտք է ծառայեն բանակի շարքերը: Նախարարը ասիկա կը ներկայացնէ իբրեւ հասարակական արդարութիւն: 2004-ին Սերժ Սարգսեանի այսպիսի օրինագիծի մը դէմ յաղթանակած Արէն Մանուկեան վստահ է, որ հասարակական արդարութիւնն այստեղ կապ չունի. «Նախաձեռնութեանը կողմ արտայայտւում են հիմնականում իշխանական երիտասարդական թեւերը. իրենց ղեկավարներն են ներկայացրել, իրենք պիտի պաշտպանեն: Միւս կողմից այս ռազմահայրենասիրական պաթոսը, որ ստեղծել են, վտանգաւոր է, երբ հարց են բարձրացնում՝ դո՞ւ ինչ ես արել Արցախի համար եւ այլն: Սա ազդելու է ոչ միայն բանակում ծառայելու, այլեւ գիտութեամբ զբաղուելու վրայ: Այսպիսով հասարակութիւնը դեգրադացնելու են: Երկիրը դրանով տանում են դէպի աւտորիտար ռեժիմ: Ազգ-բանակ այս փաթեթաւորուած նախագիծն էլ ամբողջ համակարգի մի մասն է, որը բերել ու փաթեթել են հասարակութեանը: Հանրութեանը մտածուած քայլերով տանում են դէպի զոմբիացման, եւ դրան համարժէք քայլեր են անհրաժեշտ: Իրականում ուզում են ձեւաւորել չարքայիններից բաղկացած մի հասարակութիւն, որոնք հրահանգով շարժուելու են այնպէս, ինչպէս ձեռնտու կը լինի իշխանութիւններին:»

Օրինագիծով ուսումի ընթացքին չծառայող ուսանողները պայմանագիր պէտք է կնքեն Պաշտպանութեան Նախարարութեան հետ եւ երեք

☞ 3

# ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԵԱՆ ՄԸ ԱՌԻԹՈՎ՝ *ՅԱԿԻՆԹԻ ՊԱՐՏԷԶԸ*
# ՀԵՂԻՆԱԿ՝ ՎԱՐԱՆ ՈՅԺ

Յ. ԱՒԱԳԵԱՆ

### ՄՈՒՏՔ

2016-ին առցանց հրատարակութեամբ կը տարածուի *Բանաստեղծութիւն* գրական հանդէսին Բ. հատորը (խմբագիրներ՝ Մարուշ Երամեան եւ Իշխան Ջիֆթճեան), որ կը բովանդակէ ինքնագիր ու թարգմանածոյ բանաստեղծութիւններ Սփիւռքէն (մէկ բացառութեամբ), ինչպէս նաեւ գրոյցներ բանաստեղծութեան ու գրական քննադատութեան շուրջ, ակնարկներ ու նշմարներ: Խմբագիրները կը տեղեկացնեն, որ հատորը պատրաստ էր տակաւին 2003 թուականին: Եւ ահաւասիկ ան լոյս կը տեսնէ 17 տարի ետք, ոչ-տպագիր՝ առցանց հրատարակութեամբ, ուրեմն՝ շրջանցելով տպագրական-հրատարակչական գործընթացը: Արդե՞օք Սփիւռքին կը պակսի ինքն իրեն մեկնաբանող ու բացայայտող աշխատութեան մը անհրաժեշտ տպագրութեան դրամը: Դրա՞մն է որ կը պակսի, թէ սփիւռքեան հիմնարկներուն կամքը:

Սփիւռքը իր առարկայական ըմբռնումով տարանջատուած է, անկապ է: Այս պատճառով վերջերս արդարացիօրէն գործածութեան մէջ մտած է «սփիւռքներ» բառը, յատկապէս Կիւլպէնկեան Հաստատութեան բանիմաց տնօրէն Ռազմիկ Փանոսեանի նախաձեռնութեամբ: Սփիւռքներ հասկացողութիւնը անջատումէ աւելի իր մէջ կը կրէ բազմազանութեան գոյութիւնները՝ բազմամշակոյթ, բազմալեզու, բազմակեցութիւն, որոնք յետարդիապաշտական հպումով մը կրնան հաւասարիլ հարստութեան: Բայց այդ սփիւռքները՝ բացի հիմնարկային ընտրելախաւային քանի մը ներկայացուցիչներու գրեթէ անձնական յարաբերութիւններէն, հասարակական ու գաղափարական առումով իրարու հանդէպ կը մնան օտարացած վիճակի մէջ, ունենալով գլխագիր Այլի կարգավիճակ: Ենթակայական ազգայնականութիւն մը եւս անկարող եղած է փոխներթափանցումի եզրեր գտնել եւ վարէն շարժող մեքանիզմներ առաջադրել: Հայկական ազգայնականութիւնը առաջ նետելով *միայն* ընդհանրական գաղափարախօսութիւններ՝ ցեղասպանութիւն, Ղարաբաղ կամ հայրենիքի դրամական օգնութիւն, անհաղորդ մնացած է սփիւռքներու բազմազանութիւններուն եւ «բազմա»-ներուն՝ որոնք իրական եւ գործունակ գոյութիւններ են, անտարբեր եղած է բազմազանութիւնները քով քովի բերելու եւ զանոնք դարձնելու տեսանելի ու ընթեռնելի: Ան փորձած է շրջանցել զանոնք, իբր գոյութիւն չունեցող աւելորդաբանութիւններ: Իսկ շրջանցել երեւոյթ մը՝ որ այնքան վառ է ու գործունեայ, չի կրնար փոխըմբռնումի եզրեր առաջարկել:

Բանաստեղծութեան ներկայ հատորի առաւելութիւններէն մէկն է մշակութային կամուրջներ ստեղծելու միտումը՝ բնագիրներու ընդմէջէն: Բնագիրները՝ եթէ ընտրուած են ոչ-գաղափարախօսական հիմքով, եթէ ընտրուած են գոյութիւններու կամ գոյակցութիւններու համոզումով, ընդունակ են ստեղծել ենթակայական բաղձալի կապեր: Հատորի նախաբանին մէջ երկու խմբագիրները իրաւացի են երբ կը գրեն. «Հեղինակները ներկայ են հոս անհանգանակ ու միասին: Միասնական ներկայութիւնն է արդէն որ հանդէսի մը նկարագիրը կը կազմէ: Ոչ թէ կտորներու հաւաքածոյ մը՝ ետեւ-ետեւի շարուած ու ագուցուած, այլ հաւաք, որով հանդէսը կը փորձէ դառնալ հանդիսավայրէ աւելի հանդիպավայր մը: Արժանթին բնակողը կը հանդիպի հոս իր նմանին, որ Միջին Արեւելք կամ այլուր է արդէն, ու կարդալով զայն, կրնայ ինքզինք հասկնալ իբրեւ մասնիկ համանկարի մը, համացանցի մը մէջ:»(1) Բնագիրներ՝ որոնք կը խօսին իրարու հետ: Բնագիրներ՝ որոնք կը ներկայացնեն սփիւռքներու բազմազանութիւնները: Բազմազանութիւնները՝ խօսելով միասին, կը դադրին ըլլալ բազմազանութիւններ: Անոնք պահպանելով հանդերձ իրենց գոյութիւնները, կը ճեղքեն բազմազանութեան յետարդիապաշտական բռնազբօսիկ խառներգները ու անկարելի նմանութիւններէ բխած մկրատուած հարստութիւնները եւ կը դառնան տարբերութիւններ, տարբերութիւններ՝ ինչպէս գոյութիւն ունի բոլոր անհատներուն եւ բոլոր իրերուն միջեւ, տըլիւզեան անկեդրոն տարբերութիւններ՝ որոնք բնազդաբար հաղորդակից են իրարու: Բազմազանութիւնը՝ երբ մնայ Այլի դրութեան մէջ, բախումնային ու հակամարտային է: Բազմազանութիւնը՝ եթէ ունենայ տարբերակային գոյութեան կարգավիճակ, համակեցական է ու տիալեքթիք: Այս տիալեքթիքն է զոր կը փորձեն ստեղծել Մարուշ Երամեան եւ Իշխան Ջիֆթճեան:

Բայց բնագիրն ինքնին խնդրական է: Բնագիր հասկացողութիւնը յետարդիապաշտական ամրացում մըն է, որ կու գար փոխարինել արդիապաշտական գործ (ստեղծագործութիւն) հասկացողութեան՝ իբրեւ կեդրոն ստեղծագործական գործընթացին եւ իբրեւ հեղինակային իշխանութեան ու ֆեթիշիզմի կրող: Բնագիր հասկացողութիւնը իր մէջ կը կրէ Փուքոյեան յայտնի ըմբռնումը՝ *Հեղինակի մահը*, ուր միայն բնագիրն է որ կը խօսի, անկարեւոր դարձնելով հեղինակի անձը իր ամբողջ գործունէութեամբ հանդերձ: Ասիկա լուրջ խոչընդոտներ կրնայ յառաջացնել գործ-բնագիրի արժէքային գնահատումին համար: Մշակութային արտադրութիւն մը անկախ չէ անձի մը կենսագրութենէն, յաճախ բնագիրներ կը ստեղծուին անձնական փորձառութեամբ կամ անձնական դիտարկումներով: Կենսագրութիւնը՝ եթէ ներկայացուի ոչ-դէպքային առանձնացումներով, կը հանդիսանայ բնագիրի մը պատմութիւնը: Բնագիրի մը ապապատմականացումով, կամ կառուցողապաշտական բեւեռացումով, բառը, նախադասութիւնը, գրութիւնը կ'անջատուի իր անցեալէն, անցեալ մը որ կրնայ նախորդել գրութիւնը մէկ երկվայրկեանէն մինչեւ անհաշիւ ժամանակներ, անցեալ մը՝ որուն պատմականութիւնը իմաստային է ու բացայայտող: Ջնջուելով անցեալը իբրեւ պատմութիւն, կը կարեւորուի լոկ բնագիրէն արձակուած ուղղակի իմաստը, առանց նկատի առնելու նախաբնագրային պայմանները, որոնք կրնան բնաբան (context) հանդիսանալ իմաստին: Եթէ արդիապաշտական գործը պիտի ֆեթիշիզացնէր հեղինակը, յետարդիապաշտական բնագիրը պիտի վերացնէր զայն: Երկուքն ալ պիտի խանգարէին մեկնաբանելու գործի մը իմաստային շերտերը:

Կարելի՞ է հասկնալ Պետրոս Դուրեանի *Իմ մահը*՝ առանց գիտնալու թէ ան թոքախտամահ վիճակի մէջ կը գտնուէր, կամ Ռուբէն Սեւակի *Բժիշկին գիրքէն վերցուած էջերը*՝ առանց գիտնալու թէ հատորը կը ներկայացնէ բժիշկի իր փորձառութիւնը հիւանդանոցի մէջ, կամ Թէքէեանի *Մէկ հատիկս*՝ առանց գիտնալու գրութեան անձնական ու քաղաքական պատճառները, կամ իշխանաւորներն ու մեծահարուստները գովերգող անթիւ յօդուածներն ու գիրքերը՝ առանց գիտնալու որ հեղինակները պաշտօնեաներ են իշխանաւորներուն տնօրինած միութիւններուն մէջ: Կենսագրութիւններու միջոցով նաեւ կարելի է հասկնալ գործ-բնագիրի մը անկեղծութիւնը կամ կեղծաւորութիւնը, քանզի յաճախ կը տեսնենք գրողներ որոնց գրութիւնները կը հակասեն իրենց գործունէութեան:

Բանաստեղծութեան ներկայ հատորը փոխադարձաբար խօսեցնել կու տայ սփիւռքահայ բնագիրները, բայց կը գտնուի անոնց պատմականութիւնը եւ հեղինակային ենթախորքը տեսնելու անկարելիութեան առջեւ: Այլընտրանք չունի: Այլընտրանքը սփիւռքահայ հիմնարկներուն պատասխանատուութիւնը պէտք է ըլլար, որոնց ղեկավարները պէտք է դադրէին միջ-հիմնարկային յարաբերութիւններուն մենաշնորհեալ իրաւասուները ըլլալէ եւ միջոցներ ստեղծէին զարգացնելու միջգաղութահայ լայն խաւերու յարաբերութիւնները: Այլընտրանքը սփիւռքահայ մտաւորականները պէտք է ըլլային՝ որոնք դադրէին գաղութային-գաղութատիրական դասակարգային գերադասութեամբ դիտելու գիրար (օրինակ՝ ֆրանսահայը կամ ամերիկահայը աւելի բանիմաց է քան եգիպտահայը, եգիպտահայը աւելի բանիմաց է քան հալէպահայը), դադրէին կուսակցական պատկանելութեամբ արժեւորելու ինքզինքնին՝ աւելցնելով իրենց միջեւ եղած օտարացումը, ինչպէս նաեւ դադրէին յարաբերութիւնները հիմնել շահի եւ օգտագործումի հիման վրայ (կրնամ անթիւ անձնական օրինակներ յիշատակել):

Ներկայ գրութեանս նպատակն է կեդրոնանալ ժողովածոյի մէջ տեղ գտած մէկ բանաստեղծութեան վրայ՝ *Յակինթի պարտէզը*, հեղինակ՝ Վարան Ոյժ: Վարան Ոյժ, բուն անունով՝ Վարուժան Գազանճեան, այնտեղ ընդգրկուած միակ եգիպտահայն է:

### ԿԵՆՍԱԳՐՈՒԹԵԱՆ ՓՈՐՁ

Եգիպտահայերս արդէն կրնանք խօսիլ «վերջին»-ներու մասին՝ վերջին պատմաբան (Յովհաննէս Տէր-Պետրոսեան), վերջին բանասէր (Տիգրան Գէորգեան), վերջին մատենագիր (Սուրէն Պայրամեան), վերջին բանաստեղծ, թատերագիր ու գրաքննադատ (Վարուժան Գազանճեան), վերջին խմբավար (Հայկ Սարգիսեան), թէեւ տակաւին կանուխ է խօսիլ վերջին խմբագիրի եւ լրագրողի մասին: Իսկ անհաւանական է



երբեւէ խօսիլ վերջին մեծահարուստի մասին, քանզի սպառողականութիւնը մշտակայ է, մշակոյթը՝ ոչ, դրամատիրական նպատակամէտութեամբ ու սպառողական արդարացումով է որ կը կանխորոշուի մշակոյթին գոյութիւնը, մշակոյթը դառնալով սպառողականութեան ածանցեալը: Թիւրիմացութենէ խուսափելու համար շեշտեմ՝ որ խօսքը *եգիպտահայերու* մասին է, եւ նկատի չունիմ ոչ-եգիպտահայ հրաւիրեալ անձերը, որոնց կեցութիւնը կրնայ երկարիլ մէկ տասնամեակէ աւելի:

Գազանճեան սկսած է գրել պատանի տարիքէն: Ան այսպէս կը պատմէ իր գրական սկիզբը.

«Տասնըհինգ տարեկանս տակաւին չէի ամբողջացուցած, երբ որոշեցի գրող դառնալ: Բանաստեղծ դառնալ չէի կրնար՝ Դանիէլ Վարուժանը կար: Ուրեմն գրեցի վէպ մը, պատմական անշուշտ, Րաֆֆիի, Ստեփան Զօրեանի վէպերուն մարտահրաւէր կարդալով: Ամառնային արձակուրդ էր: Արհեստավարժ գրողի նման, հետեւողական կերպով, ամէն օր չո՞րս թէ հինգ էջ կը լեցնէի: Յետոյ դպրոցները վերաբացուեցան: Անգլիական թեքում ունեցող Սէյնթ Ճորճ վարժարանը կը յաճախէի: Մեզի մատուցուեցաւ Շէյքսփիր՝ *Յուլիոս Կեսար*: Ա՜հ, լաւ կը գրէր Շէյքսփիրը: Պրպտեցի, գտայ, մինչ ես նոր ամբողջացուցած էի տասնըհինգս: Մտածեցի, որ առիթ ունէի անցնելու իրմէ, եւ մտադրեցի անցնիլ: Գրեցի երկու թատրերգութիւն, պատմական կրկին: Յետոյ մեծ ակնկալութիւններով գլուխ-գործոցներս ներկայացուցի *Յուսաբերի* այդ ժամանակուայ խմբագիրին՝ լիբանանահայ Զօրեցիին, որ ըսաւ թէ ազգասիրութիւնս յուզած էր զինք, բայց նախընտրելի էր որ մեծ գործերով չսկսէի:

«Պատմուածքներ սկսայ գրել ուրեմն, եւ ունեցայ – տասնըվեց տարեկանիս – զանոնք *Յուսաբերի* մէջ տպուած տեսնելու հաճոյքը: Գրչանուն՝ Վ. Երեւան, ընտրուած Զօրեցիի կողմէ: Տասնըինը տարեկանիս ձեռնարկեցի երգիծական կենդանագիրներու շարքի մը, Յակոբ Պարոնեանի *Ազգային ջոջերուն* օրինակով, բայց տարբեր սկզբունքով – ես կ'ընտրէի մէկ ցայտուն գիծը միայն, եւ ա՛յդ է որ կը ներկայացնէի իրական ու երեւակայեալ պատահարներու ընդմէջէն: Հինգ կենդանագիրէ ետք – հինգն ալ հանրածանօթ եգիպտահայ դէմքերու՝ չէզոք թէ այս կամ այն կուսակցութեան պատկանող *Յուսաբերի* մէջ լոյս տեսնող այս շարքը խափանուեցաւ... հիմա շատեր կը սիրեն Յակոբ Պարոնեան կարդալ, բայց իր ժամանակին մեր մեծագոյն երգիծաբանը այնքան ալ սիրուած չէր:»(2)

Գազանճեանի ստեղծագործական նոր փուլը կարելի է կապել եգիպտահայ երիտասարդական շարժումին հետ, որ սկսաւ 1975-ին՝ երբ կազմուեցաւ Եղեռնի 60-ամեակի Երիտասարդական Մարմինը, եւ տեւեց մինչեւ 1980: Շարժումին խօսնակն էր *Հոկտեմբեր* ամսագիրը: Գազանճեան աշխոյժ մասնակցողն էր այս շարժումին եւ *Հոկտեմբերի* կեդրոնական գրողներէն մէկը(3): Այնտեղ ստորագրած է (Վարուժան Գազանճեան անունով) բազմաթիւ գրաքննադատական յօդուածներ, որոնցմէ կարելի է յիշել՝ «Թէքէեանի *Սիրոյ կոչը*»(4), «Դուրեանի *Տրտունջքը*»(5), «*Զմրան պարզ գիշերը*»(6), «Յարութ Կոստանդեանի *Աչունը*»(7), «*Գետակն ու ուռին* Իսահակեանի»(8):

Յետագային եւս շարունակած է հրատարակել գրաքննադատական ուսումնասիրութիւններ, ինչպէս՝ 'Ancient Egypt in Arsene Ergath's *Scarabees*'(9):

Գազանճեան հեղինակած-մշակած է ութ մանկական հեքիաթներ՝ *Սուտ հեքիաթ*, *Ջախչախ թագաւորը*, *Սէրը*, *Գոգ Մագոգ*, *Իջայ իջայ իջայ*, *Փեփելն ու Կեկելը*, *Հրաշալի Լուտասը* եւ *Կախարդական հողը*, որոնք լոյս տեսած են 1980-ին (Հոկտեմբեր Հրատարակչութիւն):

1985-ին Հայ Ազգային Հիմնադրամը կը հրատարակէ *Մի ուրիշ եղանակ* միարար թատերգութիւնը, ուր հեղինակը հանդէս կու գայ Վարան Ուժ գրչանունով:

1995-ին եւ 1996-ին Նուպարեան Ազգային Վարժարանի հրատարակութեամբ յաջորդաբար հրապարակ կ'ելլեն *Թէնթէն Հայաստանի* եւ *Դաւիթ եւ խաւարի թագաւորութիւնը* կատակերգութիւնները՝ Վա(Գ)ր գրչանունով:

Համագործակցելով եգիպտացի անուանի բանաստեղծ Իպրահիմ Ապու Սեննայի հետ, արաբերէն կը

➪ 3

ԳԱՀԻՐԷ

## *ԶԱՀԱԿԻՐԻ* ՏԱՍՆԵՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾԸ՝ ՆՈՒԻՐՈՒԱԾ ԵԳԻՊՏԱՀԱՅ ՆԿԱՐԻՉ ՏԻՐԱՆ ԿԱՐԱՊԵՏԵԱՆԻՆ

Լոյս տեսաւ *Զահակիրի Ժ. Յաւելուածը՝ Տիրան Կարապետեան. յօդուածներ իր մասին, նկարներու ալպոմ (ծննդեան 135-ամեակին առիթով)* (71 էջ):


ՏԻՐԱՆ ԿԱՐԱՊԵՏԵԱՆ
ՅՕԴՈՒԱԾՆԵՐ ԻՐ ՄԱՍԻՆ
ՆԿԱՐՆԵՐՈՒ ԱԼՊՈՄ
(ծննդեան 135-ամեակին առիթով)
Հաւաքեց՝ Հ. ԱՒԱԳԵԱՆ
ԶԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՅԱՒԵԼՈՒԱԾ Ժ.
ԳԱՀԻՐԷ
2017

Բովանդակութիւն.

1. Frédéric Macler: ‘Diran Garabédian’ (ֆրանսերէն):
2. Aimé Azar: ‘Artistes d’Égypte: Diran Garabédian’ (ֆրանսերէն):
3. Մուխթար Ալ-’Աթթար, «Անծանօթ էջեր Եգիպտոսի արդիականութենէն՝ Տիրան Կարապետեան» (Թարգմանուած արաբերէնէ հայերէն): Այս յօդուածը կը պարունակէ Տիրան Կարապետեանի ֆրանսերէն նամակի մը ամբողջական բնագիրը՝ ուղղուած Մուխթար Ալ-’Աթթարին:
4. «Նկարներու ալպոմ» (37 գունաւոր նկարներ):

### ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԵԱՆ ՄԸ ԱՌԻԹՈՎ՝ *ՅԱԿԻՆԹԻ ՊԱՐՏԷԶԸ*

2 ➪

ՀԵՂԻՆԱԿ՝ ՎԱՐԱՆ ՈՅԺ

Թարգմանէ ու կը ծանօթագրէ հայերէն բանաստեղծութիւններու ստուար հաւաքածոյ մը՝ *Մուխթարաթ մըն ալ-շէ’ր ալ-արմանի ’ալ-’էսուր* (Հայկական բանաստեղծութեան ընտրանի մը դարերու ընդմէջէն), որ լոյս կը տեսնէ 1997-ին Գահիրէի ՀԲԸՄ-ի հրատարակութեամբ: Կը վերահրատարակուի 2001-ին, Եգիպտոսի Մշակոյթի Բարձրագոյն Ատեանին (Ալ-Մակլէս Ալ-Ա’լա Լըլ-Սըքաֆա) կողմէ, «Թարգմանութեան ազգային ծրագիր»-ի ծիրին մէջ (թիւ 259):

2000-ին Ariazad գրչանունով կը տպագրուի անգլերէն գիտաֆանթասթիք (science fiction) վէպը՝ *Gulliver in Cloneland: The Fifth Travel of Gulliver* (Lewes: Book Guild, 2000, 199 էջ): Ենթախորագիրն է՝ «Ամբողջ բնագիրը, ներառեալ հեղինակին կողմէ հրատարակութեան համար անպատշաճ նկատուած հատուածնե րը»: Ինչպէս կ’երեւի, ան առնչութիւն ունի Ճոնաթան Սուիֆթի *Gulliver’s Travels* գործին հետ: Կիւլիվէր կ’այցելէ համասերուած (cloned) տղամարդոց տեղանք մը եւ անոր մերձական՝ միայն կիներէ կազմուած տեղանք մը, տեղի տալով բազում արկածախնդրութիւններու: Գործը «կ’առնչուի հասարակութեան մը հետ՝ որ կազմուած է տեսակ մը վարկածական մարդ էակներէ», դիտել կու տայ Մարիանո Ռոտրիկէզ(10): Սապին Պէլթզ կու տայ համառօտակի մեկնաբանութիւն մը. «Սուիֆթեան եղանակով մը հարցադրումի տակ դնելով գիտական յառաջդիմութեան արդի համոզումները, հայ հեղինակ Արիազատ (Վարուժան Գազանճեան) կը ներկայացնէ հինգերորդ ճամբորդութիւն մը (*Gulliver in Cloneland,* 2000): Կիւլիվէր, կրկին նաւաբեկուած, ինքզինք կը գտնէ համասերներու երկիրը, ուր տղամարդիկն ու կիները կ’ապրին իրարմէ անջատ՝ անտեղեակ դիմացի սեռի գոյութենէն: Իւրաքանչիւր ութոփիայի նման՝ Կիւլիվէր պէտք է յաղթահարէ ամէնուրեք յայտնուող թաքուն վտանգները:»(11)

(Շար. 1/7)

#### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ


1. *Բանաստեղծութիւն*, գրական հանդէս, Գիրք Բ., խմբագիրներ՝ Մարուշ Երամեան եւ Իշխան Ջիֆթճեան, Առցանց Հրատարակութիւն, 2016, էջ 6:
2. Մարօ Սագայեան, «Հարցազրոյց դոկտ. Վարուժան Գազանճեանի հետ», *Արեւ*, օրաթերթ, Գահիրէ, 16 Մարտ 1991, 75-րդ տարի, թիւ 21723, էջ 2:
3. Շարժումին մասին տե՛ս՝ Հ. Ա., «Հայկ Սարգիսեան. խմբավար, երաժշտահան», *Միծեռնակ*, Գահիրէ, Ապրիլ 2005, Ե. տարի, թիւ 2 (18), էջ 21-25: Թովմաս Զաքարեան, Վարուժան Գազանճեան, «Նամակ խմբագիրին», *Միծեռնակ*, Հոկտեմբեր 2005, Ե. տարի, թիւ 4 (20), էջ 62-64:
4. *Հոկտեմբեր*, ամսագիր, Գահիրէ, Մարտ 1979, Դ. տարի, թիւ 32, էջ 17-19:
5. *Հոկտեմբեր*, Յունիս 1979, Ե. տարի, թիւ 35, էջ 25-29:
6. *Հոկտեմբեր*, Յուլիս 1979, Ե. տարի, թիւ 36, էջ 15-19:
7. *Հոկտեմբեր*, Օգոստոս-Հոկտեմբեր 1979, Ե. տարի, թիւ 37-39, էջ 44-47:
8. *Հոկտեմբեր*, Յունիս-Սեպտեմբեր 1980, Զ. տարի, թիւ 47-50, էջ 208-212:
9. *Armenian-Egyptian Historical & Cultural Ties*, Cairo: AGBU, 2007, pp. 43-52:
10. Mariano Martín Rodríguez, ‘A Short Overview of Gulliver’s Further Travels in (Post)Modern Literature’, *SFRA Review*, Fall 2016, No. 318, p. 18:
11. Sabine Baltes, ‘Swiftian Material Culture’, *The Reception of Jonathan Swift in Europe*, edited by Hermann J. Real, London, New York: Continuum, 2005, p. 281:


### ԵՐԻՏԱՍԱՐԴՆԵՐԸ ԸՆԴԴԷՄ ՊԱՇՏՊԱՆՈՒԹԵԱՆ...

1 ➪

տարի որպէս սպայ ծառայեն բանակին: Անոնք պէտք է մոռնան ուսումն աւարտելէ անմիջապէս ետք ասպիրանտուրա ընդունելու կարելիութիւնը: Ըստ Սարգիս Բալդարեանին, «Երիտասարդ գիտնական հասկացութիւնը այս օրինագծի պարագայում վերանալու է»:

Ուսանողութիւնը վստահ է, որ պիտի յաջողի մինչեւ վերջ պայքարիլ օրէնքին դէմ:

ԽՈՀԵՐ

## Ի՞ՆՉ ԿԱՐԵԼԻ Է ՔՆՆԱԴԱՏԵԼ ՍՓԻՒՌՔԻ ՄԷՋ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Ի՞նչ կարելի է քննադատել Սփիւռքի մէջ: Ձեւական առումով՝ մէկ-երկու արտօնեալ բաներ, խորքային առումով՝ ոչ մէկ բան:

Անշուշտ հայկական սփիւռքը միտարր երեւոյթ մը չէ եւ ասկէ կու գայ անոր յոգնակի տարբերակը՝ սփիւռքներ: Գաղութներ կան, ուր, ըստ իրենց մամուլին ու հասարակութեան փէյսպուքեան գրառումներուն, ամէն բան կատարեալ է ու անթերի, մեծ մասամբ կատարելութիւնը հասնելով անհաւատալի աստիճանի: Ուրիշ գաղութներ կը համարձակին այստեղ-այնտեղ որոշ քննադատութիւններ արձակել:

Արդարեւ, պիզնէս-վերնախաւի իշխանական դիրքերը, առաջնորդ պաշտօններու եւ ոչ-ժողովրդավարական միջոցներով գրաւուած աթոռներու օգտագործումը անձնական պիզնէսի, փառքի եւ զանազան շահերու համար, այլեւ ամբողջ սպառողապաշտ մտածողութիւնն ու գործունէութիւնը արգիլուած նիւթեր են սփիւռքի համար:

Բայց սփիւռքը յաջողած է ինք իր համար ստեղծել քննադատելու եւ քննադատուելու պատկեր մը՝ դարձեալ չահադիտական նկատառումներով, պայմանով որ քննադատութեան ընդմէջէն վերարտադրուին «ազգային» եւ մանաւանդ «հայապահպանում» բառերը: Քննադատելով, սփիւռքի ընտրեալները ինքզինքնուն համար ստեղծած կ’ըլլան ամենազգասէր եւ ամենահայապահպան պատկերը, քանի որ կառուցած կ’ըլլան խորապէս մտահոգ նուիրեալներու տիպարը:

Այս քննադատութեան կմախքը կարելի է ներկայացնել հետեւեալ ուրուագիծով: Տողերուս հեղինակը՝ իբրեւ հասարակութեան անդամ, իրաւունք չունի այս սիւնակին մէջ գրել. «X անձը կամ միութիւնը ձախողեցաւ հայապահպանումի գործին մէջ, հակառակ ծախսուած եւ ծախսուող Y գումարին», անշուշտ մանրամասնօրէն բացատրելէ ետք ձախողումին պատճառները, որոնցմէ մէկն է արեւմտահայերէն լեզուի վտանգուած իրավիճակը: Բայց X անձը կամ միութիւնը իրաւունք ունի այս նոյն նախադասութիւնը *անձամբ* կրկնել երկու հանգրուանով՝ երկու նախադասութեամբ: Նախ. «Մենք մեծ ծախսերով եւ զոհողութիւններով մեր ամբողջ ջանքը գործադրեցինք հայապահպանումի գործին համար:» Ապա. «Հասարակութիւնը, աշակերտութիւնը ազգասիրութենէ բան չեն հասկնար, հայրենասէր չեն, մշակոյթէ հեռու են, մանաւանդ՝ հայկականութենէ հեռու»: Այսինքն, երկու նախադասութիւնները միացնելով X-ը ըսել կ’ուզէ՝ որ հասարակութիւնը չէ ուզած հայապահպանուիլ, հակառակ հայապահպաններու (X-ի) զոհողութիւններուն:

Այս նախադասութիւնները կրնան հնչել առանձին, կամ յաջորդաբար: Անոնք կրնան հնչել ամենատարբեր ձեւակերպումներով եւ ձեւափոխութիւններով, բայց միշտ նոյն իմաստով:

Երկու նախադասութիւններուն իմաստները պէտք է հասկնալ միասին, բայց առանց տիալեքթիքի՝ լիովին օտարացած իրարմէ: Այլապէս, քիչ մը տրամաբանելով կարելի կ’ըլլայ եզրակացնել՝ որ հայապահպանումի ձախողութեան պատճառը X-ն է, քանի որ ինքն է, համաձայն իր առաջին նախադասութեան, հայապահպան աշխատանքը ձեռնարկողը: Հետեւաբար, երկու նախադասութիւններուն իմաստները պէտք է պահել իրարմէ օտարացած, բան մը որ բնաւ դժուար չէ ներկայ գաղափարախօսական դարաշրջանին համար:

Այսպէս, փոփուլիսթական-հռետորաբանական եղանակով X-ը հաստատած կ’ըլլայ իր դասակարգային առաւելութիւնը եւ վերադաս դիրքը՝ ի դէմս իրմէ «ցած» աստիճաններու վրայ հանգրուանած հասարակութեան: Ասիկա շատ կարեւոր է ապահովելու համար սփիւռքի աւանդականներուն բուրգային կառուցուածքը եւ վերնախաւային գրեթէ մենատիրական առանձնաշնորհումը: X-ը ապահոված կ’ըլլայ իր բարձր կեցութիւնը՝ օգտագործելով «հայապահպանում» բառը: Առանց «հայապահպանութիւն» բառին արտադրած ամբողջատիրական իմաստին, անկարելի պիտի ըլլար ապահովել X-ին դասակարգային դիրքը: Եւ քանի որ «հայապահպանումը» ազգային սրբագոյն գործ մըն է, անոր գաղափարախօսութեան տակ կարելի կը դառնայ լռեցնել բոլոր հակադիր ձայները. «Հայապահպանութեան» անունով կարելի է դպրոցներ գոցել՝ եթէ անոնք այլեւս անկարող են մեծ պատումներ յառաջացնել, նկատի առնելով աշակերտներուն տնտեսական-դասակարգային աստիճանաւորումը եւ դպրոցին վայրը. «Հայապահպանութեան» անունով կարելի է դպրոցներ բանալ՝ եթէ անոնք պիտի ծառայեն միութեան վարկի բարձրացումին եւ ղեկավարները պիտի կրնան իրենց շահերուն ծառայեցնել հայապահպանումը. «Հայապահպանութեան» անունով կարելի է լուրջ ամսագիրներ փակել՝ պատրուակելով ընթերցողներու անտարբերութիւնը, մինչդեռ բուն անտարբերութեան աղբիւրը նոյն ինք փակողներն են. «Հայապահպանութեան» անունով կարելի է մշակութային ամսագիրներ հիմնել՝ եթէ մշակոյթի հովանիին տակ «հայապահպան» միութիւններն ու հովանաւորողները յաջողին առաջ մղել իրենց քաղաքական մեղկ գաղափարախօսութիւնները. «Հայապահպանութեան» անունով կարելի է հսկայական գումարներ դուրս գրել միութիւններէն (ուսուցիչ, դասագիրք, վերապատրաստութիւն, դասախօսութիւն, երգչախումբ, ճամբորդութիւն, եւ այլն)՝ առանց հանրայայտ ու բացայայտ հաշուետուութիւն տալու ծախսուած գումարներու քանակին եւ օգտագործուած *բուն* նպատակին մասին: Ոչ ոք իրաւունք ունի կասկածի ենթարկել յիշեալ, ինչպէս նաեւ նմանատիպ այլ գործունէութիւններու որակը կամ իսկական նպատակը, քանի որ իւրաքանչիւր քայլ քօղարկուած է «հայապահպանում» բառ-գաղափարախօսութեամբ: Դաւաճանութիւն է հայապահպանութիւնը կասկածի ենթարկել: Մինչդեռ կասկածի ենթարկուողը ոչ թէ ինքնին հայապահպանութիւնն է (թէեւ հայա*զարգացումը*՝ մարդկային ընթացքով, շատ աւելի արդիւնաւէտ գործողութիւն մըն է քան հայա*պահպանումը*), այլ կիրառութեան մեթոտները եւ անոր ետեւ կանգնած իմաստներն ու նպատակները:

Եւ այս բոլորը կը կատարուի հասարակութեան անունով, հասարակութեան *համար*: Հետեւաբար, անհրաժեշտ է ստեղծել չհասկցող ու չհայապահպանուած զանգուածի մը պատկերը, զանգուած մը՝ որ անընդհատ ազգայինի տեսանկիւնէն խոցելի ու քննադատելի է: Այլապէս, հայապահպանելու համոզչականութիւնը պիտի հասնի զէրոյի: Եթէ հասարակութիւնը հայապահպանուած է, ուրեմն աւելորդ է հայապահպանութիւնը: Իսկ չկայ աւելի յարմար ու ապահով կալուած քան իր անգիտութեան պատճառով ազգայինէ հեռու մնացած եւ չհայապահպանուած անանուն զանգուած մը՝ անձայն, անգոյն, անորոշ ու անդէմ գոյութիւն մը, որ ինքզինք պաշտպանելու եւ X-ի քննադատութիւններուն պատասխանելու առումով անտարբեր է ու անփոյթ:

Քննադատելով գաղութային «հայապահպանութեան» պակասը՝ այս բառի անընդհատ չեշտադրութեամբ, վերնախաւի վերահսկողութեան տակ գտնուող հիմնահոսանքային գիտելիքը արտադրած ու վերարտադրած կ’ըլլայ բառին ազգային գաղափարախօսութիւնը՝ զերծ գաղափարէ (ինչպէս քանիցս նշած եմ «Խոհեր»-ուն մէջ, գաղափարախօսութիւնը գաղափար չէ, այլ գաղափարին ֆեթիշիզացումն է, ուր գաղափարը կը դադրի գաղափար ըլլալէ) ու մեկնողական կարողութենէ: Իսկ գաղափարախօսութեան տակ ինչ ուզէք կարելի է ընել՝ ամենէն ցածորակ, անարժէք ու չահադիտական գործողութիւնը կարելի է քօղարկել ազգայինի վճռականութեամբ:

Երբեմն, մասնայատուկ պարագաներու, հասարակութեան ընտրեալ անդամներու կայացած հայապահպանութիւնը կը յայտարարուի մամուլի յօդուածով մը՝ իբրեւ վաւերագրական փաստ վերնախաւի յաջողութեան: Եւ ասիկա՝ փաստելու համար *վերնախաւ*ին յաջողութիւնը եւ ոչ թէ տուեալ անդամներուն ներքին

➪ 4

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ



3

### Ի՞ՆՉ ԿԱՐԵԼԻ Է ՔՆՆԱԴԱՏԵԼ ՍՓԻՒՌՔԻ ՄԷՋ

համոզումէն յառաջացած ինքնահայապահպանութիւնը եւ համակեցական, այլ ոչ թէ հռետորաբանական, ազգայնականութիւնը:

Խօսելով ներկայ շրջանի փոփուլիզմի մասին, Արմէն Ղազարեան եւ Ալինա Պօղոսեան կը գրեն. «Արեւմուտքում պոպուլիստական պատումները հիմնականում ուղղուած են միգրանտների եւ փախստականների, մուսուլմանների, կանանց, ԼԳԲՏ [Lesbian, Gay, Bisexual and Transgender] եւ այլ խմբերի դէմ: Հայաստանում պոպուլիզմն ու պրոպագանդան յաճախ կապուած են ազգայնականութեան եւ աղքատութեան թեմաների հետ:» («Պոպուլիզմը եւ պրոպագանդան Հայաստանում. Հայեցակարգային զեկոյց», Հայեցակարգային զեկոյցը պատրաստեցին Արմէն Ղազարեանը եւ Ալինա Պօղոսեանը, *Բուն TV*, 24 Օգոստոս 2017, http://boon.am/populism-and-propaganda-arm/:) Ինչպէս հայաստանեան սովորութիւն է, կը մոռնան կամ կը խնայեն հայկական սփիւռքը: Իմ կողմէս քաղուածքին կ'աւելցնեմ հետեւեալ նախադասութիւնը. «Սփիւռքում պոպուլիզմն ու պրոպագանդան բացառապէս կապուած են հայապահպանութեան եւ ազգայնականութեան թեմաների հետ:» Այսպէս գոնէ պատկերը ամբողջական կ'ըլլայ:

Երբեք չեմ լսած որ սփիւռքեան ձախողութիւն մը վերագրուի վերնախաւին՝ անունով ու մատնանշումով (մէկ կողմ ձգենք անհատական ու միութենական հակառակութիւններու պատճառով կատարուած դարձեալ չահադիտական քննադատութիւնները): Ցանցաւորը միշտ հասարակութիւնն է, որ, հակառակ վերնախաւի ջանքերուն, իր յետամնացութեան պատճառով չէ ուզած կրթուիլ:

Սփիւռքեան ինքնաքննադատութիւնը այստեղ կանգ կ'առնէ:

### ՍՓԻՒՌՔԱԿԵԴՐՈՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԻՒՆ ՈՒ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԿՐԹԱԿԱՆ ՄՕՏԵՑՈՒՄՆԵՐՈՒ ԱՆՀՐԱԺԵՇՏՈՒԹԻՒՆ

1

որ մեր ներկայ ազգային ինքնութիւնը, ներառեալ՝ մեր երկու աշխարհաբարները, կերտուած են սփիւռքեան կեդրոններու մէջ:)

Ուստի, արեւմտահայերէնի պարագային Սփիւռքն է, որ առաջնահերթ դեր ունի իր լեզուն պահելու ու զարգացնելու համար: Հայաստանը թող օգնէ կարգ մը ծրագիրներով, բայց արեւմտահայերէնի բանալին կը մնայ արեւմտահայերու ձեռքը, եթէ անշուշտ կ'ուզենք, որ ան գոյատեւէ որպէս իւրայատուկ լեզուական ճիւղ:

Մանկավարժական եւ մեթոտաբանական գետնի վրայ, Սփիւռքի եւ Հայաստանի միջեւ մօտեցումներու շատ մեծ տարբերութիւններ կան: Հայաստանի մանկավարժական մօտեցումը չի յարմարիր յատկապէ՛ս արեւմտեան Սփիւռքին, ո՛չ ալ՝ հոգեբանութիւնը: Արեւմըտեան Սփիւռքը յաջողած է հայերէնը սերունդէ սերունդ փոխանցել միա՛յն երբ հիմնուած է ի՛ր տեղական մանկավարժական մօտեցումներուն վրայ եւ իր զաւակներուն կրթութեան համար օգտագործած՝ ի՛ր միջոցները:

Կը մնայ հարցնել՝ արդեօք Սփիւռքի ղեկավարները, մանաւանդ կրթական ծիրէն ներս, պատրա՞ստ են այս պատասխանատուութիւնը ստանձնելու:

Ահաւասիկ ա՛յս է սփիւռքակեդրոն ըլլալու գաղափարը: Հարկաւ, խօսքն այստեղ դասական Սփիւռքի մասին է: Նոր Սփիւռքը, որ կազմուեցաւ անկախութենէն ետք, ուրիշ մարտահրաւէրներու եւ խնդիրներու առջեւ կը գտնուի: Այդ պարագային, կարեւոր դեր մը վերապահուած է Հայաստանի ղեկավարութեան՝ արեւելահայերէնի ամրապնդումին ու զարգացումին ուղղութեամբ:

Զեկոյցս վերջացնեմ գործնական օրինակներով: Դիւրին է խօսիլ, վերլուծել, քննադատել: Դժուար է վերլուծումը ծրագրի վերածել եւ այդ ծրագիրը իրականացնել: Այս կապակցութեամբ խօսիմ «Գալուստ Կիւլպէնկեան» հիմնարկութեան աշխատանքներուն մասին:

Երկու ամառէ ի վեր քառասունի շուրջ մասնագէտներ, ուսուցիչներ եւ արեւմտահայերէնով արտադրող արուեստագէտներ կը համախմբենք մէկ շաբաթ տեւող սեմինար-ճամբարի մը, որուն ընթացքին անոնք առիթը կ'ունենան ստեղծելու արեւմտեան Սփիւռքին յատուկ մանկավարժական գործիքներ՝ խաղեր, երգեր ու լեզուական ծրագիրներ: Տարուան ընթացքին կը հետեւինք անոնց աշխատանքներուն եւ 2018-ին պիտի սկսինք այս բոլորը հանրութեան տրամադրել՝ մասնայատուկ կայքէջի մը միջոցաւ: Ուսուցիչներ, ծնողներ եւ արտադասարանային հայերէն սորվեցնողներ պիտի կարողանան ձրիաբար օգտագործել այս «միջոցները» կամ «գործիքները»:

Զուգահեռ այս ծրագրին, 2017-ի ամրան, հարաւային Ֆրանսայի մէջ կազմակերպեցինք «Զարմանազան» անունով արեւմտահայերէնի ճամբար մը՝ 10-էն 15 տարեկան պատանիներուն համար: Շուրջ քառասուն երեխաներ ու պատանիներ՝ այլազան երկիրներէ, արեւմտահայերէնով տարբեր ձեռնարկներու մասնակցեցան: Այս խումբին մէջ կային բնաւ հայերէն չխօսող, ինչպէս նաեւ քիչ կամ սահուն հայերէն խօսողներ: Հասարակաց լեզուն արեւմտահայերէնն էր: Պէտք է տեսնէիք թէ այս չորս շաբաթուան ընթացքին ինչպէ՛ս բարելաւուեցաւ անոնց հայերէն լեզուի իմացութիւնը: Անոնք սկսան արեւմտահայերէնով բարդ գաղափարներ արտայայտել, ե՛ւ լեզուն սիրել, ուզելով գործածել: Անոնք տխրութեամբ մեկնեցան ճամբարէ մը, որ հայերէնին նուիրուած էր: Երբ վերադարձան տուն, շարունակեցին խանդավառութիւնը եւ փոխադարձ կապերը պահեցին:

Ո՛չ մէկը անոնց հայկականութիւն եւ հայեցի դաստիարակութիւն քարոզեց: Ո՛չ մէկը անոնց լեզու պարտադրեց, ո՛չ ալ անընդհատ սրբագրեց անոնց սխալները: Բայց անոնք ինքնաբերաբար սորվեցան որովհետեւ սիրեցին մթնոլորտը եւ առիթ ունեցան իրենց այժմէական մշակոյթը ստեղծելու. լեզուական կամ մշակութային «ծրար» մը չստացան որպէս բեռ կամ պարտականութիւն:

«Զարմանազան» ճամբարը կը բաղկանար երկու մասէ. մէկը վերը յիշուած պատանեկան բաժինն էր, միւսը վերաորակաւորման խտացուած դասընթացք մըն էր հայկական դպրոցներու 15 ուսուցիչներու՝ Փարիզի INALCO համալսարանի հետ գործակցաբար: Ուսուցիչները պատրաստուեցան երեխաներուն հետ առնչուելով, անոնց պէտքերը ու կարողութիւնները դիտելով: Ուրիշ նորութիւն մը. ուսուցիչներու վերապատրաստութեան մէկ մասն էր նաեւ նոր լեզու մը սորվիլ, այսինքն՝ նիւթը դիտել ո՛չ թէ միայն սորվեցնողի տեսանկիւնէն, ալ նաեւ՝ սորվողի:

Այս մանրամասնութիւնները կը յիշեմ միայն մանկավարժական փոփոխութիւններու եւ նորարարութիւններու օրինակներ ցոյց տալու համար:

Աւելի մեծահասակներուն համար՝ 16-էն 24 տարեկան, դարձեալ շաբաթ մը երկարող մէկ այլ ճամբար կազմակերպեցինք, նոյնպէս Ֆրանսայի մէջ, ուր համագործակցեցանք «Վիքիմետիա Հայաստանի» հետ՝ Վիքիփետիայի (կամ՝ Ուիքիփետիայի) յօդուածներ գրելու համար: Միա՛յն յօդուածներուն թիւը չէր կարեւորը, այլ նաեւ՝ գրելու եւ կարդալու սէր ու խանդավառութիւն ստեղծելը: Ճամբարին մասնակցողները հայերէնով կարդացին արդի գրականութիւն ու ստեղծագործական եւ խմբային աշխատանքներու մէջ մխրճուեցան:

Ամէնքս գիտենք ելեկտրոնային գործիքներու կարեւորութիւնն ու կը խօսինք այդ մասին: Արեւմտահայերէնի ուղղագրութիւնը սրբագրելու ծրագիրը յառաջիկայ տարի պատրաստ պիտի ըլլայ այլազան խելախօսներու (սմարթֆոն) եւ համակարգիչի ծրագիրներու համար: Կը հաւատանք, որ ասիկա թափ պիտի տայ աւելի շատ հայատառ գրելու:

Հայկազեան համալսարանին հետ, 2017–18 ուսումնական տարեշրջանին, Լիբանանի հայկական վարժարաններու ուսուցիչներուն համար մասնայատուկ վերաորակաւորման ծրագիր մը կ'իրականացնենք:

Եզրափակեմ: Զլուսահատինք՝ ըսելով, որ արեւմտահայերէնը կը մահի: Այո՛, անիկա վտանգուած է, բայց անոր վտանգէն դուրս գալու բանալին մեր ձեռքն է: Մարդո՛ւժ, մարդո՛ւժ եւ մարդո՛ւժ պէտք է պատրաստել՝ Սփիւռքի մէջ, Սփիւռքի յատուկ եւ Սփիւռքի համար: Մարտահրաւէրը մեծ է, բայց յաղթահարելի: Անշուշտ՝ նիւթական ներդրում կը պահանջէ, բայց անկէ աւելի կարեւոր՝ տեսլական մը կը պահանջէ, որ պետականութեամբ տարուած չէ եւ կը վստահի ինքն իրեն:

Եթէ արեւմտահայերէնը պիտի ամրապնդենք ու զարգացնենք – վստահ եմ, որ նշմարեցիք թէ միա՛յն պահպանումի մասին չեմ խօսիր – սփիւռքակեդրոն շարժումի մը պէտք ունինք, որ կը հաւատայ այս տեսլականին, կը հաւատայ իր լեզուին, եւ պատրաստ է վերլուծումէն անցնելու գործի եւ միջոցներ որոնելու:

19-րդ դարու առաջին կէսին, խումբ մը «գրոց բրոց» մտաւորականներ եւ վարդապետներ՝ Պոլիս, Թիֆլիս ու Վենետիկ նստած, մեր երկու աշխարհաբարները ստեղծեցին ու տարածեցին. հայերէնը վերականգնեցին որպէս ամէնօրեայ լեզու առանց պետութեան մը ներդրումին, առանց կեդրոնական եւ կեդրոնացնող մարմիններու: 21-րդ դարու սկիզբը, օժտուած՝ համացանցային բոլոր դիւրութիւններով, աշխարհասփիւռ հայերս պիտի չկրնա՞նք արեւմըտահայերէնը զարգացնել եթէ ջանք թափենք ու մենք մեր ուժերուն ապաւինինք:

Ափսո՛ս եթէ չփորձենք:

*Արեւելք լրատուական*

9 Հոկտեմբեր 2017

دار شوشة للطباعة - رقم إيداع دار الكتب ٨٠٥

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202)24530327, Fax: (202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1802 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 16 ՆՈՅԵՄԲԵՐ 2017 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٨٠٢ الخميس ١٦ نوفمبر ٢٠١٧


## ԸՆՏԱՆԻՔԻՑ ԿԱՌՉԱԾ ԻՆՔՆԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ. ԲԱՑՈՒԱԾ ՀԱՐՑԵՐ

**ԱՆՆԱ ԺԱՄԱԿՈՉԵԱՆ**

Ինչո՞ւ չհարցնենք ինքներս մեզ. գուցէ ճի՞շտ են պահպանողականների այն մտահոգութիւնները, որ ընտանիքն այլեւս միակ ինստիտուտն է, որտեղ Հայաստանի Հանրապետութիւնն ինքնիշխանութիւն ունի:

Սա միակ հարցը չէ, որ առաջ է գալիս, երբ լսում ես ընտանեկան բռնութեան կանխարգելման օրէնքի դէմ ելոյթները: Հոկտեմբերի 9-ի թուացեալ հանրային բանավէճը, որ աւելի շուտ կոծկում էր բռնութեան զոհերին համարժէք օգնութեան օրինագծի բացերը, թերեւս որոշ օգտակար հարցադրումների կարող է մեզ բերել, եթէ իրերի դրութիւնը դիտենք յստակեցուած շրջանակով:

«Հայ ընտանիքի աւանդոյթի» պահպանման դիրքից օրէնքի դէմ արտայայտուողների անունից բեմից խօսեց պահեստազօրի գնդապետը, ով պ[illegible] գտնուեց 4 հոգու փոխարէն խօսքի իրաւասութիւն վերցնել: Գուցէ իր մասնագիտական կենսափորձի բերումով նա խնդիր չունէր բռնութեան, անհաւասար աստիճանակարգուած յարաբերութիւնների եւ իշխողի իշխանութեան հետ: Նա կարողացաւ այդ միջոցառման ժամանակ իրեն ելոյթ չնախատեսած նախարարութեանը ստիպել բարձրախօս եւ ամբիոն տրամադրել (հաճելի է, երբ «լռեցուածի» ձայնը հնչեցնելու իրաւունքը գործնականում կարեւոր արժէք է դառնում պահպանողականների համար՝ անկախ, թէ իրականում որքանով են իրենք զրկուած հարթակներից): Դահլիճում ներկայ մի երիտասարդ կնոջ նա դիմեց «աղջնակ»-ով, բղաւոցով սաստեց իր թիմակիցներից մէկին՝ քահանայի խօսքին հակադարձելու համար: Սա էլ գուցէ իր մասնագիտական «աւանդոյթների» պահպանութեան ձգտումն է՝ չգիտեմ:

Այո՛, պահեստազօրի գնդապետ տղամարդը կարող է իրեն թոյլ տալ շարունակել իր հանրային կեանքը՝ համակարգելով «Յանուն ինքնիշխանութեան վերականգնման» նախաձեռնութիւն, ձգտելով Հայաստանում իրացնել Պուտինի օրէնսդրական նախաձեռնութիւնները, երիտասարդների խմբերին մանիպուլիացիայի եւ հակամանիպուլիացիայի վարպետաց դասեր տալով Հայաստանում գործող «Ռուսաստանի գիտութեան եւ մշակոյթի կենտրոնում» (վստահաբար քննադատելով արեւմուտքը՝ յղելով արեւմտեան իսկ տեսութիւնների եւ հեղինակների, սակայն նրանց խօսքը ռուսալեզու հեղինակների գրքերից վերցնելով) եւ, իհարկէ, պայքարելով ընտանեկան բռնութեան կանխարգելման օրէնքի դէմ: Պահեստազօրի գնդապետի սեփական հանրային գործի նշանակութիւնն իրեն թոյլ չի տայ նկատել այն կանանց անտեսանելի կեանքը, ովքեր երբեւէ հանրային կեանք մտնելու հնար չեն ունենայ, ասենք՝ ամուսնացուելով վաղ տարիքում, չստանալով պատշաճ կրթութիւն, թոյլատրուած չլինելով զբաղմունք եւ անգամ հանրային կեանքի ցանկութիւն ունենալ:

Յանուն Հայաստանի ինքնիշխանութեան վերականգնման պայքարի որոնումները արժէքային-աւանդոյթային ոլորտներին են յղում, սակայն իրականում դէմ են արտայայտւում Հայաստանի ինտեգրմանը եւրոպական կառոյցներին ու քաղաքականութիւններին: Արդեօ՞ք Հայաստանի էներգետիկ եւ տնտեսական կամ նոյնիսկ ռազմական ինքնիշխանութեան հարցերը յուզում են այս պայքարի մարտիկներին: Կամ մինչեւ ո՞ւր կարող են հասնել ինքնիշխանութեան ձգտման նրանց քայլերը. կը հասնե՞ն, արդեօք, Հայաստանից ռուսական զօրքերի հեռացման պահանջին եւ ռուսական գազից կախեալութեան խնդրականացմանը, իսկ դրանց դէմ առնելով կը հասնե՞ն ինքնիշխանութեան իրենց ընկալումների հարցադրմանը:

Բայց գնդապետը միակ մարտիկը չէ օրէնքի նախագծի դէմ: Հոկտեմբերի 9-ի հանրային քննարկմանը մասնակից ընդդիմադիրներից շատերը հասուն եւ միջին տարիքի երեւանաբնակ կանայք էին, որոնց ձայնը, սակայն, դուք չլսեցիք ամբիոնից եւ հազիւ թէ լսէք յետագայում հրաւիրուած «հեռուստաբանավէճերում». պատահականութիւն չէ, այլ՝ «աւանդոյթ»:

Այնինչ, հաւաքուած կանանցից շատերն իրօք վախեցած էին օրէնքի հնարաւոր ընդունումից: Մէկը նշում էր, որ դա հնարաւորութիւն կը տայ ընտանիքից խլել երեխաներին, տանել ապաստարան եւ վաճառել նրանց օրգանները: Կառավարութեան կողմից այս պնդումների հերքումները վստահելի չեն թւում օրէնքին ընդդիմացողներին: Զարմէ՞ նրանց այս թերահաւատութեանը լուրջ վերաբերել: Արդեօք, դա իրօք չի՞ արտայայտում հանրային խմբերի անվստահութիւնը դէպի կառավարութիւնն ու ոստիկանութիւնը: Մի՞թէ օրէնքին կողմնակից իրաւապաշտպանները եւս չեն կասկածում, որ փողոցում ցուցարարներին, քննչականներում եւ նոյնիսկ դատարանի շէնքում ամբաստանեալներին ծեծող ոստիկանութեան համակարգը կարող է Հայաստանի ընտանիքներում պաշտպանել բռնութեան ենթարկուողներին: Ինչպէս Արմէն Մելիքբէկեանը մեր զրոյցում նկատեց, Դաւիթ Յարութիւնեանը այն նախարարն է, ում պաշտօնավարման ժամանակ շարունակւում են Հայաստանի բանտերում առկայ բռնութիւնները, ով տարիներ շարունակ աջակցել է Եւրոպայի Խորհրդի Խորհրդարանական Վեհաժողովում (ԵԽԽՎ) քաղբանտարկեալների գործերի եւ Մարտի 1-ի յանցանքի եւ բռնութիւնների կոծկմանը: Կարելի է էլի շարունակել պաշտօնեաների անունների, չիրացուած պատասխանատուութիւնների եւ երկրի չլուծուած խնդիրների ցանկը...

Ներկայացուած նախագծին դէմ ելած քննարկման ներկաներից շատերը հայախօս էին, մի առանձին կանանց խումբ՝ ռուսախօս: Արդեօք նրանց հասանելի՞ են իրենց կեանքում «արեւմտեան գլոբալացման» վնասակար հետեւանքները հասկանալու միջոցները, արդեօք նրանք կարո՞ղ են ընթերցել հէնց արեւմտեան հեղինակների կողմից արեւմուտքի երկրների նէօլիբերալ քաղաքականութիւնների հիմնաւորուած եւ արժանահաւատ քննադատութիւնները: Ներկայ կանանցից ոմանք վստահաբար չէին կարդում նոյնիսկ հայերէն: Այս մարդկանց է ուղղուած իւվենալ արդարադատութեան, գենդերային զգայունութեան հարցերի, ոչ հետերոսեքսուալ մարդկանց իրաւունքների դէմ կռիւը մատչելի հարթակ սարքած պուտինեան ռուսալեզու պրոպագանդան՝ մշակութային վախերով պրոռուսական եւ գլխաւորը՝ հակաեւրոպական տրամադրութիւններ ձեւաւորելու նպատակով: Արդիւնքում մի ռուսախօս կին ներկաներին էր բաժանում «արեւմտեան ընտանիքի» դէմ եւ Ռուսաստանի ընտանեկան դրական արժէքներին կոչ քարոզող ռուսերէն թերթիկներ...

Ռուսաստանը տիրում է Հայաստանի տնտեսութեան խոշոր լծակների, խոչընդոտում է Ղարաբաղի խնդրի եւ հարեւանների հետ յարաբերութիւնների կարգաւորմանը, բայց հռչակում է, թէ «աւանդոյթի» տարածք չի ներխուժում: Հակառակը՝ այն ջատագովում է ապամոդեռնացումը, ծայրայեղ ազգայնականութիւնը եւ կրօնականութիւնը ինչպէս իր, այնպէս էլ յետխորհրդային միւս երկրներում: Յետադէմ պահպանողական մշակոյթից եւ ցածր որակաւորում պահանջող աշխատաշուկայ տրամադրելուց բացի իր նախկին «քոյր-եղբայրներին» ուրիշ էլ ի՞նչ կարող է առաջարկել մեծ ամբիցիաներով, սակայն չզարգացած կապիտալիզմով բռնատիրական Ռուսաստանը:

Քննարկմանը ներկայ կանանցից շատերը Խորհրդային Հայաստանի անկումով իրենց մասնագիտական աշխատանքը կորցրած մարդիկ էին, որ իրենց անձնային արժանապատուութեան միակ տեղը գտել են ընտանիքում՝ «հայ ընտանիքում»: Եւ մի՞թէ հասկանալի չէ այդ տարածքը «դրսից» եւ անգամ հայկական պետութեան «ներխուժումից» ազատ ու «սրբազան» պահելու իրենց ձգտումը: Նրանցից ոմանք էլ իրենց անձնային արժանապատուութիւնը չոյելու մխիթարութիւնը գտնում են իրենց «հայ» կամ «բնիկ երեւանցի» ծնուած լինելու մէջ: Մի՞թէ ուշ խորհրդային ազգայնական-քաղքենի այս հայեացքի ներքոյ հասկանալի չէ Գաւառի գիւղերից մէկում դաժան բռնութիւնների ենթարկուած կնոջ դէպքի պէս օրինակների վրայ յենուող օրէնքի դէմ իրենց զայրոյթը: Այդպէս, օրէնքին հակառակուողներից մէկը երիտասարդ մի ֆեմինիստի շփոթել էր Գաւառի (10 տարուայ բռնութիւններից ազատուած) նախկին բնակչուհու հետ, ում «խորհուրդ էր տալիս» խօսելու փոխարէն Գաւառ վերադառնալ:

Մի աւագ սերնդի տղամարդ էլ համոզուած էր, որ ես տեղացի չեմ եւ պնդում էր հարցը, թէ որտեղից եմ եկել: Եթէ հաշուէք ողջ կեանքումս Հայաստանից բացակայութիւններիս գումարային օրերը, վախենամ տարին չբոլորուի: Հայերէնը միակ լեզուն է, որով այս յօդուածի պէս յօդուածը կարող եմ գրել մէկ օրում, իսկ ռուսերէնով եւ անգլերէնով վստահ չեմ, թէ նոյնիսկ կը նախաձեռնէի: Բայց մի՞թէ այս տղամարդու հարցը տեղին չէ. որտեղ եմ ես կամ ինձ նմաններն ապրել մինչ այժմ, որ տեսանելի եւ լսելի չենք եղել իրեն: Այո՛, ապրել եմ Հայաստանում, որտեղ տեսանելիութիւն եւ լսելիութիւն տրամադրող հիմնական հարթակները ամբողջովին զաւթուած են նոյն քաղտնտեսական

⇨ 4

### ԹՈՒՐՔԻԱ

## «ԵՍ ՇԱՏ ԼԱՒԱՏԵՍ ԵՄ»

Պատրիարքական տեղապահ Տ. Գարեգին Արք. Պեքճեան *Ժամանակ* օրաթերթին հարցազրոյց մը տալով յայտարարեց, որ ինք շատ լաւատեսօրէն տրամադրուած է ընտրութեան հարցին շուրջ:

Գերմանիայէ վերադարձին տեղապահ սրբազան հայրը թերթիս յայտարարութիւններ ըրաւ՝ ընտրութեան գործընթացի վերջին իրադարձութիւններու լոյսին տակ: Իր բացակայութեան օրերուն կուսակալութեան մէջ տեղի ունեցած հանդիպման անդրադառնալով ան կրկնեց կուսակալութեան տեսակցութենէն վերջ իր կողմէ կատարուած հրապարակումը: «Այո՛, ի պահանջել հարկին՝ յառաջիկայ շաբաթներուն ժամադրութիւն մը խնդրելու համար կրնամ դիմել կուսակալութիւն», ըսաւ նորին սրբազնութիւնը՝ հաստատելով արտասահմանի մէջ գտնուած օրերուն իր կատարած յայտարարութիւնը: Իրեն հարց տուինք, որ իր վերադարձի դրութեամբ համայնքային շրջանակները այս հարցին վերաբերեալ շատ աւելի արագ եւ հրատապ նախաձեռնութիւններու սպասումի մէջ են: Ի պատասխան՝ տեղապահ սրբազան հայրը յայտնեց, որ ինք աճապարելու անհրաժեշտութիւն չի զգար եւ այդպիսի դիմում մը կրնայ կատարել, երբ որ պահը հասունցած տեսնէ: «Մնացեալը իրենք գիտեն. ժամադրութիւնը կու տան կամ ոչ՝ սա իրենց գործն է», ըսաւ ան:

Նորին սրբազնութեան նկատառման յանձնեցինք նաեւ, որ կուսակալութեան մէջ տեղի ունեցած հանդիպումէն անմիջապէս վերջ հրաժարած են Նախաձեռնարկ Մարմնի ատենապետն ու շարք մը անդամները: Թէ ի՞նչ կը մտածէ նորին սրբազնութիւնը այս մասին: Ան պատասխանեց. «Նախաձեռնարկ Մարմնի հրաժարեալ անդամները պէտք է սպասէին իմ Պոլիս վերադառնալուս: Սա աւելի պատշաճ պիտի ըլլար: Որովհետեւ, որքան որ ալ ընտրուած մարմնի մը անդամները ըլլան՝ իրենց աշխատանքի բնոյթով պատասխանատուութիւններ ունին ինծի հանդէպ: Բայց եւ այնպէս, հիմա արդէն հրաժարած են, ընելու բան մը չկայ: Այս օրերուն մենք անհրաժեշտ արժեւորումները կ'ընենք եւ այդ հիման վրայ ալ մօտակայ օրերուն այս մասին պիտի ընենք յայտարարութիւն մը»:

⇨ 4

ՋԱՀԱԿԻՐ

# ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԵԱՆ ՄԸ ԱՌԻԹՈՎ՝ *ՅԱԿԻՆԹԻ ՊԱՐՏԷԶԸ*
# ՀԵՂԻՆԱԿ՝ ՎԱՐԱՆ ՈՅԺ

**Յ. ԱՒԱԳԵԱՆ**

2001-ին Վա(Գ)ր գրչանունով Գահիրէի մէջ կը հրատարակէ եօթը պրակ՝ *Աստուածաբանութեան թեկնածուն* (կատակախաղեր), *Բանասէր փեսացուն եւ բարեխօսականի գաղտնիքները* (կատակախաղեր), *Բարոյականի դասը* (կատակախաղեր), *Հա՞յ ես դուն կամ Աստուած իջաւ կառքէն* (կատակախաղ), *Մազապուրծ* (կատակերգութիւն), *Ներքնազգեստով կինը եւ կէս առ հարիւր բարերարներ* (կատակախաղեր) եւ *Նստուկը ստնուկին վրայ* (կատակախաղ), բոլորն ալ առանց հրատարակիչի կամ հովանաւորողի, այսինքն՝ իր անձնական նիւթական միջոցներով:

Իր բանաստեղծութիւնները հրատարակուած են բազմաթիւ ժողովածուներու, հանդէսներու, լրագիրներու եւ համացանցի կայքերու մէջ:

2013-ին կ'արժանանայ Եգիպտոսի Սաուիրըս Մշակութային Մրցանակաբաշխութեան լաւագոյն թատերգութեան երկրորդ մրցանակին, արաբերէն լեզուով յօրինած *Ամալ* թատերգութեան համար (ներկայացուած Վարուժան Յովակիմ Գազանճեան ստորագրութեամբ), որ կը ներկայացնէ եգիպտացի հռչակաւոր բանաստեղծ Ամալ Տոնքոլի կեանքի երեք փուլերը: Մրցանակներու տուչութիւնը տեղի կ'ունենայ Գահիրէի Օփերայի Փոքր Սրահին մէջ, 2014 Յունուար 7-ին, արաբական աշխարհի փայլուն դերասանուհի Սամիհա Այուպի ձեռամբ: Որքան ինծի ծանօթ է, ասիկա միակ պարագան է երբ եգիպտահայ մը իր մասնակցութիւնը կ'ունենայ արաբերէն գրականութենէն ներս (եթէ կը սխալիմ, կը խնդրեմ սրբագրել տեղեկութիւնը):

1983-ին Թանթայի Համալսարանի Բանասիրական Բաժինի անգլերէն մասնաճիւղին մէջ պաշտպանած է մագիստրոսական թէզը՝ *The National, Social and Psychological Issues in the Drama of John Osborne*, իսկ 1990-ին տոքթորականը՝ *The Dramatic Monologue: An Analysis of Its Structure and Development*:

Իր երկու թէզերուն մասին այսպէս կ'արտայայտուի Գազանճեան. «Անգլիական գրականութեան ուսանող էի, երբ գրաւեցին զիս Ռոպըրթ Պրաունինկի (1812-1889) թատերական մենախօսութիւնները: Տպաւորուած էի, որ բանաստեղծը կրնայ խուսափիլ քնարերգական իր եսէն եւ ստեղծել ուրիշ թատերական եսեր: Համալսարանական ուսումս աւարտելէ հինգ տարի ետք՝ 1983-ին սկսայ բանաստեղծական այս սեռը փորձել ես ալ: 1983-ին կը ստանայի Գրականութեան Մագիստրոսի տիտղոսը. Թէզիս նիւթն էր *Ազգային, ընկերային եւ հոգեբանական հարցերը Ճօն Օզպօրնի թատերագրութեան մէջ*: Յաջորդ հանգրուանին համար նոր նիւթ հարկ էր գտնել: Նիւթ մը, որ թէ՛ հետաքրքրէր ինծի, եւ թէ առիթը տար ներդրում մը կատարելու գրականագիտութեան, մասնաւորաբար թատերագիտութեան մէջ: Ընթերցումներու երկարող շարք մը. յուսազրկման սաստկացող զգացում մը: Եւ յանկարծ՝ ինչո՞ւ նիւթս չըլլայ թատերական մենախօսութիւնը. Թող գրականագիտութիւնը ծառայէ ստեղծագործողին:»(12):

Եղած է նոյն համալսարանի փրոֆեսոր, ինչպէս նաեւ Գահիրէի Համալսարանի Հայագիտական Ամբիոնի հայերէն լեզուի դասախօս: Մասնակցած է գիտական համագումարներու Եգիպտոսի եւ արտասահմանի մէջ: Եղած է Նուպարեան Ազգային Վարժարանի հայերէն լեզուի եւ գրականութեան ուսուցիչ (նախակրթարանի շրջանին մէկ տարի եղած եմ իր աշակերտը) եւ ապա վարժարանի տնօրէն (1997-1998 տարեշրջան):

1980-ականներէն սկսեալ, Եգիպտոսի ռատիոյի Եւրոպական Տեղական Կայանի հայերէն եւ անգլերէն հաղորդումներուն մէջ իր գործուն մասնակցութիւնը բերած է իբրեւ պատրաստող եւ խօսնակ: Անգլիական բաժինէն տարիներ շարունակ ներկայացուցած ու մեկնաբանած է եգիպտացի գրողներու գործեր:

Հայկական ակումբներու մէջ տուած է բազմաթիւ զեկոյցներ, որոնցմէ կարելի է նշել լոկ քանի մը հատ.

- *Սփիւռքի մէջ կարելի՞ է հայկական արուեստ մշակել*, քննարկում-առենախօսութիւն Հայկ Սարգիսեանի, Նայիրի Համբիկեանի եւ Ռաֆֆի Զէչճէնեանի հետ (Թէքէեան Սրահ, 3 Մայիս 1987)(13):
- *Բարդ բառերու կազմութիւնը արդի հայերէնի մէջ* (Ազգային Առաջնորդարանի Դահլիճ, 6 Ապրիլ 1988)(14):
- *Ուսումնասիրութիւն հայրենասիրութեան* (Ազգային Առաջնորդարանի Դահլիճ, 29 Ապրիլ 1989)(15):
- *Սփիւռքի բանաստեղծութիւնը* (Թէքէեան Սրահ, 6 Ապրիլ 1989)(16):
- *Սփիւռքի բանաստեղծութիւնը* (Թէքէեան Սրահ, 26 Ապրիլ 1989)(17)
- *Նակիպ Մահֆուզի վիպական վաստակը* (Կոկանեան Սրահ, 14 Մայիս 1989)(18):
- *Սարդարապատի ճակատամարտը այսօր* (Նազարէթ Զամպաքեան Լսարան, Աղեքսանդրիա, 4 Յունիս 1989)(19):
- *Նակիպ Մահֆուզ* (Կոկանեան Սրահ, 18 Յունուար 1990)(21):

Դերասանութեամբ (Ժիրայր Բաբազեանի բեմադրութեամբ) եւ ասմունքով մասնակցած է եգիպտահայ ձեռնարկներու:

Այս համառօտ (հաստատապէս՝ ոչ-ամբողջական) կենսագրութիւնը կրնայ պարզել քանի մը խնդիրներ:

Հակառակ հայերէն բանաստեղծութիւններուն, հեքիաթներուն եւ թատերգութիւններուն առատութեան, մրցանակը կու գայ արաբական աշխարհէն՝ արաբերէն թատերգութեան համար: Պարզապէս պէտք է նշմարել՝ որ իր գրականութեան հայերէն կողմը այնքան ալ մրցանակ ստանալու յարմարուողականութիւն չի ցուցաբերեր, քանի որ անիկա ուղղակիօրէն չ'արծարծեր ազգայինի, ցեղասպանութեան, ազատագրական պայքարի, հայ դատի հարցերը, որոնք կը հանդիսանան նախագահական, նախարարական, զոյգ կաթողիկոսական, սփիւռքներու աւանդականմիութենական մրցանակներու նիւթերուն հիմքը՝ անկախ անոնց որակային արժէքներէն: Պէտք է նշմարել նաեւ՝ որ եգիպտական մրցանակը աննկատ անցաւ հայկական շրջանակներէն ներս, հակառակ որ հայերս կը սիրենք հանրագիտարանային տեղեկատուական ամբարումներուն մէջ ընդգրկել «օտար» շրջանակներու մէջ յաջողութիւն գտած հայերուն անունները:

Նկատելի է՝ որ 2001-ի եօթը պրակները լոյս աշխարհ եկած են առանց հովանաւորողի կամ հրատարակիչի, հակառակ սփիւռքի մէջ գոյութիւն ունեցող մշակոյթի բարձրախօսային խրախտանքներուն:

Վերջապէս, նշմարելի է, որ հակառակ *Gulliver in Cloneland*-ի 17-ամեայ կարճ կենսագրութեան, անգլերէն գրաքննադատութիւնը փորձ կատարած է զայն մտցնել այդ ծիրի գրականութենէն ներս՝ թէեւ տակաւին հակիրճ մեկնաբանութիւններով, մինչդեռ իր հայերէն գրականութեան արտադրանքները, որքան ծանօթ եմ, կը մնան մատենագիտական ցանկերու սահմանագիծին մէջ:

Անմիջապէս շեշտեմ, որ այս բոլորը Գազանճեանին հետ կապուած բացառութիւններ չեն բնաւ: Ասոնք սփիւռքեան միտումներ են, որոնք կը շրջանակուին քանի մը կարծրատիպերու շուրջ.

- Մրցանակներ այն մտաւորականներուն՝ որոնք կը ծառայեն իշխանական գաղափարախօսութեան:
- Գիրքեր, հանրագիտարաններ, ուսումնասիրութիւններ, բառարաններ (թէ՛ սփիւռքի եւ թէ Հայաստանի հրատարակութիւններ), որոնք լեցուն են օտար մշակոյթներու «սատարած» հայերու անուններով ու ճոխացած կենսագրութիւններով: Միաժամանակ, տրտունջ այդ նոյն հայերուն նկատմամբ օտար մշակոյթի «ծառայած» ըլլալնուն համար, փոխանակ հայկական մշակոյթի: Ըստ խօսքի յարմարութեան եւ անկէ ստանալիք շահաւէտութեան, միեւնոյն մտաւորականը մէյ մը օտարին «կը սատարէ»՝ լաւ իմաստով, մէյ մը օտարին «կը ծառայէ»՝ վատ իմաստով:
- Սփիւռքի լրագիրները, պարբերականները, լրատուամիջոցները լեցուն են «մշակոյթ» բառով: Եւ ահաւասիկ, գրական գործեր՝ հայերէն լեզուով եւ հայ լսարանին ուղղուած, չեն գտներ իրենց հրատարակիչները, կը տպագրուին հեղինակի դրամով կամ առցանց:

Ասիկա՝ ընդհանուր սփիւռքեան առումով: Բայց կենսագրականին մէջ կը գտնուին նաեւ իւրայատուկ՝ տուեալ անձին հետ կապուած գաղափարական կէտեր: Ասոնցմէ գլխաւորը ապակեդրոնացումն է՝ անբաղձալի դրոյթ մը սպառողապաշտ արդիականութեան համար:

Ճօն Օսպորն՝ բրիտանական թատրոնի ու հասարակութեան սահմանուած կանոնները քանդող քննադատ-թատերագիր մը, Ամալ Տոնքոլ՝ եգիպտական ձախի անհանգիստ ներկայացուցիչ մը, բուռն դիմադրող մը Քամփ Տէյվիտի ստորագրուցիչ համաձայնագիրին, Վահան Թէքէեան՝ *առողջ* ազգայնականութեան եւ արդիականութեան բարեխառնուրդ մը, որ պայքարած է *կոյր* ազգայնականութեան դէմ, Արսէն Երկաթ՝ անխռով յուզումներու վարպետ մը, մանկական հեքիաթներ՝ ուր Գազանճեան հաճոյք կը պատճառէ նաեւ մեծահասակներուն, Կիւլիվէրի արկածախնդրութիւններուն «շարունակութիւն»՝ ուր Արիազատ մերկացնելով կը պախարակէ համամարդկային եղծումներն ու ապականութիւնները, կատակախաղերու շարք՝ ուր Վա(Գ)ր հեգնանքի կ'նթարկէ հայկական բարքերն ու վերնախաւային վարքերը, բանաստեղծութիւններ՝ ուր, ինչպէս ստորեւ քննախօսուող օրինակը ցոյց պիտի տայ, Վարան Ոյժ ինչքազուրկ կ'ընէ բանաստեղծական սրբութիւնները: Եւ այս բոլորը երեք լեզուներով՝ հայերէն, անգլերէն եւ արաբերէն:

Առանց խորանալու իրերու էութեան մէջ, յաճախ նման վերաբերմունքը մեքենայաբար կ'անուանուի բազմակողմանիութիւն: Լիովին հասկնալի է, եթէ բազմակողմանի անուանուին Լէոնարտօ տա Վինչի կամ Հայր Ղուկաս Ինճիճեան: Բայց այսօր ընդունուած է բազմակողմանի անուանել մասնագէտներ՝ որոնց ամբողջ արտադրութիւնը նեղ մասնագիտութեան սահմաններէն անդին չէ անցած եւ կեդրոնացած է միակ ուղղութեան մը վրայ. կը բաւէ որ արդարացուի քանակային կողմը: Կեդրոնացումներու ներկայ աշխարհին մէջ՝ երբ նոյն ինք կեդրոնացումը կրնայ պատկերուիլ իբրեւ բազմակողմանիութիւն, բառերու զուարճախաղ մըն է որ տեղի կ'ունենայ: Բազմակողմանիութիւնը այլեւս անզօր կը դառնայ քակել ու քանդել կեդրոնացումը: Ապակեդրոնացումը կրնայ ստանձնել այդ դերակատարութիւնը, իբրեւ մերժում ու դիմադրութիւն կեդրոնի: Ապակեդրոնացումը, ի տարբերութիւն բազմակողմանիութեան՝ որ դարձած է գեղագիտական բառային նկարազարդում մը, կրնայ փարատել բնագիրի իշխանութիւնը, գիտելիքի բացարձակ սեփականացումը:

➪ 4

ԳԱՀԻՐԷ

## ՖԱՅՀԱ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻ ԳԱՀԻՐԷԻ ՕՓԵՐԱՅԻ ԱՐԱԲԱԿԱՆ ԵՐԱԺՇՏՈՒԹԵԱՆ ՓԱՌԱՏՕՆԻՆ

Նոյեմբեր 1-15-ին տեղի ունեցաւ Արաբական Երաժըշտութեան 26-րդ Փառատօն-Համագումարը, կազմակերպութեամբ Գահիրէի Օփերայի Թատրոնին:

Հրաւիրուած էր ելոյթ ունենալու Լիբանանի Ֆայհա Երգչախումբը, խմբավարութեամբ լիբանանահայ անուանի երաժիշտ Պարգեւ Թասլաքեանի:



*Պարգեւ Թասլաքեան*

Երգչախումբը ունեցաւ երեք ելոյթ՝ 9 Նոյեմբեր, Գահիրէի Օփերայի Մեծ Սրահ (երեկոյթին ելոյթ ունեցան նաեւ սուրիացի երգչուհի Ռուայտա Աթիյա եւ եգիպտացի երգիչ Հանի Շաքէր), 10 Նոյեմբեր, Աղեքսանդրիոյ Օփերայի Սայէտ Տարուիշ Թատերասրահ (ելոյթ ունեցան նաեւ եգիպտացի դաշնակահար Ամր Սելիմ եւ եգիպտացի երգիչ Մետհաթ Սալէհ) եւ 11 Նոյեմբեր, Գահիրէի Արաբական Երաժշտութեան Կաճառ (առանձին երգահանդէս):



*Եդուարդ Թորիկեան*

Ֆայհա Երգչախումբը իւրայատուկ երեւոյթ մըն է արաբական աշխարհին համար: Ան կը ներկայացնէ արաբական աւանդական եւ ժամանակակից երաժշտութիւնը՝ քառաձայն մշակումով: Մշակումները կատարուած են մասնաւոր խնամքով եւ յատուկ մօտեցումով: Մշակումներու մեծ մասին հեղինակն է լիբանանահայ երաժշտահան, երաժըշտագէտ եւ խմբավար Եդուարդ Թորիկեան, որ երգչախումբին հետ ժամանեց Եգիպտոս եւ մասնակցեցաւ համագումարին, ներկայացնելով իր փորձառութիւնը արաբական երաժշտութիւնը քառաձայն վերածելու առումով:

**ԳԱՀԻՐԷ**

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ *ՋԱՀԱԿԻՐԻ* ԺԱ. ՅԱՒԵԼՈՒԱԾԸ՝ ՆՈՒԻՐՈՒԱԾ ՎԱՆԻԱ ԷՔՍԷՐՃԵԱՆԻՆ

Լոյս տեսաւ *Ջահակիրի* ԺԱ. Յաւելուածը՝ *Վանիա Էքսէրճեան. բազմերանգ աշխարհ մը համակ կենսունակութեամբ* (51 էջ):

Կը բովանդակէ եգիպտահայ դերասանուհիին (1960-2004) մանրամասն կենսագրութիւնը, Եուսէֆ Ռախայի յօդուածին թարգմանութիւնը, ինչպէս նաեւ Էքսէրճեանի արաբերէն թարգմանութիւնը Յովհաննէս Թումանեանի *Մի կաթիլ մեղրը* քերթուածին:




**ԻՏԱԼԻԱ**

## ԵԳԻՊՏԱՀԱՅ ՆԿԱՐՉՈՒՀԻ ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆԻ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍԸ ԻՏԱԼԻՈՅ ՄԷՋ

Սեպտեմբեր 18-ին, Իտալիոյ Ռիվոլի Պալատի Ժամանակակից Արուեստի Թանգարանին (Castello di Rivoli Museo d'Arte Contemporanea) մէջ պաշտօնական բացումը կատարուեցաւ եգիպտահայ անուանի արուեստագիտուհի Աննա Պօղիկեանի ցուցահանդէսին:




*Աննա Պօղիկեանի ցուցադրութենէն նմոյշ մը*

Պօղիկեանի արուեստանոցը կը գտնուի Գահիրէի կեդրոնը՝ իր առջեւ բանալով մայրաքաղաքի հրաշալի տեսարան մը: Իսկ արուեստագիտուհին անընդհատ ստեղծագործական ճամբորդութեան մէջ է՝ Եւրոպա, Ասիա, Ափրիկէ եւ երկու Ամերիկաներ: Ստացած է նաեւ գանատական հպատակութիւն:

Ցուցահանդէսի պաշտօնական կայքէջի առաջնորդող էջին վրայ, ի միջի այլոց, կը կարդանք.

«Ասիկա կը հանդիսանայ առաջին կարեւոր յետահայեաց ցուցահանդէսը նուիրուած ծագումով հայ եգիպտացի-գանատացի արուեստագիտուհի Աննա Պօղիկեանին (Գահիրէ, 1946): Ցուցահանդէսը առաջին անգամ ըլլալով կը համախմբէ նոթատետրերու, գծագրութիւններու, լուսանկարներու եւ քանդակներու արտակարգ հաւաքածոյ մը, ինչպէս նաեւ քանի մը հոյակապ մեծածաւալ տեղադրումներ [installations]: Պօղիկեանի կրաֆիքական աշխատանքները հակա-գեղագիտական եւ դիոնիսեան են որովհետեւ կը նախադասեն բանաւոր եւ տեսողական հաղորդակցութեան անմիջական եւ զգացական ձեւ մը, հակասելով դասական, ապողոնեան գեղեցկութեան հասկացողութեան հետ կապուած աքատէմիք ոճին:»

Ցուցահանդէսին առիթով Ռիվոլիի Թանգարանը եւ Շարժահ Արուեստի Հիմնադրամը (Sharjah Art Foundation) կը հրատարակեն ժողովածու մը՝ որ կը բովանդակէ Պօղիկեանի անտիպ բնագիրները եւ բանաստեղծութիւնները, կուաշներէ բաղկացած արուեստագիտուհիի նոր ծրագիրը՝ ներշնչուած Նիցշէի կեցութենէն Թուրինի մէջ, նոր քննական յօդուածներ Քարոլին Քրիսթով-Պաքարկիեւի, Մարիաննա Վեչելիոյի, Հուր Ալ Քասիմի եւ Քիարա Վեքիարելլիի կողմէ, ինչպէս նաեւ զրոյց մը Միլովան Ֆարրոնաթոյի եւ արուեստագիտուհիին միջեւ:

Նոյն առիթով սահմանափակ տպագրութեամբ Ռիվոլի Պալատի Ժամանակակից Արուեստի Թանգարանի հրատարակչութեամբ լոյս կը տեսնէ Պօղիկեանի նոր գիրքը՝ *A Short History of the 20th Century* (Ի. դարու համառօտ պատմութիւն):

Ցուցահանդէսը բաց պիտի մնայ մինչեւ 2018 Յունուար 7:

Ան կազմակերպուած է Արաբական Միացեալ Էմիրութիւններու Շարժահ Արուեստի Հիմնադրամի համագործակցութեամբ, որ Շարժահի մէջ պիտի հիւրընկալէ նոյն ցուցահանդէսը՝ 2018 Մարտ 16 – Յունիս 16-ին:

**ԽՈՀԵՐ**

## ՕՐԷՆՔ՝ ԸՆՏԱՆԵԿԱՆ ԲՌՆՈՒԹԵԱՆ ԴԷՄ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

### 1. ԲՋԻՋԱՅԻՆ ԸՆՏԱՆԻՔԻՆ ԿԱՐԵՒՈՐՈՒԹԻՒՆԸ ԴՐԱՄԱՏԻՐՈՒԹԵԱՆ ՎԵՐԱՐՏԱԴՐՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ

2017 Սեպտեմբերին Հայաստանի կառավարութիւնը առաջ կը նետէ ընտանիքի բռնութեան կանխարգելումի մասին օրէնքի նախագիծը, որ կը սկսի այսպէս.

«Վերջին տարիներին ընտանեկան բռնութեան տարածուածութիւնը եւ դրա ծանր հետեւանքներն աւելի եւ աւելի մտահոգիչ են դառնում: Միայն պաշտօնական վիճակագրութեան համաձայն՝ 2016թ. 8 ամիսների ընթացքում գրանցուել է կանանց դէմ ընտանեկան բռնութեան 452, 2015թ.՝ 784, 2014 թ.՝ 575, 2013թ.՝ շուրջ 500, 2012թ.ին՝ 625 միջադէպ: Աւելին, ՀՀ քննչական կոմիտէի հրապարակած տուեալների համաձայն՝ 2015 թուականին ընտանեկան բռնութեան համատեքստում սպանութիւնները կազմում են հանրապետութիւնում գրանցուած սպանութիւնների 17 տոկոսը: Բացի այդ, 2015 թուականի միայն առաջին կիսամեակում անչափահասների սեռական ազատութեան եւ սեռական անձեռնմխելիութեան դէմ ուղղուած յանցագործութիւնների դէպքերով յարուցուել է 38 քրէական գործ, որոնցից 47 տոկոսը գործադրուել է ընտանիքի անդամի կողմից: Միեւնոյն ժամանակ, հարկ է ընդգծել, որ ընտանեկան բռնութեանը յատուկ է լատենտայնութեան բարձր մակարդակը, ինչը նշանակում է, որ ընտանեկան բռնութեան իրական պատկերն էլ աւելի մտահոգիչ է: Մասնաւորապէս, միջազգային եւ հասարակական կազմակերպութիւնների կողմից իրականացուած հետազօտութիւնները ցոյց են տալիս, որ Հայաստանում ընտանեկան բռնութիւնն աւելի տարածուած է (օրինակ՝ ԵԱՀԿ օժանդակութեամբ Պրօակտիւ Հասարակութիւն ՀԿ-ի կողմից անցկացուած հարցման համաձայն՝ հարցուողների 59.6%-ը իրենց կեանքի ընթացքում ենթարկուել է ընտանեկան բռնութեան, իսկ հասարակական կազմակերպութիւնների տուեալների համաձայն՝ 2010-2015 թուականների ընթացքում ընտանեկան բռնութեան արդիւնքում սպանուել է 30 կին:»(1)

Թէ՛ համացանցային եւ թէ՛ հանրային քննարկումները մինչեւ այսօր կ'ընթանան թէժ՝ թեր ու դէմ անզիջող կարծիքներով:

Կը կարծեմ՝ որ կառավարութեան բուն նպատակը կարելի է բաժնել երեք մասի.

1. Առաջ նետելով նման քննարկումներ, կառավարութիւնը հասարակութեան ուշադրութիւնը կը շեղէ խորքային հարցերէ, որոնք կապուած են իշխանական ու օլիկարքական մենատիրութիւններուն եւ կողոպուտներուն, անդրազգային ընկերութիւններու գործած աւերումներուն եւ անոնց վարած գաղութացումի քաղաքականութեան, հանքարդիւնաբերութեան աղէտալի եւ կործանիչ արդիւնքներուն, ղարաբաղեան հարցի լուծումի ձախողութեան հետ, որոնցմէ ոչ մէկը հանրային *կազմակերպուած* քննարկումի առարկայ դարձած է (ղարաբաղեան հարցը միշտ քննարկումի առարկայ է՝ մէկ ուղղութեամբ, իսկ լուծումի *ձախողութիւնը*՝ երբեք), քննարկումներ՝ որոնք տեղի կ'ունենան կառավարութեան տրամադրած համացանցային ու լրատուական ընդարձակ տարածութիւններուն միջոցով: Ճիշդ այնպէս, ինչպէս վերջերս փողոցներու անուններու փոփոխութեան աննպատակ հարց մը բաւական զբաղցուց թէ՛ խորհրդարանը եւ թէ՛ լրատուամիջոցները:

2. Քանի որ հասարակութեան մէջ կը գտնուի կառավարութեան դէմ բաւական լուրջ դժգոհութիւն, որ, սակայն, կ'արտայայտուի բանաւոր կերպով, համացանցի միջոցով կամ այլընտրանքային սահմանափակ բայց ազդեցիկ տարածութիւններու շնորհիւ, ընտանեկան բռնութիւններու օրէնքի նախագիծի լայն քննարկումը կը միտի մատնանշել կարեւոր «յանցանք» մը՝ որուն պատասխանատուն ոչ թէ իշխանութիւններն են, այլ իշխանութիւնը քննադատող հասարակութիւնը: Հասարակութիւնը յանցաւոր է, եւ ան ալ բարձր չափանիշերով: Յանցաւոր է *իր* դժբախտութեան համար: Կարծէք իշխանութիւնները ըսել կ'ուզեն՝ *դուք* էք յանցաւորը եւ ոչ թէ *մենք*:

3. Ընտանիքի մասին պատումը բազմապատկելով՝ իշխանութիւնները կ'ուզեն առաջ տանիլ բջիջային ընտանիքի գաղափարը, անկախ անոր բռնատիրական կամ ոչ-բռնատիրական ըլլալէն: Անընդհատ կրկնութեան շնորհիւ «ընտանիք» բառն է որ կը վերարտադրուի, եւ անշուշտ, այդ ընտանիքը այսօրուայ ընտանիքն է՝ բջիջային ընտանիքը, որուն գոյութիւնը շատ կարեւոր է դրամատիրական-նէօլիպերալ համակարգին հնազանդօրէն հետեւող Հայաստանի վերնախաւին համար: Ֆրետերիք Էնկելսի կարեւոր աշխատութիւններէն մէկն է՝ *Ընտանիքի, մասնաւոր սեփականութեան եւ պետութեան ծագումը* (The Origin of the Family, Private Property and the State), որ պատմական անդրադարձ մըն է ընտանիքի մասին: Այս գիրքին մէջ արտայայտուած իմաստները, անոնց աւելցնելով ընդհանուր դասական մարքսիզմի գաղափարները ընտանիքի մասին, կարելի է յանգեցնել հետեւեալ կէտերուն.

ա. Տոհմական եւ գերդաստանական ընտանիքէ անցումը դէպի բջիջիային ընտանիքը տեղի ունեցաւ դրամատիրական շրջանին՝ ծառայելու համար մասնաւոր սեփականութեան շահերը, քանզի բջիջային ընտանիքը հիմնուած էր հասարակական սեփականութեան վրայ: Պուրժուա դասակարգը կը գործածէ ճշգրիտօրէն *իր* դրամը որպէսզի արտադրէ շահոյթ մը՝ որ կը պատկանի միայն *իրեն*: Մինչդեռ տոհմային-գերդաստանական ընտանիքի մը մէջ անկարելի է որոշել անձին, ընտանիքին եւ հասարակութեան ճշգրիտ սահմանները: Պուրժուա դասակարգը իր հարստութիւնը ժառանգ կը թողու ճշգրիտ մարդոց՝ կնոջ, զաւակներուն եւ այլն, որուն շնորհիւ հարուստ ընտանիք-դասակարգը կը շարունակէ մնալ հարուստ, աղքատը՝ աղքատ:

բ. Բջիջային ընտանիքը ունի վերահսկողութեան կատարեալ կառուցուածք: Կը գտնուի ծնողքը՝ որուն պէտք է անվերապահօրէն հնազանդի զաւակը: Ընդդիմանալու, վիճելու առիթ չկայ: Անիկա կ'արտադրէ հասարակութեան հնազանդ մարդը՝ որ պիտի ծառայէ դրամատէրերու շահերուն եւ արտադրէ անոնց շարունակութիւնը ապահովող յաւելեալ արժէքը (surplus value): Ինք պիտի արտադրէ արժէք մը՝ զոր պիտի իւրացնէ դրամատէրը: Մինչդեռ տոհմային գերդաստանի մը մէջ վերահսկողութեան խնդիր չկար, այլ կար ներքին կազմակերպուածութեան խնդիր:

գ. Սպառողականութեան բոյն մըն է բջիջային ընտանիքը: Օրինակ: Հայկական գաղութը կ'որոշէ Նոր Տարին «հաւաքականօրէն» անցընել հինգ-աստղանի պանդոկի մը մէջ: Ներկաները, բնականաբար, հայ ընտանիքներ են՝ որոնց ամբողջականութիւնը կը կոչուի «համայնք»: Համայնք, այսինքն՝ համակեցութիւն, համաբաշխում: Եւ ահաւասիկ այս հինգ-աստղանիին մէջ ընտանիքները պէտք է ցոյց տան իրենց պուրժուական ուժը՝ որ կը մարմնաւորուի դրամածախսութեան կամ սպառողականութեան մէջ, քանի որ իւրաքանչիւր ընտանիքի աչքը միւս ընտանիքի վրայ կը սեւեռի: Այդ «ուժ»-ը կը մարմնաւորուի հագուստի, կօշիկի, կիներու վարսայարդարումի, գոհարեղէններու վրայ: Ապա, ճաշկերոյթի ընթացքին պատուիրուած յաւելեալ ուտեստեղէնի, անուշեղէնի եւ մանաւանդ ոգելից ըմպելիներու քանակի ու տեսակի վրայ: Այս բոլորը եթէ ամօթ մը վար ըլլայ, պարզապէս խայտառակութիւն մը կ'ըլլայ ընտանիքի վարկին համար: Ամօթ է: Ասիկա տարածեցէք ընտանիքի մը ամէնօրեայ գործողութիւններուն վրայ՝ դրացի, ակումբ, հասարակութիւն, աշխատավայր, եւ այլն: Այլեւ, միայն բջիջային ընտանիքի սեղմ սահմաններուն մէջ է որ կարելի է առաւելագոյն կերպով ազդեցիկ դարձնել հեռատեսիլի եւ լրատուամիջոցներուն ծանուցումները եւ զանոնք վերածել անդամներուն ներքնականացուած պահանջներու:

Արդ, «ընտանիք» հասկացողութիւնը վառ պահելը կը հանդիսանայ իշխանութիւններուն պարտականութիւններէն մէկը: Այնտեղ բռնութիւն կայ թէ ոչ՝ երկրորդական հարց է: Բայց այս երկրորդականին միջոցով է որ մուտք կը գործուի դէպի առաջինն ու գլխաւորը՝ «ընտանիք»-ը:

(Շար. 1)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

1. *Իրաւական ակտերի նախագծերի հրապարակման միասնական կայք*, «Ընտանեկան բռնութեան կանխարգելման եւ ընտանեկան բռնութեան ենթարկուած անձանց պաշտպանութեան մասին եւ յարակից օրէնքների նախագծեր», https://www.e-draft.am/projects/427/justification:

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## Հ.Բ.Ը.ՄԻՈՒԹԻՒՆ - Գահիրէ

### ՀԲԸՄ ԳԱՀԻՐԷ ՍԱԹԵՆԻԿ Ճ. ՉԱԳԸՐ ՀԻՄՆԱԴՐԱՄ

**(Առողջապահական Հոգատարութեան Ծրագիր)**

Գահիրէի ՀԲԸՄ-ի վարչութիւնը կը տեղեկացնէ Աղեքսանդրիոյ եւ Գահիրէի հայութեան, թէ Միութեանս «Սաթենիկ Ճ. Չագըր» Հիմնադրամի Առողջապահական Հոգատարութեան Ծրագիրին 2018 տարեշրջանի անդամագրուիլ փափաքողները պարտին իրենց դիմումնագրերը ներկայացնել յատուկ հարցաթերթիկներու վրայ 1 Նոյեմբեր 2017էն մինչեւ 9 Դեկտեմբեր 2017.

**ԳԱՀԻՐԷԻ մէջ**

1. 26, Մուրատ Բէկ փողոց – Հելիոպոլիս Հեռ. 22916444 - 24151127, առաւօտեան ժամը 10-էն յ.մ. 3, բացի Կիրակի եւ արձակուրդի օրերէն:
2. 179, Ռամսէս փողոց, Ազգային Առաջնորդարան - Հեռ. 25901385 - 25904219, Ուրբաթ օրերը առաւօտեան ժամը 10-էն յ.մ. ժամը 2

**ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ՍԱՄՆԱԿԻՑՆԵՐԸ՝**

Դիմել Գահիրէի ՀԲԸՄ-ի վարչութեան գրասենեակը - Հեռ. 22916444 - 24151127

Առաւօտեան ժամը 10-էն յ.մ. 3, բացի Կիրակի եւ արձակուրդի օրերէն:

**ԾԱՆՕԹ.-**

Ա) Նոր դիմումնագրերուն համար կը խնդրուի ներկայացնել ինքնութեան թուղթին պատճէնը, 2 նկար եւ հայ համայնքին պատկանելու փաստաթուղթ:

Բ) Նորոգութեան համար դիմողներէն կը խնդրուի ներկայացնել 1 նկար եւ 2017-ի ծրագիրին մասնակցութեան քարտին պատճէնը եւ վճարել Ե. Ո. 180 մասնակցութեան սակը:

ՀԲԸՄ-ը ինքզինքին կը վերապահէ բոլոր կարգի դիմումներուն ընդունումը կամ մերժումը:

ԳԱՀԻՐԷԻ ՀԲԸՄ-Ի ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## 1 ԸՆՏԱՆԻՔԻՑ ԿԱՌՉԱԾ ԻՆՔՆԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ. ԲԱՑՈՒԱԾ ՀԱՐՑԵՐ

էլիտայի կողմից, որն այդ օրը դահլիճ էր տրամադրել ինձ ու տաբիքով այդ տղամարդուն: Ուրեմն մի՞թէ օրէնքի նախագծի քննարկումն իբրեւ չօու պիտակաւորող, դրանում զուտ ֆինանսական ակնկալիք տեսնող պահպանողականների քննադատութիւնը չի արտայայտում նաեւ մեր կասկածները, թէ կառավարութիւնը ընտանեկան բռնութեան դէմ պայքարի գաղափարական առաջամարտիկ է:

Ներկաներից մէկ ուրիշ կին պնդում էր, որ հետազօտել է օրէնքի պատմութիւններն արեւմուտքում (վստահաբար ռուսալեզու աղբիւրներից) եւ պարզել, որ դա բերել է «պղծուածների» աճին, իսկ Հայաստանում դրանք չպէտք է տեղ ունենան: Իմ հարցին, թէ ո՞վ՝ արդեօ՞ք ինքն է որոշում մարդկանց պղծուածութիւնը, նա պատասխանեց՝ «Ո՛չ, Աստուած»: Խոստովանում եմ՝ այս կնոջ դէմքի վստահ արտայայտութիւնը կասեցրեց իմ հարցը, թէ ո՞ւմ աստուածը եւ ինչպէ՞ս է որոշում: Այն, որ գիտական կոմունիզմ սերտած սերունդը կարող է այսքան անկասկածօրէն մարդկանց պիղծ դատել, նրանցից ազատուելու կոչեր անել՝ յենուելով աստծոյ եւ բարոյականութեան իր պատկերացման վրայ, ինձ թեւաթափ արեց: Գուցէ նաեւ այն պատճառով, որ կ'ուզէի այդպիսի հաւատաւոր գաղափարականութեամբ, բայց ոչ բնաւ այդպիսի գաղափարների հաւատացող մարդիկ աւելի շատ տեսնել Հայաստանի պետական հաստատութիւններում կամ Առաքելական եկեղեցում, այլ ոչ՝ կոնֆորմիստների, որ կարող են չընդունել կամ ընդունել օրէնքներ՝ ըստ իրենց բիւրոկրատական շահի եւ քաղտնտեսական վերնախաւի թելադրանքի:

Դաւադրական տեսութիւնների, աստծոյ, անպղծութեան, հայկական գենի, աւանդական ընտանիքի այսպիսի մտայնութիւններ հնչեցնող ձայներում մի՞թէ տեսանելի չեն մեր խորքային՝ առնուազն ոչ վաղ անցեալից եկած խնդիրները, խորհրդային անաւարտ մոդերնացման, ՀՀՇ-ականների ազգային անկախ պետութեան պարտուած իդէալի, Ղարաբաղի խնդրի եւ հարեւանների հետ յարաբերութիւնների կարգաւորման ձախողման եւ արտաքին աշխարհի հետ կասկածելի «կոմպլեմենտար» չփումների արձագանքները:

Ուրեմն արդարացուա՞ծ են գերխնդիրներով ծանրաբեռնուած Հայաստանի ինքնիշխանութեան այսպիսի որոնումները: Իմ պատասխանը սթափ է. եթէ Հայաստանի ինքնիշխանութեան միակ յենասիւնը անհաւասարութեամբ, բռնութեամբ ու թոյլերի տառապանքով լի «աւանդական» ընտանիքի պահպանման մէջ է, ապա ես կը ցանկանայի այն կորսուած տեսնել:

*Սոցիոսկոպ*

## 1 «ԵՍ ՇԱՏ ԼԱՒԱՏԵՍ ԵՄ»

Առկայ մթնոլորտին եւ իրադրութեան վերաբերեալ իր գնահատականը փոխանցելով՝ Տ. Գարեգին Արք. Պեքճեան յայտնեց, որ այս պահու դրութեամբ կան նուազագոյն երաշխիքները՝ որպէսզի ուշ կամ կանուխ մեր համայնքը ձեռնարկէ պատրիարքական ընտրութեան, հետեւաբար ինք տակաւին յարմար կը նկատէ սպասել: «Ես շատ լաւատես եմ», մեզի յայտնեց նորին սրբազնութիւնը:

Հեռախօսազրոյցի ընթացքին Տ. Գարեգին Արք. Պեքճեանի կարծիքը շօշափեցինք նաեւ իր վերադարձէն անմիջապէս վերջ Պատրիարքարանի մէջ տեղի ունեցած սրբազաններու ժողովին շուրջ: Ինչպէս ծանօթ է, նախընթաց օր (Երեքշաբթի) Գումգաբուի մէջ խորհրդակցութիւն մը տեղի ունեցած էր Պատրիարքական Աթոռի երեք սրբազաններուն մասնակցութեամբ: Տ. Գարեգին Արք. Պեքճեանի, Տ. Արամ Արք. Աթէշեանի եւ Տ. Սահակ Եպսկ. Մաշալեանի մասնակցութեամբ տեղի ունեցած այս տեսակցութիւնը լայն արձագանգ ստեղծած էր համայնքային շրջանակներէն ներս՝ թէեւ միայն տարածում գտնելով անպաշտօն լուրերու ձեւաչափին մէջ:

*Ժամանակ*
2 Նոյեմբեր 2017

## ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

### ԸՆՏՐԱԿԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Ընտրական իրաւունք ունեցող Աղեքսանդրիոյ եւ անոր պատկանող վայրերուն մէջ բնակող մեր ազգայիններուն ուշադրութեան կը յանձնենք հետեւեալ կէտերը.

Աղեքսանդրիոյ Պատկանելի Թեմական ամբողջական ընտրութիւնները տեղի պիտի ունենան Ուրբաթ, 24 Նոյեմբեր 2017-ին: Քուէարկութիւնը պիտի սկսի առաւօտեան ժամը 9:00-ին եւ վերջանայ կ.ե ժամը 5:00-ին:

Ընտրող ազգայինները իրենց քուէները կրնան տալ ընտրելու իրաւունք ունեցող եւ 30 տարին լրացուցած ազգայիններու միայն:

Պիտի ընտրուին միայն 24 անձեր, որոնց անունները եւ մականունները պէտք է գրուած ըլլան քուէաթուղթին վրայ ու անպայման ներփակուած Առաջնորդարանի կնիքը կրող փոքր պահարանի մէջ եւ գոցուած:

Ընտրութեան օրը ամէն ազգային պարտի ի ձեռին ունենալ իր ինքնութեան թուղթը («պըթաքա գաումիա» - ԲՆԱԳԻՐԸ), որպէսզի զայն ներկայացնելէ վերջ ստանայ իր թիւը եւ ընտրական քարտը, ապա քուէարկէ:

Ինքնութեան քարտի լուսատիպ պատճէններով ներկայացողները պիտի չկարենան մուտք գործել Առաջնորդարանի բակէն ներս, ուստի պիտի կորսնցնեն ընտրելու իրենց իրաւունքը:

Պահանջուած ընտրելիներուն թիւէն աւելի անուններ պարունակող քուէաթուղթէն կը ջնջուին աւելորդ անունները եւ պահանջուած թիւին առընչութեամբ վաւերական կը նկատուի քուէաթուղթը ըստ կարգի (Կազմ. կանոնագիր Յօդ. 17): Իսկ մէկէ աւելի լրացուած քուէաթուղթ պարունակող պահարանները ամբողջութեամբ նաեւ ստորագրուած քուէաթուղթերը չեղեալ կը համարուին եւ կը ջնջուին:

Ընտրութեան օրը, ընտրող ազգայինը, ընտրական տոմարին մէջ իր ստորագրութիւնը դնելէ վերջ պիտի մտնէ փոքրիկ առանձնասենեակը, ուր պիտի գտնէ կնքուած պահարան եւ պարապ քուէաթուղթ՝ ազատօրէն տալու համար իր քուէն:

ԴԻՒԱՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

## 2 ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԵԱՆ ՄԸ ԱՌԻԹՈՎ՝ *ՅԱԿԻՆԹԻ ՊԱՐՏԷԶԸ*

Ապակեդրոնացումը այնքան ալ հաճելի չէ դրամատիրական արդի մտածողութեան համար, որ կը պաշտէ կեդրոնացումներն ու գերկեդրոնացումները, կը քաջալերէ փոխատելութիւնները ազգագրական, կրօնական ու կուսակցական գերկեդրոնացումներու միջոցով, կը սիրէ խրաքանչիւր մտաւորական տեղաւորել դպրոցի մը մէջ՝ արդիապաշտ, յետարդիապաշտ, աւանդապաշտ, իրապաշտ, գերիրապաշտ, ֆորմալիսթ, նոր ֆորմալիսթ, տատախսթ եւ այլն, եւ անոր վերագրել գրական սեռերու յատուկ տարատեսակներ՝ հեքիաթագիր, պատմական վիպագիր, բարոյական վիպագիր, գիտա-ֆանթասթիք վիպագիր, ողբերգակ թատերագիր, կատակերգակ թատերագիր եւ այլն: Իսկ որքան մտաւորականը կարողանայ մնալ անփոփոխ շրջանակի մը մէջ, այնքան աւելի իր վարկը կը բարձրանայ իբրեւ «մասնագէտ»:

Մտաւորականը կեդրոնացնելով կանխորոշուած կէտերու մէջ, կը դիւրանայ գիտելիքի առուծախը դրամատիրական շուկային մէջ, կը բարձրանայ գիտելիքի գինը, կարելի կ'ըլլայ զայն վերածել ապրանքային դրութեան եւ յարմարցնել փոխանակային արժէքին: Այդպէս են հայկական սփիւռքները: Գիտելիքը կեդրոնացուած է քանի մը կէտի շուրջ. ազգայնականութիւն՝ անփոփոխ, միակ ու անվիճելի ինքնութեամբ, ցեղասպանութիւն՝ ՄԱԿ-ի հինգ (եւ ոչ վեց, տասը, հարիւր) կէտերով, ղարաբաղեան հակամարտութիւն՝ առանց համաշխարհային զինարշաւի շահերու քննարկութեան եւ այդ շահերուն դէմ մղուած պայքարով: Այս սահմանագիծերէն անդին չանցնող մտաւորականները կը ստանան մրցանակներ եւ կը դառնան ազգային հերոսներ: Որեւէ այլընտրանք հաւասար է դաւաճանութեան (հայերը շատ կը սիրեն այս բառը), որեւէ ներառում մշակութային աւանկարտիզմներու եւ արդիական ուղղութիւններու կ'ընդունուին ուժեղ հարուածներով կամ պարամենահեռաւոր քննադատութիւն այս կեդրոնացումներուն դէմ կը վերածուի հրաբուխային պայթիւններու:

Ապակերդոնացումը կրնայ երեւան բերել նաեւ ենթակայականութիւններ՝ դիրքային համոզումով: Օրինակ, կրնայ յառաջացնել դիմադրական համակեցութիւն: Արդե՞օք Ճոն Օսպորն դիմադրութիւն մը չէ թատերական ընդունուած սովորութիւններուն դէմ, Ամալ Տոնքոլ՝ լիպերալ քաղաքականութեան դէմ, Կիւլիվէր՝ համամարդկային մոլութիւններու դէմ, Վահան Թէքէեան՝ սփիւռքի տիրականութիւններուն դէմ, Գազանճեանի ինքնագիր կատակերգութիւնները՝ հայկական բարքերու ու նշանաբաններու դէմ, իսկ իր բանաստեղծութիւնները՝ ինքնութեան ամրագրումներու դէմ: Դիմադրութիւն Սփիւռքի՞ մէջ: Անկարելիութիւն մը կամ վտանգաւոր կարելիութիւն մը:

(Շար. 2/7)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

12. Մարօ Սագայեան, «Հարցազրոյց դոկտ. Վարուժան Գազանճեանի հետ», *Արեւ*, 14 Մարտ 1991, 75-րդ տարի, թիւ 21721, էջ 3:

13. Աւետիս Եափուճեան, «Փոթորիկ... Թէքէեան Սրահին մէջ», *Արեւ*, 4 Մայիս 1987, 71-րդ տարի, թիւ 20600, էջ 1: Արաքսի Տէօվլէթեան, «Սփիւռքի մէջ հայկական արուեստ կարելի՞ է մշակել», *Արեւ*, 8 Յունիս 1987, 72-րդ տարի, թիւ 20627, էջ 2:

14. *Արեւ*, 2 Ապրիլ 1988, 72-րդ տարի, թիւ 20870, էջ 4:

15. *Արեւ*, 21 Փետրուար 1989, 73-րդ տարի, թիւ 21122, էջ 4:

16. *Արեւ*, 24 Մարտ 1989, 73-րդ տարի, թիւ 21148, էջ 4: Աւետիս Եափուճեան, «Քննարկում Սփիւռքի բանաստեղծութեան», *Արեւ*, 7 Ապրիլ 1989, 73-րդ տարի, թիւ 21159, էջ 1:

17. *Արեւ*, 24 Ապրիլ 1989, 73-րդ տարի, թիւ 21173, էջ 4: Աւետիս Եափուճեան, «Վարուժան Գազանճեան կը քննարկէ սփիւռքահայ բանաստեղծութիւնը», *Արեւ*, 27 Ապրիլ 1989, 73-րդ տարի, թիւ 21175, էջ 1:

18. *Արեւ*, 27 Ապրիլ 1989, 73-րդ տարի, թիւ 21175, էջ 4:

19. *Արեւ*, 24 Մայիս 1989, 74-րդ տարի, թիւ 21193, էջ 4:

20. *Արեւ*, 8 Յունուար 1990, 74-րդ տարի, թիւ 21376, էջ 4:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1803 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 30 ՆՈՅԵՄԲԵՐ 2017 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٨٠٣ الخميس ٣٠ نوفمبر ٢٠١٧


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ

## ՆՈՅԵՄԲԵՐ 29

Նոյեմբեր 7-ը (հին տոմարով՝ Հոկտեմբեր 25) Ռուսաստանի Հոկտեմբերեան Յեղափոխութեան 100-ամեակն էր: Թուական մը՝ որ պիտի փոխէր ամբողջ աշխարհի դիմագիծը: Լաւ թէ վատ՝ պիտի փոխէր, եւ պիտի փոխէր էապէս:

Պաշտօնական Մոսկուան տօնեց 100-ամեակը՝ առանց տօնած ըլլալու տպաւորութիւն յառաջացնելու: Կարմիր Հրապարակը հիւրընկալեց զօրահանդէս մը՝ Երկրորդ Համաշխարհային Պատերազմի յաղթանակի տօնակատարութեան նմանողութեամբ: Ան չցուցադրուեցաւ պետական հեռատեսիլէն: Իսկ Փութինի համար Նոյեմբեր 7-ը սովորական աշխատանքային օր մը եղաւ Քրեմլինի մէջ: Պէտք է մատնանշել, որ Մոսկուան ամէն տարի միեւնոյն ձեւով կը նշէ Նոյեմբեր 7-ը: 100-ամեակը պարզապէս նման էր ամէնամեայ տօնակատարութիւններուն:

Միւս կողմէն՝ ոչ-պաշտօնական Մոսկուան տօնեց 100-ամեակը, օգտագործելով բոլոր հնարաւոր միջոցները: Այստեղ պատկերը բոլորովին տարբեր էր պաշտօնական Մոսկուայէն: Ռուս համայնավարները եւ աշխարհի 88 երկիրներէ ժամանած ձախակողմեայ աքթիւիսթները չքերթեցին Մոսկուայի կեդրոնը՝ տօնելու 100-ամեակը: Հազարաւոր աքթիւիսթներ անցան Թվերսքայա փողոցէն եւ ուղղուեցան դէպի Քրեմլին, բայց փոխանակ մտնելու Կարմիր Հրապարակ, շեղուեցան դէպի Յեղափոխութեան Հրապարակ եւ կանգ առին Մարքսի արձանին առջեւ: Մոսկուան տակաւին Մարքսի մէկ արձան մը կը պահէ մայրաքաղաքին մէջ:

Ի՞նչ բերաւ Հայաստանին 1917 Նոյեմբեր 7-ը: Յիշելու համար միայն կմախքային ուրուագիծ մը, ռուսական յեղափոխութիւնը Հայաստանին բերաւ անդրկովկասեան անհամերաշխ կուսակցութիւններէ բաղկացած ղեկավար մարմիններ՝ Անդրկովկասեան Կոմիսարիատը (Նոյեմբեր 1917 – Փետրուար 1918) եւ Անդրկովկասեան Սէյմը (Փետրուար 1918 – Մայիս 1918), 1918 Մայիսի Թրքական գրաւումը Կարս, Էրզրում եւ Ալեքսանդրապոլ քաղաքներուն, Սարդարապատի հերոսամարտի ժողովրդային անգնահատելի վերելքը՝ որ դիմագրաւեց Հայաստանի ամբողջական անկումը, Սէյմի քայքայումը, Հայաստանի Առաջին Հանրապետութեան հռչակումը Մայիս 28-ին, Մուտրոսի զինադադարը 1918 Հոկտեմբերին եւ անկէ բխած Կարսի վերամիացումը Հայաստանին, Կարսի վերջնական անկումը 1920 Հոկտեմբեր 30-ին, Հայաստանի խորհրդայնացումը Նոյեմբեր 29-ին:

Նոյեմբեր 29-ի 97-ամեակն էր երէկ: Թուական մը՝ որ պիտի փոխէր ամբողջ Հայաստանի դիմագիծը: Լաւ թէ վատ՝ պիտի փոխէր, եւ պիտի փոխէր էապէս:

Խորհրդային Միութեան անկումէն ետք, Մոսկուան ամէն տարի ձեւով մը պիտի շարունակէր յիշել Նոյեմբեր 7-ը: Մենք՝ հայերս, 1991-էն ի վեր կատարեալ մոռացութեան պիտի մատնէինք Նոյեմբեր 29-ը: Կ'ակնկալուէր, որ սփիւռքի մէջ մեծ խօսքերով ամէն տարի Նոյեմբեր 29-ը տօնողները շարունակէին գայն նշել՝ հանելէ ետք աւելորդ հին մեծախօսութիւնները, առ նուազն իրենք իրենց հետ համերաշխ ըլլալու մտահոգութենէն մղուած:

Պատմութիւնը դարձած է սեփականութիւններ: Սեփականատէրերը վերակառուցած են պատմութիւնները՝ *իրենց* պատմութիւնները: Այսօր Նոյեմբեր 29-ը մնացած է առանց սեփականատիրոջ:

Կարեւոր շատ թուականներ եւս մնացած են ամուրի: Արարայի ճակատամարտը, օրինակ, սեփականատէր չունի այսօր: Ժամանակին ունեցած է՝ երբ տակաւին ողջ էին հայ լեգէոնականները: Այսօր անոնք մեռած են, հետեւաբար, այդ բացառիկ յաղթանակը պարզապէս չի յիշատակուիր:

Ե՞րբ պիտի գայ այն օրը՝ երբ Մայիս 28-ը, Նոյեմբեր 29-ը եւ Սեպտեմբեր 21-ը պիտի տօնուին առանց խտրականութեան, առանց նախասիրութեան, առանց նախապաշարումի, առանց կողմնակցութեան: Երեքն ալ *հայկական* թուականներ են:

Ե՞րբ պիտի գայ այն օրը՝ երբ պատմաբանները պիտի գրեն առա՛նց կիրքի եւ առանց այս կամ այն կողմի ճչացող կողմնակցութեան:

Ե՞րբ պիտի գայ այն օրը՝ երբ պատմաբանները պիտի որոշեն չենթարկուիլ իշխանական պատուէրներուն եւ ըլլալ ազատագրուած մտաւորականներ:

ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

### ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Այսու կը տեղեկացնենք, թէ Ուրբաթ 24 Նոյեմբեր 2017-ին տեղի ունեցան Աղեքսանդրիոյ Պատկառելի Թեմական ժողովի ամբողջական ընտրութիւնները:

168 ընտրողներէն սոյն ընտրութեան մասնակցած են 89 հոգի, որոնց կողմէ տրուած քուէները բաշխուած են ըստ հետեւեալի.

| | | | | |
|---|---|---|---|---|
| Ալեքսանեան | Աստղիկ | Վահան | 82 | ձայն |
| Ալեքսանեան | Տիգրան | Վահան | 77 | ձայն |
| Արթինեան | Թանիա | Յարութիւն | 88 | ձայն |
| Գալայճեան | Այց | Արամ | 88 | ձայն |
| Գավուքճեան | Արմէն | Հրանդ | 82 | ձայն |
| Գավուքճեան | Գէորգ | Հրանդ | 69 | ձայն |
| Դանիէլեան | Դանիէլ | Հրանդ | 87 | ձայն |
| Խանճեան | Մկրտիչ | Կարապետ | 85 | ձայն |
| Թօսունեան | Արթին | Վահրամ | 85 | ձայն |
| Թօսունեան | Քրիսթեան-Կարապետ էլի-Բենեամին | | 84 | ձայն |
| Ճռճռեան | Կարպիս | Արթին | 85 | ձայն |
| Ճէպէճեան | Պերճ | Օհաննէս | 87 | ձայն |
| Թիւթիւնճեան | Յակոբ | Սերոբ | 89 | ձայն |
| Լէյլէկեան | Զաւէն | Նուպար | 87 | ձայն |
| Լէյլէկեան | Ժորժ | Լեւոն | 89 | ձայն |
| Խանցեան | Արթին | Կարապետ | 80 | ձայն |
| Խանցեան | Կարօ | Արթին | 84 | ձայն |
| Կանիմեան | Կարէն | Աւետիս | 87 | ձայն |
| Կասեան | Ժորժ | Մարտիկ | 78 | ձայն |
| Մարտիկեան | Հրայր | Ներսէս | 85 | ձայն |
| Նախըշքէրեան | Ռաֆֆի | Զոհրապ | 88 | ձայն |
| Պալաեան | Մայտա | Զաւէն | 89 | ձայն |
| Պէնօհանեան | Վահէ | Նորայր | 89 | ձայն |
| Պոհճալեան | Կարի | Պօղոս | 75 | ձայն |

Նաեւ 5-էն աւելի ձայն ստացած են.

| | | | | |
|---|---|---|---|---|
| Գալայճեան | Արամ | Սամուէլ | 13 | ձայն |
| Իսրայէլեան | Ռաֆֆի | Ստեփան | 7 | ձայն |

Ասկէ զատ 2 հոգի ստացած են 5-ական ձայն, 1 հոգի ստացած է 4 ձայն, 1 հոգի ստացած է 3 ձայն, 15 հոգի ստացած են 2-ական ձայն եւ 5 հոգի ստացած են 1-ական ձայն:

ԸՆՏՐԱԿԱՆ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲ ԴԻՒԱՆ
ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

* * *

*Ճահակիր*ի խմբագրութիւնը կը շնորհաւորէ Աղեքսանդրիոյ Թեմական Ժողովի նորընտիր անդամները եւ անոնց կը մաղթէ յաջող գործունէութիւն:

Կը փափաքինք նշել՝ թէ 24 անդամներէն 9-ը Թեմական մուտք կը գործեն առաջին անգամ: Անոնք, վստահ ենք, թարմ շունչ պիտի բերեն աղեքսանդրահայ գաղութէն ներս եւ իրենց նոր փորձառութիւնը պիտի ներդնեն ի նպաստ գաղութի աշխուժացումին:

Կ'ուզենք շեշտել, որ այս 9 նոր անդամներէն 3-ը իգական սեռի ներկայացուցիչներ են: Եգիպտահայ գաղութի պատմութեան մէջ առաջին անգամն է, որ Թեմականի անդամ կ'ընտրուի իգական սեռը, որով պատմական կարեւոր քայլ մը կատարուած կ'ըլլայ գաղութիս մէջ:

## ՐԱՖՖԻ ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆԸ ԲՐԻՒՍԷԼՈՒՄ ՀԱՆԴԷՍ Է ԵԿԵԼ ԵԼՈՅԹՈՎ

Նոյեմբեր 23-ին Բելգիայի մայրաքաղաք Բրիւսէլում տեղի ունեցաւ Եւրոպայի Ժողովրդական Կուսակցութեան (ԵԺԿ) Արեւելեան գործընկերութեան անդամ երկրների կուսակցութիւնների առաջնորդների 6-րդ գագաթնաժողովը, որին Հայաստանից մասնակցում էին Ժառանգութիւն Կուսակցութեան առաջնորդ Րաֆֆի Յովհաննիսեանը եւ Հայաստանի Հանրապետական Կուսակցութեան նախագահ Սերժ Սարգսեանը:

Հանդիպմանը ելոյթով հանդէս եկաւ Րաֆֆի Յովհաննիսեանը՝ անդրադառնալով Հայաստանի ժողովրդավարական վիճակին, Հայաստան-ԵՄ յարաբերութիւններին, ապագայում Հայաստանին սպասուող տարածաշրջանային մարտահրաւէրներին, ինչպէս նաեւ արցախեան հիմնախնդրին:

ԺԱՌԱՆԳՈՒԹԻՒՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ
ԼՐԱՏՈՒԱԿԱՆ ԾԱՌԱՅՈՒԹԻՒՆ

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՏԱՐԵՍԿԶԲԻՆ ՋՈՒՐԸ ԿԸ ԹԱՆԿԱՆԱՅ

Խմելու ջրի մատակարարման եւ ջրահեռացման ծառայութիւնների մատուցման սակագինը թանկացել է 11.4 դրամով, որոշումը կայացուել է հանրային ծառայութիւնները կարգաւորող յանձնաժողովի Նոյեմբեր 22-ի նիստում:

Ջրահեռացման ծառայութիւնների մատուցման ընդհանուր սակագին սահմանուել է 194.3 դրամ՝ գործող 180 դրամի փոխարէն:

«Հայաստանի հանրային ծառայութիւնները կարգաւորող յանձնաժողովի՝ Նոյեմբերի 22-ին կայացած նիստում քննարկուել է Վէոլիա Ջուր փակ բաժնետիրական ընկերութեան կողմից սպառողներին խմելու ջրի մատակարարման եւ ջրահեռացման (կեղտաջրերի մաքրման) ծառայութիւնների մատուցման սակագների վերանայման մասին հարցը: Քննարկելով վերը նշուած հարցը՝ յանձնաժողովը որոշել է խմելու ջրի մատակարարման եւ ջրահեռացման (կեղտաջրերի մաքրման) մանրածախ ծառայութիւնների մատուցման գումարային սակագինը սահմանել 191,414 դրամ/խմ (ներառեալ աւելացուած արժէքի հարկը):

Ընդունուած որոշումն ուժի մէջ կը մտնի 2018 Թուականի Յունուարի 1-ից», - ասւում է հաղորդագրութիւնում:

*ՍԻՎԻԼՆԷԹ*

## ԿԱՐԱԳԻ, ԿԱՆԹՆԱՄԹԵՐՔԻ ԳՆԱՃԻՆ ՅԱՋՈՐԴԵԼ Է ՋՈՒԻ ԳՆԻ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ.

*ԺՈՂՈՎՈՒՐԴ*

*Ժողովուրդ* օրաթերթը գրում է. «Հայաստանում առաջին անհրաժեշտութեան սննդատեսակները օր օրի թանկանում են: Կարագի, կաթնամթերքի գնաճին յաջորդել է ձուի գնի բարձրացումը: Հայաստանի ազգային վիճակագրական ծառայութեան տուեալներով՝ այս Հոկտեմբերին, Սեպտեմբերի համեմատ, ձուի շուկայում արձանագրուել է գնաճ: Հայաստանի Ազգային Վիճակագրական Ծառայութեան տուեալներով՝ ձուն թանկացել է 3.1 տոկոսով: Ի դէպ, տեղեկացնենք, որ ձուն աւելի

➪ 4

# ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԵԱՆ ՄԸ ԱՌԻԹՈՎ՝ *ՅԱԿԻՆԹԻ ՊԱՐՏԷԶԸ* ՅԵՂԻՆԱԿ՝ ՎԱՐԱՆ ՈՅԺ

Յ. ԱՒԱԳԵԱՆ

**ՀԱՅԵՐԷՆ BLOG**

2016 Ապրիլին կը հիմնուի համացանցային պլոկ մը՝ *Հայերէն blog*(21), ուր իրենց անտիպ գրական գործերը կը սկսին տեղադրել ժամանակակից հայ արձակագիրները, բանաստեղծները եւ թատերագիրները:

Վարուժան Գազանճեան՝ տարբեր ստորագրութիւններով, այնտեղ կը տեղադրէ, եւ մինչեւ այսօր կը շարունակէ տեղադրել, իր գրական ստեղծագործութիւնները:

Գաղափար մը տուած ըլլալու համար անոնց տարողութեան մասին, ստորեւ կը ներկայացնեմ ամբողջական ցուցակը: Ցուցակը կազմուած է իմ կողմէս: Պլոկին հետ կապուած որոնումի (search) որոշ անյարմարութիւններու պատճառով, յոյսով եմ ցուցակը զերծ ըլլայ կարեւոր բացթողումներէ: Վերջին մուտքագրումը կատարած եմ 2017 Նոյեմբեր 13-ին. այս թուականէն ետք տեղադրուած գործերը չկան ցուցակին մէջ: Ցուցակին մէջ նշած եմ գրութեան թուականը՝ եթէ կայ (Գ), թարգմանութեան թուականը՝ եթէ կայ (Թ), եւ կայքի մէջ տեղադրութեան թուականը (Տ):

**Ա. Թատերգութիւններ, ստորագրութիւն՝ Վա(գ)ր**

1. *Կէս առ հարիւր բարբարոսներ կամ երկքաղաքացիները*, Կատակախաղ: Գ՝ Սեպտեմբեր 2001, Տ՝ 8 Սեպտեմբեր 2017:
2. *Մեթրը կամ տիկնոջ ամուսինը*: Գ՝ 7 Հոկտեմբեր 2001, Տ՝ 3 Սեպտեմբեր 2017:
3. *Կղպուցեանի անցեալը եւ հայ ազգի ապագան. կամ՝ Հրաշքներու տարին (Ա.)*, Կատակախաղ՝ երկու արար: Գ՝ 23-30 Յուլիս 2004, Տ՝ 18 Սեպտեմբեր 2016:
4. *Կղպուցեանի անցեալը եւ հայ ազգի ապագան. կամ՝ Հրաշքներու տարին (Բ.)*, Կատակախաղ՝ երկու արար: Գ՝ 2-11 Օգոստոս 2004, Տ՝ 15 Նոյեմբեր 2016:
5. *Քիքիին մեղքը*, Կատակախաղ: Գ՝ 31 Յունուար 2005, Տ՝ 26 Նոյեմբեր 2016:
6. *Ծզզանեանին ճանկը*, Կատակախաղ: Գ՝ 2 Փետրուար 2005, Տ՝ 21 Դեկտեմբեր 2016:
7. *Ամուլ մամուլ (Ա.)*, Կատակախաղ: Գ՝ 2007, Տ՝ 6 Օգոստոս 2016:
8. *Ամուլ մամուլ (Բ.)*, Կատակախաղ: Գ՝ 2007, Տ՝ 25 Օգոստոս 2016:
9. *Ինչպէս առաջնորդ չեղայ, ինչպէս առաջնորդ չեղաւ կամ եղաւ չեղաւ՝ չեմ գիտեր*, Կրկնակի կատակախաղ: Գ՝ 2007, Տ՝ 15 Յունիս 2017:
10. *ՇՇ կամ ՇԸ'ՇՇՇՇՇ*, Կատակ: Գ՝ 26 Դեկտեմբեր 2007, Տ՝ 17 Նոյեմբեր 2016:
11. *Գոգ Մագոգ*, Խաղուկ: Գ՝ 3 Նոյեմբեր 2010, Տ՝ 28 Օգոստոս 2017:
12. *Գեղարուեստի գրգիռը կամ իջա՞ր վերջապէս*, Կատակախաղ՝ տասը տեսարան: Տ՝ 29 Յունիս 2016:
13. *Թէնթէն Եգիպտոսի մէջ*: Տ՝ 13 Յուլիս 2016:

**Բ. Թատերգութիւններ, ստորագրութիւն՝ Երօտ Վարգազ**

1. Պատուանշան մըն ալ քեզի եւ կամ մի չքանշան էլ քեզի, Կատախաղ՝ երկու արար: Տ՝ 22 Օգոստոս 2017:

**Գ. Բանաստեղծութիւններ, ստորագրութիւն՝ Ոյժ**

**ա. Զանազան**

1. *Աշխարհի նախկին ախոյեանը*: Գ՝ 16 Մարտ 1985, Տ՝ 6 Նոյեմբեր 2016:
2. *Զոյգ գրօսերգ Աղեքսանդրիա Գահիրէ*: Գ՝ 4-16 Յուլիս 1987, Տ՝ 28 Հոկտեմբեր 2016:
3. *Արկաւ քուեայն*: Գ՝ 1987-1988, Տ՝ 29 Մարտ 2017:
4. *Պղատոն Աղեքսանդրիանոս*: Գ՝ 25 Յուլիս 1990, Տ՝ 2 Սեպտեմբեր 2016:
5. *Հայր Թէոդորոս*: Գ՝ 31 Յուլիս 1990, Տ՝ 21 Սեպտեմբեր 2016:
6. *Գ. Գ.*: Գ՝ 5, 14, 29 Օգոստոս 1990, 25 Մայիս 1994, 13 Օգոստոս 1995, Տ՝ 30 Հոկտեմբեր 2016:
7. *Դ. Կ.*: Գ՝ 11 Սեպտեմբեր 1990, Տ՝ 22 Յունուար 2017:
8. *Լ. Թ.*: Գ՝ 18 Դեկտեմբեր 1990, Տ՝ 26 Հոկտեմբեր 2016:
9. *Երկու քերթուած*: Գ՝ 8 եւ 12 Փետրուար 1991, Տ՝ 8 Սեպտեմբեր 2016:
10. *Ա. Օ. – «Քիչ մը աւելի լաւ»*: Գ՝ 12 Փետրուար 1991, Տ՝ 4 Նոյեմբեր 2016:
11. *Ա. Ի.*: Գ՝ 8 Մարտ 1991, Տ՝ 5 Դեկտեմբեր 2016:
12. *Պ. Մ.*: Գ՝ 9 Ապրիլ 1991 եւ 17 Յունիս 1995, Տ՝ 21 Դեկտեմբեր 2016:
13. *Օգոստոս 25, 1991*: Գ՝ 30 Օգոստոս 1991, Տ՝ 30 Օգոստոս 2016:
14. *Պապը*: Գ՝ 7 Մարտ 1992, Տ՝ 24 Օգոստոս 2016:
15. *Տալի'թա, կումի*: Գ՝ 17 Օգոստոս 1992, Տ՝ 23 Սեպտեմբեր 2016:
16. *Ի. Հ.*: Գ՝ 1 Դեկտեմբեր 1992, 4 Դեկտեմբեր 1992, 3 Յուլիս 1994, 12 Նոյեմբեր 1995 եւ 13 Ապրիլ 1996, Տ՝ 27 Նոյեմբեր 2016:
17. *John Gielgud*: Գ՝ 9 Դեկտեմբեր 1992, Տ՝ 12 Սեպտեմբեր 2016:
18. *Տ. Տ.*: Գ՝ 23 Դեկտեմբեր 1992 եւ 10 Յունուար 1995, Տ՝ 15 Յունուար 2017:
19. *Բարիզ ու «Բարիզ»*: Գ՝ 1 Հոկտեմբեր 1993, Տ՝ 1 Փետրուար 2017:
20. *Պ. Շ.*: Գ՝ 3 Հոկտեմբեր 1993, 6 Հոկտեմբեր 1993 եւ 21 Դեկտեմբեր 1994, Տ՝ 13 Դեկտեմբեր 2016:
21. *Յափշտակումն ու յափշտակումէն ետք*: Գ՝ 23 Նոյեմբեր 1993, Տ՝ 15 Նոյեմբեր 2016:
22. *Սապահ*: Գ՝ 27 եւ 28 Մայիս 1994, Տ՝ 14 Սեպտեմբեր 2016:
23. *Պատրիարքը*: Գ՝ 17 Յունիս 1994, Տ՝ 15 Սեպտեմբեր 2016:
24. *Լ. Ի.*: Գ՝ 27 Յուլիս 1994, Տ՝ 9 Մարտ 2017:
25. *Լ. Զ.*: Գ՝ 31 Յուլիս 1994, Տ՝ 16 Մարտ 2017:
26. *Թ. Ա.*: Գ՝ 12 եւ 14 Օգոստոս 1994, Տ՝ 3 Դեկտեմբեր 2016:
27. *Ե. Թ.*: Գ՝ 8 Յունուար 1995, Տ՝ 18 Դեկտեմբեր 2016:
28. *Ե. Ղ. – Կարելիութիւնն ազնուականութեան*: Գ՝ 17 Յունուար 1995, Տ՝ 2 Մարտ 2017:
29. *Օմ Քալսում*: Գ՝ 14 Փետրուար 1995, Տ՝ 25 Սեպտեմբեր 2016:
30. *Օրինակը*: Գ՝ 25 Փետրուար 1995, Տ՝ 16 Հոկտեմբեր 2016:
31. *Լ. Պ. – Որդերը*: Գ՝ 14 Մարտ 1995, Տ՝ 6 Փետրուար 2017:
32. *Պուտտա*: Գ՝ 29 Ապրիլ 1995, Տ՝ 10 Սեպտեմբեր 2016:
33. *Բեմավախ*: Գ՝ 30 Ապրիլ 1995, Տ՝ 26 Սեպտեմբեր 2016:
34. *Իգական ամօթին սկրթման պատիճը*: Գ՝ 25 Յունիս 1995, Տ՝ 12 Նոյեմբեր 2016:
35. *Ս. Ս. – Անխոհեմ արարք*: Գ՝ 17 Հոկտեմբեր 1995, Տ՝ 22 Փետրուար 2017:
36. *Շ. Գ.*: Գ՝ 12 Օգոստոս 1995 եւ 19 Յունուար 1996, Տ՝ 16 Փետրուար 2017:
37. *Մահարիչն (երեք հնչեակ)*: Գ՝ 29 Դեկտեմբեր 1995, 5 Յունուար 1996, 7 Սեպտեմբեր 1996, Տ՝ 29 Սեպտեմբեր 2016
38. *Քավաֆիի մէկ աղուոր տղամարդն*: Գ՝ 28 Յունուար 1996, Տ՝ 30 Օգոստոս 2016:
39. *Ապտէլ Ուահապ եւ Քավաֆի*: Գ՝ 29 Յունիս 2013, Տ՝ 27 Օգոստոս 2016:
40. *Նակիպ Մահֆուզ*: Գ՝ 9 Յուլիս 2013, Տ՝ 28 Սեպտեմբեր 2016:
41. *Ճանճերը*: Գ՝ 30 Սեպտեմբեր 2013, Տ՝ 20 Հոկտեմբեր 2016:
42. *Արսէն Երկաթ եւ Քավաֆի*: Գ՝ 31 Օգոստոս 2016, Տ՝ 1 Սեպտեմբեր 2016:
43. *Վ-Ա. Ա.*: Գ՝ 28 Դեկտեմբեր 2016, Տ՝ 2 Յունուար 2017:
44. *Լիզա', Լիզա'*: Տ՝ 26 Օգոստոս 2016:
45. *Սրբազանը եւ երգիծաբանը. Յամի Տեառն ՌՋՁԵ*: Տ՝ 5 Սեպտեմբեր 2016:
46. *Նարկիսին. Ռոպըրթ Հերրիքի նմանողութեամբ*: Տ՝ 1 Նոյեմբեր 2016:
47. *Ակոնդիոս եւ Կիդիպպէ (Կալիմաքոսի պատառիկներէն՝ նմանողութեամբ)*: Տ՝ 14 Հոկտեմբեր 2017:

**բ. Արուեստ քերթութեան**

48. *Արուեստ քերթութեան 1. Գաղափար ու առընչութիւններ*: Գ՝ 6 Սեպտեմբեր 1992, Տ՝ 6 Ապրիլ 2017:
49. *Արուեստ քերթութեան 2. Բեկորը*: Գ՝ 26 Մայիս 1995, Տ՝ 10 Ապրիլ 2017:
50. *Արուեստ քերթութեան 3. Թափածոյ թռչունը*: Գ՝ 8 Մարտ 1992, Տ՝ 12 Ապրիլ 2017:
51. *Արուեստ քերթութեան 4. Զգացումի մասին*: Գ՝ 20 Նոյեմբեր 1992, Տ՝ 15 Ապրիլ 2017:
52. *Արուեստ քերթութեան 5. Խամաճիկը*: Գ՝ թուական չկայ, Տ՝ 16 Ապրիլ 2017:
53. *Արուեստ քերթութեան 6. Հեղինակութիւն*: Գ՝ 29 Յունիս 1993, Տ՝ 18 Ապրիլ 2017:
54. *Արուեստ քերթութեան 7. Զուտ ժամանակ*: Գ՝ 31 Հոկտեմբեր 1993, Տ՝ 20 Ապրիլ 2017:
55. *Արուեստ քերթութեան 8. Անխորագիր*: Գ՝ 2 Յունիս 1993, Տ՝ 22 Ապրիլ 2017:
56. *Արուեստ քերթութեան 9. Արուեստագէտը*: Գ՝ 24 Ապրիլ 1991, Տ՝ 23 Ապրիլ 2017:
57. *Արուեստ քերթութեան 10. Ներշնչում*: Գ՝ 27 Օգոստոս 1991, Տ՝ 26 Ապրիլ 2017:
58. *Արուեստ քերթութեան 11. Փշաթելերը*: Գ՝ 26 Ապրիլ 1991, Տ՝ 28 Ապրիլ 2017:
59. *Արուեստ քերթութեան 12. Ճերմակ թուղթին դիմաց*: Գ՝ 28 Դեկտեմբեր 1991, Տ՝ 2 Մայիս 2017:
60. *Արուեստ քերթութեան 13. Բանաստեղծութիւնը, ինչպէս սորվեցուցած են միշտ*: Գ՝ 21 Դեկտեմբեր 1993, Տ՝ 5 Մայիս 2017:
61. *Արուեստ քերթութեան 14. Խաղաղ*: Գ՝ 1 Յունիս 1993, Տ՝ 7 Մայիս 2017:
62. *Արուեստ քերթութեան 15. Հարցում*: Գ՝ 14-15 Ապրիլ 1992, Տ՝ 10 Մայիս 2017:
63. *Արուեստ քերթութեան 16. Ունի'մ կերպը, ո՞վ պիտի արդինքը դատէ*: Գ՝ 5 Յուլիս 1994, Տ՝ 14 Մայիս 2017:
64. *Արուեստ քերթութեան 17. Հայելին*: Գ՝ 4 Ապրիլ 1992, Տ՝ 15 Մայիս 2017:
65. *Արուեստ քերթութեան 18. Փոփոխութիւն*: Գ՝ 18 Դեկտեմբեր 1992, Տ՝ 18 Մայիս 2017:
66. *Արուեստ քերթութեան 19. 9.40 – 10.5*: Գ՝ 30 Դեկտեմբեր 1991, Տ՝ 19 Մայիս 2017:
67. *Արուեստ քերթութեան 20. Ստեղծման վարկած*: Գ՝ 30 Մարտ 1993, Տ՝ 20 Մայիս 2017:
68. *Արուեստ քերթութեան 21. Տարբերութիւն եւ նմանութիւնը*: Գ՝ 11, 13 Դեկտեմբեր 1993, Տ՝ 22 Մայիս 2017:
69. *Արուեստ քերթութեան 22. Ճանաչում վիճակի*: Գ՝ 1 Մայիս 1991, Տ՝ 29 Մայիս 2017:
70. *Արուեստ քերթութեան 23. Էգ*: Գ՝ 25, 28 Մարտ 1992, Տ՝ 30 Մայիս 2017:
71. *Արուեստ քերթութեան 24. Թուականները*: Գ՝ 26

↳ 6

ԳԱՅԻՐԷ

## ԳԷՈՐԳ ԵԱԶԸՃԵԱՆԻ ԵՐԿՈՒ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԳԱՅԻՐԷԻ ՄԷՋ

Հ.Բ.Ը.Մ.-ի յատուկ հրաւէրով Հայաստանէն Գահիրէ այցելեց լիբանանահայ պատմաբան եւ լրագրող տոքթ. Գէորգ Եազըճեան: Այս առիթով, Հ.Բ.Ը.Մ.-ի Զագըր Կեդրոնին մէջ ելոյթ ունեցաւ երկու դասախօսութիւններով, Նոյեմբեր 15-ին՝ *Գարեգին Կաթողիկոս Յովսէփեանցը եւ եգիպտահայութիւնը*, եւ Նոյեմբեր 18-ին՝ *Կարսի անկումը 30 Հոկտեմբեր 1920-ին*:



Եազըճեանի հեղինակաւոր գիրքերն ու անթիւ յօդուածները՝ որոնք բոլորն ալ կը դրսեւորեն համարձակ կեցուածքներ եւ կը բովանդակեն «վտանգաւոր» հրապարակումներ, հաճելի չեն իշխանական խաւերուն: Վերնախաւը չի սիրեր ուրիշներու կողմէ կատարուած բացայայտումներ՝ «բացայայտում» կատարողները նոյն ինք վերնախաւն է, չի սիրեր նոյնիսկ հարցերու խնդրականացումներ՝ քանզի խնդրականացումը մեկնաբանութիւններուն ամենէն խորունկն է, ամենէն տարածունը եւ ամենէն աւելի բացայայտողը:

Եազըճեանի համար, անշուշտ, առարկայականացումները շատ կարեւոր են, այսինքն՝ էական նշանակութիւն ունին օգտագործուած փաստերը եւ անոնց վաւերականութիւնը: Բայց փաստերը մեղկ են առանց իմաստներու, առանց տարածութիւններու, առանց ենթակայականացումներու: Անոնք անիմաստ են առանց խնդրականացումներու:

Այս առումով, Գարեգին Կաթողիկոս Յովսէփեանցի նուիրուած դասախօսութեան ենթաբնագրային խնդրական հիմնահարցը եկեղեցական դասակարգի համեստութեան, նուիրածութեան, պարկեշտութեան, աղքատութեան, անձնազոհութեան եւ հասարակութեան հետ ունեցած հոգեկան ու գործնական կապուածութեան գաղափարն է: Այս յատկանիշները կը դրսեւորուէին Կաթողիկոսի գործունէութեան եւ մտածողութեան մէջ, յատկանիշներ, որոնք երբեմն կորսըուած են այսօր:

Կարսի անկումին նուիրուած դասախօսութիւնը, ինչպէս այս հարցին յատկացուցած իր իւրայատուկ ուսումնասիրութեան երկու հրատարակութիւնները, կը հետապնդէ ուրիշ խնդրական ենթիմաստ մը: Այն է, որ արժէքները պէտք է գնահատել ներսէն, եւ

↳ 5

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՈՒՍԱՆՈՂՈՒԹԻՒՆԸ ՇԱՐԺՈՒՄԻ ՄԷՋ

Հայաստանի Հասարակութեան ներքին չերտերը՝ որոնցմով սփիւռքը բացարձակապէս հետաքրքրուած չէ, յաճախ կը դրսեւորեն անսպասելի չարժունակութիւն եւ աչխուժութիւն: Այլեւ անոնք անընդհատ չարժումի մէջ են՝ մեծ մասամբ անտեսանելի, որ յաճախ կը բռնկի ու կը բացայայտուի նկատելի դրսեւորումներով: Օրինակները քիչ չեն՝ 2007-ին սկսած աքթիւիսթական չարժումները, 2008 Փետրուարի զանգուածային ցոյցերը՝ որոնք աւարտեցան Մարտ 1-ի ողբերգութեամբ, 2015-ի ելէկտրիկ Երեւանի ցոյցերը, 2016-ի Սասնայ Ծռերու գործողութեան չնորհիւ յառաջացած հասարակական եւ մտաւորական չարժումը եւ չատ ուրիչ պարագաներ: Եւ ահաւասիկ երկու չաբաթ առաջ կը չարժի ուսանողութիւնը՝ անտեսելով համալսարանէն վտարուելու վտանգը, քանզի ուսանողական համակարգին մէջ պետութեան հակաճառելը վտանգաւոր գործողութիւն մըն է:

Ի՞նչ էր չարժումին դրդապատճառը: Տարկէտումը սահմանափակող օրէնքի նախագիծն էր, որ չուտով դարձաւ օրէնք: Համաձայն զինապարտութեան գործող օրէնքին, տարկէտում կը տրամադրուի պաքալորիայի, մագիստրոսի եւ ասպիրանտի ուսանողներուն: Նոր օրէնքը կը սահմանափակէ այս իրաւունքը: Համաձայն նոր օրէնքին, տարկէտումէն կրնան օգտուիլ՝ առողջական եւ ընտանեկան պայմաններու պատճառով, պատգամաւոր ընտրուելու պարագային եւ կառավարութեան որոչումով: Տարկէտում կը տրամադրուի անոնց, որոնք Պաչտպանութեան Նախարարութեան հետ պայմանագիր կը կնքեն՝ մասնակցելու համար Պատիւ Ունեմ ծրագիրին, ըստ որուն երկրորդ դասարանէն սկսեալ ամէն չաբաթ օր պիտի մասնակցին ռազմական պատրաստութեան դասընթացքներու իսկ ուսումի աւարտէն ետք երեք տարի պիտի ծառայեն իբրեւ սպայ: Երկրորդ դասարանէն սկսեալ պետութիւնը պիտի վճարէ իրենց ուսումին վարձքը: Երեք տարին աւարտելէն ետք, իրենց հաչիւին պիտի փոխանցուի 5 միլիոն դրամ: Պատիւ Ունեմ ծրագիրը չստորագրելու պարագային, երիտասարդը 18 տարեկանին պիտի անցնի երկու տարուան զինծառայութեան:

Անչուչտ, հարցը պէտք է սկսիլ կառավարութենէն՝ որ ստեղծեց օրէնքը: Հայրենասիրութիւն քարոզող բազմաթիւ իչխանաւորներու զաւակներ չեն ծառայած բանակին: Եւ իրենց զաւակները բանակէ հեռացուցած իչխանաւորները նոր օրէնք կը ձեւակերպեն *ուրիչներու* զաւակներուն համար:

Հիմնուելով Պաչտպանութեան Նախարարութենէն ստացած պատասխան-նամակի մը վրայ, այս տարուայ Յունիսին *Factor.am* կը բացայայտէ Հայաստանի ներկայ եւ անցեալ բարձրաստիճան պաչտօնատարերու անունները՝ որոնց զաւակները զերծ մնացած են պարտադիր զինուորական ծառայութենէ: Չեն ծառայած հետեւեալ բարձրաստիճան պաչտօնեաններու որդիները՝ վարչապետ Կարէն Կարապետեան, Ազգային Ժողովի (ԱԺ) գեներալ պատգամաւոր Սէյրան Սարոյեան, Պետական Եկամուտների Կոմիտէի (ՊԵԿ) նախկին նախագահ Գագիկ Խաչատրեան, ԱԺ պատգամաւոր, Տաչիր Գրուպի սեփականատէր Սամուէլ Կարապետեանի եղբայր՝ Կարէն Կարապետեան, ԱԺ նախկին պատգամաւոր, Բարգաւաճ Հայաստան Կուսակցութեան (ԲՀԿ) խմբակցութեան անդամ Կարօ Կարապետեան, ԱԺ նախկին պատգամաւոր, նոյն խմբակցութեան անդամ Աբրահամ Մանուկեան, Երեւանի նախկին քաղաքապետ Երուանդ Զախարեան, ՊԵԿ նախկին ղեկավար, ֆինանսներու նախկին նախարար Գագիկ Խաչատրեան, Գիւմրիի նախկին ՀՀԿ-ական քաղաքապետ, այժմ Ծառուկեան դաչինքով պատգամաւոր դարձած Վարդան Ղուկասեան, Հայաստանի նախկին վարչապետ, այժմ ԱԺ պատգամաւոր Խոսրով Յարութիւնեան, ՄԱՊ Փակ Բաժնետիրական Ընկերութեան սեփականատէր, նախորդ գումարումի խորհրդարանի հանրապետական պատգամաւոր Ալեքսան Պետրոսեան, ԱԺ գործող պատգամաւոր, հանրապետական Յակոբ Յակոբեան, Շիրակի նախկին մարզպետ, ԱԺ ներկայի պատգամաւոր Ֆելիքս Ցոլակեան, Գիւղատնտեսութեան նախարար Իգնատի Առաքելեան, Տարածքային Կառավարման եւ Զարգացման նախարար Դաւիթ Լոքեան, արցախեան պատերազմի մասնակից, ԱԺ պատգամաւոր, գեներալ-լեյտենանտ Սէյրան Սարոյեան, ՀՀԿ առաջին փոխնախագահ Կարէն Կարապետեան, եւ ուրիչներ(1):

Հիմա այս մարդիկ զինուորական պարտադիր ծառայութեան նոր օրէնք կը ձեւակերպեն:

Նոյեմբեր 8-ին, *ՍիվիլՆէթ*ի հետ ունեցած հարցազրոյցի ընթացքին, Հելսինքեան Քաղաքացիական Ասամբլէայի Վանաձորի գրասենեակի ղեկավար Արթուր Սաքունց հետաքրքրական մեկնաբանութիւններ կու տայ: Նախ, կ'ըսէ թէ օրէնքը փտածութիւնը չի վերացներ, այլ, ընդհակառակը, փտածութեան կիրարկութեան նոր դուռ կը բանայ. «Առանձին խմբերի համար կառավարութեան որոչմամբ կարող է տրամադրուել տարկէտում: Աւելին նոյնիսկ, կարող են ազատուել զինուորական ծառայութիւնից: Ո՞րոնք են այդ առանձին խմբերը, դրանց վերաբերեալ յստակ չափանիչներ չկան, այսինքն՝ յստակ չի, չատ սուբիեկտիւ է եւ դա այն սողանքն է որը գոյութիւն ունէր տարկէտման ժամանակ, այսինքն այդ սողանքը միչտ էլ թողնում է բաց: [...] Դա բաւական լուրջ կոռուպցիայի սողանք է: Բայց մենք գիտենք որ կոռուպցիոն մեխանիզմներից օգտուելու ունակութիւն, կարողութիւն, իրաւունք ունեցողների քանակը խիստ սահմանափակ է, դա էլիտար ակումբ է: [...] Իսկ մնացածները որոնք չունեն այդ կոռուպցիոն մեխանիզմներից օգտուելու հնարաւորութիւն, նրանց բոլորի նկատմամբ տարածւում է:»

Բաց աստի, օրէնքը կը չահագործէ աղքատ դասակարգը, քանի որ այս դասակարգին համար անկարելի է երեք տարուայ ընթացքին կուտակել 5 միլիոն դրամ.

«Հաչուի առնելով փաստացի պաչտօնական տուեալներով՝ 1) աղքատութեան մակարդակը, 2) սոցիալական անապահովութեան խիստ բարձր մակարդակը 30 տոկոսով (բայց իրական եթէ հաչուարկենք միջազգային չափանիչներով կարող է հասնել մինչեւ 70 տոկոսը), բնականաբար դա հանդիսանում է սոցիալական անապահով խաւի համար մի այնպիսի գայթակղիչ առաջարկ, որ այսպէս թէ այնպէս ինքը հինգ միլիոն դրամ չի կարողանալու տարիների ընթացքում հաւաքել:»

Իսկ ինչո՞ւ պետութեան համար այսքան կարեւոր է այս օրէնքը: Պարզապէս որովհետեւ Հայաստանը կ'ապրի ժողովրդագրական (demographic) տագնապ մը, որուն հետեւանքով, բնականաբար, պիտի նուազէր զինծառայողներուն քանակը, կը նչէ Սաքունց, աւելցնելով՝ որ այս տագնապին պատճառը իչխանութիւններն են.

«Այդ մարդկային ռեսուրսների անբաւարար քանակը, դեմոգրաֆիք այս անբարենպաստ վիճակը հանդիսանում է Հանրապետական Կուսակցութեան եւ Սերժ Սարգսեանի քաղաքականութեան արդիւնքը: Հիմա դուրս է գալիս հետեւեալը: Այդ քաղաքականութեան հետեւանքով մարդիկ թողնում են, գնում, հեռանում են երկրից, դրա համար պատասխանատուութիւնը չեն կրում, չկայ պատասխանատուութեան այդ մեխանիզմը, ինստիտուտը: Արտագաղթի պատասխանատուն վերջին հաչուով դա այն քաղաքականութիւնն է՝ տնտեսական, սոցիալական, դա իրենց քաղաքականութեան հետեւանքն է վերջին հաչուով, առ նուազն: Էլ չեմ խօսում աղքատութեան մակարդակն էլ է իրենց քաղաքականութեան հետեւանքը: Էդ մարդիկ են որոնք ի վիճակի չեն դուրս գալու պարզապէս:» Այսինքն, քաղաքացին պիտի կրէ իչխանութիւններու ձախողութեան հետեւանքները: Օրինակ, կը նչէ Սաքունց, 9 տարուայ ընթացքին 9 միլիառ տոլլար դուրս եկած է Հայաստանէն, ընդ որում մեծ մասը ուղղուած դէպի ԱՄՆ: Ասոնք այն աղբիւրներն են որոնք պէտք է ծառայէին երկրի զարգացումին: Դուրս բերողները փտածութեան համակարգի ներկայացուցիչներն են, իսկ իրենց կողոպուտի հետեւանքները կը բարդեն քաղաքացիի վիզին: Նոր օրէնքը կրնայ ծառայել առաւել արտագաղթի, կ'եզրակացնէ Սաքունց:

Յանուն Գիտութեան Զարգացման 2004 Թուականի նախաձեռնութեան անդամ Արէն Մանուկեանի համաձայն, այս օրէնքը նպատակ ունի ստեղծել հնազանդ հասարակութիւն՝ հայրենասիրական կեղծ կիրքերու ընդմէջէն. «Նախաձեռնութեանը կողմ արտայայտւում են հիմնականում իչխանական երիտասարդական թեւերը. իրենց ղեկավարներն են ներկայացրել, իրենք պիտի պաչտպանեն: Միւս կողմից այս ռազմահայրենասիրական պաթոսը, որ ստեղծել են, վտանգաւոր է, երբ հարց են բարձրացնում՝ դո՞ւ ինչ ես արել Արցախի համար եւ այլն: Սա ազդելու է ոչ միայն բանակում ծառայելու, այլեւ գիտութեամբ զբաղուելու վրայ: Այսպիսով հասարակութիւնը դեգրադացնելու են: Երկիրը դրանով տանում են դէպի աւտորիտար ռեժիմ: Ազգ-բանակ այս փաթեթաւորուած նախագիծն էլ ամբողջ համակարգի մի մասն է, որը բերել ու փաթեթել են հասարակութեանը: Հանրութեանը մտածուած քայլերով տանում են դէպի զոմբիացման, եւ դրան համարժէք քայլեր են անհրաժեչտ: Իրականում ուզում են ձեւաւորել չարքայիններից բաղկացած մի հասարակութիւն, որոնք հրահանգով չարժուելու են այնպէս, ինչպէս ձեռնտու է իչխանութիւններին:»(2)

Ենթադրեալ քննարկումներուն եւ գալիք ցոյցերուն ժամանակ իչխանութիւնները միչտ առաջ կը նետեն անձեռնմխելին՝ հայրենիք, հայրենիքին ծառայել, հայրենասիրութիւն, ազգ-բանակ կարգախօսները, ծայր աստիճան հասարակեցնելով հարցը եւ զգոյչ ու անուղղակի փորձ մը կատարելով տարկէտումի վերացումը մերժող ուսանողութիւնը տեղադրել ոչ-հայրենասիրական չրջանակի մը մէջ:

**ԵՐԵՔՇԱԲԹԻ, 7 ՆՈՅԵՄԲԵՐ**

Նոյեմբեր 7-ին, քանի մը հարիւր ուսանողներ կը հաւաքուին Երեւանի Պետական Համալսարանի (ԵՊՀ) առջեւ՝ յայտարարելով դասադուլ: Անոնք կը վանկարկեն՝ «Տարկէտում լինելու ա», «Միացէ՛ք, միացէ՛ք», «դասադուլ»: Տեսնելով դուրսը հաւաքուած ուսանողները, ԵՊՀ-ի տնօրինութիւնը կը փակէ համալսարանի դուռները, որպէսզի ներսը գտնուող ուսանողութիւնը չկարողանայ դուրս գալ եւ միանալ ցուցարար ընկերներուն: Համալսարանը՝ գիտելիքի ենթադրաբար բաց չտեմարանը, կը փակէ իր դուռները, կ'արգիլէ այն գիտելիքը՝ զոր կ'ուզեն տեսնել ու արտայայտել ուսանողները: Համալսարանի գիտելիքը ուսուցիչներուն սեփականութիւնն է:



Ցոյցի ընթացքին *ՍիվիլՆէթ*ի նկարահանած կարճ զրոյցի մը ընթացքին, Յանուն Գիտութեան Զարգացման նախաձեռնութեան անդամ Դաւիթ Պետրոսեան հարցը կը դիտէ տարկէտումի խնդիրէն անդին՝ իբրեւ ուսանողական ընդհանուր բողոք. «Ուսանողները այսօր բարձրաձայնում են չատ խնդիրներ, որ տարիքով մարդիկ չեն բարձրաձայնում: Այս չարժման ընթացքում բարձրացուել են այնպիսի հարցեր, որոնք տարկէտման ինստիտուտի հետ կապ չունեն, բայց որ կրթական ոլորտի հետ որքան խնդիրներ կան, պաչտպանական ոլորտում ինչպիսի խնդիրներ կան, ու էդ պրոցէսը չատ դրական է որ ուսանողները ակտիւ մասնակցութիւն են ունենում ու օրինակ են ծառայում:»

Աւելի ուչ, Պաչտպանութեան Նախարար Վիգէն Սարգսեան հանդիպում կը կազմակերպէ ուսանողներուն հետ: Ըստ *Հետքի*, «ընդդիմախօս երիտասարդները նոյնպէս հրաւիրուել են, սակայն դասադուլ յայտարարած նախաձեռնող խմբի որեւէ անդամ հանդիպմանը չի ներկայացել:»(3)

**ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 8 ՆՈՅԵՄԲԵՐ**

Նախորդ օրուայ հարիւրաւոր ցուցարար ուսանողներուն թիւը կը դառնայ հազարաւոր: Վանկարկումներով կը չքերթեն Երեւանի փողոցները, կ'անցնին Հանրապետութեան Հրապարակէն, կը հասնին Կրթութեան եւ Գիտութեան Նախարարութիւն եւ հանդիպում կը պահանջեն նախարար Լեւոն Մկրտչեանի հետ: Հանդիպումը տեղի կ'ունենայ, բայց, ապարդիւն: Ուսանողներուն չէ բաւարարած նախարարի խօսքերը, իսկ նախարարը յայտարարած է որ այլեւս ուրիչ քննարկում տեղի պիտի չունենայ:

Պետական Համալսարանի դուռները դարձեալ կը փակուին՝ արգիլելու համար ներսը գտնուող ուսանողներուն ելքը:

**ՀԻՆԳՇԱԲԹԻ, 9 ՆՈՅԵՄԲԵՐ**



Յանուն Գիտութեան Զարգացման նախաձեռնութեան անդամները պայքարի երրորդ օրը անուանեցին «մեգադասադուլ»: Ցուցարարները ԵՊՀ կեդրոնական մասնաչէնքէն ուղեւորուեցան դէպի միւս բաժինները վանկարկելով՝ «ազատ, անկախ դասախօս», «ազատ, անկախ ուսանող»: Համալսարանի կարգ մը դասախօսներ հաւանութիւն կու տան ուսանողական չարժումին:

Դասադուլին կը միանան նաեւ ուսանողներ եւրոպական, ամերիկեան, սլաւոնական համալսարաններէն: Մասնակիցները երթով կ'ուղեւորուին դէպի

4

3

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՈՒՍԱՆՈՂՈՒԹԻՒՆԸ ՇԱՐԺՈՒՄԻ ՄԷՋ

միւս համալսարանները:

Մաթեմաթիքի ուսանող Գարիկ Պետրոսեան կը յայտնէ, որ առանց համազգեստի անվտանգութեան աշխատակիցներ փորձեցին խոչընդոտել շարժումը. «Բացի ԵՊՀ անվտանգութեան աշխատակիցներից՝ էստեղ էին գտնւում առանց համազգեստի ոստիկաններ: Մենք մօտեցանք նրանց եւ խնդրեցինք ցոյց տալ փաստաթուղթ: Մենք նրանց մեր ուսանողական քարտերը ցոյց տուեցինք, ասացինք՝ քանի որ համազգեստով չէք, ցոյց տուէք ձեր փաստաթղթերը: Սակայն նրանք մեր կոչին չարձագանքեցին ու հեռացան:»(4)

Վարչապետ Կարէն Կարապետեան կը հանդիպի ցուցարար ուսանողներու ներկայացուցիչներուն հետ, ներկայութեամբ Վիգէն Սարգսեանի եւ Լեւոն Մկրտչեանի: Դարձեալ հայրենասիրական պարտքի կարգախօսներ կը հնչեն վարչապետի կողմէ: Հանդիպումէն ետք Դաւիթ Պետրոսեան կը յայտնէ իր դժգոհութիւնը. «Բանակցութիւնների ժամանակ ենթադրւում է փոխզիջում, փաստարկները քննարկելու հնարաւորութիւն: Այդպիսի բան, ժողովուրդ, մեր հանդիպման ժամանակ տեղի չի ունեցել: Ու այժմ իսկապէս էդ հարցը մեզ՝ ուսանողներիս տանջում է: Եթէ մենք հանդիպում ենք, բայց նախօրօք տրամադրուածութիւնն արդէն այնպէս է, որ մեր բոլոր մտադրութիւնները պէտք է մերժուեն, արդէն էստեղ մենք ունենք լեգիտիմ իրաւունք՝ կարծելու, որ միւս կողմը պատրաստ չէ որեւէ փոխզիջման, եւ հանդիպումը ոչ թէ տեղի է ունենում յանուն ճշմարտութեան, այլ պարզապէս տեղի ունենալու համար:»(5)

**ՈՒՐԲԱԹ, 10 ՆՈՅԵՄԲԵՐ**

Ազգային Ժողովի Պաշտպանութեան եւ Անվտանգութեան հարցերու մշտական յանձնաժողովը հաւանութեան արժանացուց «Զինուորական ծառայութեան եւ զինծառայողի կարգավիճակի» մասին օրէնքի նախագիծը:

Դասադուլն ու ցոյցերը կը շարունակուին, ուսանողութիւնը վանկարկումներով կը քալէ Երեւանի գլխաւոր փողոցներով:

Լրագրողներուն եւ շարժումի անդամներուն ընդունեց Ինֆորմատիկայի - Կիրառական Մաթեմատիկայի ֆակուլտէտի տնօրէն Վահրամ Դումանեան: Ուսուցչական վերնախաւէն կրկնեցին հայրենիքը վտանգուած է կարգախօսը՝ Թուրքիա եւ Ազըրպէյճան կը սպառնան մեր հայրենիքը: Մինչդեռ ուսանողութեան կողմէ չծայառելու խնդիր չէր դրուած, այլ կեդրոնը տարկէտումն էր՝ իբրեւ ուսումի շարունակականութեան խանգարիչ հանգամանք(6):

Յանուն Գիտութեան Զարգացման նախաձեռնութիւնը կը ներկայացնէ հետեւեալ առաջարկութիւնը.

«Հաշուի առնելով «Զինուորական ծառայութեան եւ զինծառայողի կարգավիճակի մասին» օրէնքի նախագծի վերաբերեալ հասարակական լայն շերտերի վերաբերմունքը, ինչպէս նաեւ վերջիններիս սատարումը մեր շարժմանը, Յանուն Գիտութեան Զարգացման նախաձեռնութիւնն առաջարկում է՝

«1. Յենուելով օրէնքի նախագծի հիմնական գաղափարախօսութեան վրայ՝ այն է սոցիալական արդարութիւն, հաւասարութիւն, հնարաւորութիւնների ընձեռում, առաջարկում ենք անմիջապէս օրէնքի նախագծում բակալաւրի կրթական աստիճանում ընդունելութեան համար սահմանել չափորոշիչներ տաղանդաշատ աշակերտներին տարկէտում տրամադրելու համար: Բակալաւրի կրթական աստիճանում, հաշուի առնելով պետութեան պահանջարկը, որը պիտի ձեւաւորուի իրական հետազօտութիւնների հիման վրայ, տրամադրել սահմանափակ քանակութեամբ տարկէտման տուող տեղեր:

«2. Հաշուի առնելով Բարձրագոյն կրթութեան մասին օրէնքի նախագծի առկայութիւնը՝ յետաձգել «Զինուորական ծառայութեան եւ զինծառայողի կարգավիճակի մասին» օրէնքի քննարկումը, եւ 2 օրէնքների նախագծերը միմեանց հետ համահունչ դարձնել:

«3. Հաշուի առնելով, որ բակալաւրի կրթական աստիճանում եւ մագիստրոսի կրթական աստիճանում արդէն սովորողների մօտ առկայ է լեգիտիմ ակնկալիք յետագայ աստիճաններում տարկէտում ստանալու հետ կապուած, ապահովուել նախկին տարիներով ձեւաւորուած տարկէտման տեղերը:

«4. Այս պահին ասպիրանտական կրթութեամբ սովորողներին թեկնածուական ատենախօսութիւն պաշտպանելուց յետոյ (անկախ այն հանգամանքից, որ վերջիններս 27 տարին չի լրացել) չզօրակաչել Հայաստանի Զինուած Ուժեր, քանի որ վերջիններս արդէն իսկ գիտական արդիւնք ստեղծողներ են:»(7)

**ՇԱԲԱԹ, 11 ՆՈՅԵՄԲԵՐ եւ ԿԻՐԱԿԻ, 12 ՆՈՅԵՄԲԵՐ**

Շաբաթ եւ Կիրակի ուսանողական արձակուրդի օրեր են: Ցոյցեր տեղի կ'ունենան, բայց արձակուրդի հանգամանքը քիչ մը ետ կը մղէ մասնակցութեան քանակը:

**ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 13 ՆՈՅԵՄԲԵՐ**

Աշխատանքային շաբաթուայ առաջին օրը դասադուլները նոր թափ կը ստանան:

Ուսանողները ԵՊՀ-էն կը շարժին դէպի միւս համալսարանները: Տնտեսագիտական Համալսարանի



մուտքի մօտ անվտանգութեան աշխատակիցները կը խոչընդոտեն դասադուլաւորներուն կազմակերպել իրազեկումի գործողութիւն:

ԵՊՀ-ի հինգ ուսանողներ կը յայտարարեն անժամկէտ հացադուլ: Անոնցմէ մէկն է Յանուն Գիտութեան Զարգացման շարժումի առաջնորդ Դաւիթ Պետրոսեան:

Ուսանողները կ'երթան Ազգային Ժողովի դարպասներուն մօտ, ուր պաստառներ կը բարձրացնեն քանի մը բարբառներով:

**ԵՐԵՔՇԱԲԹԻ, 14 ՆՈՅԵՄԲԵՐ**

Ցոյցերն ու հացադուլը կը շարունակուին:

134 գիտաշխատողներ եւ դասախօսներ կը ստորագրեն պաշտօնատար մարմիններուն ուղղուած բաց նամակ մը.

«Մտահոգուած լինելով «Զինուորական ծառայութեան եւ զինծառայողի կարգավիճակի մասին» օրէնքի նախագծի ընդունման դէպքում կրթութեան եւ գիտութեան ոլորտին սպառնացող ծանր հետեւանքներով եւ կիսելով Յանուն Գիտութեան Զարգացման նախաձեռնութեան մտահոգութիւնները՝ ստորեւ նշուած գիտաշխատողներս եւ դասախօսներս առաջարկում ենք.

«1. Օրէնքի նախագծում ամրագրել դրոյթ, որի համաձայն Կրթութեան եւ գիտութեան նախարարութիւնը պէտք է կազմակերպի ամենամեայ հիմնաւոր հետազօտութիւն՝ իւրաքանչիւր ոլորտում բակալաւրի, մագիստրոսի եւ ասպիրանտի կրթական աստիճաններում նպատակային տարկէտման համար անհրաժեշտ տեղերի նուազագոյն թուերը սահմանելու եւ դրանք Պաշտպանութեան Նախարարութեանը (ՊՆ) ներկայացնելու նպատակով: Յատկացուած տարկէտման տեղերի համար Կառավարութիւնը պէտք է սահմանի չափանիշներ, որոնց բաւարարելն անհրաժեշտ պայման պէտք է լինի տարկէտման իրաւունք ստանալու համար (օրինակ՝ մագիստրատուրա ընդունուելիս տարկէտման իրաւունք չի կարող ստանալ այն դիմորդը, ում բակալաւրիատի ՄՈԳ-ը ցածր է 18-ից): Նմանապէս, անհրաժեշտ է սահմանել յստակ չափորոշիչներ, որոնք կը կարգաւորեն թեկնածուի գիտական աստիճան ունեցողներին պարտադիր զինուորական ծառայութիւնից ազատելու կարգը՝ կապուած նրանց գիտա-մանկավարժական մասնագիտական գործունէութեան հետ (օրինակ՝ պաշտպանութիւնից յետոյ կամ սահմանուած ժամանակահատուածի ընթացքում պէտք է տպագրել որոշակի քանակով գիտական յօդուածներ կամ սահմանուած ժամանակահատուածում իրականացնել մանկավարժական գործունէութիւն):

«2. Ձեւաւորել այնպիսի համակարգ, որտեղ ՊՆ-ն եւ գիտական հաստատութիւնները շահագրգռուած կը լինեն համաձայնութեան գալ համատեղ հետազօտական նախագծերի շուրջ եւ այդ նախագծերում կը ներգրաւեն բակալաւրիատի, մագիստրատուրայի եւ ասպիրանտուրայի՝ տարկէտում չունեցող շրջանաւարտներին: Այն դէպքում, երբ ՊՆ-ն չի կարողանայ ապահովել այս կատեգորիայի՝ ուսման յաջորդ փուլ ընդունուած ուսանողների գիտելիքների նպատակային կիրառումը ծառայութեան ընթացքում, ՊՆ-ն կը պարտաւորուի առաջարկել այնպիսի ծառայութիւն, որի ընթացքում ուսանողները կը կարողանան շարունակել մագիստրոսական եւ ասպիրանտական կրթութիւնը բուհերում եւ գիտական հաստատութիւններում: Սա կը շահագրգռի ՊՆ-ին հնարաւորին կարճ ժամկէտներում պայմաններ ստեղծել ուսանողների գիտելիքները նպատակային կիրառելու համար:

«Հիմնուելով մեր մասնագիտական փորձառութեանը, վստահեցնում ենք ձեզ, որ առանց վերոնշեալ փոփոխութիւնների, կրթութեան եւ գիտութեան ոլորտը կը կրի անդառնալի կորուստներ:»(8)

**ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 15 ՆՈՅԵՄԲԵՐ**

Խորհրդարանը կ'ընդունի «Զինուորական ծառայութեան եւ զինծառայողի կարգավիճակի մասին» օրէնքի նախագիծը:

ԱԺ մուտքը փակած ուսանողները երթով կը շարժին Բաղրամեան պողոտայով, փակելով փողոցի երթեւեկելի մասը: Իրենց կը մօտենայ Երեւանի փոխոստիկա-



նապետ Վալերի Օսիպեան եւ կը յայտնէ՝ որ ուսանողներու երթը արտօնուած չէ, եւ անոնք կը խանգարեն երթեւեկութիւնը: Կը պահանջէ հինգ վայրկեանէն ազատել փողոցը: Ուսանողները չեն կատարեր հրամանը եւ ոստիկանութիւնը կը փորձէ ուժով հեռացնել զանոնք Բաղրամեան պողոտայի երթեւեկելի մասէն, ուր տեղի կ'ունենայ բախում եւ մարմնական վնասուածք:

Հացադուլ յայտարարած ուսանողները կը դադրեցնեն հացադուլը եւ կը միանան ԱԺ-ի առջեւ հաւաքուած ցուցարարներուն:

ԱԺ փոխխօսնակ Էդուարդ Շարմազանովի եւ ԱԺ նախագահ Արա Բաբլոյեանի հետ հանդիպումէ ետք, Յանուն Գիտութեան Զարգացման շարժումին անդամները կը դադրեցնեն դասադուլը: Փոխարէն, Շարմա-



զանովէն խոստում կը ստանան յետագային քննարկումներ կատարել կլոր սեղանի շուրջ:

**ԵԶՐԱԿԱՑՈՒԹԻՒՆ**

Ցոյցերը չվերածուեցան համընդհանուր շարժումի եւ վերջ գտան երբ Ազգային Ժողովը ընդունեց օրէնքը՝ զայն դարձնելով փաստացի իրականութիւն: Փաստացիին դէմ պայքարի միտում չկար: Յուսահատութեան պա՞հ մը: Կրնայ ըլլալ: Դասադուլը քաջալերող Յանուն Գիտութեան Զարգացման նախաձեռնութեան ոչ-հետեւողականութի՞ւնը: Հաստատապէս: Բայց, բան մը շարժեցաւ, կամ արդէն շարժուն տարր մը ինքնաբացայայտուեցաւ: Ուսանողական շերտ մը մտաւ գործողութեան մէջ եւ իր ձայնը լսելի դարձուց, հակառակ Հայաստանի եւ ողջ սփիւռքեան պաշտօնական լրատուութեան ձեւական ու սահմանափակ արձագանգին, ուր Կարէն Կարապետեանի հետ հանդիպումը, հանդիպումին գեղեցիկ լուսանկարը եւ «պաշտօնական» բանակցութիւնները աւելի կարեւոր էին քան բուն ցոյցերը, ցուցարարներուն ձայնը եւ անոնց ցուցադրութիւնը:

Ցոյցերուն պատումը առաջ բերաւ գիտութիւն-բանակ անտեղի ու վտանգաւոր երկընտրութիւն մը ու փոխբացասում մը: Գիտութեան պատումը հայրենասիրական կարգախօսներ չ'ընդունիր, սովորութիւն չկայ գիտութեան անունով հայրենիքի նուիրուածութիւն քարոզել, մինչդեռ բանակի անունով ուժեղօրէն կը բարձրանայ ամէն տեսակ ազգասիրական-հայրենասիրական գաղափարախօսութիւնները: Բռնատիրական ու կիսաբռնատիրական երկիրներու մէջ վերջինը դիւրութեամբ կը յաղթանակէ:

Արէն Մանուկեան վերը բացատրեց, որ այս օրէնքը նպատակ ունի ստեղծել հնազանդ հասարակութիւն մը՝ հայրենասիրական կիրքերու ընդմէջէն: Բայց յատկապէս ձախ մտաւորականներուն քաջ ծանօթ է, որ ամբողջ դրամատիրական արեւմտեան զանգուածային կրթութեան համակարգը կը միտի ուղղորդուած գիտութեան միջոցով ստեղծել հնազանդ ենթականեր: Ուրեմն, գիտութիւն ու բանակ՝ երկուքն ալ իշխանական վերահսկողութեան առարկաներ, հնազանդ հետեւողներ ստեղծելու տեղավայրեր են: Բայց ազգայնական մեծ պատումներով յագեցած կիսաբռնատիրական երկիրի մը համար բանակի գաղափարախօսութեան արտադրութիւնը շատ աւելի դիւրին է քան կրթական համակարգի մը կատարեալ վերիշխանութեան ու վերահսկողութեան մեքանիզմի ամրագրումը:

6

ԳԱՀԻՐԷ

## ՏԻԳՐԱՆ ՅՈՎԱԿԻՄԵԱՆԻ ԳԻՒՏԸ

Եգիպտահայ վիրաբոյժ-ակնաբոյժ Տիգրան Յովակիմեան հնարած է բազմակիրառական ակնաբուժական-վիրաբուժական սարք մը՝ վերացնելու համար աչքի վնասուած թաղանթները:

2017 Օգոստոս 24-ին, Եգիպտոսի Գիտական Հետազօտութիւններու Հարցերու Նախարարութիւնը պաշտօնապէս կը վաւերացնէ գիւտը եւ գիւտարարին կը շնորհէ մենաշնորհի քսան տարուայ իրաւունք:

Յովակիմեան Եգիպտոսի յաջող բժիշկներէն մէկն է, կ'աշխատի տեղական հիւանդանոցներուն մէջ եւ Հելիոպոլսոյ Ռամսէս փողոցը բացած է արդիական սարքերով համալրուած անձնական բուժարան (քլինիք) մը:

## ԵՐԿՈՒ ՀԱՅ ԼՈՒՍԱՆԿԱՐԻՉՆԵՐՈՒ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍՆԵՐ

Գահիրէի Ամերիկեան Համալսարանի Լուսանկարչական Պատկերասրահին մէջ (New Cairo Campus) Նոյեմբեր 15-ին բացումը կատարուեցաւ եգիպտահայ-զուիցերիահայ լուսանկարիչ Արման Արծրունիի գործերուն ցուցահանդէսը, խորագիր ունենալով՝ *Սթուտիօ Արման՝ հարսանեկան դիմանկարութեան արուեստը* (Studio Armand: The Art of Wedding Portraiture):

Սթուտիօ Արման կը հանդիսանար Գահիրէի յայտնի լուսանկարչատուներէն մէկը: Զայն 1930-ին հիմնած էր Արմանի հայրը՝ Արմենակ Արծրունի (1901-1963), նստատեղի ունենալով նախ Մուսթաֆա Քամէլ փողոցը, ապա՝ 1956-էն սկսեալ, Թալաաթ Հարպ փողոցը: 1961-ին Արման սկսած է աշխատիլ հօրը հետ, որուն վախճանումէն ետք տնօրինած է սթուտիոն մինչեւ 2007 թուական: Հայր ու զաւակ մասնագիտացած են դիմանկարային լուսանկարչութեան մէջ, միջին եւ բարձր դասակարգերու եգիպտացիներուն համար ստեղծելով հարսանեկան դիմանկարներու չահութաբեր շուկայ մը:




Ցուցահանդէսին ներկայացուած են նաեւ հօրը՝ Արմենակի լուսանկարներէն նմոյշներ: Համադրողն է Ահմէտ Սաֆիելտին:

Բացումին ներկայ էր լուսանկարիչը: Ցուցահանդէսը բաց պիտի մնայ մինչեւ Դեկտեմբեր 20:




Նոյեմբեր 26-ին, Գահիրէի Սինեմաթէք այլընտրանքային ֆիլմի կեդրոնին մէջ (19, Ատլի փողոց) բացումը կատարուեցաւ եգիպտահայ լուսանկարիչ Վան Լէօի (Լեւոն Պօյաճեան, 1921-2002) ցուցահանդէսը՝ *Վան Լէօ սթուտիոյէն դուրս՝ իր տնային ֆիլմերը* (Van-Leo Out of the Studio: His Home Movies):

Բացումին օրը ցուցադրուեցաւ յատուկ պատրաստուած ֆիլմ մը, որ կը համախմբէր Վան Լէօի եւ իր եղբօր Անճելոյի անձնական հաւաքածոյի 16մմ տնային ֆիլմերը եւ կը ներկայացնէր յայտնի լուսանկարիչի անձնական կեանքէն դրուագներ:

Գահիրէի կեդրոնը վարած է Սթուտիօ Վան Լէօ, որ շարունակած է գործել աւելի քան կէս դար, դառնալով Եգիպտոսի բարձր դասի լուսանկարչական կեդրոնատեղին: Գեղարուեստական բացառիկ արժէք կը ներկայացնեն եգիպտացի հռչակաւոր դերասաններու, արուեստագէտներու եւ մտաւորականներու սեւ-ճերմակ դիմանկարները:

Վախճանումէն քիչ առաջ իր ամբողջ լուսանկարչական դիւանը եւ արժէքաւոր հնատիպ գիրքերը նուիրեց Ամերիկեան Համալսարանի Հազուագիւտ Գիրքերու եւ Յատուկ Հաւաքածոներու Գրադարանին, ուր կը պահուին մինչեւ այսօր:

Ցուցահանդէսը կազմակերպուած է համագործակցութեամբ Գահիրէի Ամերիկեան Համալսարանին: Համադրող՝ Օլա Սէյֆ: Բաց պիտի մնայ մինչեւ Դեկտեմբեր 10:

## ԳԷՈՐԳ ԵԱԶԸՃԵԱՆԻ ԵՐԿՈՒ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԳԱՀԻՐԷԻ ՄԷՋ

2 ☞

շարժումը տանիլ ներսէն դէպի դուրս: Այսինքն, Կարսի անկումին պատճառը մենք ենք՝ հայերս, եւ աննպատակ է զայն սեւեռելով վերագրել արտաքին, բացառապէս մեզմէ անկախ պատճառներու: Եւ այս ներսէն բխած արժէքային իմաստները կարելի է տարածել բոլոր երեւոյթներուն վրայ:

Եազըճեան դէմ է պատումնային ազգայնականութեան, վերադիր ազգասիրութեան, ֆեթիշական հայրենասիրութեան: Անո՛ր ազգայնականութիւնը գործնապաշտ է, գիրն ու գործը համալրող: Յոյսով եմ, որ իր Եգիպտոս այցելութիւնը չէր տեղադրուիր ախորժալուր ազգայնականութեան ծիրէն ներս, որ կը հաճեցնէ ականջը եւ կը շոյէ զգացումները:

ԽՈՀԵՐ

## ՕՐԷՆՔ՝ ԸՆՏԱՆԵԿԱՆ ԲՌՆՈՒԹԵԱՆ ԴԷՄ

### ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

2. ԱՒԱՆԴԱԿԱՆ ԸՆՏԱՆԻՔԻ ՆՇԱՆԱԲԱՆԸ

Արդարեւ, կը գտնուի նաեւ ուրիշ հարց մը՝ զոր հայկական իշխանութիւնները առաջ չեն տանիր լրատուամիջոցներուն մէջ: Հայկական *աւանդական ընտանիքի* պատկերի հարցն է:

*Առաջին լրատուականի* հետ ունեցած զրոյցի ընթացքին մշակութային մարդաբան Աղասի Թադեւոսեան կ'ըսէ.

«Ես չեմ զարմանում, որ նման մեծ դիմադրութիւն կայ բռնութիւնը պաշտպանելուն ուղղուած: Դա, ըստ էութեան, բռնութեան պաշտպանութիւն եւ քարոզչութիւն է, որովհետեւ մարդ պէտք է շատ-շատ մեծ ջանքեր թափի, որ չնկատի, թէ ինչ մեծ ծաւալի բռնութիւն կայ մեր հասարակութեան մէջ ու այդ բռնութեան աղբիւրը հայկական ընտանիքն է:»

Աղասի Թադեւոսեանի համաձայն՝ մենք տարիներ շարունակ փորձած ենք իտէալականացնել հայկական ընտանիքի բարքերը, բայց եթէ աւելի իրատես նայինք մեր ընտանիքներուն, ապա անոնց զգալի մասը, յատկապէս «աւանդական արժէքներ» կոչուածի մէջ ապրող ընտանիքները, բռնութեան աղբիւր են:

«Դեռ մեծ հարց է, թէ ում աւանդոյթներն են դրանք, որքանով են դրանք հայկական: Իրականում, դրանք մեր կեանք մտած բռնութեան աւանդոյթներ են, որոնք հին են, գալիս են այն ժամանակաշրջանից, երբ աշխարհին, այդ թւում՝ հայերին բռնութիւնը բնորոշ երեւոյթ էր: Պարզւում է, որ կեանքը փոխուել է, եւ մարդիկ կարող են հաղորդակցուել ոչ բռնի ձեւերով, պարզւում է, որ ծնողները կարող են իրենց երեխաներին ոչ բռնի եղանակներով դաստիարակել: Մերոնք, կարծէք թէ, արդարացնում են այն, որ ծնողը կարող է երեխային հարուած հասցնել, կամ տղամարդը կարող է թեթեւ ապտակ հա՛սցնել կնոջը, եթէ կինը սխալ է շարժւում: Ամբողջ հարցն այն է, որ նման մտայնութիւնը մեզանում չափազանց տարածուած է», կը շեշտէ Թադեւոսեանը:

Ան կը նշէ՝ թէ բռնութիւնը լայնօրէն տարածուած է հայ դեռահասներու ու երիտասարդներու մէջ. «Ասենք, 10-15 հոգով կարող են ծեծել 1-2 հոգու: Ու երբ նայում ենք, թէ ովքեր են բռնութիւն կիրառողները, դրանց կարելի է տեղաւորել «ազգային աւանդական» թեւի մէջ, որոնք իբր թէ թաղային, տղամարդկային աւանդոյթն են շարունակում: Օրինակ՝ բանգլադեշցի կամ մասիվցի ինչ-որ դեռահասներ վիճում են, յետոյ ոհմակ է հաւաքւում, որը սարսափելի դաժանութեամբ ծեծում է միւս խմբին, յատկապէս, եթէ միւս խումբը քիչ է ու նաեւ չի տիրապետում ոհմակային ապրելակերպին, որն անուանում ենք ազգային:»(2)

Միաժամանակ իշխանութիւնները ընտանեկան ազգային աւանդոյթներ քանդելու ձգտում չունին, քանի որ այս տեսակ աւանդոյթներով է որ անոնք կը սնեն հասարակութիւնը եւ կը դառնան հայրենասէր, աւելի հայրենասէր քան ենթադրաբար աւանդոյթը կրող հասարակութիւնը: Կարեւոր չէ *ով* կը կրէ, կարեւոր է *ով* կը նշանաբանէ:

Հայկական իշխանութիւնները օրէնքի նախագիծի քննարկումներուն այնպիսի ուղղութիւն տուին՝ որ աւանդականի եւ այդ բառ-արտայայտութեան հանդէպ քննարկումներ տեղի չունենան, քանզի աւանդականի կատարեալ տիպարը միշտ վառ պէտք է մնայ:

Թէեւ պատմագիրներն ու արձակագիրները ուրիշ բաներ կը գրեն:

Այսպէս, աւանդական ընտանիքի բիւրեղեայ պատկեր ստեղծելու նպատակ բնաւ չէ ունեցած Ե. դարու պատմիչ Փաւստոս Բուզանդ, որ այսպէս կը նկարագրէ Արշակ Բ.ի եւ Փառանձեմի յարաբերութիւնը. «Յետոյ Արշակը իրեն կին առաւ սպանուած (Գնելի) կնոջը՝ Փառանձեմին: Եւ որքան Արշակ սիրում էր կնոջը՝ այնքան էլ սա ատում էր Արշակ թագաւորին, ասելով, թէ՝ «թաւամազ մարմին ունի, թուխ գոյն ունի»: Վերջը, երբ կնոջ սիրտը Արշակին չկպաւ՝ սա մարդ ուղարկեց Յունաց երկիրը եւ անտեղից՝ կայսերական տոհմից, խնդրեց բերել տուեց իրեն կին Ոլոմպի անունով: Նրան ուժգին սիրով սիրեց եւ նրանով գրգռում էր առաջին կնոջ նախանձը: Փառանձեմը սրտումը ոխ պահեց Ոլոմպիի դէմ եւ միջոց էր փնտռում նրան սպանելու: Բայց յետոյ Փառանձեմը թագաւորից ունեցաւ մի տղայ, որի անունը դրին Պապ, նրան մեծացրին, չափահաս դարձրին: Երբ նա առոյգ պատանի դարձաւ՝ նրան պատանդ ուղարկեցին կայսեր դուռը, Յունաց երկիրը:»(3) Փառանձեմ, վերջապէս, դաւադրութեամբ կը յաջողի սպաննել Ոլոմպիին: Եւ այս բոլորը՝ թագաւորական մակարդակով:

Նար-Դոսի *Հոպոպ* պատմուածքին մէջ, Հոպոպ «[կ]նոջ հետ խօ ամէն օր տուրուդմփոցի մէջ էր. ինքը կնոջն էր ծեծում, կինը նրան. թակում էին իրար այնքան ժամանակ, մինչեւ որ կամ յոգնում էին, կամ հարեւանները միջամտում, բաժանում իրարից: [...] Մի անգամ նրա մեծ տղան, վեց տարեկան, ոտով դիպաւ գաւին. գաւը գլորուեց եւ քիչ էր մնում թախտից ընկնէր կոտրուէր: Հոպոպը վրայ ընկաւ երեխին եւ սկսեց ծեծել նրան այնքան սաստիկ, որ կը սպանէր, եթէ կինը չխլէր որդուն կատաղած հօր ձեռքից:»(4) Աւանդական ընտանիքի ոչ-բաղձալի պատկեր մը:

Շիրվանզադէի *Նամուս*ին մէջ Սէյրան եւ Սուսան սիրահարուած են: Բայց իրենց ծնողքներուն միջեւ խռովութիւն կը գտնուի եւ «աւանդական» երկու ընտանիքները կը նախընտրեն զոհել զաւակներուն երջանկութիւնը փոխանակ ձգտելու հարթել իրենց միջեւ եղած անհամաձայնութիւնը: Սուսան կը փորձէ Սէյրանին բացատրել կացութիւնը. «Գիտես, որ հայրս, եթէ նրան սպանես, կախ տաս, քեզ աղջիկ տուող չի: Այդ դու պիտի լաւ հասկանաս, եթէ նրան ճանաչում ես: Գալով փախչելուն, դա մեր կողմից յիմարութիւն կը լինի, որ ոչ դու ես կարող անել, ոչ էլ ես կ'անեմ: Մեր փախուստը անպատիւ կ'անի մեր ծնողների անունը, որ առանց այն էլ իմ պատճառով անպատուած է: Ես չեմ ուզում, որ ինձ համար ծնողներս ամօթից սեւերես մնան ուրիշների առաջ: Ես գիտեմ, որ հայրս հէնց մեր փախչելու օրն իրան կախ կը տայ: Նա այդպիսի մարդ է. ես ճանաչում եմ նրան: Քէօխանց Բարխուդարը նամուսի գերի է: Թող ես չարչարուեմ, տանջուեմ, սառը գերեզման մտնեմ, աղ ինձ համար աւելի լաւ է, քան թէ հօրս խայտառակութիւնը: Ճշմարիտ է, նա ինձ թակում է, աչքով աչք չունի ինձ տեսնելու, բայց ես սիրում եմ, որովհետեւ հայրս է: Գիտե՞ս, Սէյրան, ի՛նչ ասել է ծնողներ: Լա՛ւ մտածիր. նրանք ինձ լոյս աշխարհ են գցել, մեծացրել են, լաւ թէ վատ կրթել են, այս հասակին են հասցրել, վերջապէս, նրանք ինձ սիրում են:»(5) Սուսան իր ամբողջ ապագան, սէրը պիտի զոհէ յանուն ծնողական հակառակութիւններու, յանուն ծնողական նամուսին: Հայրը նոյնիսկ կը ծեծէ (կը թակէ) Սուսանին, այսօրուայ բառապաշարով՝ կը դիմէ ընտանեկան բռնութեան: Հակառակ ծեծին, Սուսանն է որ կը դիմէ զոհողութեան: Ծնողքը ոչ մի զիջում չի կատարեր: Եւ ահաւասիկ ան կը դառնայ Ռուստամին կինը, Ռուստամ շուտով կը կասկածի կնոջ հաւատարմութեան վրայ եւ վերջապէս կը սպաննէ զայն: Սուսան կը դառնայ աւանդական ընտանիքի կրկնակի զոհը՝ ծնողքին եւ ապա ամուսինին:

Շիրվանզադէի *Հայրն ու որդին* պատմուածքին մէջ կինը կ'ըսէ իր ամուսինին. «Մի զոյգ կօշիկներ երեխայիս համար աւելի թանկ արժէ իմ աչքում, քան քո ազնուութիւնը:»(6) Ահաւասիկ աւանդական ընտանիքի պատկեր մը. Տղիկ տգեղ է եւ այս պատճառով քահանայ հայրը զայն կ'ամուսնացնէ օրապահիկը հազիւ վաստակող Սիմոնին հետ: Տղիկ կը պաշտէ դրամը, «մէկ-մէկ ծվծվացնում էր իր փոքրիկներին»(7) (ընտանեկան բռնութիւն) եւ կը նախատէ իր ճակատագիրը, Սիմոն համեստ ու ազնիւ գրաշար մըն է, իսկ իրենց որդին Վահան դպրոցէն վտարուած գող մըն է: Յայտնաբերով որդիին գողութիւնները, հայրը պարզապէս կը սպաննէ զայն:

Շիրվանզադէի *Եղբայրասպանը* պատմուածքին մէջ Արամ կ'ըսէ իր եղբօր Միսակին. «Դու ծեծով ու տանջանքով կնոջդ ստիպեցիր դաւաճանել քեզ»(8) եւ, ինչպէս խորագիրը կը յուշէ, պատմուածքի վերջաւորութեան կը

☞ 6

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## 1 ԿԱՐԱԳԻ, ԿԱՆԹՆԱՄԹԵՐՔԻ ԳՆԱՃԻՆ ՅԱՋՈՐԴԵԼ Է ՋՈՒԻ ԳՆԻ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ...

բարձր գնով վաճառուել է Վայոց Ձորի մարզի Եղեգնաձորում, իսկ ցածր գին ունեցել է Վանաձորում:

Իսկ Նոյեմբերի 22-ից արդէն երեւանեան խանութներում եւ սուպէրմարկէտներում մէկ հաւկիթի գինը սկսում էր 70 դրամից: *Ժողովուրդ* օրաթերթը տեղեկացաւ, որ այս տարուայ Յունուար-Սեպտեմբերին Հայաստանում արտադրուել է 585 միլիոն 400 հազար հատ ձու, իսկ ներմուծուել է 1 միլիոն հատիկ: Նկատենք, որ Սեպտեմբերին երեւանեան խանութներում եւ սուպէրմարկէտներում ձուի 10 հատանոց տուփը 630 դրամից թանկացել է՝ դառնալով 640-650 դրամ: Նոյեմբերի 22-ի դրութեամբ խանութներում ձուի գինը նոր ռեկորդներ սահմանեց. տեղ-տեղ այն արդէն վաճառւում էր 90-ից 100 դրամ:»

## 4 ՀԱՅԱՍՏԱՆԻ ՈՒՍԱՆՈՂՈՒԹԻՒՆԸ ՇԱՐԺՈՒՄԻ ՄԷՋ

Կարեւոր է ճշդել, որ թէեւ Հայաստանի ընդդիմադիրները շատ լուրջ քննադատութիւններ կ'ուղղեն բանակի ներկայ վիճակին դէմ՝ դրամական չաշագործում, անհասկնալի ներքին սպանութիւններ, համակարգային փտածութիւն, բայց ոչ ոք երբեւէ քննադատած է բանակը իբրեւ այդպիսին:

Վերջապէս, շրջանառութեան մէջ մտաւ մինչ այդ լայն հանրութեան անծանօթ իսկ սփիւռքիս համար բոլորովին անգործածելի բառ մը՝ «տարկէտում»: Ամենաշատ գործածուած բառն էր ամբողջ ցոյցերուն ընթացքին: Խնդիրի կիզակէտրոնն էր այս բառը:

Ուսանողական շարժումները, ընդհանրապէս, եթէ զարգանան եւ դառնան համակեցական շարժում, յեղափոխութիւններ կրնան յառաջացնել: Տուեալ ցոյցերը չվերաճեցան համընդհանուր շարժումի, քանի որ չկրցան անցնիլ տարկէտումի գաղափարէն անդին: Բայց, միեւնոյնն է, ուսանողական կարեւոր տարր մը շարժեցաւ, վարժուեցաւ շարժիլ, շարժումի փորձ մը կուտակեց, փորձ մը՝ որ կրնայ յետագային ստանալ ուրիշ տարողութիւններ:

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

1. «Պաշտօնեաների՝ ծառայութիւն չանցած որդիների ցանկը. *Factor.am*», *ԳԱԼԱ*, 26 Յունիս 2017, http://galatv.am/hy/news/factor-am/:

2. Տաթեւ Յարութիւնեան, ««Տուժելու են նրանք, որոնք լաւ էին սովորում ու արդար ճանապարհով գնում դէպի գիտութիւն». Արէն Մանուկեան», *Առաւօտ*, 20 Հոկտեմբեր 2017, http://www.aravot.am/2017/10/20/914755/:

3. «Պաշտպանութեան նախարարը հանդիպել է ուսանողական, երիտասարդական եւ հասարակական կառոյցների ներկայացուցիչների հետ», *Հետք*, 7 նոյեմբերի, 2017, http://hetq.am/arm/news/83351/pashtpanutyan-nakharary-handipel-e-usanoxakan-eritasardakan-ev-hasarakakan-karuycneri-nerkayacu cichneri-het.html:

4. Նելլի Պետրոսեան, «Լրագրողներին թոյլ չտուեցին ներս մտնել համալսարան՝ ուսանողների ներկայութիւնը ստուգելու համար», *Հետք*, 9 Նոյեմբեր 2017, http://hetq.am/arm/news/ 83412/l ragroxnerin-tuyl-chtvecin-ners-mtnel-hamalsaran-usanoxneri-nerkayutyuny-stugelu-hamar.html:

5. Նելլի Պետրոսեան, «Դաւիթ Պետրոսեան. «Հանդիպման ժամանակ մեզ փաստարկները քննարկելու հնարաւորութիւն չի տրուել»», *Հետք*, 10 Նոյեմբեր 2017, http://hetq.am/arm/news/ 83450/davit-petrosyan-handipman-zhamanak-mez-pastarknery-qnnarkelu-hnaravorutyun-chi-trvel.html:

6. Անդ:

7. «Դասադուլ յայտարարած ուսանողները առաջարկութիւններ են ներկայացրել», *ՍիվիլՆէթ*, 10 Նոյեմբեր 2017, https://www.civilnet.am/news/2017/11/10/:

8. «Գիտաշխատողները եւ դասախօսները բաց նամակով դիմում են նախագահին, ազգային ժողովին, կառավարութեանը», *Հետք*, 15 Նոյեմբեր 2017, http://hetq.am/arm/news/83548/ gitash kha toxnery-ev-dasakhosnery-bac-namakov-dimum-en-nakhagahin-azgayin-zhoxovin-karavarutyany.html:

## 5 ՕՐԷՆՔ՝ ԸՆՏԱՆԵԿԱՆ ԲՌՆՈՒԹԵԱՆ ԴԷՄ

սպաննէ զայն:

Եւ ուրիշներ:

Հիմա, իրենց պատմական-գրական արտադրութիւններուն շնորհիւ Փաւստոս Բուզանդ, Նար-Դոս, Շիրվանզադէ իրենք դարձած են աւանդոյթի կրողներ: Իրենց գործերը աւանդոյթներ են: Մէկ կողմէն՝ գրական աւանդոյթներ, որոնք կը հերքեն երկնագոյն ընտանեկան աւանդոյթները, միւս կողմէն՝ ընտանեկան աւանդոյթներ, որոնք պէտք է հրաշալի ըլլան ու բացառիկ: Արդեօք ո՞ր աւանդոյթն է աւելի աւանդոյթ:

(Վերջ 2)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

2. Սիրանոյշ Պապեան, «Մենք պահում ենք ադաթը, եւրոպացիները՝ աւանդոյթը. Հայ հասարակութեան մէջ մեծ ծաւալի բռնութիւն կայ», *Առաջին լրատուական*, 11 Հոկտեմբեր 2017, http://www.1in.am/2224990.html:

3. Փաւստոս Բուզանդ, *Հայոց պատմութիւն*, Թարգմանութիւնը եւ ծանօթագրութիւնները Ստ. Մալխասեանցի, Երեւան, Երեւանի Համալսարանի Հրատարակչութիւն, 1987, էջ 193:

4. Նար-Դոս, «Հոպոպ», *Երկեր*, Երեւան, Սովետական Գրող Հրատարակչութիւն, 1977, էջ 62-63:

5. Ալեքսանդր Շիրվանզադէ, «Նամուս», *Երկեր*, գիրք երկրորդ, Երեւան, Հայաստան Հրատարակչութիւն, 1971, էջ 84:

6. Շիրվանզադէ, «Հայրն ու որդին», *Երկերի ժողովածու*, հատոր հինգերորդ, Երեւան, Հայպետհրատ, 1959, էջ 347:

7. Անդ, էջ 347:

8. Շիրվանզադէ, «Եղբայրասպանը», *Երկերի ժողովածու*, հատոր հինգերորդ, Երեւան, Հայպետհրատ, 1959, էջ 155:

## 2 ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԵԱՆ ՄԸ ԱՌԻԹՈՎ՝ *ՅԱԿԻՆԹԻ ՊԱՐՏԷԶԸ*

Դեկտեմբեր 1992, Տ՝ 31 Մայիս 2017:

72. *Արուեստ քերթութեան 25. 1001 բանաստեղծութիւն*: Գ՝ 23 Նոյեմբեր 1993, Տ՝ 2 Յունիս 2017:

73. *Արուեստ քերթութեան 26. Ընթերցո՛ղ մը կը ստեղծեմ*: Գ՝ 24 Յունիս 1994, Տ՝ 4 Յունիս 2017:

74. *Արուեստ քերթութեան 27. Ձէ՞ր ուզեր արդեօք... յայտնաբերել*: Գ՝ 10 Մայիս 1994, Տ՝ 5 Յունիս 2017:

75. *Արուեստ քերթութեան 28. Ոչ, կարելի չէ տրամաբանօրէն*: Գ՝ 29 Մայիս 1994, Տ՝ 8 Յունիս 2017:

76. *Արուեստ քերթութեան 29. Անասելին*: Գ՝ 12 Օգոստոս 1995, Տ՝ 11 Յունիս 2017:

77. *Արուեստ քերթութեան 30. Տակաւին առակումի հանգրուանն ենք*: Գ՝ 21 Դեկտեմբեր 1995, Տ՝ 17 Յունիս 2017:

78. *Արուեստ քերթութեան 31. Կորսուած օրեր – կորսուած հնչեակը*: Գ՝ 4 Սեպտեմբեր 1992, Տ՝ 19 Յունիս 2017:

79. *Արուեստ քերթութեան 32. Վերստին սկիզբը*: Գ՝ 8 Փետրուար 1994, Տ՝ 22 Յունիս 2017:

80. *Արուեստ քերթութեան 33. Վիճակագրութիւն*: Գ՝ 3 Յունիս 1994, Տ՝ 25 Յունիս 2017:

81. *Արուեստ քերթութեան 34. Անճանաչելին*: Գ՝ 12 Փետրուար 1995, Տ՝ 29 Յուլիս 2017:

82. *Արուեստ քերթութեան 35. Անուղղան*: Գ՝ 10 Յունուար 1996, Տ՝ 2 Յուլիս 2017:

83. *Արուեստ քերթութեան 36. Ջատագովում թարգմանութեան*: Գ՝ 6 Մարտ 1996, Տ՝ 5 Յուլիս 2017:

84. *Արուեստ քերթութեան 37. Պատկեր հնչեակի*: Գ՝ 17 Յունուար 1995, Տ՝ 8 Յուլիս 2017:

85. *Արուեստ քերթութեան 38. Հնչեակի կարօտ*: Գ՝ 1 Հոկտեմբեր 1994, Տ՝ 11 Յուլիս 2017:

86. *Արուեստ քերթութեան 39. Սփինքսի փոխաբերութիւնը*: Գ՝ 14 Մայիս 1995, Տ՝ 17 Յուլիս 2017:

87. *Արուեստ քերթութեան 40. Դարձուածքը*: Գ՝ 2 Յունուար 1997, Տ՝ 18 Յուլիս 2017

**Դ. Արձակ բանաստեղծութիւններ, ստորագրութիւն՝ Ոյժ**

1-32. *Հազարումէկ գիշերներու երազներ (1-303)*: Տ՝ 19 Սեպտեմբեր 2016 – 20 Սեպտեմբեր 2017:

**Ե. Թարգմանութիւններ, թարգմանիչի ստորագրութիւն՝ Ոյժ**

**ա. Արաբերէնէ հայերէն**

1. Ամալ Տոնքոլ, *Ծնունդք*: Թ՝ 28 Օգոստոս 2016, Տ՝ 7 Սեպտեմբեր 2016:

2. Ահմատ Ապտէլ-Մոթի Հեկազի, *Որսաքերթուած*: Թ՝ 11 Սեպտեմբեր 2016, Տ՝ 13 Սեպտեմբեր 2016:

3. Սալահ Ճահին, *Քառասուն քառեակ*: Թ՝ 18 Սեպտեմբեր 2016, Տ՝ 22 Սեպտեմբեր 2016:

4. Նակիպ Մահֆուզ, *Մահֆուզի երազները*: Տ՝ 27 Յունիս 2016:

**բ. Անգլերէնէ հայերէն**

5. Ռոպըրթ Պրաունինկ, *Սրբազանը իր դամբարանը կ'ապսպրէ Ս. Պրակսէտի եկեղեցւոյն մէջ Հռոմ, 15- (1845)*: Թ՝ Յուլիս 2016, Տ՝ 23 Յուլիս 2016:

6. Քոնսթանթին Քավաֆի, *Քերթուածներ*: Թ՝ 30 Օգոստոս 2016, Տ՝ 31 Օգոստոս 2016:

7. Ուիլլըմ Պլէյք, *Հիւանդ վարդը*: Թ՝ 3 Սեպտեմբեր 2016, Տ՝ 3 Սեպտեմբեր 2016:

8. Ու. Հ. Օտըն, *Գեղարուեստից թանգարան*: Թ՝ 6 Սեպտեմբեր 2016, Տ՝ 9 Սեպտեմբեր 2016:

9. Ի. Ի. Գամինկզ, *Ոեւէն*: Թ՝ 8 Սեպտեմբեր 2016, Տ՝ 13 Հոկտեմբեր 2016:

10. Ուիլլըմ Ուըրծուըրթ, *Կ'ապրէր անկոխ ճամբու մը մօտ*: Թ՝ 14 Սեպտեմբեր 2016, Տ՝ 14 Սեպտեմբեր 2016:

11. Էտկար Ալան Փօ, *Երազ երազի մէջ*: Թ՝ 22 Սեպտեմբեր 2016, Տ՝ 23 Սեպտեմբեր 2016:

12. Ի. Ի. Գամինկզ, *Ծիծերուն մէջտեղ*: Թ՝ 13 Հոկտեմբեր 2016, Տ՝ 15 Հոկտեմբեր 2016:

Ռոպըրթ Ֆրոսթ, *Պատերու նորոգում*: Թ՝ 17 Հոկտեմբեր 2016, Տ՝ 18 Հոկտեմբեր 2016:

13. Ի. Ի. Գամինկզ, *Անձրեւոտ ըլլալով կոր*: Թ՝ 18 Հոկտեմբեր 2016, Տ՝ 19 Հոկտեմբեր 2016:

14. Ռոպըրթ Պրաունինկ, *Իմ վերջին դքսուհին. Ֆէրարա*: Տ՝ 3 Յուլիս 2016:

(Կից՝ ինքնուրոյն բանաստեղծութիւն. *Առաջին դքսուհիս. Ժէրար*: Տ՝ 3 Յուլիս 2016:)

15. Էտուըրտ Ֆիցճերըլտ, *Օմար Խայեամի քառեակները (ընտրանի)*: Տ՝ 9 Յուլիս 2016:

16. Թ. Ս. Էլիոթ, *Մոգերու ճանապարհորդութիւնը*: Տ՝ 2 Օգոստոս 2016:

**գ. Անգլերէն-լատիներէնէ հայերէն**

17. Կայիուս Վալերիուս Կատուլուս, *Ապրինք, իմ Լեսբիաս, եւ աւելի սիրենք*: Տ՝ 9 Սեպտեմբեր 2017:

18. Կայիուս Վալերիուս Կատուլուս, *Ծնճղո՛ւկ, սիրելւոյս սիրելին*: Տ՝ 10 Սեպտեմբեր 2017:

19. Կայիուս Վալերիուս Կատուլուս, *Սգացէ՛ք, դիցուհիք ու դիք*: Տ՝ 11 Սեպտեմբեր 2017:

20. Կայիուս Վալերիուս Կատուլուս, *Ֆլավիուս, սիրելին կատուլուսի*: Տ՝ 23 Սեպտեմբեր 2017:

21. Կայիուս Վալերիուս Կատուլուս, *Լաւ մը կ'ընթրես, Ֆաբուլուս, տանս մէջ*: Տ՝ 27 Սեպտեմբեր 2017:

22. Կայիուս Վալերիուս Կատուլուս, *Խնդրեմ, իմ քաղցրր Իպսիթիլա*: Տ՝ 30 Սեպտեմբեր 2017:

23. Կայիուս Վալերիուս Կատուլուս, *Սուֆէնուսն այդ, Վարուս, ծանօթ քեզի*: Տ՝ 5 Հոկտեմբեր 2017:

24. Կայիուս Վալերիուս Կատուլուս, *Անձն իմ ու սիրածն իմ, կը վստահիմ քեզի*: Տ՝ 8 Հոկտեմբեր 2017:

25. Կայիուս Վալերիուս Կատուլուս, *Սպառած թէեւ կսկիծիս անդուլ ցաւէն*: Տ՝ 21 Հոկտեմբեր 2017:

26. Կայիուս Վալերիուս Կատուլուս, *Բազում երկիրներէ ու ծովերէ տարուած*: Տ՝ 24 Հոկտեմբեր 2017:

27. Կայիուս Վալերիուս Կատուլուս, *Յառաջագոյնը բաղնիքի գողերուն*: Տ՝ 28 Հոկտեմբեր 2017:

28. Կայիուս Վալերիուս Կատուլուս, *Երէկ, Լիսինիուս, անհոգ օր էր*: Տ՝ 31 Հոկտեմբեր 2017:

29. Կայիուս Վալերիուս Կատուլուս, *Կը հարցնես՝ քանի՞ն համբոյրներէդ*: Տ՝ 6 Նոյեմբեր 2017:

30. Կայիուս Վալերիուս Կատուլուս, *Քունեմ երկուքդ ալ, վարէն ու վերէն*: Տ՝ 10 Նոյեմբեր 2017:

Ընդամէնը՝ 163 միաւոր (տեղադրուած մինչեւ 13 Նոյեմբեր 2017), բովանդակելով 32 տարուայ ստեղծագործական ժամանակաշրջան մը (1985-2017): Անոնք կը հրապարակուին առաջին անգամ: Անշուշտ, աւելորդ է ըսել, որ համացանցային պլոկ մը ժամանակաւոր է՝ կրնայ տեւել 20, 30 կամ աւելի տարիներ, բայց վերջապէս ենթարկուած է խափանումի: Գազանճեանի գործերուն տպագրութիւնը կամ թուային գիրքի վերածումը (pdf ձեւաչափով) կրնայ ապահովել անոնց յարատեւութիւնը:

(Շար. 3/7)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

21. https://hayerenblog.wordpress.com/:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير

جريدة أسبوعية

ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR

Armenian Weekly



P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com



Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1804 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 14 ԴԵԿՏԵՄԲԵՐ 2017 ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٨٠٤ الخميس ١٤ ديسمبر ٢٠١٧


## ԽՆԴՐԱԳԻՐ
## ԱՄՈՒԼՍԱՐԻ ՀԱՆՔԸ ՉԻ ՇԱՀԱԳՈՐԾՈՒԵԼՈՒ

**Ստորագրէ՛նք եւ տարածէ՛նք այս դիմում-պահանջագիրը: Կշեռքի նժարներին են դրուած մի կողմից Ամուլսարի ոսկու չատ կասկածելի պաշարներից իբր թէ սպասուող եկամուտները, իսկ միւս կողմից մեր քաղցրահամ եւ հանքային ջրերի կարեւորագոյն պաշարների անվտանգութիւնը՝ Սեւանայ Լիճ, Ջերմուկ, Կեչուտի եւ Սպանդարեանի ջրամբարներ, Որոտան, Արփայ եւ Դարբ գետեր:**

Հայաստանի Հանրապետութեան ոչ լեգիտիմ վարչակազմը, միջազգային կապիտալի շահերը պաշտպանող մասնաւոր եւ միջազգային հաստատութիւնների անմիջական մասնակցութեամբ՝ տեղի չտալով Հայաստանի Հանրապետութեան քաղաքացիների բազմաթիւ ահազանգերին, դիմադրութեանն ու բողոքներին, շարունակում է առաջ մղել բուժիչ հանքային ջրերով հայտնի, առողջարանային եւ ընտանեկան հանգստի եզակի վայր համարուող Ջերմուկ քաղաքի անմիջական հարեւանութեամբ գտնուող Ամուլսարի ոսկու հանքավայրի շահագործման ծրագիրը:

Մեծ Բրիտանիայի օֆշորային Ջերսի կղզում գրանցուած Լիդիան Ինթերնեշընըլ ընկերութիւնը նախատեսել է ընդամէնը 10 տարուայ ընթացքում.

- ապականել Ջերմուկի միջավայրն ու տասնեակ տարիների ընթացքում ձեռք բերած յայտնի առողջարանային կենտրոնի իր համբաւը,

- հանքի թթուային ապարների դրենաժի արդիւնքում վտանգել Որոտան-Արփայ-Սեւան ջրատար թունէլն ու տարածաշրջանի քաղցրահամ ջրերի խոշորագոյն պաշար հանդիսացող Սեւանայ Լիճը, ինչպէս նաեւ Որոտան եւ Արփայ գետերի աւազանները՝ Սպանդարեանի եւ Կեչուտի ջրամբարների հետ միասին,

- վերացնել եզակի եւ վտանգուած բուսատեսակների եւ կենդանատեսակների բնակատեղի ու էկոմիգրացիայի միջանցք համարուող Ամուլսարն՝ իր Արտաւազդ, Տիգրան եւ Էրատո գագաթներով,

- ոչնչացնել Վայոց Ձորի զբօսաշրջային ու գիւղատնտեսական ներուժը,

- խաթարել Ջերմուկի սոցիալական հիւսուածքը, զրկել կանանց զբօսաշրջային, առողջապահական եւ գիւղատնտեսական ոլորտում ներկայիս աշխատանքից ու մղել նրանց սեռական շահագործման շուկայ,

- անուղղակիօրէն տեղահանել Գնդեվազ գիւղը, որից ընդամէնը 1 կմ հեռաւորութեան վրայ նախատեսուած է տեղադրել 120 հեկտար տարածք զբաղեցնող թունաւոր ցիանիդի միջոցով ոսկու տարալուծման հարթակը՝ վերջում Հայաստանին «ընծայելով» ծանր եւ վտանգաւոր մետաղներով հարուստ 100 միլիոն տոննա թունաւոր թափօն:

**Այս եւ փորձագէտների կողմից բազմիցս նշուած ու հաստատուած չատ այլ աղէտաբեր պատճառներով մենք՝ Հայաստանի եւ Երկիր մոլորակի էկոլոգիայով մտահոգ եւ առողջ միջավայրում ապրելու մեր իրաւունքը պաշտպանող քաղաքացիներս, Հայաստանի անպատասխանատու պաշտօնեաներին, բնութեան եւ ներկայ ու ապագայ սերունդների գոյատեւման հաշուին դրամական շահ ստացող հանքարդիւնաբերողներին ուղղում ենք մեր յստակ ուղերձը՝ «Ո՛Չ ՄԻ ՆՈՐ ՀԱՆՔ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ, ԱՄՈՒԼՍԱՐԻ ՀԱՆՔԸ ՉԻ՛ ՇԱՀԱԳՈՐԾՈՒԵԼՈՒ»:**

Հայաստանի կառավարութիւնից պահանջում ենք վերանայել բնապահպանական հիմնաւոր գնահատում չանցած եւ օրէնքի ակնյայտ խախտումներով տրուած թոյլտուութիւնները եւ անյապաղ դադարեցնել այս գործընթացը:

Համաշխարհային Բանկի անդամ Միջազգային Ֆինանսական Կորպորացիայից (IFC) պահանջում ենք դադարեցնել հանքի շահագործման համար խոստացուած ֆինանսաւորումը եւ ձերբազատուել օֆշորային գօտում գրանցուած եւ որեւէ հանքարդիւնաբերական փորձ չունեցող Լիդիան Ինթերնեշընըլ ընկերութեան բաժնետոմսերից: Նոյնը պահանջում ենք նաեւ Վերակառուցման եւ Զարգացման Եւրոպական Բանկից (EBRD):

Հանքարդիւնաբերութեան ոլորտում ներդրումներով զբաղուող Orion Mine Finance եւ Resource Capital Funds ընկերութիւններից պահանջում ենք հրաժարուել Ամուլսարի ոսկու հանքավայրի ծրագրի ֆինանսաւորումից:

Մենք հաստատակամ ենք մեր պահանջներում եւ թոյլ չե՛նք տալու Հայաստանի հերթական հանքարդիւնաբերական աւերն ու էկոլոգիական, տնտեսական եւ կենսական այս սպառնալիքի իրագործումը: Մենք բոլորս պատասխանատու ենք մեր, ապագայ սերունդների եւ բնութեան առջեւ:

Ամուլսարի հանքի մասին աւելի մանրամասն կարելի է կարդալ այստեղ՝

http://www.armecofront.net/lrahos/amulsar/
http://ecolur.org/hy/news/amulsar/

Այս ստորագրահաւաքը տարածելու համար կարճ յղում - http://bit.ly/2dnNKIr

Հայկական Բնապահպանական Ճակատ (ՀԲՃ) քաղաքացիական նախաձեռնութիւն

* * *

Լրացում. 2017թ. Մայիսին **ՄՖԿ**-ն վաճառեց իր բոլոր բաժնետոմսերը եւ ներկայումս այլեւս Լիդիան ընկերութեան ծրագրի մէջ ներդրող չի հանդիսանում: **ՄՖԿ**-ն 2007թ.-ից ի վեր կատարել է $16.4 միլիոն դոլարի ներդրում Ամուլսարում Լիդիանի ոսկու հանքի ծրագրում եւ բաժնետիրական կապիտալ է ունեցել ընկերութիւնում մինչեւ 2017թ. Մայիս ամիսը:

Մեր նախաձեռնութեանը միացել են հետեւեալ կազմակերպութիւնները (այն կազմակերպութիւնները, որոնք կը ցանկանան միանալ, կարող են կապուել մեզ հետ՝ գրելով armecofront@gmail.com էլեկտրոնային փոստին).

1. Հայաստանի Կանաչների Միութիւն, 2. Էկոլոգիական Հասարակական Դաշինք, 3. Էկոլոգիական Հասարակական Միութիւն ՀԿ, 4. Էկոլոգիական Ակադեմիա ՀԿ, 5. Ա.Դ.Սախարովի անուան Մարդու Իրաւունքների Պաշտպանութեան Հայկական Կենտրոն ՀԿ, 6. Շրջակայ Միջավայրի Կայունութեան Աջակցման Կենտրոն ՀԿ, 7. Ջերմուկի Զարգացման Կենտրոն ՀԿ, 8. Հանրային Դիւանագիտութիւն բարեգործական ՀԿ, 9. Համայնքային Համախմբման եւ Աջակցութեան Կենտրոն ՀԿ, 10. Հայաստանի Կանաչների Կուսակցութիւն, 11. Բիոսոֆիա ՀԿ, 12. ԲԼԵՋԱՆ բնապահպանական, սոցիալական, բիզնէսի աջակցութեան ՀԿ, 13. Յանուն Կայուն Մարդկային Զարգացման ասոցիացիա, 14. Կայուն Զարգացում ՀԿ, 15. Մարտունու Կանանց Համայնքային Խորհուրդ ՀԿ, 16. Հայք Նախագիծ – ԱՄՆ, 17. moretreeslessas sholes.org Բնապահպանական կայք – Բելգիա, 18. Իսպանահայերի Միութիւն – Բարսելոնա, 19. Սփիւռքի Հայկական Վերածնունդ շարժման Նիւ Եորքի, Լոս Անջելեսի, Փարիզի, Բելգիայի մասնաճիւղեր, 20. Երրորդ Բնութիւն ՀԿ, 21.Գիւմրու Առաջընթաց ՔՀԶԿ ՀԿ, 22. Սպառողների Աջակցման Կենտրոն ՀԿ, 23. Ծողեր Միութիւն ՀԿ, 24. Հայկական Սահմանադրական Իրաւապաշտպան Կենտրոն ՀԿ, 25. Սիւնիքի մարզի հաշմանդամների Խարիսխ ՀԿ, 26. Մինասեան առողջապահական-բարեգործական հիմնադրամ, 27. Արմհայքինգ քայլարշաւային տուրիզմի կենտրոն ՀԿ, 28. Երկիր Ծիրանի կուսակցութիւն, 29. Երիտասարդ Ինժեներների Ասոցիացիա ՀԿ, 30. Կայտբորդինգի Զարգացման Կենտրոն ՀԿ:

change.org

ԳԱՀԻՐԷ

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Այսու կը տեղեկացնենք թէ Ուրբաթ, 1 Դեկտեմբեր 2017-ին, ներկայութեամբ 22 երեսփոխաններու, գումարուեցաւ Գահիրէի Պատկառելի Թեմական Ժողովի 2017-ի երկրորդ նիստը:

Ժողովը բացուեցաւ Առաջնորդ Սրբազան Հօր աղօթքով, ապա տեղի ունեցաւ Թեմական Ժողովի դիւանի ընտրութիւնը: Ըստ այդմ, անդամներ ընտրուեցան.

| | | |
|---|---|---|
| Տեարք՝ | Նուպար Սիմոնեան | Ատենապետ |
| | Օննիկ Պըլըքտանեան | Փոխ-Ատենապետ |
| Տոքթ. | Սուրէն Պայրամեան | Ատենադպիր |

Օրակարգային նիւթերու շարքին ներկայացուեցաւ նախորդ Քաղաքական Ժողովին երկամեայ շրջանի առաջին տարուան՝ 27 Նոյեմբեր 2015-էն մինչեւ 31 Դեկտեմբեր 2017 շրջանի գործունէութեան տեղեկագիրը եւ 2016-ի հաշուեկշիռը:

Ժողովը քննարկեց նաեւ կալուածական կարգ մը հարցեր:

Ուրախութեամբ կը տեղեկացնենք նաեւ որ սոյն նիստին, ընդառաջելով Տիար Օննիկ Պըլըքտանեանի եւ իր քրոջ՝ Ալին Պըլըքտանեան-Ճիզմէճեանի փափաքին, հաստատուեցաւ «Արթօ եւ Այտա Պըլըքտանեան Հիմնադրամ»-ը՝ 150,000 Ե.Ո. (հարիւր յիսուն հազար) գումարով, եւ վաւերացուեցաւ նաեւ անոր կանոնագիրը: Սոյն Հիմնադրամին նպատակն է քաջալերական գումարներ յատկացնել Գահիրէի Գալուստեան-Նուպարեան Ազգային Վարժարանի շրջանաւարտ դասարաններու գերազանց աշակերտներուն:

Նիստին վերջաւորութեան, յետ գաղտնի քուէարկութեան, տեղի ունեցաւ նոր Քաղաքական Ժողովի ընտրութիւնը, որմէ ետք, նորընտիր անդամները իրենց առաջին նիստը գումարեցին Առաջնորդ Գերշ. Տ. Աշոտ Եպիսկոպոսի նախագահութեամբ եւ ընտրեցին դիւանը:

Նորընտիր սոյն Ժողովին կազմը եւ դիւանը պիտի գործեն երկու տարուայ շրջանին համար՝ 1 Դեկտեմբեր 2017-էն մինչեւ 30 Դեկտեմբեր 2019:

| | | |
|---|---|---|
| Տեարք՝ | Բլատեան Վահէ | Ատենապետ |
| | Կապէյեան Շանթ | Փոխ Ատենապետ |
| | Վարժապետեան Կարօ | Ատենադպիր |
| | Աւանեան Գէորգ | Գանձապահ |
| | Կրպոյեան Գառնիկ | Խորհրդական |
| | Հալաճեան Պերճ | Խորհրդական |
| | Տեփոյեան Սիմոն | Խորհրդական |

ԴԻՒԱՆ
ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

*Ջահակիրի* խմբագրութիւնը կը շնորհաւորէ Գահիրէի Թեմական Ժողովի դիւանը եւ նորընտիր Քաղաքական Ժողովի անդամները, անոնց կը մաղթելով յաջող գործունէութիւն

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՓՈՂԵՐԸ ԴՈՒՐՍ ԵՆ ԳՆՈՒՄ. ՀՈԿՏԵՄԲԵՐԻՆ ԿՏՐՈՒԿ ԱՒԵԼԱՑԵԼ Է ՀԱՅԱՍՏԱՆԻՑ ԿԱՊԻՏԱԼԻ ԱՐՏԱՀՈՍՔԸ. *ԺՈՂՈՎՈՒՐԴ*

*Ժողովուրդ* օրաթերթը գրում է. «Այս տարուայ Հոկտեմբերին կտրուկ աւելացել է Հայաստանից կապիտալի արտահոսքը: *Ժողովուրդ* օրաթերթը պաշտօնական փաստաթղթերից տեղեկացաւ, որ մասնաւոր փոխանցումների միջոցով Հայաստանից Հոկտեմբերին դուրս է բերուել 115 միլիոն 706 հազար դոլար: Սա վերջին մի քանի տարուայ մէջ ամենաբարձր ցուցանիշն է, ընդ որում, վերջին ամիսներին կապիտալի արտահոսքը գնալով աւելացել է: Ի դէպ, Հայաստանից արտերկիր փոխանցուած գումարներից ամենաշատը դէպի Ռուսաստան փոխանցումներն են: ⇨ 2

# ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԵԱՆ ՄԸ ԱՌԻԹՈՎ՝ *ՅԱԿԻՆԹԻ ՊԱՐՏԷԶԸ*
# ՀԵՂԻՆԱԿ՝ ՎԱՐԱՆ ՈՅԺ

**Յ. ԱՒԱԳԵԱՆ**

**ՅԱԿԻՆԹԻ ՊԱՐՏԷԶԸ**

Ըստ յիշատակուած թուականին, բանաստեղծը *Յակինթի պարտէզը* գրած կամ աւարտած է 1994 Սեպտեմբեր 17-ին: Բաղկացած է վեց մասէ՝ «Ծնճղուկներու վերադարձը», «Գիրքին հեղինակութիւնը», «Էականն ու զարտուղին», «Յաւերժական ցնծութիւն», «Հայր իմ որ յերկրի ես» եւ «Յակինթի պարտէզը»:

Արդիապաշտ աքատեմականները այնտեղ պիտի փնտռեն՝ սեռային (ժանրային) եւ ոճական առանձնայատկութիւններ, ամուր կամ տկար կառուցուածք, թարմ կամ հինցած գաղափարներ, հետաքրքրական կամ անհետաքրքրական լուծումներ, ինքնատիպ կամ ոչ-ինքնատիպ մօտեցումներ, եւ այլն, որպէսզի վերջապէս կատարեն գործին թուանշային չափանշումը՝ վատ, լաւ, շատ լաւ կամ գերազանց, եւ բանաստեղծին շնորհեն դասակարգային կարգաւորում՝ անտաղանդ, տաղանդաւոր կամ հանճարեղ:

Այս տարի վերահրատարակուած *Յտեսութիւն, ծիտ* վէպի վերջաւորող հատուածներէն մէկուն մէջ, Արամ Պաչեան կը հարցնէ. «Կապիտալիզմի համակենտրոնացման ճամբարներում կը կարողանա՞յ վերապրել այն գրականութիւնը, որը (ձանձրալի է), (չի սպառւում), (Նորաձեւ չէ), (Originality չէ), (Հանճարեղ չէ), (անկրկնելի չէ), (ցնցող չէ), (Ան-թարմանելի է): «Մօտ լինելով Սոնթագին»:»(22)

Այս ամէն «չէ»-երն ու «է»-երը կրնան վերաբերիլ Վարան Ոյժի բանաստեղծութեան, ինչպէս նաեւ նոյն հատորին մէջ հրատարակուած այլ ժամանակակից գործերու:

Բանաստեղծը չի փնտռեր մասնաւոր ընթերցող մը, ան իր միտքը չի սեւեռեր հասկնալի դառնալու համար:

Զկայ կեդրոնական գաղափար մը՝ որուն շուրջ կը դառնայ եւ որուն անպայմանօրէն կ'ուզէ հասնիլ բանաստեղծը: Կարելի չէ կանգ առնել մէկ կէտի վրայ, կամ մէկ գաղափար մը ընդունիլ իբրեւ կեդրոնական, այլ կարելի է գտնել իրերահիւսուած գաղափարներ, զանազան գաղափարներու համադրութիւններ, գաղափարներ՝ որոնք կրնան տեւել ընդամէնը մէկ տող: Քիչ մը կրնան նմանիլ Տրպիւսսիի *Փրելիւտ*ներուն, ուր ընդամէնը մէկ հատած մը կրնայ ներկայացնել կառուցուածքային ամբողջ մաս մը:

*Յակինթի պարտէզ*էն երեք տարի առաջ ունեցած հարցազրոյցի մը ընթացքին Գազանճեան մտորումները կ'արտայայտէ իր սեփական բանաստեղծութիւններուն նկատմամբ.

«[1985-ին] կը սկսի եւ մինչեւ այսօր կը շարունակուի իմ նորագոյն շրջանը՝ բանաստեղծութիւններու, որոնք՝

«ա.- ընդհարումներ են գոյութեան հետ, եւ կը ջանան փրցնել ու տողերու մէջ առանձնացնել ինչ որ կարելի է, այդպէսով ալ զօրանալով հետզհետէ, կարենալ ընդհարելու համար գոյութեան հետ, որ խիրաքանչիւր ընդհարումէ կ'ահագնանայ:

«բ.- վերադարձներ են անցեալի կորսուած կեանքին, ընկալումներ՝ դիւաբեկ յիշատակներուն, եւ մշտասեւեռ խորհրդածութիւններ, որովհետեւ ինչո՞ւ ապրիլ, եթէ ապրուածը կորսուած է:

«գ.- անդրադարձներ են առօրեային, ուղղակի առնչուած ըլլայ անձին, կամ ոչ:»(23)

**ԵԶԱԿԻ ԱՌԱՋԻՆ ԴԷՄՔԻ ՊԱՏՈՒՄԸ ԵՒ ԻՆՔՆԻ ԴԻՐՔՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ**

Բանաստեղծութիւնը գրուած է ազգակի առաջին դէմքով՝ Ես-ով: Եզակի առաջին դէմքի պատումին յաճախ կը դիմեն բանաստեղծները:

Ես-ը բաղկացուցիչ եւ անբաժանելի մասերէն մէկն է ինքնին (self), կարելի է ըսել, անոր արտայայտութիւնը: Ես-ը՝ երբ կը ներկայանայ իր փորձառութեան եւ բնականութեան ընդմէջէն, կը դառնայ խորապէս մեկնողական ու բացայայտիչ:

Հայ անարչիստ գրող Բարսեղ Շահպազ կու տայ հետաքրքրական բացատրութիւն մը. «Եսասիրութիւնը իբր բառ մնալով միշտ անփոփոխ, «Եսասիրութիւն», մարդոց հեղդ մտածողութիւնը զայն հասցուցած է չափազանցութեան շատ առտառոց սահմաններու եւ նոյնացուցած՝ եսամոլութեան, եսապաշտութեան եւ օտարատեցութեան հետ: Եւ ասի ա'յնքան ճշմարիտ է որ ֆրանսական մեծ բառգիրքեր ստիպուած կը զգան ինքզինքնին եսասիրութիւն (égoïsme) բառին դէմ դնել սա դիտողութիւնը. - «չշփոթել եսամոլութեան (égotisme) հետ:»(24) Ապա ան կ'աւելցնէ. «[Դ]րէ'ք անհատն ալ իր ինքնութիւնը, իր «ես»ը պահպանելու եւ զայն սիրելու վիճակին մէջ բնութեան պահանջածին պէս» եւ մարդիկ կը դառնան բարի ու այլասէր(25):

Ես-ը, իր այս տեսքին մէջ, կը բանայ անձնականութենէն անդին արտայայտիչ ներաշխարհ մը: Ընդհակառակը, ըստ գործածութեան եղանակին, բանաստեղծի մը «անկողմնակալ» դիտումները՝ իբր երրորդ կողմի դիտորդ, շատ աւելի վճռական Ես մը կրնան մատնել քան ուղղակիօրէն Ես-ով արտայայտուողները: Տիգրան Պասկեւիչեան կը մէջբերէ ու կը ծանօթագրէ Պարոյր Սեւակէն երկտող մը.

««Մարդ կայ՝ ելել է չալակն աշխարհի,
մարդ էլ կայ՝ աշխարհն է չալակած տանում».
ասում էր Սեւակ Պարոյրն՝
իր տեղն այդպէս էլ չճշտելով:»(26)

Զճշդել իր տեղը կը նշանակէ իր Ես-ը բարձր դասել երկուքէն: Երրորդ կողմ մըն է, որ կը տեսնէ ուրիշը՝ առանց գիտակցելու իր սեփական Ես-ին դիրքորոշումը:

Վարան Ոյժի Ես-ը շարժուն է, կը շարժի տարբեր առարկաներու մէջէն՝ տաճար, պատկեր, արձան, գերեզմանատուն, շիրիմ, անդրի, բանաստեղծութիւն, դրախտ, յակինթի պարտէզ, տա Վինչիի *Վերջին ընթրիքը*, ինչպէս նաեւ անձնականացումներու ընդմէջէն՝ Աստուած, Սիրանոյշ, Մարքի տը Սատ, տա Վինչի, Պելդրաֆիոյ, Յիսուս, Հիթլէր, Ֆարուք, Այզընհաուըր, Թալէաթ, Միթերան: Կը շարժի այս բոլորին ընդմէջէն, նաեւ կը շարժի ներսէն դուրս, Ես-էն դէպի առարկան եւ ոչ հակառակը:

Ես-երու այս բազմաբնոյթ կեցութիւնները յետարդիապաշտները պիտի անուանէին մասնատուած (fragmented) ինքն՝ դրական իմաստով, իբրեւ մասնակցութիւն արդիականութեան կեանքին: Ասիկա կարելի է ընդունիլ եթէ մոռացութեան մատնենք Ոյժի ենթակայէն դէպի առարկան գացող Ես-ը. անիկա յարմարուողական ես մը չէ՝ որ դիմացը կանգնած առարկաները կը տեղադրէ քով քովի, այլ ընտրողական Ես մըն է՝ որ առարկաները կ'ընտրէ ըստ ներքին համոզումներու, համոզումներ՝ որոնք կը շրջին մարդկային անհեթեթութիւնները, աւելորդ նշանաբանները, միտքի անիմաստ թափառումները մէջտեղ հանելու եւ «բանաստեղծականապէս» քննականացնելու շուրջ:

Վստահաբար ասիկա սեւակեան Ես-ը չէ.

«Ես - սրտիս մէջ Դարի Տառապանքը եւ հանճարի շունչը դարերի.

Ես - տրտմաթախիծ, ինչպէս օրը արեւից առաջ եւ խնդութեամբ ցամաք»:(27)

Կամ՝

«... Ես մի պոէտ, անյայտ տակաւին,
Խոհերի անտես մակոյկին նստած՝
Զգիտեմ արդեօք կը լինի՞ քամի,
Որ առաջ մղի իմ առագաստը,
Թէ ինքս պիտի չապիկն իմ՝ կայմին
Առագաստ չինեմ, նոր լինեմ վստահ,
Որ երգն իմ նորեկ, նաւը իմ գանձի
Պիտի ընթանայ օվկիաններն ի վեր
Եւ փոթորկածուփ ծովերում անծիր,
Որպէս գալիքի անմարմին նուէր,
Պիտի շնչով իր անանձնապատկան
Վառուի որպէս վէս, սրբազան պատգամ...»(28)

Այստեղ խօսողը կշռական, տիրական ու ինքնարտօնեալ Ես-ն է: Առաջին պարագային իր մէջ կրել կու տայ աշխարհի մտահոգութիւններն ու տառապանքները, կը խօսի համայն մարդկութեան անունով իբրեւ ամբողջատիրական իրականութիւն, երկրորդ պարագային համոզուած է բանաստեղծութեան, հետեւաբար *իր* բանաստեղծութեան, վէս ու սրբազան պատգամներուն, համոզուած է որ բանաստեղծութիւնը ուրիշներուն պատգամներ տալու կոչումը պէտք է ունենայ, հետեւաբար, բանաստեղծին ընծայելով դասակարգային հեղինակութիւն ու առաւելութիւն մը ուրիշներու նկատմամբ:

Ոյժի Ես-ը աւելի կը նմանի չարենցեան Ես-ին: 1924-ին, Զարենց, երկու քոնսթրուքթիւիստ ճարտարապետներու՝ Միքայէլ Մազմանեանի եւ Կարօ Հալաբեանի հետ, Մոսկուայի մէջ կը խմբագրէ *Ստանդարտ*ի միակ համարը, ուր, ի միջի այլոց, կը գրէ. «[Ա]րուեստի եւ գրականութեան այսօրուայ անելիքների մեր կուրսը առաջադրելիս մենք ելել ենք այն հիմնական տեսակէտից, որ պրոլետարիատի դիկտատուրայի ժամանակաշրջանում արուեստը պէտք է ոչ թէ արտացոլի, այլ ամենաակտիւ, ամենագործնական ու ամենաանմիջական ձեւով պայքարի:»(29) Ոչ թէ արտոցոլող է, այլ պայքարող, այսինքն՝ մասնակցող:

Պայքարող Ես-ը ամենավտանգաւորն է. զայն պէտք է սպաննէ սթալինիզմը, իր ծոցէն վտարէ հայկական գաղթօճախը: Պայքարող Ես-ը մասնակցողական Ես-ն է, որ ինքզինք կը զգայ իրերու դրութեան ներսը: Մինչդեռ ընտրելախաւերուն համար անհրաժեշտ է դուրսէն դիտող, իրերէն օտարացած Ես մը:

Ոյժի մօտ Ես-ը լեզուական պարտականութենէն կ'անցնի ենթակայական պարտաւորութեան ու պատասխանատուութեան: Գրականօրէն պարտականութիւն ստանձնելու համար Ես-ը կը տեղադրէ տարբեր երեւոյթներու մէջ՝ առարկաներու, դէմքերու, մարդկային խումբերու, արուեստի գործերու, եւ ներքնականապէս կը կապուի անոնց հետ:

Ահաւասիկ *Յակինթի պարտէզ*էն քառատող մը.

«Խորհրդաւոր Ընթրիքը» որմնակերտի համար
Տարիներով փնտռած ու երազած
Եւ վերջապէս փոքրիկ մի կտաւի վրայ
Մեզ յիշատակ թողած Յիսուսը, Պելդրաֆիոն, **Ես**: (Թաւատառ Ես-ը հեղինակինն է:)(30)

Ես-ը տա Վինչիի *Խորհրդաւոր ընթրիքը* ընկալողի դերը չէ որ կը ստանձնէ, այն անձը չէ՝ որ հմայուող, անձայն ու հնազանդ թանգարանային դիտորդի դիրք կը գրաւէ, եւ պարզապէս իբրեւ այդպիսին որմնանկարը կ'անցնի իր դիտակի ընդմէջէն ու ↳ 4

**ԳԱՀԻՐԷ**

## ԱՐՓԻ ՃԱՆԻԿԵԱՆ ԿԸ ՆՈՒԱԳԷ




Զորեքշաբթի, 2017 Դեկտեմբեր 6-ի երեկոյեան ժամը 7:30-ին, Հելիոպոլսոյ Պազիլիք եկեղեցիին մէջ տեղի ունեցաւ Ծննդեան տօնակատարում՝ *Worship the King at the Basilica,* կազմակերպութեամբ Հելիոպոլսոյ Համայնքային եկեղեցիին (Heliopolis Community Church) եւ Սէն Քլէրս եկեղեցիին: Շուրջ մէկ ու կէս ժամ տեւող անգլերէն տօնակատարութեան ընթացքին տեղի ունեցան խմբերգներ՝ ներկայ հասարակութեան մասնակցութեամբ, մեներգներ, ջութակի, թաւջութակի եւ կիթառի նուագներ: Ամբողջ տեւողութեան երգեհոնի բանիմաց նուագակցութեամբ ու մենանուագով հանդէս եկաւ եգիպտահայ յայտնի դաշնակահարուհի, մանկավարժուհի, Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցիի գլխաւոր երգեհոնահարուհի օր. Արփի Ճանիկեան:

## ՓՈՂԵՐԸ ԴՈՒՐՍ ԵՆ ԳՆՈՒՄ. ՅՈԿՏԵՄԲԵՐԻՆ ԿՏՐՈՒԿ...

1 ↳

Ընդհանուր Ռուսաստան է փոխանցուել 43 միլիոն 696 հազար դոլար: Նշենք նաեւ, որ այս տարուայ Յունուար-Հոկտեմբեր ամիսներին Հայաստանից ֆիզիկական անձանց միջոցով ընդհանուր արտերկիր է փոխանցուել 814 միլիոն 218 հազար դոլար, նախորդ տարուայ նոյն ժամանակահատուածում այդ ցուցանիշը կազմել էր 641 միլիոն 139 հազար դոլար: Հայաստանից արտերկիր փոխանցումների կտրուկ աճի արդիւնքում արտերկրից ստացուած տրանսֆերտների դրական տարբերութիւնը կտրուկ նուազել եւ կազմել է ընդամէնը 47.3 միլիոն դոլար՝ անցած տարուայ 60.4 միլիոն դոլարի դիմաց: Ի դէպ, այս տարուայ տասն ամիսների արդիւնքներով տրանսֆերտների ընդհանուր չափը կազմել է 583 միլիոն 503 հազար դոլար, անցած տարի այդ ցուցանիշը եղել է 556 միլիոն 540 հազար դոլար»:

ԳԱՀԻՐԷ

# ՀԱՅԿԱԿԱՆ ԼՈՒՐԵՐ

**ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 27 ՆՈՅԵՄԲԵՐ 2017**

Հելիոպոլսոյ Երեխաներու Քաղաքակրթութեան եւ Ստեղծագործութեան Կեդրոնին (Children's Civilization and Creativity Center) մէջ տեղի ունեցաւ շնորհանդէսը կոմսուհի Ամելի տ'Արշօ Շունհովէնի (Amélie d'Arschot Schoon- hoven) ֆրանսերէն գիրքին՝ *Հելիոպոլսոյ վէպը* (Le Roman d'Héliopolis) (Bruxelles: Avant-Propos, 2017, 208 էջ):




Շնորհանդէսը կազմակերպած էին Հելիոպոլիս Ընկերութիւնը եւ Պելճիքայի Դեսպանատունը:

1905-ին պելճիքացի արդիւնաբերող Պարոն Ամբէն եւ եգիպտահայ գերհարուստ ձեռնարկատէր Պօղոս Նուպար փաշա հիմնած են Հելիոպոլիս թաղամասը: Promotion Generale Immobiliere En Europe SA-ի տնօրէնուհի՝ Ամելի տ'Արշօ, կը հանդիսանայ Պօղոս փաշայի մեծ թոռնուհին, որ Գահիրէ ժամանած էր մասնակցելու եւ բացատրութիւններով ելոյթ ունենալու շնորհանդէսին:



*ՀՄԸՄ Նուպար մարզադաշտ: Ձախէն՝ Կարօ Վարժապետեան եւ կոմսուհի Ամելի տ'Արշօ:*



*Նուպարեան Ազգային Վարժարան: Ձախէն՝ կոմսուհի Ամելի տ'Արշօ եւ տնօրէն Սիմոն Չամքերթէնեան:*

Ան Կարօ Վարժապետեանի ուղեկցութեամբ այցելեց ՀՄԸՄ Նուպար մարզադաշտը եւ իր մեծ մեծհօր հիմնած Նուպարեան Ազգային Վարժարանը:

**ԿԻՐԱԿԻ, 3 ԴԵԿՏԵՄԲԵՐ 2017**

Գահիրէի JW Marriott պանդոկին մէջ, չորրորդ տարին ըլլալով *Նէսֆ էլ-Տոնիա* հանդէսը կազմակերպեց տարեկան Խոհանոցի Փառատօնը, հովանաւորութեամբ Ալ-Ահրամ Ընկերութեան եւ իր դուստր ընկերութեան՝ Ալ-Ահրամ Ծանուցումի Գործակալութեան, եւ համագործակցութեամբ Եգիպտոսի Զբօսաշրջիկութեան եւ Մշակոյթի Նախարարութիւններուն:




*Ձախէն՝ Արբի Ղարախան, ՀՀ դեսպան Արմէն Մելքոնեան եւ Սեդրակ Մամուլեան:*

Այս տարի մասնակցեցան 15 երկիրներու խոհարարներ՝ ներկայացնելով իրենց ազգային ճաշերը: Անոնց մէջ կը գտնուէին Հայաստանէն ժամանած երկու խոհարարներ՝ Սեդրակ Մամուլեան (աւագ խոհարար) եւ Արբի Ղարախանի (օգնական խոհարար): Միւս երկիրներն էին՝ Քամերուն, Չինաստան, Ֆրանսա, Վրաստան, Հնդկաստան, Լիբանան, Մեքսիքա, Մարոք, Քորէա, Փերու, Ռուսաստան, ԱՄՆ եւ Եգիպտոս:

Ներկայ էին Եգիպտոսի Գաղթականութեան նախարար Նապիլա Մաքրամ, Հնութիւններու նախարար Խալէտ էլ-Անանի, *Ալ-Ահրամ* օրաթերթի նախագահ եւ Լրագրողներու Միութեան նախագահ Ապտէլ Մոհսէն Սալամա եւ այլ հանգամանաւոր անձեր: Ներկայ էին եգիպտահայ գաղութի շուրջ 30 ղեկավարներ:

---

ԽՈՀԵՐ

# ՇԱՀԵԿԱՆ ՀԱՐՑԱԶՐՈՅՑ ՆԱԽԱԳԱՀԻՆ ՀԵՏ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Նոյեմբեր 24-ին, Հայաստան ստորագրեց համագործակցութեան չրջանակային համաձայնագիր Եւրամիութեան հետ:

Հայաստանի կառավարութիւնը քննարկումի ներկայացուցած է *Ընտանեկան բռնութեան մասին* օրէնքին նախագիծը:

Եւ նման բաներ:

Այս հարցերուն մասին *Զորրորդ իշխանութիւն* հարցազրոյց մը վարեց երկրի նախագահին հետ, զոր խորագրեց «Բլից-վիրտուալ» եւ հրապարակեց Դեկտեմբեր 1 թիւին մէջ: Իր շահեկանութեան համար «Խոհեր» ամբողջութեամբ եւ նոյնութեամբ կ'արտատպէ զայն:

* * *

**– Պրն նախագահ, հիմա փաստօրէն Դուք եւրոպացի է՞ք:**

– Հէրիք չի՞ սեպ խրէք՝ հայաստանցի, ղարաբաղցի, եւրոպացի... Ես տեղացի եմ, որը որպէս ղարաբաղցի դառնալով հայաստանցի՝ ասոցացւում է, որ դառնայ եւրոպացի: Լաւ ասացի՞:

**– Հիմա Դուք շարունակելու էք Ձեր մերձաւորների միջոցով թալանել երկիրն ու միլիարդնե՞ր կուտակել, թէ՞ առաջնորդուելու էք եւրոպական արժէքներով:**

– Էդ ի՞նչ հարց էր: Հազար անգամ ասել եմ՝ ես կողմ եմ «եւ, եւ»-ի տարբերակին:

**– Իսկ Ձեր կուսակցական ընկերներին հե՞շտ համոզեցիք, որ ճիշտը «եւ, եւ» տարբերակն է:**

– Եթէ ասէի «եւ, եւ»՝ ճիշտ չէին հասկանայ, ասեցի «համ, համ»՝ իմացան, թէ խօսքը ուտելու մասին է, արագ համաձայնուեցին:

**– Ուրիշ պրոբլէմներ չառաջացա՞ն:**

– Ի՞նչ պրոբլէմներ:

**– Դէ օրինակ՝ փոքրամասնութիւնների իրաւունքների պաշտպանութեան...**

– Հակառակը: Իրենք բոլորն էլ գիտեն, որ ընտրութիւնների արդիւնքներով ՀՀԿ-ն միշտ էլ փոքրամասնութիւն է կազմել... Հիմա վատ ա՞, որ մեր իրաւունքները պաշտպանուելու են:

**– Իսկ աւանդական ընտանեկան արժէքներ, բան...**

– Հա, մեր պատգամաւորները մի քիչ նեղուած էին, որ սրանից յետոյ չեն կարող հայր-մայր հայհոյել, պիտի առաջին ծնող-երկրորդ ծնող հայհոյեն, բայց ի վերջոյ համակերպուեցին:

**– Իսկ գենդէրային հաւասարութեան մասո՞վ:**

– Գիտէ՞ք, կուսակցութիւնում շատ առողջ բանավէճ եղաւ: Աշոտեանն էր զեկուցում, գեներալ Մանուէլը տեղից վեր թռաւ, ասաց «էդ ո՞ւմ ասիր գենդէր, արա'»:

**– Բացատրեցի՞ք:**

– Այո: Բացատրեցինք, որ իր հետ չէր, թուրքերի մասին էր ասում, անմիջապէս հանգստացաւ:

**– Լաւ, պրն նախագահ, հիմա համաձայնագրի ստորագրումից յետոյ Հայաստանում ի՞նչ պիտի փոխուի, ասենք՝ Սաշիկը պիտի դառնայ Ալեքս, Միշիկը՝ Մայքլ...**

– Լրիւ չափ ու սահման կորցրեցիր (սեղմում է կոճակը). մի հատ Վաչոյին կանչէք:

**– Պրն նախագահ, բայց արդէն եւրօասոցացուել ենք...**

– Հա, վայ, մոռացել էի... Վաչօ', մեզ երկու հատ կապուչինօ:

**– Լաւ, պրն նախագահ, շնորհակալութիւն հարցազրոյցի համար:**

– You are welcome:

* * *

«Խոհեր»-ը շատ խոհեցաւ ու խորհեցաւ, դրաւ-վերցուց, չափեց-ձեւեց, երկար բանակցեցաւ թերթիս խմբագրական խորհրդատուին հետ եւ վերջապէս յարմար գտաւ իր կողմէ նման հարցազրոյց վարել Սփիւռքի ղեկավար-նախագահի մը հետ՝ որ միշտ մեզի կ'ուրախացնէ իր անսպառ երգիծանքով... ճիշդ Սերժ Սարգսեանի նման: Վերջապէս *Զորրորդ իշխանութիւնը* անվնաս դուրս եկաւ այս հարցազրոյցէն՝ լրագիրը չփակուեցաւ, կրնայ ըլլալ ընթերցող ալ աւելցաւ: Հաստատապէս, «Խոհեր»-ը եւս անվնաս պիտի շարունակէ իր երթը:

---

*Մագումով հայ ֆրանսացի նուագավար եւ դաշնակահար Վահան Մարտիրոսեան հրաւիրուած էր Նոյեմբեր 9-ին ելոյթ ունենալու Գահիրէի Մանիալ Պալատի առաջին երաժշտական փառատօնին: Կեդրոնացում՝ ոչ-տիպական ուղիի մը վրայ:*

# «ՊԷՏՔ ՉԷ ՍԱՀՄԱՆՆԵՐ ՀԱՍՏԱՏԵԼ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՍԵՌԵՐՈՒ ՄԻՋԵՒ»

**ԱԼ-ԱՀՐԱՄ ԷՊՏՕ – Ծնած էք 1975-ին, Հայաստան, ուր եօթը տարեկանին սկսած էք ձեր դաշնակի դասերը: 1993-ին հաստատուած էք Ֆրանսա ընդունուելու համար Փարիզի Ազգային Երաժշտանոցը [Conservatoire national de Paris]: Ինչպէ՞ս ձեր արմատները ազդած են ձեր երաժշտական ինքնութեան վրայ:**

ՎԱՀԱՆ ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆ – Կրնամ ըսել, որ ես տեսակ մը կամուրջ եղած եմ երկու մշակոյթներու միջեւ՝ խորհրդահայ մշակոյթի եւ ֆրանսական մշակոյթի: Վերջինս դիմակայելով 17 տարեկանէս ի վեր, այսօր կատարելապէս մերուած եմ անոր հետ: Առիկա առիթ տուած է ինծի ստեղծելու երկու մշակոյթներու տեսակ մը խառնուրդ, թերեւս ստանալու համար նոր, մանաւանդ անձնական բան մը՝ հիմնուած բազմամշակութայնութեան վրայ:

**– Իբրեւ դաշնակահար կանոնաւորապէս կը հրաւիրուէիք կատարելու յայտնի նուագավարներու ճպոտին տակ: Ինչո՞ւ յետագային որոշեցիք դառնալ նուագավար:**

– Սկիզբէն ի վեր գոյութիւն ունէր այս փափաքը: Այսինքն, երաժշտական կրթութեան դիմելու նպատակս նուագավար դառնալն էր: Բայց քանի որ տակաւին շատ փոքր էի, ինծի բացատրեցին որ կարելի չէ մէկ օրէն միւսը դառնալ նուագավար այլ նախ եւ առաջ պէտք է դառնալ երաժիշտ, ուստի, անպայման սորվիլ նուագարան մը: Քանի որ տունը դաշնակ մը ունէինք, մայրս առաջարկեց սորվիլ այդ նուագարանը: Համատեղօրէն ուսանեցայ երաժշտահանութիւն [composition], ինչպէս նաեւ փողային նուագարան մը՝ օպոյա, որպէսզի մօտ ըլլամ նուագախումբի երաժիշտներուն: Սակայն քիչ ժամանակ ետք հեռացայ դաշնակէն եւ սկսայ նուագավարել: Ես կը հանդիսանամ ԽՍՀՄ-ի ամբողջ պատմութեան ամենէն երիտասարդ նուագավարը: 15 տարեկանիս արդէն պաշտօնով նուագավար էի: Ունէի Մշակոյթի Նախարարութեան կողմէ ընդունուած սենեկային երիտա-սարդական նուագախումբ մը: Օր մը, երբ իբրեւ դաշնակահար ելոյթ կ'ունենայի Հայաստանի Ֆիլհարմոնիք Նուագախումբին հետ, Ֆրանսայի դեսպանուհին նշմարեց զիս եւ առաջարկեց ինծի երթալ Ֆրանսա դաշնակի կրթութիւնս շարունակելու համար: Խանդավառուած, առաջ նետուեցայ թէ' իբրեւ դաշնակահար եւ թէ նուագավար: Արդարեւ, նուագավար դառնալու առաջին փորձս տեղի ունեցաւ ընդունելութեան քննութեան ժամանակ: Այդ ժամանակ մէկ բառ ֆրանսերէն չէի խօսեր, որուն պատճառով չկրցայ յաջողիլ քննութեան: Բայց ընդունուեցայ դաշնակի բաժին: Այսպէս, սկսայ ամէնուրեք ելոյթ ունենալ յայտնի նուագավարներու հետ, մինչեւ այն օրը երբ նուագեցի Ի. դարու ամենամեծ նուագավարներէն մէկուն՝ Քուրթ Մասուրի հետ: Ան հրաւիրեց ինծի Նիւ Եորք, իր հսկողութեան տակ հետեւելու նուագավարի վերապատրաստումի դասընթացքներուն: Գացի այնտեղ եւ հանդիսացայ այս դասընթացքը աւարտող առաջիններէն մէկը: Այսօր, դաշնակ կը նուագեմ ըստ պատեհութեան՝ հաճոյքի համար:



*Վահան Մարտիրոսեան*

**– 2008-ին իբրեւ երաժիշտ յայտնուեցաք սլամասաց [slameur] Grand Corps Malade-ի *Enfant de la ville* ալպոմի մէկ թիւին մէջ: Ունենալով դասական երաժշտութեան կազմաւորում, չէ՞ք տեսներ արդեօք որոշ անհամատեղելիութիւն մը:**

– Սկիզբը փորձեցի ձայնագրութիւնը գաղտնի պահել: Քանզի այդ ժամանակ դասական երաժշտութեան միջավայրը կը միտէր յոռեպէս արձագանգել: Իրականութեան մէջ, շատ ախորժեցայ նուագել Grand Corps Malade-ի հետ: Մեծ սլամասաց մըն է ան, որուն հետ շատ հաճելի պահեր անցուցի: Մէկ խօսքով, կը համարեմ որ պէտք չէ սահմաններ հաստատել երաժշտական տարբեր սեռերու միջեւ: Ես յաճախ կը նուագեմ նաեւ ճազ եւ կը կատարեմ էսթրատային երաժշտութիւն: Կարեւորը լաւ որակ արտադրելն է՝ ինչ որ ալ ըլլայ սեռը: Իր ժամանակին Մոցարթ կը համարուէր ժողովրդական: Այսօր ան կը դասուի իբրեւ դասական: Ուստի, 200-300 տարի ետք, կրնայ ըլլալ Grand Corps Malade եւս համարուի դասական երաժշտութեան սեռի ներկայացուցիչ...

**– Դուք Քաէնի Նուագախումբի եւ Հայաստանի ազգային Սենեկային Նուագախումբի գլխաւոր նուագավարն էք, կը նուագավարէք ամէնուրեք աշխարհի մէջ: Մշակութային տարբերութիւններ կը տեսնէ՞ք արդեօք նուագախումբերուն միջեւ:**

⇨ 4

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ



ԳԱՀԻՐԷ

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

### Ի ԳԻՏՈՒԹԻՒՆ ՀԱՄԱՅՆՔԻՍ ԲԱՐԵՊԱՇՏ ԶԱՒԱԿՆԵՐՈՒՆ

Դեկտեմբեր, 31-ին երեկոյեան ժամ 12:00-ին, Սուրբ Գրիգոր Լուսաւորիչ Առաջնորդանիստ եկեղեցւոյ մէջ պիտի կատարուի տարեմուտի միասնական աղօթք մեր երկրի եւ մեր ժողովուրդի խաղաղ եւ անվրդով կեանքին համար:

Կը հրաւիրենք մեր բարեպաշտ զաւակները ներկայ գտնուելու տարեմուտի այս աղօթքին:

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

**ՀԱՅ ԹԵՐԹԸ ԸՆԿԵՐՆ Է ՀԱՅ ՏԱՆ**



## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Ուրբաթ, 5 Յունուար 2018-ին

### Ս. ԾՆՆԴԵԱՆ ՃՐԱԳԱԼՈՅՑԻ ՊԱՏԱՐԱԳ

Պիտի Պատարագէ
**ԳԵՐՇ. Տ. ԱՇՈՏ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄՆԱՑԱԿԱՆԵԱՆ**
ԲԱՐԵԽՆԱՄ ԱՌԱՋՆՈՐԴ ԵԳԻՊՏՈՍԻ ՀԱՅՈՑ ԹԵՄԻ

Սկիզբ Երեկոյեան Ժամերգութեան ժամը 4.00-ին
Ընթերցում Մարգարէական գիրքերու ժամը 4.30-ին
Սկիզբ Ս. Պատարագի երեկոյեան ժամը 6.00-ին

**ԾԱՆՕԹ** – Կը ծանուցանենք թէ 6-13 Յունուար 2018-ի շրջանին, Թեմիս Բարեխնամ Առաջնորդ Գերաշնորհ Տ. Աշոտ Եպս. Մնացականեան Հովուական այցելութեամբ Եթովպիա պիտի գտնուի եւ 6 Յունուար 2018-ին Ս. Ծննդեան եւ Աստուածյայտնութեան Պատարագը պիտի մատուցէ Ատիս Ապապայի Ս. Գէորգ եկեղեցւոյ մէջ :

*Ե.Գ.Մ.ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ*

## «ՊԷՏՔ ՉԷ ՍԱՀՄԱՆՆԵՐ ՀԱՍՏԱՏԵԼ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՍԵՌԵՐՈՒ ՄԻՋԵՒ»

3

– Տարբերութիւնը կը կայանայ կարգապահութեան աստիճանին մէջ. որքան իջնենք հարաւ՝ դէպի տաք երկիրներ, այնքան աւելի կը նուազի կարգապահութիւնը: Երկիրին համաձայն կը փոխուի խառնուածքը: Բայց նկատի առնելով որ բոլորն ալ կը զբաղին դասական երաժշտութեամբ, անոնց միջեւ իրապէս մեծ տարբերութիւններ չեն գտնուիր:

**– Նոյնիսկ թեքնիքակա՞ն մակարդակով:**

– Թեքնիքները չեն փոխուիր: Իրականութեան մէջ, Ճաբոնի մէջ նուագող ճաբոնցիները իրենց վարպետութեան վկայականները կրնան ստացած ըլլալ Ֆրանսայէն կամ եւրոպական որեւէ ուրիշ երկիրէ: Ուրեմն, անոնք բոլորն ալ նոյն թեքնիքը ունին: Տարբերութիւնները աւելի կը կայանան անհատի եւ խումբի միջեւ: Օրինակ, Ասիոյ մէջ անհատը նուազ կարեւոր է՝ նախամեծարութիւն տրուելով խմբային աշխատանքին, մինչդեռ Ֆրանսայի մէջ նուագախումբի իւրաքանչիւր երաժիշտ անհատականութիւն մըն է՝ անկախ ամբողջութենէն:

**– Գահիրէի մէջ եգիպտական Աութար քառանուագին հետ կատարեցիք Շուման, ինչպէս նաեւ նուագակցեցաք եգիպտացի մեներգչուհի Ժալա Ալ-Հատիտիի: Իբրեւ դաշնակահար, մշակոյթի խնդիրը ի՞նչ չափով ազդած է ձեր վրայ:**

– Նախ եւ առաջ յայտնաբերեցի ինծի անծանօթ եգիպտական քառանուագ մը: Ահաւասիկ Ֆրանսա բնակող հայ դաշնակահար մը կու գայ ծանօթանալու եգիպտական քառանուագի մը հետ՝ նուագելու համար գերմանացիի մը յօրինած գործերը: Ուստի, խօսելով մշակութապէս, ես այնքան հեռու եմ Շումանէն որքան քառանուագը: Գալով երգչուհիին, նկատի առնելով որ ան բնակութիւն հաստատած է Գերմանիա, մենք ունինք կարգ մը հասարակաց կէտեր: Երաժշտութիւնը համընդհանուր լեզու մըն է. պէտք չունինք թարգմանիչի, քանի որ ամէն բան գրուած է նոթագրութեան մէջ:

**– Տասը տարի առաջ ձայնագրեցիք *Armenia* խտասալիկը՝ նուիրուած հայկական դասական երաժշտութեան, ուր ներկայացուցիք ձեր երկու անհատական ստեղծագործութիւնները: Ի՞նչ չափանիշներով կատարած էիք գործերուն ընտրութիւնը: Եւ ի՞նչ ծրագիրի վրայ կ'աշխատիք ներկայիս:**

– Իմ չափանիշս այն էր՝ որ ուզեցի յետահայեաց մը ընել 100 տարուայ հայ երաժշտութեան վրայ: Սկսանք Կոմիտասի երաժըշտութեամբ՝ որ ստեղծագործած է ԺԹ.-Ի. դարերու սահմանագլուխին, եւ վերջացուցինք ժամանակակից երկու երաժշտահաններով՝ փարիզաբնակ Ալեքսանդր Գասպարով եւ ես ինքս:

Այս պահուն զբաղուած եմ նուագահանդէսներով եւ շրջագայութիւններով: Դեկտեմբերին կարեւոր շրջագայութեան պիտի մեկնիմ Ճաբոն, ուր ուքրաինական նուագախումբի մը հետ պիտի նուագավարեմ Պեթհովէնի իններորդ համանուագը:

Զրուցավար՝ ԼԱՄԻԱԱ ԱԼ-ՍԱՏԱԹԻ
Ֆրանսերէնէ թարգմանեց՝ Հ. Ա.
*Ալ-Ահրամ էպտօ,* 15-21 Նոյեմբեր 2017

## ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԵԱՆ ՄԸ ԱՌԻԹՈՎ՝ *ՅԱԿԻՆԹԻ ՊԱՐՏԷԶԸ*

2

ինքզինք կրաւորապէս կը տեսնէ այնտեղ: Ես-ը մասնակցող մըն է որմնանկարի արժէքին, կամ արժէքային շերտերէն մէկուն, ընդհանրականութիւններու միջոցով, որոնց իմաստները կարելի է որսալ յիշեալ քառատողը նախորդող հատուածներուն ընդմէջէն: Այսպէս, Ես-ը (բանաստեղծը) ցանկացած է նկարուիլ ոմն նկարիչի մը կողմէ, որպէսզի դիտելի ըլլայ ուրիշներու կողմէ, թէեւ ի՞նչպէս կրնայ նկարիչը բանաստեղծին Ես-ը յայտնաբերել ներսիդէն: Լէոնարտօ տա Վինչի՝ *Վերջին ընթրիքի* Յիսուսի դիմանկարին համար իր առջեւ կանգնեցուցած է իր աշակերտ Պելդրաֆիոյ: Կարեւորը արտաքին նմանութիւնն է կամ նմանութեան պատրանքը: Ի՞նչ փոյթ, եթէ նկարի կեդրոնը գտնուողը Յիսուսն է, Պելթրաֆիոն է կամ բանաստեղծն է, քանի որ անկարելի նմանօրինակութեան, յատկապէս ներաշխարհի անհաւանական վերարտադրութեան մասին է խօսքը: Յիսուս, Պելթրաֆիոյ, Ես միաձուլուած ամբողջականութիւններ չեն, ոչ ալ օտարացած այլերու յետարդիապաշտական անկապ գոյութիւններու միատեղումներ: Անոնց գոյութիւնները կը միտին ստեղծել մարդկային ներաշխարհներ՝ դիտուած նկարիչի աչքով, արուեստի գործ մը դարձնելով իրական:

Իրականութիւն մը անկարելի է վերարտադրել ինչպէս որ կայ, աշխարհի մէջ ոչ մէկ բան կարելի է կրկնօրինակել, ռոպոթիզմը մարդկային խելքի ամենէն անկումային դարաշրջանի արտադրութիւնն է: Դաշնակահարը չի կրնար արտացոլողը ըլլալ երաժշտահանին, նկարիչը չի կրնար վերարտադրողը ըլլալ դէմքին կամ տեսարանին, քննադատը չի կրնար «հարազատ» նկարագրողը ըլլալ ներկայացումին: Բայց անոնք կրնան ինքզինքնին զգալ ու տեսնել այս բոլորի մէջ, հարազատ զգալ այնտեղ եւ ներաշխարհային մեկնողականութիւն մը առնչել իրենց գործերուն հետ՝ դաշնակահարը իր կատարումին մէջ առնչէ երաժշտահանը, նկարիչը՝ մոտէլը, քննադատը՝ ներկայացումը, առաջինները ըլլալով երկրորդներուն տարբերակները՝ ամբողջապէս ինքնուրոյն գիծերով հանդերձ, բայց ոչ երբեք անոնց արտայայտութիւնը կամ արտացոլութիւնը: Պելթրաֆիոյ կը ներկայացնէ Յիսուս, իսկ Յիսուս կը ներկայանայ Պելթրաֆիոյի շնորհիւ, բայց այս բոլորը անիմաստ է առանց տա Վինչիին: Իսկ Ե՞ս: Ի՞նչպէս կրնայ նկարիչը կտաւին փոխանցել իմ Ես-ս, այնպէս ինչպէս Ես կ'ուզեմ, այնպէս ինչպէս կ'ուզեմ ուրիշները ճանչնան ինծի:

Քաղուած քառատողը կը ներկայացնէ «էականն ու զարտուղին»-ի վերջաւորութիւնը, այսինքն՝ բանաստեղծութիւնը կը վերջանայ Ես-ով: Նոյն բանաստեղծութիւնը կը սկսի եւս Ես-ով՝ շեշտադրուած Ե'ս-ով.

«Ե'ս էի նստած՝ կարդալու Marquis de Sade»:

Առաջին եւ վերջին բառերուն նոյնութիւնը (Ես) չի կրնար ուշադրութենէ վրիպիլ: Առաջինը կապուած է արեւմտեան գրականութեան ամենէն էրոթիք գրողներէն մէկուն հետ՝ Մարքի տը Սատ, վերջինը՝ ամենէն փիլիսոփայ մտածողարուեստագէտներէն մէկուն՝ Լէոնարտօ տա Վինչի: Առաջինը՝ տարփամոլութիւն, բռնութիւն, բռնաբարութիւն, խոշտանգում, խայտառակութիւն, երկրորդը՝ խոհականութիւն, գիտարարութիւն, մարդասիրութիւն: Բայց չէ՞ որ մարդկային Ես-երուն մէջ երկուքն ալ գոյութիւն ունին, թէեւ կը յաւակնինք միշտ մեզի նոյնացնել երկրորդին հետ:

Ոյժի Ես-ը յաղթական չէ՝ ամենագիտակ, ինքնավստահ, ինքնագոհ կամ ինքնաբաւ չէ, այլ ինքնագիտակից Ես մըն է՝ անընդհատ ինքնավերանորոգուող ու ինքնավերարտադրուող, որ կրնայ պարփակել թէ' տարփողականը եւ թէ խոհականը, անոնց միջեւ գտնուող անվերջանալի տարբերակներով:

(Շար. 4/7)

ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

22. Արամ Պաչեան, «Ցտեսութիւն, ծիտ. վերջաբանի փորձ», *Ինքնագիր,* գրական հանդէս, 14 Ապրիլ 2017, http://inknagir.org/?p=7186:

23. Մարօ Սազայեան, «Հարցազրոյց դոկտ. Վարուժան Գազանճեանի հետ», *Արեւ,* 16 Մարտ 1991, 75-րդ տարի, թիւ 21723, էջ 2:

24. Բարսեղ Շահպազ, *Այլասիրութիւն եւ եսասիրութիւն (L'Altruisme & l'égoïsme),* Աղեքսանդրիա, 1907, էջ 5-6:

25. Անդ, էջ 21-22:

26. Տիգրան Պասկեւիչեան, «Վիագրա», *Ինքնագիր,* գրական հանդէս, Երեւան, թիւ 3, 2008, էջ 94:

27. Պարոյր Սեւակ, «To be or not to be», *Երկերի ժողովածու 6 հատորով,* հատոր 6, Երեւան, Հայաստան Հրատարակչութիւն, 1976, էջ 17:

28. Պարոյր Սեւակ, «Անխորագիր», *Երկերի ժողովածու 6 հատորով,* հատոր 6, Երեւան, Հայաստան Հրատարակչութիւն, 1976, էջ 7:

29. Եղիշէ Չարենց, «Ստանդարտի գրական ծրագրի մասին», *Standard,* Ժուրնալ գրականութեան եւ արուեստի, Մոսկուա, 1924, թիւ 1, էջ 3:

30. *Յակինթի պարտէզը,* էջ 43:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

جاهكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1805 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 28 ԴԵԿՏԵՄԲԵՐ 2017 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ.

عدد رقم ١٨٠٥ الخميس ٢٨ ديسمبر ٢٠١٧


## ՕՏԱՐԱԼԵԶՈՒ ԵՐԵՒԱՆ. ԿԱՊԻՏԱԼԻԶՄԸ ԽՕՍՈՒՄ Է ԱՆԳԼԵՐԷՆ

ՎԱՀԱՆ ԻՇԽԱՆԵԱՆ

Եթէ հայ ազգայնականները ճիշտ են, թէ Հայաստանը գաղութ է, եւ եթէ գաղութի նշաններից մէկը գաղութարարի լեզուով ցուցանակներն են, ապա Հայաստանը ոչ թէ Ռուսաստանի գաղութն է, ինչպէս պնդում են այդ ազգայնականները, այլ Մեծ Բրիտանիայի կամ ԱՄՆ-ի:

Հայաստանին անծանօթ մէկը, ով փնտրում է գաղութարարների լեզուական հետք, Երեւանի կենտրոնի փողոցներով քայլելիս անգլերէն ցուցանակների առատութիւնից կը կարծի, որ սա բրիտանական գաղութ է կամ առնուազն նախկին գաղութ: Եթէ աւելի մանրակըրկիտ ուսումնասիրի, կ'որոշի, որ մինչ բրիտանական գաղութ լինելը եղել է ֆրանսիական, նաեւ իտալական գաղութ, քանի որ անգլերէնից յետոյ ամենաշատ ցուցանակներ կան այդ լեզուներով: Իսկ եթէ շատ աւելի խորանայ, ապա կ'եզրակացնի, որ մինչ Բրիտանական, ամերիկեան, ֆրանսիական եւ իտալական գաղութ լինելն է եղել ռուսական գաղութ, քանի որ ռուսերէն ցուցանակները չորրորդ տեղում են: Իսկ եթէ նա նաեւ հայերէն իմանայ, համոզմունքը, որ շրջագայում է անգլիալեզու երկրի գաղութով, աւելի կ'ամրանայ, քանի որ ցուցանակների մի զգալի մասն էլ հայերէն տառերով անգլերէն բառեր են:

Մի շարք ճաշարաններում եւ սրճարաններում ճաշացանկն էլ է միայն անգլերէն, ինչպէս օրինակ՝ Գրին Բինում, Le Italian-ում: Բազմաթիւ տեղեր էլ պատին փակցուած ճաշացանկն է միայն անգլերէն, ինչպէս օրինակ նոյն Գրին Բինում, Դը Քոստում (Կասկադ), Դառըգէտ գարեջրատանը (Արամի փողոց):

Երբ Le Italian սրճարանում մատուցողին հարցրեցի՝ ինչո՞ւ հայերէն ճաշացանկ չունէք, պատասխանեց՝ մեր կոնցեպտն է այդպիսին:

Ինչպիսի՞ն է՝ անգլերէն իմացողների համա՞ր միայն, իսկ ովքե՞ր գիտեն անգլերէն՝ ունեւորները: Ընչազուրկը հացիւ հացի մասին մտածի, էլ ե՞րբ անգլերէն սովորի: Կոնցեպտ, որը չի ճանաչում աղքատներին:

Սա Հայաստանի քաղաքական վերնախաւի կոնցեպտն է՝ արհամարհանք նրանց նկատմամբ, ովքեր փողի յետեւից չեն հասնում կամ ովքեր փողի մեռած չեն:

Երեւանի կենտրոնում Բաղրամեանով, Օպերայի մօտից դուրս գալով Թումանեան, Հիւսիսային պողոտայով, Աբովեանով, Արամով, ապա Փարպեցիով, Սարեանով, Կասկադով, Իսահակեանով, Մաշտոցի պողոտայի սկզբներով, նաեւ Կիեւեանի որոշ հատուածներում շրջելու ընթացքում նկատուած օտարալեզու ցուցանկները.

1. **Անգլերէն նաեւ վերջում մի քանի իտալերէն, անգլերէն եւ ռուսերէն.** Crumbs, Retro Cafe, Tatoo, ACBA-Credit Agricole Bank, Mobile Centre, GoodWin, Cuba Pab, Kalian Khalill MaaMoon, Philipp Plein, Tashir Street Shopping Gallery, Bookinist, Bokacho, Kargin optik, Defonseca Italy, Langery, Souvenirs Vernissage, Holly Bracken, Paula Richi, Kinds land, Armos, playstation, NewYorker, Hotel North Avenue, Polo Ralph Lauren, Megerian Carpet, Black Angus Authentic Pizzeria and Burger Bar Delivery, Kristo bar, Parfois, Just cafe, Cinnabon world famous cinnamon rolls, Burberry, Ռիօ Rio galleria, Chronograph watches & Jewellery, Lounge the View, Caffe Verganano, Coffeeshop company, Pizza Hut, Love, Geographic travel Club, No Walking on Grass, Anahit Simonyan fashion, Service My Notebook, Toto gaming, Glibe travel, Martiros, Image studio, Karaoke Club, Vollmond Jewels, Violet Home Decor, Mercury, Artioli, Vintage, Opera Suite Hotel, Casteliani barry care beauty fit, Say Cheese, Beer academy, Antares, N&S Fashion, Mexx, Basturma, The Italian, Femini Cafetria Crepes, Sacvoyage, Lacoste, Bella rosa, Massimo Dutti, Billionaire italian counture, Milano, Sorriso Cafe, Castello d'Oro, Salon terrace, Оранжевый верблюд, Бегемот и К, Росгосстрах.

2. **Հայատառ անգլերէն, նաեւ մի քանի ֆրանսերէն եւ մէկ հատ էլ իսպաներէն ցուցանակներ.** Մոդա մեն Mode Men, Եւրոպ քար Europ car, Էլիտ սպորտ, Պասաժ Passage, Մարտինի Ռոեալ Martini Royal, Սիթի Բայք Մարկետ, Հաուզ օֆ ռեինքառնեյշն House of Reincarnation, Քուին քեյք Queen cake, Կասկադ Շուզ Kaskad Shoes, Պրինս Պրինցեսս Prince Princess, Իմպերիալ Լաունջ Բար Imperial Longe Bar, Սուբթայթլ Subtitle, Փեն Բոքս Pen Box, Լեդի Մերի, Մարկետ Market, Ֆուդ հաուզ Food house, Դը Քոստ Coast, Ֆիքշ՝ն Fiction, Մեփ Թրեւլ Map Travel, Ֆեյմըս Կալեան Լաունջ Famous Kalyan Lounge, Լա Ռոզ դէ Ֆլոռ La Rose de Fleur, Քրեյզի տուր Crazy tour, Մոբի սթայլ, Մայ Փարթի My Party, Ռոեալ Պլազա Royal Plaza, Էլիտհոմ, Դայմոնդ հաուզ Diamond house, Սքուեր Ուան Square One, Լա բոհեմ կաֆէ բոհեմ, Նորդ Աւենիւ, Կաֆէ դէ ֆրանս Cafe de Frans, Աւենիւ L'օրանժ Avenue by l'orange, Բլեք Բուլլ Black Bull, Էկշն ֆիթնես Action fitness, Աութլեթ Outlet, Բլիւ & Ուայթ Blue&White, Սքայ տուր sky tour, Կաֆէ Ցենտրալ Cafe Central, Միքս դենտ Mixx dent, Արտ Մոդա Art Moda, Բիրեւան Beerevan, Արտ Շուզ Art Shoes, Սուպերմակետ, Կասա Դէ Էսպանիա Casa de Espania, Natural Gold, Արտ բրիջ Art bridge, Ուայթ սթոր White store, Բեյք Bake, Երեւան Սիթի Yerevan City:



*Վահան Իշխանեան*

Wine Republic-ը թէեւ ունի հայերէն անուանում՝ Գինու Պետութիւն, սակայն գլխաւոր ցուցանակը անգլերէնն է:

**Հպանցիկ հայեացք Գյումրիի Սայեաթ Նովա փողոցում.** Hollywood shop, Ria shoes, Passo, Pizza Jazz:

* * *

Հայաստանի Լեզուի Մասին Օրէնքը սահմանում է. «Ցուցանակները, ձեւաթղթերը, դրոշմանիշները, նամականիշները, կնիքները, միջազգային փոստային ծրարները, գովազդի բոլոր միջոցները ձեւաւորել հայերէն՝ անհրաժեշտութեան դէպքում զուգակցելով այլ լեզուներով:»

Գոյութիւն ունի մի ամբողջ պետական հիմնարկ՝ 16 հոգիանոց աշխատակազմով ու բիւջէով (որի չափը Կրթութեան եւ Գիտութեան Նախարարութիւնը չգիտէր)՝ Կրթութեան եւ Գիտութեան Նախարարութեան լեզուի պետական տեսչութիւնը, որ գործում է հսկելու համար, որ կատարուի Լեզուի Մասին Օրէնքը:

Արդեօ՞ք տեսչութիւնը անգործութեան է մատնուած, եթէ այո՝ ինչո՞ւ, եթէ ոչ, ապա ի՞նչ է անում, որ կատարուեն Լեզուի Մասին Օրէնքի պահանջները, վերջին տարիներին օրէնքը խախտելու համար քանի՞ ձեռնարկութիւն է պատասխանատուութեան ենթարկուել:

*Հետքի* հարցմանը Լեզուի Պետական Տեսչութիւնը պատասխանում է, որ Կառավարութեան 2015 Թուի, Յուլիսի 30-ի N839-Ա որոշման պահանջով, որով արգելւում է մասնաւոր ձեռնարկութիւններում ստուգումներ անցկացնելը, 2015 Թուականի Օգոստոսի 1-ից Տեսչութիւնը ստուգումներ եւ վարչական վարոյթներ չի իրականացնում: Վերջին տարին միայն կատարում են ուսումնասիրութիւններ եւ մշտադիտարկումներ, որոնց արդիւնքում կազմուել են օտարալեզու ցուցանակներ ունեցող կազմակերպութիւններին հասցէագրուած իրազեկման 150 թերթիկներ՝ համապատասխան բացատրութիւններով ու յորդորակներով: Իսկ մինչ այդ որոշումը 2011-2015 Թուականներին Տեսչութիւնը իրականացրել է 269 ստուգում եւ վարչական վարոյթ, որոնց արդիւնքում պետական բիւջէ է փոխանցուել 22 միլիոն եօթ հարիւր հազար դրամ: Առնուազն 269

↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԱՆԻՄԱՍՏ ՀՐՃՈՒԱՆՔ. ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆՆԵՐՆ ԱՐԴԷՆ ՄԻ ՔԱՆԻ ՕՐ Է՝ ԷՅՖՈՐԱՅԻ ՄԷՋ ԵՆ.

ԺՈՂՈՎՈՒՐԴ

*Ժողովուրդ* օրաթերթը գրում է. «Իշխանութիւններն արդէն մի քանի օր է՝ էյֆորիայի մէջ են. այս տարուայ 11 ամիսների սոցիալ-տնտեսական լաւ ցուցանիշներ են արձանագրել: Դեկտեմբերի 21-ին Սերժ Սարգսեանն Ամանորի եւ Սուրբ Ծննդեան տօների կապակցութեամբ գործարարների համար կազմակերպուած ընդունելութեան ժամանակ անդրադարձել է Ազգային Վիճակագրական Ծառայութեան Թուերին՝ առանձնացնելով յատկապէս արտահանման ոլորտում գրանցուած աճը: «Տնտեսական ակտիւութեան գործակիցը բաւականաչափ մեծ է. արդէն 11 ամիսների ընթացքում մենք ունեցել ենք աննախադէպ՝ 2 միլիարդ ԱՄՆ դոլարին համարժէք արտահանման ցուցանիշ, որը մեր ՀՆԱ-ի 20 տոկոսն է: Մենք երբեք այդպիսի ցուցանիշ չենք ունեցել: Մեր առեւտրաշրջանառութիւնն արդէն 11 ամիսների ընթացքում գերազանցել է 6 միլիարդ դոլարի շեմը՝ արտաքին առեւտրաշրջանառութեան մասին է խօսքը», - յայտարարել է նա: Հիասքանչ է ասուած: Բայց այստեղ կայ մէկ այլ հանգամանք. չնայած հրճուանք պատճառող աճին՝ արտահանման ծաւալները, միեւնոյն է, շարունակում են զիջել ներկրմանը՝ աւելի քան 1.7 անգամ: Ասել է, թէ Հայաստանի արտաքին առեւտրաշրջանառութեան հաշուեկշիռը շարունակում է բացասական հունով ընթանալ. *Ժողովուրդ* օրաթերթին պաշտօնական փաստաթղթերից յայտնի դարձաւ, որ այս տարի արտահանուել է 2 միլիարդ 13 միլիոն դոլարի եւ ներկրուել 3 միլիարդ 770 միլիոն դոլարի ապրանք: Այնպէս որ, հրճուելու, աջ ու ձախ այդ ցուցանիշները թմբկահարելու շատ բան չկայ: Յատկապէս, երբ իշխանութիւնները խոստացել էին Հայաստանի տնտեսութիւնը դարձնել արտահանելի»:

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Այսու կը տեղեկացնենք թէ Շաբաթ, 9 Դեկտեմբեր 2017-ին, ներկայութեամբ 22 երեսփոխաններու, գումարուեցաւ Աղեքսանդրիոյ Նորընտիր Պատկառելի Թեմական Ժողովի 2017-ի անդրանիկ նիստը:

Ժողովը բացուեցաւ Առաջնորդ Սրբազան Հօր աղօթքով, ապա տեղի ունեցաւ Թեմական Ժողովի դիւանի ընտրութիւնը: Ըստ այդմ, անդամներ ընտրուեցան.

Տեարք՝

| | |
|---|---|
| Տիգրան Ալեքսանեան | Ատենապետ |
| Ժորժ Լէյլէկեան | Փոխ-Ատենապետ |
| Տօքթ. Արմէն Գավուքճեան | Ատենադպիր |

Այնուհետեւ, յետ գաղտնի քուէարկութեան, տեղի ունեցաւ նոր Քաղաքական Ժողովի ընտրութիւնը, որմէ ետք, նորընտիր անդամները իրենց առաջին նիստը գումարեցին Առաջնորդ Գերշ. Տ. Աշոտ Եպիսկոպոսի նախագահութեամբ եւ ընտրեցին դիւանը:

Նորընտիր Քաղաքական Ժողովի սոյն կազմը պիտի գործէ երկու տարուայ շրջանի համար 9 Դեկտեմբեր 2017-էն մինչեւ 8 Դեկտեմբեր 2019:

Տեարք՝

| | |
|---|---|
| Վահէ Պէնօհանեան | Ատենապետ |
| Յակոբ Թիւթիւնճեան | Փոխ-Ատենապետ |
| Թօսունեան Քրիսթեան-Կարապետ | Ատենադպիր |
| Կարի Պօհճալեան | Գանձապահ |
| Դանիէլ Դանիէլեան | Խորհրդական |
| Կարպիս Ծռճռեան | Խորհրդական |
| Ռաֆֆի Նախըշքէրեան | Խորհրդական |

ՏԵՂԵԿԱՏՈՒ ԴԻՒԱՆ
ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԱԶԳԱՅԻՆ
ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

# ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԵԱՆ ՄԸ ԱՌԻԹՈՎ՝ *ՅԱԿԻՆԹԻ ՊԱՐՏԷԶԸ* ՀԵՂԻՆԱԿ՝ ՎԱՐԱՆ ՈՅԺ

Յ. ԱՒԱԳԵԱՆ

**ՔԱՂՈՒԱԾՔ**

*Յակինթի պարտէզը* խաչաձեւուած, կամ ներթափանցուած, կամ դրուագուած է քանի մը Հայ եւ անգլիացի գրողներու գործերէ քաղուածքներով: Քաղուածքներուն դրութիւնը չէ բացայայտուած, նպատակ չէ դրուած զանոնք չեչտադրելով առանձնացնել: Բայց բանաստեղծը թողած է բանալի ուղեցոյցներ, օրինակ, լեզուի փոփոխութիւն արեւելահայերէնի կամ անգլերէնի:

Մէյ մը որ քաղուածքը նշմարելի դառնայ եւ գիտակցութիւն գոյանայ անոր շուրջ, դժուար կ՚ըլլայ խուսափիլ առնչութիւններէն: Բայց առնչութիւնները՝ եթէ հիմնուած են լաւ-վատ յարաբերութիւններու «բացայայտում»-ին վրայ, նպատակ կ՚ունենան ցուցադրել քննադատի գիտելիքի գերակայութեանը, արտայայտելով փակ ու վերջնագրուած իմաստներ: Եթէ առնչութիւնները կը դիտուին Ժիլ Տըլէօզի անկեդրոն տարբերակի մօտեցումի անկիւնէն, կարելի կը դառնան բաց իմաստներն ու արտայայտութիւնները: Բայց կարեւոր է բաց-փակ իմաստներու առումով զանազանել բուն քաղուածքի տեղադրութիւնն ու ընդունումը: Քաղուածքի տարբերակային մեկնութիւնը չեմ կրնար անպայմանօրէն դիտել դէպի բացութիւն տանող ճամբայ մը, քանզի ասիկա պիտի նշանակէր որ արդիականութիւնը արտադրած է այնքան փակութիւն, որ այժմ անհրաժեշտութիւն կը զգացուի տարբեր ձեւաչափերով բանալ զայն: Այլ նկատի ունիմ de facto քաղուածքի հետ առնչութիւնը, որ կրնայ տարբեր իմաստներ հաղորդել բնագիրին՝ Տըլէօզի յիշեալ դրոյթով:

Քաղուածքներէն մէկը կատարած է Եղիշէ Չարենցի անվերնագիր բանաստեղծութենէն մը՝ որ կը սկսի «...Ճիշտ այսպիսի անգոյն մի գիշեր» տողով(31) եւ կը վերաբերի Լէոնարտօ տա Վինչի – Պելթրաֆիոյ հատուածին: Ոյժ անկէ քաղած է քանի տող, քանի մը միտք եւ իր կողմէ աւելցուցած խօսուն Ես-ը(32), որուն մասին վերը ակնարկեցի:

Ուրիշ քաղուածք մը ամբողջութեամբ անգլերէն է՝ լատինատառ: Andrew Marvell-ի *The Garden* բանաստեղծութենէն ամբողջական հատուած մըն է, որմէ ետք Ոյժ իր կողմէ կ՚աւելցնէ վերջին վեց տողերը՝ միշտ անգլերէն, ուր ինքզինք խօսակից կը դարձնէ Մարվըլին՝ ուղղակիօրէն դիմելով անոր(33): Այստեղ Ոյժ կը փորձէ բանաստեղծական դասական ու շատ ծանօթ օրինակով մը քանդել բանաստեղծութեան ինչքութիւնը, դառնալ ծանօթ դասական բանաստեղծութեան մը հեղինակակիցը, կարծէք փորձելով խորտակել հեղինակային մենատիրութիւնները:

Անոր գրեթէ անմիջապէս կը յաջորդէ Ռաֆայէլ Պատկանեանի *Խնձոր ծախող Աստուածատուրը* պատմուածքէն(34) քաղուածք մը, որ միաժամանակ կը հանդիսանայ *Յակինթի պարտէզը* բանաստեղծութեան վերջնաւարտը(35): Քաղուածքով կ՚աւարտի բանաստեղծութիւնը: Հետաքրքրական է, որ Պատկանեանի արձակը Ոյժ կը վերածէ չափածոյի՝ առանց բնագիրէն բառ մը փոխելու, այլ պարզապէս դասակարգելով բանաստեղծական տողերը: Այս հատուածը ըլլալով բանաստեղծութեան ինքնութիւնը բանաստեղծութեամբ մեկնելու, կամ բանաստեղծութեան միջոցով բանաստեղծութեան ինչքութիւնը կասկածի տակ դնելու միտքին աւարտը, Ոյժ հաւանաբար ուզած է առաջ մղել արձակի մը բանաստեղծականութիւնը եւ բանաստեղծութեան մը արձակայնութիւնը, մերժելով սեռային (ժանրային) սահմանները եւ արհեստական ստորաբաժանումները, հետեւաբար՝ մերժելով բանաստեղծութեան մը ինքնութիւն-ինչքութիւնը իբրեւ այդպիսին:

Կան աւելի մանր քաղուածքներ: Օրինակ՝ «Լքէ՛ ինչ որ ունիս եւ միացի՛ր մեզի»(36) նախադասութիւնը *Յակինթի պարտէզ*ին մէջ, որուն նպատակն է յիշեցնել Յիսուսի խօսքերը՝ «Ո՛վ որ ուզէ գալ իմ ետեւէս, թող ուրանայ ինքզինք»(37), անշուշտ երգիծային մօտեցումով մը:

Ինչո՞ւ քաղուածքը միայն գրական-բանաստեղծական պէտք է ըլլայ եւ հիմնուած պաշտօնապէս տպագրուած բնագիրի վրայ: Յայտարարութիւններ, ազդեր եւ այլ ոչ-գրական գրութիւններ եւս կը կազմեն մեր գիտակցութեան եւ յիշողութեան կարեւոր մասը: Օրինակ, Վարան Ոյժի Ես-ը կ՚այցելէ բանաստեղծի մը տուն-թանգարանը (երբեք տուն-թանգարան եզրը չէ օգտագործուած), ուր հիւրընկալող տիկին մը կ՚ըսէ իրեն. «Ամէն օր բաց ենք մենք / ճիշդ նշուած ժամերուն»(38): Ասիկա ցուցատախտակային նախադասութիւն մըն է՝ որ կը տեղադրուի թանգարաններու դուռներուն վրայ. «Թանգարանը բաց է այսինչ օրերը, այսինչ ժամէն այնինչ ժամը»:

Այսպէս, քաղուածքը՝ իր տարաբնոյթ ընկալումներով, կը հանդիսանայ *Յակինթի պարտէզ*ին խօսուն բաղադրիչներէն մէկը:

**ԺԱՄԱՆԱԿ**

Հաստատակամ-հաստատական ժամանակը չի հետաքրքրեր բանաստեղծին: Ան ինքզինք կը գտնէ ժամանակներու ընդմէջէն.

«Կասկածոտ կը նայի կարճ, կարճատես ծերն
Սակայն խոկոյն բերնէն թափթփեցան բառեր
Տարինե՛ր խօսելէ զրկուած էր կարծես
Կը քաշկռտէր մեզի այս կամ այն չիրիմին»:(39)

Գործողութիւնը տեղի կ՚ունենայ սահմանական ներկայի («կը նայի»), անցեալ կատարեալի («թափթփեցան») եւ անցեալ անկատարի («կը քաշկռտէր») միջեւ:

Մէկ նախադասութեան մէջ՝ միեւնոյն գործողութեան համար, օգտագործել բայերու երեք եղանակներ, չի տեղաւորուիր ընդունուած քերականութեան սահմաններուն մէջ: Բայց երեք եղանակներու գործածութիւնը բնաւ հակառակ չ՚ընթանար քերականութեան, ոչ ալ հակա-քերականական նկրտումներ ունի, այլ, ընդհակառակը, ան մեծապէս ներթափանցուած է քերականութեամբ: Առանց ըմբռնողական քերականութեան կարելի չէ հասկնալ՝ որ այստեղ բանաստեղծին ժամանակը սահման չունի եւ թուականներ չի ճանչնար: Մինչդեռ դպրոցական քերականութիւնը մեզի կը սորվեցնէ՝ որ ժամանակը փակ է, սահման ունի (չես կրնար մէկ գործողութիւն մը միաժամանակ տեղադրել թէ՛ անցեալի եւ թէ՛ ներկայի մէջ) եւ կը պարտադրէ մեզի պաշտել թուականները:

*Յակինթի պարտէզը* իր ամբողջութեան մէջ կը մերժէ ժամանակին կայունութիւնը, սահունօրէն կ՚անցնի անցեալէն ներկան, ներկայէն անցեալը, այլեւ զանոնք կը դնէ քով քովի:

**ՓՈՐՁ ԿԱԶՄԱԼՈՒԾՈՒԹԵԱՆ**

Աւելորդ չեմ նկատեր կատարել կազմալուծութեան (deconstruction) փորձ մը, որսալու համար որոշ իմաստներ: Իբրեւ նմոյշ կ՚ընդունիմ երկրորդ բանաստեղծութիւնը՝ «Գիրքին հեղինակութիւնը»(40):

Այստեղ կարելի է մատնանշել քանի մը կառոյց՝ գերեզմանատան մէջ գտնուող մատուռը, ցանկապատը եւ շիրիմները, եւ բանաստեղծի մը տուն-թանգարանը («տուն-թանգարան» բառը չէ գործածուած բանաստեղծութեան մէջ, բայց կայ անոր ակնարկումը): Ուրեմն, երկու տարածութիւն՝ գերեզմանատուն եւ տուն-թանգարան: Բայց տարածութիւններէն աւելի կառոյցներն են որ կը խօսին:

Հիւրընկալութեան վայր մըն է գերեզմանատունը, որ երբ դադրի հիւրընկալելէ կը դառնայ ամայի եւ կը լեցուի խոպան ծառերով.

«Ամայի՜ է այլեւս գերեզմանատունն
Որ անցեալին ծաղկուն էր ու հիւրընկալ
Շիրմաթումբեր խոպան ու կմա՛խք ծառեր»:

Մատուռը հին հայկականութեան խորհրդանիշն է, անիկա սուրբ է: Բայց արդեօք ի՞նչ գոհացում կրնայ տալ հին մատուռի շէնք մը.

«Վճռած ենք գտնել հին հայկական մատուռն
[...]
Եւ ոչ մէկ հետք մեր փնտռած մատուռէն
Որ չեմ գիտեր պիտի տար ի՞նչ գոհացում»:

Ցանկապատը այն ուղիղ գիծն է՝ որուն եթէ մարդը անսասանօրէն հետեւի, կը գնահատուի ու կը վարձատրուի հասարակութեան կողմէ: Բայց նաեւ մարդը ատակ է քանդել ցանկապատին ☞ 4

ԳԱՀԻՐԷ

## ԵԳԻՊՏԱԳԷՏ ՅՈՒՐԻԿ ՍՈՒՐՈՒԶԵԱՆԻ ՆՈՐ ՅԱՅՏՆԱԳՈՐԾՈՒԹԻՒՆԸ

Վերջերս, Լուքսորի Նեղոսի արեւմտեան ափը գտնուող Մեմնոնի Կոթողներու Տարածութեան մէջ յայտնաբերուեցան հին եգիպտական էգ առիւծի աստուածուհի Սեխմէնի արձաններու 27 բեկորներ: Յայտնագործութիւնը տեղի ունեցած է պեղումներու ընթացքին՝ զոր կը կատարէր գերմանական Ամենհոտէպ Գ. Փարաւոնի Տաճարի Պահպանումի Ծրագիրը (The Colossi of Memnon and Amenhotep III Temple Consеrvàtion Project), որուն տնօրէնն է գերմանահայ հնագէտ Յուրիկ Սուրուզեան:



Եգիպտոսի Հնութիւններու Գերագոյն Խորհուրդի ընդհանուր քարտուղար Մուսթաֆա Ուազիրի կը բացատրէ՝ որ բոլոր յայտնաբերուած արձանները քանդակուած են սեւ կրանիթով եւ ունին առաւելագոյնը երկու մեթր բարձրութիւն: Մէկ մասը Սեխմէթ փարաւոնը կը ներկայացնէ գահին բազմած՝ ձախ ձեռքին բռնած կեանքի խորհրդանիշը, ուրիշ մաս մը զայն կը ներկայացնէ կանգնած՝ իր կուրծքին առջեւ պահելով պապիրոսի գաւազանը:



Յուրիկ Սուրուզեան կը տեղեկացնէ՝ թէ արձաններուն պահպանութեան աստիճանները տարբեր են: Հողի վերի մակերեսը գտնուող արձաններուն պայմանները լաւ են, ի տարբերութիւն ցած մակերեսը գտնուողներէն:

Ան կը շարունակէ՝ թէ այժմ ստանձնած են հնագիտական մաքրումի եւ պահպանութեան աշխատանքները, որպէսզի ծրագիրի աւարտէն ետք արձանները մնայուն ցուցադրութեան համար տեղադրուին իրենց իսկական տեղավայրը:

Տոքթ. Յուրիկ Սուրուզեան իր բարձրագոյն կրթութիւնը ստացած է Ֆրանսա՝ École du Louvre եւ École des langues orientales, իսկ տոքթորականը՝ Սորպոնէն: Ան տնօրէնն է Քոմ էլ-Հեթթանի Ամենհոտէպ Գ. Փարաւոնի Տաճարի Պահպանումի Ծրագիրին:

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Այսու կը ծանուցանենք թէ Ազգային Բարերարուհի Մարկրիթ Պայծառ Յակոբեանի յիշատակին հաստատուած Հիմնադրամի 2017-ի եկամուտները, որ կը կազմեն 3,450 Ե.Ոսկի, պիտի բաշխուին հետեւեալ կերպով.

| | Ե.Ո. |
|---|---|
| 1- Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Հոգեւորականներուն | 241.50 |
| 2- Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Սարկաւագներուն | 103.50 |
| 3- Շնորհալի Երգչախումբին | 345.00 |
| 4- Եկեղեցւոյ Տիկնանց Խնամակալութեան | 207.00 |
| 5- Մերճանեան մանկապարտէզի ուսուցչուհիներուն | 540.00 |
| 6- ԱՐԵՒ Թերթին | 805.00 |
| 7- ՅՈՒՍԱԲԵՐ Օրաթերթին | 805.00 |
| 8- ՋԱՀԱԿԻՐ Շաբաթաթերթին | 402.50 |
| ԸՆԴՀԱՆՈՒՐ ԳՈՒՄԱՐ | 3,450.00 |

ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

ՎԻՃԱԿԱԳՐԱԿԱՆ ՏՈՒԵԱԼՆԵՐ ԳԱՀԻՐԷ ՀԱՄԱՅՆՔԻՆ 2017 ՏԱՐԵՇՐՋԱՆԻՆ

| | |
|---|---|
| ՄԿՐՏՈՒԹԻՒՆ | 12 |
| ՊՍԱԿԱԴՐՈՒԹԻՒՆ | 5 |
| ԹԱՂՈՒՄ | 17 |

ԴԻՒԱՆ
ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

ԳԱՅԻՐԷ

# ԵՐԲ ՅՐԱՊՈՒՐԱՆՔՆ ՈՒ ՅԱՅՐԵՆԱԲԱՂՁՈՒԹԻՒՆԸ ԿԸ ԴԱՌՆԱՆ ՅՈՄԱՆԻՇՆԵՐ...

ԼԱՄԻԱԱ ԱԼ-ՍԱՏԱԹԻ

**Ֆրանսերէնէ թարգմանեց՝ Հ. Ա.**

*Վան Լէօ եւ Արման Արծրունի կը հանդիսանան երկու լուսանկարիչներ, որոնք կը պատկանին քոզմոփոլիթ Եգիպտոսի ժամանակաշրջանին: Այս անցեալի շրջանը կը կենդանանայ երկու ցուցահանդէսներու ընդմէջէն, մէկը՝ քաղաքի կեդրոնը գտնուող Սիմաթէքի մէջ, միւսը՝ Ամերիկեան Յամալսարանի նոր նստավայրը:*

Վան Լէօ եւ Արման: Ի՞նչ կրնայ միացնել կամ բաժնել այս երկու լուսանկարիչները: Բացի իրենց հայ ծագումէն եւ Գահիրէի Ամերիկեան Համալսարանի նախկին ուսանողներ ըլլալու իրողութենէն, անոնք ականատեսները եղած են կորսուած քոզմոփոլիթ Եգիպտոսի մը, ինչպէս նաեւ այնպիսի ժամանակաշրջանի մը, երբ լուսանկարչութիւնը՝ հակառակ համեմատաբար նոր գիւտարարութիւն մը ըլլալուն, կը թելադրուէր իբրեւ ամբողջական արուեստ մը: Երկու լուսանկարիչներուն մօտ էական դեր խաղացած են լոյսն ու ստուերը, որոնք այլապէս ընդհանուր յայտարար մը հանդիսացած են `իրենց լուսանկարներուն մէջ: Արդարեւ, բացի լուսանկարչական թեքնիքէն, անոնք առաւել եւս կը միանան իրենց սահմանած տեսողական յուզական լեզուի շնորհիւ, նման Ռոլան Պարթի անուանած «*punctum*»-ին: Այսինքն, այս պզտիկ խայթուածքը, այս մանրամասնութիւնը՝ որ կը պեղէ մեր յիշողութիւնը, մեր յուզախառն անցեալը, մեզի համար կարեւոր ինչքերը:

Կը բաւէ կտրել-անցնիլ Սիմաթէքի շեմը եւ հասնիլ հրէական սինակոկին ճիշդ քովը տեղակայուած շէնքին վեցերորդ յարկը (Ատլի փողոց, Գահիրէի կեդրոնը), սուզուելու համար Վան Լէօի 1940-ականներու աշխարհին մէջ: Կարելի է զմայլիլ շարժանկարի աստղերու սքանչելի լուսանկարներով, ինչպէս՝ Լայլա Թահէր, Փոլանթի Ապտէլ-Համիտ, Ֆաթէն Համամա եւ ուրիշներ: Դիտեցինք նաեւ 16մմ ձեւաչափով ֆիլմերու հաւաքածոյ մը, որ 30 վայրկեանի ընթացքին կը ցուցադրէր այսօր անծանօթ Եգիպտոսի մը զուարթ եւ մելամաղձոտ տեսարանները: Բնական է: Փոխուած են պատերը, դէմքերը, ծառերը... մէկ խօսքով, անհետացած է ամբողջ ինքնութիւն մը: «Ո՞ւր կը գտնուէր անուաչմուշկներու այս ընդարձակ հարթակը», կը հարցնէ երիտասարդ մը: «Կը գտնուէր Կիզա», կը պատասխանէ աւելի տարիքաւոր մը: «Բայց ո՛չ, մէկ հատ մը Հելիոպոլիս կը գտնուէր», նկատել կու տայ 70 տարեկանը անցած անձ մը:

Եւ ահաւասիկ լիճին նայող հսկայ ճաշարան մը՝ շրջապատուած անվերջ ծառերով, ուր տղամարդիկ ու կիներ խմիչքներ կ'ըմպեն խնդագին: Հազիւ կրնանք գուշակել վայրը՝ Կեզիրա Ալ-Շայ (Թէյի կղզին), Կիզայի Կենդանաբանական Պարտէզին մէջ: Ուրիշ տեսարան մը ցոյց կու տայ Վան Լէօի հօր թաղումի թափօրը: Երկու ձիեր կը քաշեն միայն կախարդական հեքիաթներու մէջ իր նմանը ունեցող ծաղիկներով զարդարուած կառք մը, որ կ'անցնի կեդրոնական Գահիրէի փողոցներով: Զհաշուելով այն վիտէօները, որոնք կը պատկերեն ոչ միայն կորսուած վայրերը, մարդիկ, եւ այլն, այլեւ կը փոխանցեն հասարակական յատկանիշներ: Այս յատկանիշները նոյնպէս կը գտնենք Արման Արծրունիի մօտ, բայց ուրիշ կերպ: Ամերիկեան Համալսարանի նոր Նստավայրի (Թակամօէ) պատկերասրահին մէջ ցուցադրուած են Արծրունիի շուրջ երեսուն լուսանկարները, խորագիր ունենալով՝ *Սթուտիօ Արման՝ հարսանեկան դիմանկարութեան արուեստը*: Մեծամասնութիւնը հարսանիքի լուսանկարներ են, այստեղ-այնտեղ գտնուող քանի մը դիմանկարներով: Հարսանիքի լուսանկարիչ մը, ան նրբօրէն ընդգծած է յատկապէս զոյգերուն նայուածքները, իրենց զանազան արտայայտութիւններուն ընդմէջէն:

Երբեմն նոյնիսկ հետաքրքրութեան կեդրոնը դարձուցած է զգեստները: Իրականութեան մէջ, Արծրունի երեւան հանած է պահուն իսկութիւնը, դիմելով այնպիսի եղանակի մը, ուր անցեալի պահերը՝ լուսանկարներուն հարսանիքները, կարծէք միաձուլուած են մեր այսօրուայ ապրած պահերուն հետ: Կարելի է գտնել խիստ կանացի ոճով ամուսնական զգեստներ, կամ 1960-ականներուն նորաձեւութիւն դարձած միջին երկարութեամբ հանդերձներ (քիչ մը ծունկերէն ցած բայց կոճերէն բարձր), կամ 1970-ականներու վերջը եւ 1980-ականներու սկիզբը գործածուող աւելի երկար եւ սեղմ հագուստներ: Վարսայարդարումները եւս չեն կրնար աննկատ անցնիլ: Մէկ խօսքով, ամբողջ տիեզերք մը՝ սեւ-ճերմակ, որ մեզի ճամբորդել կու տայ շատ հեռուները ժամանակի եւ տարածութեան մէջ, ինչպէս նաեւ կիներ եւ տղամարդիկ մասնաւորապէս՝ որոնց պատմութիւնները կ'իմանանք առանց անպայմանօրէն ճանչցած ըլլալու զանոնք:

## ՔԱՂԱՔԻ ԵՒ ԱՍՏՂԵՐՈՒ ԼՈՒՍԱՆԿԱՐԻՉ

Լեւոն Պօյաճեան ծնած է Ճիհան (Թուրքիա), 1921-ին: Փախչելով Թուրքերու կատարած ցեղասպանութենէն, 1924-ին իր ծնողքին հետ կը հաստատուի Զակազիկ (Եգիպտոս): Երեք տարի ետք կը տեղափոխուի Գահիրէ, այն քաղաքամայրը՝ ուր կը յաջողի հռչակ վաստակիլ եւ դառնալ համրածանօթ քաղաքի լուսանկարիչը՝ Վան Լէօ:

Իբրեւ ուսանող արձանագրուելէ ետք Գահիրէի Ամերիկեան Համալսարանը, կը նախընտրէ թողել զայն որպէսզի իր ծառայութիւնները մատուցէ քաղաքի կեդրոնը գտնուող Վենիւս սթուտիոյին: Սակայն Արթինեան՝ սթուտիոյի սեփականատէրը, կ'որոշէ զայն արգիլել մուտք գործել մութ սենեակը, քանի որ հասկնալով երիտասարդ աշկերտին տաղանդը կը վախնայ ապագայ մրցակիցէ:

Յանկարծ, հայրը կը տրամադրէ ճաշասենեակը որպէսզի զայն վերածէ սթուտիոյի: Բաղնիքը ինքնաբերաբար կը վերածուի մութ սենեակի: 1941-էն ի վեր Լեւոն եւ Անճելօ եղբայրները կ'աշխատին միասին: Վեց տարի ետք, Անճելօ կը խզէ իր կապերը եղբօրը հետ եւ կը մեկնի Փարիզ: Լեւոն բացումը կը կատարէ նոր սթուտիոյին: Այսպէս, ասիկա կը դառնայ մտաւորականներու, արուեստագէտներու, ազնուականներու նոր ժամադրավայրը...: Մէկ խօսքով, բոլոր անոնց համար, որոնք կ'ուզեն անմահանալ:

Վան Լէօ կը հանդիսանայ Գահիրէի վերջին դիմալուսանկարիչներէն մէկը: Բայց եւ այնպէս, ան միշտ խուսափած է այնպիսի գործողութիւններէ, ուր, ըստ իրեն, կը պակսին ներշնչանքն ու կեանքը, ինչպէս՝ առաջնորդներու լուսանկարները: Ան յաճախ կը կրկնէր. «Ես առեւտրական լուսանկարիչ մը չեմ»: Իր նպատակը ոչ թէ իրականութիւնը ներկայացնելն էր, այլ մանաւանդ երեւակայականը ըմբռնելը, եթէ ոչ պատրանքը:

1998-ին իր ամբողջ ունեցուածքը կը նուիրէ Գահիրէի Ամերիկեան Համալսարանին: Կը վախճանի Գահիրէ, 2002-ին, 80 տարեկան հասակին:

## ԱՄՈՒՍՆԱԿԱՆ ՅԻՇԱՏԱԿՆԵՐ

Արման Արծրունի ծնած է Լօզան, 1937-ին: Մանկութիւնը անցուցած է Հելիոպոլիս թաղամասը: 1957-ին իբրեւ քիմիագէտ վկայուած է Գահիրէի Ամերիկեան Համալսարանէն: 1960-ին սկսած է աշխատակցիլ իր հօրը՝ Արմենակ Արծրունիին, որ կը վարէր քաղաքի կեդրոնը գտնուող սթուտիոն: Այսպէս, իր հօրմէ սորվեցաւ լոյսի եւ ստուերի թեքնիքները, որոնց շնորհիւ կրցաւ տռամաթիք կատարումներ ↳ 4

ԽՈՅԵՐ

# ՇՆՈՐՀԱՒՈՐ ՆՈՐ ՏԱՐԻ՝ ՆՇԱՆԱԲԱ՞Ն ԹԷ ՇՈՒԿԱՅ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Կը մօտենայ Նոր Տարին, աշխարհը կ'ողողուի շնորհաւորանքներով եւ շնորհաւորագիրերով: Միայն Նոր Տարուայ ժամանակ է որ մարդիկ այսքան առատութեամբ կը յիշեն թէ աշխարհի մէջ կան ուրիշներ եւ նոյնքան շռայլութեամբ այդ ուրիշներուն կը մաղթեն ամենայն բարիք:

Կը մաղթեն՝ առանց բան մը տալու, առանց զոհողութիւն մը ընելու:

Ամէն մարդ կը շնորհաւորէ միւսին: Մարդիկ՝ որոնք ամբողջ տարին ոչ մէկ անգամ մտածած են օգտակար ըլլալ ուրիշին, Նոր Տարուայ օրը յանկարծ կը յիշեն ուրիշները՝ առանց օգտակար ըլլալու ամենահեռաւոր դիտաւորութիւնը անգամ ունենալու: Կը յիշեն ուրիշը՝ պարտականութենէ մղուած, յիշած չըլլալու մեղադրանքէն խուսափելու համար:

Լրագիրներ՝ որոնք ամբողջ տարին պայքարած են իրենց էջերը լեցնելու արտատպումներով եւ Արմէնփրէսի լուրերով, առաջին էջին կէսը ապահոված կ'ըլլան Նոր Տարուայ սրտալի, սրտալիր, սրտագին, սրտաբուխ, սրտայորդ, սրտաբաց, սրտազեղ շնորհաւորագիրով: Նշանաբանը իրենց նշանաբան դարձուցած լրագիրները նշանաբան մը եւս ապահոված կ'ըլլան Նոր Տարուայ շնորհիւ:

Երկիրի նախագահներ՝ ընտրուած եւ չընտրուած, կէս գիշերուայ հեռատեսիլի զայթակղիչ հաղորդումները կը կտրեն, ելոյթ ունենալու բարեմաղթութիւններով: Կը զարմանաս: Ասոնք այն նախագահները չե՞ն՝ որոնք տարի մը, չորս տարի, քսանքառասուն տարի առաջ նախագահական ընտրելարշաւին բսած էին, որ բարելաւումներով պիտի երջանկացնեն մեզի: *Իրենք* պիտի երջանկացնեն: *Իրենք* պիտի երջանկացնեն, որպէսզի *իրենց* ընտրէր զանգուածը: Իսկ հիմա, Նոր Տարուայ գիշերը, գալ տարուայ համար իրենց ենթականերուն կը մաղթեն երջանկութիւն: Ընտրելարշաւի ժամանակ ինքզինքնին կը ներկայացնէին իբրեւ մարդկային երջանկութեան միակ աղբիւրներ, իսկ հիմա երջանկութիւն կը մաղթեն ժողովուրդին: Ինչո՞ւ երջանկութիւն կը մաղթեն՝ եթէ իրենք, ըստ իրենց խոստումին, արդէն երջանկացուցած պէտք է ըլլային ամբոխը:

Մաղթանքը դրամով չէ, բայց մաղթանքը պէտք է դրամ արտադրէ: Խանութներ՝ որոնք ամբողջ տարին նոյնիսկ մէկ կարօտեալի մը անվճար ապրանք կամ ուտելիք չեն տուած, այլեւ անօթի աղքատ մը որ փորձած է ուտելիք գողնալ հաճոյքով յանձնած են ոստիկանութեան, հիմա յանկարծ փայլուն տօնածառերով եւ խանութներուն վրայ փակցուած պաստառներով կը շնորհաւորեն գնորդները: Իրենց բարեմաղթութիւնները կարօտեալներու համար չեն, այլ դրամ ծախսելու կարողութիւն ունեցողներուն: Առեւտրային չահագործողները կը դառնան բարեմաղթողներ: Բարեմաղթողներ, բայց ոչ բարեգործողներ: Բարեմաղթութեան համար դրամական փոխադարձ եկամուտ կ'ակնկալուի, բարեգործութեան համար դրամ պէտք է տրամադրուի, եթէ նկատի ունինք լռակեաց բարեգործութիւնը եւ ոչ թէ մեծաշուինդ նուիրատուութիւնները:

Ֆէյսպուք, հասարակական ցանցեր (սոցցանց), եւ այլն, կարծէք ամէն անձ այնտեղ իր ուրոյն տեղը ունի եւ կարող է իր ուրոյն կարծիքը յայտնել: Անձը ազատ է՝ կարծէք: Եւ ահաւասիկ Նոր Տարուայ մէկ շնորհաւորագիր մը՝ զոր տուեալ ազատ անձը մէկ կոճակի սեղմումով Ֆէյսպուքի կամ ել-հասցէի (e-mail) միջոցով կ'ուղարկէ իր նման հարիւրաւոր-հազարաւոր ազատ անձերու, առանց անդրադառնալու կամ մտածելու թէ ճշգրիտ որուն կ'երթայ ան: Վերացնելով անհատական փոխգործակցութեան եւ փոխազդեցութեան որեւէ կարելիութիւն, զանգուածային շնորհաւորագիրը համաշխարհայնացումի (globalization) գործիք մը կը դառնայ, ուր մարդուն կենդանի փորձառութիւնը իր բոլոր հասարակական փոխյարաբերութիւններով կը կորսուի, կ'անէանայ, կը չքանայ մշուշապատ ընդհանրացումներու մէջ:

Նոր Տարի, Ծնունդ, շատոնց դարձած են սպառողականութեան առարկաներ: Պարտադիր գնումներ, զեխ նուէրներ, շռայլ ուտելիք ու ըմպելիք՝ այն մարդոց համար, որոնք կամաւոր թէ ակամայ ներգրաւուած են մարդկային սպառողական շերտին մէջ: Եգիպտահայերուս համար՝ իբրեւ անհատներ, Նոր Տարուայ շուկայացումը բաւական հին երեւոյթ մըն է, որքան որ գոյութիւն ունեցած է քաղքենի դասակարգը: Բայց բոլորովին նոր է՝ երբ գաղութը երրորդ տարին ըլլալով *պաշտօնապէս* պիտի սպառողականացնէ Նոր Տարին, փակելով «աւանդական» ակումբներուն դուները եւ համայնքին վճարել կրցող անդամները միատեղել հինգ աստղանի Ֆերմոնթ պանդոկի վարձուած սրահի մը մէջ՝ օփըն-պիւֆէ, երաժըշտութիւն, պար, այսինքն՝ ծայրայեղ կերակուր, ծայրայեղ ձայն, ծայրայեղ մարմնական շարժում: Երեք մարդկային բնական ու գեղեցիկ պահանջքներ՝ կերակուր, երաժշտութիւն եւ շարժում, պիտի ներկայանան գերազանցելով իրենք իրենց՝ յարմարուելու սպառողական պարտադրանքներուն: Եւ այս բոլորին համար՝ ծայրայեղ դրամ: Դրամը կը չափագրէ մարդկային յարաբերութիւնը, չափագրութեան միջոցներէն մէկը ըլլալով ծայրայեղութեան անչափագրելի աստիճանը, ծայրայեղութեան միջոցով երեւան գալով գերիրական աշխարհ մը:

1966 Մարտ 22-ի «Խմբագրական»-ին մէջ, Պէյրութի *Ազդակ* օրաթերթը կը գրէր. «Բայց դեռ թարմագոյն օրինակը մեր աչքին առջեւ է ահա. ի՞նչ մնաց կամ պիտի մնայ եգիպտահայ եւ այլ ↳ 4

# ՃԱՇԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ



## ԵՐԲ ՅՐԱՊՈՒՐԱՆՔՆ ՈՒ ՅԱՅՐԵՆԱԲԱՂՁՈՒԹԻՒՆԸ ԿԸ ԴԱՌՆԱՆ ՅՈՄԱՆԻՇՆԵՐ...

3 ➩

պարգեւել լուսանկարներուն: Թեքնիքիներ՝ գորս իր հայրը սորված էր շնորհիւ իր գուիցերիացի ղեկավար Զոլային, որ կրթական նպատակներով իրեն ղրկած էր Աւստրիա: Ղեկավարի մահէն ետք, 1950-ականներուն Արմենակ կը սկսի հոչակ վաստակիլ: Կը մասնագիտանայ դիմանկարներու մէջ: Իր յաճախորդներուն մաս կը կազմէին արքայական ընտանիքի անդամներ, աստղեր, պարուհիներ, օտարերկրացի բնակիչներ...: Նոյնիսկ 1952-ի յեղափոխութենէն ետք, Արմենակ Արծրունի չդադրեցաւ փայլելէ, լուսանկարելով Նասէրին եւ քաղաքական գործիչներու: Կը մահանայ 1962-ին, որմէ ետք Արման, իր որդին, կը շարունակէ հօր ուղին: Ան կը մասնագիտանայ հարսանիքի լուսանկարներու մէջ, շարունակելով պահել հօր ստորագրութիւնը: Թէեւ որոշ լուսանկարներ գունաւոր են, բայց միշտ սեւ-ճերմակներն են որոնք կ'արժանանան առաւել յաջողութեան, նոյնիսկ 2007-ին լուսանկարչական եւ սթուտիոյի աշխարհէն հեռանալէ ետք:

*Ալ-Ահրամ էպտօ*, 6-12 Դեկտեմբեր 2017

## ՕՏԱՐԱԼԵԶՈՒ ԵՐԵՒԱՆ. ԿԱՊԻՏԱԼԻԶՄԸ ԽՕՍՈՒՄ Է ԱՆԳԼԵՐԷՆ

1 ➩

տնտեսավարող սուբիէկտներ իրենց օբիէկտների ցուցանակները համապատասխանեցրել են Հայաստանի լեզուական օրէնսդրութեան պահանջներին:

Սակայն օտար լեզուով վերը թուարկուած ցուցանակների առնուազն 90 տոկոսը փակցուել է մինչ կառավարութեան ստուգումներն արգելող այդ որոշումը՝ մինչ 2015-ի Օգոստոս:

Եթէ Լեզուի Տեսչութիւնը իսկապէս որոշակի աշխատանք կատարել է, ուրեմն եթէ այն չլինէր, ինչպիսի՞ պատկեր կը լինէր Հայաստանում, հայերէն ցուցանակներ ընդհանրապէս չէին լինի՞: Լեզուի Տեսչութիւնը հայոց լեզուն պէտք է պաշտպանի ումի՞ց՝ անգլիացիներից, անգլերէնի՞ց, ֆրանսերէնի՞ց, ռուսների՞ց, ռուսերէնի՞ց թէ հայերի՞ց, այն մարդկանցից, ովքեր միայն նիւթական շահ ստանալու մասին են մտածում: Բայց այդ մարդիկ իշխում են, ուրեմն, Տեսչութիւնը անզօր է նրանց դէմ:

Արդեօ՞ք անգլերէն կամ լատիներէն ցուցանակներն անգլիական կամ իտալական գաղութատիրութեան նշան են: Իհարկէ ոչ, պարզապէս Հայաստանի շուկան այդ լեզուները ընկալում է որպէս կապիտալի լեզու, հարստանալու, որակով ապրանքի ու դրանով մրցակցութեան մէջ յաղթելու, անձնական շահը բաւարարելու լեզու: Ուրեմն, եթէ Հայաստանը գաղութ է, ապա կապիտալի գաղութն է:

Իսկ ինչո՞ւ հայ ազգայնականները, ովքեր այդքան զգայուն են Ռուսաստանի հետ որեւէ առնչութեան նկատմամբ, պնդում են, թէ Հայաստանը Ռուսաստանի գաղութն է, անընդհատ կոչ են անում ազգային ազատագրական պայքար ընդդէմ Ռուսական Կայսրութեան, սակայն այդքան անտարբեր են այլ օտար լեզուների ներխուժման նկատմամբ, ազատագրական որեւէ քայլ չեն անում լատինատառ կամ անգլերէն գրագրութեան դէմ: Արդեօ՞ք պատճառն այն չի, որ նրանցից շատերը անգլիալեզու երկրների աջակցութիւնն են վայելում: Թէ՞ նրանք բոլորը ազգայնական լինելուց առաւել ազատական են, կապիտալիզմի լեզուն նրանց հարազատ է, կապիտալի գաղութացումը ոչ միայն օտար չի, այլեւ իրենք՝ բոլոր կուսակցութիւններն (Ժառանգութիւն, ՀԱԿ, Հանրապետական, Բարգաւաճ եւ այլն) ու բազմաթիւ հասարակական կազմակերպութիւններ կապիտալի քաղաքական ներկայացուցիչներն են:

*Հետք*

## ԳԱՀԻՐԷ



## ՇՆՈՐՅԱՒՈՐ ՆՈՐ ՏԱՐԻ՝ ՆՇԱՆԱԲԱ՞Ն ԹԷ ՇՈՒԿԱՅ

3 ➩

կարգ մը երկիրներու հայ ունեւոր դասերէն...

«Դժբախտաբար՝ գրեթէ ոչինչ: Համեմատաբար ոչի՛նչ: Բացի մատի վրայ համրուող քանի մը բարի անունէ, քանի մը դրական իրացումէ՝ հայ ազգային ու մշակութային կեանքի մէջ: Մնացեալը շողշողուն յիշատակ մըն է միայն բարօր կեանքէ մը, որ սակայն ոչինչ ունի մխիթարական ու հայօրէն ներշնչող:

«Մնաց որ, մեր խօսքը անհատներու մասին չէ անշուշտ, այլ դասակարգի մը, հաւաքական խմբաւորման մը մասին է: Բացառութիւնները յարգելի են միշտ, բայց այդ բացառութիւնները կանոն չեն կազմեր եւ ստեղծուած հակադրութիւնը աւելի՛ եւս շեշտելու, ընդգծելու կը ծառայեն» (http://www.aztagdaily.com/archives/286341):

Եւ ասիկա՝ աւելի քան կէս դար առաջ:



## ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԵԱՆ ՄԸ ԱՌԻԹՈՎ՝ *ՅԱԿԻՆԹԻ ՊԱՐՏԷԶԸ*

2 ➩

յարուցած պատնէշը՝ գործելու համար ոտնձգութիւններ (ազատագրուելու համար).

«(Այս ցանկապատն որ կ'երկարի ո՞ւր արդեօք կը տանի

Ի՞նչ լիացնող վարձատրութիւն կը սպասէ

Յարատեւող անձին՝ անսաստ ու անսասան)

.[...]

Բայց ցանկապատն անցատկելի պատնէշ չէ

Եւ արտօնուած է մեզի ոտնձգումն»:

Արդարեւ, բանաստեղծին համար յատուկ նշանակութիւն կը ստանայ շիրիմը: Պատգամներ կ'արձակեն շիրիմները. կայ մեծահարուստին շիրիմը՝ «ինչպէս տեղին մեծութիւնը կը վկայէ», գրոց-բրոցին շիրիմը՝ «զի խոր խրատ ունի տալիք այցելուին», եւ ընդհանրապէս շիրիմներու վրայի գրութիւնը «Իր պատգամը կը փաստէ թէ է՛ այնքան իմաստուն»: Այդ իմաստութիւնները իրական են որքան ժամանակ որ իրական է գերեզմանատունը, ուրեմն՝ որքան ժամանակ որ կենդանի է մահը իր նիւթական գոյութեամբ: Եւ անդրիները՝ որոնք գովերգութիւններ արտասանելու տրամադրութիւններ կը յառաջացնեն առաջնորդներուն մօտ, կարծես փոխարինումները ըլլան մարդկային դէմքին, դիմագիծին ու գործունէութեան:

Շիրիմը կը թուի նմանիլ բանաստեղծի մը տուն-թանգարանին, երկուքն ալ պատգամներ կու տան մեռած մարդոց մասին: Երկուքն ալ գիրի ու գրականութեան փոխանորդներ են, որոնք կը գտնուին ցանկապատի ուղիղ գիծին շարունակական կողմերը:

(Շար. 5/7)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

31. Եղիշէ Չարենց, *Անտիպ եւ չհաւաքուած երկեր*, խմբագիր՝ Անահիտ Չարենց, Երեւան, ՀՍՍՀ ԳԱ, 1983 էջ 245:

32. *Յակինթի պարտէզը*, էջ 43:

33. Անդ, էջ 56-57:

34. Ռաֆայէլ Պատկանեան, *Երկեր*, Երեւան, Սովետական Գրող Հրատարակչութիւն, 1980, էջ 500:

35. *Յակինթի պարտէզը*, էջ 57-58:

36. Անդ, էջ 47:

37. *Նոր Կտակարան*, Մարկոս 8/34:

38. *Յակինթի պարտէզը*, էջ 38:

39. Անդ, էջ 36:

40. Անդ, էջ 35-39: